# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՀԱՆԴԵՐՁ

ԱԶԳԱՅԻՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՄԲ

ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԴՊՐՈՑԱՑ

ԵՒ

ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ՀԱՄԱՐ


ԳՐԵՑ

Հ. ՎԱՐԴԱՆ Վ. ԸՍՏԿԱՐԵԱՆ

*Մխիթ. Ուխտէն*



ՎԻԷՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՏՊԱՐԱՆ

1872

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Անտարակուսելի է՝ որ հիմակու ատենս Եկեղե-
ցական Պատմութեան ուսումն ամէն ուղղափառ բար-
ձրագոյն դպրոցներու եւ վարժարաններու մէջ, չէ թէ
միայն եկեղեցականաց այլ նաեւ ամէն քրիստոնեայ
պատանեկաց շատ կարեւոր մնաւանդ թէ անհրա-
ժեշտ եղած է։ Թող տալով բազմապատիկ պատճառ-
ները, զորոնք աստ հաստատութեան համար կրնայինք
յառաջ բերել, մէկ հատին միայն ակնարկելը բաւա-
կան կը համարինք՝ այսինքն է մարդկային ընկերու-
թեան արդի ժամանակս գտնուած կրօնական վիճա-
կին ու հանգամանացը։ Եղած չէ ժամանակ մը, ո-
րուն մէջ քրիստոնէութեան եւ ի մասնաւորի Կաթու-
ղիկէ Ուղղափառ Հռոմէական Եկեղեցւոյ թշնամիներն,
այնպիսի նենգաւոր հնարքներով եւ ամէն կարելի մի-
ջոցներով Քրիստոսի Եկեղեցւոյն, անոր փրկաւէտ վար-
դապետութեանցն եւ սուրբ սահմանադրութեանցը դէմ
կռուին, ինչպէս հիմակուան ժամանակս։ Տպագրու-
թեան մամուլն եւ հրապարակական թերթերն երբեք
այնպիսի ժիր գործունէութիւն ցուցուցած չեն, սուտ
կամ կեղծակարծ պատմութիւններ հնարելով եւ ան-
ստոյգ դէպքեր կրկնելով Կաթուղիկէ Եկեղեցւոյ հի-
մունքը խախտելու, ինչպէս այսօրուան օրս։ Եւ ինչ
որ տպագրութիւնն ու լրագիրները չեն կրնար ընել,

նոյնը կը կատարեն ժամանակիս արտաքոյ կարգի դիւրինցած հաղորդակցութեան միջոցները, որով այլեւայլ կրօնական գաղափարներ եւ սկզբունքներ իրարու կ'ընդհարկանին։ Ուստի եւ մէկը՝ որ Քրիստոնէական կրօնին եւ Ուղղափառ Եկեղեցւոյ պատմութեան ամենեւին տեղեակ չէ, եւ կամ անոնց վրայ միայն մէկ քանի վերիվերոյ ու անբաւական տեղեկութիւններ ունենալով Եկեղեցւոյ նշանաւոր դէպքերուն եւ անոնց պատճառական յարաբերութեան վրայ որոշ եւ պայծառ դատաստան չի կրնար ընել, այնպիսին շատ անգամ վտանգի մէջ կ'իյնայ ստութիւնք ճշմարտութեան տեղ փոխանակելու, եւ իր հաւատքին ու Եկեղեցւոյն ունեցած սիրոյն եւ հաւատարմութեանը մէջ դեգեւելու։

Այս կրօնական-եկեղեցական գիտութեան պակասութիւնն իր վնասակար հետեւութիւններովը շատ շօշափելի եղած է նաեւ մեր ազգին մէջ։ Այս տխուր երեւութին դարման տանելու, եւ անկէ յառաջ եկած աղէտալի չարեաց առջեւն առնելու հարկն ու կարօտութիւնը, ինչպէս համոզուած ենք, շատոնց արդէն կը զգար կրօնասէր հայ հասարակութիւնը։ Մենք այս կարօտին ըստ կարի դիմաւորելու դիտմամբ յորդորամիտ եղանք առաջակայ գործոյս հրատարակութեան, զորն որ կը նուիրենք ընդհանրապէս ուսումնասէր հայ պատանեկաց, եւ ի մասնաւորի Եկեղեցւոյ ծառայութեան նուիրեալ կղերականաց, բաղձալով որ նոյնն ըլլայ իրենց՝ հաւատոյ անարատութեան ապահով նեցուկ մը, եւ ձեռուընին զօրաւոր զէնք մը՝ Եկեղեցւոյ Թըշնամեաց ամէն յարձակումներուն դէմ։ Ինչու որ Եկեղեցական Պատմութիւնն՝ ընթերցողին աչքին առջեւը յայտնի կը դնէ Կաթուղիկէ Եկեղեցւոյ աստուածեղէն հաստատութիւնը, անոր անվկանդ ամրութիւնն եւ

մշտատեւ տեւողութիւնը։ Դարձեալ՝ ականերեւ կը ցու-
ցընէ մէկ կողմանէ քրիստոնէական կրօնին թէ արիւն-
ռուշտ բռնաւորաց եւ թէ նենգաւոր հերետիկոսաց վրայ
կանգնած փառաւոր յաղթանակները, եւ միւս կող-
մանէ քրիստոնէութեան՝ մարդկեղէն սրտին վրայ ու-
նեցած անդիմադրելի զօրութիւնը, զանիկայ դաւանող-
ներուն զարմանալի անձնուրացութիւնը, եւ մահն ար-
համարհող արիութիւնն ամէն կերպ տանջանաց եւ նե-
ղութեանց մէջ։ Վերջապէս Եկեղեցւոյ Պատմութիւնը՝
ուղղափառ հաւատոյ վարդապետութեանց ճշմարտու-
թիւնը՝ Քրիստոնէական վարդապետութենէ եւ Կրօնա-
գիտութենէ աւելի ընդարձակ կերպով կ՚ապացուցա-
նէ պատմական աւանդութեան ձեռքով, եւ ուղղափառ
հաւատոյ վարդապետութեանց դէմ՝ ելած մոլորու-
թիւններն ալ յառաջ բերելով կաթուղիկէ ճշմարտու-
թեանց ուղղութիւնն աւելի որոշ երեւան կը հանէ։

Եւ որպէս զի մեր այս աշխատասիրութիւնն աւելի
փրկաւէտ ու օգտակար ըլլայ հայազգի պատանեկաց,
պարտք սեպեցինք Ազգային Եկեղեցական Պատմու-
թիւնն ալ ընդհանուր Եկեղեցւոյ Պատմութեան հետ
հիւսել, եւ Հայոց եկեղեցւոյն գլխէն՝ սկզբանէ մինչեւ
հիմայ անցած երեւելի դէպքերը յառաջ բերել։ Կը
խոստովանինք՝ որ քիչ դժուարութիւն չպատճառեց
մեզի այս ձեռնարկութիւնը, մանաւանդ որ այս նիւթը
Նոր հայերէն մատենագրութեան մէջ շատ քիչ մշա-
կուած եւ գրեթէ անմերձենալի ապարէզ մը մնացած
էր։ Բայց թէ մենք ալ այս ապարէզին մէջ ընթացած
ատեն կրցա՞նք անվրէպ ընթանալ եւ մեր դիտած վախ-
ճանին լիով հասնիլ. ասոր պատասխան կու տանք, որ
ջանացինք ընթանալու եւ հասնելու, որչափ ժամանա-
կին քննութիւններն եւ ձեռուընիս եղած միջոցները
ներեցին, միշտ կատարելագործութիւնն աւելի կիրթ

հանճարներու եւ ժամանակին թեւերուն ապաստան ընելով։

Մեր աշխատասիրութեան նպատակին վրայ այսչափ խօսելէն ետքը, մէկ քանի խօսք ալ անոր մէջ բռնած ընթացքին վրայ ըսենք։ Թէպէտեւ ոմանց առաջին անգամ՝ ընդարձակ եւ քննադատական տեղեկութիւններով լուսաւորուած թէ ընդհանուր թէ ազգային Եկեղեցական Պատմութիւն մը բաղձալի էր. սակայն այլեւայլ պատճառներ զմեզ հակեցուցին սկըզբան բարձրագոյն դպրոցաց համար համառօտ՝ բայց ամէն էական հարկաւոր գիտելիքները բովանդակող Եկեղեցական Պատմութեան դասագիրք մը ի լոյս ընծայել, եւ անոր դտած ընդունելութենէն ուրիշ նոյնօրինակ ընդարձակագոյն գրուածքի մը հրատարակութեան՝ խրախոյսն ընդունիլ։ — Եկեղեցական Պատմութեան վերին տեսութիւնն ուսանողաց դիւրինցընելու համար, առաջակայ դասագրքիս մէջ Եկեղեցական Պատմութեան նիւթը Հինգ Ժամանակի Շրջանի բաժնած ենք, որոնց ամէն մէկն երեք Հատուած կը բովանդակէ, որ Եկեղեցւոյ տարածման ու պատերազմաց, Եկեղեցւոյ սահմանադրութեան եւ Եկեղեցւոյ պաշտամանց վրայ կը ճառեն։ Վերջի Ժամանակի Շրջանին մէջ՝ այս Հատուածները չկան, ինչու որ նոյն ժամանակի պատմութեան նիւթը, սոյն բաժանման տակ ամփոփել հնարաւոր չէր։ — Հին եւ Նոր ժամանակի ամէն երեւելի մոլորութիւններն յառաջ բերելէն զատ՝ անոնց հերքման համար կարեւոր եղածն ալ աւանդած ենք։ — Աշխարհական պատմութեան դէպքերը՝ ուր որ Եկեղեցական Պատմութեան հետ կը խառնուին, ըստ կարի համառօտիւ անցած ենք, որովհետեւ անոնց ծանօթութիւնը յառաջադէմ ուսանողաց քով արդէն կ'ենթադրենք։ — Ասոր ներհակ ըստ բաւականի ընդար-

ձակ բռնած ենք ամէն դարերու արեւելեան ու արեւ-
մտեան Ս. Հարց եւ Եկեղեցւոյ Մատենագրաց պատ-
մութիւնը, համոզուած ըլլալով՝ որ քրիստոնեայ պա-
տանեկաց սիրտն ի բարին յորդորելու, իրենց մտաց
ու հոգւոյն մէջ ճշմարիտ ուսումնականութեան փափաք
զարթուցանելու, ինչպէս նաեւ Յիսուսի Քրիստոսի եւ
իւր Ս. Եկեղեցւոյն սէր ու եռանդ արծարծելու ուրիշ
աւելի պատշաճական միջոց չկայ՝ քան քրիստոնէու-
թեան այս հռչակաւոր անձանց վարուց ծանօթու-
թիւնը: Ասկէ զատ՝ անշուշտ բաղձալի է քրիստոնեայ
պատանեկաց, որ աշխարհական պատմութեան մէջ
այնչափ երեւելի դիւցազանց, զօրավարաց, քաղաքա-
գիտաց, արուեստագիտաց եւ գիտնականաց կենագրու-
թեան մանրամասն հանգամանքները կը սորվին, մէկ
քանի տեղեկութիւններ ունենալ իրենց հաւատոյ դիւ-
ցազանց կենացը վրայ, որոնք չէ թէ միայն իրենց
գրուածոց մէջ գերազանց ուսումնականութեան ցոյց
տուած են, այլ նաեւ իրենց զարմանալի անձնուրա-
ցութեամբը, եւ Աստուծոյ ու մարդկան բարւոյն ունե-
ցած սաստիկ նախանձովն ամէն դարուց զարմանքը կը
շարժեն: — Հուսկ ուրեմն՝ ուսանողաց եւ ընդհանրա-
պէս Եկեղեցական Պատմութեան հետամուտ դիւրու-
թեանը համար, գրքին վերջն այլեւայլ յաւելուածնե-
րով դրինք՝ Ընդհանուր կամ Տիեզերական ժողովոց,
Ազգային սիւնհոդոսաց, Հռոմայ Քահանայապետաց եւ
Հայ կաթուղիկոսաց ցանկերը:

Աւելորդ կը համարինք ըսել, որ մեր այս աշխա-
տասիրութեան յօրինուածոյն համար, ամէնէն ընտիր
եկեղեցական պատմիչները գործածեցինք: Իբրեւ ա-
ռաջնորդ առինք՝ Սիմէրսի Պատմութիւն Քրիստո-
նէական Եկեղեցւոյ անուն դասագիրքը, որ թէ
Գերմանիա եւ թէ Գաղղիա շատ մեծ ընդունելութիւն

գտած, եւ քիչ ժամանակուան մէջ մէկ քանի տպագրութիւններ տեսած է։ Անկէ զատ մեզի մեծ ծառայութիւն մատուցին՝ Պարոնեանի ու Բաշմաճի ինչպէս նաեւ Ալիշանի ու Ֆէնլէրի անզուգական ողջամիտ եկեղեցական պատմութիւնները։

Այսպէս այս գրուածքիս կատարելութեան համար ամէն ջանք ըրած ըլլալով, յուսանք որ հայ հասարակութենէն աղէկ ընդունելութիւն գտնէ, եւ Եկեղեցական Պատմութեան ուսումը՝ մերազնեայ պատանեկաց մէջ բազմաթիւ հետամուտներ վաստըկի։ Եւ եթէ այս երկասիրութիւնը՝ ոմանց սրտին մէջ Ուղղափառ Հաւատոյ եւ Առաքելական Գահին սէր ու մեծարանք ազդելու, իսկ ոմանց ալ մտքին մէջէն ընդդծին կանխակալ կարծիքները փարատելու եւ Կաթուղիկէ Եկեղեցւոյ ճշմարտութեան լոյսը ծագելու միջնորդ մ'ըլլայ, այն ատեն մենք մեր այս դոյզն աշխատանքը բաւականէն աւելի վարձատրուած կը համարինք, ի փառս Աստուծոյ, ի բարգաւաճմանս Կաթուղիկէ Հռոմէական Ս. Եկեղեցւոյ եւ յօգուտ Արամեան տոհմին։

# ՑԱՆԿ

## Յառաջաբանութիւն։

1. Եկեղեցական պատմութիւն եւ անոր օգուտները 1
2. Եկեղեցական պատմութեան աղբիւրները . . . 5
3. Եկեղեցական պատմութեան ժամանակի շրջանները . . . . . . . . . . . . . 6

## ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ

### Քրիստոսէն մինչեւ Մեծն Կոստանդիանոս։

1—313.

### Հատուած Ա.

### Քրիստոնէական եկեղեցւոյ տարածումն ու պատերազմները։

4. Հին աշխարհքին կրօնական-բարոյական վիճակը 7
ա. Հեթանոսաց վիճակը . . . . . . . . 7
բ. Հրէից վիճակը . . . . . . . . . . 10
5. Փրկչին գալուստն ու գործքերը . . . . . . 12
6. Առաքելոց գործքերն եւ անոնց գլուխն եկած դէպքերը.
ա. Տասնեւերկու առաքելոց ընտրութիւնը։ — Քրիստոսի եօթանասունեւերկու աշկերտները . . . . . . . . . . . . . . 14
բ. Հոգւոյն Սրբոյ գալուստը։ — Եկեղեցւոյ ըսկիզբը . . . . . . . . . . . . . 16
գ. Քրիստոնէից առաջին հասարակութիւնն Երուսաղէմ։ — Եօթը սարկաւագաց ընտրութիւնը . . . . . . . . . . . . . 16
դ. Քրիստոնէից դէմ՝ Հրէից հանած առաջին հալածանքը։ — Ս. Ստեփանոսի մարտիրոսական մահը . . . . . . . . . . 17
ե. Պաւղոս առաքելոյն դարձը . . . . . . 17
զ. Հեթանոսներն եկեղեցւոյ մէջ կ'ընդունուին։ — Անտիոքի առաջին քրիստոնեայ հասարակութիւնը։ — Առաքելոց Երուսաղէմ գումարած ժողովը. . . . . . . . . 18

է. Հրէից՝ քրիստոնեաներուն դէմ հանած երկրորդ հալածանքը։ — Ս. Յակոբոսի մարտիրոսական մահը . . . . . . . . . 19
ը. Առաքելոց իրարմէ բաժնուիլը։ — Առաքելական հանգանակ . . . . . . . . 20
թ. Առաքելոց գլխէն անցած վերջի դէպքերը . 20
7. Հրէական պատերազմն ու Երուսաղէմի կործանումը . . . . . . . . . . . . . 23
8. Քրիստոնէութեան տարածումը . . . . . . 27
9. Հայոց առաջին կամ մասնական քրիստոնէութեան դարձը . . . . . . . . . . . 30
10. Քրիստոնէութեան տարածման արգելքները . . 31
11. Քրիստոնէից՝ Հռոմայեցւոց կայսրներէն կրած հալածանքները . . . . . . . . . . . 35
12. Հեթանոս մատենագրաց քրիստոնէութեան դէմ ըրած յարձակումն եւ անոնց հերքումը . . . 45
13. Առաջին քրիստոնէից կրօնական-բարոյական վիճակը . . . . . . . . . . . . . . 48
Առաջին ժամանակի միջոցին Եկեղեցւոյ Ս. Հարքն ու Մատենագիրները.
14. Առաքելական Հարք . . . . . . . . 51
15. Երկրորդ ու երրորդ դարուն եկեղեցւոյ նշանաւոր Ս. Հարքը . . . . . . . . . . . 57
16. Առաջին ժամանակի շրջանին հոյակապ եկեղեցական մատենագիրները . . . . . . . 65
17. Եկեղեցւոյ առաջին դարերուն մոլորութիւնները.
ա. Արտաքոյ եկեղեցւոյ՝ քրիստոնէութեան հետ կապակցութիւն ունեցող աղանդներ . . 73
18. բ. Քրիստոնէական եկեղեցւոյ մէջ ելած մոլորութիւններ . . . . . . . . . 77
19. Կրօնական գժտութիւններ եկեղեցւոյ մէջ . . 81

## Հատուած Բ.

### Քրիստոնէական եկեղեցւոյ սահմանադրութիւնը։

20. Եպիսկոպոսք, քահանայք, սարկաւագք, կիսասարկաւագք եւ եկեղեցւոյ սպասաւորութեան մէկալ ստորին աստիճանները.
ա. Եպիսկոպոսական իշխանութիւնը . . . . 84
բ. Քահանայից եւ մէկալ կղերականաց պաշտօնը. . . . . . . . . . . . . . . 86
21. Մետրապոլտական յօրինուածութիւնն ու Գաւառական սիւնհոդոսք։ — Հռոմայ եպիսկոպոսին գլխաւորութիւնը։
ա. Մետրապոլտական ու պատրիարքական աստիճանը . . . . . . . . . . . . . 88
բ. Սիւնհոդոսաց ոճերը . . . . . . . . 89
գ. Հռոմայ եպիսկոպոսին գլխաւորութիւնը . 90

### Հատած Գ.

### Քրիստոնէական եկեղեցւոյ պաշտամունքը։

22. Ս. Պատարագի զոհն ու խորհուրդները . . . 92
23. Ս. Ժամանակներ, նուիրական տեղեր ու եկեղեցական սովորութիւններ.
ա. Քրիստոնէից եկեղեցական տարին . . . . . 96
բ. Նուիրական տեղեր . . . . . . . . . 97
գ. Կրօնական սովորութիւններ ու կարգադրութիւններ . . . . . . . . . . . 98

## ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### *Կոստանդիանոսէն մինչեւ Մեծն Կարոլոս։*

### 313—768.

### Հատած Ա.

### Քրիստոնէական եկեղեցւոյ տարածումն ու պատերազմները։

24. Կոստանդիանոս կայսրն ու իր յաջորդները.
ա. Կոստանդիանոսի քրիստոնէական եկեղեցւոյ նկատմամբ ունեցած արդիւնքը . . . . . 99
բ. Յուլիանոս Ուրացող . . . . . . . . . 101
25. գ. Հեթանոսութեան վերջը . . . . . . . 103
26. Քրիստոնէութեան տարածումը . . . . . . 104
27. Հայոց երկրորդ կամ բոլորական քրիստոնէութեան գործը . . . . . . . . . . 109
28. Սուրբ Գրիգորի յաջորդները . . . . . . . 113
29. Հայոց եկեղեցւոյն վիճակը՝ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ատեն եւ անկէ անմիջապէս ետքը . . . 116
30. Մէհէմէտ ու մահմետականութիւն . . . . . 119
31. Այս ժամանակի շրջանին հերետիկոսութիւններն ու հերձուածները . . . . . . . . . 123
32. ա. Դոնատեանց հերձուածը . . . . . . . 124
33. բ. Արիանոսութիւն եւ առաջին տիեզերական ժողովը . . . . . . . . . . . . 125
34. գ. Մակեդոնեանց աղանդն ու երկրորդ տիեզերական ժողովը . . . . . . . . . . 130
35. դ. Պեղագեան աղանդ . . . . . . . . . 131
36. ե. Նեստորականութիւն ու երրորդ տիեզերական ժողովը . . . . . . . . . . . . 134
37. զ. Միաբնեայց աղանդն ու չորրորդ տիեզերական ժողովը . . . . . . . . . . . 136
38. է. Միականեայց աղանդն ու վեցերորդ տիեզերական ժողովը . . . . . . . . . . 140
39. ը. Պատկերամարտից մոլորութիւնն ու եօթներորդ տիեզերական ժողովը . . . . . . 143

40. Հայոց եկեղեցւոյն՝ ընդհանուր եկեղեցիէն բաժնուիլը (500—700) . . . . . . . . . 145
41. Այս ժամանակի շրջանին Եկեղեցւոյ Ս. Հարքը:
ա. Արեւելեան եկեղեցւոյ Ս. Հարք . . . . 150
42. բ. Արեւմտեան եկեղեցւոյ Ս. Հարք . . . . 165

## Հատած Բ.

### Քրիստոնէական եկեղեցւոյ սահմանադրութիւնը:

43. Եկեղեցւոյ ներքուստ զարգանալն եւ աշխարհական տէրութեան հետ ունեցած յարաբերութիւնը 169
44. Եկեղեցականաց անկնութիւնը . . . . . 172
45. Վանականութեան սկիզբն ու նպատակը . . . 175

## Հատած Գ.

### Քրիստոնէական եկեղեցւոյ պաշտամունքը:

46. Ս. Պատարագն ու խորհուրդները . . . . 178.
47. Ս. Ժամանակներ, տեղեր ու սովորութիւններ:
ա. Ս. Ժամանակներ ու տօներ . . . . . 180
բ. Ս. Տեղեր . . . . . . . . . . 180
գ. Ս. Անօթք եւ արարողութիւնք . . . . 181

# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## Մեծն Կարոլոսէն մինչեւ Գրիգոր Է.

768—1073.

## Հատած Ա.

### Քրիստոնէական եկեղեցւոյ տարածումն ու պատերազմները:

48. Մեծն Կարոլոսի՝ քրիստոնէական եկեղեցւոյ նըկատմամբ ունեցած արդիւնքը. . . . . . . 183
49. Քրիստոնէութեան տարածումն Եւրոպայի հիւսիսային ու արեւելեան կողմերը . . . . . 185
50. Այս շրջանին մոլորութիւններն ու հերձուածները:
ա. Որդեգրականաց աղանդը . . . . . . . 187
51. բ. Ս. Հաղորդութեան վարդապետութեան դէմ ելած մոլորութիւններ . . . . . . . . 188
52. գ. Յունաց եկեղեցւոյն՝ Հռոմայ եկեղեցիէն բաժնուիլը, եւ ութերորդ տիեզերական ժողովը . . . . . . . . . . . . . 190
53. Աս շրջանիս մէջ Հայոց եկեղեցւոյն վիճակը (700—1080) . . . . . . . . . . . 193

### Հատած Բ

Քրիստոնէական Եկեղեցւոյ սահմանադրութիւնը։


54. Քրիստոսի եկեղեցւոյն ներքին սահմանադրութիւնը . . . . . . . . . . . . . 198
55. Եկեղեցւոյ ու տէրութեան մէջ եղած յարաբերութիւնը . . . . . . . . . . . . . 201
56. Հռոմայ քահանայապետաց աշխարհական իշխանութիւնը . . . . . . . . . . . . . 203
57. Քահանայապետաց ու եպիսկոպոսաց ընտրութիւնը . . . . . . . . . . . . . 205
58. Վանականաց վիճակը . . . . . . . . . . 207


### Հատած Գ.

Քրիստոնէական Եկեղեցւոյ պաշտամունքը։


59. Կրօնական սուրբ գործողութիւններ . . . . 208


## ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

*Գրիգոր Է.էն մինչեւ Լուտեր։*

1073—1517.

### Հատած Ա.

Քրիստոնէական Եկեղեցւոյ տարածումն ու պատերազմները։


60. Գրիգոր Է.ին եկեղեցւոյ նկատմամբ ունեցած արդիւնքը . . . . . . . . . . . . . 211
61. Խաչակիրք . . . . . . . . . . . . . 216
62. Ասպետաց կարգեր . . . . . . . . . . 219
63. Գրիգոր Է.էն մինչեւ Բոնիփակիոս Ը. յաջորդող քահանայապետները . . . . . . . 221
64. Քահանայապետք յԱւենիոն (1306—1377) . . 223
65. Քառասնամեայ արեւմտեան հերձուածը, եւ Կոստանդիայի, Բասիլիայի ու Փլորենտիայի ընդհանուր ժողովները . . . . . . . . . 226
66. Հայոց եկեղեցւոյն վիճակն այս ժամանակի շրջանին մէջ (1080—1385 կամ 1440) . . . . . 233
67. ա. Հայոց եկեղեցին՝ Յունաց եկեղեցւոյն հետ միաբանելու վերջին փորձը (1080—1180) . . 234
68. բ. Հայք միայն Հռոմայ եկեղեցւոյ հետ կանոնաւոր հաղորդութեան մէջ (1180—1385) . 239
69. Այս ժամանակի շրջանին մէջ՝ Հայաստանի գիտնական վիճակը . . . . . . . . . 248
70. Մէկալ արեւելեան եկեղեցիներուն վիճակը.
ա. Նեստորականք . . . . . . . . . . . 255
բ. Միաբնեայք . . . . . . . . . . . 257

գ. Մելքիտք . . . . . . . . . . 260
դ. Մարոնիդք . . . . . . . . . . 260
71. Այս ժամանակի շրջանին մոլորութիւններն ու հերձուածները . . . . . . . . . . 261
72. Այս ժամանակի շրջանին գիտնական վիճակը . 269
73. Շարունակութիւն։ Դասական գիտութեանց վերըստին հաստատութիւնը . . . . . . . . 276

## Հատուած Բ.

### Քրիստոնէական եկեղեցւոյ սահմանադրութիւնը։

74. Եկեղեցւոյ ներքին կերպարանութիւնը, եւ առ աշխարհական իշխանութիւն ունեցած գիրքը.
ա. Քահանայապետական ու եպիսկոպոսական իշխանութեանց իրարու հետ ունեցած յարաբերութիւնը . . . . . . . . . . 279
բ. Թեմական յարաբերութիւնները . . . . 280
գ. Եկեղեցւոյ տէրութեան հետ ունեցած յարաբերութիւնը . . . . . . . . . . 280
75. Կրօնական կարգեր ու միաբանութիւններ . . 282

## Հատուած Գ.

### Քրիստոնէական եկեղեցւոյ պաշտամունքը։

76. Նուիրական գործողութիւններ, ժամանակներ ու տեղեր.
ա. Նուիրական գործողութիւններ . . . . 287
բ. Տօներ ու նուիրական ժամանակներ . . . 288
գ. Նուիրական բանաստեղծութիւն, եկեղեցական ճարտարապետութիւն ու նկարչութիւն 289
77. Սրբոց եւ անոնց նշխարաց յարգութիւնը . . 290

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## Լութերէն մինչեւ մեր ժամանակը։

### 1517—1870.

78. Նախաշաւիղ . . . . . . . . . . . 293
79. Լութեր եւ Նորոգողութեան սկիզբը . . . 296
80. Քահանայապետին ու կայսեր Լութերի դէմ բռնած ճամբան. . . . . . . . . . . . 300
81. Լութերի վարդապետութեանց պատճառաւ յառաջ եկած սաստիկ յուզմունքներ . . . . 303
82. Նորոգութեան քաղաքական նշանաւորութիւն առնալը . . . . . . . . . . . . . 307
83. Լութերի եւ իր հետեւողաց վարդապետութիւնը 312
84. Նորադաւանդութիւն ի Հելուետիա։ — Ցուինկլի ու Կալուին նորոգողութեան գլուխները. . . 317

85. Նորաղանդութեան տարածումն Եւրոպայի ուրիշ երկիրները . . . . . . . . . . . . . 321
86. Բողոքականաց մէջ ելած զանազան բաժանումներ 330
87. Տրիդենտեան ժողովը . . . . . . . . . 335
88. Յիսուսեանց կրօնը . . . . . . . . . 338
89. Նոր հաստատուած ուրիշ կրօններ ու միաբանութիւններ . . . . . . . . . . . . . 341
90. Եկեղեցական գիտութեանց վիճակն՝ այս ժամանակի շրջանին մէջ . . . . . . . . . . 346
91. Ուղղափառ եկեղեցւոյ տարածումը . . . . . 350
92. Երեսնամեայ պատերազմը (1618—1648) . . . 354
93. Ուղղափառ եկեղեցին կռուոյ մէջ՝ նոր մոլորութեանց դէմ.
ա. Շնորհաց վրայ մոլորութիւններ. Բայոս ու Յանսենիոս . . . . . . . . . . . . 358
94. բ. Նոր հերետիկոսական դրութիւններ եկեղեցական իշխանութեան վրայ, եւ զանոնք ուղղափառ եկեղեցւոյ մէջ մուծանելու ջանքեր . . . . . . . . . . . . . . 362
95. Ընդհանուր տիրող անհաւատութիւնը . . . 366
95. Գաղղիայի մեծ յեղափոխութիւնը, եւ եկեղեցական իրողութեանց վեր ի վայր շրջումը . . . 368
96. Նաբոլէոն Ա.ին եկեղեցւոյ նկատմամբ բռնած ընթացքը . . . . . . . . . . . . . 372
97. Հայոց կրօնական վիճակն իրենց ինքնիշխանութիւնը կորսնցընելէն եւ զանազան երկիրներ ցրուելէն ետքը (1385 կամ 1440—1870) . . . 377
98. Ա. Արեւմտեան Գաղթականք . . . . . . . 378
ա. Լեհաստանի Հայք . . . . . . . 378
բ. Մոլտաւիայի ու Վալաքիայի Հայք . . 383
գ. Տրանսիլվանիայի ու Մաճառստանի Հայք 384
դ. Պուգովինայի Հայք . . . . . . . 386
ե. Խրիմի եւ Ռուսաստանի Հայք . . . 387
99. Բ. Արեւելեան Գաղթականք.
ա. Պարսկաստանի Հայք.
Էջմիածնի կաթուղիկոսաց վիճակը՝ սա ժամանակի շրջանին մէջ (1440—1700) . . 391
100. բ. Տաճկաստանի Հայք.
Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռն եւ հոն պատահած դէպքերը (1700 — 1828) 397
101. Մխիթարեանք . . . . . . . . . . 402
102. Վիեննական Մխիթարեանք . . . . . . . 405
103. Անտոնեան կրօնաւորք . . . . . . . . 406
104. Կիլիկիայի ուղղափառ Հայոց պատրիարքութիւնը (1740—1866) . . . . . . . . . . . 407
105. Հռոմէական Հայոց կրած վերջին հալածանքը, եւ առանձին նուիրապետութիւն մ'ընդունիլը (1828—1870) . . . . . . . . . . . 409

## ԵԿԵՂԵՑԻՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՆՈՐԱԳՈՅՆ ԴԷՊՔԵՐԸ

106. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Գաղղիայի եւ Ստորին Նահանգաց մէջ . . . . . . . . 415
107. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Սպանիայի ու Բորդուկալի մէջ . . . . . . . . . . 424
108. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Մեծն Բրիտանիայի մէջ . . . . . . . . . . . . 427
109. Ռուսաստանի ու Լեհաստանի մէջ ուղղափառ եկեղեցւոյ կրած հալածանքը . . . . . . . 431
110. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Գերմանիայի մէջ 433
111. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակն Աւստրիայի մէջ 441
112. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակն Իտալիայի մէջ.
ա. Գրիգոր ԺԶ.ին քահանայապետութեան ժամանակ . . . . . . . . . . . . . 443
բ. Պիոս Թ.ին քահանայապետութեան ժամանակ . . . . . . . . . . . . . . 445
Վերջաբան . . . . . . . . . . . . . . 461

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Ա. Ընդհանուր կամ տիեզերական ժողովները . . 465
Բ. Հայոց ազգային եկեղեցական ժողովները . . 469
Գ. Ժամանակագրական յաջորդութիւն Հռոմայ քահանայապետաց . . . . . . . . . . 476
Դ. Ժամանակագրական յաջորդութիւն Հայ կաթուղիկոսաց . . . . . . . . . 481

# ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

## 1. *Եկեղեցական պատմութիւն եւ անոր օգուտները:*

*Քրիստոս՝ Աստուծոյ Որդին, այս աշխարհքիս վրայ Եկեղեցի մը հաստատեց, այսինքն մարդկան ժողով մը, որ նոյն հաւատքով եւ նոյն կառավարութեամբ՝ մէկ երեւելի Գլխոյ տակ միացեալ է. եւ ուզեց որ այս եկեղեցին մինչեւ աշխարհքիս կատարածն անշարժ ու հաստատուն մնայ: Քրիստոս՝ իր հաստատած այս եկեղեցւոյն մէջ դրաւ, քարոզած վարդապետութենէն զատ՝ նաեւ մահուամբը կատարած փրկագործութեան արդիւնքը, . հաստատելով սուրբ խորհուրդներն ու անարիւն պատարագը: Եկեղեցին մարդիկներու համար փրկութեան ապաստանարան մըն է. ինչու որ այն ամէն անդամները՝ որոնք իր արդեանցը մասնակից կ'ըլլան ու վարդապետութեանը համաձայն կեանք կը վարեն, ստուգիւ իրենց վախճանին՝ այսինքն յաւիտենական փրկութեան կը հասնին:*

*Քրիստոսի եկեղեցին՝ իր ծագմանն ու շարունակութեանը նայելով, պատմութեան կը վերաբերի: Բայց եկեղեցական պատմութեան գործքը չէ՝ ցուցընել քրիստոնէական կրօնին ճշմարիտ ըլլալուն պատճառները, անոր Հիմնադրին աստուածութիւնն եւ ուղղափառ եկեղեցւոյ ճշմարտութիւնը. դարձեալ իրեն չի վերաբերիր հաւատոյ ու բարուց վրայ եկեղեցւոյ ունեցած վարդապետութիւններն աղբիւրներէն ցուցընել ու մեկնել. այս ամենայն քրիստոնէական կրօնագիտութեան առարկան է: Եկեղեցական պատմութեան գործքն է միայն դէպքեր յառաջ բերել,*

ուսմի եւ տեղեկութիւն տալ՝ Քրիստոսի եկեղեցւոյն հիմնարկութեանը, արտաքին ու ներքին յօրինուածութեանը, տարածմանը, գործունէութեանն ու վերջապէս գլխէն անցած ամէն պատահարներուն վրայ։ Այս ամէն տեղեկութեանց բովանդակութիւնը, կը կացուցանէ Քրիստոնէական Եկեղեցական պատմութիւնը։

Եկեղեցական պատմութիւնն ուղղափառ քրիստոնէի մը համար շատ օգուտներ ունի. որովհետեւ անոր մէջ կը հաստատէ իր կրօնին ճշմարտութեանն ունեցած հաւատքն ու եկեղեցւոյ սէրը։ Ինչու որ եկեղեցական պատմութիւնը՝

1. Իրական կերպով կ'ապացուցանէ Քրիստոսի այն մարգարէական խօսքին ճշմարտութիւնը թէ՝ Յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս (Յովհ. ԺԲ. 32)։ Քրիստոսի եկեղեցին՝ փոքր սերմէ մը յառաջ գալով, յընթացս դարուց աճեցաւ եւ ընդարձակեցաւ։ Արդէն առաքեալք զանիկայ աշխարհքիս երեք մասերը տարածած էին, եւ իրենց յաջորդներն սկսած գործքերնին նոյն հոգւով շարունակեցին. եւ հիմայ ալ դեռ կը շարունակեն։ Դարձեալ եկեղեցական պատմութիւնը՝

2. Յայտնի կը ցուցընէ եկեղեցւոյ Հիմնադրին ուրիշ մէկ խօսքին ճշմարտութիւնը, զորն որ իւր աշակերտաց ըսաւ երկինք համբառնալէն յառաջ, այսինքն. Ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչեւ ի կատարած աշխարհի (Մատթ. ԻԸ. 19)։ Եկեղեցին ամէն ժամանակ սաստիկ հակառակութիւններ կրեց, բայց անոնք իրեն վնասելու տեղ, զարգացմանն ու յառաջադիմութեանն աւելի օգնեցին։ Արտաքին հակառակութիւններն էին՝ արիւնահեղ հալածանքները, որոնք գլխաւորաբար առաջին երեք դարերուն մէջ եկեղեցին սասանեցուցին. այս միջոցիս անթիւ եւ անհամար հաւատացեալք դառն մահուամբ նահատակուեցան, բայց ասով միանգամայն՝ իրենց աշխարհայաղթ հաւատքն ու անպարտելի սէրն երեւցաւ, եւ եկեղեցին ներքուստ եւ արտաքուստ անհամեմատ փառաւորուեցաւ։ Արտաքին հալածանքներէն աւելի վնասակար եղան եկեղեցւոյ, իր մէջէն ելած զանազան մոլորու-

թիւններն ու հերձուածները, որոնք հարկ էր որ ըլլային, վասն զի եթէ ընդհանրապէս ճշմարտութիւնը մոլորութեան դէմ միշտ կռուոյ մէջ է, բնական է որ այս հակառակութիւնը՝ կրօնական-բարոյական վարդապետութեանց սահմանին վրայ աւելի սաստկութեամբ ելլէր, ինչու որ անոնք մարդուն զգայականութեանն ու ամբարտաւանութեանն աւելի կը դպչին։

Եւ թէպէտ այս հերձուածներն եկեղեցիէն բազմաթիւ անդամներ հեռացընելով, իրեն մեծ ցաւ պատճառեցին, բայց ուրիշ կողմանէ եկեղեցւոյ փառաւորութեանն առիթ եղան։ Ինչու որ ինչպէս առաքինութիւնը նեղութեան մէջ, նոյնպէս ճշմարտութիւնը՝ հալածանաց ատեն իր ոյժն ու հաստատութիւնը կը գտնէ։ Մոլորութեան խաւարը՝ կրնայ ժամանակ մը ճշմարտութեան լոյսն աղօտացընել, բայց չի կրնար արգելուլ՝ որ անոր մխիթարիչ, համափիւռ ու նոր զօրութիւն զգեցած ճառագայթները զինքը վերջապէս չհալածեն։ Եկեղեցիէն բաժնուած աղանդները ակներեւ կը ցուցընեն նաեւ թէ կաթուղիկէ ուղղափառ եկեղեցւոյ պաշտպանն Աստուած է։ Այս աղանդներուն մեծ մասն՝ ի բաց առեալ իրենց անունը, զորն որ պատմութիւնը մեզի պահած է, աշխարհքէս բոլորովին անհետ եղած է. մինչեւ հիմայ մնացածներն ալ երթալով հիւծելու եւ քայքայելու վրայ են։ Անոր հակառակ կաթուղիկէ ուղղափառ եկեղեցին՝ անոնց ամենուն ծագումն եւ անկումը տեսաւ, եւ ինքը միշտ իր երիտասարդական զօրութեանը մէջ մնաց։ Իր հիմը Քրիստոսի դրած անշարժ վիմին վրայ ըլլալով, այն ալիքներն որ այս վիմին կը զարնուին՝ իրեն վնաս մը չեն կրնար ընել, հապա միայն կ'առնուն կը տանին այն աղտեղութիւնները՝ զորոնք ժամանակ ժամանակ աշխարհքս կը հանէ։ — Բայց ասկէ ուրիշ օգուտ մ'ալ ունի եկեղեցւոյ մէջ եղած մոլորութեանց վրայ ծանօթութիւն ունենալը. այսինքն անով եկեղեցւոյ վարդապետութիւններն աւելի կը լուսաւորուին, ինչու որ հերետիկոսաց մոլար ըմբռնմանցը միտ դնելու ատեն, եկեղեցւոյ վարդապետութեան բուն իմաստին աւելի կը թափանցենք։

3. Եկեղեցական պատմութիւնն ուրիշ կողմանէ ալ քրիստոնէական կրօնին ճշմարտութիւնը կը ցուցընէ։ Հեթանոս փիլիսոփայից հնարած կրօնները իրենց գոց դպրոցներէն դուրս ընդունելութիւն եւ յառաջ չգտան. իսկ մարդկութիւնն ազնուացընելու կամ սրտին մէջ բարձրագոյն զգածում մը յառաջ բերելու բոլորովին անկարող էին։ Հրէական կրօնն ալ՝ միայն զատեալ ժողովրդեան մը համար էր։

Ասոր ներհակ քրիստոնէական կրօնը՝ համաշխարհական կրօն մ՚եղաւ. քրիստոնէութիւնն իր դաւանողները՝ թէ եւ իրարմէ հեռու քաղաքներ բնակին, լեզուաւ ու սովորութեամբ իրարմէ տարբեր ըլլան, թէպէտ գետն ու ծովը զիրենք անջրպետէ, սակայն եւ այնպէս զանոնք իբրեւ մէկ ընտանեաց վերաբերող միութիւն կը նկատէ, վասն զի մի եւ նոյն հաւատոյ ու բարուց կապը զամէնքն ալ իրարու հետ կը միաւորէ։ Դարձեալ միայն քրիստոնէական կրօնը մարդուն բնութեան մէջ եղած տկարութեանց միտ կը դնէ, եւ անոր դարման տանելու միջոցներ կը մատուցանէ։ Թէ իր մէջը կենդանարար աստուածային զօրութիւն մը կայ, մէկ կողմանէ անով ցուցուց՝ որ հին աշխարհքն իր թմրութենէն արթնցուց եւ անոր կրօնն ու բարքը բոլորովին կերպարանափոխ ըրաւ, եւ մէկալ կողմանէ՝ քանի անգամ որ մարդկային ընկերութիւնն անկածութեան վիճակը հասաւ, ինք զանիկայ վերստին կանգնեց ու նորոգեց։

4. Վերջապէս եկեղեցական պատմութիւնը՝ մարդուն մտքին մէջ կը հաստատէ այն արտաքոյ կարգի ծանրակշիռ համոզումը, թէ կաթուղիկէ եկեղեցին արդի վիճակին մէջ՝ ամէն վարդապետութիւններովը ու էական յօրինուածութեամբը, նոյն է նախնի եկեղեցւոյն հետ։ Եւ ակներեւ մարդուն առջեւը դնելով՝ որ այնչափ դարերէ եւ մտաց ու խորհրդոց յեղափոխութիւններէ ետեւ, նոյն վարդապետութիւններն ու յօրինուածութիւններն ամբողջ ու անարատ մինչեւ մեր ժամանակը հասած են, յայտնի կ՚ապացուցանէ թէ եկեղեցւոյ վարիչը խոստացեալ Հոգին սուրբն է։

### 3. Եկեղեցական պատմութեան աղբիւրները:

Եկեղեցական պատմութեան ամենէն մեծաւոր աղբիւրներն են՝ Նոր Կտակարանին գրքերը, որոնք առաջին դարուն մինչեւ կէսէն անդին կը հասնին. իսկ բուն եկեղեցական-պատմական գրուածքներն անկէ շատ ետքը կը սկսին: Եկեղեցական պատմագիրներէն ոմանք արեւելեան են, ոմանք արեւմտեան: Արեւելեանց մէջէն յիշուելու արժանի են՝ 1. Եւսեբիոս Կեսարիայի Պաղեստինացւոց եպիսկոպոսը՝ չորրորդ դարուն սկիզբները, որ եկեղեցական պատմութեան Հայր կը կոչուի, իր պատմութիւնը տասը գրքի մէջ բովանդակած է, եւ կը հասնի մինչեւ 324: Եւսեբիոս իր պատմութեանը մէջ շատ գրուածքներ կը յիշատակէ, որոնք հիմայ կորսուած են: — 2. Սոկրատէս՝ որ Կոստանդինուպոլիս փաստաբան էր, հինգերորդ դարուն կէսին՝ եօթը գրոց մէջ Եւսեբիոսի եկեղեցական պատմութեան շարունակութիւնը գրեց մինչեւ 439: Սոկրատէսի այս աշխատասիրութիւնը՝ երեւելի է անոր մէջ ցուցուցած փութոյն եւ անկողմնակալութեամբը: — 3. Սոզոմենոս Պաղեստինացին՝ որ նոյնպէս Կոստանդնուպոլիս փաստաբանութիւն կ'ընէր, Սոկրատէսի հետ գրեթէ մի եւ նոյն ատեն եւ նոյն ժամանակի պատմութիւնը գրեց ինը գրքի մէջ: — 4. Թէոդորետոս Կիւրի եպիսկոպոսը՝ հինգերորդ դարուն մէջերը, Եւսեբիոսի պատմութիւնը շարունակեց 322էն մինչեւ 428: — 5. Եւագրիոս Ասորին՝ վեցերորդ դարուն վերջերը, իր եկեղեցական պատմութիւնը գրեց, որ 431—594 կը հասնի:

Արեւմտեան պատմագրաց մէջէն երեւելի են՝ 1. Ռուփինոս Ակուիլէացի երէցը, որ 400ին Եւսեբիոսի եկեղեցական պատմութիւնը լատիներէնի թարգմանեց, եւ երկու գրքի մէջ անոր շարունակութիւնը (318—395)* յաւել տարաւ: — 2. Սուլպիկիոս Սեւերոս գաղղիացի երէցը՝ իր պատմութիւնը գրեց աշխարհքիս արարչութենէն մինչեւ 400, որուն մէջ՝ տեղ տեղ եկեղեցական պատմութեան վրայ ալ կը խօսի: — 3. Կասիոդորոս՝ վեցերորդ դարուն, Սոկրատէսի, Սոզոմենոսի ու Թէոդորետոսի գրուածքներէն ամբողջ

մը չինեց։ Թէպէտ անկէ ետքը մինչեւ ԺԶ երրորդ դար, արեւմուտք ընդհանուր եկեղեցական պատմութիւն գրող մը չեղաւ, բայց մասնական կամ առանձին ազգաց եկեղեցական պատմութեան վրայ գրուածքներ չպակսեցան։

Հազիւ տասնուվեցերորդ դարուն երկրորդ կէսին՝ սկիզբ եղաւ գիտնական ոճով ու բանադատութեամբ եկեղեցական պատմութիւն գրելու, ինչու որ Եկեղեցւոյ Ս. Հարց գործքերը, ժողովոց արձանագրութիւնները, հին ծիսարանները, նամակաց հաւաքածոյքներն եւ ուրիշ յիշատակարանները, այս միջոցիս սկսան տպագրութեամբ ի լոյս ընծայուիլ։

### 3. Եկեղեցական պատմութեան ժամանակի շրջանները։

Եկեղեցական պատմութեան ժամանակի Շրջանները՝ անցած գացած դարերուն մէջ պատահած երեւելի փոփոխութիւններէն կ՚առնուին։ Ըստ այսմ եկեղեցական պատմութիւնը կը բաժնուի.

1. Քրիստոսէ մինչեւ Մեծն Կոստանդիանոս (1—313)։
2. Մեծն Կոստանդիանոսէն մինչեւ Մեծն Կարոլոս (313—768)։
3. Մեծն Կարոլոսէն մինչեւ Գրիգոր Է. (768—1073)։
4. Գրիգոր Է. Քահանայապետէն մինչեւ Լութեր (1073—1517)։
5. Լութերէն մինչեւ մեր ժամանակը (1517—1870)։

Այս ժամանակի շրջաններէն ամէն մէկն՝ երեք հատուածի կը բաժնուի.

Ա. Քրիստոսի եկեղեցւոյն տարածումն ու պատերազմները.
Բ. Քրիստոսի եկեղեցւոյն սահմանադրութիւնը.
Գ. Քրիստոսի եկեղեցւոյն պաշտամունքը։

# ԱՌԱՋԻՆ ԾՐՋԱՆ

## ՔՐԻՍՏՈՍԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵԾՆ ԿՈՍՏԱՆԴԻՆՈՍ

**1—313.**

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ՔՐԻՍՏՈՍԻ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՏԱՐԱԾՈՒՄՆ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

**1. *Հին աշխարհքին կրօնական-բարոյական վիճակը:***

Փրկչի մը կարօտութիւնը ճանչնալու համար՝ հարկ է հայեցուածք մ'արձակել իր գալուստէնէն յառաջ հին աշխարհքին գտնուած վիճակին վրայ, եւ հեթանոսաց ու Հրէից կրօնական-բարոյական վիճակը նկատել:

*Ա. Հեթանոսաց վիճակը:*

Հեթանոսաց կրօնները կամ առասպելական աւանդութեանց վրայ հաստատուած էին, եւ կամ մարդկային օրէնսդիրներու գիւտեր էին: Հեթանոսք՝ շատ աստուածներու կը հաւատային, զորոնք կարողութեան կողմանէ մարդիկներէ վեր եակներ կը դնէին; բայց ուրիշ կողմանէ մարդկային ամէն տեսակ կրից ու մոլութեանց տակ ինկած կը համարէին: Բազմաստուածութիւնը զանազան կերպարանաց տակ երեւան ելած էր: Յոյնք ու Հռոմայեցիք՝ առաջին կարգի մեծ աստուածները պաշտելու մէջ իրարու միաբան էին. բայց կային ուրիշ բազմաթիւ փոքր աստուածներ ալ՝ որոնք

հռոմէական պետութեան զանազան քաղաքները պաշտօն կ'ընդունէին։ Նոյնպէս ընդհանուր տիրած էր այն յիմարական կարծիքը՝ թէ աստուածներն ալ մարդիկներու պէս անգութ ու բացարձակ ճակատագրի տակ ինկած են։ Այս ընդհանուրտիրող բազմաստուածութեան մէջ՝ թէպէտ մէկ Աստուծոյ հաւատացողներ ալ կային, բայց անոնց թիւը շատ քիչ էր, եւ սոյն հաւատքը հասարակ ժողովրդեան չէին կրնար հաղորդել։ Հաւատքն այս վիճակիս մէջ եղած ատեն՝ ինչ կրնար ըլլալ բարոյականութիւնը։ Ճշմարիտ Աստուծոյ ծանօթութիւնը պակսելով, որն որ աշխարհքս ստեղծած է ու կը պահպանէ, որ բովանդակ մարդկութեան հայրն է, եւ անչափ իմաստութեամբ ու սիրով մարդիկները կը նախախնամէ, կրօնական-բարոյական կենաց կենդրոնը կը պակսէր։ Ստոյգ է աստուածոց պաշտօնը՝ արուեստից սէրն արծարծելու եւ սնուցանելու յարմար էր, բայց ջերմեռանդութիւն կամ բարեպարիշտ զգածում մը զարթուցանելու բոլորովին անկարող էր. վասն զի սնոտի եւ աւելորդապաշտութեամբ լի էր եւ մարդուն սիրտը չէր կրնար գոհ ընել։ Մանաւանդ թէ ամենապիղծ ու զազիր մոլութիւններն իբրեւ աստուածային պաշտամանց մաս կը համարուէին։ Հեթանոսք՝ կարծելով որ աստուածներն ալ կրից ու մոլեկան ցանկութեանց տակ ինկած են, անոնց անառակ, չար նախանձու եւ անագորոնութեան գործքերը խաղերու մէջ կ'երգէին ու պատկերներու մէջ կը ներկայացընէին, որմէ յորդորուած՝ ժողովուրդն ալ չէր պատկառեր անոնց տօնին օրերը նոյն մոլութեանց պաշտօն մատուցանել ու զանոնք գործել։ Եւ որովհետեւ Յունաց ու Հռոմայեցւոց այս գարշ ու քստմնելի աստուածոց պաշտօնը՝ անոնց կենցաղավարութեանը վրայ ալ առանց ազդեցութեան չէր կրնար մնալ, անոր համար զարմանք չէ՝ որ արուեստից ու գիտութեանց մէջ հռչակաւոր՝ հնութեան այս երկու երեւելի ազգերը, բարոյականութեան կողմանէ այն աստիճանի ինկած էին։

Արթեալ հեթանոսաց վիճակն ալ անկէ լաւագոյն չէր. անոնք որովհետեւ ճանչցած էին թէ ժո-

ղովրդեան հաւատքն անկայուն է, անոր համար ի-
րենք զիրենք անհաւատութեան տուին, որուն մէջ
աւելի հաստատուեցան տեսնելով փիլիսոփայական
դրութեանց իրարու հակառակիլը։ Անոնց մեծ մասը՝
հոգւոյ անմահութիւնը կ'ուրանային, եւ իրենց բոլոր
յոյսն ու խղճերն աս աշխարհքիս վրայ սահմանաւորած
էին։ Աս անհաւատութեան անմիջական հետեւու-
թիւնն էր աւելորդապաշտութիւնը։ Ինչու որ մարդն
ի բնէ անժխտելի բերում մ'ունի գերբնական բանե-
րու. Ճշմարիտ հաւատքը միայն աս բերման շիտակ
ուղղութիւն մը կրնայ տալ, իսկ անհաւատութիւնն
աւելորդապաշտութեան կ'առաջնորդէ։ Աս աւելոր-
դապաշտութեան պատճառաւն էր, որ նոյն իսկ կըր-
թեալ Հռոմայեցիք չար գուշակութիւններէն կը վախ-
նային եւ զոհեր կը մատուցանէին, որոնք ստոյգ է հա-
տուցման գաղափար՝ մը կու տային, բայց իրենց սիրտը
խաբեպատիր ապահովութեան մը մէջ կը պահէին։
Անկէ յառաջ կու գար նաեւ ընդհանուր տիրող մո-
գութեան արուեստը, զոր ժողովուրդը խաբելու, եւ
շատ հեղ չար վախճաններու հասնելու կը գործածէին։

Այս խեղճ վիճակիս մէջ էին հեթանոսք, Քրիս-
տոսի ծնընդենէն քիչ մը յառաջ։ Եւ թէպէտ ըսած-
նիս գլխաւորաբար կրթեալ Յունաց եւ Հռոմայեցւոց
համար է, բայց անկէ լաւագոյն վիճակի մէջ չէին ան-
տենուան մէկալ հեթանոս ազգերը՝ Պարսիկք, Հըն-
դիկք, Եգիպտացիք, Հայք, Մոնկոլք, Ճենացիք եւ
Ասիայի ու Ափրիկէի մէկալ ժողովուրդները։ Նոյն իսկ
գերմանական ազգերը՝ որոնք բարոյականութեան կող-
մանէ զանոնք կը գերազանցէին, կռապաշտ էին եւ
մարդազոհ կ'ընէին։

Ուստի Փրկչի մը գալստեան փափաքն երթալով
ամէնուն սրտին մէջ կը զօրանար, եւ գուշակութիւն-
ները կը յաճախէին. ամէնուն աչքը դէպ ի արեւելք
ուղղուած էր, ուստի գալու Փրկիչն ու թագաւորը
կը սպասէին, որ Յուդայի ցեղէն պիտ'որ ըլլար*։

* Սուետոնիոս (Վարք Վեսպաս. Գլ. Դ.) կը գրէ. Բոլոր արեւելք
հին ու հաստատուն կարծիք մը տարածուած էր, թէ այնպէս որո-
շուած ըլլայ, որ այն ատեն Հրէաստանէն ելլողները տէրութիւնը ձե-
ռուընին պիտ'որ առնուն։ Տակիտոս ալ (Պատմ. Ե. 13.) կ'ըսէ. Շա-

## Բ. Հրէից վիճակը։

Հրէական ժողովրդեան կրօնն Աստուածմէ յայտնուած ուստի եւ ճշմարիտ էր. բայց սակայն ոչ մտքին ամէն տարակոյսները կրնար լուծել, եւ ոչ ալ սրտին ամէն կարօտները լեցընել, անոր համար Հին Կտակարանին մէջ ստէպ ակնարկութիւններ կ'ըլլային ի Քրիստոս, որ ամէն բան պիտ'որ կատարելագործէր։ Բայց նոյն իսկ այն ժամանակ՝ երբ Հրեայք Հռոմայեցւոց ծանր լուծին տակ կը հեծէին, այս կրօնն իրենց վրայ բարերար ազդեցութիւն մը չէր ըներ։ Օրինաց նիւթական նշանագիրներուն եւ արտաքին իրաց այնչափ կապուեցան, որ Աստուծոյ տեսչութեան գաղափարը բոլորովին կորսընցուցին։ Թէ եւ մեծ փափաքով Մեսիայի գալստեան կը սպասէին, բայց միայն անոր համար՝ որ զիրենք ժամանակաւոր նեղութիւններէն ազատէ, որովհետեւ իրենց հոգեւոր ու բարոյական խեղճութիւնը չէին ճանչնար։ Հրէական ժողովրդեան խեղճութիւնն աւելի յայտնի կ'երեւայ, նաեւ իր մէջն եղած զանազան աղանդներէն ու կուսակցութիւններէն, որոնք իրարու սաստիկ հակառակորդ էին։ Անոնց գլխաւորներն են.

1. *Փարիսեցիք*, որոնք ժողովրդեան առջեւն ամէնէն աւելի համարում ու ազդեցութիւն ունէին։ Մովսիսական օրէնքէն զատ՝ Սինայի օրէնսդրութեան ժամանակէն սկսած աւանդութիւններն ալ, իբրեւ հաւատոյ աղբիւր կը համարէին։ Աստուծոյ նախախնամութիւնն ու հոգւոյ անմահութիւնը կ'ընդունէին. ուստի եւ անդիի աշխարհք՝ վարձք կամ պատիժ ըլլալուն ու մեռելոց յարութեան կը հաւատային։ Իրենց կենցաղավարութեանը մէջ արտաքին սրբութիւն կը կեղծաւորէին, արտաքոյ կարգի փառասէր եւ ընչասէր էին, եւ իրենք զիրենք օրինաց արտաքին բաներուն ու մարդկան աւանդութեանց պահպանութեան խիստ վրէժխնդիր ցուցընելով, հասարակ

տերուն համոզումն էր՝ որ քահանայից հին գրքերուն մէջ գրուած ըլլայ, թէ նոյն ատենն արեւելք պիտ'որ զօրանայ եւ Հրէաստանէն ելածներն աշխարհքիս կառավարութիւնը ձեռքերնին պիտ'որ առնուն։

ժողովրդեննէն վեր կը համարէին։ Բայց չ՚ուրացուիր՝ որ հրէական ժողովրդեան մէջ եթէ ազնուական բան մը կար՝ Փարիսեցւոց կը վերաբերէր։ Սինէտրիոնի անդամներուն մեծ մասն իրենցմէ էին, եւ Քրիստոս իսկ ըսաւ, որ Հին Կտակարանին յայտնութեան օրինաւոր պաշտօնեաներն իրենք են։ Հերովդէսի թագաւորութեան ժամանակ ասոնց թիւը 6000ը կ՚անցնէր։

2. *Սադուկեցիք*, որոնք ազատամիտ եւ անհաւատ էին, իրենք զիրենք զգայական վայելմանց տուած էին։ Աստուծոյ տեսչութիւնը մարդկան գործողութեանց վրայ կ՚ուրանային. նոյնպէս չէին ընդունէր հրեշտակներն ու հոգւոյ անմահութիւնը. ուստի եւ մեռելոց յարութեան չէին հաւատար։ Բերնէ·բերան եկած աւանդութիւնը կը մերժէին, եւ միայն Ս. Գրքին մէջ գրուած խօսքերուն արժէք կու տային։ Ասոնք Փարիսեցւոց համեմատութեամբ քիչուոր եւ ըստ մեծի մասին ժողովրդեան երեւելիներն ու հարուստներն էին։

3. *Եսսէացիք* կամ *Եսսենացիք*, որոնք Մեռեալ ծովուն ու Յորդանան գետին քով քաշուած, իրենք զիրենք մտաւորական խոկմանց ու նկատութեանց տուած էին։ Իրենց վարդապետութեամբն աւելի Փարիսեցւոց մօտաւոր էին, բայց անոնց օրէնքները մեկնելու եղանակը չէին ընդունէր, հապա անոր տեղ խորհրդական մեկնութիւն մը կը դնէին։ Ասոնք առանձին կարգ մը կը կացուցանէին, եւ մէջերնին կրթեալ մարդիկ միայն կ՚առնուին։ Ամուրի կեանք կ՚անցընէին, ունեցածնին հասարակաց էր, տղոց կրթութեան կը պարապէին, երկիր կը գործէին եւ անմեղ ձեռագործներով ժամանակնին կ՚անցընէին։ Հրէից աստուածային պաշտամանց մէջ մաս չունէին. կ՚երեւայ որ ասոնց թիւն այս միջոցիս 4000ի կը հասնէր։ Եգիպտոս ապրող Եսսէնացիք ալ՝ որ Թերապեւտ կը կոչուէին, ասոնցմէ ելած ճիւղ մըն են։

4. *Սամարացիք*՝ Իսրայելի տասը ցեղերուն գերութեան տարուած ժամանակ Պաղեստին մնացած Հրէից, եւ Ասորեստանի Ասորդան թագաւորէն հոն գաղթական բերուած հեթանոսաց խառնուրդ մըն էին։ Աս գաղթականները հեթանոսութիւնը ձգելով Հրէից

ճշմարիտ Աստուածը կը պաշտէին, Գարիզին լերան վրայ տաճար մ՚ունէին, եւ Հրէից պէս զոհ կը մատուցանէին: Այս տաճարը՝ զորենք Հրեաներէն բաժնելու միջնորմ եղած էր, ինչու որ կ՚ըսէին թէ հոն միայն Աստուծոյ երկրպագութիւն կրնայ ըլլալ: Մովսէսի հինգ գրքերը միայն կ՚ընդունէին, բայց Մեսիայի գալըստեան կը սպասէին:

Փղաւիոս Յովսեպոս պատմագիրը կը վկայէ, որ կանուխ ժամանակներէ վեր բազմաթիւ Հրեայք Պաղեստինէն դուրս օտար անդին ցրուած կ՚ապրէին, ինչպէս Բաբելոն ու Մարաստան, ուր իրենց նախահայրերը Կիւրոսի ժամանակ մնացած էին. նոյնպէս կային նաեւ Հրեայք՝ Եգիպտոս, գլխաւորաբար Աղեքսանդրիա, Ասորիք, Փռիւգիա, Արաբիա ու Լիւգիա, ուստի ետքէն կամաց կամաց բոլոր Փոքր Ասիա ու Յունաստան տարածուեցան: Հռոմ՝ առաջին անգամ Պոմպէոս գերի բռնած Հրեաներ խուժեց, որոնք հոն խիստ բազմացան ու Տիբերիս գետին անդին՝ քաղքին տրուարձաններէն մէկուն մեծ մասը բռնեցին: — Այս ցիրուցան Հրեաները՝ ամէն տեղ իրենց հարց կրօնն ու աւանդութիւնները հաստատուն պահեցին: Ս. Գրքին եբրայեցերէն բնագրին տեղ յունարէն թարգմանութիւնը կը գործածէին, որն որ Եօթանասնից թարգմանութիւն կը կոչուէր, եւ Պտղոմէոս Փիղադելփոսին առեն՝ Աղեքսանդրիա քաղաքը Դեմետր Փաղերեւս թագաւորական գրադարանին խորհրդովը (Քրիստոսէ 283 տարի յառաջ) թարգմանուած կը համարուի*:

Այս Հրէաստանէն դուրս գտնուող Հրեաները՝ Երուսաղէմ քաղաքն իբրեւ կենդրոն կը համարէին, ուր ամէն տարի ուխտի կ՚երթային: Հեթանոսաց մէջէն ալ շատերը Հրէից կրօնն ընդունեցան. ան հեթանոսներն որոնք Հրէից պէս մէկ Աստուած կը պաշտէին՝ Եկք Դրան կ՚անուանուէին, այսինքն ճշմարիտ կրօնին դրան մէջ կեցող. իսկ անոնք՝ որ նաեւ հրէական օրէնքները պահել յանձն կ՚առնուին, եւ Հրէից ամէն վարդապետութիւններն ու սովորութիւնները կ՚ընդունէին՝ Եկք Արդարութեան կը կոչուէին:

### 5. Փրկչին գալուստն ու գործքերը:

Այն աշխարհքիս խեղճ վիճակը՝ զորն որ վերը նկարագրեցինք, եւ Փրկչին աշխարհք գալը, Եսայի մարգարէն արդէն շատ յառաջ տեսած ու գուշակած էր այս խօսքերով. Ժողովուրդ որ գնայր ընդ խաւար՝ ետես լոյս մեծ. եւ որ բնակեալ էին յաշխարհի եւ ի ստուերս մահու, լոյս ծագեսցէ ձեզ. . . . զի մանուկ ծնաւ մեզ, որդի

* Արիստէասի պատմութեան նայելով, որն որ ստուգութեան երաշխաւորութիւն մը չունի, աս թարգմանութիւնն Աղեքսանդրիայի քով Փարոս կղզւոյն վրայ 72 իմաստուն Հրէից ձեռքով եղած է:

տուաւ մեզ (Ես. Թ. 2. 6)։ Այս մարգարէութիւնը նոյն միջոցին կատարուեցաւ։

Աստուծոյ Որդին՝ Յիսուս Քրիստոս աշխարհք եկաւ, Օգոստոս կայսեր ու Հերովդէս Թագաւորին ժամանակ, Հռոմայ շինութենէն 754 տարի ետքը։ Հրաշալի կերպով Հոգւոյն Սրբոյ զօրութեամբը յղացաւ եւ ծնաւ Դաւթի ցեղէն Մարիամ Ս. Կոյսէն։ Իր ծննդեան տեղը Հրէաստանի Բեթղեհէմ քաղաքն է։

Հազիւ թէ Քրիստոս ծնաւ՝ Հերովդէս Թագաւորն ուզեց զինքը մեռցընել, անոր համար մայրը Մարիամ ու խնամակալ հայրը Յովսէփ՝ իրեն հետ Եգիպտոս փախան։ Հերովդէսի մահուանէն ետքը՝ նորէն Հրէաստան դարձան, եւ Նազարէթ քաղաքը բնակեցան։ Հոս Յիսուս մանուկն՝ իր ծնողացը քով քաշուած կեանք կ՚անցընէր, եւ կը զարգանար իմաստութեամբ, հասակաւ ու շնորհօք Աստուծոյ եւ մարդկան առջին (Ղուկ. Բ. 52)։ Բայց թէ իր իմաստութիւնն աս աշխարհքէս չէր, ակներեւ ցուցուց Երուսաղէմ՝ ուր ծնողացը հետ գացած էր։ Յիսուս՝ որ ան ատեն դեռ տասներկու տարուան էր, իր ըրած հարցումներովն ու տուած պատասխաններովն օրինաց վարդապետներն ապշեցուց։ Անկէ ետքը պատմութիւնն իր վրայ կը լռէ մինչեւ հրապարակաւ վարդապետութիւն ընելը, զորն որ հասակին երեսներորդ տարին սկսաւ։ Ըրած ազդեցութիւնը զանազան էր. ժողովուրդը գործած հրաշքներուն ու վարդապետութեան զօրութեանը վրայ կը զարմանար. հազարաւորք մինչեւ անապատ տեղեր ետեւէն կ՚երթային, եւ կ՚ուզէին զինքը թագաւոր ընել. բայց Փարիսեցիք վրան կը նախանձէին, եւ իրեն դէմ գրգռուած՝ չէին ուզեր զինքը Մեսիա ճանչնալ։ Միայն մէկ քանի ազնուամիտ ու նախապաշարմունքէ ազատ անձինք, իր աստուածային բնութիւնն ու առաքման բարձր վախճանը ճանչցան եւ իրեն հետեւեցան։ Բայց Յիսուս՝ որուն թագաւորութիւնն աս աշխարհքէս չէր, պարապի հանեց թէ անմիտ ամբոխին զինքը թագաւոր ընել ուզելը, եւ թէ իր թշնամեաց չար խորհուրդները, մինչեւ որ հասաւ այն ժամանակը, որուն մէջ իր կեանքը մարդկան փըր-

կութեան համար իբրեւ գին տուաւ։ Ուստի եւ կենացն 33երորդ տարին խաչի վրայ մեռաւ. երրորդ օրը կենդանի գերեզմանէն յարեաւ, եւ այսով միանգամայն իր առաքման ճշմարտութեան անժխտելի կնիք մը դրաւ։ Յարութենէն ետքը՝ քառասուն օր ալ աշխարհքիս վրայ մնաց, որմէ ետքն իր աշակերտաց առջեւն երկինք համբարձաւ։

## 6. *Առաքելոց գործքերն եւ անոնց գլուխն եկած դէպքերը:*

### ա. Տասներկու առաքելոց ընտրութիւնը։ — Քրիստոսի եօթանասուներկու աշկերտները։

Քրիստոս իր քարոզութեան սկիզբը տասներկու առաքեալ ընտրած, եւ զանոնք իրեն հետ սիրով ու մտերմութեամբ կապած էր։ Ս. Գիրքը կը յիշէ նաեւ եօթանասուներկու աշկերտներ, որոնք թէպէտ Քրիստոսի մերձաւոր էին, եւ իր համբառնալէն ետքն Աւետարանը քարոզեցին, բայց առաքելոց հետ հաւասար աստիճան ու պատիւ չունէին։ Այս եօթանասուներկու աշակերտաց անունները ու գործքերը Ս. Գրոց մէջ չեն գտնուիր, բայց շատ հաւանական է որ ասոնցմէ շատերն անոնք ըլլան, որոնք իբրեւ առաքելոց բարեկամ ու գործակից կը յիշուին. ինչպէս Տիմոթէոս, Տիտոս, Բառնաբաս, Ստեփանոս, Կղեմէս, Ղինոս, Փիլեմոն, որոնցմէ շատերն առաքելական հայրց կարգը կը դասուին։

Քրիստոսէ ընտրուած տասներկու առաքեալներն են.

1. Սիմոն Պետրոս՝ Բեթսայիդա քաղքէն ձկնորս մը՝ որ կրակոտ, զօրաւոր ու արիասիրտ մարդ մըն էր։ Քրիստոս զինքն առաքելոց մէջ առաջինն ըրաւ, եւ բովանդակ Եկեղեցւոյ երեւելի Գլուխ կարգեց։

2. Անդրէաս՝ Պետրոսի եղբայրը, զորն որ Քրիստոս Յովհաննէս առաքելոյն հետ կանչեց։

3. Յովհաննէս՝ ձկնորս Զեբեդէոսի որդին։ Քրիստոս բոլոր առաքեալներէն աւելի զՅովհաննէս կը սի-

րէր. իրեն թոյլ տուաւ որ վերջին ընթրեաց ատեն գլուխը կուրծքին վրայ դնէ, եւ խաչին վրայ չմեռած՝ իր սիրելի մայրն անոր խնամոցը յանձնեց։ Բոլոր առաքելոց մէջէն Յովհաննէս միայն՝ իր աստուածային վարդապետը չարչարանաց ժամանակն ալ չթողուց, եւ մինչեւ խաչին տակն ետեւէն գնաց։

4. Յակոբոս՝ Յովհաննու եղբայրը, որ առաւելաբար Երէց կը կոչուի, նոյնպէս Քրիստոսի մտերիմ աշկերտներէն մէկն էր, եւ Թաբոր լեռան վրայ Պետրոսի ու Յովհաննու հետ իր այլակերպութեանը ներկայ եղաւ։

5. Փիլիպպոս՝ Բեթսայիդա քաղաքը ծնած է. անիկայ զՔրիստոս ճանչցաւ, երբոր Յովհաննէս Մկրտիչն անոր Մեսիա ըլլալուն վկայեց (Յովհ. Ա. 44)։

6. Բարթողիմէոս՝ որուն վրայ Աւետարանին մէջ անունէն զատ բան չենք գտներ։ Գուցէ Նաթանայէլի հետ նոյն անձն ըլլայ, որուն համար Փրկիչն ըսաւ. *Ահա արդարեւ Իսրայելացի՝ յորում նենգութիւն ոչ գոյ* (Յովհ. Ա. 47)։

7. Սիմոն կանանացի՝ որ նաեւ Նախանձայոյզ կը կոչուի. Գործք առաքելոցին մէջ անունը միայն կը յիշուի։

8. Թովմաս Երկուորեակ՝ որն որ իսկզբան Քրիստոսի յարութեան չէր կրնար հաւատալ, բայց ետքը լի հաւատով գոչեց. *Տէր իմ եւ Աստուած իմ* (Յովհ. Ի. 28)։ Ուստի ըլլալը ծանօթ չէ։

9. Մատթէոս՝ Կափառնաում կամ ան կողմերը մաքսաւորութիւն կ'ընէր. Քրիստոս զինքն ալ պաշտօնէն իրեն կանչեց, որուն յօժարակամ հետեւեցաւ։

10. Յակոբոս՝ Ալփէոսի ու Քրիստոսի մօրաքեռ Մարեմայ որդին, որն որ Յակոբոս Կրտսեր ալ կը կոչուի, եւ

11. Յուդա Թադէոս կամ Ղեբէոս՝ Յակոբոս Կրտսերոյն եղբայրը, որուն անունը միայն կը յիշուի։ Ս. Գիրքն աս երկուքն իբրեւ Քրիստոսի եղբարքն՝ այսինքն անոր մերձաւոր՝ ազգականները կը յիշէ։

12. Յուդա Իսկարիովտացի՝ այսինքն Մեռեալ ծովու քով Կարիովթ քաղքէն, որն որ զՔրիստոս մատ-

ներ, եւ ինք զինքը մեռցուց։ Ինչպէս կ՚երեւայ, ագահութիւնն եղաւ պատճառ իր սա ժանտ ու արտասուաց արժանի գործքին. մատնութեան կերպը յայտնի կը ցուցընէ սրտին չարութիւնը։ — Առաքեալք ետքէն իրեն տեղ Մատաթիան ընտրեցին։

Գործք Առաքելոց՝ ամէն առաքելոց ճիշդ ու կատարեալ պատմութիւնը չ՚աւանդեր։ Պետրոսի, Յակոբոսի ու Յովհաննու, բայց ամէնէն աւելի Պօղոսի վրայ կը խօսի։ — Անկէ ետքն այս նիւթոյս վրայ գրուածները անստոյգ են. ասոնց մէջ Եւսեբիոսի տուած տեղեկութիւնները ամէնէն աւելի արժանահաւատ են։

### բ. Հոգւոյն սրբոյ գալուստը։ — Եկեղեցւոյ սկիզբը։

Առաքեալներն՝ որ դեռ իրենց վարդապետին մահուան ատեն բաւ աշխարհի զգածեալ էին, եւ ամէն բանէ կը վախնային, որպէս զի իրենց յանձնուած գործքը կարող ըլլան կատարել, բարձրագոյն զօրութեան մը կը կարօտէին։ Ասիկայ ընդունեցան Պենտեկոստէին օրը. որով եւ Նոր Ուխտը կատարուեցաւ։ Առաքելոց հոգելից խօսքերը, բայց մանաւանդ անոնց պատճառաւ հոն եկած ժողովրդոց առջեւ զանազան լեզուաւ խօսելնին, անոնց վրայ այնպէս մեծ ազդեցութիւն ըրաւ, որ նոյն օրը 3000 հոգի մկրտուելով՝ քրիստոնէից հասարակութեան մէջ առնուեցան։ Ասոնք ետքէն Աւետարանին սերմն իրենց հայրենիքը տարին, եւ առաքելոց ետքէն ընելու քարոզութեան ճամբայ բացին։

### գ. Քրիստոնէից առաջին հասարակութիւնն Երուսաղէմ։ — Եօթը սարկաւագաց ընտրութիւնը։

Երուսաղէմ գտնուող հաւատացելոց հասարակութեան (որուն թիւը քիչ ժամանակուան մէջ 5000ի հասաւ) հաւատքն ու սէրն այնպէս զօրաւոր էր, որ ամէնքն իրենք զիրենք իբրեւ մէկ ընտանեաց անդամ կը նկատէին, եւ մէկ սիրտ ու մէկ հոգի էին։ Հարուստ-

ներն յօժարութեամբ իրենց ինչքն աղքատաց կը բաշխէին, եւ առաքելոց ազատ տրամադրութեանը տակ կը ձգէին։ Բայց ընչից հասարակաց ըլլալն ոչ մէկու մը պարտք դրուած էր, եւ ոչ ալ Երուսաղէմէն դուրս ուրիշ քրիստոնեայ հասարակութեանց մէջ կար։ Այս նոր հասարակութեան անդամներն ի սկզբան Հրէից հետ հաղորդութեան մէջ էին, եւ անոնց սովորութիւնները կը պահէին. բայց միշտ իրենք զիրենք իբրեւ Աստուծմէ ընտրեալ առանձին ժողովուրդ մը կը նկատէին։ Մէկզմէկ եղբայր ու հաւատացեալ կը կոչէին, բայց Հրեայք իրենց Նազովրեցի կամ Գալիլեացի, իսկ հեթանոսք՝ Քրիստոնեայ (Christiani) անունը կու տային։ — Հելլենացի՝ այսինքն յունարէն խօսող գաւառներուն Հրեայք, սկսան տրտնջել, թէ ողորմութիւն բաժնելու ատեն իրենց այրիներուն՝ Եբրայեցւոց այրիներուն պէս չի նայուիր, որ պատճառաւ առաքեալք եօթը սարկաւագ ընտրեցին. ասոնք միանգամայն Աստուծոյ խօսքին սպասաւոր էին։

### Գ. Քրիստոնէից դէմ Հրէից հանած առաջին հալածանքը։ Ս. Ստեփանոսի մարտիրոսական մահը։

Սուրբ Ստեփանոս՝ որ եօթը սարկաւագներէն մէկն էր, յայտնի կը քարոզէր թէ Հին Կտակարանը Քրիստոսի գալստեամբը վերջացած է, որով ըստ Հրէից ըմբռնմանն ամենամեծ հայհոյութիւնը կ՚ընէր։ Ասոր համար Հրեայք զինքը բռնեցին ու քարկոծեցին։ Ս. Ստեփանոս առաջին մարտիրոսն է, այսինքն Քրիստոսի հաւատոցն առաջին վկան։ Նոյն միջոցին հալածանք ելաւ նաեւ Երուսաղէմ գտնուող քրիստոնէից դէմ, որոնք քաղաքը թող տալով Պաղեստին, Սամարիա, Փիւնիկէ, Ասորիք ու Կիպրոս փախան, եւ հոն նոր քրիստոնեայ հասարակութիւններու հիմ դրին։

### Ե. Պօղոս առաքելոյն դարձը։

Քրիստոնեաները հալածողներուն գլխաւորներէն էր Սաւուղ անունով մէկը, որ Կիլիկիայ Տարսոն

քաղաքը Հրէայ ծնողքներէ ծնած էր, որոնք հռոմէական քաղաքացւոյ իրաւունք ունէին: Փարիսեցւոց աղանդին մէջ կրթուած եւ յունական գիտութեամբ հրահանգուած այս երիտասարդը, յանկարծ հրաշքով նոր վարդապետութեան նախանձաւոր աշկերտներէն մէկն եղաւ (35): Քահանայապետէն իշխանութիւն առած՝ քրիստոնեաները հալածելու համար Դամասկոս գացած ատեն, ճամբան Քրիստոս իրեն երեւցաւ (Գործք. Առ. Թ. 2. Ա. Կորնթ. ԺԵ. 8—9), եւ ինք զինքն իրեն յայտնելով ու սիրտը լուսաւորելով, իր վարդապետութիւնը տարածելու ընտիր ու յարմար գործիք մ'ըրաւ: Մեծ հիացմամբ տեսաւ աշխարհքը, որ քրիստոնեաները հալածող Սօղոսը՝ քիչ մ'ետքն իբրեւ հեթանոսաց Պօղոս առաքեալը մէջտեղն ելաւ: Իր կոչման մէջ հաստատուելու համար՝ Ապառաժ Արաբիա երեք տարի առանձնութեան մէջ ապրելէն ետեւ, Դամասկոս գնաց եւ հոն սկսաւ զՔրիստոս քարոզել: Անկէ ետքը Պետրոս առաքելոյն հետ տեսնուելու համար 38ին Երուսաղէմ գնաց: Հոս ժողովրդանոցին մէջ աներկիւղ Աւետարանը քարոզեց, բայց քիչ մ'ետքը հարկադրեցաւ անկէ փախչիլ եւ Տարսոն իր հայրենիքն երթալ, որովհետեւ Հելլենացիք զինքը մեռցնել կ'ուզէին:

Գ. Հեթանոսներն եկեղեցւոյ մէջ ընդունուիլն: — Անտիոքի առաջին քրիստոնէից համայնութիւնը: — Առաքելոց Երուսաղէմ գումարած ժողովը:

Հեթանոսներն եկեղեցւոյ մէջ ընդունուելու ժամանակն ալ հասած էր: Պետրոս առաքեալն ասոր նկատմամբ տեսիլքի մը մէջ երկնային յայտնութիւն մ'ունենալով, Կեսարիայի Կոռնելիոս հարիւրապետն եւ անոր բոլոր ընտանիքն ու բարեկամները քրիստոնեայ մկրտեց: Անկէ ետքը քրիստոնէութիւնը հեթանոսաց մէջ այնպէս շուտ տարածուեցաւ, որ Երուսաղէմի եկեղեցիէն ետքը, որն որ միայն հրէութենէ դարձող քրիստոնեաներէ կազմուած էր, Անտիոք՝

տիեզերական հռոմէական պետութեան առաջին քաղաքը, նոր մայր եկեղեցի մը հաստատուեցաւ։ Այս ամէն բան լսելով առաքեալները, զԲառնաբաս՝ որ Հոգւով սրբով լի մարդ մըն էր, Անտիոք խաւրեցին եւ Պօղոս ալ Տարսոն քաղաքէն հոն կանչուելով, նորահաստատ եկեղեցւոյն հոգն ու կարգաւորութիւնն անոնց յանձնուեցաւ։ Նոյնքէն Անտիոքի եկեղեցւոյն առաջնորդութիւնը Պետրոս առաքեալն իր վրան առաւ, ուր եպիսկոպոսական աթոռ մը հաստատեց, զորն որ Հռոմ գացած ատեն Եւոդիոսի յանձնեց, որուն յաջորդեց Ս. Իգնատիոս Աստուածազգեաց հայրապետը։

Այս կերպով եղաւ հեթանոսաց մուտքն եկեղեցւոյ մէջ։ Բայց հրէութենէ դարձող քրիստոնեաներէն ոմանք՝ ասոնց համար սկսան ըսել թէ չեն կրնար փրրկուիլ, եթէ մովսիսական օրէնքը չեն պահեր, որ պատճառաւ Անտիոքի եկեղեցւոյն մէջ հակառակութիւն ու վէճ ելաւ։ Այս վէճն որոշելու համար՝ հարկ եղաւ որ բոլոր առաքեալք ու եկեղեցւոյն երիցունքը Երուսաղէմ ժողվին (50 — 52)։ Պօղոս ու Բառնաբաս առաքեալներն ալ հոն եկան, եւ ժողովոյն մէջ նախ Պետրոս առաքեալը խօսեցաւ եւ քրիստոնէութեան դարձողներուն ազատութիւնը պաշտպանեց։ Ուստի եւ ժողովոյն որոշումն այս եղաւ, որ հաւատացեալք ալ պարտական չեն մովսիսական օրէնքները պահել, եւ հեթանոս քրիստոնեայք պէտք են միայն հրաժարիլ՝ Ի զոհելոյ կռոց եւ յարենէ եւ ի հեղձուցելոյ եւ ի պոռնկութենէ (Գործք. Առ. ԺԵ. 29.)։ Այս վճիռն իբրեւ Հոգւոյն սրբոյ առաջնորդութեամբն եղած որոշում, Ասորիքի եւ Կիլիկիայի եկեղեցիներուն ալ հաղորդուեցաւ։

Է. Հրէից՝ քրիստոնեաներուն դէմ հանած երկրորդ հալածանքը։ — Ս. Յակոբայ մարտիրոսական մահը։

Հերովդէս Ագրիպպաս Ա. (Մեծ Հերովդէսին թոռը), որուն Հռոմի կայսրները Հրէաստանի թագաւորութիւնը շնորհած էին, Երուսաղէմի նորածին եկեղեցւոյն առաջնորդներուն դէմ հալածանք հանեց

հրահանգուած էր, կրնայ ստուգութեամբ ըսուիլ՝ որ Հռոմէն Աղեքսանդրիա գացած եւ այնտեղաց եկեղեցին հաստատած է։ Իր աւետարանը Պետրոս առաքելոյն առաջնորդութեանը տակ եւ անոր կենդանութեան ժամանակը գրած է. բայց կ'երեւայ որ. երբեւ իւր հոգեւոր վարդապետին ու հօրը յիշատակ՝ անոր մեռնելէն ետքը հրատարակած է։ Բառնաբասին վրայ՝ Պօղոսէն բաժնուելէն ետքը, ստոյգ տեղեկութիւն մը չունինք. Նոյնպէս Ղուկասին վրայ, որ Անտիոք ծնած եւ արուեստիւ բժիշկ էր։ Իրմէ ունինք Ղուկայ Աւետարանն ու Գործք Առաքելոցը։ — Պօղոս առաքեալն իր կոչման մէջ՝ միւս ամէն առաքեալներէն՝ աւելի գործունէութիւն ցուցուց։ Քրիստոսի վրայ ունեցած վստահութիւնը հաստատուն եւ անշարժ էր, եւ վտանգներու մէջ քաջասրտութիւնն անյողդողդ։ Մարդկային սրտին զգածմանցը խորունկ թափանցելէն զատ, նաեւ զարմանալի ճարտասանութիւն մ'ունէր։ Անտիոքէն սկսեալ՝ զանազան անձանց ընկերակցութեամբ, իր երեք առաքելական ճամբորդութիւններն ըրաւ, եւ Ասիա ու Եւրոպա քրիստոնէութիւնը տարածելու աշխատեցաւ։ Ուր որ կ'երթար՝ քրիստոնէական հասարակութիւններ կը հիմնէր, որոնք երկնաւոր շնորհաց օգնութեամբը շուտ կը ծաղկէին, եւ որոնց հետ իր հոգելից թղթերովը հաղորդութեան մէջ էր։ Իր վերջին առաքելական գործունէութիւնը ցուցուց՝ Հռոմ. գտնուող քրիստոնէից դէմ Ներոն կայսեր հանած հալածանքին ժամանակ։ Չի գիտցուիր թէ որչափ ատեն ազատութեամբ գործեց, բայց աս ստոյգ է որ 67ին Հռոմ գլխատուեցաւ։ Յակոբոս Կրտսերը՝ Երուսաղէմի առաջին եպիսկոպոսն, արդէն 62ին սպանուած էր. իր առաքելական թուղթն ուղղած է ի մասնաւորի հրէութենէ դարձած քրիստոնէից, զորոնք յորդորելով որ հաւատոյ համար քաշած նեղութիւններնուն սիրով համբերեն, եւ միանգամայն կը ցուցընէ որ հաւատքն առանց սիրոյ գործքերու ոչինչ է։

Ս. Յովհաննէս առաքեալը՝ Երուսաղէմի եկեղեցին հաստատելու համար Պետրոս առաքելոյն օգնելէն ետեւ, Փոքր Ասիա գնաց եւ Եփեսոս նստելով

այն կողմանց եկեղեցիներուն հիմնարկութեանն ու յառաջադիմութեանն աշխատեցաւ։ Դոմետիանոս կայսեր հրամանաւը՝ Պատմոս կղզին աքսորուելով, հոն Յայտնութեան գիրքը գրեց (96)։ Դոմետիանոսի մահուանէն ետքը՝ Ներւէն Եփեսոս դառնալով, հոն իր աւետարանն եւ առաջին կաթուղիկէ թուղթը գրեց։ Ս. Յովհաննէս՝ իր աւետարանին մէջ Փրկչին աւետիքը բարձր իմաստներով ու վսեմ կերպով կը նկարագրէ, եւ իր աստուածութեանը փառաւոր վկայութիւն կու տայ։ Ս. Յովհաննէս Եփեսոս բնական մահուամբ մեռաւ խոր ծերութեան հասակի մէջ (101)։ — Իսկ Ս. Կուսին վրայ՝ շատ քիչ տեղեկութիւն ունինք։ Անտարակոյս է որ Յովհաննէս առաքեալը՝ Քրիստոսի յանձնարարութեան համաձայն, զինքը մինչեւ մահն իր քովը պահած է։ Բայց մահուան տարին ու տեղը անստոյգ է. հաւանական կ'երեւայ որ 45ին Երուսաղէմ մեռած ըլլայ։

Առաքելոց մեռած տեղն՝ արդէն քրիստոնէութիւնն աշխարհքիս ամէն ծանօթ մասերը տարածուած ու հաստատուած կը գտնենք, որմէ յայտնի կը տեսնուի առաքելոց մեծ գործունէութիւնը։

### 7. Հրէական պատերազմն ու Երուսաղէմի կործանումը։

Հերովդէս Ագրիպպաս թագաւորին մահուանէն ետքը (44), Պաղեստին դարձեալ հռոմէական պետութեան գաւառներէն մէկն եղաւ, եւ հռոմայեցի կուսակալաց կառավարութեան տակն ինկաւ։ Ասոնք ժողովուրդը զանազան առիթներու մէջ հարստահարելով, Հրէից՝ Հռոմայեցւոց դէմ ունեցած ատելութիւնն աւելի եւս գրգռեցին։ Գեսսիոս Փղորոս կուսակալը՝ զոր Ներոն կայսրը դրած էր, սկսաւ զիրենք սաստիկ նեղել, եւ կարծես թէ մասնաւոր ժողովուրդն ոտք հանելու միջոցներ կը հնարէր։ Վերջապէս ժողովրդեան դժգոհութիւնը յայտնի ապստամբութեան դառնալով (66), Երուսաղէմի պարիսպներուն աշտարակներուն վրայ յարձակեցան, եւ մէջը գտնուած հռո-

մայեցի պահակապան զօրքն անխնայ ջարդեցին։ Այս դէպքն եղաւ առինահեղ պատերազմին պատճառը։ Քրիստոնեայք Երուսաղէմ թող տալով, Յորդանան գետին անդիի կողմը՝ Պեղղա քաղաքը քաշուեցան։ Վեսպասիանոս Հռոմայեցւոց զօրավարը՝ զօրաց բազմութեամբ Հրէաստան մտաւ, եւ նոյն իսկ Հրէից մէջ եղած երկպառակութիւնն իր օգտին գործածեց։ Յովհաննէս Գիսքալա անունով փառասէր մարդ մը՝ Գալիլեայէն Երուսաղէմ գալով, հոն արհաւրաց կառավարութիւն մը հաստատեց։ Անանիա քահանայապետը՝ ժողովուրդն անոր դէմ ոտք հանեց, եւ Յովհաննէս բազմութեան դէմ չկարենալով կենալ, տաճարին ներքին կողմերն ամրացաւ. այս երկպառակութեան պատճառաւ եղած կռիւներն երկու կողմանէ հազարաւորներու կեանքն արժեց։ Նոյն միջոցին Վեսպասիանոս՝ որ Հրէաստան բազմաթիւ քաղաքներ ու գեղեր քանդած աւերած էր, լսելով որ Ներոն սպանուեր ու Հռոմայեցի լեգէոններն իրարու դէմ ելեր են, ստիպուեցաւ Հրէաստան թողուլ եւ Իտալիա դառնալ։ Այս պատճառաւ պատերազմին ընդհատիլը, Հրէաստանի ու առանձինն Երուսաղէմի տառապանքն աւելի եւս մեծցուց։ Գողերու եւ աւազակներու բազմութիւն մը՝ որոնք իրենց արուեստն ի գործ դնելու յարմար ժամանակ գտած էին, ամէն կողմանէ Սիմոն անունով սրիկայի մը դրօշին տակ ժողվեցան եւ մայրաքաղքին վրայ քալելով զանիկայ պաշարեցին։ Քաղաքացիք տեսնելով որ ներսէն դրսէն նեղուած են, Սիմոնին հետ Յովհաննէս Գիսքալացւոյն դէմ միաբանեցան ու զինքը ներս առին. անկէ ետքն Երուսաղէմ կռուոյ եւ արիւնհեղութեան ասպարէզ դարձաւ։ Երկու տարի ետքը՝ Վեսպասիանոս կայսր ընտրուելով, Հրէից դէմ սկսած պատերազմն իր Տիտոս որդւոյն յանձնեց, որն որ եկաւ վեց վտաւան հեռաւորութեամբ Երուսաղէմ քաղաքը պաշարեց։ Վերահաս հասարակաց վտանգն՝ իրարու հակառակորդ երկու կողմնակցութիւններն, առ ժամանակ մը արտաքին թշնամւոյն դէմ միաբանեց։

Տիտոս քաղքին հիւսիսային կողմը յարձակմամբ

առնելէն ետեւ, Յովսեպոս Փլաւիոս Հրեայ պատմագիրը, որն որ Հռոմայեցւոց բանակին մէջն էր, պաշարուած Հրէից խաւրեց՝ որ զիրենք անձնատուր ըլլալու համոզէ. բայց Հրեայք զինքն անարգանօք մերժեցին։ Ա՛լ անկէ ետքը Քրիստոսի 37 տարի յառաջ ըրած մարգարէութիւնները Երուսաղէմի գլուխն եկան։ Ան ատեն արտասուելով ըսած խօսքերը թէ. Եկեսցեն աւուրք ի վերայ քո, եւ պատեսցեն զքեւ թշնամիք քո պատնէշ. եւ պաշարեսցեն զքեզ, եւ նեղեսցեն զքեզ յամենայն կողմանց (Ղուկ. ԺԹ. 43.), բառ առ բառ կատարուեցան։ Ինչու որ Տիտոս դրսէն պաշար ներս չխոթելու եւ քաղաքն անձնատուր ըլլալու ստիպելու համար, քաղաքին չորս կողմը բարձր պատ մը շինել տուաւ, որով կերակրոյ պակասութիւնն այնչափ սաստկացաւ, որ գարշելի բաներ ուտելու սկսան եւ հազարաւորք անօթութենէ մեռան։ Նոյն իսկ մարք իրենց զաւակը խորոված կ՚ուտէին, զորն որ տեսնելով Հրեայք ու Հռոմայեցիք՝ սկսան զարշիլ ու քստմնիլ։ Փողոցներու եւ տներու մէջ՝ ամէն մեռնողներուն մարմինները վրայէ վրայ դիզուած կը կենային, որոնց ժանտահոտութիւնն օդն ապականելով, տարափոխիկ հիւանդութիւններ յառաջ եկան, որմէ նոյնպէս բազմաթիւ մարդիկ մեռան։ Աս ամէն չարիքները յամառ Հրէից յառաջագոյն սպառնացուած էր, եթէ առ Աստուած դառնալու չըլլան։ Քրիստոս Տէրն մեր իրենց ըսած էր. Զի եղիցի յայնժամ նեղութիւն մեծ, որպիսի ոչ եղեւ ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցայժմ. եւ ոչ այլ լիցի* (Մատթ. ԻԴ. 21.)։

Հռոմայեցիք նորէն յարձակում մ՚ըրին եւ Անտոնիա դղեակն առին։ Քանի մ՚օր պատերազմելէն ետեւ տաճարին հիւսիսային ճակատը կրակէն ապականեցաւ։ Տիտոս երբոր տեսաւ՝ որ կրակը նոյն իսկ տաճարին կը սպառնայ, հրամայեց որ մարեն։ Բայց հռոմայեցի զինուոր մը ինք իրմէ դրդուած՝ խանձողի կտոր մ՚առնելով պատուհանէն տաճարը նետեց։ Կրակն

* Յովսեպոս Փլաւիոս իբրեւ ականատես վկայ կը գրէ. «Ժողովուրդ մ՚եղած չէ երբեք որ այնչափ նեղութիւն կրած ըլլայ, բայց աշխարհքիս սկզբանէ գտնուած չէ նաեւ ազգ մը՝ որ այնչափ անօրէնութեամբ լի ըլլայ»։ (Յով. Պատմ. Հրէից. Ե. 10. 5.)։

անմիջապէս ամէն կողմ տարածուեցաւ, եւ բոցն այնպիսի սաստկութեամբ սկսաւ ելլել, որ ալ մարելն անկարելի եղաւ։ Տաճարին կործանելովն ինկաւ նաեւ Հրէից վերջին ճիգն ու զօրութիւնը։ Տիտոս բոլոր քաղաքին տիրեց 70ին, Օգոստոս 10ին։ Անկից վերջը սկսաւ անգութ կոտորածը, որն որ ամբողջ օր ու գիշեր մը տեւեց։ Պաշարման ատեն մեռնողներուն թիւը մէկ միլիոնէն աւելի է. 97.000 հոգի գերի ինկան, որոնց մէկ մասը Տիտոս իր յաղթանակին պահեց, իսկ մէկալ մասն իբրեւ գերի ծախեց. Յովհաննէս Գիսքաղացին ցկեանս բանտ դրուեցաւ, իսկ Սիմոն շղթայակապ Տիտոսի յաղթանակին համար Հռոմ խաւրուեցաւ։ Տաճարին մնացած պատերը Տիտոսին հրամանաւը հարթ յատակ եղան, քաղքին որմերը քակուեցան, երկիրը հերկուեցաւ, ցուցընելու համար որ հոն ալ ամենեւին չէնք պիտ'որ չշինուի։ Աս եղաւ Աստուծոյ արդար դատաստանին զարհուրելի պատիժը՝ այն ապերախտ ժողովրդեան վրայ, որն որ իր Տէրն ու Օծեալը խաչ հանեց ու սոսկալի անէծքն իր վրայ առաւ գոչելով. Արիւն դորա է վերայ մեր եւ է վերայ որդւոց մերոց։ — Վեցամսեայ պաշարմանէ ետքն անհետ եղաւ այն գեղեցիկ ու սքանչելի քաղաքը, որ այնչափ ժամանակ ծաղկած ու պերճացած էր։ Մեծագործ ու հոյակապ տաճարը՝ աւերակաց տակը թաղուեցաւ, քահանայութիւնը ջնջուեցաւ, զոհն ի սպառ դադրեցաւ, եւ հրէական պետութիւնը քայքայեցաւ։ Թէպէտ Ադրիանոս կայսեր ատեն (132), Հրեայք դարձեալ փորձեցին իրենց ինկած տէրութիւնը կանգնելու, բայց երբոր չյաջողեցաւ, աշխարհքիս ամէն կողմը ցրուեցան, եւ հիմայ ուրիշ ազգերէ զատուած կ'ապրին, իբրեւ մշանջենաւոր վկայ Աստուծոյ արդարութեանը։

Հրէական տէրութեան կործանումը՝ քրիստոնէութեան օգտակար եղաւ, ինչու որ քրիստոնէութիւնը հրէութենէ բոլորովին զատուելով, իր սեպհական նկարագրին համաձայն սկսաւ ազատ զարգանալ։

## 8. Քրիստոնէութեան տարածումը:

Առաքեալք քրիստոնէութիւնը տարածելու ատենները գլխաւորաբար մայրաքաղաքներուն մէջ կը գտնէին, եւ կ'աշխատէին անոնց մէջ հաստատութիւններ հաստատել, որպէս զի այն գլխաւոր քաղաքներէն քրիստոնէական կրօնը շրջակայ պզտիկ քաղաքներն ու գեղերը դիւրաւ մուտք գտնէ։ Այսպէս եղան Արմատական կամ Մայր Եկեղեցիները, որոնց գլխաւորներն էին՝ Երուսաղէմ, Անտիոք, Աղեքսանդրիա եւ Հռոմ։ Առաքելոց մահուանէն ետքը՝ իրենց յաջորդներն սկսուած գործքն յառաջ տարին։

Կործանած Երուսաղէմ քաղաքն աւերակներէն ըստ մասին դարձեալ կանգնուեցաւ. Հրէութենէ դարձող քրիստոնէից հասարակութիւն մը՝ Սիմոն անունով եպիսկոպոսին հետ հոն դարձան, որուն հետզհետէ տասնուերեք եպիսկոպոս յաջորդեցին, մինչեւ քաղքին երկրորդ կործանումը Ադրիանոս կայսեր ատեն։ — Երուսաղէմէն ետքը շատ երեւելի էր Կեսարիայի եկեղեցին, որ առաքեալներէն հաստատուած էր։ — Փիւնիկէ՝ քրիստոնէութիւնը ծաղկեալ վիճակի մէջ էր. Տիւրոսի եկեղեցւոյն սկիզբն առաքեալներէն է։

Արեւելեան եկեղեցիներուն մէջ՝ ամէնէն հռչակաւորն էր Անտիոքի եկեղեցին. հոն նստող եպիսկոպոսներուն յաջորդութիւնը Ս. Պետրոսէն սկսեալ մինչեւ Վիտալիս ծանօթ է, որ ըստ կարգի քսաներորդ է (†318)։ Անուանի էր նաեւ Անտիոքի երախայից դպրոցը, ուր քրիստոնէական հաւատոյ վարդապետութիւններէն զատ՝ գլխաւորաբար Ս. Գրոց ուսման կը պարապէին։ — Քրիստոնէութիւնը շատ կանուխ մտաւ նաեւ Միջագետք, Մարաստան, Պարսկաստան ու Բակտրիա։ — Կիլիկիա՝ ուր առաքեալները քրիստոնէութիւնը տարածած էին, Տարսոնի ու Մոպսուեստիայի եկեղեցիները շատ երեւելի եւ ծաղկեալ էին։ — Ասիայի բազմաթիւ եկեղեցիներուն մէջէն յիշուելու արժանի են Եփեսոսի եկեղեցին, որուն Պօղոս առաքեալն առաջին եպիսկոպոս դրաւ զՏիմո-

թէոս. Զմիւռնիայի եկեղեցին՝ որուն եպիսկոպոսն էր անուանի Ս. Պողիկարպոսը, եւ Բիւթանիայի մէջ՝ Նիկոմեդիայի եկեղեցին։ Եգիպտոս շատ կանուխ մտաւ քրիստոնէութիւնը։ Բոլոր հնութիւնը կը վկայէ՝ որ Մարկոս Աղեքսանդրիայի առաջին եպիսկոպոսն եղաւ, որ ըստ կարգի եւ ըստ պատուոյ քրիստոնէութեան երկրորդ եկեղեցին էր։ Աղեքսանդրիա՝ այս միջոցիս արեւելքի ուսումնական կրթութեան կեդրոնն եղած էր։ Հաստեղուան երախայից դպրոցը՝ Անտիոքի դպրոցին հակառակ ուղղութիւն մը բռնած էր։ Ժամանակին կարօտութեանցը միտ դնելով՝ կը ջանար քրիստոնէութիւնը գիտնական հիման վրայ հաստատել. բայց շատ քննութեան սէրը երբեմն յանդգնաորից մոլորութիւններ յառաջ բերաւ, որոնք եկեղեցւոյ շատ վնաս տուին։ Այս դպրոցին ուսուցիչներուն երեւելիներն են, Պանդենոս, Կղեմէս Աղեքսանդրացին, Որիգենէս եւ այլն։ Քրիստոնէութիւնն Աղեքսանդրիայէն շատ դիւրաւ վերին Եգիպտոս տարածուեցաւ, ուր արդէն երկրորդ դարուն վերջը հաստատուն արմատ ձգած էր։

Կարքեդոն ու բոլոր Հիւսիսային Ափրիկէ՝ քրիստոնէութիւնն Եգիպտոսէն չտարածուեցաւ, հապա Հռոմէն, եւ երկրորդ դարուն վերջերն արդէն բարգաւաճ կը ծաղկէր։ Երրորդ դարուն կէսին՝ քրիստոնէութիւնը Մաւրիտանիա ու Նումիդիա մտաւ։ Հիւսիսային Ափրիկէի մայր եկեղեցւոյն՝ Կարքեդոնի եպիսկոպոսը Կիպրիանոս, որ Ափրիկէի եպիսկոպոսներուն մէջ մինչեւ սուրբ Օգոստինոս՝ ամէնէն երեւելին եւ անուանին է, իր ժամանակը կրցաւ 90 նումիդացի եպիսկոպոսներով եկեղեցական ժողով մը գումարել (256)։

Եթէ Եւրոպա անցնինք՝ կը տեսնենք որ Ասիայի սահմանակից Թրակիայի գաւառներուն մէջ, քրիստոնէութիւնը շատ կանուխ արդէն տարածուած էր։ Մակեդոնիա ու Յունաստան նոյն իսկ առաքեալք քարոզած էին։ Անտարակոյս է որ Իտալիա՝ Հռոմ առաջին քաղաքն եղաւ, ուր քրիստոնէական հասարակութիւն մը կազմուեցաւ։ Հռոմայ առաջին եպիսկոպոսն եղաւ սուրբ Պետրոս, որուն յաջորդեցին Լինոս,

Անտիոքոս ու Եդեսիա։ Թէ ինչ չափ շուտ աճե-ցաւ Հռոմայ եկեղեցին, անկէ կրնայ իմացուիլ՝ որ տա-դէն 250ին 46 քահանայ ունէր եւ Դիոկղետիանոսի հալածանաց ժամանակ Հռոմ 40 եկեղեցի կար։ Իտա-լիոյի ուրիշ եկեղեցիներուն հիմնարկութիւնը սուրբ Պետրոսի աշակերտներուն կ՚ընծայուի։ Չի գիտցուիր թէ քրիստոնէութիւնն երբ մտաւ Սպանիա։ Պօղոս առաքելոյն (Հռոմ. ԺԵ. 24) ըրած խօսքերէն, եւ Կղեմէս Հռոմայ եպիսկոպոսին իրեն համար վկայելէն թէ իր առաքելական գործունէութիւնը մինչեւ արեւ-մտից սահմանը տարածած է, կրնայ մակաբերուիլ որ Պօղոս առաքեալը քրիստոնէութիւնը Սպանիա քարո-զած ըլլայ. բայց ասոր դէմ կ՚ելլէ այն դրական ստուգութիւնը՝ որ 250էն յառաջ քրիստոնէութիւնը հոն շատ քիչ ծանօթ էր. անկէ քիչ մ՚ետքը բոլոր թերակղզւոյն վրայ տարածուած կը գտնենք։

Նոյնպէս ստոյգ տեղեկութիւններ չունինք թէ երբ մտաւ քրիստոնէութիւնը Գաղղիա. հաւանական է որ երկրորդ դարուն կէսին մտած ըլլայ, Փոքր Ասիայի հետ ունեցած առեւտրական յարաբերութեանց առթիւ։ Սուրբ Պողիկարպոսին աշակերտը՝ Պոթինոս, Լիոնի ու Վիէննայի առաջին եպիսկոպոսն եղաւ. իրեն յա-ջորդեց Իրենէոս՝ որ նոյնպէս Ս. Պողիկարպոսի աշկերտա-ներէն էր։ Գրիգոր Տուրացւոյն պատմութեան նայե-լով, որ Զ. դարուն իր պատմութիւնը գրած է, եր-րորդ դարուն կէսին Փաբիանոս Քահանայապետն եօ-թը քարոզիչ Գաղղիա խաւրեր է, որոնք եօթը քա-ղաքաց մէջ եկեղեցիներ հաստատեր եւ անոնց եպիս-կոպոսն եղեր են։ Անկէ ետքը քրիստոնէական կրօնը Գաղղիայի ամէն կողմը տարածուեցաւ։

Վերին ու ստորին Գերմանիա՝ այսինքն Ռենոս գետին ձախ կողմն եղող գաւառներուն մէջ՝ մինչեւ Բեղգիա, Իրենէոսի վկայութեան նայելով, քրիստո-նէութիւնն երկրորդ դարուն մէջ արդէն կար։ Բայց թէ Ռենոսի աջի կողմը՝ բուն Գերմանիայի մէջ նոյն ժամանակ արդէն քրիստոնէութիւնը տարածուած էր, չի կրնար ապացուցուիլ։

Բրիտանիա ալ քրիստոնէական հաւատքը կա—

նուխ ժամանակ մուտք գտաւ։ Ըստ Եւսեբիոսի՝ Պօղոս առաքեալն անձամբ հոն գացած է. բայց՝ շատ հաւանական է որ Փոքր Ասիայէն կամ Լիոնէն քրիստոնէութիւնը Բրիտանիա անցած ըլլայ։ Ինչպէս Տերտուղիանոս ու Որիգինէս կը վկայեն, արդէն երրորդ դարուն սկիզբը, հոն քրիստոնէական հասարակութիւններ կային։

## 9. Հայոց առաջին կամ մասնակի քրիստոնէութեան դարձը:

Հայաստան ալ առաքելոց ժամանակէն արդէն քրիստոնէութիւնը քարոզուած կը պատմուի։ Ըստ ազգային գրութեանց՝ Աբգար Եդեսիայի թագաւորը, քանի մը նախարարաց ձեռքով Քրիստոսի հրաշագործութիւնները լսելով, զինքը թղթով հրաւիրեց որ գայ իր հիւանդութիւնը բժշկէ։ Քրիստոս՝ Աբգարին պատասխան գրեց, խոստանալով որ իր համբառնալէն ետքն աշակերտներէն մէկը կը խրկէ, որ զինքը բժշկէ, եւ իրեն ու ժողովրդեանը ճշմարիտ հաւատքը սորվեցնէ։ Քրիստոսի երկինք համբառնալէն ետեւ, Թադէոս՝ եւթանասնից մէկը (ըստ Եւսեբիոսի Թադէոս առաքեալը) Եդեսիա եկաւ, զԱբգար բժշկեց, արքունիքն ու բոլոր քաղաքը քրիստոնէական հաւատքը քարոզեց, եւ իրենց եպիսկոպոս ձեռնադրեց զԱդդէ՝ թագաւորին խոյրարարը։ Բարթողիմէոս առաքելոյն համար ալ կ'ըսուի որ Հնդկաստանէն ու Արաբիայէն զատ, Մեծ Հայաստանի Հեր ու Զարեւանդ գաւառներն ու Անձեւացեաց երկիրը քրիստոնէական հաւատքը քարոզած եւ հոն վկայած ըլլայ (50)։ Սակայն այս առաջին քարոզութեան ատեն՝ քրիստոնէութիւնը Հայաստանի մէջ չկրցաւ հաստատուն արմատ ձգել։ Աբգարին յաջորդն Անանուն՝ թագաւորական գահն ելլելուն պէս, Եդեսիայի կռատունները բանալ տուաւ եւ Ադդէ եպիսկոպոսը մարտիրոսական մահուամբ մեռցուց։ Նոյնպէս բուն Հայաստանի վրայ տիրող Սանատրուկ հօրաքեռորդին, որ Թադէոսի ձեռքով քրիստոնէութիւնն ընդունած էր, նախարարներէն

վախճանելով հեթանոսութեան դարձաւ, եւ իր Սան-դուխտ աղջիկը՝ Թադէոս առաքելոյն հետ քրիստո-նէական հաւատոյ համար նահատակեց։ Այսպէս քրիս-տոնէութեան ծաղիկը Հայաստան բացուած չբացուած թառամեցաւ։

## 10. Քրիստոնէութեան տարածման արգելքները:

Չի կրնար ուրացուիլ՝ որ քրիստոնէութիւնն աշ-խարհքիս վրայ տարածուելու սկսած ատեն, կային պատճառներ որ իրեն տարածման նպաստաւոր էին։ Քրիստոնէական կրօնք՝ հոգեկան ըլլալով, ամէն մար-դու սիրտը դիւրաւ կրնայ մուտք գտնել, ինչ ազգէ, որ աստիճանէ եւ որպիսի կառավարութեան տակ թէ ըլլայ. ինչու որ քրիստոնէութիւնը մարդկան արտա-քին յարաբերութեանցը չխառնուելով, միայն անոնց սրտին ու կամքին վրայ տիրել կ'ուզէ. իր նկարագիրն ազգային չէ, հապա համաշխարհական՝ այսինքն ճշմա-րիտ կաթուղիկէական է։ — Թէ առաքելոց ժամանակ եւ թէ անկէ ետքը քրիստոնէական կրօնին տարածման գլխաւորաբար ճամբայ բացին հրաշքները, որոնք նախա-պաշարմունքէ ազատ հեթանոսաց յայտնի կը ցուցը-նէին, որ քրիստոնէական կրօնն երկինքէն երկիր իջած լոյս մըն է։ — Հեթանոսներէն շատերը՝ այս նոր լուսոյն առաջին փափաք մը կը ցուցընէին, որ իրենց հոգեւոր ու բարոյական թշուառութիւնը ճանչնալէն յառաջ կու գար։ — Ամէնքն որ քրիստոնէութիւնը կ'ընդու-նէին ներքուստ կը փոխուէին, եւ այնպիսի առաքինու-թիւններ ի գործ կը դնէին, որոնք այն ժամանակին մոլութեանց բոլորովին ընդդիմակաց էին. շատերը նաեւ պատրաստ էին իրենց հաւատքին համար կեան-քերնին ալ զոհելու։ Այս զարմանալի երեւոյթը՝ շատ մտացի մարդիկներու ճշմարտութեան ճամբուն առաջ-նորդեց։ — Ան ատեն ծանօթ աշխարհքիս մեծ մասին՝ մէկ իշխանի կառավարութեան տակ միացեալ ըլլալը, եւ քաղքէ քաղաք ու գաւառէ գաւառ ազատ հա-ղորդակցութեան դիւրութիւնը, շատ օգնեց քրիստո-նէական կրօնին արագ տարածմանը։ Այս հաղորդակ-

ցութեան դիւրացուցիչ միջոց մըն էր յունարէն լե-
զուին ընդհանուր գործածութիւնը, որ մակեդոնական
տէրութեան տիրապետութենէն ետքը բոլոր արեւելք
տիրած էր:

Այս ամէն պատճառներն՝ որչափ ալ քրիստո-
նէութեան տարածման գործունէաբար օգնեցին, սա-
կայն ասոր հակառակ ալ այնպիսի մեծամեծ արգելք-
ներ կային, որ քրիստոնէական կրօնին վերջնական
յաղթութիւնը, միայն աստուածային զօրութեան ազ-
դեցութեամբ եղած պէտք ենք համարիլ: Այս ար-
գելքներուն գլխաւորներն ասոնք են.

1. Քրիստոնէութեան աշխարհք մտած ժամա-
նակ՝ ժողովրդեան մեծ մասը հեթանոսական կրօնին
եւ անոր պաշտամանցը դեռ այնպէս սաստիկ կապուած
էր, որ զոհերով ու տօներով իր աստուածները կը
պաշտէր ու տարակուսանաց մէջ պատգամներու խոր-
հրրդեան կը դիմէր: Ժողովրդեան այս հաւատքն ու
պաշտօնը շատ հին էր. ասոր պաշտպանութեան տակ
ազգեր կանգնուած էին, եւ Հռոմ տիեզերակալու-
թեան հասած էր: Անոնց ճշմարտութեան կը վկայէին
նաեւ դից պատգամներն ու հրաշքները՝ զորոնք ստու-
թեամբ կը կարծէին թէ դիք կը գործեն: Ժողովր-
դեան՝ իր կրօնին ու պաշտամանցն այնչափ յարեալ
ըլլալուն պատճառն էր, պզտիկուց անոր մէջ կրթուած
ըլլալը, եւ դից պաշտաման եւ անոնց հետ կապուած
հանդէսներուն արտաքին փառաւորութիւնը: Ասոր
հակառակ քրիստոնէութիւնն իբրեւ նոր կրօն մ'աշ-
խարհք մտաւ, եւ զգայարանաց հրապուրիչ ու գրը-
գռիչ բան մը չունէր: Իր պաշտամունքը՝ որ գիշերային
ժողովներու մէջ կ'ըլլար, պարզ էր, լի վտանգօք
եւ երկիւղագին: Այս կրօնին հիմնադիրը Յիսուս՝ տէ-
րութեան աննշան գաւառներէն մէկուն մէջ կեանք
անցուցած, եւ խաչի վրայ մեռած էր: — Հեթանոսա-
կան կրօնն իր հետեւողներուն ամէն տեսակ անկարգ
ցանկութիւնները կատարելը թոյլ կու տար. ցանկա-
սէրը, որկրամոլն ու ընչաքաղցն իր կրիցը վրայ ամե-
նեւին խիղճ չէր ըներ, բաւական որ սովորական զոհե-
րուն եւ որոշուած արարողութեանց մասնակից ըլլար:

Ասոր հակառակ քրիստոնէութիւնը կը պահանջէր զգայարանաց մահացուցում, եւ անկարգ յօժարութեանց սանձահարութիւն. ասոնցմէ զատ հրաժարիլ նաեւ այն ամէն բաներէն՝ որ ըստ հեթանոսաց ըմբռնմանը մարդկային կենաց արժէք մը կու տային, ինչպէս է անպարկեշտ տեսարաններէն, դից հանդիսական տօնախմբութիւններէն ու քստմնելի արիւնառուշտ մենամարտիկ խաղերէն։ Այս ամէն բան՝ զգայական մարդուն քրիստոնէութեան դարձը դժուարին կ՚ընէր։ Այս ընդհանուր պատճառներէն զատ ուրիշ մասնաւոր պատճառներ ալ կային, որոնք ժողովրդեան զանազան վիճակները հեթանոսութեան յարեալ մնալու կը ստիպէին։ Նախ կար քրմաց ճիւղաւորեալ դասը՝ որ երեւելի ընտանեաց հետ արեան ու խնամութեան կապերով միացած էր, եւ որուն կեանքն ու մահը հեթանոսութենէն կախեալ էր։ Կային նաեւ անթիւ ու անհամար վաճառականներ, արուեստաւորներ եւ ամէն տեսակ գործաւորներ, որոնք իրենց ապրուստ անկէ կը գտնէին։ Եփեսոս՝ Պօղոս առաքելոյն դէմ՝ Դեմետրիոս արծաթագործին հանած շփոթութիւնը, ապագայ նոյնպիսի խռովութեանց նախերգանք մըն էր (Գործք. Առ. ԺԹ. 23)։

2. Ռամիկ ժողովրդեան քրիստոնէութեան դէմ ունեցած հակառակութիւնը՝ բազմաստուածութեան սէրէն միայն յառաջ չէր գար, այլ քրիստոնէութեան դէմ նաեւ գրական հակառակութիւն մ՚ունէր, պէսպէս սուտ նախապաշարմանց պատճառաւ, որոնք հիմնեալ էին քրիստոնէութեան դէմ տարածուած սուտ ու անհիմն զրպարտութեանց վրայ։ Քրիստոնեաներն անաստուած կ՚անուանուէին, հեթանոսաց չաստուածները չպաշտելնուն եւ անոնց երկրպագութիւն չմատուցանելնուն համար։ Այս կարծիքն այնչափ աւելի դիւրաւ հաւատք կը գտնէր, որչափ քրիստոնեայք՝ հեթանոսաց տաճարներն ոտք չէին կոխեր, եւ իրենք ո՛չ տաճար, ո՛չ դից պատկերներ եւ ո՛չ խորան կամ զոհ ունէին։ Իրենց եկեղեցական շէնքերը դրսէն չէին երեւար, եւ միայն հոգեւոր աչքի տակ ինկող պատարագի զոհը, հեթանոսաց անծանօթ ու

անխմանալի էր։ Դարձեալ՝ հեթանոսք քրիստոնեաները հասարակաց բարւոյն թշնամի կը համարէին, եւ կ՚ըսէին թէ պէտք է զիրենք սրով ու հրով ջնջել եւ աշխարհքէս անհետ ընել։ Մանաւանդ քրիստոնէից գիշերները գաղտնի մէկտեղ ժողվիլը՝ հեթանոսաց ծանր ծանր զրպարտութեանց առիթ տուած էր. ամէն տեսակ յանցանք քրիստոնէից վրայ կը դնէին. աղդապղծութիւն, մարդու միս ուտել ու արիւնը խմել եւ այլն։ Քրիստոնէից պատարագին վրայ տարածուած մութ ու շփոթ գաղափար մը՝ հեթանոսաց կարծել տուաւ, որ քրիստոնեայք սպանուած տղու մը մարմինը կ՚ուտեն եւ արիւնը կը խմեն։

3. Բայց ասոնցմէ աւելի՝ քրիստոնէութեան տարածման արգելք կ՚ըլլային տէրութեան օրէնքները։ Հռոմայեցւոց կրօնական պաշտօնը՝ տէրութեան հետ այնպէս սերտիւ կապուած էր, որ կրօնին գլխաւորը բուն տէրութեան մասնիչ ու քրէական յանցանաց պարտաւոր կը համարուէր։ Անոր համար Հռոմայեցիք ամէն օտար կրօններէ կը խորշէին։ տէրութիւնն ալ օտար կրօն պաշտելն արգիլած էր։ Բայց վերջի ատենները՝ երբ որ այնչափ կրօնիւ տարբեր ազգեր հռոմէական պետութեան տակ միացան, խոհեմութիւն համարեցան նուաճեալ ազգերուն թոյլ տալ, որ իրենց կրօնը պաշտեն։ Նոյն իսկ Հրէից այս ազատութիւնը շնորհեցին. կամ անոր համար որ զիրենք բանի տեղ չէին դներ, եւ կամ որ իրենց կրօնը՝ իբրեւ հին ազգային հաստատութիւն մը կը յարգէին։ Բայց քրիստոնէական կրօնին հետ այնպէս չէին վարուեր։ Ասիկայ չէ թէ միայն նոր էր, այլ նաեւ իր ընդհանուր համաշխարհական նկարագրին պատճառաւ, բոլոր մէկալ կրօնները ջնջելու եւ ինք միայն տիրելու սահմանուած կ՚երեւար։ Ասոր յայտնի նշան էր Տրայանոս կայսեր ժամանակ տաճարներուն ամայի ու պարապ մնալը։ Ասկէ կրնայ մեկնուիլ՝ թէ ինչու քրիստոնեաներն աւելի եղած էին Հռոմայեցւոց, որոնք իրենց տէրութեան յաջողութեամբ մշտնջենաւորելն այնչափ աւելի վտանգեալ կը տեսնէին, որչափ քրիստոնէութիւնը դից պաշտօնը կործանելով կը տարածուէր։

Այս ամէն պարագաները մէկտեղ գալով՝ քրիստոնէից դէմ զարհուրելի հալածանքներ յառաջ բերին, որ գրեթէ երեք հարիւր տարի տեւեցին։ Ասոնց մէկ քանին զանազան գաւառներու եւ մէկ քանին ալ բովանդակ հռոմէական տէրութեան մէջ եղան։ Կարծես թէ բոլոր հեթանոսութիւնը քրիստոնէից դէմ միաբանած էր, եւ մարդկօրէն մտածելով պէտք էր կարծել, որ հեթանոսք Քրիստոսի կրօնն ու զանիկայ դաւանողներն աշխարհքէս վերջապէս պիտի՛ որ ջնջեն։ Բայց Աստուած՝ իր եկեղեցին չթողուց, եւ անոր թըշնամեաց չարութիւնը պարապ հանեց. քրիստոնեայք որչափ սաստիկ կը հալածուէին՝ եկեղեցին այնչափ աւելի շուտ ու փառօք կը տարածուէր։ Անոր համար Տերտուղիանոս կ'ըսէ. Արիւն մարտիրոսաց, սերմն քրիստոնէից։

## 11. *Քրիստոնէից՝ Հռոմայեցւոց կայսրներէն կրած հալածանքները:*

Առհասարակ տասը կը համրուին հալածանքները, զորոնք Հռոմայեցւոց կայսերք քրիստոնէութեան դէմ հանեցին. բայց քրիստոնեայք՝ բոլորովին հանդարտ չէին նաեւ այն կայսերաց տակ, որոնք ի պաշտօնէ քրիստոնեաները հալածելու հրովարտակ չհանեցին։ Այս հալածանքները Ներոն կայսերմէ սկսեալ, փոքր ընդհատութեամբ մինչեւ Մեծն Կոստանդիանոսի ժամանակը տեւեցին։ Այս գրեթէ 300 տարուան ժամանակի միջոցը՝ լի է արիական անձնանուիրութեան ու դիւցազնական համբերութեան օրինակներով. քրիստոնեայք՝ անվեհեր հաստատութեամբ ամէն տեսակ չարչարանաց ու տանջանաց տարին Քրիստոսի քաղցր անուանն օգնութեան կանչելով, եւ երգեր ու սաղմոսներ նուագելով։ Այս փառաց ժամանակը՝ հազարաւորք արժանի եղան մարտիրոսութեան պսակին կամ խոստովանողի փառաւոր անուան։ Եկեղեցին՝ Մարտիրոս կ'անուանէ այն քրիստոնեաները, որոնք ճշմարիտ հաւատոյ համար արիւննին ու կեանքերնին զոհեցին. իսկ Խոստովանող կը կոչէ զանոնք, որ

թէեւ Քրիստոսի համար արիւն թափելով չեն մեռած, բայց իր սիրոյն համար անարգանք ու չարչարանք կրելու արժանի եղած են։ Գլխաւոր հալածանքները հետեւեալներն են։

1. Ներոն կայսեր հանած հալածանքը (64)։ Աւգոստոս կայսեր յաջորդը Տիբերիոս՝ քրիստոնեաները չհալածեց, մանաւանդ թէ Տերտուղիանոսի խօսքին համաձայն (Թ. Ջատագովութեան, Գլ. 5), Պիղատոսէն առած տեղեկութեանց վրայ՝ զՔրիստոս չաստուածոց կարգը դասել ուզեց։ Կաղիգուղա ու Կղաւդիոս կայսրներն ալ, ինչպէս կ'երեւայ, քրիստոնեաները հանգիստ ձգեցին։ Բայց Ներոն կայսրը՝ քրիստոնէի անուան անհաշտ թշնամի էր։ Հռոմ ելած սաստիկ հրդեհի մը կասկածը, որն որ քաղքին երրորդ մասը մոխիր դարձուցած էր, իր վրայէն նետելու համար, ինչպէս Տակիտոս կը պատմէ (Ժամանակագր. ԺԵ. 44), ան ատեն արդէն ատելի եղող քրիստոնէից վրայ ձգեց, եւ զանոնք ժողովրդեան կատաղութեանը մատնեց։ Այս հալածանաց ժամանակ բազմաթիւ քրիստոնեայք դառն մահուամբ մարտիրոսացան. ոմանք խաչուեցան կամ կենդանեաց մորթերու մէջ կարուած կատաղի շներու առջեւը նետուելով, անոնցմէ պատառպատառ յօշուեցան, ոմանք ալ դիւրավառ իւղային նիւթերով օծուած այրեցան, գիշերները կայսեր պարտէզը ջահի տեղ լուսաւորելու համար։ Հռոմ եղած այս անագորոյն հալածանքը՝ գաւառներուն մէջ եղած քրիստոնէից վիճակը շատ դէշցուց. ինչու որ թէ կուսակալաց ու թէ խառնաղանճ ժողովրդեան քրիստոնեաներուն դէմ ունեցած ատելութիւնը, աներկիւղ ու համարձակ ի գործ դնելու քաջալեր տուաւ։ Այս հալածանաց ատեն (67ին) Պօղոս ու Պետրոս առաքեալները Հռոմ մարտիրոսական մահուամբ վախճանեցան. Ս. Պետրոս խաչուեցաւ, իսկ Ս. Պօղոս սրով գլխատուեցաւ։

2. Քրիստոնեայք՝ Վեսպասիանոս ու Տիտոս կայսերաց ատեն, խաղաղութիւն վայելելէն ետեւ, կասկածոտ ու արիւնռուշտ Դոմետիանոս կայսրը, որ իր Տիտոս եղբայրը մեռցուցած էր, անոնց դէմ երկրորդ հալա-

ծանքը հանեց (81—96)։ Քրիստոնեաներէն շատերը մեռցընել տուաւ, շատերուն ալ ստացուածքը յափըշտակեց ու զիրենք աքսոր խաւրեց։ Քրիստոնէից հակառակ ըլլալուն գլխաւոր պատճառն՝ ան էր, որ իր ազգականներէն մէկը՝ Փղաւիոս Կղեմէս հիւպատը, քրիստոնէութեան դարձած էր, եւ իրեն այնպէս հասկըցուցած էին՝ որ Քրիստոսի ազգականները կայսերական աթոռն առնելու ետեւէ են։ — Ասոր յաջորդ Ներուա կայսեր ժամանակ՝ քրիստոնեայք խաղաղութիւն գտան։

3. *Երրորդ հալածանքը* հանեց Տրայանոս կայսրը (98—117). ասիկայ գաղտնի ընկերութեանց դէմ արգելք հանելով՝ քրիստոնեայք շատ նեղի մտան, ինչու որ նոյն արգելքն իրենց համար ալ կ'արժէր։ Բիւթանիայի կուսակալը Պլինիոս Կրտսեր՝ որ ազնուական բնութեանը հետ արտաքոյ կարգի նախապաշարումներ ալ ունէր, մինչեւ նոյն ատեն քրիստոնէից դէմ բռնած ընթացքին վրայ կայսեր տեղեկութիւն տուաւ։ Եւ որովհետեւ այս նոր կրօնն իր կուսակալութեան մէջ օրէ օր կը տարածուէր, այնպէս որ դից տաճարները դատարկ կը մնային, եւ քրիստոնէից դէմ ամբաստանութիւնները կը յաճախէին, կայսեր աղաչեց որ իր կամքն ու ինչ ընթացք բռնելիքն իրեն ծանուցանէ։ Տրայանոս պատասխան տուաւ՝ որ քրիստոնեաները պէտք չէ փնտռել, բայց թէ որ ամբաստանուին ու յանցաւոր գտնուին պատժելու է։ Կ'երեւայ թէ Տրայանոս քրիստոնէութիւնն աւելորդապաշտութեան նոր ու անցաւոր մէկ երեւոյթը կը համարէր, զորն որ ան ատեն միայն պէտք է պատժել, երբ որ տէրութեան կրօնն ոտքի տակ առնելու կը յանդգնի։ Այս կարգադրութեամբ ամբաստանութիւնն ամենուն ազատ թող տրուեցաւ, եւ խեղճ քրիստոնեայք իրենց թշնամեացը ձեռքը մատնուեցան։ Պլինիոս իր տուած տեղեկութեանցը մէջ ի մասնաւորի կը յիշէ, որ ուրացող քրիստոնեաներէն ոմանք իրեն ըսած ըլլան թէ. "Քրիստոնեաները որոշեալ օր մը առտու կանուխ մէկտեղ կը ժողվին, Քրիստոսի՝ իրենց Աստուծոյն փառաբանութեան երգեր կ'երգեն, եւ հանդիսական կեր-

պով խօսք կու տան գէշ բան մը չընելու, ինչպէս է գողութիւն, յափշտակութիւն ու շնութիւն, եւ ամէն մարդու հետ սիրով ու հաւատարմութեամբ վարուելու,,։ Տրայանոսի ժամանակ տառապելոց աշկերտներէն շատերը մարտիրոս եղան, որոնց մէջ անուանի են՝ Կղեմէս Հռոմայ հայրապետը, Ս. Իգնատիոս Անտիոքի եպիսկոպոսը եւ Շմաւոն Երուսաղէմի եպիսկոպոսը։ Ասիկայ Քրիստոսի մերձաւոր ազգականն էր, եւ 120 տարուան հասակին մէջ՝ քանի մը օր պէսպէս դաժան տանջանքներ կրելէն ետեւ, վերջապէս խաչի վրայ մեռաւ։

Ադրիանոս կայսրը՝ (117—138) թէպէտ տէրութեան կրօնին սաստիկ նախանձաւոր էր, բայց քրիստոնէից այնչափ հակառակութիւն չունէր։ Ադրիանոս հրամայեց որ քրիստոնէից դէմ ամբաստանութիւնները միայն դատաստանական ճամբով ընդունուին, բայց միանգամայն սուտ ամբաստանութիւն ընողներուն ալ խիստ պատիժներ դրուին։

Անտոնինոս Պիոս կայսեր ատեն (138—161) ժողովրդեան կատաղութիւնը քրիստոնէից դէմ նորէն բորբոքեցաւ, գլխաւորաբար ան ատեն տէրութեան զանազան կողմերն ետեւէ ետեւ հասած դժբախտ արկածներուն համար, որոնց պատճառ քրիստոնեայք կը համարուէին, ինչու որ իրենց շատնալովը՝ դից տաճարները պարապ կը մնային։ Բայց քաղցր ու մարդասէր կայսրը՝ ցուցուց որ քրիստոնէից հալածուելուն հակառակ է։

4. *Չորրորդ հալածումը*՝ Մարկոս Աւրելիոս կայսեր ժամանակն եղաւ, որուն կառավարութեան ատեն (161—180) պատահած սաստիկ ժանտամահը ժողովուրդը քրիստոնէից դէմ գրգռեց։ Չ'ուրացուիր որ Մարկոս Աւրելիոս Հռոմայեցւոց կայսերաց մէջ ազնիւսիրտ ունեցողներէն մէկն էր. շատ անուանի է իւր իմաստուն կառավարութեանը, գիտութեան ունեցած սիրոյն, եւ ծնողացն ու դաստիարակացը ցուցուցած յարգութեանը համար. բայց ստոյիկեան փիլիսոփայութեան հետեւող ըլլալով՝ քրիստոնէութեան թշնամի էր։ Քրիստոնէից մահն արհամարհելը՝ իրեն մոլեռան-

դութիւն եւ տէրութեան օրինաց հակառակութիւն
կ՚երեւար։ Ուստի հետեւեալ հրամանը հանեց. “Տե-
ղեկանալով որ մեր ժամանակն իրենք զիրենք քրիս-
տոնեայ անուանողները, տէրութեան օրէնքը կ՚արհա-
մարհեն ու անոր դէմ կը գործեն, կը հրամայենք որ
այսպիսիները բռնուին եւ թէ որ աստուածներուն զո-
հել յանձն չեն առնուր, պէսպէս տանջանքներով
պատժուին. բայց այնպէս որ արդարութիւնը խստու-
թեան հետ միշտ կից ըլլայ, եւ պատիժը դադրի երբ
որ վախճանին կը հասնուի„։ Հարկ չկայ ըսել որ այն
գաւառաց կուսակալներն որոնք քրիստոնէից թշնամի
էին, կայսեր այս մասաց վրայ ըլլալը գիտնալով, ինչպիսի
խստութեամբ սկսան կայսեր հրամանն ի գործ դնել։
Իսկզբան կը ջանային տանջանաց վախովը քրիստո-
նեաներն ուրացութեան շարժել. իսկ հաւատքներնուն
մէջ հաստատուն մնացողներուն համար կերպ կերպ
մահեր հնարուեցան. շատերը խաչուեցան կամ այրե-
ցան, ոմանք ալ գազանաց կերակուր եղան։

Աւելի մանրամասն տեղեկութիւններ ունինք
Զմիւռնիա (167), Լիոն ու Վիեննա (177) եղած զար-
հուրելի հալածանաց վրայ։ Այս հալածանաց ժամա-
նակ մեռաւ Զմիւռնիա սուրբ Պողիկարպոս, իսկ Լիոն
90 տարուան Պոթինոս եպիսկոպոսն այնչափ լլկանք
կրեց՝ որ երկու օր ետքը բանտի մէջ վախճանեցաւ։ —
Բայց կ՚երեւայ որ ամէնէն աւելի սաստիկ էր հալա-
ծանքը Հռոմ, ուր մարտիրոսական մահուամբ մեռաւ
Յուստինոս Վկան, որ կայսեր երկրորդ ջատագովու-
թեան թուղթ մը տուած էր։

Կոմոդոս կայսրն (180—192) այնչափ միայն հան-
դարտ թողուց քրիստոնեաները, որ զանոնք փնտռելու
եւ մեռցընելու նոր հրաման մը չհանեց. բայց նախըն-
թաց հրովարտակներն ետ չառնելով, գաւառներուն
մէջ հալածանքը դեռ կը շարունակուէր։

5. Սեպտիմիոս Սեւերոս կայսրը (193—211)
քրիստոնեաները հալածողներուն մէջ հինգերորդն է։
Իսկզբան զիրենք հանգիստ ձգեց, բայց 202ին ծանր
պատժոց սպառնալեօք քրիստոնէութեան դառնալն
արգելեց. Նոյն տարին Եգիպտոս բազմաթիւ քրիստո-

նեաներ մեռցընել տուաւ, որոնց մէջն էր նաեւ Որիգենէսին հայրը Լեւոնիդաս. Լիոն ալ այս միջոցիս Ս. Իրենէոս եպիսկոպոսը մարտիրոսական մահուամբ մեռաւ:

Սեւերոսին որդին՝ Կարակալլա (211—217), նոր հալածանք չհանեց, բայց կուսակալաց հալածումներուն աչք գոցեց:

Հելիոգաբաղոս կայսրը (218—222) որ արեւը կը պաշտէր, քրիստոնէութիւնն ալ ուրիշ կրօններուն պէս թոյլ տուաւ: Իր ազգականը Աղեքսանդր Սեւերոս (222—235) քրիստոնէից հակեալ էր, եւ կ'ըսուի որ զՔրիստոս իր տան աղօթարանին մէջ Որփէոսի եւ Ապողոնիոս Տիանացւոյն քով դրած ու իրեն աստուածական պատիւ ցուցուցած ըլլայ: Մայրը Մամէա՝ զՈրիգենէս իր պալատը կանչեց, եւ կը կարծուի որ քրիստոնեայ եղած ըլլայ:

6. Իր յաջորդը՝ դաժան Մաքսիմինոս Թրակացին (235—238), քրիստոնէից թշնամի ու զանոնք հալածող կայսրներէն մէկն եղաւ: Փոքր Ասիայի մէջ եղած երկրաշարժներու պատճառաւ՝ ժողովրդեան կատաղութիւնը քրիստոնէից դէմ նորէն գրգռուեցաւ: Շատ հաւանական է՝ որ աս հալածանաց ատեն պատահած ըլլայ սրբուհի Վառվառիայի ու Կեկիլիայի փառաւոր մարտիրոսական մահը, որ ան ատենուան հաւատոյ զօրութեան մեծ ցոյց մըն է, որով նոյն իսկ փափկասուն քրիստոնեայ օրիորդք նոյն միջոցին վառեալ էին: — Բռնաւորին մահուանէն ետքը հալածանքը դադրեցաւ, եւ Գորդիանոսի յաջորդը Փիլիպպոս Արաբացին (244—249), այնչափ ինք զինքը քրիստոնէից կողմը ցուցուց, որ ոմանք զինքը քրիստոնեայ համարեցան:

7. Սաստիկ հալածումներէն մէկն եղաւ եօթներորդ հալածանքը՝ զորն որ Դեկոս կայսրը հանեց: Քառասուն տարուան խաղաղութիւնը՝ զորն որ քրիստոնեայք վայելած էին (ի բաց առնելով Մաքսիմինոսին հալածումը, որ երկայն չտեւեց), թէպէտ թուերնին շատցուցած էր, բայց միանգամայն իրենց մէջ գաղջութիւն ու թուլութիւն խօթած էր: Ուստի եւ նոր

հալածում մը պէտք էր, քրիստոնէից հասարակութեան մէջ գտնուող թմրած անդամներն արթնցընելու, իսկ մեռածներն իրմէ բոլորովին բաժնելու համար: Այս հալածումը սկսաւ Դեկոս կայսեր ժամանակ (249 — 251)։ Թէպէտ իր նախորդ կայսրներն արիւնահեղ հալածումներ հանած էին, բայց ամէն տեղ եւ ընդհանուր չէր. Դեկոս տէրութեան կառավարութիւնը ձեռքն առնելուն պէս, միտքը դրաւ որ քրիստոնէութիւնը բոլորովին ջնջէ: Ուստի թագաւորութեան առաջին տարին՝ տէրութեան ամէն կուսակալներուն հրաման խաւրեց, որ քրիստոնեաները տէրութեան կրօնը դարձընեն, նոյն իսկ ամէն տեսակ տանջանք ի գործ դնելով: Դէմ դնող եպիսկոպոսներուն պատիժը մահ էր. ուստի եւ ամէն տեսակ տանջանաց գործիքներ հնարուեցան՝ սուր, հուր, վայրենի կատղած գազաններ, կրակ դարձած նստարաններ ու երկաթի սայրասուր ճանկեր: Շատ քրիստոնեայք տանջք տեսնելով հաւատքնին ուրացան, ոմանք անմիջապէս առաջին հարցափորձին, ոմանք ալ ըկանաց չկրնալով համբերել, կուոց զոհեցին. ասոնք Անկեալք կամ Զոհ մատուցանողք (sacrificati կամ thurificati) կոչուեցան. շատերն ալ ստակ տալով՝ տէրութեան կողմանէ վկայական թուղթ մը կ՚առնուին, որ քրիստոնէութիւնն ուրացած են (մուրհակ ապահովութեան կամ խաղաղութեան, libellus securitatis seu pacis), եւ կամ ստակով իրենց անունը քննութեան արձանագրին մէջ դրել կու տային, որ տէրութեան օրինաց հնազանդած են, ասոնք Մուրհակաւորք (libellatici) անուանուեցան. բայց եկեղեցին ասոնք ալ ինկածներուն կարգը կը սեպէր: Տկարութեամբ ինկողներուն տուած գայթակղութեան դիմացը՝ անհամար մարտիրոսաց տուած գեղեցիկ օրինակներն աւելի զարմանալի են: Փաբիանոս Հռոմայ Քահանայապետը, Բաբելաս Անտիոքի եպիսկոպոսը, Աղեքսանդր Երուսաղէմի եպիսկոպոսը վկայական մահուամբ մեռան. նաեւ Ս. Ագաթայ, որ նշանաւոր ազգատոհմէ էր եւ գեղեցկութեամբն ու բարեպաշտութեամբը շատ երեւելի, նոյն ատենները մարտիրոսական պսակին արժանի

եղաւ։ Անագորոյն եւ գազանաբարոյ Կուինտիանոս Սիկիլիայի կուսակալը, մատաղ կոյսը սաստիկ տանջելէն ետեւ, սայրասուր բեկորներու ու կրակ դարձած ածուխներու վրայ գլտորել տուաւ, մինչեւ որ անտանելի չարչարանաց տակ Քրիստոսի ընտրեալ հարսը հոգին աւանդեց։ Բայց այս հալածումը երկայն չտեւեց. Դեկոս Գոթաց դէմ տուած պատերազմին մէջ մեռնելով (251), հալածանքն ալ դադրեցաւ։

8. Իր յաջորդը Գաղղոս (251—253), Թէպէտ թագաւորութեան սկիզբը քրիստոնէից դէմ նոր հալածանաց հրովարտակ չհանեց, բայց իր նախորդին տուած հրամաններն ալ ետ չառաւ։ Շատ չանցաւ երկարժամանակեայ չորութիւն ու վրան եկած սով մ' նոր հալածանքի պատճառ եղաւ. կայսրը հրամայեց որ աս չարիքները հեռացընելու համար ամէն տեղ կռոց զոհեր մատուցուին։ Կոռնելիոս ու Ղուկիոս Քահանայապետներն այս միջոցիս ետեւէ ետեւ մարտիրոսացան։ Գաղղոս կայսեր սպաննուելովը քրիստոնեայք խաղաղութիւն գտան։

9. Իններորդ հալածումը Վաղերիանոս կայսեր (253—260) ատենն եղաւ, որն որ ի սկզբան քրիստոնէից կողմն էր. բայց ետքէն իր նախորդներուն պէս զինքն սկսաւ հալածել։ Քրիստոնէութիւնն աշխարհքիս երեսէն բոլորովին ջնջելու դիտմամբ՝ եպիսկոպոսներն ու քահանաներն իրենց հօտէն բաժնեց. քրիստոնէից արգելեց նաեւ որ ամենեւին մէկտեղ չժողվին։ Երբ որ տեսաւ թէ ասով վախճանին չհասաւ, եպիսկոպոսները, քահանաներն ու սարկաւագները մեռցընել տուաւ, եւ ծերակուտին քրիստոնեայ անդամները պատուէն ձգեց, ստացուածքնին ալ յափշտակեց։ Ստեփանոս ու Սիքստոս Բ. Քահանայապետները Հռոմ մարտիրոս եղան։ Այս հալածանաց ատեն մարտիրոսացաւ նաեւ Սիքստոս Քահանայապետին հաւատարիմ սարկաւագը Ս. Լաւրենտիոս, զորն որ երկաթի կասկարայի վրայ դրած՝ մաղմաղ կրակով խորովեցին։ Զարմանալի էր Աստուծոյ վկային ցուցուցած համբերութիւնը. սոսկալի տանջանացը մէջ երեսը զուարթ էր ու անդադար Աստուծոյ կ'աղօթէր՝ որ

Հռոմ քաղաքին դարձի շնորհք տայ։ Ս. Կիպրիանոս եպիսկոպոսն ալ 258ին Կարքեդոն քաղաքը հրապարակի մէջ սրով գլխատուեցաւ։

Վաղերիանոսին որդին ու յաջորդը Գաղիենոս (260—268) քրիստոնէից նպաստաւոր հրամանագիր մը հանեց, որով թոյլ կու տար որ քրիստոնեայք ալ կարենան՝ իրենց կրօնը պաշտել եւ յարքունիս գրաւուած ինչքերնին ետ դարձուց։ Ասով քրիստոնէութիւնն առաջին անգամ օրինօք ճանչցուած կրօն մ'եղաւ, եւ եկեղեցին օրինաւոր գոյութիւն մը ստացաւ։

10. Վերջին ու ամէնէն զարհուրելի հալածանքն եղաւ Դիոկղետիանոս կայսեր ժամանակը։ Քրիստոսի 260—303 թուականը քրիստոնեայք խաղաղ էին, մինչեւ որ Դիոկղետիանոս (284—305), որն որ Նիկոմեդիա իր աթոռը հաստատած էր, քրիստոնէից դէմ հալածանաց հրովարտակ մը հանեց։ Իւր առաջին 18 տարուան տիրապետութեան ատենը քրիստոնէից դէմ բան մը չըրաւ, վասնզի տեսաւ որ նախընթաց հալածանքները զանոնք տկարացընելու տեղ աւելի զօրացուցած էին։ Միանգամայն կը տեսնէր թէ ամէն կարգի անձանց երեւելիները քրիստոնեայք են, այնպէս որ ալ հեթանոսութեան կործանումը շատ հեռու չէ։ Կայսրը՝ քրիստոնէից դէմ գրգռողն եղաւ՝ բիրտ Գալերիոսը, կայսեր բարձակիցն ու քրիստոնէից մահուչափ թշնամին, որ իր ծերունի աներն այնչափ թախանձեց՝ մինչեւ վերջապէս քրիստոնէից դէմ հալածանք հանեց (303)։

Դիոկղետիանոս առաջին հրովարտակաւ հրատարակեց՝ որ քրիստոնէից համար իրաւունք չկայ եւ ամէն պաշտօններէն ինկած են. Նոյն հրովարտակը կը հրամայէր նաեւ որ եկեղեցիները քանդուին, քրիստոնէից ինչքերը յարքունիս գրաւուին եւ Ս. Գիրքն այրուի։ Երկրորդ հրովարտակաւ կը պատուիրէր՝ որ բոլոր քահանայք բանտարկուին։ Քիչ մ'ետքն երրորդ հրովարտակ մ'ալ ելաւ, որ կը պատուիրէր չարչարել զանոնք որ յանձն չեն առնուր կռոց զոհ մատուցանել. վերջապէս 304ին քրիստոնէից վրայ մահուան պատիժ դրուեցաւ եւ հռոմէական պետութեան մէջ անլուր

անգթութեամբ գործադրութիւնն սկսաւ։ Բայց քրիստոնէից դիւցազնական քաջասրտութիւնն եւ արիութիւնն անյաղթելի էր. արիւննին հեղեղի պէս կը վազէր. տկար ծերունիք, փափկասուն օրիորդք ու դեռահասակ անմեղ տղայք ուրախութեամբ ու զուարթութեամբ մահուան կը դիմէին։ Կը մեռնէին առանց քանքատելու եւ ցաւ ցուցընելու. զերենք՝ տանջողները կը յոգնէին՝ սակայն իրենց թիւը չէր նուազեր*։ Անհամար զոհերուն մէջ, որոնցմով Քրիստոսի եկեղեցին այս հալածանաց ատեն փառաւորուեցաւ, երեւելիներն են. Պետրոս Աղեքսանդրիոյի եպիսկոպոսը, զորն որ Եւսեբիոս (Պատ. Եկ. Թ. 6.) "Եպիսկոպոսութեան աստուածային զարդը,, կ'անուանէ, Մեթոդիոս Տիւրոսի եպիսկոպոսը, Ս. Սեբաստիանոս կայսեր թիկնապահ զօրաց մէջ ազնուական ու կորիճ երիտասարդ մը, զորն որ վայրենաբարոյ դահիճները ծառի մը կապելով նետահար ըրին. Ս. Կատարինէ Աղեքսանդրիոյի թագաւորի մ'աղջիկը, որն որ ինչպէս քրիստոնէական իմաստութեամբ՝ նոյնպէս անբիծ կուսական առաքինութեամբ նշանաւոր եղած էր. ասիկայ երկայն տանջանքներ կրելէն ետեւ, վերջապէս գլխատուեցաւ։ Ասոնցմէ զատ մարտիրոսութեան պսակին արժանի եղան Ս. Ղուկիա եւ 13 տարեան Ս. Ագնէս կոյսերը։

Բայց շատ քրիստոնեայք՝ որոնց մէջ եպիսկոպոսներ ալ կային՝ հաւատքնին ուրացան։ Ան քահանաներն եւ կամ եկեղեցւոյ պաշտօնեաները, որոնք Ս. Գիրքը կամ մկրտութեան արձանագիրները հեթանոսաց ձեռքը մատնեցին, Մատնիչք (Traditores) կոչուեցան։ Դիոկղետիանոսի միտքը գլխաւորաբար Աստուածաշունչը ջնջել անհետ ընել էր. բայց պաշտօնատէրներէն ոմանք՝ կամ մարդավարութենէն կամ թեթեւամտութենէն, ինչ գրուածք որ իրենց տրուէր զոհ կ'ըլլային։ Ամէնէն աւելի մեղմ էր հալածանքը Գաղղիա, Սպանիա ու Բրիտանիա, որովհետեւ աս գաւառներուն վրայ կայսեր բարձակիցը հեզ ու մարդասէր Կոստանդիոս Քլորոս կ'իշխէր։

* Կը պատմուի որ այս հալածանաց ատեն մէկ ամսուան մէջ 15—18.000 քրիստոնեայք մարտիրոսացած ըլլան։

Դիոկղետիանոսի այս հալածանքը, թէ երկար տեւողութեամբը, թէ սաստկութեամբն ու թէ արիւնհեղութեամբը նախընթացները գերազանցեց. ասիկայ հեթանոսաց քրիստոնէութեան դէմ ըրած վերջին ճիգն էր: Բայց 305ին Դիոկղետիանոս Նիկոմեդիա կայսրութենէն հրաժարելով, Գաղերիոս ու Կոստանդիոս անմիջապէս Օգոստոսի անունն առին, եւ տէրութիւնը մէջերնին բաժնեցին: Արեւմուտք՝ Կոստանդիոս հալածումը դադրեցուց, եւ թէպէտ ինքը 306ին վախճանեցաւ, բայց իր որդին Կոստանդիանոս՝ որ քրիստոնէից սէր ունէր, չէ թէ միայն հօրն աթոռոյն այլ նաեւ առաքինութեանցը ժառանգ եղաւ:

Քիչ մ'ետքը քաղաքային յարաբերութեանց յանկարծական բարեյաջող փոփոխութեամբ մը, բովանդակ հռոմէական տէրութեան վերին իշխանութիւնը Կոստանդիանոսի ձեռքն անցաւ: Ասիկայ Միլան 313ին հետեւեալ հրամանագիրը հանեց. "Քրիստոնեայք տէրութեան ուրիշ հպատակաց պէս ամենայն ազատութեամբ իրենց կրօնը կրնան պաշտել, ամէն մարդ ազատ է քրիստոնեայ ըլլալու. քրիստոնեաներէն առնուած եկեղեցիք ու հասարակութեան վերաբերեալ ինչքերն ետ դարձուին, եւ անոնց ստացուածքները գնողներուն փոխան արքունի գանձէն հատուցուի": Այս հրամանագիրը Կոստանդիանոսին աթոռակիցը Լիկինիոս արեւելք ամէն կողմը հրատարակեց, եւ ի գործ դնել տուաւ, որով 300 տարի քրիստոնէից դէմ մղուած սաստիկ ու արիւնահեղ պատերազմը վերջացաւ, եւ անկէ ետքը քրիստոնէութիւնն իրեն շնորհուած ազատութեամբը՝ կամաց կամաց հեթանոսութեան վրայ բոլորովին տիրեց:

## 12. *Հեթանոս մատենագրաց քրիստոնէութեան դէմ ըրած յարձակումն եւ անոնց հերքումը:*

Կայսրներն ու կուսակալները բուռն եւ նիւթական զօրութեամբ քրիստոնէութիւնը ջնջելու աշխատած ատեն, հեթանոս մատենագիրներն ալ մտաւոր զէնքերով, այսինքն հեգնութեամբ ու սոփեստակա-

նութեամբ անոր դէմ կը կռուէին։ Անոնց գրուածքներէն շատ քիչ բան մեզի հասած է, վասն զի քրիստոնեայք բնականաբար չէին կրնար հոգ ունենալ որ անոնք անկորուստ պահուին. հեթանոսաց ալ փոյթը չէր, որովհետեւ կամ կրօնական ճշմարտութեան սէր չունէին, եւ կամ առ առաւելն կը հաւատային որ ամէն մարդ ազատ թողտալու է, որ աստուածութեան հասնելու ճամբան ինք իրեն ընտրէ։ Այս մատենագիրները հետեւողք էին այն փիլիսոփայութեան, զորն որ երկրորդ դարուն կէսին Ամոնիոս Սակկաս եւ Պղոտինոս Նոր-Պղատոնականութեան անուամբ հնարեցին։ Քրիստոնէից դէմ գրող հեթանոս մատենագիրներուն նշանաւորները ասոնք են։

1. *Կելսոս*՝ քրիստոնէութեան հոգին ամենեւին չճանչնալով, երկրորդ դարուն կէսին անոր վարդապետութեանցն ու գործոցը դէմ գրեց. ի մասնաւորի կը ջանայ Քրիստոսի անձը նուաստացընելու։ Բայց իր թշնամական գրութեանցը մէջ՝ Նոր Կտակարանը կը գործածէ, որով անոր պատմական ճշմարտութիւնը կը հաստատէ։ Կելսոսի գրուածներէն միայն հատակտորներ կը գտնուին Որիգինէսի քով, որ մեծ սրամտութեամբ իրեն դէմ գրեց։

2. *Ղուկիանոս* Սամոսատացին (200). ասիկայ քրիստոնէութիւնն իր հեգնութեանցը նշաւակ ըրած էր։ Ղուկիանոս ծանր խորհող մարդ չէր, եւ կրօնի մը հարկաւորութեան վրայ գաղափար չունէր, ուստի եւ քրիստոնէութեան հոգւոյն ալ ամենեւին չկրցաւ թափանցել։ Իր աչքին առջեւը՝ աւելորդապաշտութիւն, կրօնական մոլեգնութիւն ու քրիստոնէութիւն հաւասար էր։

3. *Պորփիւր* ասորին (շուրջ 250ին) քրիստոնէութեան դէմ 15 գիրք գրեց։ Սուրբ Հարց իր գրուածքներէն յառաջ բերած խօսքերէն, կ'երեւայ որ Պորփիւր Նոր Կտակարանին մէջ հակասութիւններ գտնելու կ'աշխատէր. Դանիէլի մարգարէութեանց համար սուտ են կ'ըսէր, եւ կը պնդէր որ անոնք Աւետարանէն ետքը գրուած են։ Դժոխքի պատիժներուն յաւիտենական ըլլալն ալ չէր ընդունէր։ Քրիստոսի

վրայ յաղթութեամբ կը խօսի, բայց զինքն իբրեւ Աստուած պաշտողները կը դատապարտէ։

4. Հերոկղէս Բիւթանիայի կուսակալը (շուրջ 300ին), քրիստոնեաները Քրիստոսէ հեռացընելու համար՝ անոնց ճշմարտասիրութեան խօսքեր գրեց։ Կելսոսին ու Պորփիւրին քրիստոնէից դէմ գրածները Հերոկղէս նորէն յառաջ կը բերէ ու կը կրկնէ։ Ասոր դէմ գրեց Եւսեբիոս։

Քրիստոնէութեան թշնամիներուն աս գիտնական յարձակումները վանելու համար՝ քրիստոնէից մէջէն շատ ճարտարաբան պաշտպաններ ելան, որոնք Ջատագով կ'ըսուին։ Ասոնք իրենց գրուածոցը մէջ կամ քրիստոնէական կրօնին վարդապետութիւնները կը մեկնէին, զանոնք հեթանոսաց դիւրըմբռնելի ընելու համար, եւ կամ իբրեւ քրիստոնէից ջատագով կայսերաց ու կուսակալաց առջեւն անոնց դատը կը պաշտպանէին։ Յուստինոսէն յառաջ եղող քրիստոնեայ ջատագովներուն գրուածները կորսուած են. իսկ ինք Յուստինոս երկու ջատագովութեան թուղթ գրեց, մէկը Անտոնինոս Պիոսին, մէկալը Մարկոս Աւրելիոսին։ Մէկալ ջատագովներն են՝ Տատիանոս ասորին՝ Յուստինոս վկային աշակերտը, Աթենագորաս Աթենացի քրիստոնեայ փիլիսոփան եւ Թէոփիլոս Անտիոքի եպիսկոպոսը։

Արեւմտեան եկեղեցւոյ մէջ ամենէն յառաջ քրիստոնէից ջատագով հանդիսացաւ Մինուկիոս Փելիքս աֆրիկեցին՝ Ոկտաւիոս անուն գրքին մէջ. անկէ ետքը Տերտուղիանոս զանազան գրուածներով։ Առանձին եղանակաւ յիշուելու արժանի են նաեւ՝ Փղաւիոս Կղեմէս Աղեքսանդրացին, եւ իր բազմահմուտ աշակերտն Որիգինէս, որոնք Աղեքսանդրիայի երախայից դպրոցին վերակացուներն էին. ասոնցմէ զատ Կիպրիանոս Կարքեդոնի եպիսկոպոսը, որն որ գիրք մը շարադրեց կռոց ոչնչութիւնը ցուցընելու համար, եւ ետքը 253ին Դեմետրիանոս անագորոյն դատաւորին թուղթ մը գրեց զինքը յորդորելու, որ քրիստոնէից հետ քիչ մը գթութեամբ վարուի։ Յաջորդ յիսուն տարուան մէջ ջատագովական գրուած մը չելաւ. հապա Դիոկղե-

տիանոսի հալածանաց սկիզբը, Արնոբիոս Ափրիկեցին հեթանոսութեան դէմ եօթը գիրք գրեց։

Մտադրութեան արժանի է, որ չէ թէ միայն առաքեալները այլ նաեւ հին քրիստոնեայ մատենագիրները նոյն իսկ արեւմուտք յունարէն լեզուն կը գործածէին։ Յունական կրթութեան հետ, յունարէն լեզուն ալ տիրող եղած էր, եւ նոյն իսկ Աւետարանին տարածման համար յունարէնը լատիներէնէն շատ առաւելութիւններ ունէր։ Կղեմէս Հռոմայեցին, Յուստինոս Վկան ու Իրենէոս առ. հասարակ յունարէն մատենագրեցին։ Կան նաեւ ապացոյցներ՝ որոնք կը ցուցնեն թէ արեւմուտք շատ տեղ, աստուածային պաշտամանց մէջ յունարէն լեզուն կը գործածուէր։ Տերտուղիանոս առաջին եղաւ որ թէ լատիներէն եւ թէ յունարէն սկսաւ գրել։ Բայց երբ որ արեւմուտք եւ գլխաւորաբար Սպանիա, Գաղղիա ու Ափրիկէ քրիստոնէութիւնն ընդհանուր մուտք գտաւ, եւ քաղաքներէն գեղերը սկսաւ տարածուիլ, ան ատեն հարկին ստիպելովը լատին լեզուին գործածութիւնը մտաւ։ Չորրորդ դարուն սկիզբը լատին լեզուին կիրառութիւնն ընդհանուր եղաւ. մէկ կողմանէ Արիանոսաց կռուին պատճառաւ, որուն մասնակից եղան նաեւ արեւմտեան եկեղեցւոյ նշանաւոր Ս. Հարքը, եւ միւս կողմանէ Կոստանդիանոս կայսեր առանձին ջանքովը, որն որ արեւմուտք քրիստոնէութիւնը տարածելու շատ փոյթ ըրաւ, եւ թէպէտ ինք յունարէն ալ գիտէր, բայց լատին լեզուին առանձին սէր մ'ունէր։ Այսպէսով Տերտուղիանոսէն ետքն եկող մատենագիրներու ի մասնաւորի Ս. Ամբրոսիոսի, Ս. Ագոստինոսի եւ Ս. Յերոնիմոսի ձեռքով՝ լատիներէն լեզուն թէ վարդապետական ու թէ եկեղեցական պաշտամանց մէջ երթալով կոկուեցաւ եւ կատարելագործուեցաւ։

## 13. *Առաջին քրիստոնէից կրօնական-բարոյական վիճակը։*

Քրիստոնէութեան առաջին շրջանն իրաւամբ անոր ծաղկեալ ժամանակը կ'ըսուի. քրիստոնէական հաւատքն իր դաւանողները ներքուստ եւ արտաքուստ այնպէս կը փոխէր եւ ամէնքն այնպիսի ընկերութիւն մը կը կազմէին, որ ապականեալ հեթանոսութեան ճիշդ ընդդիմապատկերն էր։ Քրիստոնէական կրօնին ջատագովներն անոր այս զարմանալի զօրութիւնը կը հռչակէին, եւ իբրեւ իր ներքին ճշմարտութեանն ապացոյց յառաջ կը բերէին։ "Թող համեմատեն, կ'ըսէ Որիգենէս, այնչափ նոր հաւատացելոց հիմակուան կեանքը՝ իրենց անցեալ կենացը հետ. դեռ չմոլորած, ինչպէս Կելսոս եւ իրենները կ'ըսեն, եւ քրիստոնէա-

կան կրօնք չընդունած՝ զորն որ իրենք մարդկային ազ-գին ժանտախտը կ'անուանեն, մէջերնին մէկը չկար որ անիրաւութեան, անմաքրութեան եւ ուրիշ ան-կարգ հեշտութեանց մէջ ընկղմած չըլլար. բայց հիմայ կը տեսնուի թէ որչափ արդար, ծանրաբարոյ, հաս-տատուն եւ առաքինի եղեր են„: Ասոր պատճառը յայտնի էր. քրիստոնէութիւնն իբրեւ հրաշալի հաս-տատութիւն մը աշխարհք մտած ըլլալով՝ հաւատա-ցեալք զանիկայ այնպիսի կենդանի հաւատքով ընդ-գրկած էին, որ իրենց սիրտն ու բարքը փոխած, սրբած ու ազնուացուցած եւ միանգամայն իրենց այն-պիսի արիական զօրութիւն մը տուած էր, որ քրիստո-նեայք դաւանած հաւատքներնուն համար արիւննին եւ ինչքերնին ալ տալու պատրաստ էին:

Քրիստոնէից այսպէս ազնուական մտօք զգածեալ ըլլալուն շատ օգնեցին եկեղեցւոյ առաջին դարերուն մէջ գործուած բազմաթիւ հրաշքներն ալ, որոնք նա-խապաշարումէ ազատ եղող ամէն մտքերուն աներեւ կը ցուցընէին՝ թէ քրիստոնէական վարդապետութեան սկիզբն երկնքէն է: — Բայց լսենք որ պատմութիւնն անոնց վրայ ի մասնաւորի ինչ կ'աւանդէ:

Քրիստոնեայ հասարակութեանց առաջնորդներն եւ ուսուցիչներն այնպիսի մարդիկ էին, որոնք իրենց հաւատոյ զօրութիւնը չէ թէ միայն անոր համաձայն սուրբ կեանք անցընելով, այլ նաեւ մեծ մասն անոր համար կեանքերնին զոհելով ալ ցուցուցին. մանաւանդ առաքելոց անմիջական յաջորդներն, ինչպէս Կղեմէս Հռոմայեցին, Իգնատիոս Անտիոքացին, Պողիկարպոս Զմիւռնիացին եւ այլն: Թէ մտաւորական եւ թէ բա-րոյական կրթութեամբ ասոնցմէ վար չէին մնար իրենց յաջորդներն ալ, որովհետեւ ան ատեն՝ միայն այսպի-սիներն եպիսկոպոսութեան աստիճանին կ'ընտրուէին: Անոր համար կրնայ առանց տարակուսի ըսուիլ, որ այն ազնիւ հոգին՝ որով իրենք լի էին, իրենց հաւատացե-լոց ալ կը հաղորդէին: Պատմութեան վկայութեան նայելով՝ հաւատացեալք ամէն տեսակ առաքինու-թիւններ ի գործ կը դնէին, եւ առանձինն զգաստու-թեան սիրող էին: Նոյն իսկ ամուրի կեանքն ու կու-

սութիւնն իրենց մէջ մեծ յարգ ու պատիւ ունէր։ Ասոր վրայ Ս. Յուստինոս Վկան՝ քրիստոնէից համար գրած ջատագովութեան թղթին մէջ այսպէս կը գրէ. "Մէջերնիս 60—70 տարին անցած երկու սեռէ ալ անձինք կան, որոնք իրենց կուսութիւնը կը պահեն, այսպիսիներ ամէն կարգի մարդկան մէջէն կրնամ ցուցընել„ (Թուղթ. Ջատ. Ա. 15)։ Քրիստոնէից ու հեթանոսաց մէջ եղած այս վիհը՝ այնչափ մեծ էր, որ անժուժկալութեան, հեշտախտութեան եւ ագահութեան մոլութիւններուն, որոնք հեթանոսներն այնչափ նուաստացուցած էին, քրիստոնէից մէջ եւ ոչ անունը կը յիշուէր։ Թէեւ ըստ մեծի մասին աղքատ էին, բայց կարօտելոց օգնելու բաւական հարստութիւն ունէին։ Պետրոս առաքելոյն հրամանին համեմատ՝ քրիստոնեայք կը հնազանդէին իրենց վրայ իշխող հեթանոս թագաւորաց ու դատաւորաց, թէեւ անոնք անիրաւութեամբ զիրենք հարստահարէին։ Հալածանաց ատեն պայծառ կ'երեւար իրենց հաւատքին անդրդուելի հաստատութիւնը, որուն մէջ տկար կանայք ու օրիորդք՝ երիկ մարդիկներէն վար չէին մնար։ Թէպէտ հաւատքնին ուրացողներ ալ գտնուեցան, բայց անոնց թիւը մէկալներուն համեմատութեամբ շատ քիչ է։

Այսպէս փափկասիրութեամբ եւ անառակութեամբ ապականած աշխարհքը, քրիստոնէութեան ձեռքով նորէն կենդանացաւ, մանաւանդ թէ անոր ձեռքով աշխարհքս քիչ ժամանակ ետքը բոլորովին կերպարանափոխ եղաւ։ Քրիստոնէութեան նորադարձ ազգերուն վրայ ըրած ազդեցութեամբն եղաւ՝ որ գերութիւնը վերցուեցաւ, ամուսնութեան կապը սրբուեցաւ, կանանց պատիւը հաստատուեցաւ, զորոնք հեթանոսք անարգ գերւոյ տեղ կը դնէին, որով եւ տղոց բարեկրթութեան եւ առանին առաքինական կենաց հաստատուն հիմ մը դրուեցաւ։ Այսպէս ցուցուց քրիստոնէական կրօնը՝ իւր յաղթող եւ աշխարհքը կերպարանափոխ ընող զօրութիւնը։ Եւ նախապաշարեալ միտք չունեցող հեթանոսները համոզելու համար՝ որ Յիսուսի վարդապետութիւնն երկնքէն է, բաւական էր տեսնելը՝ նորադարձից բարուցն ու վա-

րուցը վրայ քրիստոնէութեան բղխած այս ազդեցութիւնը, եւ մարդկային սրտին վրայ տիրելու զօրութիւնը:

Մինչեւ հիմայ յիշած եպիսկոպոսներն ու վարդապետներն իրենց առաքինի վարուքն ու հայրական խնամքովը, չէ թէ միայն այն եկեղեցեաց յառաջադիմութեանը կ'աշխատէին որոնց առաջնորդն էին, այլ նաեւ իրենց անխոնջ ջանքովը ու ջերմ եռանդովը ընդհանուր եկեղեցւոյ տարածուելուն ու բարգաւաճելուն ալ գործակից կ'ըլլային: Ի մասնաւորի իրենց ընտիր ու գեղեցիկ գրուածքներովը անմահ յիշատակարան մը կանգնեցին, որուն համար եկեղեցին ալ զիրենք առանձին պատուոյ անուամբ մեծարեց: Բայց յայտնի է որ այս նկատմամբ ամէնն ալ հաւասար աստիճանի մէջ չեն. Հասարակօրէն կը զանազանուին Եկեղեցւոյ Հարք ու Եկեղեցւոյ Մատենագիրք: Եկեղեցւոյ Հարք (Patres Ecclesiae) կ'ըսուին անոնք՝ որ սրբական վարուք երեւելի եղած են, եւ որոնց գրուածքներն եկեղեցին կամ յայտնի կամ լռելեայն հաստատած է: Ասոնք սուրբ Հարց մէջ մասնաւորապէս անոնք մեծարանաց արժանի են, որոնք մինչեւ առաքելոց ժամանակը կը հասնին եւ Քրիստոսի առաքելոց հետ կենակից, խօսակից եւ անոնց բարեկամ ու աշակերտ եղած են. ասոնք Առաքելական Հարք կը կոչուին: Երկրորդ ժամանակի չըլլանին սուրբ Հարց մէկ քանին, որ խորին գիտութեամբ մեծ համբաւ առած են, եւ իրենց վարուքն ու գրուածներովը ճշմարիտ քրիստոնէական հաւատոյ տարածման առանձին եղանակաւ օգնական ու գործակից եղած են, Վարդապետք Եկեղեցւոյ (Doctores Ecclesiæ) մակդիրը անունը կը կրեն: Արեւելեան Եկեղեցւոյ վարդապետաց անուններն են՝ Աթանաս, Մեծն Բարսեղ, Գրիգոր Նազիանզացի եւ Յովհաննէս Ոսկեբերան. իսկ արեւմտեան եկեղեցւոյ՝ Ամբրոսիոս, Օգոստինոս, Մեծն Գրիգոր ու Յերոնիմոս, որոնց վրայ եւ աւելցան՝ Մեծն Լեւոն Քրիզոլոգոսը, Թովմաս Աքուինացին, Բոնաւենտուրա ու Աղֆոնսոս Լիգուորի: Եկեղեցական մատենագիրք (Scriptores Ecclesiae) անոնք կ'ըսուին, որոնց կամ կենաց սրբութիւնն ըստ բաւականին ապացուցուած չէ, եւ կամ գրուածքներուն մէջ՝ քրիստոնէական վարդապետութիւնն ըստ հոգւոյ եւ ըստ մտաց եկեղեցւոյ բացատրուած չէ, այնպէս որ եկեղեցւոյ տուած հաւանութիւնը չափաւորեալ է: Այս կարգին կը վերաբերին՝ Պապիաս, Տերտուղիանոս, Կղեմէս Աղեքսանդրացին, Որոգինէս, Եւսեբիոս եւ ուրիշները:

## ԱՌԱՋԻՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՄԻՋՈՑԻՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ Ս. ՀԱՐՔՆ ՈՒ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐԸ

### 14. *Առաքելական Հարք:*

1. *Ս. Կղեմէս Հռոմայեցին* առաքելական ժամանակին հռչակաւոր սուրբ Հարց մէկն է, զորն որ Պաւղոս առաքեալն (Փիլիպ. Դ. 3.) իւր գործակիցը կ'ա-

Նուաճէ, որուն անունը կենաց գրքին մէջ գրուած է։ Իր վարուց պատմութիւնն ընդհանրապէս մութ եւ անյայտ է, իբրեւ կատարեալ ստոյգ պատմուածը հետեւեալն է։ Կղեմէս՝ Պետրոս ու Պաւղոս առաքեալներուն աշակերտն էր, եւ անոնցմէ եպիսկոպոս ձեռնադրուած։ Ինչպէս հաւանական կ'երեւայ՝ իբրեւ սուրբ Պետրոսի երրորդ յաջորդ, ինը տարի (92—101) բավանդակ եկեղեցին կառավարեց։ Ասոր վրայ Իրենէոս այսպէս կը գրէ. "Երանելի առաքեալները Հռոմայ եկեղեցին հաստատելէն ետեւ, եպիսկոպոսական պաշտօնը Լինոսի տուին, որուն յաջորդեց Անակղետոս, որմէ ետքն եպիսկոպոս եղաւ Կղեմէս՝ իբրեւ երրորդ առաքեալներէն ետքը։ Ասիկայ առաքեալները տեսած եւ անոնց կենակից եղած էր. առաքելոց քարոզները դեռ ականջը կը հնչէին եւ աւանդութիւններն աչքին առջեւն էին"։ Ս. Կղեմէսին առաքելական գործունէութիւնք եւ վերին հովուական խնամակալութիւնը, հետեւեալ դէպքին մէջ յայտնի երեւցաւ։ Իր քահանայապետութեան ժամանակ Կորնթոսի եկեղեցւոյն քրիստոնէից մէջ՝ ցաւալի երկպառակութիւն մը ծագած էր։ Քանի մը խռովասէր անձինք իրենց օրինաւոր առաջնորդներուն դէմ ելած եւ շատ քահանաներ ալ պաշտօնէն վար առած էին։ Կորընթացիք՝ Հռոմ եկեղեցւոյ Գլխոյն Կղեմէս Քահանայապետին դիմեցին, որպէս զի ինք իր ճոխութեամբը դժտութիւնը դադրեցընէ։ Կղեմէս թուղթ մը գրեց Կորնթացւոց, զոր ցայսօր ունինք, որուն մէջ սրտաշարժ խօսքերով հաւատացեալները կը յորդորէ՝ որ զիրար իբրեւ եղբայր սիրեն եւ իրենց առաջնորդացը խոնարհութեամբ հնազանդին, բայց միանգամայն հայրական ծանրութեամբ ու առաքելական պաշտօնին ճոխութեամբը չանսացողները կը սաստէ։ Ս. Կղեմէսին այս թուղթը՝ որ եկեղեցւոյ Նուիրապետութեան առաքելոցմէ յառաջ գալուն եւ աստուածային հաստատութիւն ըլլալուն յայտնի ապացոյց մըն է, հին եկեղեցւոյ մէջ մեծ յարգ ունէր, եւ թէ Կորնթացւոց եւ թէ ուրիշ եկեղեցիներուն մէջ երկայն ատեն հրապարակաւ կը կարդացուէր։ Մահուանը վրայ որոշ բան

մը չենք գիտեր, սակայն հաւանական կ'երեւայ որ Տրդատիոս կայսեր ժամանակէ հաւատոյ համար վկայած ըլլայ, մինչու որ անունը շատ հին պատարագամատոյց-ներու մէջ մարտիրոսաց կարգը դրուած կը գտնենք:

2. Ս. Իգնատիոս Աստուածազգեաց Հայրապետը՝ հին եկեղեցւոյ նշանաւոր անձինքներէն մէկն է, եւ ընդհանուր կարծեօք սորա կը համարուի՝ ինք Ս. Յովհաննէս առաքելոյն աշկերտն եղած էր, եւ ետքէն իբրեւ Ս. Պետրոսի երրորդ յաջորդ՝ Անտիոքի եպիս-կոպոս ընտրուեցաւ: Իր վկայաբանութենէն՝ որուն ստուգութիւնն ընդհանրապէս ճանչցուած է, քանի մը ճիշդ տեղեկութիւններ ունինք կենացը վերջին ժամանակին ու փառաւոր մարտիրոսական մահուանը վրայ: Դոմետիանոս կայսեր հալածանաց ատեն՝ Ս. Իգնատիոս հայրական սիրով իր ժողովուրդը կը յոր-դորէր հաւատոյ մէջ հաստատուն մնալու: Ասով գոհ չըլլալով՝ Քրիստոսի ունեցած եռանդագին սիրոյն առաւելութեամբը, ան ատենէն սրտին մէջ բաղձանք մը կը զգար սուրբ հաւատոյ եւ իրեն յանձնուած հօ-տին համար կենդանի պատարագ ըլլալու, որպէս զի Աստուած իրենց աղօթքի եւ ներողութեանցը մէջ օգնա-կան ըլլայ: Բայց սրտին փափաքը հազիւ Տրայանոս կայսեր ժամանակը կատարուեցաւ: Իր հօտն իբրեւ հաւատարիմ ու հայրագութ հովիւ քառասուն տարի կառավարելէն ետեւ, Տրայանոս կայսրը՝ որն որ քրիս-տոնեաները հալածելու խիստ հրամաններ հանած էր, Հայոց ու Պարթեւաց դէմ պատերազմի գացած ատեն (106ին) Անտիոք հանդիպելով, լսեց որ քաղքին եպիս-կոպոսն Իգնատիոս՝ քրիստոնէից առաջնորդներուն երեւելիներէն մէկն է, այնպէս որ անոր մահը քրիս-տոնէութեան մեծ հարուած գուցէ թէ նաեւ ջնջումը կրնայ ըլլալ: Տրայանոս անմիջապէս զԻգնատիոս իր առջեւը դատաստանի հանել տուաւ, եւ երբոր քննեց տեսաւ եռանդուն ծերունւոյն հաւատքն ի Քրիստոս, հրամայեց որ զինքը կապած Հռոմ տանին, որպէս զի գազանամարտից ժամանակին աւուրներուն կերակուր ըլ-լայ: Ս. Իգնատիոս այս վճիռը ներքին սրտի ուրախու-թեամբ ընդունեցաւ եւ ըսաւ. "Շնորհակալ եմ, ով

Աստուած իմ, որ զիս քու սիրոյդ արժանի ըրիր եւ պարգեւեցիր որ Պօղոս առաքելոյն պէս երկաթի շղթաներ կրեմ,,։ Անկէ ետքն ընդհանուր եկեղեցւոյ համար աղօթք ըրաւ, եւ առանձինն Անտիոքի հաւատացեալներն Աստուծոյ պաշտպանութեանը յանձնեց։ Սելեւկիա՝ Անտիոքի նաւահանգիստը, զինուորաց պահպանութեան տակ նաւ մտաւ եւ նախ Զմիւռնիա հասաւ, ուր ցամաք ելլելով քանի մ'օր իր բարեկամին Ս. Պօղիկարպոսի քովն անցուց։ Հոն սիրով ընդունեցաւ շրջակայ տեղերէն զինք ողջունելու համար եկած քրիստոնէից պատգամաւորութիւններն. ասկէ գրեց նաեւ իւր թղթերն Եփեսոսի հաւատացելոց, Տրալլեայի ու Մագնեսիայի եկեղեցիներուն եւ Հռոմայ քրիստոնէից։ Ճամբան շարունակելով Տրովա հասաւ, ուր դարձեալ ցամաք ելաւ ու հոն քանի մ'օր մնալով Ս. Իգնատիոս կրցաւ իր նամակները գրել, Փիլադելփիայի եւ Զմիւռնիայի հասարակութեանց ու Ս. Պօղիկարպոսի։ Վերջապէս Իտալիա հասնելով՝ Ոստիայի նաւահանգիստը Հռոմի քրիստոնեաներէն սիրալիր մեծարանօք ընդունուեցաւ։ Անոնց հետ աղօթք ըրաւ, եւ մեծամեծ թախանձանօք խնդրեց՝ որ չըլլայ թէ իր ազատութեան համար բան մ'ընեն։ Քիչ մ'ետքը հաւատացելոց մեծ ցաւովը՝ Հռոմ ամփիթէատրոնի մէջ գազանաց կերակուր եղաւ. միայն մեծ ոսկորները մնացին՝ զորոնք հաւատացեալները ժողվելով յաղթանակաւ Անտիոք տարին, ուր մեծ յարգութեամբ եւ զգուշութեամբ կը պահէին ու կը մեծարէին։ Իր փառաւոր մարտիրոսութիւնն եղաւ 107ին Դեկտեմբեր ամսոյն 20ին։ — Ս. Իգնատիոսի՝ իր վշտալից ճամբորդութեան ժամանակ գրած եօթը թղթերը մինչեւ հիմայ կան։ Ասոնք՝ սրբոյն կենդանի հաւատքին եւ առ Քրիստոս ունեցած վառեալ սիրոյն ակներեւ ցոյց մըն են; եւ միանգամայն իր ներքին ջերմեռանդութիւնն ու հոգւոց փրկութեան ունեցած սաստիկ եռանդը կը ցուցընեն։

3. Ս. Պօղիկարպոս Զմիւռնիայի եպիսկոպոսը, Յովհաննէս առաքելոյն աշկերտն ու Ս. Իգնատիոսի մտերիմ բարեկամն էր։ Թէպէտ եկեղեցւոյ այս պա-

տուական հօր՝ ծննդեամբ ուստի ըլլալն ու վարուց ուրիշ հանգամանքներն անծանօթ են, սակայն արժանահաւատ պատմիչներ կ'աւանդեն՝ որ Ս. Պօղիկարպոս Քրիստոսի աշկերտներուն ու առաքելոց հետ տեսնուած, Յովհաննէս առաքեալէն Զմիւռնիայի եպիսկոպոս դրուած եւ երկար ատեն իր ժողովուրդն իմաստուն խոհականութեամբ ու հայրական սիրով կառավարած է։ Աւելի մանրամասն տեղեկութիւններ ունինք Հռոմ կեցած ժամանակին եւ փառաւոր մարտիրոսական մահուանը վրայ։ Անտոնիոս Պիոս կայսեր ժամանակ՝ Հռոմ գնաց Անիկետոս Քահանայապետին հետ զանազան եկեղեցական իրողութեանց եւ առանձինն զատկի տօնին խնդրոյն վրայ խօսելու համար։ Հռոմ կեցած ատենը՝ բազմաթիւ Գնոստիկեան հերետիկոսներ եկեղեցւոյ ծոցը դարձուց։ Հոն պատահեցաւ նաեւ Մարկիոն հերետիկոսապետին, որն որ երբ որ արհամարհանօք սուրբ հայրապետին հարցուց թէ զինքը կը ճանչնայ՞, պատասխան տուաւ Պօղիկարպոս. "Այո՛ կը ճանչնամ զքեզ սատանայի անդրանիկը„։

Ս. Պօղիկարպոս երկար ժամանակ կառավարեց Զմիւռնիայի եկեղեցին, եւ հարիւրամեայ ծանրացեալ հասակին՝ Մարկոս Աւրելիոս կայսեր ժամանակ (167) փառաւոր վկայութեամբ պսակուեցաւ։ Ասոր վրայ Զմիւռնիայի հասարակութեան՝ Պոնտոսի հաւատացելոց գրած նշանաւոր թղթին մէջ, շատ գեղեցիկ ու սրտաշարժ տեղեկութիւններ կը գտնենք։ Զմիւռնիայի հեթանոս ժողովուրդը՝ որ սաստիկ կատաղութեամբ քրիստոնեաները կը հալածէր, տեսնելով որ անոնք աներկիւղ եւ մտադիւր մահը յանձն կ'առնուն, կատղած սկսան աղաղակել որ իրենց առաջնորդը՝ Պօղիկարպոս առիւծներու առջեւը նետուի։ Ս. Հայրապետը թէպէտ յօժարութեամբ աչք առած էր Քրիստոսի համար մեռնիլը՝ բայց կեանքը հաւատացելոց համար օգտակար տեսնելով, ուզեց ծածկուիլ. ուստի քաղքէն հեռու գեղ մը քաշուեցաւ, բայց տեղն իմացուելով խնդրակներ խաւրուեցան որ զինքը բռնեն։ Փոխահիւպատին առջեւը տարուելով՝ հոն գիզուած ժողովուրդն սկսաւ աղաղակել. Անիկայ է անաստուա-

ծութեան ուսուցիչը, ասիկայ է քրիստոնէից Հայրը, եւ մեր կռոց կործանիչը: Փոխանհիւպատոսն առաջարկեց Պողիկարպոսի որ կռոց զոհէ եւ Քրիստոսի հայհոյէ, որուն պատասխան տուաւ ալեւոր եպիսկոպոսը. “Ութսունուվեց տարի է որ իմ Տէրոջս կը ծառայեմ եւ ինծի անիրաւութիւն գէշ բան մ’ըրած չունի. Ինչպէս կրնամ իմ Թագաւորիս հայհոյել, որն որ զիս իր արեամբը փրկած է,,: — Ան ատեն փոխանհիւպատը վճիռ տուաւ որ Պողիկարպոս կրակի մէջ այրի: Սուրբ ծերունին ուրախութեամբ Աստուծոյ շնորհակալ եղաւ՝ որ զինքն աս շնորհաց արժանի ըրաւ, եւ ինքն անմիջապէս խարոյկին վրայ ելաւ. Հոն գեղեցիկ աղօթք մ’ըրաւ, որուն մէջ Յիսուսի Քրիստոսի աստուածութեան ունեցած կենդանի հաւատքը կը ցուցընէ: Սակայն բոլորքեւոլ բոցը սրբոյն վնաս մը չտուաւ, հովէ ուռած առագաստի նման իր չորս կողմը պատեց առանց մարմնոյն դպչելու. Վերջապէս զինուոր մը դաշունով զինքը խոցեց եւ իր փառաւոր կենացը վերջ տուաւ: Հաւատացեալները շատ աղաչեցին՝ որ մարմինն առնուն, բայց Հրեայք բդեշխը համոզցուցած էին որ չըլլայ թէ ասոր զիջանի, ինչու որ քրիստոնեաները զՔրիստոս կը թողուն եւ զՊողիկարպոս կը սկսին պաշտել: Ասոր վրայ Զմիւռնիայի հաւատացեալք Պոնտոսի հաւատացելոց գրած թղթոյն մէջ աս խորհրդածութիւնը կ’ընեն. “Յիմարները չեն գիտեր՝ որ մենք երբեք զՔրիստոս չենք կրնար թողուլ եւ անոր տեղ ուրիշի երկրպագութիւն ընել: Վասն զի զինքը կը պաշտենք Աստուծոյ Որդին ըլլալուն համար, իսկ մարտիրոսները կը յարգենք ու կը սիրենք իբրեւ Քրիստոսի աշակերտները ու հետեւողները, իրենց Թագաւորին ցուցուցած հաւատարմութեանն ու բարեպաշտութեանը համար,,: Բդեշխն Հրէից բանին անսալով՝ սրբոյն մարմինն այրել տուաւ, ուստի եւ հաւատացեալները միայն մէկ քանի ոսկրներն ու մոխիրը կրցան ձեռք բերել, զորոնք իբրեւ անգին ու պատուական մարգարիտ կը պահէին ու կը պատուէին:

Ս. Պողիկարպոսի Փիլիպպեցւոց գրած թուղթը՝ զոր որ ցայսօր ունինք, երկար ատեն Ասիայի եկեղե-

ցեաց մէջ հրապարակաւ կը կարդացուէր։ Այս թուղթն իւր ազնիւ բնութեանն ու անդրդուելի հաւատքին սքանչելի յիշատակարան մըն է։

## 15. Երկրորդ ու երրորդ դարու եկեղեցւոյ նշանաւոր Ս. Հարքը:

1. *Ս. Յուստինոս վկայ կամ իմաստասէրն* եկեղեցւոյ հռչակաւոր Հարց մէկն է, որուն համար Եւսեբիոս կ'ըսէ թէ երկրորդ դարու անուանի ու հոյակապ անձինքն իր անուան պայծառութեամբը նսեմացուց։ Այս սրբոյն վարուցը վրայ՝ ընդարձակ տեղեկութիւններ ունինք, որոնց մեծ մասն ինք անձամբ կ'աւանդէ։

Յուստինոս Սամարիայի Նէապոլիս (հին Սիւքէմ) քաղաքը, հեթանոս ծնողքներէ ծնաւ 103ին, որոնք հոն գաղթած էին։ Հայրը Պրիսկոս՝ շատ հարուստ ըլլալով փոյթ տարաւ իրեն աղէկ կրթութիւն մը տալու եւ պզտիկութենէ ուսմանց ու գիտութեանց մէջ յառաջացընելու։ Թէ ինչպէս ճշմարտութիւնը ճանչնալու սիրով, ինք զինքը փիլիսոփայական ուսմանց տուաւ եւ ետքէն քրիստոնեայ եղաւ, ինք այսպէս կը պատմէ։ Ամենէն յառաջ, կ'ըսէ, ստոյիկեան փիլիսոփայի մը աշակերտեցայ եւ երկայն ատեն քովը մնացի, բայց իրմէ Աստուծոյ վրայ բան մը չկրցայ իմանալ, որովհետեւ ինքն ալ չէր գիտեր, եւ կ'ըսէր թէ գիտնալն ալ հարկաւոր չէ։ Զինքը ձգեցի ու պերիպատիկեան փիլիսոփայի մը գացի, որն որ ըստ իր անձնական կարծեացը՝ շատ սրամիտ մարդ մըն էր։ Քանի մ'օր ետքն սակայն ուզեց իմանալ՝ որ ինծի ուսումս սորվեցընելուն համար իրեն ինչ պիտ'որ վճարեմ։ Աս բանը փիլիսոփայի մը անվայել գործք երեւցաւ ինծի, ուստի եւ զինքն ալ ձգեցի։ Բայց որովհետեւ ճշմարտութիւնը գտնելու բաղձանքս օրէ օր կ'աւելնար, պիւթագորական փիլիսոփայի մը գացի, որն որ մեծ անուն ունէր եւ իր գիտութեանը վրայ կը պարծէր։ Իրեն աղաչեցի որ զիս իրեն աշկերտութեան առնու, սակայն ինք հարցուց որ երաժշտութիւն, աստղաբաշ-

խութիւն ու երկրպաշտութիւն գիտե՞մ, զորոնք ան-
հրաժեշտ հարկաւոր կը սեպէր բարձրագոյն ուսմանց
հետամուտ ըլլալու համար։ Ինչու որ ասոնցմով կ՚ըս-
սէր, հոգին զգայական իրերէն ազատելով՝ բուն բա-
ւոյն ու գեղեցկին տեսութեանը կրնայ պատրաստուիլ։
Երբ որ ըսի որ չեմ գիտեր, զիս ճամբեց, որուն վրայ
սիրտս նեղացած գրեթէ բոլորովին յոյսս կտրեցի
փնտռած ճշմարտութիւնս գտնելու։ Այս վիճակի մէջ՝
միտքս դրի որ փորձ մ՚ալ ընեմ, ուստի ելայ հռչա-
կաւոր պղատոնական փիլիսոփայի մը գացի, որուն
դասախօսութեանցն ամէն օր ներկայ կը գտնուէի, եւ
քիչ ժամանակուան մէջ շատ յառաջադիմութիւն
ըրի։ Ամենէն աւելի անոր վրայ կ՚ուրախանայի որ
գերբնական բաներու խելքս կը հասնի, եւ գաղափա-
րաց նկատութիւնը հոգիս սրաթռիչ թեւերու վրայ
առած դէպ ի վեր կը բարձրացընէ. կը կարծէի որ քիչ
ժամանակուան մէջ իմաստուն եղայ լմնցայ, եւ շատ
չ՚երթար աստուածութիւնն ալ կը տեսնեմ, որովհե-
տեւ պղատոնական փիլիսոփայութեան վախճանն աս
էր։ Եւ որպէս զի ամփոփ միտք իմ մտածութեանցս
կարող ըլլամ պարապիլ, օր մը ելայ ծովեզերք գացի.
հոն հեզադէմ պատուական ծերունւոյ մը հանդիպե-
ցայ, որուն երբոր հարցուցի թէ ինչ կը փնտռէ, պա-
տասխան տուաւ՝ որ քանի մը հեռաւոր բարեկամնե-
րու գալստեանը կը սպասէ։ "Իսկ քու հոս գալուդ
պատճառն ի՞նչ է", հարցուց ծերունին. որուն պա-
տասխան տուի թէ կը սիրեմ առանձին տեղեր կենալ,
որպէս զի ամփոփ միտք կարենամ բարձրագոյն նկա-
տութեանց ու գիտութեանց վրայ խորհրդածելով ժա-
մանակս անցընել։ Ուրեմն, ըսաւ ծերունին, իմաստու-
թեան սիրող ես դուն եւ ոչ թէ գործնական կենաց
ու ճշմարտութեան։ Ինչո՞ւ չես ուզեր փիլիսոփայու-
թեան տեղ՝ գործնական կենաց հետեւող ըլլալ։ Երբ
որ սկսայ փիլիսոփայութիւնը գովել, եւ իրեն իմա-
ցուցի որ ճշմարտութիւնը ճանչնալու եւ աստուածու-
թիւնը նկատելու ունեցած փափաքիս պէս սաստիկ փա-
փաք ունեցած չեմ, ծերունին շատ ուրախացաւ, բայց
միանգամայն ցուցուց որ պղատոնական փիլիսոփայու-

թիւնը մարդուս միտքն ու սիրտը չէր կրնար գոհ ընել, եւ ոչ ալ իրեն ճշմարիտ խաղաղութիւն շնորհել, այնպէս որ խաբուած ըլլալս իմանալով ներքին սրտի հառաչանօք գոչեցի. Ուրեմն, ինծի ո՞վ պիտ՚որ առաջնորդէ, որովհետեւ հոս ալ ճշմարտութիւնը չկրցայ գտնել: Ծերը պատասխանեց. Շատ դիւրին է ճշմարտութեան ունեցած այս փափաքդ լեցընել, միայն թէ ճշմարիտ աղբիւրէն պէտք ես առնուլ. այսինքն մարգարէներէ, որոնք փիլիսոփաները գիտութեամբ կը գերազանցեն, եւ Հոգւոյն սրբոյ պատգամաւոր ըլլալնին հրաշքներով ու նախագուշակութիւններով հաստատած են: Ուստի անոնց գրուածքներն ու Քրիստոսի առաքելոց եւ անոնց աշակերտաց գրքերը պէտք ես կարդալ, եւ միանգամայն Աստուծոյ դիմել որ հոգւոյդ աչուըները լուսաւորէ,,: Աս խօսքերէն ետքը ծերունին գնաց եւ Յուստինոս մէյ մ՚ալ զինքը չտեսաւ: — Սակայն ասոր վրայ, կ՚աւելցընէ Յուստինոս, իր պատմութիւնը շարունակելով, սրտիս մէջ աստուածային կրակ մը վառուեցաւ ու սէր մը ծնաւ մարգարէից ու Քրիստոսի բարեկամացը, այնպէս որ անոնց գրքերն ամենայն փութով սկսայ կարդալ, եւ քրիստոնէութեան ճշմարտութեանը սրտանց համոզուեցայ,,:

Ետքէն Յուստինոս շատ անգամ առիթ ունենալով քրիստոնէից առաքինութիւնները տեսնելու, եւ անդուլ հալածանաց ատեն ցուցուցած հաստատութեան վրայ զարմանալու, վերջապէս մտքը դրաւ որ ալ քրիստոնէական կրօնն ընդունի, եւ տիոցը երեսուներորդ տարին մկրտուեցաւ (133): Յունական փիլիսոփայութեան մէջ կիրթ ըլլալը շատ օգտակար եղաւ. որովհետեւ անկէ ետքն իրեն գլխաւոր նպատակ դրաւ, բոլոր կենացը մէջ հեթանոս փիլիսոփայից հակառակութեանցն ու յարձակմանցը դէմ քրիստոնէութիւնը պաշտպանել, անոր համար քրիստոնեայ ըլլալէն ետքն ալ փիլիսոփայական տգարօղոնը վրան կը կրէր:

Ս. Յուստինոս քրիստոնէութիւնը տարածելու շատ մեծ արդիւնք ունեցաւ. իր հիմնական վարդապետութեամբը շատ մ՚ուսեալ հեթանոսներ քրիստո-

նէական կրօնին դարձուց. ասկէ զատ նաեւ բազմաթիւ գրութիւններովը Քրիստոսի եկեղեցւոյն օգտին մեծ արդիւնքով աշխատեցաւ: Յուստինոսի այս գրուածքներէն մեր ձեռքն հասած են, երկու Ջատագովութեան ճառը, եւ Տրիփոն Հրէին հետ ըրած Տրամախօսութիւնը: Առաջնոյն մէջ՝ հեթանոսաց առարկութիւններն ու զրպարտութիւնները, իսկ վերջինին մէջ Հրէից քրիստոնէից դէմ յառաջ բերած տարակոյսները, զարմանալի բացայայտութեամբ ու սրամտութեամբ կը ցրէ: — Բայց Աստուած ուզեց որ Յուստինոս չէ թէ միայն իր գիտութեամբը քրիստոնէութեան թշնամիները յաղթահարէ եւ Աւետարանը պաշտպանէ, այլ նաեւ իր մահուամբը Յիսուսի Քրիստոսի համար վկայէ: Ինչպէս հաւանական կ'երեւայ՝ իր փառաւոր վկայական մահը 167ին պատահած է:

2. *Ս. Իրենէոս* Գաղղիայի Լիոն քաղքին եպիսկոպոսն, ինչպէս հաւանական կ'երեւայ Փոքր Ասիոյ Զմիւռնիա քաղաքը քրիստոնեայ ծնողքներէ աշխարհք եկած (140ին), եւ մանկութեան ատեն Ս. Պողիկարպոս զինքը քրիստոնէական կրօնի մէջ կրթած է: Կրնայ մակաբերուիլ, թէ այսպիսի ազնուաբարոյ ու եկեղեցւոյ բազմարդիւն վարդապետի մը առաջնորդութեան տակ, Իրենէոսի դիւրազգած սիրտն ինչպիսի հաւատոյ զօրութեամբ ու սիրով բորբոքած պիտի որ ըլլայ, որ իր ամէն գրուածներուն մէջ ալ կը փայլի: Իրենէոս ջանաց երիտասարդութեան ժամանակն ամէն տեսակ ուսում սորվելու. մանաւանդ փութով յունական գրականութեան ետեւէ եղաւ, եւ Պղատոնի ու Հոմերոսի գրքերը կարդալով՝ յստակ եւ վայելուչ ոճ մը ստացաւ: Այս իմաստասիրութեան ծանօթութիւնները կրցաւ Իրենէոս՝ իբրեւ հաւատարիմ ու հարազատ որդի եկեղեցւոյ, քրիստոնէական հաւատքին փառքն ու պատիւը յանձնել, եւ հերետիկոսաց մոլորութեանցը խորունկ թափանցելով՝ զանոնք պայծառ մեկնել ու հզօրապէս յաղթահարել:

Քրիստոնէութիւնն ամէն տեղ հաստատուելու եւ տարածուելու ատենն, երիտասարդ հասակին մէջ զինքը հեռաւոր աշխարհքներ տարաւ. 170ին զինքը

Գաղղիայի Լիոն քաղաքն իբրեւ քրիստոնէական կրօնի քարոզիչ կը գտնենք։ Նոյն քաղաքին եպիսկոպոսը Պոթինոս՝ զԻրենէոս քահանայ ձեռնադրեց։ Իրենէոս սուրբ պաշտաման գերազանցութեամբը վառուած՝ Մոնտանեանց աղանդին Գաղղիա տարածուելուն դէմ արիաբար կռուեցաւ։ Յամի 177ին երբ Մարկոս Աւրելիոս կայսեր հանած հալածանքը Լիոն քաղաքն արհաւրօք լեցուցած էր, նոյն քաղքին վկաները՝ եկեղեցական ծանրակշիռ գործքի մը համար զԻրենէոս Հռոմ՝ Եղեւթերոս Քահանայապետին խաւրեցին, ձեռքն ընծայութեան թուղթ մը տալով, որուն մէջ զինքն իբրեւ "Ընտիր ու բարեպաշտ երէց եւ Աւետարանի եռանդուն քարոզիչ„ կը նկարագրեն։ Այս միջոցիս ծերունի Պոթինոս եպիսկոպոսը վկայական մահուամբ մեռնելով (178), Իրենէոս անոր եպիսկոպոսական աթոռոյն ու պատուոյն յաջորդ ընտրուեցաւ։ Իրենէոս իբրեւ եպիսկոպոս իր հօտին բարեկարգութեանն աշխատելէն զատ, գործունէութիւնը նաեւ իր թեմէն դուրս ալ տարածեց, ինչու որ չէ թէ միայն աստին անդին ճարակող հերձուածներն իր ազդու եւ զօրաւոր փաստաբանութեամբը յաղթահարեց եւ գրուածքներովը հիմնովին ջրեց, այլ նաեւ պէսպէս պատճառներու համար եպիսկոպոսաց մէջ ծագած տարաձայնութիւնը վերցընելու եւ խաղաղութիւնը հաստատելու ջանաց։ Բայց ամէն տեղէն աւելի իր հոգը Լիոնի եկեղեցւոյն վրայ ուղղած էր, եւ իր առաքինի վարուքն ու աստուածային քարոզութեամբը՝ հալածանաց ատեն հաւատքնին ուրացող բազմաթիւ հաւատացեալներ եկեղեցւոյ ծոցը դարձուց։ Իր հոգւոց փրկութեան համար ունեցած եռանդն, ամէնէն աւելի յայտնի տեսնուեցաւ Սեպտիմիոս Սեւերոս կայսեր հալածանաց ատեն, որ միջոցին Գաղղիա հարիւրաւորք հաւատոյ համար մեռան. իսկ Լիոն հաւատացելոց արիւնը հեղեղի պէս կը վազէր։ Իրենէոս ալ նոյն հալածանաց ժամանակ բազմաթիւ քրիստոնէից հետ վկայական մահուամբ մեռաւ (202)։—Իր գրուածքներուն մէջ երեւելի է, Հինգ գիրք ընդդէմ հերձուածոց անուն գործքը, որն որ բովանդակ եկեղեցւոյ մէջ մեծ յարգ ունի։

3. *Ս. Կիպրիանոս* (Թասկիոս Կեկիլիոս) Ափրիկէի Կարքեդոն քաղքին եպիսկոպոսն, երրորդ դարուն հռչակաւոր հայրապետներէն ու մատենագիրներէն մէկը, նոյն քաղքէն հարուստ ազնուական ընտանեաց զաւակ էր։ Կիպրիանոս տղայութեան հասակէն ինք զինքը մեծ եռանդեամբ յունական ու հռոմէական մատենագրութեան տուաւ, եւ խօսելու ձիրք ունենալով, քիչ ատենուան մէջ այնչափ յառաջացաւ, որ Կարքեդոնի ճարտարախօսութեան ուսուցիչ եղաւ եւ մեծ անուն հանեց։ Բայց արտաքին փառքը պատճառ եղաւ որ աշխարհքիս փորձութեանցը չկրցաւ դէմ դնել, եւ ինք զինքն աշխարհային հաճոյից ու վայելմանց տուաւ. նոյն իսկ ինքը կը խոստովանի որ երիտասարդութեան ժամանակ անցուցած կեանքը ստգտանքէ զերծ չէր։ Կիպրիանոսի բնակակից էր Կեկիլիոս անունով քահանայ մը, որուն հետ ունեցած մտերմութիւնն եւ անոր վրայ ունեցած վստահութիւնը, կամաց կամաց սրտին մէջ հոգեւոր փոփոխութիւն մը յառաջ բերաւ։ Այս քահանային խորհրդովը՝ Կիպրիանոս սկսաւ Ս. Գիրք կարդալ, եւ երկայն ժամանակ ինք իրեն հետ կռուելէն ետեւ, հաստատութեամբ միտքը դրաւ երկրաւոր ցանկութիւններէն հրաժարիլ։ Անկէ ետքը քրիստոնէական կատարելութեան գաղափարն այնպիսի եռանդով մը ընդգրկեց, որ դեռ երախայութեան ժամանակ բոլոր ունեցածը չունեցածը աղքատաց բաժնեց, եւ մշտնջենաւոր կուսութեան ուխտ ըրաւ։ Քրիստոսի 245 թուականին մկրտուեցաւ Կիպրիանոս, որով եւ իր ներքին փոփոխութեան գործքը լրովին կատարուեցաւ, եւ ան պատուական երէցին իր շնորհակալութիւնը ցուցընելու համար մկրտութեան ժամանակ Կեկիլիոս անունն առաւ։ Շատ չանցաւ Կարքեդոնի ժողովուրդը Կիպրիանոսի ճշմարիտ առաքինի վարքը տեսնելով, Դոնատոս եպիսկոպոսէն խնդրեցին որ զինքը քահանայ ձեռնադրէ։ Քիչ մը ետքը Դոնատոս եպիսկոպոսը մեռնելով, բոլոր կղերը գրեթէ միաբան հաւանութեամբ զԿիպրիանոս իրեն յաջորդ ընտրեց։ Թէպէտ եւ Կիպրիանոս իր խոնարհութեանը համար իսկզբան յանձն չառաւ ու փախաւ,

սակայն ժողովուրդը միտքը դրածէն ետ չկեցաւ, անոր պահուըտած տունը պաշարեց մինչեւ որ վերջապէս Կիպրիանոս անոնց աղաչանացը զիջաւ։

Կիպրիանոս քրիստոնեայ եպիսկոպոսաց կենդանի օրինակ կրնայ ըլլալ, որովհետեւ իբրեւ ճշմարիտ հայր՝ չէ թէ միայն իր ժողովրդեան, այլ նաեւ կրցածին չափ բոլոր եկեղեցւոյ բարւոյն համար կ'աշխատէր։ Իր անձին վրայ խորին խոնարհութեան, բարեպաշտութեան, հեզութեան ու մարդասիրութեան հետ, մեծարելի ծանրութիւն ու եկեղեցական հրահանգաց խիստ պահպանութեան նախանձ մը միացուցած ըլլալով, հաւատացելոց առջեւ թէ մեծ համարում ունէր, եւ թէ անոնց սիրտն իրեն քաշած էր։ Իր եպիսկոպոսութիւնը շատ մըրկալից ժամանակ հանդիպեցաւ. եպիսկոպոս ըլլալէն տարի մը ետքը Դեկոսի խիստ հալածանքն ելաւ. Կարքեդոնի հեթանոս ժողովուրդը կատղած սկսաւ բարձրաձայն աղաղակել, որ Կիպրիանոս առիւծներու առջեւը նետուի։ Բայց սուրբ եպիսկոպոսը փախած եւ պահուըտած էր, չէ թէ վախնալուն, այլ իր կեանքը ժողովրդեանն օգտակար սեպելուն համար, եւ իրօք ալ իր թաքստեան տեղէն թեմին գործքերը թղթով կը հոգար։ Հազիւ 251ին Զատկէն վերջը կրցաւ ետ դառնալ. իր ներկայութիւնն շատ հարկաւոր էր, որովհետեւ երկարատեւ բացակայութեան ատեն՝ Կարքեդոնի մէջ շփոթութիւններ ելած էին։ Շատերը հալածանաց ատեն՝ տանջանքներէն վախնալով հաւատքնին ուրացած էին, ուստի քանի մը թոյլ անձինք կը պահանջէին՝ որ անոնք առանց ապաշխարութեան եկեղեցւոյ հաղորդութեան մէջ ընդունուին։ Կիպրիանոս տեսաւ որ աս ներողամտութենէն եկեղեցւոյ մեծամեծ չարիքներ կրնան հասնիլ, ուստի եւ ամէն ճիգն ի գործ դրաւ, որ ինկողները դարձեալ եկեղեցւոյ հաղորդութեան մէջ ընդունելու համար հրապարակական ապաշխարութեան կարգ մը սահմանուի։ Իր Ինկելոց վրայ գրած սքանչելի գիրքն՝ ասոր վրայ մեծ լոյս կու տայ, եւ ան ատենուան եկեղեցւոյ ապաշխարութեան հրահանգաց ճշգրիտ պատկերը կ'ընծայեցընէ։

Հազիւ թէ Կիպրիանոս այս եղանակաւ եկեղեցւոյ հրահանգներն իր ժողովրդեան մէջ հաստատելու հոգ-տարած էր, երբ որ յանկարծ երկու աղէտալի արկածներ իր խեղճ հօտին գլուխն եկան, այս ինքն ժանտախտն ու Գաղղոսի անգութ հալածանքը: Այսպիսի ծանր նեղութեան առեն, ուր ամէն վայրկեան մահուան վտանգ կը սպառնար, Կիպրիանոս թոյլ տուաւ որ ճշմարիտ ապաշխարողներն անմիջապէս եկեղեցւոյ հա-ղորդութեան մէջ ընդունուին: Ժանտախտն անհնարին կոտորած կ՚ընէր, ամէնուն սիրտն ահով ու դողով լեցուցած էր, ախտէն բռնուելու վախէն ամէնքը քա-ղաքը թող տուած դաշտերը փախած էին, երթեւեկը բոլորովին դադրած ու քաղաքն անապատ դարձած էր. նոյն իսկ հիւանդաց հոգ տանող չկար, եւ մեռե-լոց մարմինները փողոցներուն մէջ ձգուած անթաղ մնացած էին: Այս դժուարին վիճակին մէջ՝ կանչեց Կիպրիանոս իր ժողովուրդն եւ ազդու ճառով մը ի-րենց յիշեցուց քրիստոնէական եղբայրսիրութեան պարտքը, յորդորեց որ սա ծանր փորձանաց ժամանակ ճշմարիտ որդի Աստուծոյ ըլլալնին ցուցընեն: Ս. Հայրապետին խրախուսական խօսքերը՝ հաւատացելոց սրտին վրայ մեծ ազդեցութիւն ըրին. մահուան եր-կիւղը փարատեցաւ, ամէնուն սիրտն ազնուական ոգ-ւով լեցուեցաւ. աներկիւղ քաջասրտութեամբ ու անձնանուէր սիրով անխտիր հաւատացելոց եւ ան-հաւատից սկսան օգնութեան հասնիլ: Աս գովելի անձնուրացութիւնը՝ հեթանոսաց վրայ մեծ տպաւո-րութիւն ըրաւ, այնպէս որ նոյն իսկ քրիստոնէութեան սաստիկ թշնամիները չկրցան զարմանքնին ծածկել: Ասոր հետեւութեամբը հալածումը սկսաւ մեղմանալ, եւ երբոր քիչ մը ետքը Գաղղոս կայսրը սպանուեցաւ՝ բոլորովին դադրեցաւ, այնպէս որ սուրբ եպիսկոպոսը կրցաւ նորէն իր եկեղեցւոյն ներքին բարեկարգու-թեանը միտ դնել: Այս միջոցիս իրեն ու Ստեփանոս Քահանայապետին մէջ, հերետիկոսաց մկրտութեան նկատմամբ անձնական վէճ մ՚ելաւ, որն որ բարեբախ-տութեամբ հերձուած մը յառաջ չբերաւ: (Ասոր վրայ մանրամասն տես 19:)

Ս. Կիւրղիանոս մարտիրոսական մահուամբ մեռաւ Վալերիանոս կայսեր հալածանաց ժամանակ (258 Սեպտ. 14)։ Կիւրղիանոս Աֆրիկէի առաջին եպիսկոպոսն է, որ մարտիրոսական մահուամբ մեռած է. իր անունը հին եկեղեցւոյ մէջ ընդհանրապէս շատ կը մեծարուէր։ Ս. Աւգոստինոս զինքը կաթողիկէական եպիսկոպոս, կաթողիկէական մարտիրոս կ'անուանէ։ Այս փառաւոր անունը Կիւրղիանոս միշտ հաստատուն պահեց իր գրուածքներովն ալ, որոնք լի են հմտութեամբ եւ նշանաւոր են լեզուին վայելչութեամբը։ Իր երկասիրութեանց մէջէն ընդ ամենը 13 ճառ եւ 81 նամակ մեզի հասած է։ Ճառերուն մէջ ընտրելագոյններն են. Եկեղեցւոյ միութեան, Վասն անկելոց, Վասն տէրունական աղօթից եւ Վասն օգտի համբերութեան ճառերը։

## 16. *Առաջին ժամանակի շրջանին հոյակապ եկեղեցական մատենագիրները։*

1. *Տերտուղիանոս* (Կուինտոս, Սեպտիմիոս Փղորէնս) որ 160ին Կարքեդոն ծնաւ, հռոմայեցի հարիւրապետի մը որդի էր։ Թէպէտ աղայութեան ժամանակ հեթանոսական դաստիարակութիւն ընդունեցաւ, բայց ամէն կերպ ուսում սորվեցաւ։ Կրօնիւ հեթանոս եւ ինք զինքը զզուական վայելմանց տուած ըլլալով, պատանեկութեան ատեն քրիստոնէութիւնն իրեն ծաղր եւ արհամարհանաց արժանի նիւթ մը կ'երեւար։ Բայց ետքէն շատ անգամ առիթ ունենալով քրիստոնէից դիւաց վրայ ունեցած զօրութիւնը տեսնելու, եւ միանգամայն տանջանաց ժամանակ անոնց ցուցուցած արիական հաստատութեան վրայ զարմանալու, ուզեց նոյն կրօնք ճանչնալ, եւ վերջապէս իմանալով անոր ուղղութիւնն ու ճշմարտութիւնը, հասակին 30 — 36 տարին մկրտուեցաւ։

Քրիստոնէութիւնն ընդունելէն ետքը, անոր գրչաւոր ախոյեաններէն մէկն եղաւ, եւ իր մտաց բովանդակ կարողութիւնները զանիկայ պաշտպանելու նուիրեց։ Տերտուղիանոս բնութեամբ տխուր ու խիստ ըլլալով, վրան արտաքոյ կարգի ազդեցութիւն ըրած

էր քրիստոնէական կրօնին ան պատուէրին՝ որ մարդ իւր մարմինը ցանկութիւններուն մէկտեղ պէտք է խաչացանել։ Իսկ քրիստոնէութեան քաղցր ու հեզ հոգւոյն չկրցաւ երբեք թափանցել, ուստի եւ Մոնտանեանց աղանդին սկզբունքներն իր բնութեանն աւելի համաձայն գտնելով, ուղղափառ եկեղեցին թող տուաւ ու անոնց յարեցաւ։ Տերտուղիանոս եկեղեցւոյն բաժնուելէն ետքն ալ շատ գրքեր շարադրեց, որոնց մէջ ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեանցն ու հրահանգացը դէմ կը խօսի եւ զանոնք ծաղր կ՚ընէ. իսկ Մոնտանեանց աղանդին մոլորութիւնները կը գովէ։ Բայց Տերտուղիանոս՝ իր դիւրագրգիռ անհանդարտ բնութեամբը Մոնտանեանց հետ ալ չկրցաւ երկայն ատեն խաղաղութեամբ կենալ. շատ չանցաւ անոնց հետ ալ գժտեցաւ եւ առանձին աղանդ մը կազմեց, որուն հետեւողներն իր անուամբը Տերտուղիանեանք կոչուեցան։ Ոմանք կը համարին թէ կենացը վերջին օրերն ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դարձած ըլլայ, բայց այսպիսի ցանկալի կարծիքի մը՝ պատմական ստոյգ ապացոյցներ կը պակսին։ Աս միայն ստոյգ է որ ծանրացեալ հասակի մէջ մեռաւ (շուրջ 240ին)։

Տերտուղիանոսի գրուածոցը մէջ՝ որոնց մեծ մասը ձեռուըներս հասած է, յայտնի կ՚երեւայ իր զարմանալի հանճարն ու հմտութիւնը, բայց միանգամայն խայթող լեզուն եւ ծաղրաբանութեան ու հեգնութեան ունեցած հակումը. ոճը նմանութիւններով լի է, բայց կարճ ու կտրուկ, անոր համար ալ շատ տեղ մթին ու դժուարիմաց։ Արժանահաւատ վկայ մըն է նոր կտակարանի գրքերուն վաւերականութեանը, եւ իր ուղղափառական գրութիւնները՝ եկեղեցւոյ զանազան վարդապետութեանցն ու կարգաւորութեանցը հաստատութիւն են։ Իր աշխատասիրութեանցը մէջ յիշուելու արժանի են՝ Ջատագովութիւնն ու Ընդդէմ հերետիկոսաց կամ Վասն կանխագրութեան հերետիկոսաց գիրքը։ Ասկէ զատ Տերտուղիանոս ան անզուգական արդիւնքն ալ ունի, որ եկեղեցւոյ իբրեւ առաջին լատին մատենագիր՝ քրիստոնէական գաղափարներ բացատրելու համար լատիներէնի նոր կազմութիւն մը տուաւ,

եւ զանխկայ քրիստոնէական վարդապետութեան յարմար լեզու մ'ըրաւ: Աս ալ մեծապէս օգնեց լատիներէն լեզուին ընդհանուր եկեղեցւոյ լեզու ըլլալուն, այնպէս որ անկէ ետքն եկեղեցւոյ Հարց շատերն սկըսան իրեն հետեւիլ: Ամենէն աւելի Ս. Կիպրիանոս իր վրայ մեծ համարում ունէր, եւ ամէն օր իր գործքերէն կտոր մը կը կարդար:

2. Կղեմէս (Տիտոս Փղաւիոս) Աղեքսանդրացին, երկրորդ դարուն կէսին հեթանոս ծնողքներէ ծնաւ, եւ հեթանոսական սկզբանց մէջ կրթուեցաւ: Ստուգութեամբ չէ գիտցուիր որ Աղեքսանդրիա թէ Աթէնք ծնած է. Աղեքսանդրացի անունն ոմանք կը համարին թէ երկայն ատեն Աղեքսանդրիա կեցած ըլլալուն համար տուած ըլլայ: Իմաստասիրութեան ատեն լաւ եւ ընտիր դաստիարակութիւն մ'ընդունեցաւ, եւ այն ատենուան երեւելի դպրոցները սորվելով, յունական մատենագրութեան մէջ շատ յառաջադէմ եղաւ: Յունաց փիլիսոփաներուն գրուածքները կարդալուն գլխաւոր պատճառն էր ճշմարտութիւնը ճանչնալու փափաքը, զորն որ թէպէտ չկրցաւ գոհ ընել, բայց Աստուած իր անկեղծ ջանիցն անով հատուցում ըրաւ, որ շատ չանցաւ Քրիստոսի վարդապետութիւնը ճանչնալու առիթ ունեցաւ: Դեռ երիտասարդ հասակին մէջ՝ քրիստոնէութիւնն ընդունեցաւ, եւ անկէ ետքն ամենայն զօրութեամբ աշխատեցաւ քրիստոնէութեան վրայ խորունկ եւ կատարեալ տեղեկութիւն առնալու: Այս վախճանաւ արեւելք ու արեւմուտք ճամբորդութիւններ ըրաւ, եւ Ասորիք, Պաղեստին, Ստորին Իտալիա ու Յունաստան պտըտեցաւ, եւ ամէն անցած տեղերն եկեղեցւոյ երեւելի եպիսկոպոսներուն ու վարդապետներուն հետ կը տեսնուէր, որպէս զի անոնցմէ բուն ճշմարիտ առաքելական աւանդութեանց վրայ տեղեկութիւն առնու: Ամենէն աւելի Պանդենոսին հետ սիրով կապուեցաւ, որ Աղեքսանդրիայի դպրոցին վերակացուն էր:

Դեմետրիոս եպիսկոպոսը զԿղեմէս Աղեքսանդրիայի եկեղեցւոյն քահանայ ձեռնադրեց, եւ Պանդենոսի մահուանէն ետքն երախայից դպրոցին վերա-

կացու դրուեցաւ: Հոս իրեն ընդարձակ դաշտ մը բա-
ցուեցաւ, որուն բաղձանքին համեմատ քրիստոնէական
կրօնքին տարածմանն ու պաշտպանութեանը գրով ու
բերանով աշխատելու: Իր իմաստութեան ու պերճախօ-
սութեան անունն ամէն կողմ տարածուած ըլլալով,
շատ հեթանոս ուսումնասէրներ հեռուներէն Աղե-
քսանդրիա եկան իրեն աշակերտելու համար. ասոնց
մեծ մասն իր ձեռքովը դարձան ու քրիստոնէութիւնն
ընդունեցան: Այս կերպով Կղեմէս՝ իբրեւ վերակացու
վերոյիշեալ երախայութեան դպրոցին, տասնեւերկու
տարի յօդուտ եկեղեցւոյ աշխատեցաւ: Բայց երբոր
Սեպտիմիոս Սեւերոսի հալածումն Աղեքսանդրիա ալ
հասաւ, Կղեմէս հալածումէն խոյս տալու համար քաղա-
քէն հեռացաւ (202ին), եւ ինչպէս հաւանական
կ'երեւայ Կապադովկիա իր Աղեքսանդր աշկերտին ու
բարեկամին քովը գնաց, որ հետագային քրիստոնեայ
հասարակութեան վրայ եպիսկոպոս դրուած էր: Եւ
որ Աղեքսանդր՝ Երուսաղէմի եպիսկոպոս անուա-
նուեցաւ, Կղեմէս հոն գնաց ու դպրոց մը բացաւ, ուր
իր գործունէութիւնն իբրեւ քրիստոնէական վարդա-
պետութեան ուսուցիչ քանի մը տարի շարունակեց:
Մահուանը վրայ ստոյգ բան մը չենք գիտեր. հաւանա-
կան է որ 217ին մեռած ըլլայ:

Կղեմէս Աղեքսանդրացւոյն գրուածքներուն առ-
աւելութիւնը յայնմ է, որ կը ջանայ քրիստոնէու-
թիւնն գիտնականօրէն պաշտպանել. իր գրուածքներն
յետագայ դարերուն Եկեղեցւոյ Ս. Հարց առջեւը շատ
մեծ յարգ ունէին եւ շատերը զանոնք իբրեւ օրինակ
կը համարէին: Իրմէ հետեւեալ գրուածքները միայն
ունինք. 1. Խրատ կամ Յորդոր առ Հեթանոսս (λόγος
προτρεπτικός) քրիստոնէութիւնն ընդունելու: 2.
Դաստիարակ կամ Առաջնորդ առ նորադարձ քրիստոնեան
(παιδαγωγός): 3. Ստրոմատ կամ Օթոց (στρώματα),
որուն նիւթը խառն է, բայց գլխաւոր վախճանն է ցու-
ցընել որ կաթուղիկէ վարդապետութիւնը ճշմարիտ
իմաստութիւնն է: 4. Մեծատանց փրկութեանը վրայ,
որուն մէջ խնդիր կ'ընէ, թէ արդեօք մեծատուններն
ալ փրկութեան հասնելու յոյս կրնան ունենալ:

3. *Որիգէնէս*՝ Կղեմէս Աղեքսանդրացւոյն հռչակաւոր աշակերտն ու քրիստոնէական հնութեան ամէնէն անուանի գիտուններէն մէկը, 185ին Աղեքսանդրիա ծնաւ։ Ծնողքը քրիստոնեայ եւ մեծատուն էին. Հայրը Ղեւոնիդաս՝ որ թէ բարեպաշտութեամբ ու թէ ուսմամբ աննշանաւոր մարդ չէր, մեծ փոյթ ունեցաւ իր որդւոյն աղէկ կրթութիւն տալու, եւ ինք անձամբ շատ ատեն աշխատեցաւ անոր միտքը հրահանգելու ու սիրտն ազնուացընելու։ Սակայն Որիգէնէս աս դաստիարակութեամբ գոհ չըլլալով, Աղեքսանդրիոյ երախայից դպրոցն սկսաւ յաճախել, եւ հռչակաւոր Կղեմէս Աղեքսանդրացւոյն ձեռքը յանձնուեցաւ։

Սեպտիմիոս Սեւերոս կայսեր՝ քրիստոնէից դէմ հանած հալածանաց ատեն, Որիգենէսին հայրը Ղեւոնիդաս ալ բանտ դրուեցաւ։ Դեռ 17 տարւան եռանդուն պատանւոյն սիրտը կ՚այրէր կը տոչորէր Քրիստոսի սիրոյն համար մարտիրոս ըլլալու, եւ եթէ մայրն ու եղբարքը բռնութեամբ զինքը չարգելուին, միտքը դրած էր որ երթայ քրիստոնեայ ըլլալը յայտնէ, որպէս զի հօրը հետ մարտիրոսութեան պսակն ընդունի։ Միտքը դրածը չկրնալով կատարել, հօրը նամակ մը գրեց, որուն մէջ խանդաղատանօք կ՚աղաչէ՝ որ չըլլայ թէ իր ընտանեացը սիրոյն համար հաւատքին մէջ դեդեւի։ Ղեւոնիդաս վկայական մահուամբ մեռաւ, եւ ունեցածը չունեցածը յարքունիս գրաւուելով, այրի ամուսինն եօթն անչափահաս զաւակներով յետին աղքատութեան մէջ ինկաւ։ Բայց Աստուծոյ քաղցր տեսչութեամբն Աղեքսանդրացի մեծատուն տիկին մը իրենց վրայ գթալով զանոնք ալ իր տունն առաւ։ Հոս նորէն սկսաւ Որիգէնէս իր քրիստոնէական հաւատքին վրայ ունեցած ճշմարիտ սէրը ցուցընել. վասն զի նոյն տունը կը բնակէր, Պօղոս անունով գնոստիկեան աղանդաւոր մը՝ որուն հետ Որիգէնէս երբեմն երբեմն կը տեսնուէր, բայց ամենեւին յանձն չառաւ անոր հետ աղօթք ընել, հերետիկոսի հետ կրօնական հաղորդութեան մէջ գտնուած ըլլալու թէեւ՝ կասկած մ՚ալ չտալու համար։ Տասն՚ութը տարւան էր երբոր

քաղաքին Դեմետրիոս եպիսկոպոսը՝ զինքը Աղեքսան-
դրիայի երախայութեան դպրոցին վերակացու կարգեց։

Որիգենէս իբրեւ քրիստոնէական կրօնի ուսուցիչ
բոլոր զօրութեամբը ինք զինքը աս նոր պաշտօնին
նուիրելով, մինչեւ ան ատեն մասնաւորաց տուած
դասերը դադրեցուց, բայց միանգամայն որպէս զի
կարող ըլլայ ապրուստը գտնել. իր հարուստ գրա-
տունը ծախեց, գնողէն հետ դաշինք դնելով՝ որ ամէն
օր իրեն չորս խերբեւէշ տայ։ Այսպէս Որիգենէս իր
ժամանակաւոր պիտոյքը վրայ մտածելէն ազատեցաւ,
որովհետեւ խոստամբեր ու մեռուցման սիրող ըլլալով,
շատ քանի կարօտութիւն չունէր։ Որիգենէսին զարմա-
նալի անձնուրացութեանն ու ներքին բարեպաշտու-
թեանը վրայ շատերը չինուելով, իրեն վրայ մեծ հա-
մարում ունեցան, եւ որովհետեւ գիտութենէն ու
ճարտասանութենէն զատ, սորվեցընելու առանձին
ձիրք մ'ունէր, շատ երիտասարդներ նաեւ հեռաւոր
տեղերէն Աղեքսանդրիա եկան, քրիստոնէական վար-
դապետութեան վրայ խօսած յանկուցիչ ճառերը մտիկ
ընելու։ Տարուէ տարի անունը կը հռչակուէր եւ աշա-
կերտներուն թիւը կը շատնար, այնպէս որ պարտաւո-
րեցաւ իր առաջին աշակերտը Հերակղէսը օգնական
առնուլ, որովհետեւ ինք երբեմն ուրիշ գործքերու
պատճառաւ չէր կրնար դասախօսութիւնը շարունա-
կել։ Օրինակի աղագաւ արտաքոյ իշխան մ'ուզեց՝ որ
Որիգենէս զինքը քրիստոնէական կրօնի մէջ հրահան-
գելու համար իրեն գայ. Որիգենէս եպիսկոպոսին հրա-
մանաւն ելաւ գնաց եւ Աստուծով իշխանին գործը
յաջողցուց։ Նոյնպէս յիշեցինք որ Աղեքսանդր Սեւե-
րոս կայսեր Յուլիա Մամէա մայրն Որիգենէսէն քրիս-
տոնէական կրօնի մէջ հրահանգուեցաւ։

Որիգենէս որչափ ուրիշներուն սորվեցընելու փոյթ
ալ ունէր, իր անձնական կրթութեանն ու յառաջա-
դիմութեանն ալ անհոգ չէր։ Կենացը 25 երորդ տա-
րին սկսաւ եբրայեցերէն սորվիլ, տեսնելով որ Հին
Կտակարանը մեկնելու համար անհրաժեշտ հարկաւոր
է։ Գրեթէ միեւնոյն ատեն սկսաւ միանգամայն հին
յունական փիլիսոփայութեան եւեւէ ըլլալ, որպէս

զի անով քրիստոնէութեան ճշմարտութիւնը կիրթ եւ ուսեալ հեթանոսաց կարող ըլլայ ցուցընել: Շուրջ 211ին Հռոմ ճամբորդութիւն մ՚ըրաւ, որպէս զի քրիստոնէութեան ամէնէն հին եկեղեցւոյն մէջ, բուն առաքելական աւանդութիւնները սորվի: Բայց քիչ մ՚ետքը նորէն Աղեքսանդրիա դարձաւ, ուր իր վարդապետական պաշտօնէն զատ աւանդին փութով նաեւ գրաւոր աշխատութեանց սկսաւ պարապիլ: Ասոր մէջ իրեն շատ օգնեց Ամբրոսիոս անունով հարուստ մարդ մը, զոր՝ որ Որոգինէս ուղղափառութեան դարձուցած էր:

Յամի 228ին՝ Դեմետրիոս եպիսկոպոսը զինքը եկեղեցական գործքի մը համար յանձնարարական թղթով Աքայիա խրկեց: Որոգինէս Պաղեստինէն անցնելով երկայն ատեն Երուսաղէմի ու Կեսարիայի եպիսկոպոսներուն քովը մնաց, որոնք իր մտերիմ բարեկամներն էին: Կեսարիայի եպիսկոպոսը զինքը տացը 43երորդ տարին քահանայ ձեռնադրեց, առանց զայն գիտնալու որ ատով գլուխն աղետալի վէճ մը պիտ՚որ բերէ: Որոգինէսի այսպէս առանց իր եպիսկոպոսին հրամանին ձեռնադրուիլը, եկեղեցւոյ կանոնաց հակառակ ըլլալով, Դեմետրիոս ասոր վրայ շատ զայրացաւ, եւ երբ որ Որոգինէս Աղեքսանդրիա դարձաւ, դատաստանական ժողովի մէջ մը զինքը վարդապետութեան պաշտօնէն ձգեց ու հայրենիքէն հեռացուց: Որոգինէս Պաղեստին գնաց ուր սիրով ընդունուեցաւ. բայց Դեմետրիոս անով ալ գոհ չեղաւ, ինչու որ գրուածքներուն մէջ մոլորութիւններ կային, ուստի երկրորդ ժողով մը գումարեց եւ զինքը եկեղեցւոյ հաղորդութենէն մերժեց եւ քահանայական պաշտամունքներէն զրկեց: Անկէ ետքը Որոգինէս ցաւով ու վշտօք լի կեանք մ՚անցուց եւ շատ անհաճոյ բաներ կրեց: Սակայն եւ այնպէս Որոգինէս անկէ ետքն ալ ունեցած զօրութիւնն եկեղեցւոյ ծառայութեան նուիրելէն ետ չկեցաւ: Կեսարիա դպրոց մը հաստատեց, զոր որ Աղեքսանդրիոյ դպրոցին պէս կարգաւորելով՝ քիչ ատենուան մէջ շատ համբաւ հանեց: Մատենագրութեան ու հոգւոց դարձին ունեցած փոյթն ու եռանդն ալ

չկորսնցուց: Դեկոս կայսեր հալածանաց ատեն բռնուելով բանտի մէջ շատ նեղութիւն կրեց, եւ թէպէտ բանտէն ազատեցաւ, բայց քիչ ժամանակ ետքը կրած տառապանքէն մեռաւ (254):

Որոգինէս իր հոգւոյն ձիրքերն ու անխոնջ փոյթն առանձին կերպով ցուցուց իբրեւ մատենագիր: Այնչափ բան գրեց, կ'ըսէ Ս. Երոնիմոս, որ ուրիշները նոյնչափ չեն կրնար կարդալ: Նոյն ուրեք վարդապետն Որոգինէսի գրուածոց թիւն 2000 կը դնէ. իսկ Ս. Եպիփան կ'աւանդէ թէ վեց հազարէն աւելի գիրք շարադրած է, որոնց մեծ մասը կորսուած են: Առանձին փոյթ ու ջանք ունեցաւ Հին եւ Նոր Կտակարանին գիրքերը մեկնելու եւ լուսաւորելու, որոնց վրայ շատ ճառեր ու մեկնութիւններ գրեց: Անուանի է իր Վեցէջեան զարմանալի գործքը, որուն մէջ Հին Կտակարանին եբրայական բնագիրը նախ եբրայեցերէն ու ետքը յունարէն գրով, եւ ետքէն եօթանասնից յունարէն թարգմանութիւնն եւ ուրիշ յունական թարգմանութիւններ վեց եւ տեղ տեղ նաեւ ութը, ինը սիւներու մէջ քով քով գրած է. սակայն միայն հատակոտորներ մնացած են: Իր քրիստոնէութեան պաշտպանութեան համար գրած անթիւ պատասխանատուութեանց մէջէն ունինք Ընդդէմ Կելսոսի աշխատասիրութիւնն ութը գրքի մէջ բովանդակուած, որն որ բոլոր գործքերուն մէջ ամէնէն ընտիրն է: Վարդապետական գործքերուն մէջ երեւելի է՝ Վասն սկզբանց գիրքը, որուն մէջ քրիստոնէական վարդապետութեանց հետ պղատոնական գաղափարներ ալ խառնած ըլլալով, մէջը շատ մոլորութիւններ կը գտնուին: Բայց սոյն բնագիրը կորսուած ըլլալով եւ անոր տեղ շատ փոփոխուած Ռուփինոսի թարգմանութիւնը միայն ունենալով, չենք կրնար որոշել թէ այս մոլորութեանց որչափը Որոգինէսինն են: — Տարակոյս չկայ որ Որոգինէս Նոր Կտակարանին ճշմարտութեանց մեծ վկաներէն մէկն է, ինչու որ անոր վրայ շատ քննութիւններ ըրած եւ անոր համաձայն Նոր Կտակարանի կանոնը կարգի դրած է:

## 17. Եկեղեցւոյ առաջին դարերուն մոլորութիւնները:

### ա. Արտաքոյ եկեղեցւոյ՝ քրիստոնէութեան հետ հակառակութեան ունեցող աղանդներ:

Իսկզբան անդ եկեղեցւոյ՝ կային շատ մը Հրեաներ ու հեթանոսներ, որոնք քրիստոնէութիւնն ընդունած չէին, բայց քրիստոնէութեան մէկ քանի գաղափարներն իրենց մտացը համաձայն գտնելով, զանոնք իրենց հրէական ու հեթանոսական աւանդութեանցը հետ միացնել կ'ուզէին: Ասկէ զանազան աղանդներ ելան, որոնք քրիստոնէական եկեղեցւոյ քով՝ իբրեւ թերակատար ծնունդք քրիստոնէութեան կ'անցնէին: Գլխաւորներն ասոնք են.

1. *Եբիոնեանք*՝ որ Քրիստոսի գերբնական ծնունդը կ'ուրանային, եւ իր աշխարհք գալուն վախճան կը դնէին՝ հրէական կրօնը սրբել եւ քիչ փոփոխութեամբ զանիկայ իբրեւ փրկութեան միակ աղբիւր հեթանոսաց ալ ընդունելի ընել: Թլփատութիւնը, շաբաթ օրը եւ ուրիշ օրինական կարգադրութիւնները կը պահէին: Ասոնց կը վերաբերին նաեւ Նազարացիք, որոնք Քրիստոսի ի Աստուծոյ գերբնական ծնունդն ու աստուածութիւնն ընդունելով, կաթուղիկէ եկեղեցւոյ աւելի մերձաւոր էին: Փարիսական յաւելուածներէն սրբուած մովսիսական օրէնքը կը պահէին, առանց հեթանոսներն ալ անոր պարտաւորելու: — Հրէութեան միանալ այս երկու կուսակցութեանց բուն ատենը, Հադրիանոսի աւերելէն Երուսաղէմին էր:

2. *Գնոստիկեանք* (յունարէն γνῶσις բառէն), կամ Գիտունք որոնք հեթանոսութենէ յառաջ եկած ըլլալով, հեթանոսական փիլիսոփայութիւնը քրիստոնէական վարդապետութեանց հետ խառնել կ'ուզէին: Քրիստոնէութիւնը՝ զոր եկեղեցին առջեւնին կը դնէր, իրենց շատ պարզ կ'երեւար, ուստի եւ կը կարծէին որ զանիկայ բարձրագոյն աստիճանի պէտք է ամբառնալ:

Քանի մը խնդիրներ կային՝ զորոնք հեթանոսական փիլիսոփայութեան եւ քրիստոնէութեան օգնու-

կանութեամբը լուծելու կ'աշխատէին ի մասնաւորի բնական ու բարոյական աշխարհքին մէջ չարին ծագման խնդիրը։ Եկեղեցւոյ այս խնդրոյն տուած պարզ լուծումը՝ թէ աշխարհք ոչինչէ Աստուծոյ ամենակալող զօրութեամբը ստեղծուած է, մերժելով, նրբագնին իմաստակութեամբ նորահնար մոլորութեանց մէջ ինկան։ Չարին սկիզբն մեկնելու համար չար նիւթ մը կը դնէին, եւ միանգամայն այն հին տուածին վրայ հիմնեալ թէ՝ Ոչինչէ ոչինչ կ'ըլլայ, նիւթոյն յաւիտենական ըլլալը կը պաշտպանէին։ Աշխարհքիս արարչագործութիւնը՝ բարձրագոյն Աստուծոյ չէին տար, որ ինչպէս կ'ըսէին, կատարեալ, անփոփոխ եւ աշխարհքիս հետ անմիջական հաղորդութիւն չունեցող էակ մըն է, հապա Արարչագործ մը՝ այսինքն խոնարհագոյն աստուածութեան մը, որ բարձրագոյն Աստուծմէ իր սկիզբն առած է։ Մարդն երկու հոգի ունի, մէկը բարի, մէկալը չար (Երկուորականութիւն), եւ մարմին ունենալուն համար արարչապետէն կախում ունի։ Քրիստոսի համար կ'ըսէին թէ Յաւիտեան մըն է, այսինքն Աստուծոյ ու մարդկան մէջ բարձրագոյն էակ մը։ Նոյնպէս կը վարդապետէին որ բարձրագոյն Աստուածը՝ Քրիստոսի ձեռքով ինք զինքը մարդկան յայտնած է. բայց փրկագործութիւնը՝ զոր նիւթոյն գերի եղած մարդկան հոգիներուն ազատութեան վրայ կը դնէին, Քրիստոսի չարչարանքներուն ու մահուանը եղած չէին համարեր, հապա միայն իր յայտնութեամբն ու վարդապետութեամբը։ Ասոնց մէկ մասը (Կարծականք), Քրիստոսի իրական ու ճշմարիտ մարմին ունենալը չէին ընդունիր. ունեցածն առերեւոյթ էր կ'ըսէին, որովհետեւ կարելի չէ որ Քրիստոս չար նիւթոյն հետ հաղորդութիւն ունենայ։ Ոմանք ալ կը հաստատէին թէ՝ Քրիստոս Յաւիտեանը՝ Յիսուս մարդուն հետ Յորդանանու մկրտութեան ժամանակ միացած է։ Գնոստիկեանց բարոյական վարդապետութիւնն արտաքոյ կարգի խիստ էր, վասն զի կը պահանջէին որ մարդն ամէն կերպ ժուժկալութեամբ զգայականութեան կապանքներէն ինք զինքն ազատէ։ Բայց հակառակօրէն երկու ծայրերն իրար կը շօշափէին.

*ուսոյի եւ Գնոստիկեանց մէջէն աղանդներ ելան, ո-րոնք անսանձ ու անսուսակ կեանք անցընելը կը ջատա-գովէին ։*

*Գնոստիկեանք եկեղեցւոյ հեղինակութեան դէմ, Ս. Գիրքը վկայութեան կոչած ատեն, զանիկայ իրենց քմացը համաձայն կը մեկնէին, եւ Նոր Կտա-կարանին շատ գրքերը կը մերժէին, զանոնք կը կրճա-տէին ու կը փոխէին ։*

*Գնոստիկեանց մոլորութիւնք քրիստոնէութեան մէջ շատ կանուխ մուտք գտաւ ։ Պօղոս ու Յովհան-նէս առաքեալներն իրենց ժամանակն արդէն հաւա-տացեալներն անոնք կը զգուշացընէին ։ Առաքելական ժամանակին գլխաւոր Գնոստիկեաններն են՝ Դոսիթէոս, Սիմոն Մոգ, Մենանդրոս ու Կերինթոս ։ Հետեւեալ դա-րերուն գլխաւոր Գնոստիկեաններն են՝ Կարպոկրատէս, Վաղենդինոս, Բասիլիդէս, Սատուռնինոս, Բարդեծան կամ Բարդեսանէս ու Մարկիոն ։ — Ս. Իրենէոսի, Ե-պիփանու եւ Յերոնիմոսի վկայութեան համաձայն, Յովհաննէս առաքեալն իր Աւետարանը գլխաւորաբար Կերինթոսի դէմ գրեց, որ Եփեսոս կը բնակէր ։*

*Առջի երեք դարերուն մէջ՝ Գնոստիկեան աղան-դը, եկեղեցւոյ ամենէն վտանգաւոր թշնամին եղաւ, ինչու որ բազմաթիւ անդամներ իրմէ հեռացուց եւ գլխաւորաբար զեղծ ու անսուսակ վարուց պաշտպան կենալով՝ բարի քրիստոնէից կենցաղավարութիւնք հեթանոսաց առջեւը կասկածելի կ'ընէր ։ Գնոստի-կեանց դէմ ելած գրուածքներուն մէջ ամենէն նշա-նաւորն է, Ս. Իրենէոսի՝ Ընդդէմ Հերետիկոսաց անուն գործքը, որուն մէջ սուրբ հայրապետը՝ Գնոստիկեանց բազմահնար երեւակայական ցնորքներուն դէմ, ի սկըզ-բանէ եկեղեցւոյ մէջ գտնուած հին ու պատկառելի աւանդութիւնք կը դնէ ։*

3. ***Մանիքեցիք***: *Հազիւ թէ կաթուղիկէ եկե-ղեցին երրորդ դարուն, կէսին գնոստիկականութեան վրայ յաղթութիւն կանգնած էր, անդիէն ուրիշ մո-լորութիւն մը երեւան ելաւ, այսինքն Մանիքէականու-թիւնը, որ կը սպառնար քրիստոնէութիւնը նորէն հե-թանոսութեան դարձընել ։ Այս աղանդին առաջնորդն*

է միգերու ազնուական ցեղէ յառաջ եկած Մանի պարսիկը, որ քրիստոնէութեան վրայ ծանօթութիւն առած էր։ Իր վարդապետութիւնը զրադաշտեան ու քրիստոնէական գաղափարաց խառնուրդ մըն է։ Մանի ինք զինքը Քրիստոսէ խոստացուած Մխիթարիչն եւ ճշմարիտ կրօնքին կատարիչը կ՚անուանէր։ Կը վարդապետէր որ մարդուն մէջ բարի եւ չար ոգիք մը կայ, եւ մարդուն մարմինը չար նիւթէն առեղծուած է։ Քրիստոսի համար կ՚ըսէր թէ՝ Յաւիտեան մըն է, որ իրօք մարդ եղած չէ, հապա միայն առ աչօք մարմին ունենալով՝ աշխարհքիս վրայ ապրած, առ աչօք չարչարուած ու մեռած է։ Քրիստոսի Տեառն մերոյ փրկագործութիւնը՝ միայն իր վարդապետութեանը վրայ կը դնէր, որ մարդուն կը սորվեցընէ՝ թէ ինչպէս զգայական ցանկութիւնները մեռուցանելով, ինք զինքը աստուածային իրերէն պիտի՛ որ անջատէ, եւ իր հայրենիքը՝ երկինք դառնալու պիտի՛ որ պատրաստէ։ Մանիին բարոյական վարդապետութիւնն արտաքոյ կարգի խիստ էր, ինչու որ կը պատուիրէր ճնշել զգայականութիւնն ու հրաժարիլ ամէն ինչքերէն։ Մանի իր հետեւողներուն միս ուտելը եւ գինի խմելը արգելեց, եւ միայն հաց, ընդեղէն ու պտուղ ուտելու հրաման տուաւ. նոյնպէս ողջախոհութիւն պիտի՛ որ պահէին եւ ամուրի կեանք պիտի՛ որ անցընէին։ Բայց որովհետեւ ամէնքը չէին կրնար իրենք զիրենք այսպիսի խիստ պարտաւորութեանց տակ ձգել, անոր համար այս աղանդին հետեւողներն երկու կը բաժնուէին, այսինքն Ունկնդիրք եւ Ընտրեալք։ Առաջինները՝ կրնային ամուսնանալ եւ արտաքին գործքերու պարապիլ. իսկ վերջիններուն՝ որ քահանայից դասը կը կազմէին, արգելեալ էր անասուն մեռցընելը եւ պտուղ քաղելը, ինչու որ կը կարծէին թէ անոնց մէջ մարդիկներու հոգիքը կը բնակին։ Կրկին եկեղեցական պաշտամունք ունէին. մէկը հրապարակական՝ որ աղօթքով ու ընթերցուածով կ՚ըլլար, իսկ մէկալը ծածուկ ընտրելոց համար, որ գաղտնութեան քօղով ծածկուած էր. անտարակոյս անոր համար որ անոր մէջ զազրելի գործութիւններ կը գործէին, ինչպէս կը վկայէ Ս. Աւգոս-

տինոս, որ երիտասարդութեան ատեն ժամանակ մը այս աղանդին յարեցաւ, բայց ետքէն բանիւ ու գրով անոր դէմ կռուեցաւ։

Մանիքեցիք Նոր Կտակարանին գրքերը կը մեծարէին, բայց անոնցմէ շատերուն համար կ՚ըսէին՝ որ ետքէն աւելցուած ու խարդախուած են, որովհետեւ իրենց վարդապետութիւնն անոնց բովանդակածին հետ չէր համաձայներ։ Գործք առաքելոցն ամբողջ կը մերժէին, իսկ Աւետարաններէն շատ կտորներ. ասոր հակառակ անհարազատ գրուածքներ կ՚ընդունէին, որոնք ըստ մասին հին Մանիքեցիներէ կամ Գնոստիկեաններէ շինուած էին. բայց ամէնէն աւելի մեծ համարում ունէին իրենց առաջնորդին Մանիին գըրքերուն վրայ։

Մանի՝ մոգերէն շատ հալածանք քաշեց, եւ իբրեւ հերետիկոս անոնցմէ դատապարտուելով՝ երբ որ յանձն չառաւ իր վարդապետութիւններն յետս կոչել, կենդանի մորթազերծ եղաւ։ Իր մոլորութիւնն արեւելք շատ ընդունելութիւն գտաւ, եւ իր անուամբը մինչեւ վեցերորդ դար տեւեց։

## 18.

### Բ. Քրիստոնէական եկեղեցւոյ մէջ ելած մոլորութիւններ։

1. *Հակառակերրորդականք:* Աստուծոյ Երրորդութեան վարդապետութիւնը՝ ինչպէս նաեւ Որդւոյն Աստուծոյ մարդեղութեան ու փրկագործութեան վարդապետութիւնները, քրիստոնէական կրօնին հիմն են։ Բայց աս վարդապետութիւնը խորհուրդ մըն է, եւ իբրեւ խորհուրդ հարկ է որ հաւատացուի. սակայն մարդուն հետաքննին միտքն ասոր նկատմամբ ալ ամէն կողմանէ փորձեր ընելով, զանազան մոլորութեանց մէջ ինկաւ։ Եկեղեցին պարտաւորեցաւ զանոնք հերքել, եւ հարկ սեպեց իր մէջը ծածկեալ ճշմարտութիւնը՝ որ ըստ էութեան կատարեալ եւ ըստ ձեւոյն միայն անկատար էր, աւելի լուսաւորել եւ մոլորութեան դէմ որոշ սահմաններ դնել։ Երրորդութեան

նկատմամբ եղած մոլորութիւնները շատ հին են, եւ որովհետեւ անոնց պաշտպանները Աստուծոյ միութեան կը հաւատային, բայց Երրորդութիւնը չէին ընդունէր, անոր համար Միապետականք կամ Հակառակ-երրորդականք կոչուեցան։ Ասոնցմէ ոմանք Քրիստոսի աստուածութիւնը բոլորովին կ'ուրանային, եւ զինքն առանձնաշնորհեալ մարդու մը տեղ կը դնէին. ոմանք ալ կ'ընդունէին որ Յիսուս մարդն աստուածութեան հետ կապակցութիւն մ'ունի, բայց երեք աստուածային անձանց զանազանութիւնը կը մերժէին, եւ կ'ըսէին թէ Հայր, Որդի ու Հոգի սուրբ անունները, մի եւ նոյն Աստուծոյ զանազան յորջորջմունքներ են։ Այս վերջինները Հայրչարչարք ալ ըսուեցան։

Առաջին կարգին կը վերաբերի Թէոդոտոս Բիւզանդացի խաղախորդը, որ երրորդ դարուն վերջերը կ'ապրէր եւ գիտութեամբ աննշանաւոր մարդ չէր։ Ասիկայ հալածանքի մը ժամանակ զՔրիստոս ուրանալով՝ ինք զինքն արդարացուց ըսելով որ հասարակ մարդ մ'ուրացայ, թէպէտ Քրիստոսի ի կուսէ ծնունդը կը խոստովանէր։ Երբոր Հռոմ գնաց՝ Վիկտոր Քահանայապետը զինքն եկեղեցւոյ հաղորդութենէն մերժեց. սակայն եւ այնպէս իր աղանդին հետեւողներ կրցաւ գտնել, որոնց երեւելիներէն մէկը կ'երեւայ որ Արտեմոն եղած ըլլայ, որուն վրայ ասկէ զատ բան չենք գիտեր։ — Պօղոս Սամոսատացին որ 260էն սկսեալ Անտիոքի եպիսկոպոս էր։ Ասիկայ կը վարդապետէր՝ թէ մի միայն Աստուած կայ, եւ Քրիստոս հասարակ մարդ է, որուն հետ Բանը՝ այսինքն աստուածային իմաստութիւնը, միացաւ եւ անոր զօրութեամբը կը վարդապետէր ու հրաշքներ կը գործէր, բայց չարչարանաց ժամանակ Բանը զՔրիստոս դարձեալ թող տուաւ։ Յամի 270ին Պօղոս Սամոսատացին սիւնհոդոսի մը մէջ եպիսկոպոսական պատուէն ձգուեցաւ եւ եկեղեցւոյ հաղորդութենէն մերժուեցաւ։ Ժողովականք Հռոմայ Դիոնիսիոս հայրապետին գրած թղթին մէջ, զՊօղոս Սամոսատացին իբրեւ ամբարտաւան, փառամոլ եւ աշխարհասէր մէկը կը նկարագրեն։ Իրեն յաջորդեց Դոմնոս անունով մէկը՝ որ Աւրեղիոս կայ-

ւեր օգնութեամբը եպիսկոպոսական աթոռը նստաւ։ Հեթանոս կայսրը վճռեց՝ որ անիկայ է օրինաւոր եպիսկոպոս, որն որ Հռոմայ եպիսկոպոսէն ընդունուած է։ Պօղոսին հետեւողները՝ Պաւղինեանք կամ Սամոսատեանք անուանուեցան։

Երկրորդ կարգին կը վերաբերի Սաբէլ Պենտապոլսեցին՝ երրորդ դարուն մէջերը, որ կը վարդապետէր թէ Հայր, Որդի ու Հոգի Սուրբ մի եւ նոյն աստուածութեան զանազան անուններ են, եւ յայտարարք իրենց գործողութեանցն՝ իբրեւ արարիչ, փրկիչ ու սրբարար։ Այս մոլորութեան հետեւողները Սաբելեանք կոչուեցան։

2. *Մոնտանեանք*։ Մարգարէութեան շնորհքը՝ որ առաքելոց ժամանակէն ետքն ալ դեռ կը տեւէր, շատերուն չարաչար գեղծմանց առիթ եղած էր. անոր համար Եկեղեցին զգուշութեամբ կը քննէր զանոնք, որ կը պարծէին թէ աս շնորհաց արժանի եղած են։

Մոնտանոս Փռիւգացին՝ նորադարձ քրիստոնեայ մը, 171ին մեծաց յափշտակութեան մէջ սկսաւ քրիստոնէից հալածումները նախապատմել, եւ զիրենք մարտիրոսութեան դիմագրաւ ըլլալու յորդորել։ Կուցէ թէ խոհղական ինք զինքը խաբած էր, երեւակայութեան ցնորքները, զորոնք այլայլեալ միտքն իրեն կը ներկայեցընէին, ճշմարտութիւն կարծելով. բայց ետքէն իրական խաբէութեան ձեռք զարկաւ։ Պրիսկիղղա ու Մաքսիմիղղա երկու հարուստ ու նշանաւոր կանայք իրեն հետեւելով, սկսան պարծիլ որ իրենք ալ մարգարէութեան Հոգի ունին։ Ասոնք Փռիւգիա ու Փոքր Ասիա բազմաթիւ հետեւողներ գտան, թէ եւ հանդիպական եպիսկոպոսները զանազան ժողովներու մէջ նոր մարգարէից գուշակութիւնները դատապարտած, եւ զիրենք ալ եկեղեցւոյ հաղորդութենէն մերժած էին։ Իրենց բարոյական սկզբանց խստութիւնն եւ խորին կրօնաւորութեան արտաքին երեւոյթը, նոյն իսկ Տերտուղիանոսի պէս հռչակաւոր մարդ մը կրցան մոլորցընել, որ աս աղանդին յարելով՝ իր հանճարն անոնց վարդապետութիւնը պաշտպանելու գործածեց։

Մոնտանոս կը հաստատէր՝ թէ հաւատոյ վարդապետութիւնները Քրիստոսի եւ առաքելոց ձեռքով իրենց վերջին կատարումը գտած են. բայց հրահանգը՝ այսինքն քրիստոնէից ապրելու կերպը, դեռ նոր յայտնութիւններով կարգաւորուելու կարօտ է, զորն որ գլուխ հանելու համար Մխիթարիչը զինքն իբրեւ գործիք ընտրած է։ Քրիստոս եւ առաքեալները, կ՚ըսէր Մոնտանոս, իրենց ժամանակին տկարութեանցը զիջանելով՝ շատ բանի աչք գոցած են, ինչպէս երբեմն Մովսէս իր խստասիրտ ժողովրդեան թողած էր. բայց հիմայ ա՛լ աս տկարութեան եւ անտեղութեան ժամանակն անցած է։ Հոգւոյն սրբոյ ազդեցութեան վրայ ապաւինած՝ կ՚ըսէր թէ մկրտութենէ ետքը գործուած ծանր մեղքերը՝ ի մասնաւորի անառակութիւնն ու շնութիւնը, եկեղեցին արձակելու իշխանութիւն չունի. այսպիսիներն Աստուծոյ ողորմութեանը պէտք են ապաւինիլ։ Իր հետեւողաց համար եկեղեցւոյ մէջ սովորական եղած պահքերէն խստագոյն պահքեր դրաւ, երկրորդ ամուսնութիւնն արգելեց եւ պատուիրեց որ մարտիրոսութենէ չփախչին։ Մոնտանեանց աղանդին կեդրոնը Փռիւգիայի Պեպուզա քաղաքն էր. ասկէ Ասիայի զանազան կողմերը եւ մինչեւ Ափրիկէ տարածուեցաւ։ Բայց ետքէն այլեւայլ կողմնակցութեանց բաժնուելով, վեցերորդ դարուն գրեթէ բոլորովին անհետ եղաւ։

3. *Նովատեանք*: Աս աղանդին հիմնադիրն եղաւ երրորդ դարուն՝ Նովատիանոս հռոմայեցի քահանան, որ Դեկոսի հալածանաց ժամանակ ինկած քրիստոնէից ապաշխարութեամբ եկեղեցւոյ հաղորդութեան մէջ ընդունուելուն հակառակ էր։ Ասկէ զատ Նովատիանոս կը վարդապետէր թէ մկրտութենէ ետքը գործուած մեղքերուն եկեղեցին չի կրնար թողութիւն տալ, եւ թէ ճշմարիտ եկեղեցին միայն սուրբերէ կը բաղկանայ։ Ամէն մահացու մեղք գործողներն եկեղեցիէն դուրս են, ուստի եւ կաթուղիկէ եկեղեցին անսուրբ է, որովհետեւ մեղաւորաց հետ հաղորդութեան մէջ է։ Նովատիանոս կը հաստատէր նաեւ թէ իր հիմնարկած եկեղեցին է միայն ճշմարիտ եկեղեցին, որ

միակ ուրբերէ կազմուած է, եւ անոր համար ալ կաթուղիկէ եկեղեցիէն իրենց դարձողները պէտք է կրկին մկրտել: Կոռնելիոս Քահանայապետը զՆովա-տիանոս եւ իր հետեւորդներն եկեղեցիէն մերժեց. սակայն եւ այնպէս այս աղանդը Հռովմէական տէրու-թեան շատ կողմերը բաւական ժամանակ մնաց: Ս. Կիպրիանոս՝ Վասն Միաբանութեան Եկեղեցւոյ ճառը, աս աղան-դին դէմ գրած է:

Մինչեւ հիմայ յառաջ բերուած մոլորութիւն-ներն, այնպիսի ժամանակ մը կը ջանային եկեղեցւոյ միութիւնը քակել, երբ եկեղեցին արդէն արտաքին հալածանքներէ ծանրապէս վտանգեալ էր: Սակայն ինչպէս հալածանքները՝ նոյնպէս այս մոլորութիւնները չէ թէ միայն եկեղեցւոյ վնաս մը չհասուցին, այլ նաեւ անոր պայծառանալուն ու յառաջադիմութեանն օգնեցին: Ողջամիտ հաւատացեալք՝ աւելի ամուր ի-րարու հետ կապուեցան. ուղղափառ եկեղեցւոյ կա-թողիկէ կամ ընդհանրական անունը՝ հերետիկոսական աղանդներուն մէջ ընդդիմակացը կը ցուցնէր: Եկե-ղեցին այս ամէն աղանդներուն դէմ միշտ աւանդու-թիւնը յառաջ կը բերէր, այսինքն կաթուղիկէ հաւ-ատքն՝ ինչպէս որ էր առաքելոց ժամանակ եւ անկէ անմիջապէս ետքն եկող դարերուն մէջ:

## 19. Կրօնական գժտութիւններ եկեղեցւոյ մէջ:

1. *Զատկի տօնին խնդիրը:* Առաքելոց ժամանա-կէն սկսեալ՝ Զատկի տօնն եկեղեցւոյ մէջ այլեւայլ ժամանակ կը տօնուէր: Փոքր Ասիայի քրիստոնեաները՝ զատկի գառնը Նիսան ամսոյն 14ին Հրէից հետ կ՚ու-տէին, եւ երեք օր ետքը զատկի տօնը կը կատարէին, այնպէս որ առհասարակ կիրակի օր չէր հանդիպեր: Ասոր հակառակ ուրիշ եկեղեցիները, ի մասնաւորի Հռովմայ եկեղեցին, զատկի տօնը կիրակի օր մը կը տօնէին: Եր-կու կողմն ալ աս զանազանութիւնն իբրեւ անպատշաճ բան կը ճանչնային, բայց խնդիր եղած ատեն աւան-դութեան կը դիմէին: Երբոր Ս. Պողիկարպոս՝ Զմիւռ-նիայի եպիսկոպոսը 162ին Հռոմ գնաց, Անիկետոս

Քահանայապետին հետ սա 'նիւթին վրայ խօսելու համար, Ս. Պողիկարպոս Յովհաննէս առաքելոյն կարգադրութիւնը, իսկ Անիկետոս՝ Պետրոս ու Պօղոս առաքեալներուն աւանդութիւնը յառաջ կը բերէր։ Երկուքն ալ իրաւունք ունէին՝ եթէ մտածելու ըլլանք, որ Փոքր Ասիոյ քրիստոնէից մեծ մասը սկըզբնաբար Հրեիցմէ, իսկ Հռովմայ քրիստոնէից հասարակութեան մեծ մասը հեթանոսութենէ դարձող քրիստոնեաներէ կը բաղկանար։ Թէպէտ նոյն միջոցին երկու հայրապետներն իրարու հետ չկրցան միաբանիլ, բայց խաղաղութիւնն ալ չվրդովեցին. Բայց երկրորդ դարուն վերջերն՝ աս բանին մէջ միօրինակութիւն խաթելու բաղձանքն երթալով շատցաւ, եւ Վիկտոր Քահանայապետին հրամանաւը թէ արեւելք ու թէ արեւմուտք ժողովքներ գումարուեցան, որոնք միաբան կիրակի օրն իբրեւ յարութեան օր սահմանեցին։ Սակայն եւ այնպէս հակառակ Նիկիոյ ժողովն այս խնդիրը վերջնական կերպով որոշեց բոլոր մասամբ Հռովմայ եկեղեցւոյն, սահմանելով որ Զատիկն ամէն տեղ՝ գարնան լուսնոյ առաջին լրմանէն ետքն եկած կիրակին տօնուի։

2. *Հերետիկոսաց մկրտութեան խնդիրը:* Կիպրիանոս՝ եկեղեցւոյ միութեան վրայ գրած ճառին մէջ, կ'ըսէ. ինչպէս մէկ Եկեղեցի նոյնպէս մէկ մկրտութիւն կայ, որ միայն ճշմարիտ եկեղեցիէն կրնայ վաւերաբար տրուիլ եւ ոչ թէ անկէ դուրս եղող հերետիկոսներէն։ Այս կարծիքը նոր չէր. արդէն Կիպրիանոսի նախորդն Ագրիպպինոս, 70 ափրիկեցի եպիսկոպոսներով գումարած սիւնհոդոս մը մէջ, հերետիկոսաց մկրտութեան անվաւեր ըլլալը վճռած էր, եւ նոյն կարծեաց կը հետեւէին նաեւ Կապադովկիոյ, Փռիւգիոյ, Գաղատիոյ ու Կիլիկիոյ եկեղեցիները։ Երբոր Նովատեանք իրենց դարձողներն սկսան կրկին մկըրտել, Ափրիկէ խնդիր ելաւ թէ հերետիկոսներէն կաթողիկէ եկեղեցւոյ դարձողներուն մկրտութեան նըկատմամբ ի՞նչ ընթացք բռնելու է։ Կիպրիանոս՝ այն սկզբան վրայ յեցած թէ եկեղեցիէն դուրս ճշմարիտ մկրտութիւն չի կրնար ըլլալ, որոշեց որ ուղղափառ եկեղեցւոյ դարձող հերետիկոսներն երկրորդ անգամ

մկրտելու է։ Բայց իրեն ծանրակշռութեան եւ Նումիդացի եպիսկոպոսներէն շատերուն ունեցած տարակուսին պատճառաւ, Կիպրիանոսի գահերիցութեամբ Կարքեդոն (255, 256) երկու ժողով գումարուեցաւ, որ Կիպրիանոսին բանը հաստատեցին։

Ասոր վրայ Կիպրիանոս յանուն երկրորդ ժողովոյն՝ Ստեփանոս Քահանայապետին գրեց որ եղած որոշումը հաստատէ։ Բայց Ստեփանոս զանիկայ մերժեց, եւ իբրեւ առաքելոց իշխանին յաջորդ՝ իր իշխանութեանն ապաւինելով, պատասխան տուաւ որ Հռոմայ եւ անոր հետ միացեալ այնչափ եկեղեցիներուն աւանդութեամբ ընդունած սովորութիւնը պէտք է պահել, ուստի եւ հերետիկոսներէն ուղղափառ եկեղեցւոյ դարձողները կրկին մկրտելու չէ, այլ ի նշան ապաշխարութեան ու՝ հաշտութեան վրանին միայն ձեռք դնել բաւական է։ Տարակոյս չկայ որ Ստեփանոս հերետիկոսաց մկրտութիւնն ան ատեն միայն վաւեր կը ճանչնար, երբ որ ըստ սահմանադրութեան կաթուղիկէ եկեղեցւոյ յանուն երեք աստուածային անձանց կը տրուէր։ Քահանայապետն Ափրիկէի եպիսկոպոսներուն ալ սպառնաց, որ եթէ իրենց որոշմանը վրայ հաստատուն կը կենան, զիրենք եկեղեցւոյ հաղորդութենէն կը կտրէ։ Բայց Կիպրիանոս չխոնարհեցաւ. 85 եպիսկոպոսներով Կարքեդոն երրորդ ժողով մ'ալ գումարեց, որ առաջին որոշումը դարձեալ հաստատեց։

Ստեփանոսի եւ Կիպրիանոսի տարաժամ մահուամբը (286) գժտութիւնն ընդմիջեցաւ, որ ինչպէս կ'երեւայ իրական կամ գոնէ երկարատեւ հերձուած մը յառաջ չբերաւ։ Ստեփանոսին յաջորդը Սիքստոս՝ անմիջապէս խաղաղական եւ հաշտարար թուղթ մը գրեց Ափրիկէի եկեղեցւոյն։ — Թէեւ այս խնդրոյս մէջ՝ եկեղեցիներուն մեծ մասը Ստեփանոսի կողմն էին, սակայն եւ այնպէս կաթուղիկէ եկեղեցւոյ դարձող հերետիկոսները կրկին մկրտելու հին սովորութիւնն Ափրիկէ դեռ շարունակուեցաւ մինչեւ Արելատայ ժողովը (314), որ սահմանեց թէ հերետիկոսաց տուած մկրտութիւնը վաւեր է՝ թէ որ յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ մատակարարուի։ Անկէ ետքն եկեղեցւոյ

մէջ միշտ այսպէս մնաց. Կոստանդնուպոլսոյ առաջին տիեզերական ժողովին ալ (381), եօթներորդ կանոնին մէջ բառ առ բառ մնաց վերը տրուած, եւ մանաւանդ այսպէս յանուանէ նշանակեց այն հերետիկոսները (Մոնտանեանները, Սաբելեանները եւ այլն), եւ եկեղեցւոյ վարդապետութենէն հեռացեալ ուրիշ աղանդները՝ որոնց մկրտութիւնն անվաւեր է. իսկ մեկալ աղանդներուն մկրտութեան վաւերականութիւնը ճանչցաւ:

—

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

**20.** ***Եպիսկոպոսք, քահանայք, սարկաւագք, կիսասարկաւագք եւ եկեղեցւոյ պաշտօնէութեան միւս ստորին աստիճանները:***

#### ա. Եպիսկոպոսական իշխանութիւնը:

Ի սկզբանէ քրիստոնէական եկեղեցւոյ վախճանն էր, բովանդակ մարդկային ազգն իր մէջն առնուլ եւ զանիկայ կրօնապէս ու բարոյապէս փոփոխել: Եւ որպէս զի եկեղեցին այս դիտած վախճանին կարող ըլլայ հասնիլ, հարկ էր որ իր Հիմնադրին ձեռքով հաստատուած որոշ սահմանադրութիւն մ'ունենար: Քրիստոս՝ իր եկեղեցւոյն սահմանադրութեան յատակագիծը տուաւ, որն որ ետքէն յընթացս ժամանակաց՝ եկեղեցւոյ վարիչ Հոգւոյն սրբոյ առաջնորդութեան տակ, երթալով զարգացաւ ու կատարելագործուեցաւ: Անոր համար կը տեսնենք որ եկեղեցւոյ սահմանադրութեան երբեմն այս եւ երբեմն այն մասերն ըստ պիտոյից աւելի որոշ եւ ակներեւ մէջտեղը կ'ելլեն:

Քրիստոս իր եկեղեցւոյն սահմանադրութեան էական մասերը Հին Կտակարանէն առաւ: Հին Կտակարանին քահանայութիւնն երեք իշխանութիւն ունէր. այսինքն՝ ուսուցանելու, կրօնական պաշտօն կա-

տարելու եւ կառավարելու: Այս երեք կերպ իշխանու-
թիւնն իսկզբան Քրիստոս իր անձին վրայ միացուցած
էր, զորս որ ետքէն տասնըերկու առաքելոց տուաւ:
Վարդապետելու իշխանութիւնը տուաւ երբ զիրենք
իբրեւ Աւետարանի պատգամաւոր բոլոր աշխարհք
խրկեց. քահանայական իշխանութիւնը՝ սուրբ Հա-
ղորդութեան խորհուրդը հաստատած ատեն, եւ կա-
ռավարելու իշխանութիւնը՝ երբ իր եկեղեցւոյն մէջ
ունեցած իշխանութեան լրութիւնն իրենց տուաւ: Ա-
ռաքելոց տրուած այս իշխանութիւնը՝ Քրիստոսի կա-
մացը համաձայն, մինչեւ աշխարհքիս կատարածն ի-
րենց յաջորդներուն ալ պիտ'որ անցնէր: Առաքելոց
յաջորդներն են Եպիսկոպոսները, որոնք Քրիստոսի մարդ-
կան ունեցած այս երեք յարաբերութեան ներկայա-
ցուցիչ են. այսինքն կրող ու ժառանգ են վարդապե-
տական պաշտօնին, քահանայութեան ու եկեղեցական
իշխանութեան: Այս յօրինուածութենէն յայտնի կը
տեսնուի Քրիստոսի եկեղեցւոյն երեւելի ըլլալը, եւ
անոր ցվերջ աշխարհի տեւողութիւնը:

Ամէն եկեղեցւոյ կամ թեմի մէջ մէկ եպիսկոպոս
կայ, որ իրարու հետ սիրով կապուած հաւատացելոց
միութեան կեդրոնն էր: Ով որ այս միութիւնը կը
քակէր՝ օրինաւոր եպիսկոպոսին դէմ եպիսկոպոսական
իշխանութիւն ու պատիւ իրեն սեպհականելով, իբրեւ
Հերձուածող, այսինքն Քրիստոսի դրած կարգին խան-
գարիչ կը նզովուէր, որ է ըսել ընդհանուր եկեղեցւոյ
հաղորդութենէն կը մերժուէր:

Ինչպէս առաքեալք Աւետարանը քարոզելու
պաշտօնին իրենց գլխաւոր կոչումը կը համարէին, նոյն-
պէս եպիսկոպոսք պարտական էին Աստուծոյ խօսքն
աւետել. բայց այս տարբերութեամբ որ եպիսկոպոսաց
գործունէութիւնը միայն իրենց թեմին վրայ ամփո-
փուած էր: Հաւատացելոց ժողովներուն մէջ հասա-
րակօրէն եպիսկոպոսք կը քարոզէին, իսկ քահանայք
(երէցները) միայն եպիսկոպոսին հրամանաւը կրնային
քարոզել: Ափրիկէ՝ Ս. Աւգոստինոս առաջին եղաւ,
որ եպիսկոպոսին հրամանաւն իբրեւ քահանայ քարո-
զեց: Խորհրդոց մատակարարութիւնն ալ գլխաւորա-

բար եպիսկոպոսին նեղհական պաշտօնն էր. ի մասնաւորի կանոնաւոր կերպով մը իր հասարակութեան համար սուրբ պատարագը կը մատուցանէր, որ պատճառաւ Քահանայ կամ Գլխաւոր Քահանայ կ՚անուանուէր:

Ինկզբան անդ եկեղեցւոյ՝ երբ որ հաւատացեալք սիրով վառեալ էին, քրիստոնեայ հասարակութիւնն իր եպիսկոպոսին հետ սերտիւ միացեալ կ՚ըլլար, եւ եպիսկոպոսն ալ ամէն երեւելի գործքերու մէջ աշխարհականաց ու եկեղեցականաց խորհրդակցութեամբը կը գործէր: Ի մասնաւորի մէկը եկեղեցի ընդունելու կամ անկէ մերժելու համար, եպիսկոպոսն իր հասարակութեան հաւանութիւնը կ՚ուզէր: Սակայն ասով եպիսկոպոսին իշխանութիւնը հասարակութեան կամքէն չէր կախուեր եւ հասարակութիւնը չէր կրնար եպիսկոպոսին իշխանութիւնն ուզածին պէս չափաւորել, ընդարձակել կամ բոլորովին ետ առնուլ: Եպիսկոպոսք իրենց իշխանութիւնն ու առաքելութիւնն Աստուծմէ ունէին, եւ իրենց պաշտօնը յետնորդաբնամբ կ՚ընդունէին: Յետքէն երբ որ հասարակութեանց մէջ սէրն սկսաւ պաղիլ, իրենց ու եպիսկոպոսաց մէջ եղած այս սերտ յարաբերութիւնն ալ լուծուեցաւ. անկէ ետքն եպիսկոպոսք շատ բան կ՚որոշէին առանց հասարակութեան հաւանութեանը, մանաւանդ թէ երբեմն նաեւ անոնց կամացը դէմ:

բ. Քահանայից եւ միջին կղերականաց պաշտօնը:

Նուազեալք ամէն քաղաք՝ ուր քրիստոնեայ հասարակութիւն մը կը կազմուէր, եպիսկոպոսէն զատ քանի մը Երէցներ ալ կը գտնէին, իբրեւ եպիսկոպոսին օգնական ու խորհրդական, որոնք անոր իշխանութեան տակն էին: Ասոնք միանգամայն քահանայ էին եւ պատարագ կը մատուցանէին: Թէեւ առանձին եկեղեցւոյ մէջ կառավարելու իշխանութիւն չունէին, բայց ամէնը մէկտեղ իբրեւ եպիսկոպոսին աջակից Երէցանց ժողով, եկեղեցւոյ կառավարութեան մէջ մեծ մասնակցութիւն ունէին:

Եկեղեցական պաշտամանն երրորդ դասը կը կա-ցուցանէին Սարկաւագները, որոնք վերը յիշած աղքա-տաց ողորմութիւն բաշխողներուն յաջորդներն էին։ Իսկզբան ամէն եպիսկոպոսական եկեղեցւոյ մէջ եօթը սարկաւագ կ'ըլլար, որոնց պաշտօնն էր Ս. Պատարագին սպասաւորել, հաւատացելոց Ս. Հաղորդութիւնը մա-տակարարել, զանիկայ հեռաւոր հիւանդաց տանիլ եւ եպիսկոպոսին հրամանաւը նաեւ մկրտել։ Ասկէ զատ իրենց յանձնուած էր սուրբ անօթները պահել, հաւա-տացելոց ժողովներուն մէջ հսկել եւ ողորմութիւն բաշխել։ Մեծ եկեղեցիներու մէջ անոնցմէ մէկը՝ որ ե-պիսկոպոսին առանձին վստահութիւնը կը վայելէր, Աւագ Սարկաւագ կամ Սարկաւագապետ կ'ըսուէր։ Ե-պիսկոպոսն անոր խորհուրդ կը հարցընէր, զինքն աս-դին անդին կը խաւրէր եւ իբրեւ ընկեր ժողովա-ներու կը տանէր։

Քիչ մը ետքն՝ երբոր տեսնուեցաւ որ սարկաւագ-ները մեծ հասարակութեանց մէջ իրենց պաշտօնը կա-տարելու չեն հասնիր, ան ատեն կղերականաց փոքր աստիճանները կազմուեցան. Ենթասարկաւագները (Hy-podiaconi), նաեւ արեւմտեան եկեղեցւոյ մէջ երրորդ դարուն կէսին կը գտնենք, իսկ արեւելք հազիւ չոր-րորդ դարուն սկիզբները կը յիշուին։ Ասոնք իսկզբան եկեղեցական պաշտամանն վերաբերեալ գործք մը չու-նէին։ — Ջահընկալները (Acoluthae), երրորդ դարուն սկիզբն իբրեւ եկեղեցւոյ սպասաւոր միայն լատին ե-կեղեցւոյ մէջ կը գործածուէին։ Նոյն ժամանակ հաս-տատուեցան նաեւ Երդմնեցուցիչները (Exorcistae), որոնք դիւահարաց վրայ ձեռք դնելով աղօթք կ'ը-նէին։ Ասոնցմէ հին են Ընթերցողները (Lectores), ո-րոնք հաւատացելոց ժողովներուն մէջ Ս. Գրքէն հա-տուածներ կը կարդային։ Վերջապէս մէկ քանի եկե-ղեցիներ առանձին Դռնապաններ (Ostiarii) ալ ունէին, որոնք կղերին կը վերաբերէին. ասոնց պաշտօնն իրենց անուանէն արդէն յայտնի է։

Կային նաեւ Արքսարկաւագունք, որոնք հին ժամա-նակներն եկեղեցւոյ մէջ պէսպէս ծառայութիւններ կ'ընէին, եւ իրենց պաշտօնն եպիսկոպոսին ձեռնա-

դրութեամբը կ'ընդունէին: Առաջին սարկաւագուհիներն առաքեալք դրին, որոնք ամբողջապէս այրիք կ'ըլլային. բայց երբեմն կուսանք ալ կ'ընտրուէին: Իրենց պաշտօնն էր կանանց մկրտութեան ժամանակ ծառայել ու հիւանդ կանայք հոգալ:

## 21. Մետրապոլիտական յօրինուածութիւնն ու Գաւառական սինոդոսք: — Հռոմայ եպիսկոպոսին գլխաւորութիւնը:

### ա. Մետրապոլիտական ու Պատրիարքական աստիճանը:

Ինչպէս քաղաքի մը հաւատացեալ հասարակութիւնը՝ շրջակայ գիւղերուն հասարակութեանց հետ մէկ եպիսկոպոսի տակ միացեալ թեմ մը կը կացուցանէր, նոյնպէս շատ այսպիսի թեմեր իրարու հետ կապուած՝ ամէնը մէկտեղ գլխաւոր կամ մայր եկեղեցւոյն եպիսկոպոսին՝ իբրեւ իրենց գլխաւորին իշխանութեան տակն էին: Ասիկայ էր արդէն առաքելոց ժամանակ դրուած Մետրապոլիտական յօրինուածութեան հիմը: Քրիստոնէութեան առաջին պատգամաւորները՝ նոյն իսկ Պաւղոս առաքեալը քրիստոնէութիւնը նախ Հրէից կը քարոզէին, եւ ի մասնաւորի այն քաղաքները կ'երթային՝ ուր Հրեայք մեծ բազմութեամբ կը գտնուէին: Այս քաղաքներուն մէջ՝ Հրէից սինեդրիոնները կային, որոնք նոյն գաւառին Հրէից վրայ դատաստանական իշխանութիւն մ'ունէին: Ուստի երբ որ այս քաղաքներուն մէջ քրիստոնեայ հասարակութիւն մը կը կազմուէր, եւ անկէ քրիստոնէութիւնը մերձակայ քաղաքները կը տարածուէր, այն ատեն Հրէից սինեդրիոնին նման, նոր քրիստոնէական ընկերութեան կարգաւորութիւն մը կը յօրինուէր: Մայրաքաղաքներուն մէջ՝ երիցանց ժողով մը կ'ըլլար եպիսկոպոսին իշխանութեան տակ, որուն հետ հաղորդակցութեան ու ստորակարգութեան բնական յարաբերութեան մը մէջ կը մնային շրջակայ քաղաքներուն հասարակութիւններն իրենց եպիսկոպոսներովը:

Արդէն առաքելոց ժամանակին այսպիսի յարաբե-

Մետրապոլիտն իր Գաւառական սիւնհոդոսն ունէր, այս ինքն եկեղեցական ծերակոյտ՝ ուր բոլոր գաւառին հասարակաց խնդիրներուն վրայ որոշում կ'ըլլար։ Սիւնհոդոսաց հաստատութիւնը՝ եկեղեցւոյ էութենէն յառաջ եկած էր, եւ Հաւասարոյ, եկեղեցական հրահանգաց ու սիրոյ միութիւնը պահելու մեծապէս կարեւոր էր։ Ամէն եպիսկոպոս սիւնհոդոսին մէջ իր եկեղեցւոյն բնական ներկայացուցիչն էր, եւ անոր հաւատոյն ու քրիստոնէական զգածմանը գործարան։ Նոյն իսկ սիւնհոդոսը՝ եկեղեցւոյ փոքր կամ մեծ մասին ներկայացուցիչ էր։ Յայտնի է որ հալածանաց ժամանակ բոլոր եկեղեցին ներկայացընող ընդհանուր ժողովոյ մը վրայ եւ ոչ իսկ կրնար մտածուիլ։ — Առաջին ժողովը գումարեցին առաքեալք Երուսաղէմ. անկէ ետքը մինչեւ երկրորդ դար եղած ժողովներուն վրայ պատմութիւնք կը լռէ։ Նոյն դարուն մէջ՝ Մոնտանեանց պատճառաւ Փոքր Ասիա շատ սիւնհոդոսներ եղան. երկրորդ դարուն վերջերը՝ զատկի տօնին խնդրոյն համար թէ արեւելք եւ թէ արեւմուտք ժողովներ գումարուեցան։ Ափրիկէ՝ կ'երեւայ որ Կարքեդոնի Ագրիպինոս եպիսկոպոսը հերետիկոսաց մկրտութեան խնդրոյն պատճառաւ առաջին սիւնհոդոսը գումարած ըլլայ։ Եպիսկոպոսները ժողովոյն կարգաւոր ու հարկաւոր անդամներն էին, բայց քահանայք ալ խորհուրդներուն կրնային մասնակից ըլլալ։ Ժողովոյն վճիռները՝ եկեղեցւոյ ամէն եպիսկոպոսներուն կամ գոնէ Հռոմայ եպիսկոպոսին կը հաղորդուէին։

### Դ. Հռոմայ եպիսկոպոսին գլխաւորութիւնը։

Ինչպէս եպիսկոպոսն իր թեմին, եւ մետրապոլիտը շատ եկեղեցեաց միութեան կէտն է, նոյնպէս բովանդակ եկեղեցին միութեան կեդրոն մ'ունի յանձն Հռոմայ եպիսկոպոսին, որուն պաշտօնն է բոլոր եկեղեցիները հաւատոյ ու սիրոյ միութեան մէջ պահել։ Քրիստոս բացայայտ խօսքերով հովուապետութեան պաշտօնը Պետրոսի յանձնած էր, որն որ իր մահուանէն ետքը՝ Հռոմայ եպիսկոպոսական աթոռոյն

հետ իր յաջորդներուն անցաւ։ Ասիկայ կը հաստատէն թէ եկեղեցւոյ առաջին ժամանակներու բազմութիւ դէպքերը եւ թէ Ս. Հօրց բացայայտ վկայութիւնները։ Բայց ինչպէս եկեղեցւոյ նուիրապետութեան ուրիշ մասերը, նոյնպէս Հռոմայ եպիսկոպոսին գլխաւորութիւնը կամաց կամաց զարգացաւ ու որոշ կերպարանք մ'առաւ։ Առաջին երեք դարերուն մէջ՝ երբ եպիսկոպոսներն իրենց պարտքն ամենայն ճշդութեամբ կը կատարէին, Հռոմայ եպիսկոպոսք այնչափ առիթ չունեցան իրենց իշխանութիւնն ի գործ դնելու, ուստի եւ իրենց գործունէութիւնը գլխաւորաբար Հռոմայ մերձակայ թեմերուն վրայ ամփոփած էին։ Սակայն եւ այնպէս իրենց վերին գլխաւորութիւնը շատ առիթներու մէջ յայտնի տեսնուեցաւ։ Վիկտոր Քահանայապետն ուզելով եկեղեցւոյ մէջ զատկի տօնին նկատմամբ միօրինակութիւն խոթել, հրամայեց որ թէ արեւելքը ու թէ արեւմուտքը ժողովներ գումարուին, եւ Քահանայապետին այս հրամանին առանց հակառակութեան ամէն տեղ կատարուեցաւ։ Փոքր Ասիայի Մոնտանեանք՝ զորոնք շրջակայ գաւառներուն եպիսկոպոսներն եկեղեցւոյ հաղորդութենէն մերժած էին, Անտիոքի, Կորնթոսի եւ ուրիշ քաղաքներուն անուանի եպիսկոպոսները թող տալով, Հռոմ դիմեցին, թէեւ սա քաղաքն իրենցմէ շատ հեռու էր։ Կիպրիանոս՝ Ստեփանոս Քահանայապետէն խնդրեց, որ Նովատեանց աղանդին հետեւող Արելատայ եպիսկոպոսը վար առնու, եւ իրեն տեղ ուրիշ մէկն ընտրել տայ։ — Ս. Իգնատիոս՝ առաքելոց աշակերտը, Հռոմայ եկեղեցին Գահերէց սիրոյ միաբանութեան, այսինքն բովանդակ քրիստոնէութեան կ'անուանէ։ Ս. Իրենէոս կ'ըսէ թէ՝ Հարկ է որ ամէն եկեղեցիները Հռոմայ եկեղեցւոյն հետ միաբանին, իր առաւելագոյն իշխանապետութեանը համար։ Ս. Կիպրիանոս՝ Հռոմայ եկեղեցին Մայր եւ Արմատ ամենայն եկեղեցեաց եւ կեդրոն միաբանութեան կը կոչէ, ինչու որ Ս. Պետրոսի աթոռն հոն ունի, այսինքն անոր եպիսկոպոսներն առաքելոց իշխանին՝ Պետրոսի յաջորդներն են։

# ՀԱՏՈՐ Գ.

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՑ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ

### 22. *Ա. Պատարագի զոհն ու խորհուրդները:*

**Ա.** *Պատարագն ու խորհուրդները կը կազմուցա-նեն քրիստոնէական աստուածային պաշտաման էական մասերը: Այնք Քրիստոսէ հաստատուած ըլլալով՝ մշտատեւ ու անփոփոխ են. եկեղեցին յետոյ աւելցուած արարողութիւնները միայն փոփոխական են:*

*Թէ Ս. Պատարագի զոհը հին ժամանակին ինչպէս կը մատուցուէր, Յուստինոս Վկայն քրիստոնէից համար գրած առաջին ջատագովութեան թղթին մէջ բացայայտ խօսքերով կը նկարագրէ, որմէ կ'երեւայ թէ պատարագին էական մասերը նոյն ատեն ալ հիմակուան կարգաւ կ'ըլլային: Հրապարակական կամ ամբողջ հասարակութեան համար որոշուած պատարագը՝ եպիսկոպոսը կը մատուցանէր, քահանայից ու սարկաւագաց աջակցութեամբը. բայց առանձնական պատարագներ ալ կը մատուցուէին եպիսկոպոսէ կամ քահանայէ մը առանց ժողովուրդը հաղորդելու: Ս. Գրքէն կարծ մը կարդալու սովորութիւնը Հրէից առնուած է. ինչպէս Հրեայք՝ ժողովարաններուն մէջ հին կտակարանէն հատուածներ կը կարդային, նոյնպէս քրիստոնեայք սովորութիւն ունէին իրենց եկեղեցիներուն մէջ՝ հին կտակարանէն հատուածներ կարդալու, ի մասնաւորի այնպիսի կտորներ՝ որոնք Մեսիայի վրայ կը խօսէին: Ետքէն ասոնց վրայ աւելցան չորս աւետարաններն ու առաքելոց թղթերը: Ս. Գրոց հրապարակական ընթերցումն անոր համար էր, որ ձեռագիր ըլլալով՝ ամէն մարդ առանձին չէր կրնար կարդալ: Պլինիոս կուսակալին Տրայանոսի գրած թղթէն ու Տերտուղիանոսի եկեղեցական պաշտպանութենէն (Ե. 28) յայտնի կ'երեւայ, որ քրիստոնեայք իրենց եկեղեցական պաշտամանց ժամանակ ի պատիւ Քրիստոսի աստուածութեան սաղմոս ու շարականներ կ'երգէին:*

Միհրականութեամբ՝ երախան եկեղեցի կ'ընդունուէր, որ երեք անգամ ընկղմելով կ'ըլլար։ Այս սովորութիւնը տեւեց մինչեւ չորեքտասաներորդ դար. իսկ Հիւանդաց՝ միայն գլխուն վրայ ջուր կը թափուէր։

Մկրտութիւնն ընդունելէն յառաջ՝ երախան քրիստոնէական կրօնքին վարդապետութիւնները կը սորվէր։ Ս. Հաղորդութեան խորհուրդը (դաղտնի հրահանգաց պատճառաւ, տես երես 95) երախայից չէր յայտնուէր, եւ ոչ իսկ այս սուրբ խորհրդեան կատարման ներկայ կը գտնուէին, այլ հազիւ պատարագին առջին մասը՝ որուն իրենք կրնային ներկայ ըլլալ, երախայից պաշտօնը կ'արձակուէր։ Մկրտութիւնն ընդունելէն յառաջ՝ երախան հաւատոյ դաւանութիւն կու տար։ Այն ատեն եկեղեցական արարողութիւնները՝ որոնք հիմայ մկրտութեան ժամանակ կը պահուին, երկրորդ դարուն մէջ արդէն կային։ Նոյն ժամանակին արդէն սովորութիւն կար տղաքը մկրտելու, եւ որովհետեւ անոնք հաւատոյ դաւանութիւն չէին կրնար տալ, անոնց համար իրենց տեղակալները (կնքահայր կամ կնքամայր) կ'ուխտէին, որոնք մկրտելոյն քրիստոնէութեան մէջ կրթուելուն երաշխաւոր կ'ըլլային։ Հասարակօրէն մկրտութիւնն երեւելի տօներու, ինչպէս Զատկի, Պենտեկոստէի ու Յայտնութեան նախընթաց օրը կը տրուէր։

Դրոշմը՝ եկեղեցւոյ առջի ժամանակներուն մկրտութենէն անմիջապէս ետքը կը տրուէր, իբրեւ խորհուրդ կնքման մկրտելոյն՝ Հոգւոյն սրբոյ լնուլի առաջութեամբը։ Այս խորհուրդը սովորաբար (մանաւանդ արեւմուտք) եպիսկոպոսը կու տար ձեռնադրութեամբ, աղօթքով եւ օծմամբ. երբոր՝ մկրտութիւնն եպիսկոպոսը չէր կատարեր, դրոշմը ետքէն առանձին կու տար, որմէ կը սեպուի թէ հին եկեղեցւոյ մէջ մկրտութիւնն ու դրոշմն իբրեւ իրարմէ տարբեր խորհուրդներ կը նկատուէին։

Ս. Հաղորդութեան հաղորդակցութիւնը՝ պատարագին հետ անբաժին կապուած էր, եւ երկու տեսակաւ կ'ընդունուէր. բայց շատ հեղ նաեւ մէկ տեսակաւ, որովհետեւ անձնական պատարագը եղած չէր

հետեւեալներն են։ — 1. Հեծեծողք՝ որ եկեղեցւոյ նախադրան մէջ կեցած՝ աղօթք կ'ընէին, եւ եկեղեցի մտնողներուն բարեխօսութիւնը կը խնդրէին։ — 2. Ունկնդիրք՝ որ եկեղեցւոյ մէջ՝ դրան քով կրնային կենալ եւ քարոզը մտիկ ընել։ — 3. Գետնաբարձ կեցողներ՝ որոնք ծնրադիր վրայ եկած, ունկնդրաց դուրս ելլելէն ետքը՝ ալ կրնային եկեղեցւոյ ուրիշ աղօթքներուն ներկայ գտնուիլ, բայց սրբագործութենէ յառաջ դուրս կ'ելլէին։ — 4. Կանգուն կեցողներ՝ որոնք մինչեւ վերջ սրբազան պատարագին կրնային ներկայ ըլլալ, բայց չէին կրնար հաղորդուիլ։ Ապաշխարութեան երկարութեան ժամանակը, յանցանքին համեմատ էր, բայց եպիսկոպոսն ըստ պարագայից՝ կրնար ապաշխարութեան ժամանակը կարճեցընել (ներողութիւն տալ)։ Ապաշխարութեան ժամանակը լմննալէն ետքը, ապաշխարողն աղօթքով ու ծունր դնելով՝ դարձեալ եկեղեցի կ'ընդունուէր։

Թէ *վերջին Օծման* խորհուրդն ինչպէս կը մատակարարուէր, սոյն տեղեկութիւններ չունինք, բայց թէ ի գործածութեան էր յայտնի կ'երեւայ Յակոբոս առաքելոյն թղթէն (Գլ. Ե. 14—15)։ Որոգինէս ալ անոր վրայ ակնարկութիւն կ'ընէ։

*Ամուսնութեան* խորհրդոյն վրայ Ս. Իգնատիոս եւ ի մասնաւորի Տերտուղիանոս յայտնի եւ որոշ կը խօսին։ Ամուսնութիւնն անլուծանելի համարուած էր, թէ ամուսիններէն մէկուն մահուանէն ետքը, երկրորդ ամուսնութիւնը թէպէտ թոյլ տուեալ էր, բայց այնչափ գովելի չէր։

*Քահանայութեան* կարգը՝ առաքելոց ժամանակէն սկսեալ ընդհանրապէս ձեռնադրութեամբ ու աղօթքով կը տրուէր։

*Հրահանգ գաղտնեաց*։ Քրիստոսի Տեառն մերոյ հրամանին համեմատ (Մատթ. Է. 6.), այս միջոցիս եկեղեցւոյ առհասարակ սովորութիւնն էր, հաւատոյ սուրբ խորհրդոց վրայ քօղ մը ձգել, որպէս զի անհաւատները զանոնք չանարգեն եւ չարհամարհեն։ Մինչեւ չորրորդ դար Ս. Հայրք դեռ շատ պահած, այս սովորութիւնը՝ Հրահանգ գաղտնեաց (Disciplina arcani) կը կոչուէր։

### 23. Ս. ժամանակներ, նուիրական տօներ ու եկեղեցական սովորութիւններ:

#### ա. Քրիստոնէից եկեղեցական տարին:

Քրիստոնէութեան նշանաւոր դէպքերը՝ ժամանակի կարգաւ, ինչպէս որ հանդիպած էին հնուցմէ վեր ամէն տարի հանդիսութեամբ կը տօնուէին. անոնց գումարութիւնը կը կացուցանէ եկեղեցական տարին:

1. Առաքեալներն Հրէից շաբաթին տեղ, կիրակի օրն իբրեւ Քրիստոսի յարութեան օր սահմանեցին: Ասոր վրայ Ս. Իգնատիոս Մագնեսիացւոց գրած թղթին մէջ այսպէս կը գրէ. "Մենք՝ ալ շաբաթ օրը չենք տօներ, հապա կիրակի օրը, որ օրը Քրիստոսի ձեռքով կենդանացանք:"

2. Զատկի տօնին վրայ վէճը (19) խօսեցանք: Առաքելոց ժամանակին արդէն, ու տօնէն յառաջ կը կանխէր պահք մը, որուն տեւողութեան ժամանակը միօրինակ չէր. ետքէն անկէ քառասնօրեայ պահքն եղաւ:

3. Քրիստոնէից Պենտեկոստէն՝ արդէն առաքելոց ժամանակը Հոգւոյն սրբոյ գալստեան յիշատակին համար, Հրէից Պենտեկոստէին տեղն անցած էր:

4. Յայտնութեան տօնը՝ արեւելք Յունուարի 6ին կը կատարուէր, ի յիշատակ մկրտութեան Քրիստոսի. իսկ արեւմուտք չորրորդ դարէն սկսեալ Ցօներէց տօնը Թագաւորաց կը կոչուէր, որոնց ամէնէն յառաջ Քրիստոս իրեն զինքը յայտնեց:

5. Քրիստոսի Ծննդեան տօնը՝ չորրորդ դարուն Զատկի ու Պենտեկոստէի տօներուն հաստատութենէն ետքը սկսաւ տօնուիլ. Պաղեստին Եգիպտոս եւ ընդհանրապէս արեւելք մինչեւ չորրորդ դար՝ Ծննդեան տօնը Յայտնութեան հետ մէկտեղ կը կատարուէր: Բայց նոյն դարուն մէջերը զանազան պատճառներու համար, Քրիստոսի ծնունդը Դեկտեմբերի 25ին տօնելու սովորութիւնը թէ արեւելք եւ թէ արեւմուտք ընդհանուր եղաւ: Ծննդեան իբրեւ պատրաստութիւն եղած 25 օրուան Յիսնակապա-

թեան սովորութիւնը նախ Գաղղիա սկսաւ, եւ վեցերորդ դարուն վերջերն՝ իբրեւ եկեղեցական կարգաւորութիւն Հռոմ ալ մտաւ. ուստի բոլոր եկեղեցին տարածուեցաւ։

6. Մարտիրոսաց մահուան օրը՝ աղօթիւք եւ պատարագօք կը տօնուէր։ Ս. Կիպրիանոս կ'ըսէ. Այն անգամ որ մարտիրոսաց չարչարանքներն ու մահուան օրը տարեկան յիշատակաւ կը տօնենք, պատարագ ալ կը մատուցանենք։ (Նամակ 34. առ երիցունս եւ սարկաւագունս։) Զմիւռնիայի հասարակութեան թղթոյն մէջ՝ զորն որ վերը յիշեցինք, հետեւեալ խօսքերը կը գտնենք. Եթէ կարելի է, կը ժողվուինք ան տեղն, ուր որ իր (Ս. Պողիկարպոսի) եւ ուրիշ մարտիրոսաց ոսկրները կան, որոնք մեզի համար պատուական քարերէն աւելի յարգի են, որպէս զի հոն իրենց ծնընդեան կամ մարտիրոսութեան օրը հանդիսիւ կատարենք, թէ անոնց յիշատակին համար, որոնք փառօք պատերազմեցան, եւ թէ մեր յաջորդներուն այսպիսի օրինակներով յորդոր ու քաջալեր տալու համար։

Մեծ տօներուն նախընթաց գիշերները, քրիստոնեայք սովորաբար իրենց ժողովատեղիները կ'անցընէին, որ պատճառաւ հիմայ ալ այս տօներուն նախընթաց օրը Հսկում կը կոչուի։

### բ. Նուիրական տեղեր։

Առաջին քրիստոնեաներն աստուածային պաշտամունքը կատարելու համար, առանձին տներ կը ժողվուէին։ Հալածանաց ժամանակ սուրբ խորհուրդները, նոյն իսկ բաց դաշտի ու մարտիրոսաց գերեզմաններուն վրայ եւ կամ գետնափոր տեղեր կը կատարէին. բայց երրորդ դարուն մէջ արդէն փառաւոր եկեղեցիներ շինուելու սկսան։

Եկեղեցիներուն ձեւն ամէն տեղ նոյն չէր, բայց ամէնուն մէջ բարձր տեղ մը կար, որ Բեմ (Βῆμα, chorus) կ'ըսուէր, ուր եպիսկոպոսն ու կղերականք կը կենային։ Բեմին մէջն էր նաեւ խորանը, որուն վրայ խաչ մը կ'ըլլար։ Իսկզբան խորանները քառանկիւն

սեղանի ձեւով փայտէ էին. բայց Յովհաննէս Ոսկե-
բերանի ատեն, արդէն քարէ խորաններ սկսուած էին
շինուիլ։ Ասոնք հաստատակօրէն շարժական կ'ըլլային,
դիւրութեամբ տեղէ տեղ փոխադրուելու համար։

Գ. Կրօնական սովորութիւններ ու կարգադրութիւններ։

Մինչեւ հիմայ եկեղեցւոյ մէջ մնացած նուիրա-
կան սովորութիւններէն ու կարգադրութիւններէն
մէկ քանին, եկեղեցւոյ սկիզբներն արդէն կային։ Ասոնց
կը վերաբերին սրբոց ու անոնց նշխարացը յարգու-
թիւն ընել, անոնց բարեխօսութիւնը խնդրել, ինք
զինքը խաչակնքել, քանի մ'եկեղեցական օրհնու-
թիւններ, հանդիսական թաղում ու պահք։ Քրիս-
տոնէութեան հետ սկիզբ առին նաեւ աղքատաց ու
կարօտելոց համար շինուած բարեգործական հաստա-
տութիւնները, որոնց եւ ոչ հետքը կը գտնենք հե-
թանոսութեան մէջ։

Այսչափս քրիստոնէութեան առաջին ժամանակի
շրջանին եկեղեցական պաշտամանցը վրայ։ Բայց պէտք
չէ մոռնալ, որ այս միջոցիս եկեղեցին հալածանաց
ծանր բեռան տակ ճնշուած ըլլալով, աստուածային
պաշտօնը՝ ինք զինքը չէր կրնար ազատօրէն յայտնել
վայելուչ ու սրտաշարժ արարողութիւններով, որոնք
միտքը կը հրահանգեն ու սիրտը կը զմայլեցընեն։ Հա-
զիւ Կոստանդիանոսի քրիստոնէութիւնն ընդունելէն
ետքը, այս արարողութիւններն երեւան ելան եւ հետ-
զհետէ նորանոր յաւելուածներով զարգացան։

# ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵԾՆ ԿԱՐՈԼՈՍ

## 313—768.

---

## ՀԱՏՈՒԾ Ա.

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՏԱՐԱԾՈՒՄՆ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

### 24. *Կոստանդիանոս կայսրն ու իր յաջորդները:*

ա. Կոստանդիանոսի քրիստոնէական եկեղեցւոյ նկատմամբ ունեցած ընթացքը:

*Կոստանդիանոս՝ որ Մեծ կոչուեցաւ, 313ին Միլանէն հանած հրովարտակաւ քրիստոնէից ընդհանուր ու կատարեալ կրօնի ազատութիւն շնորհեց (տես երես 45), եւ ան ատենէն սկսաւ իրենց մեծ սէր ցուցընել: Դիոկղետիանոսի հալածանաց ժամանակ յափշտակուած ինչքերն ետ դարձուց, եւ բարեպաշտ վախճաններու համար եղած պարգեւատուութիւններն առանձին օրէնօք հաստատեց: Ինք եպիսկոպոսները կը յարգէր, եւ ճանչցաւ անոնց մինչեւ նոյն ատեն հաւատացելոց մէջ ծագած խնդիրներուն վրայ բանեցուցած իրաւարար իշխանութիւնը: Եկեղեցականաց շատ առատաձեռն էր, եւ զիրենք հրապարակական տուրքերէն ու տէրութեան ծառայութիւններէն ազատ կացոյց: Տէրութեան երեւելի պաշտօնները քրիստոնէից տուաւ. Հոյակապ եկեղեցիներ շինեց, եւ աստուածային պաշտաման փառաւորութեան շատ փոյթ եւ*

խնամք ցուցուց: Հռոմ, Նիկոմեդիա, Անտիոք ու Բեթ-ղեհէմ նոր եկեղեցիներ շինուեցան: Կայսեր մօրը Հեղինէի առաջնորդութեանը տակ, Երուսաղէմ Փր-կչին գերեզմանին վրայ երկու փառաւոր եկեղեցի կանգնուեցաւ, նոյնպէս ան լեռան վրայ, ուստի Փր-կչին երկինք համբարձած էր. ուրիշ մ՚ալ այրին վրայ՝ ուր Քրիստոս ծնած էր: Կիրակի օրերը սուրբ պահե-լու համար խիստ պատուէրներ հանեց, եւ հրամայեց որ դատաստանական գործքերը դադրին: Բայց երկիր գործելն ու գերեաց ազատութիւն տալը թոյլ տուաւ: Քրիստոսի խաչին պատիւ ընելու դիտմամբ՝ արգելեց նաեւ չարագործները խաչ հանելը: Ուստի եւ ի՞նչ զարմանք՝ որ այսպիսի յարաբերութեանց մէջ քրիս-տոնէութիւնն երթալով յառաջադէմ ըլլար:

Կոստանդիանոս 330ին աթոռը Հռոմէն՝ ուր հե-թանոսութիւնը դեռ կը տիրէր, Բիւզանդիա փոխա-դրեց, որ իր անուամբը Կոստանդնուպոլիս կոչուեցաւ. առով Եկեղեցւոյ Գլուխը՝ աշխարհական իշխանութե-նէն ազատ եղաւ: Այս նոր կայսերանիստ քաղաքը՝ բոլորովին քրիստոնեայ պիտ՚որ ըլլար, անոր համար Կոստանդիանոս զանիկայ հոյակապ եկեղեցիներով զար-դարեց, որոնց վրայ քրիստոնէութեան նշանը՝ սուրբ խաչը պայծառ կը շողար, եւ անոնց ընդարձակ գաւ-իթներն ամէն տեսակ աստուածային պաշտամանց ներկայ գտնուող հաւատացեալներով կը լեցուէին: Սակայն կայսրը՝ հազիւ 64 տարեկան հասակին մէջ կերպապէս քրիստոնեայ եղաւ. ծանր հիւանդութենէ մը բռնուելով՝ երբոր իմացաւ որ մահը մօտ է, Նիկո-միդիա իր պալատին մէջ Եւսեբիոս եպիսկոպոսէն մը-կրտութիւնն ընդունեցաւ (337) եւ քիչ մը ետքը մեռաւ:

Կոստանդիանոս՝ թագաւորի մը պարծանք եղող ամէն ձիրքերն ու բարեմասնութիւններն ունէր. քրիս-տոնէութիւնը թէ խօսքով եւ թէ գործքով կը մե-ծարէր եւ անոր յառաջադիմութեանն ետեւէ էր: Բայց իր բարոյական կեանքն առանց ստգտանաց չէ. յանկարծական կրից բերման մէջ՝ նոյն իսկ իր ընտա-նեացը դէմ անգթութիւններ գործեց: Եթէ Կոս-

տանդիանոս անձին յաղթելով, աւելի յառաջ կատարելապէս քրիստոնէութիւնն ընդունած ըլլար, ան ատեն քրիստոնէական կրօնն իր բարերար ազդեցութեամբը թէ միտքն ու թէ գործքերը կ՚ազնուացընէր ու կը սրբէր։

Կոստանդիանոսի երեք որդիքը՝ Կոստանդիոս, Կոստանդիանոս ու Կոստանս, իրենց հօրը կամացը համաձայն ընդարձակ տէրութիւնը մէջերնին բաժնեցին։ Բայց քիչ մ՚ետքը Կոստանս ու Կոստանդիանոս վախճանելով՝ Կոստանդիոս բոլոր պետութեան միահեծան տէր եղաւ։ Ասիկայ հօրը շաւղացն ետեւէն գնաց եւ ձեռքէն եկածին չափ աշխատեցաւ հեթանոսութիւնը ջնջելու, բայց միշտ չափը պահել չգիտցաւ։

## Բ. Յուլիանոս Ուրացող։

Յուլիանոս* Կոստանդիոսի հօրեղբօրորդին, Կոստանդիոսէն ետքը (361) կառավարութիւնը ձեռք առաւ։ Ասոր ժամանակ հեթանոսութիւնն ինք զինքը նորէն կանգնելու վերջին ճիգ մ՚ըրաւ։ Յուլիանոս՝ թէեւ քրիստոնէութեան մէջ կրթուած էր, բայց քրիստոնէական հոգին չկրցաւ սրտին մէջ արմատ ձգել։ Այսպէսով պզտիկուց անոր դէմ մտքին մէջ նախապաշարում մ՚ունեցաւ, որուն աւելի եւս հաստատուելուն օգնեցին, իրեն հակառակորդին՝ Կոստանդիանոսի դէմ ունեցած ատելութիւնը, որ իր մերձաւոր ազգականները մեռցուցած էր, եւ ան ատեն արիանոսութեամբ պառակտեալ եկեղեցւոյ անշուք վիճակը։ Ասոր ներհակ հեթանոսութիւնը, զորն որ Յունաց բանաստեղծներէն ու Նոր պղատոնական հեթանոս փիլիսոփաներէն սորված էր, սրտին վրայ մեծ ազդեցութիւն ըրած էր։ Ուստի վերջապէս ինք զինքը բոլորովին հեթանոսութեան կողմն որոշեց, բայց քանի որ ակնկալած գահը դեռ չէր նստած, իր միտքն զգուշութեամբ ծածուկ կը պահէր։ Երբոր կայսր եղաւ, ինչ ըլլալը յայտնեց, եւ ամենայն ճգամբ սկսաւ ե-

* Յուլիանոս՝ Մեծն Կոստանդիանոսի խորթ եղբօրը, Յուլիոս Կոստանդիոսի որդին էր։

տեւէ ըլլալ հեթանոսութիւնը նորէն կենդանացընելու եւ քրիստոնէութեան ամէն կապերը խզելու, որով տէրութեան հետ կապուած էր։ Յուլիանոս դիտած վախճանին հասնելու համար՝ բռնական միջոցներու ձեռք չզարկաւ, որովհետեւ անցած ժամանակներու փորձն իրեն սորվեցուցած էր, որ յայտնի հալածանքը քրիստոնեաները չի կրնար ջնջել, թերեւս կը վախնար նաեւ, որ ատով իր անձը վտանգի մէջ կը դնէ։ Անոր համար միտքը դրաւ որ քրիստոնէական կրօնն իբրեւ պարզ ներեալ կրօն մը՝ արհամարհելի եւ ծաղրելի ընէ, եւ ատով անոր կործանումը կամաց կամաց եւ առանց աղմկի պատրաստէ։ Անոր հակառակ հեթանոսական պաշտամունքները նորոգելով եւ քրըմաց դասը բարոյապէս ազնուացընելով, կը ջանար ամէնուն սիրտը հեթանոսութեան վաստըկիլ։ Այս դիտմամբ չաստուածոց տաճարները նորէն շինել եւ անոնց արձանները կանգնել տուաւ. նոյն իսկ զոհերը նորոգեց։ Յուլիանոս ինք զինքը մեծ քրմապետ անուանելով, ամենայն եռանդեամբ քրմապետութեան պաշտօնն սկսաւ կատարել։ Քրիստոնեաները տէրութեան պաշտօններէն մերժեց, եւ անոնց որդւոցը հրապարակական դպրոց երթալն եւ ուսում սորվիլն արգելեց։ Ասկէ զատ վերցուց նաեւ Կոստանդիանոս կայսեր՝ կղերականաց, այրեաց ու կուսանաց համար հաստատած բարեգործական հիմնարկութիւնները։ Հեթանոսք՝ Յուլիանոսի այս ընթացքէն քաջալերութիւն առած, սկսան քրիստոնէից դէմ բռնութիւններ ընել։ Յուլիանոս զանոնք անպատիժ կը թողուր, որով իրաւամբ քրիստոնէութեան հալածիչ կրնայ անուանուիլ, թէպէտ ինքը քրիստոնէից արիւնը չմտաւ։ Ս. Աւգոստինոս՝ զՅուլիանոս քրիստոնէից ուսում սորվիլն արգելելուն համար միայն, հալածչաց կարգը կը դասէ։ Բայց մեռեալ հեթանոսութիւնը կենդանացընելու համար, Յուլիանոսի ըրած ամէն ճիգն ու ջանքը պարապ ելաւ, որովհետեւ քրմերը յառաջուան պէս մոլութեանց մէջ ընկղմած եւ կռոց տաճարները դատարկ մնացին։ Կենացը վերջին ժամանակն իր կամացը դէմ, քրիստոնէութիւնը փառաւորելու գործիք ե-

ղաւ։ Քրիստոսի մարգարէութիւնն ի դերեւ հանելու դիտմամբ, միտքը դրաւ որ Երուսաղէմի տաճարը նորէն շինէ։ Ուստի ամէն կողմանէ Հրեաներ Երուսաղէմ ժողվեց։ Բայց Յուլիանոսի այս յիմարական ձեռնարկութիւնը չյաջողեցաւ. սաստիկ երկրաշարժ մը հին տաճարին հիման քարերը քակելով՝ մերձակայ շէնքերը հարթյատակ ըրաւ, եւ երկրին ծոցէն ելած հրոյ բոցերը գործաւորները սպաննեցին, որով հարկադրեցան շէնքը դադրեցընել։ — Յուլիանոս 32 տարեկան մեռաւ (363), Պարսից դէմ տուած ճակատի մը մէջ։

## 25.

### Դ. Հեթանոսութեան վերջը։

Յուլիանոսի մահուամբը՝ հեթանոսութիւնն ալ ինկաւ. իր յաջորդները՝ որ ճշմարիտ քրիստոնեայ էին, տէրութեան մէջ հեթանոսութիւնը թոյլ տուին մինչեւ Թէոդոս Ա., որ ամէն կերպով ջանաց անոր վերջ տալ, եւ հեթանոսութեան դէմ խիստ օրէնքներ հանեց։ Դից պաշտօնն եւ անասնոց ընդերքէն ապագան գուշակելը, քրէական յանցանք հրատարակուեցաւ. ետքէն մահուան պատժով արգելուեցաւ դից զոհ մատուցանելը։ Հեթանոսութիւնն սկսաւ քաղաքներէն գեղերն ապաւինիլ, ուր այնչափ աչաց տակ չիյնալով, ինքը զինքը ապահով կը կարծէր։

Թէոդոսի որդիքն ու յաջորդները՝ Արկադիոս եւ Ոնորիոս, որոնց առաջինն արեւելք մինչեւ 408, իսկ երկրորդն արեւմուտք մինչեւ 423 թագաւորեցին, իրենց հօրն սկսած գործքը յառաջ տարին։ Հեթանոսութիւնը՝ որ գրեթէ ամէն տեղ քաղաքներէն ջնջուած էր, սկսաւ գեղերէն ալ մերժուիլ։ Այս սաստիկ ճնշման տակ, որ ըստ ինքեան քրիստոնէութեան քաղցր հոգւոյն համաձայն չէր, հեթանոսութիւնն ընկճեցաւ. արեւելք հինգերորդ դարուն սկիզբն արդէն հեթանոսութիւնը ջնջուած էր, իսկ արեւմուտք մինչեւ վեցերորդ դար ասդին անդին ինք զինքը կըրցաւ բռնել։ Բայց շատ հեթանոսներ՝ բռնի առանց

ներքին համոզման եւ առանց պատրաստութեան առերեսս քրիստոնէութիւնն ընդունած էին։ Ասոնք եկեղեցւոյ մեծ վնաս տուին. ինչու որ հեթանոսական մնոտի պաշտամունքներն ու բարուց ապականութիւնը հետերնին քրիստոնէութեան մէջ խոթեցին։ Ասով ընդհանուր ապականութիւն մը տիրեց, որուն միայն արտաքոյ կարգի ճամբով կրնար դարման տարուիլ։ Ուստի Աստուած միջամուխ ըլլալով՝ իբրեւ վրէժխնդրութեան գործիք ձեռքն առաւ բարբարոս ազգերն, որոնք Եւրոպա արշաւելով թէեւ ամէն տեղ աւերեցին աւրշտըկեցին, բայց ետքէն իրենք ալ քրիստոնէութիւնն ընդունելով, հետեւեալ դարերուն աշխարհքիս իրողութեանց կարգաւորութեանը նոր ու բարեյաջող ուղղութիւն մը տուին։

## 26. Քրիստոնէութեան տարածումը:

Վերջապէս քրիստոնէութիւնը հեթանոսութեան վրայ յաղթանակելէն ետեւ, սկսաւ աշխարհքիս երեք ծանօթ մասերն արագ արագ տարածուիլ։

1. *Ասիա:* Պարսկաստան՝ ուր քրիստոնէութիւնն արդէն ի վաղուց մտած էր, չորրորդ դարուն շատ քրիստոնեայ հասարակութիւններ կային, որոնք Սելեւկիայի արքեպիսկոպոսին իշխանութեան տակն էին։ Հոս 342 ին զարհուրելի հալածանք մ'ելաւ, որ միջոցին 14 եպիսկոպոս, հարիւրաւոր քահանայք ու հազարաւոր հաւատացեալք մարտիրոսացան։ Եւ թէպէտ աս հալածանքը 40 տարի տեւեց, սակայն եւ այնպէս քրիստոնէական կրօնը Պարսկաստանէն բոլորովին չջնջուեցաւ։ — Վիրք՝ Նունէ բարեպաշտ կնոջ ձեռքով չորրորդ դարուն սկիզբը դարձան, որուն զարմանագործ հրաշքները տեսնելով՝ նախ արքունիքն ու ետքը բոլոր ժողովուրդը քրիստոնէական կրօնն ընդունեցաւ։ Վիրք՝ իրենց դարձին սկիզբը կ'երեւայ որ Հայոց դիմեցին եւ անոնցմէ եկեղեցւոյ պաշտօնեաներ խնդրեցին, որուն կը վկայէ նաեւ իրենց եկեղեցական նուիրապետութեան անկէ ետքը մինչեւ Զերորդ դարուն վերջերը Հայոց եկեղեցւոյն հետ ունեցած յարաբերութիւնը։

—Արաբիա ալ քրիստոնէական կրօնը մինչեւ Մէհէմէտին ժամանակը բարգաւած կը ծաղկէր, ուստի Հընդկաստան ու Ճենաստան տարածուեցաւ։

2. *Ափրիկէ:* Աս ժամանակի միջոցին մէջ քրիստոնէութիւնը մտաւ Հաբէշստան Փրումենտիոս ու Եդեսիոս Տիւրացի երիտասարդներուն ձեռքով։ Փրումենտիոս 326ին Ս. Աթանասէն Աքսումա մայրաքաղաքին առաջին եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, որ քիչ մը ետքը թագաւորն ու անոր եղբայրը մկրտեց։ Քրիստոնէութիւնը մինչեւ հիմայ հոն մնացած է։

3. *Եւրոպա՝* աս ժամանակի միջոցին ամէն տեղէ աւելի ջանք կ'ըլլար քրիստոնէութիւնը տարածելու։ Գոթացիք (արեւելեան ու արեւմտեան) որոնք գերմանական ազգ մըն էին, կանուխ ժամանակ քրիստոնէութիւնը ճանչնալու առիթ ունեցան։ Վաղէնտիանոս կայսեր ժամանակներն արդէն քրիստոնէութիւնն իրենց մէջ լաւ բաւականի տարածուած էր։ Ետքէն մէջերնին արիանոսութիւնը մտաւ, գլխաւորաբար Ուլֆիլաս եպիսկոպոսին ձեռքով, որ շատ անուանի է գոթացի գիր գտնելուն եւ Աստուածաշունչը նոյն լեզուի թարգմանելուն համար։ Արեւմտեան Գոթացիները՝ արիանոսութիւնն իրենց մերձաւոր ազգաց մէջ տարածեցին. այսինքն արեւելեան Գոթաց, Գեպիդաց, Վանդալաց, Ալեմանաց ու Սուեւաց։ Աս ազգերն իրենց գաղթականութեան ժամանակ՝ քրիստոնէութիւնը գաղթած տեղերնին տարին։ Արեւելեան Գոթացիք Թէոդորիկոս թագաւորին առաջնորդութեամբը՝ Իտալիա, Վանդալներն՝ Ափրիկէ, իսկ արեւմտեան Գոթացիները՝ Սպանիա։ Արիանոսաց աղանդն արեւելեան Գոթաց ու Վանտալաց մէջ մնաց մինչեւ իրենց կործանումը։ Իսկ մէկալ ազգերը նորէն ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դարձան։

Բուրգունդիացիք ալ որ հինգերորդ դարուն Հռոմէական վերին Գերմանիա գաղթելէն եւ մինչեւ Հելուետիա ու Սաւոյա տարածուելէն ետեւ, Գաղղիայի մէկ մասին տիրած էին, ճշմարիտ քրիստոնէական հաւատքն ընդունեցան, եւ թէպէտ ետքէն արիանոսութեան աղանդը կործանեցան,| բայց հինգերորդ

դարուն վերջերը դարձեալ ուղղափառ եկեղեցւոյ ծո-ցը դարձան ։

Փռանկները՝ որ Գաղղիա գաղթած էին, հինգե-րորդ դարուն վերջերը քրիստոնեայ եղան ։ Իրենց թա-գաւորը Քլովիս (481—511) իր Քլոդիլտէ ուղղափառ ամուսնոյն թախանձանացն երկայն ատեն դէմ դնե-լէն ետեւ, որ զինքը քրիստոնեայ ըլլալու կը յորդո-րէր, վերջապէս Ալեմանաց դէմ տուած ճակատի մը մէջ ուխտ ըրաւ քրիստոնէից Աստուածը պաշտելու, ե-թէ յաղթութիւնն իրեն ըլլայ ։ Յաղթութիւնն ստա-նալով՝ Քրիստոսի Ծննդեան օրն ուխտը կատարեց, եւ Ռեմս քաղաքը Ռեմիգիոս եպիսկոպոսէն 3000 ազ-նուականներով մկրտուեցաւ ։ Այսպէս Քլովիս արեւ-մուտքի առաջին քրիստոնեայ թագաւորն եղաւ. իւր քահանայից ու եկեղեցւոյ շատ բարիք ըրաւ, եւ արիա-նոսութեան դէմ արիաբար կռուեցաւ ։ — Փռանկնե-րէն՝ քրիստոնէութիւնը յաղթուած Ալեմանաց անցաւ ։

Լոնկոպարդացիք որոնք Իտալիա գաղթած եւ անոր մեծ մասը նուաճած էին, արիանոս էին. բայց ետքէն կաթուղիկէ եկեղեցւոյ դարձան ։ Իրենց ուղղափառու-թեան դառնալուն շատ աշխատեցաւ Պաւիերայի դքսի մը աղջիկը Թէոդելինդէ, զորն որ Լոնգոբարդացւոց Աւթարիս թագաւորն իրեն կնութեան առած էր ։

Բրիտանիացիք հազիւ չորրորդ դարուն սկիզբը բո-լորապէս քրիստոնէութիւնն ընդունեցան, թէպէտ արդէն Տերտուղիանոսի ժամանակ իրենց մէջ քրիս-տոնէութիւնը մտած էր ։ Բայց երբոր 449ին Անգլո-սաքսոններն Անգլիայի տիրեցին, քրիստոնէութիւնը հոն գրեթէ բոլորովին ջնջուեցաւ ։ Վեցերորդ դարուն՝ Մեծն Գրիգոր Ա. Քահանայապետը, Աւգոստինոս Բե-նեդիկտեան կրօնաւորը 40 ընկերներով իբրեւ քարո-զիչ Անգղիա խաւրեց ։ Ասոնք Անգլոսաքսոնները քրիս-տոնէական հաւատոյ դարձուցին, եւ Աւգոստինոսի անխոնջ աշխատութեամբը՝ որ Քանդէրպըրիի եպիսկո-պոս եղած էր, քրիստոնէութիւնն Անգղիա հաստատ-մամբ տնկուեցաւ ։ Եւթներորդ դարուն մէջերը՝ քրիս-տոնէութիւնը գրեթէ բոլոր անգլոսաքսոնական տէ-րութեանց մէջ արդէն մտած էր ։

Իռլանտա 432ին Կեղեստինոս Ա. Քահանայապետն զՍ. Պատրիկիոս իբրեւ քարոզիչ խաւրեց: Անիկայ հոն շատ վանքեր հաստատեց, որոնք քարոզիչներու կրթարան ըլլալով, ետքէն քրիստոնէութեան տարածման շատ օգնեցին: Պատրիկիոս Արմաղ քաղաքն եկեղեցի մը շինեց, եւ իր եռանդնալից քարոզներովն Իռլանտացւոց մեծ մասը դարձուց, որոնք իրենց սուրբ առաքելոյն յիշատակը մինչեւ հիմայ կը պատուեն, եւ կաթուղիկէ ուղղափառ հաւատքին անդրդուելի հաւատարմութեամբ յարեալ են: — Սկովտիա 565ին Կոլումբանոս Իռլանտացի կրօնաւորն իբրեւ հաւատոյ պատգամաւոր եկաւ, եւ մինչեւ մահը (597) մեծ արդիւնքով անոնց քրիստոնէութիւնը քարոզեց. ինք թագաւորն ու ժողովրդեան մեծ մասը քրիստոնեայ մկրտեց եւ շատ վանքեր հիմնելով, քրիստոնէութեան տեւական հաստատութիւն մը տուաւ:

Գերմանիա, քրիստոնէութիւնն առաջին անգամ քարոզողներն եղան եւթներորդ դարուն սկիզբը Գաղղոս ու Կոլումբանոս Իռլանտացիները. առաջինը՝ Պոտէն լճին, իսկ երկրորդը Կէնֆ լճին կողմերը, եւ Աստուած իրենց ջանքն անպտուղ չթողուց: Երբոր Կոլումբանոս Իտալիա գնաց իր քարոզութիւնը հոն շարունակելու համար, Գաղղոս Գերմանիա մնաց, եւ Ս. Գաղղոսի անուանի աբբայարանին հիմնադիրն ու Հելուետիացւոց առաքեալն եղաւ:

Ս. Եմերանոս՝ Փուատիէի եպիսկոպոսը, 649ին մօտերը Պաւիէրա եկաւ եւ այս երկրին առաքեալն եղաւ: Քանի մը տարի մեծ արդիւնքով Ռեկէնսպուրկի կողմերը քարոզելէն ետեւ, 654ին սպաննուեցաւ: Անկէ ետքը քրիստոնէութիւնը Պաւիէրա սկսաւ իյնալ, մինչեւ որ 696ին Ս. Ռուբերտոս Վորմսի եպիսկոպոսը († 718) հոն գալով, քրիստոնէութիւնը կենդանացուց:

Նորիկոն ըսուած հին հռոմէական գաւառին մէջ (հիմակուան Վերին ու Ստորին Աւստրիա, Շթայերմարքի ու Ցալցպուրկի մեծ մասն ալ մէկտեղ առնուած), քրիստոնէութիւնը կանուխ մուտք գտաւ, բայց ազգաց գաղթականութեան ատեն բարբարո-

սաց արշաւանքներուն պատճառաւ, քրիստոնէութեան սերմը գրեթէ բոլորովին ջնջուեցաւ։ Յամի 454ին Ս. Սեւերինոս կրօնաւորն Աւստրիա եկաւ, որ իր հրաշալի տեսքովն, խորին խոնարհութեամբն ու հաւատոյ զօրութեամբը, նոյն իսկ բարբարոս հեթանոսաց եւ անոնց իշխաններուն ակնածելի ու մեծարելի էր։ Իբրեւ անվաստակ քարոզիչ 30 տարի Դանուբեան գաւառներուն մէջ պտըտեցաւ, տեղ տեղ վանքեր հաստատեց, գլխաւորաբար Վիէննայի ու Բասաուի մօտերը, եւ մինչեւ ցայսօր իբրեւ Նորիկոնի առաքեալ մեծ յարգութիւն ունի։

Յամի 690ին Վիլլիբրորդին առաջնորդութեամբը՝ 12 քարոզիչ Անգղիայէն Ֆրիզլանտ եկան, բայց անոնց քրիստոնէութիւնը հոն հաստատելու ըրած ջանքերն անպտուղ մնացին։ Վիլլիբրորդին ընկերներէն մէկն էր Ս. Վինֆրիտոս, որ Բոնիփակիոս անուամբ իբրեւ Գերմանիայի առաքեալ շատ հռչակաւոր է։ Տղայութենէն առաքելութեան սաստիկ բաղձանք ունենալով՝ Ս. Բենեդիկտոսի կրօնը մտաւ (716), եւ քիչ մը ետքը Ֆրիզլանտ գնաց քրիստոնէութիւնը քարոզելու համար։ Վրան շատ չանցաւ Հռոմ գնաց, ուստի Գրիգոր Բ. Քահանայապետը զինքն առանձին հրեշտակութեամբ Գերմանիա խաւրեց։ Վինֆրիտոս Պաւիէրա, Հեսսէն, Թիւրինկէն ու Ֆրիզլանտ գաւառները առաքելութեան պարապեցաւ, մինչեւ որ Գրիգոր Գ. Քահանայապետը զինքը Հռոմ կանչելով՝ իր արդեանցը համար Գերմանիայի արքեպիսկոպոս անուանեց. անկէ Գերմանիա դառնալով ան կողմերուն եկեղեցեաց կարգաւորութեանը հոգ տարաւ, շատ եպիսկոպոսական աթոռներ ու Ֆուլտայի անուանի աբբայարանը հիմնեց, ուստի ետքէն բովանդակ Գերմանիա գիտութեան լոյսը տարածուեցաւ։ Վերջապէս 75 տարեկան հասակին մէջ իր երկարատեւ գործունէութեան ժամանակ գրեթէ 100,000 Գերմանացի իր ձեռքովը մկրտելէն ետեւ, օր մը երբ բաղմաթիւ նորադարձ քրիստոնէից դրոշմ տալու կը պատրաստուէր, Ֆրիզացիք վրան յարձակելով զինքն իր 33 ընկերներովը մեռցուցին (755)։

### 27. Հայոց երկրորդ կամ բոլորական քրիստոնէութեան դարձը:

Թէպէտ կան քանի մը պատմական վկայութիւններ, որոնք առաջին քարոզութենէն ետքը քրիստոնէութեան գոյութիւնը Հայաստանի մէջ կ'ենթադրեն, եւ ցիրուցան քրիստոնեաներ գտնուելուն կը վկայեն, սակայն աս անտարակոյս է՝ որ մինչեւ չորրորդ դար դեռ հեթանոսութիւնը Հայաստանի մէջ կը տիրէր, եւ Հայոց պատմաբանօրէն ստոյգ եւ բոլորական քրիստոնէութեան դարձը, նոյն դարուն սկիզբն եղած է*: Աս երեւելի գործոյն Աստուծոյ նախախնամութենէն որոշուած անձն էր, Ս. Գրիգոր Լուսաւորիչ՝ տիրասպան Անակայ որդին, որուն ձեռքով քրիստոնէական հաւատոյ լոյսը Հայաստանի վրայ ալ ծագեցաւ, եւ հեթանոսութեան մութ խաւարին մէջ նստող մեր նախնիքն իրենց թշուառութենէն փրկութիւն գտան: Ս. Գրիգոր իր ազգատոհմին կոտորածէն Եւթաղ անուն մէկու մը ձեռքով Կեսարիա փախցուելով, հոն մատաղ հասակէն վեր քրիստոնէական հաւատոյ ճշմարտութեանց եւ յունական գիտութեանց մէջ աղէկ կրթուած էր: Չափահաս ըլլալէն ետքը Տրդատ Թագաւորին քովը գնաց եւ անոր ծառայութեան մտաւ, իր հօրը Արշակունեաց ըրած անիրաւութեան հատուցում ընելու համար: Տրդատ՝ որ Հռոմ հեթանոսական գաղափարներով մեծցած ու քրիստոնէից ոխերիմ թշնամի էր, իմանալով որ Ս. Գրիգոր քրիստոնեայ է, ուզեց զինքը պէսպէս տանջանքներով քրիստոնէութիւնը թող տալու ստիպել: Հռոմայեցւոց օգնութեամբը՝ հօրը թագաւորութիւնն առնելու համար յաղթանակաւ Հայաստան դառնալով, Երէզ աւանը Անահտայ դից գոհութեան զոհ մատուցած ատեն, Տրդատ Գրիգորին հրամայեց որ ինքն ալ նոյն չաստուածուհւոյն ծաղկէ պսակ նուիրէ: Երբ որ Գրիգոր յանձն չառաւ, Թագաւորն երկայն հարցուփորձէ ե-

* Ազգային պատմութեանց նայելով՝ աս դարձը 304էն կամ 305էն յառաջ չի կրնար դրուիլ. իսկ օտարներին ստոյգ պատմութեան նայելով՝ 311էն ետքը չի կրնար ձգուիլ:

տեւ, այլեւայլ դառն ու անտանելի տանջանքներով ուզեց իր մտաց հաստատութիւնը խախտել. բայց անկարելի եղաւ: Տրդատ իր նախարարներէն մէկէն լսելով՝ որ Գրիգոր տիրասպան Անակայ որդին է, հրամայեց որ զինքը Արտաշատ քաղաքը գուբ մը նետեն: Անկէ ետքը Հռոմայ կայսերաց նմանողութեամբ՝ բոլոր տէրութեան մէջ քրիստոնէից դէմ սաստիկ հալածանք հանեց: Նոյն միջոցին նաեւ արեւմուտքէն Հայաստան փախած Հռիփսիմէ ու Գայիանէ կոյսերն եւ անոնց ընկերները մարտիրոսական մահուամբ մեռցուց: Սակայն քիչ ժամանակէն Տրդատ ըրածներուն պատիժը գտաւ. օր մը որսի ելած ատեն՝ վրան կատաղութիւն եկաւ, եւ վայրենի անասնոյ պէս սկսաւ անտառներու մէջ ապրիլ: Ս. Գրիգոր տասնուհինգ տարի Արտաշատու գուբն անվնաս մնաց, ուստի աստուածային ազդեցութեամբ հանուելով՝ թագաւորն ու նախարարներն իրենց հիւանդութեննէն բժշկեց, եւ վաթսունուհինգ օր ճշմարիտ առաքելական եռանդեամբ քրիստոնէական կրօնն իրենց քարոզեց: Անկէ ետքը Հայաստանի ամէն կողմերը պտըտելով, մեհեանները քակեց, կռոց արձանները կործանեց եւ անոնց տեղը (Հռիփսիմէ եւ Գայիանէ կուսանաց գերեզմաններուն վրայ) վկայարաններ կանգնեց: Անկէ ետքը Ս. Գրիգոր Հայաստանի դարձը կատարելապէս գլուխ հանելու համար, Կեսարիայի արքեպիսկոպոսին դիմեց եւ իրմէ եկեղեցական պաշտօնեաներ խնդրեց: Սակայն նոյն միջոցին թագաւորն ու մեծամեծները խորհուրդ ընելով, զՍ. Գրիգոր իրենց հովիւ ընտրեցին: Թէպէտ ինք ասոր շատ ընդդիմացաւ, բայց իմանալով որ Աստուծոյ կամքն է, վերջապէս յանձն առաւ: Տրդատ առանձին հրովարտակաւ եւ բազմաթիւ երեւելի նախարարներու ընկերութեամբ, զՍ. Գրիգոր Կեսարիա խաւրեց, ուր Ղեւոնդիոս եպիսկոպոսապետն իր նահանգին եպիսկոպոսներովը զինքը Հայաստանի մետրապոլիտ (կաթուղիկոս) ձեռնադրեց: Ս. Գրիգոր անկէ բազմաթիւ եկեղեցական պաշտօնեաներ, կրօնաւորներ եւ Ս. Յովհաննէս Մկրտչին ու Ս. Աթանագինէսին մարմինները հետն առած՝ Հայաստան դարձաւ:

Ս. Գրիգորին Կեսարիա երթալն եւ Կեսարիայի արքեպիսկոպոսէն ձեռնադրութիւն ընդունիլը, Հայոց եկեղեցական պատմութեան մէջ մտադրութեան արժանի դէպքերէն մէկն է, եւ շատ աւելի նշանաւոր՝ քան որչափ ոմանք կ'ուզեն կարծել: Այս դէպքը՝ չէ թէ կամայական կամ առ առաւելն դիպուածական բան մըն էր, այլ նորագործ Հայոց եկեղեցւոյն՝ ընդհանուր եկեղեցւոյ նուիրապետութեան մէջ ի սկզբան անդ ունեցած դիրքը կը ցուցընէ:

Հայաստան՝ որ մինչեւ չորրորդ դար առաքելական աթոռոյ մը անընդհատ յաջորդութիւն կամ շարունակեալ նուիրապետութիւն մը չունէր, առաջին անգամ իր ընդհանուր դարձին ատեն առանձին նուիրապետութիւն մ'ընդունեցաւ: Արդ այս նուիրապետութիւնն ինչպէս պատմաբանօրէն նոյնպէս իրաւաբանապէս, եկեղեցւոյ ընդհանուր նուիրապետութեանը շառաւիղ մը պիտ'որ ըլլար: Նոյն հիմամբ եւ նոյն կարգաւ, որով ուրիշ նահանգները մետրապոլտաց մետրապոլտի մը իշխանութեան տակն էին, Հայոց եկեղեցին ալ պիտ'որ ըլլար: Եւ իրօք ալ կը գտնենք, որ այն օրն՝ որով քրիստոնեայ Հայաստան ընդհանուր եկեղեցւոյ հետ կը կապուէր, Կեսարիայի (Գամրաց) վեցերորդապետական աթոռն էր: Աս աթոռը Հայաստանի համար առաքեալ կամ քարոզիչ մը սնուցած, կրթած եւ գոնէ սկզբնաբար նաեւ խաւրած էր. աս առաքեալը չէ թէ միայն իր ձեռնադրութիւնը հապա նաեւ նոյն իսկ քրիստոնէութեան պաշտօնեաներն ան վիճակէն առաւ. անոնցմով գործեց, անոնք սորվեցուցին եւ կըրթեցին մեր առաջին քրիստոնեայ նախահարքը: Այնպէս որ կրնայ ըսուիլ թէ Հայոց եկեղեցին՝ նոյն աթոռոյն դուստրն էր: Աս յարաբերութիւնն էր՝ որ առանձին միաբանական դաշնագրով մը Հռոմայեցւոց դաշնաւոր Տրդատ թագաւորին եւ Ղեւոնդիոս Կեսարիայի եպիսկոպոսապետին մէջ հաստատուեցաւ* (Տես Ագաթ. երես 597—614):

Ս. Գրիգոր Կեսարիայէն Հայաստան դառնալէն ետքը, Բագուան քաղաքն զՏրդատ թագաւորը, Աշխէն տիկինն ու Խոսրովիդուխտ քոյրը մկրտեց: Թագաւորին օրինակին հետեւեցան նախարարներէն շատերը եւ ժողովրդեան մեծ բազմութիւն մը, այնպէս որ նոյն միջոցին գրեթէ 4 միլիոն հոգի մկրտուեցան: Անկէ ետքը Ս. Գրիգոր Հայաստանի մէկ քանի գաւառները մնացած կուռքերը վերցընելու ետեւէ եղաւ. Մեհենաշատ Տարօն գաւառին մեհեանները կործանելու համար, հարկ եղաւ նոյն իսկ զինու զօրութիւն

* Առաջին պատմագրութիւնն ալ Հայոց եկեղեցին այս յարաբերութեան մէջ կը ճանչնայ: Նիկիայի ժողովոյն ստորագրութեանցը մէջ՝ Մեծ Հայք, ուստի Արիստակէս եկած էր, Պոնտոսի (կամ որ նոյն է Կեսարիայի Կապադովկացւոց) վիճակին նահանգացը կարգին մէջ դրուած է: Նոյնպէս Գեղասիոս Կիւզիկենացին՝ Նիկիայի ժողովոյն ամենէն հին պատմիչը, Ղեւոնդիոս Կեսարիայի Կապադովկացւոց եպիսկոպոսապետին նահանգներն այսպէս կը համրէ. Գամիրք, Գաղատիա, Պոնտոս, Պափլագոնիա, Փոքր Հայք ու Մեծ Հայք:

գործածել։ Ասկէ զատ Ս. Գրիգոր փոյթ տարաւ նաեւ քրմերն ու անոնց որդիքը կրթելու, եւ անոնցմէ բազմաթիւ եկեղեցական պաշտօնեաներ կազմեց։ Քրիստոնէութեան առաւել հաստատութեանը համար, Հայաստանի ամէն կողմերն ազգային եւ օտար եպիսկոպոսներ դրաւ, կարգով կանոնով վանքեր հաստատեց, եւ ուսում ու կրթութիւն տարածելու համար դպրոցներ բացաւ։ Այսպէս սուրբ Գրիգորին ջանքովն եւ Տրդատ եռանդուն թագաւորին գործակցութեամբը, Հայաստանի գրեթէ ամէն կողմերը (ի բաց առեալ Գողթն, Տաշիր եւ Գարդման գաւառները, ուր դեռ մնացած հեթանոսութեան հետքերը չորրորդ դարուն վերջերը Ս. Մեսրոպ վերցուց) քրիստոնէութիւնն հաստարմատ տնկուեցաւ, եւ Հայք քանի մը տարի ետքն (311) իրենց դարձին հաստատութիւնը ցուցընելու առիթ ունեցան, երբ որ Մաքսիմինոս կայսեր ազգովին զինուք դէմ ելան, իրենց դեռ նոր ընդունած կրօնին պաշտպանութեանը համար։

Այսպէս Հայաստանի քրիստոնէութեան դարձը կատարելապէս լմննալէն ետքը, բան մը միայն կը պակսէր. հարկ էր որ այս ամէն եղածներն ընդհանուր եկեղեցւոյ Գլխոյն հաստատութիւնն ընդունէին։ Ուստի ինչպէս կ՚երեւայ, երբ որ Տրդատ Հռոմ գնաց (314—319), որպէս զի Մաքսիմինոս Դայային հետ ունեցած պատերազմին պատճառաւ Հռոմայեցւոց հետ խախտած նիզակակցութիւնը նորոգէ, Ս. Գրիգոր իրեն ընկերացաւ, իր նորադարձ հօտը նոյն ատեն տիրող Ս. Սեղբեստրոս Ա. Քահանայապետին հովուական գաւազանին տակը ձգելու համար։ Ս. Գրիգոր Սեղբեստրոս Քահանայապետէն մեծ պատիւ գտաւ եւ իրմէ մեծագին պարգեւներ ընդունեցաւ։ Տրդատ ալ իր բարեկամութիւնը Կոստանդիանոս կայսեր հետ թղթով հաստատեց*։ Հռոմէն դառնալէն քանի մը տարի ետքը, Ս. Գրիգոր Նիկիայի ժողովը կանչուեցաւ, բայց ինքը չուզելով երթալ, իր տեղը զԱրիստակէս խաւրեց, զորն որ արդէն յառաջագոյն իր տեղա-

* Աս դաշանց թուղթը՝ որուն գոյութիւնն անտարակուսելի է, պէտք չէ հիմայ գտնուած անհարազատ դաշանց թղթոյն հետ շփոթել։

պաշտն ըրած էր։ Եւ այսպէս Նորադարձ Հայոց եկե-
ղեցւոյն կաթուղիկէ եկեղեցւոյ հետ ունեցած միու-
թիւնը, առաջին անգամ յայտնի ցուցուեցաւ այն-
պիսի առթի մը մէջ, ուր բոլոր եկեղեցին ի գլուխն եւ
յանդամս իւր ներկայացուած էր։ Արիստակէս Նիկիայի
ժողովոյն որոշումներովն ու կանոններովը Հայաստան
դառնալէն ետեւ, Ս. Գրիգոր զանոնք ժողովքով ըն-
դունեցաւ եւ հաստատեց։ Քիչ մը ետքը Հայոց եկե-
ղեցւոյն կառավարութիւնը բոլորովին Ս. Արիստակէ-
սին յանձնելով, ինքը Մանեայ այրը քաշուեցաւ եւ
հոն քանի մը տարի ետքը (իբր 333) մեռաւ։ — Նոյն-
պէս Տրդատ քաջ ու եռանդուն թագաւորն՝ որ նա-
խարարներն ու ժողովուրդը խօսքով ու գործքով քրիս-
տոնէութեան մէջ հաստատուն մնալու եւ քրիստո-
նէական բարեպաշտութեան համաձայն կեանք անցը-
նելու կը յորդորէր, նախարարաց ձեռքէն թունաւո-
րուելով մեռաւ (337)։ Այս վախճանն ունեցաւ Հայոց
առաջին քրիստոնեայ սուրբ թագաւորը, որուն յիշա-
տակը Հայոց եկեղեցին չորրորդ դարէն վեր կը կա-
տարէ։

### 28. Սուրբ Գրիգորի յաջորդները։

Սուրբ Գրիգորին մահուանէն ետքը՝ հայրապետ-
ութեան կամ կաթուղիկոսութեան աստիճանն եր-
կայն ժամանակ իր ցեղին մէջ մնաց։ Ս. Արիստակէս,
Ս. Վրթանէս եւ Ս. Յուսիկ ետեւէ ետեւ կաթուղի-
կոսական աթոռն ելլելով, Ս. Գրիգորին սկսած առա-
քելական ջանքն ու քարոզութիւնը յառաջ տարին,
եւ աշխարհքին լուսաւորութեանն եւ ուղղութեանն
աշխատեցան։ Իրենցմէ մէկ քանին թագաւորաց, նա-
խարարաց եւ ժողովրդեան հեթանոսական մոլորու-
թեանցն եւ անկարգութեանցը դէմ ելլելնուն համար
կեանքերնին զոհեցին։ Այսպէս Արիստակէս քանի մը
տարի կաթողիկոսութիւն ընելէն ետքը, Արքեղայոս
դեղծ իշխանէն՝ զինքը յանդիմանելուն համար չարա-
չար մահուամբ սպանուեցաւ։ Իր եղբայրն ու յաջորդը
Ս. Վրթանէս՝ եկեղեցւոյ մէջ քրիստոնէական պաշ-

տամունքը կատարած ատեն, Տարօն գաւառին կռա-
պաշտ ժողովուրդը մահուան սպառնալեօք վրան յար-
ձակեցաւ: Իր յաջորդը Ս. Յուսիկ, Տիրան Թագա-
ւորին՝ եկեղեցւոյ մէջ հեթանոսական պաշտամունք
խօթելն աստուածային նախանձաւորութեամբ արգե-
լելուն համար, բրածեծ մեռաւ: Իրմէ ետքը կաթողի-
կոսական աթոռն ելաւ Դանիէլ ծերունին, որ Ս. Գրի-
գորի աշակերտն եղած եւ իրմէ եպիսկոպոս ձեռնա-
դրուած էր: Սակայն ասիկայ ալ երկայն ատեն չկրցաւ
կենալ իր աստիճանին մէջ, մանաւանդ թէ նոյն աս-
տիճանն եւ ոչ իսկ իրօք ընդունեցաւ: Վասն զի երբ
որ կաթողիկոս ընտրուելէն ետեւ առաջին անգամ
Տիրան Թագաւորին առջեւն ելաւ, եւ զՍ. Յուսիկ
մեռցնելուն համար զինքը յանդիմանեց, Թագաւորը
նեղանալով անմիջապէս զինքը մեռցնել տուաւ: Իրեն
յաջորդեց Փառներսեհ կամ Փառէն, որ հազիւ հինգ
տարի կաթողիկոսութիւն ըրաւ: Ասոր մահուանէն
ետքը կաթողիկոս ընտրուեցաւ Ս. Ներսէս՝ Աթա-
նագինէսի որդին: Աս սուրբ հայրապետը թէ սրբու-
թեամբ եւ թէ գիտութեամբ նշանաւոր է, եւ Հայոց
եկեղեցւոյն գլխաւոր զարդերէն մէկը: Կեսարիայէն
ձեռնադրութիւն առած Հայաստան դառնալէն ետեւ,
սքանչելի բարեկարգութիւններով Հայոց եկեղեցին
պայծառացուց: Ժամանակին քաղաքային շփոթու-
թեանց մէջ ալ մասնակցութիւն ունեցաւ, եւ Հռո-
մայեցւոց կայսերաց ու Հայոց թագաւորներուն մէջ
միջնորդութիւն ընելով, հայրենիքը մեծամեծ վտանգ-
ներէ ազատեց: Բայց հայրենեաց ըրած այս ամէն ծա-
ռայութեանց փոխարէն, Պապ զեղծ ու անառակ Թա-
գաւորէն թունաւորուելով մեռաւ (373): Ս. Ներսէ-
սին յաջորդեց Պապ Թագաւորին հրամանաւը Շահակ,
որ առանց Կեսարիայի արքեպիսկոպոսին ձեռնադրու-
թեանը կամ հաւանութեանը կաթողիկոս դրուե-
ցաւ: Այս զանցառութեան դէմ, որ միանգամայն դաշ-
նագրին լուծումն էր, Կեսարիայի վեցերորդապետը Ս.
Բարսեղ, Հայաստանի վրայ արգելք դրաւ, այսինքն
ասանկ միայն աշխարհական իշխանութեամբ դրուած
կաթողիկոսը՝ եպիսկոպոս ձեռնադրելու իշխանութե-

նէն զրկեց, որով անկէ ետքն եպիսկոպոս ձեռնադրուելիները Կեսարիա կ'երթային։ Իսկ Թագաւորին ընտրած եպիսկոպոսը միայն արքունական կամ պալատի եպիսկոպոս մնաց։ Շահակայ՝ նոյն կերպով ետեւէ ետեւ յաջորդեցին Զաւէն ու Ասպուրակէս։ Սակայն շատ երկայն չտեւեց այս զրկումը, վասն զի կը տեսնենք որ գրեթէ 20 տարի ետքն այս երկու աթոռները հաշտութեան մէջ են, եւ Հայոց կաթուղիկոսները կը շարունակեն Հայաստանի եպիսկոպոսաց ձեռնադրութիւն տալը։

Ասպուրակէսէն ետքը կաթուղիկոսական աթոռն ելաւ Ս. Ներսէսին որդին եւ ձեռնասուն աշակերտը Ս. Սահակ (389—440)։ Այս սուրբ հայրապետը, Լուսաւորչէին վերջին զարմը, իր հայրական խնամքովն ու հոգեւոր բարեկարգութիւններովը Հայաստան ծաղկեցընելու եւ քրիստոնէութիւնն ու բարեպաշտութիւնը յառաջ տանելու շատ փոյթ տարաւ։ Իրեն աջակից օգնական ունէր զՍ. Մեսրոպ։ Ասոր ջանքովն ու աշխատութեամբը հայերէն գիրը գտնուելէն (406) եւ պարսկային Հայաստանի մէջ ընդհանրապէս եկեղեցական լեզուի միջոց ըլլալէն ետքը, Ս. Սահակ ուզեց նոյնը Յունաց բաժնին մէջ ալ հաղորդել։ Բայց նոյն տեղաց քաղաքային գործակալներն այս բանիս դէմ կեցան, ըսելով որ Հայաստանի նոյն մասը Կեսարիայի մետրապոլտին իշխանութեան տակն է։ Ս. Սահակ անմիջապէս Ատտիկոս Կոստանդնուպոլսոյ հայրապետին դիմեց, որ նոյն միջոցին իր պատրիարքական իշխանութիւնը բոլոր Ասիայի եւ Պոնտոսի վրայ տարածած էր։ Խնդրոյն որոշումը շուտ լմնցաւ. Ատտիկոս հայրապետը Թէոդոս կայսեր հրամանը Ս. Սահակայ ծանոյց, որ կը պատուիրէր թէ Ս. Սահակայ Յունաց բաժնին մէջ ամենեւին արգելք չդրուի։ Ատտիկոս աս առթով միանգամայն Հայաստանի վրայ ալ հոգացողութիւն ընելով, զՍ. Սահակ յորդորեց որ Բոքբորիտ ըսուած աղանդաւորները հալածէ։

Ընդհանրապէս Հայոց կղերն ասկէ ետքն աչքը դէպ ի աս աթոռը դարձուցած էր, եւ աս աթոռոյս հետ սերտ յարաբերութեան մէջ էր։ Երբ որ մեր ա-

ռաջին թարգմանիչներն՝ ուսումն սորվելու համար Կոստանդնուպոլիս դացին, Մաքսիմիանոս Հայրապետն իրենց մեծ ընդունելութիւն եւ խնամք ցուցուց, եւ Հայաստան դարձած ատեննին՝ Եփեսոսի ժողովոյն որոշումներն ու կանոններն իրենց ձեռքով Ս. Սահակայ խաւրեց, որ զանոնք Աշտիշատայ ժողովքին մէջ յարգութեամբ ընդունեցաւ (433)։ Եփեսոսի ժողովքէն քանի մը տարի ետքը, երբ որ Թէոդոս Բ. կայսեր հրամանաւը Նեստորի գրքերն այրեցան, Նեստորի պաշտպանները՝ Թէոդորոս Մոպսուեստացւոյն եւ Դիոդորոս Տարսոնացւոյն գրքերը հայերէն թարգմանելով, Հայաստան տարածեցին։ Ակակ Մելիտինոյ եպիսկոպոսը, Կիւրեղ Աղեքսանդրիայի եւ Պրոկղ Կոստանդնուպոլսոյ հայրապետներն (ըստ Խորենացւոյն), Ս. Սահակայ ասոր նկատմամբ ազդարարութիւն ըրին։ Ս. Սահակ Հայաստան սփռուած գրքերը ժողովքով քննելէն ետեւ, թէ գրուածքներն ու թէ անոնց հեղինակները դատապարտեց, եւ վճիռը թէ Կիւրղի ու թէ Պրոկղի ծանոյց։ Պրոկղ (ըստ Լիբերատոսի) Հայոց եպիսկոպոսաց պատասխան տուաւ թղթով մը, որուն մէջ Թէոդորոսի գրքերէն քաղուածք մը դնելով, կը դատապարտէ նոյնն առանց հեղինակին անուանը։ Աս թուղթը՝ (տումարը) ինչպէս արեւելեան եպիսկոպոսունք նոյնպէս Հայք ընդունեցան։ — Ահաւասիկ Հայոց եկեղեցին ընդհանուր եկեղեցւոյ հետ սերտ կապակցութեան եւ գրկախառն սիրոյ մէջ, մինչեւ Քաղկեդոնի տիեզերական ժողովը։

## 29. Հայոց եկեղեցւոյն վիճակը Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ատեն եւ անկէ անմիջապէս ետքը:

Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ատեն՝ դժբախտութեամբ Հայաստան մեծ խռովութեան մէջ կը գտնուէր, Յազկերտ Բ. Պարսից թագաւորին հալածանքին պատճառաւ։ Պարսկային տէրութիւնը՝ որ ցորչափ Հայոց ազգային թագաւորութիւնը կանգուն մնացած էր, քաղաքականութեան արուեստով մը Հայոց կրօնին չէր դպչեր, Արշակունեաց թագաւորութիւնը

կործանելէն ետքը, Հայաստան ալ՝ իրեն ուրիշ դաւ-
ռաւաց մէջ քրիստոնէից նկատմամբ բանած ճամբուն
համեմատ վարուելու սկսաւ։ Պարսիկք տեսնելով
Հայոց կրօնի պատճառաւ Յունաց ունեցած միտումը,
Հայաստանի տիրապետութիւնն ապահով ու հաստա-
տուն չէին համարեր, քանի որ Հայք քաղաքական
կապէն զատ՝ կրօնական զօդիւ մ'ալ Պարսից հետ միա-
ցեալ չէին ըլլար։ Արդէն Արշակունեաց թագաւորու-
թեան կանգուն եղած ատեն, Պարսից թագաւորնե-
րէն ոմանք Հայերը մոգութեան կրօնը դարձնելու
փորձեր ըրած էին, բայց յաջողութիւն մը չէին գտած։
Վերջապէս անոնց ընեւ չկրցածը, Յազկերտ Բ. ուզեց
գլուխ հանել։ Յունաց վրայ ըրած յաղթութիւններէն
հպարտացած եւ մոգերէն գրգռուած, հինգերորդ
դարուն դէպ ի կէսին՝ Հայոց դէմ հալածանք հանեց,
որպէս զի քրիստոնէութիւնը Հայաստանէն ջնջելով
ամբողջ ազգը կործանէ։ Միտքը դրածը դիւրաւ գլուխ
հանելու համար, Հայոց Նախարարներն ու զօրքը Հայ-
աստանէն հեռացուց, եւ զիրենք Հոնաց դէմ պատե-
րազմի տանելով՝ եօթը տարի աշխատցուց։ Նոյն մի-
ջոցին Միհրներսեհ հազարապետին ձեռքով՝ Հայոց
Թուղթ մը գրեց, որուն մէջ Զրադաշտեան դենին
ուսումը սորվեցընելով, եւ քրիստոնէութիւնը վար
զարնելով Հայերն ուրացութեան կը յորդորէր։ Աս
Թուղթը Հայաստան տարածուելուն պէս՝ Յովսէփ
կաթուղիկոսն Արտաշատ (449ին վերջերը կամ 450ին
սկիզբները) եպիսկոպոսաց, քահանայից ու Նախարա-
րաց ժողով մ'ըրաւ, ուր ամէնքը քրիստոնէական
հաւատոյ մէջ հաստատուն մնալու եւ անոր վրայ մեռ-
նելու երդում ըրին։ Յովսէփ կաթուղիկոսն եպիսկո-
պոսներով մէկտեղ Թղթին պատասխանը գրեց, որուն
մէջ քրիստոնէական կրօնին վարդապետութիւնները
մեկնելէն ետքը, ի մէջ այլոց Պարսից Թագաւորին
հետեւեալ նշանաւոր խօսքերը կ'ըսէ. Եւ սմին
հաստատեալ եմք, ոչ յերկրէ այլ տէր փոխանակեսցուք ընդ
քեզ եւ ոչ յերկինս այլ Աստուած փոխանակեսցուք ընդ Յի-
սուսի Քրիստոսի..... ի քէն տանջանք, եւ ի մէնջ յանձնա-
ռութիւնք. սուր քո եւ պարանոցք մեր (Եղիշէ, 67)։ Աս

համարձակ պատասխանը Յազկերտ Թագաւորը կատ-
ղեցուց, եւ Միհրներսեհ հազարապետին գրգռելովը
անմիջապէս Հայաստան զօրք եւ բազմաթիւ մոգեր
խաւրեց, քրիստոնէութիւնն անկէ բունի ջնջելու հա-
մար։ Դժբախտութեամբ գտնուեցան քանի մը Հայ
Նախարարներ ալ, որոնց մէջ անուանի է Վասակ Սիւնի,
որոնք իրենց անձնասիրութիւնը կամ փառասիրու-
թիւնը յագեցընելու համար հաւատքնին ուրացան, եւ
Պարսից կողմն անցնելով՝ հայրենիքնին անոնց ձեռքը
մատնեցին։ Սակայն ժողովրդեան մեծագոյն մասը՝ իր
բնական կրօնասիրութենէն մղուած եւ գլխաւորաբար
եկեղեցական ու աշխարհական առաջնորդներէն յոր-
դորուած՝ զէնքի վազեց, մոգերը ջարդեց, կրակատուն-
ները կործանեց, եւ եկեղեցիներուն վրայ Քրիստոսի
խաչը դարձեալ սկսաւ շողալ։ Վարդան Մամիկոնեան
սպարապետն՝ իրեն հետ միացած քանի մը ուխտա-
պահ Նախարարներով արիութեամբ Պարսից զօրու-
թեանը դէմ կռուեցաւ, եւ անոնց վրայ փառաւոր
յաղթանակներ կանգնեց. բայց վերջապէս Աւարայրի
դաշտերուն վրայ բազմաթիւ ընկերներով մարտիրոսա-
կան մահուամբ ինկաւ (451)։ Երեք տարի ետքը
(454), Յովսէփ կաթուղիկոսն ու բազմաթիւ եկեղե-
ցականք, որոնք իրենց առաջնորդին անուամբը Ղեւ-
ոնդեանք կ'անուանուին, Պարսկաստան նահատակե-
ցան։ Աս կրօնական պատերազմը Վարդանին մահուա-
նէն ետքը՝ Վահան Մամիկոնեանին առաջնորդու-
թեամբը գրեթէ 30 տարի ալ շարունակուեցաւ, մին-
չեւ որ Վաղարշ Բ. Թագաւորական գահն ելլելով
(484), Վահանայ հետ հաշտութիւն ըրաւ, Հայոց
քրիստոնէական կրօնը համարձակ պաշտելու ազատու-
թիւն տալով։ Այսպէս՝ թէպէտ Հայաստան աւերակ
դարձաւ, սակայն Հայք կրցան խղճի ազատութիւնն
ու կրօնի անարատութիւնը պահել։

Այս հալածանքին պատճառաւ Հայք իրենց եկեղեցական
ու աշխարհական երեւելի անձինքներէն զրկուած ըլլալով՝
չկրցան իրենց կողմանէ Քաղկեդոնի ժողովը մարդ խաւ-
րել։ Սակայն ինչպէս Եփեսոսի ժողովոյն պաշտպաններուն
կողմն էին Հայք, նոյնպէս Քաղկեդոնի ժողովոյն հակառակորդ-
ներուն հետ սերտ եկեղեցական հաղորդութեան մէջ էր

Հայոց կղերը թէ Քաղկեդոնի ժողովոյն առեն եւ թէ անկէ ետքը բաւական ժամանակ։ Քաղկեդոնի ժողովոյն գումարուելուն նախընթաց տարին՝ Հայք Կոստանդնուպոլիս հրեշտակութիւն մ'ունէին Մարկիանոս կայսերմէ Պարսից դէմ օգնութիւն ուզելու համար։ Դեռ աս հրեշտակութիւնը հոն եղած առեն (451ին սկիզբները), Հայոց Պարսից դէմ ըրած յաղթութեան նաեւ Կոստանդնուպոլսոյ կղերն ուրախակից ըլլալու համար, Հայոց եպիսկոպոսունքն անցած տարներն առանձին թղթով մը Անատոլիոս հայրապետին ծանուցին եւ միանգամայն՝ նոյն եկեղեցւոյն աղօթքը խնդրեցին։ Աւելի խոնարհագոյն ժամանակներու գալով՝ Հայոց կղերը նոյն միաբանութեան մէջ յարատեւած եւ Հայերը Յունաց հետ սիրոյ յարաբերութեան մէջ կը գտնենք։ Թէոդորետոս Կիւրացւոյն՝ Քաղկեդոնի ժողովոյն խիստ պաշտպաններէն մէկուն, նոյն սիւնհոդոսին գումարմանէն հինգ կամ վեց տարի ետքը, Հայոց կղերին հետ ունեցած թղթակցութիւնն, ասոր ակներեւ ապացոյց մը կրնայ ըլլալ։ Թէոդորետոս՝ իր թղթերուն մէջ Քաղկեդոնի ժողովոյն կամ անոր ընդունելութեանը վրայ ամենեւին խօսք չ'ըներ, հապա Հայոց եկեղեցին ընդհանուր եկեղեցւոյ հետ հաշտ ու միութեան մէջ կ'ենթադրէ։ Գիւտ կաթուղիկոսին վրայ (465—475) Պարսից թագաւորին ամբաստանութիւններէն մէկն աս էր, որ Յունաց հետ հաղորդութեան մէջ է։ Առ դրական ցոյցերէն զատ՝ բացասական ցոյց մ'ալ կայ, որ իր ընդհանրականութեամբը գուցէ դրականներէն աւելի արժէ. այսինքն թէ Քաղկեդոնի ժողովքէն ետքը գրուած այնչափ գրուածքներու մէջ* բառ մը կամ պատմաբանօրէն կամ վարդապետօրէն, կամ յայտնի կամ լռելեայն Քաղկեդոնի ժողովոյն դէմ չկայ, որ անկարելի էր եթէ Հայք Քաղկեդոնի Ս. ժողովոյն առեն կամ անմիջապէս անկէ ետքը նոյն ժողովոյն հակառակորդացը կողմ ըլլային։

## 30. Մէհէմէտ ու մահմետականութիւն։

Արեւմուտք քրիստոնէութիւնն անհաւատալի շուտութեամբ տարածուելու առեն, արեւելք սկսաւ ընկճուիլ ան տեղերէն, ուր ամենէն յառաջ սերմանուած ու ծաղկած էր. այսինքն Ասորիքէն, Միջագետքէն, Պաղեստինէն, Եգիպտոսէն եւ հիւսիսային Ափրիկէէն։ Նոր ելած կրօն մը՝ այսինքն մահմետականութիւնը, անոր տեղ ան կողմերը տիրապետեց։

Մէհէմէտ՝ Խաշիմէլի զարմէն յառաջ եկած Արաբացւոյ մը որդին, աս կրօնին հիմնադիրն եղաւ։ Ինքը ծնաւ Արաբիայի Մէքքէ մայրաքաղաքը (569) եւ

* Ասոնց կը վերաբերին Եղիշէի գործքերը, Մովսէս Խորենացւոյն պատմագրութիւնն եւ ուրիշ գրուածքները, Յովհաննէս Մանդակունի կաթուղիկոսին գործքերը, Մամբրէի ճառերը, Դաւիթ Անյաղթին թէ աստուածաբանական ու թէ փիլիսոփայական գրուածքները եւայլն։

Ապու Թալէպ հօրեղբայրը՝ որ նոյն տեղւոյն իշխանն էր, անոր սկզբնական կրթութեանը հոգ տարաւ, որովհետեւ ծնողքը տղայութենէն կորսնցուցած էր։ Մէհէմէտ կենացը քսանըերորդ տարին, իբրեւ նոր կրօնի հիմնադիր իր ժողովրդեան մէջ ելաւ, որ հրէական ու քրիստոնեայ մասը դուրս հանելով, դեռ թանձր կռապաշտութեան մէջ ընկղմած էր։ Թէպէտ իր աստուածեղէն առաքումը ցուցընելու համար, միայն կը հաստատէր թէ Աստուած ինք զինքն իրեն յայտնած է, սակայն եւ այնպէս քսան տարուան միջոցի մէջ կըրցաւ մինչեւ նոյն ատեն ցրուեալ ու պառակտեալ արաբացի ցեղերը միացընել, եւ կռապաշտութեան տեղ իրենց մէջ մէկ Աստուծոյ պաշտօնը խոթել։

Մէհէմէտ թէպէտ մոլեռանդն էր, բայց միանգամայն խոհեմութիւն, հանճար եւ անյողդողդ քաջասրտութիւն մ'ունէր։ Տնային կենցաղավարութիւնը պարզ էր եւ անպաճոյճ, բայց վարքը գեղծ ու անառակ։ Թէ եւ անդթութեան մէտ չէր, բայց իր անձին կամ վարդապետութեանը հակառակորդացը դէմ անողոքելի խստութիւն կը բանեցընէր։ Պզտիկուց կրօնական բաներու յարում ունէր, եւ հրապարակական գործունէութիւնն սկսած ատեն, ուրիշ միտք կամ վախճան մը չունէր, բայց եթէ իր գեղծ ու ապականած ժողովուրդը պատշաճ կրօնիւ մը երջանկացընել։ Իր վարդապետութեան էական մասերը, որուն համար ինք կ'ըսէր թէ Աբրահամու եւ Աստուծմէ խաւրուած ամէն մարգարէից կրօնն է, հրէութենէ ու քրիստոնէութենէ առած է. իսկ Ղուրանը՝ հեթանոսական գաղափարաց ու այլանդակ ցնորական երեւակայութեանց հիւսուածք մըն է։

Մէհէմէտին վարդապետութեան էական կէտերն ասոնք են։ Մի միայն Աստուած մը կայ, եւ Մէհէմէտ անոր մեծ մարգարէն է. Մովսէս ու Քրիստոս ալ մարգարէք են։ Բարի եւ չար հրեշտակներ կան. առաջին մարդը՝ ուստի բոլոր մարդկային ազգը սերած է, սատանայէն խաբուելով ինկաւ, եւ դրախտէն երկիր աքսորուեցաւ, Մէհէմէտ մարդուն փրկագործութեանն ու արդարացուցմանը վրայ գրեթէ ամենեւին յիշա-

ակութիւն չ՚ընէր, բայց այնչափ աւելի կը խօսի մար-
դուն վերջինքներուն վրայ։ Ամէն բան ճակատագրի
տակ է եւ Աստուծոյ անպայման նախասահմանու-
թեամբը հարկաւ կ՚ըլլայ։ Աս կեանքէն ետքը մարդուն
համար յարութիւն, դատաստան ու յաւիտեան տեւող
հատուցման տեղ մը կայ. այսինքն երկրիս կենդրոնը
դժոխք մը տանջանքներով լի, եւ արքայութիւն մը
լի զգայական հեշտութեամբ ու մարմնական վայել-
մամբք։ Անոնք միայն կը հասնին երանութեան՝ որ
Մէհէմէտին ու անոր փոխանորդին կը հաւատան։ Մէ-
հէմէտին բարոյական վարդապետութիւնը մարդուն ի
բնէ չարին միտեալ ըլլալը կ՚ընդունի, բայց անոր պատ-
ճառին վրայ կը լռէ։ Գուրանը գրեթէ ամենեւին ներ-
քին սրբութեան վրայ չի խօսիր, այլ միայն արտաքին
գործքերու վրայ։ Կը պատուիրէ օրը հինգ անգամ
աղօթք, թլփատութիւն, ողորմութիւն տալ, ի մաս-
նաւորի սուրբ պատերազմին ստակով օգնել, պահք,
Մէքքէ ուխտագնացութեան երթալ, ուր Քէապէ
ըսուած տաճարին մէջ Արաբացւոց վաղեմի նուիրա-
կան տեղը, սեւ քար մը կար. դարձեալ երդումը սուրբ
պահել, արիւն եւ հեղձուցեալ չուտել, գինի չխմել
եւ ամէն բանէ աւելի հաւատոյ համար պատերազ-
մի երթալ։ Բազմակնութիւնն ու վրէժխնդրութիւնը
թոյլ տուեալ են։

Մէհէմէտ իր ծննդեան տեղը Մէքքէ՝ ընդունե-
լութիւն չգտաւ, մանաւանդ թէ իր քաղաքացիներէն
հալածուելով ստիպուեցաւ Մէտինէ փախչիլ*։ Հոն
ժողովուրդը զինքն իբրեւ մարգարէ ու իշխան ճանչնա-
լով, Արաբիայի մէկ մասը սրով նուաճեց, իսկ մէկալ
մասն ինքնակամ իրեն հպատակեցաւ։

Մէհէմէտ 63 տարուան թունաւորուելով մեռաւ
(632), առանց Աստուծմէ խաւրուած ըլլալուն վրայ
տարակոյս ունենալու, եւ իր վախճանին հասնելու
համար գործածած միջոցներուն վրայ ցաւ մը ցու-
ցնելու։ Իր յաջողութիւնները, որոնց կ՚երեւայ թէ
ինքն ալ կը հաւատար, քսանուերեք տարուան միջո-

* Աս փախստեան ժամանակէն (622 Յուլիս 15), Մահմետականք իրենց Թուականը կը հաշուեն։

ցի մէջ մասն մասն թղթերու վրայ գրած է, զորոնք իր մահուանէն երկու տարի ետքը՝ Ապուպէքր աներն ու յաջորդը, հաւաքելով գիրք մը ամփոփեց, որ Գուրան (Գիրք) կոչուեցաւ։ Մէհէմէտ իսկզբան միայն Արաբիան միացընելու համար՝ ազգային կրօն մը կ'ուզէր հաստատել, բայց ետքէն որչափ բախտն իրեն նպաստաւոր եղաւ, այնչափ ալ խորհուրդն ընդարձակեց։ Իր փախըստենէն եօթը տարի ետքը՝ Կոստանդնուպոլիս, Եգիպտոս ու Պաղեստին դեսպաններ խաւրեց, իր կրօնը հոն ալ ընդունել· տալու համար։

Ամիրապետները՝ որ Մէհէմէտին քահանայական ու թագաւորական իշխանութեան ժառանգներն են, իրեն սկսած գործքը յառաջ տարին։ Մոլեռանդութենէ յառաջ եկած քաջասրտութեամբ վառուած, եւ պատերազմասէր բանակներու գլուխն անցած, յանդուգն գործողութեանց ձեռք զարկին, եւ ժամանակին դէպքերն ալ իրենց արտաքոյ կարգի նպաստեցին։ Այս ամիրապետաց մէջէն ամէնէն նշանաւորն եղաւ Օմար, որ տուած ամէն ճակատներուն մէջ յաղթեց. 640ին Ասորիք, Պաղեստին ու Եգիպտոս. 651ին Պարսկաստան, եւ 711ին գրեթէ ամբողջ Սպանիա Մահմետականաց լծոյն տակ նուաճուեցան։ Սպանիայի քրիստոնեայք՝ Մահմետականաց ձեռքէն խիստ հալածանքներ կրեցին։ Մահմետականք Սպանիայէն ըսկըսեալ հետզհետէ մերձաւոր երկիրներուն ալ տիրելով, կ'ուզէին արեւմուտքն արեւելքի հետ միացընել։ Արդէն հարաւային Գաղղիայի մինչեւ Լուար գետ յառաջացած էին, երբ որ Կարոլոս Մարտեղլոս Բուադիէի ճակատամարտին մէջ (732), իրենց յանդուգն ձեռնարկութեան ցմիշտ վերջ տուաւ։

Մէհէմէտին տէրութիւնը թէեւ տեւողութեան կողմանէ Հռոմայեցւոց պետութեան չհաւասարեցաւ, բայց ընդարձակութեան կողմանէ զանիկայ գերազանցեց։ Սակայն շատ չանցաւ նոյն իսկ իրենց մէջ երկպառակութիւն մտնելով՝ տէրութիւնը զանազան մասերու բաժնուեցաւ։ Ասկէ զատ պատերազմներով ստացած հարստութիւնն ալ ժողովրդեան բարքը մեղկացուց։ Իսկ մահմետականութիւնն ոչ գրգռուած

կրքերը զսպելու զօրութիւն ունէր, եւ ոչ ծանր ոճիր-
ները խափանել կրնար: Մարդկային միտքն ուղղելու
համար անզօր ու ցուրտ էր, եւ շատ զգայական ըլլա-
լուն՝ զանիկայ սրբելու եւ ազնուացընելու ամենեւին
կարողութիւն չունէր: Ի մասնաւորի բարւոյն եւ չարին
անփոփոխելի վճռով (ճակատագրաւ) գործուելուն
վարդապետութիւնն ամէն մարդկեղէն կատարելու-
թիւն անհնարաւոր կ'ընէր, ինչու որ ասիկայ առանց
կամաց ազատութեան չի կրնար մտածուիլ: Այս վար-
դապետութիւնը պատճառ եղաւ մահմետականու-
թեան երկու ճեղքուելուն. արիւնահեղ քաղաքային
պատերազմներէ ետքը, եւթներորդ դարուն վերջը
մահմետականաց մէջ Շիի եւ Սիւննի ըսուած երկու
կուսակցութիւններն ելան, որ ցայսօր դեռ կը տեւեն:

### 31. *Այս ժամանակի շրջանին հերետիկոսութիւններն ու հերձուածները:*

Քանի որ հեթանոս կայսերաց հալածանքները
կը տեւէին, քրիստոնեայք աւանդութեամբ ընդունած
հաւատոյ վարդապետութիւնները միամիտ սրտիւ եւ
անկեղծ մտօք կը պահէին, եւ զանոնք իրենց արտա-
քին բարոյական կենացը մէջ ալ կը ցուցընէին: Թէպէտ
նոյն միջոցին ալ մոլորութիւններ ելան, բայց ընդ-
հանուր ընդունելութիւն չգտան: Երբոր հալածանք-
ները դադրեցան, եւ քրիստոնէութիւնը հեթանոսու-
թեան հետ հաւասար ազատութիւն ստացաւ, մանաւ-
անդ թէ երբոր վերջապէս ընդհանուր տիրող կրօն
եղաւ, ան ատեն ոմանք քրիստոնէութիւնն իբրեւ
պարզ մարդկեղէն մտաց գործք մը նկատելով, անոր
հետ ըստ այնմ վարուելու սկսան: Այս միտութիւնն
ամէնէն աւելի Յունաց ազգին վրայ կը գտնենք, որ
ի բնէ խորամանկութեան ու սոփեստականութեան
բերում մ'ունէր: Այսպէսով քրիստոնէական կրօնին
մէկ քանի վարդապետութիւնները ծուռ հասկը-
ցուեցան ու մեկնուեցան: Եկեղեցին՝ որուն պարտքն
է իրեն աւանդուած փրկարար վարդապետութիւնն
ամբողջ եւ անարատ պահել, հարկադրեցաւ այսպիսի

ախտներու մէջ միջամուխ ըլլալ, եւ մոլար վարդա-
պետութեանց դէմ ուղղափառ հաւատոյ ճշմարտու-
թիւնը յայտնի սահմանել. ասիկայ կատարուեցաւ
ընդհանուր (տիեզերական) ժողովներու մէջ։

## 32.

### ա. Դոնատեանց հերձուածը։

Դոնատեանց հերձուածոյն սկզբնապատճառն ե-
ղաւ անձնական գժտութիւն մը։ Կարքեդոնի Մեն-
սուրիոս եպիսկոպոսին մահուանէն ետքը (311), ժո-
ղովրդեան ուզելովը Կեկիլիանոս սարկաւագն անոր
յաջորդ ընտրուելով՝ Ապտունգա քաղաքին Փեղիքս
եպիսկոպոսէն ձեռնադրուեցաւ։ Բայց ոմանք Կեկի-
լիանոսի ընտրութեան դէմ էին, ուստի պատճառ բե-
րելով որ Փեղիքսի տուած ձեռնադրութիւնը վաւեր
չէ, հալածանաց ժամանակ Ս. Գիրքը մատնած ըլլա-
լուն համար, զԿեկիլիանոս մերժեցին, եւ իրեն տեղ
Մայորինոս անուամբ մէկը դրին։ Ասով Կարքեդոն
հերձուած մը ելաւ, որ քիչ մը ետքը բոլոր հռոմէա-
կան հիւսիսային Ափրիկէ տարածուեցաւ։ Հերձեալ-
ներն իրենք զիրենք Դոնատեան կը կոչէին, Դոնատոս
եպիսկոպոսին անուամբը, որ Մայորինոսի յաջորդած
եւ հերձուածոյն գլուխն անցած էր։ Դոնատեանք
իրենց հերձուածը վարդապետօրէն անով կը ջատագո-
վէին, որ կը հաստատէին թէ իրենց եկեղեցիէն զատ
ամէն եկեղեցիները Փեղիքս մատնչին հետ կրօնական
հաղորդութիւն ընելով, ճշմարիտ եկեղեցի ըլլալէն
դադրած են, որ միայն սուրբերէ կը բաղկանայ։ Իրենց
վարդապետութեան համաձայն նաեւ խորհրդոց գոր-
ծունէութիւնը կամ զօրութիւնը պաշտօնէին արժա-
նաւորութենէն կախում ունէր, անոր համար իրենց
հաղորդութենէն դուրս տրուած խորհուրդներն ան-
վաւեր կը համարէին։

Դոնատեանք՝ Կոստանդիանոս կայսերմէ խնդրե-
ցին որ իրենց դատը քննուի, որ կատարուեցաւ զանա-
զան սինհոդոսներու՝ ի մասնաւորի Արեղատայ ժողո-

վըն մէջ (314)։ Եւ թէպէտ իրենց դատին անիրաւ ըլլալը անժխտելի կերպով ցուցուեցաւ, սակայն եւ այնպէս զիրենք նորէն ուղղափառ եկեղեցւոյ ծոցն առնելու ամէն փորձերն պարապ ելան։ Նոյն իսկ Ս. Աւգոստինոսի անխոնջ աշխատութիւնները, որ իր բովանդակ հոգեկան զօրութիւններն աս գործքին նուիրեց, առանց հետեւութեան մնացին։ Դոնատեանց հերձուածէն ուրիշ մոլեգին աղանդ մը ելաւ, որուն հետեւողներն իրենք զիրենք Քրիստոսի զինուոր կը կոչէին, բայց իրենց հակառակորդներն անոնց (Circumcelliones), Շրջմոլիկ անունը կու տային։

Ասոնք մարտիրոս ըլլալու սաստիկ բաղձանքով բորբոքած, կեանքերնին բանի տեղ չէին դներ, բայց միանգամայն ուրիշէն կեանքն ալ չէին խնայեր։ Գունդ գունդ բաժնուած ամէն կողմ կը պտըտէին, այրելով սպաննելով եւ ի մասնաւորի ուղղափառ կղերին վրայ իրենց կատաղութիւնը թափելով, մինչեւ որ տէրութիւնը զինու զօրութեամբ իրենց մոլեգնութեանը վերջ տուաւ (411)։ Աս աղանդին մնացորդները մինչեւ եւթներորդ դար տեւեցին։

## 33.

### բ. Արիանոսութիւն եւ առաջին տիեզերական ժողովը։

Արիանոսութեան գլուխն եղաւ Արիոս՝ որ Լիբիա ծնաւ, եւ Աղեքսանդրիա նախ սարկաւագ ու ետքը քահանայ ձեռնադրուեցաւ։ Արիոս մտաց գերազանց ձիրքեր ունէր, ի մասնաւորի արտաքոյ կարգի նրբամիտ ու ճարտասան էր։ Կենցաղավարութեանը մէջ՝ ծանրութեան հետ մարդամօտ ու քաղցր վարմունք մը միացուցած էր, որ դժբախտութեամբ քրիստոնէական խոնարհութենէ յառաջ չէր գար։ Հանճարոյն առաւելութեանը վրայ ունեցած համոզումը, մտքին մէջ իր վրայ չափազանց յանձնապաստանութիւն մը ծնած էր, որ ետքէն խորոխ ամբարտաւանութեան դարձաւ։

Երրորդութեան վարդապետութեան վրայ ծագած մոլորութիւնները դեռ վերջացած չէին (տես

Համար 18. 1), երբ Արիոս անոնց վրայ ուրիշ մ'ալ
աւելցուց, Հօր եւ Որդւոյ էութեան մէջ զանազանու-
թիւն դնելով։ Օր մը երբ որ Աղեքսանդրիայի Աղե-
քսանդր եպիսկոպոսն Երրորդութեան վրայ ուղղափառ
վարդապետութիւնը կը մեկնէր, Արիոս իրեն դէմ ելաւ
ըսելով, որ Հայր, Որդի ու Հոգի սուրբ երեք զանազան
էութիւններ են։ Որդին՝ իբրեւ ի Հօրէ ծնած (Սաղմ.
Բ. 7. Եբրայ. Ա. 5.) ի յաւիտենից չէ, եւ ըստ հե-
տեւորդի նաեւ Հօր պէս Աստուած չէ։ Այսպէս յան-
դըգնեցաւ Աստուծոյ երկրպագելի Որդւոյն պատիւը
վար առնուլ եւ ամպարշտութեամբ ըսել թէ Որդին
Աստուծոյ արարած է, ոչնչէ յառաջ եկած եւ ըստ
սկզբնական բնութեանը փոփոխական։ Սակայն կ'ըն-
դունէր՝ թէ Որդին Աստուծոյ կրնայ անյատկապէս Աս-
տուած կոչուիլ, ինչու որ ինք զինքը կամաւ ու ազա-
տութեամբ բարւոյն որոշած է, եւ մէկալ արարածներէն
գերազանց է, որովհետեւ ինք զանոնք ստեղծած է։

Այս վարդապետութեան թիւրութիւնն անմի-
ջապէս աչքի կը զարնէ։ Արիոս միտ չդրաւ որ Աստու-
ծոյ վրայ գործածուած անուանակոչութիւնները, ա-
րարածոց նկատմամբ գործածուածներուն ըստ իմիք
նման եւ ոչ թէ նոյն կրնան մտածուիլ։ Ըստ կաթու-
ղիկէ ուղղափառ վարդապետութեան՝ հաւատոյ ճշմար-
տութիւն է, որ ինչպէս Հայր ի յաւիտենից է, նոյն-
պէս Որդին ի Հօրէ ծնած է ի յաւիտենից։ Այս ճըշ-
մարտութիւնը խորհուրդ մըն է, որուն վրայ մարդ
պէտք չէ ընդվայրաքննին զննութիւններ ընել։

Աղեքսանդր եպիսկոպոսը՝ ի սկզբան ամէն կերպ
միջոց ի գործ դրաւ, զԱրիոս շահելու եւ եկեղեցւոյ
վարդապետութիւնն իրեն ընդունել տալու, բայց ամ-
բարտաւան հերետիկոսապետը չուզեց խոնարհիլ, ին-
չու որ արդէն բազմաթիւ կուսակիցներ գտած էր։
Ուստի 320ին Աղեքսանդրիա գումարուած սինհո-
դոսի մը մէջ, ուր 100 եպիսկոպոսք ներկայ էին, Արիոս
պաշտօնէն ձգուեցաւ ու եկեղեցւոյ հաղորդութենէն
մերժուեցաւ։ Բայց ասով չարիքն աւելի եւս մեծցաւ,
ինչու որ թէպէտ Արիոս Աղեքսանդրիայէն հեռացաւ,
բայց իր վարդապետութիւնը, հոն խորունկ արմատ

ձգած ըլլալով՝ անկէ գրեթէ բոլոր Եգիպտոս տարա-
ծուեցաւ։ Արիոս արեւելք գնաց, ուր նոյնպէս իր
վարդապետութեան հետեւողներ գտաւ, որոնց մէջ
ամէնէն երեւելին է Եւսեբիոս Նիկոմեդացին, կենցա-
ղագէտ ու փառասէր մարդ մը, որուն անուամբն այս
աղանդին կուսակիցներն Եւսեբեանք ալ կոչուեցան։

Թէեւ Կոստանդիանոս՝ արիանոսութենէ եկեղե-
ցւոյ սպառնացուած ծանր վտանգը ճանչցաւ, բայց ա-
նոր վնասակարութեանը ճշդիւ չթափանցեց։ Անոր
համար իսկզբան ջանաց Աղեքսանդր եպիսկոպոսն ու
Արիոս իրարու հետ հաշտեցընելու։ Բայց ասիկայ
չյաջողելով՝ օրէ օր աճող շփոթութեանց վերջ տա-
լու համար, Սեղբեստրոս Քահանայապետին հաւա-
նութեամբը Բիւթանիայի Նիկիա քաղաքը (325) տիե-
զերական ժողով կանչեց։ Այս ժողովոյն՝ որ առաջին
տիեզերական ժողովն է, 318 եպիսկոպոսք ներկայ
գտնուեցան, որոնց 22ը արիանոս էին։ Ուղղափառ ե-
պիսկոպոսաց մէջ՝ կային գիտութեամբ ու բարեպաշ-
տութեամբ երեւելի անձինք, եւ շատերը հաւատոյ
համար քաշած տանջանքներուն սպիները դեռ իրենց
մարմնոյն վրայ կը կրէին։ Հոն էր նաեւ Աղեքսան-
դրիայի Աղեքսանդր եպիսկոպոսը, իր Աթանաս սար-
կաւագին հետ։ Սեղբեստրոս Քահանայապետը՝ Վի-
տոս եւ Վինկենտիոս երէցները, իբրեւ իր փոխանորդ-
ները հոն խաւրած էր։ Ժողովը հանդիսութեամբ բա-
ցուելէն ետքը, Կոստանդիանոս կայսրն ալ եկաւ եւ
ժողովականները միաբանութեան ու խաղաղութեան
յորդորեց, բայց բանակցութեանց մէջ չխառնուեցաւ։

Ժողովոյն սուրբ Հարքն ուղղափառ վարդապե-
տութիւնն Արիոսի ընդունել տալու պարապ տեղ աշ-
խատելէն ետեւ, իրեն հակառակ վճիռ տուին։ Որդւոյն
ընդ Հօր ըստ էութեան նոյն ըլլալը, եւ Որդւոյն ի
Հօրէ յաւիտենից ծնունդն իբրեւ հաւատոյ վարդա-
պետութիւն յայտնի քարոզուեցաւ։ Ս. Հարց այս
ժողովոյն մէջ շարադրած հաւատոյ դաւանութեան
(որ Նիկիական հանգանակ կ'ըսուի) հիմ առնուեցաւ
առաքելական հանգանակը։ Եւ որպէս զի ամէն երկ-
մտութեան առջեւն առնուի՝ ժողովականք Որդւոյն

Հօր ունեցած յարաբերութիւնը ցուցընելու համար Համագոյ (δμοούσιος, consubstantialis) բառը գործածեցին, որ արիանոսաց մոլորութեան ճիշդ ընդդիմակացը կը ցուցընէր: — Ասկէ զատ Զատկի տօնին խնդիրն ալ որոշուեցաւ (տես. 19. 1), եւ եկեղեցւոյ բարեկարգութեան համար քսան կանոն դրուեցաւ:

Ժողովոյն ներկայ եղող բոլոր եպիսկոպոսներն իրենց ստորագրութիւնը դրին, ի բաց առեալ երկու արիանոս եպիսկոպոսները, որ Արիոսի հետ Լիւրիկէ աքսորուեցան: Թէ սիւնհոդոսն եւ թէ կայսրը մոլորութեան վերնալուն, եւ բովանդակ եկեղեցւոյ մէջ խաղաղութիւնն ու միաբանութիւնը նորէն հաստատուելուն վրայ ուրախացած, Աղեքսանդրիայի հասարակութեան թուղթ գրեցին: Կոստանդիանոս իր գրած թղթին մէջ կը ծանուցանէ, որ Աստուծոյ առաջնորդութեամբը՝ ճշմարտութեան պայծառութիւնը, մոլորութեան վրայ յաղթանակեց, եւ բոլոր քրիստոնեայք նորէն բերնով ու սրտիւ մէկ հաւատք կը դաւանին, եւ վերջապէս հետեւեալ յիշատակաց արժանի խօսքերը կը գրէ. Ինչ որ 300էն աւելի եպիսկոպոսներ որոշեցին, իբրեւ Աստուծոյ բերնէն ելած վճիռ պէտք է ընդունիլ ու յարգել:

Սակայն շատ չանցաւ տեսնուեցաւ, որ արիանոս եպիսկոպոսաց մեծ մասը վախէն ստորագրած էին: Ասոնք անկէ ետքն ալ իրենց չար գործքը մոլեգին կատաղութեամբ ու մեծ յաջողութեամբ յառաջ տարին, որովհետեւ զանազան քաղաքական դիպուածոց պատճառաւ, կայսրն եկեղեցական խնդրոց չէր կրնար այնչափ միտ դնել: Արիանոսք աչքերնին գլխաւորաբար Ս. Աթանասի վրայ տնկած էին, որ Աղեքսանդր եպիսկոպոսին մահուանէն ետքը Աղեքսանդրիայի եպիսկոպոսական աթոռը յաջորդած էր, եւ զգօն իմաստութեամբ ու անվեհեր քաջասրտութեամբ՝ խօսքով ու գրով նիկիական հաւատքը կը պաշտպանէր: Արիանոսք իրեն դէմ զրպարտ ու սուտ ամբաստանութիւններ ընելով՝ կրցան Կոստանդիանոս կայսրը համոզել, որ զԱթանաս պաշտօնէն ձգէ ու Դրիէր աքսորը խաւրէ (336): Նոյն տարին Արիոս՝ կայսեր երկդիմի դաւանու-

թիւն մը տալով, աքսորքէն ետ կանչուեցաւ, եւ եկեղեցւոյ հաղորդութեան մէջ ընդունուելու համար մեծ հանդիսութեամբ Կոստանդնուպոլիս մտած ատեն, յանկարծական մահուամբ գարշելեաց մէջ մեռաւ (336)։

Երկրորդ տարին վախճանեցաւ Կոստանդիանոս կայսրն ալ, եւ ընդարձակ տէրութիւնն իր երեք որդիքը՝ Կոստանդիանոս, Կոստանդիոս եւ Կոստաս մէջերնին բաժնեցին։ Արեւմուտք՝ Կոստանդիանոս եւ Կոստաս իրենք զիրենք Նիկիայի ժողովոյն կողմն որոշեցին, եւ անոր հաւատակիցներուն պաշտպան կեցան. իսկ խռովայոյզ արեւելքի մէջ՝ Կոստանդիոս արիանոսաց խնդիրներուն մէջ մտաւ, եւ տկար ըլլալով ինք զինքն անոնց ձեռքը խաղալիկ ըրաւ, որով աղէտալի շփոթութիւնները վերջ չառին։ Արիանոսք երբեմն գաղտնի նենգութիւն գործածելով, եւ երբեմն յայտնի բռնութիւն ձեռք առնելով, իրենց չար ուսումն ամէն կողմ տարածելու կ՚աշխատէին։ Ս. Աթանաս՝ որ իր ժամանակին ամէնէն մեծ մարդը կրնայ սեպուիլ, իրենց ձեռքէն անտանելի նեղութիւններ կրեց։ Թէպէտ Կոստանդիոսի մահուանէն ետքը, Կոստաս կայսեր միջնորդութեամբը՝ որ 340էն սկսեալ բոլոր արեւմուտքի վրայ ինքնիշխան կը տիրէր, Աթանաս յաղթանակաւ իր աթոռը դարձաւ, բայց անկէ ետքը չորս անգամ ալ աթոռէն մերժուեցաւ, եւ աքսորք գնաց, մինչեւ որ վերջապէս իր կենացն ետքի օրերը կրցաւ խաղաղութիւն գտնել, եւ հանդարտութեամբ կեանքը կնքել։

Այն միջոցին՝ որ արիանոսք տէրութեան պաշտպանութեան տակ յաղթանակաւ կը ցնծային (ինչու որ Կոստասի մահուանէն ետքը (350), արիանոսաց կողմն եղող Կոստանդիոս՝ բոլոր հռոմէական պետութեան վրայ կ՚իշխէր), իրենց մէջ կրօնական հերձուած մ՚ելաւ։ Ոմանք՝ որ Արիոսի պէս կը մտածէին, կ՚ըսէին թէ Որդին Աստուծոյ աննման է Հօր, ուստի եւ Անոմէանք կամ Աննմանք (ἀνόμοιοι) կոչուեցան. ոմանք ալ ասոնց եւ ուղղափառ վարդապետութեան միջինն առնելով՝ կը հաստատէին թէ Որդին նման է Հօր. ասոնք Կիսարիանոսք ըսուեցան։ Այս հերձուածը՝ որ

358ին Անկիւրիայի ժողովոյն մէջ աւելի որոշ կերպարանք առաւ, արիանոսութեան քայքայման առաջին քայլն եղաւ։ Անկէ ետքն եկեղեցւոյ մէկ քանի վարդապետաց ջանքովը՝ կիսարիանոսաց մեծ մասը նորէն կաթողիկէ եկեղեցւոյ հետ միացաւ։ Քիչ մը ետքը Կոստանդիոսի մեռնելովը (364), արիանոսութեան զօրութիւնը բոլորովին կտրեցաւ, եւ Հռոմէական տէրութեան մէջէն կամաց կամաց անհետ եղաւ. միայն մէկ քանի նորադարձ բարբարոս ազգաց՝ այսինքն Սուեւաց, Լոնգոբարդացւոց, Գոթաց ու Վանդալաց մէջ՝ մինչեւ եւթներորդ դար մնաց։

### 34.

#### գ. Մակեդոնեանց աղանդն ու երկրորդ տիեզերական ժողովը։

Արիանոսութենէ ելաւ Մակեդոնեանց աղանդը, որուն առաջնորդն եղաւ Կոստանդնուպոլսոյ Մակեդոնիոս պատրիարքը։ Ասիկայ ուրացաւ Հոգւոյն Սրբոյ աստուածութիւնը։ Մէկ կողմանէ Արիոսի մոլորութենէն թէ Որդին արարած է, եւ մէկալ կողմանէ յայտնեալ ուղղափառ վարդապետութենէն՝ թէ Հոգին Սուրբ յՈրդւոյ ալ կ՚ելլէ, Մակեդոնիոս հետեւցուց այն մոլար վարդապետութիւնը՝ որ Հոգին Սուրբ ի ժամանակի յՈրդւոյ ելլելով, Աստուած չէ, այլ Որդւոյ արարածն է. իսկ Հոգւոյն Սրբոյ յաւիտենից ի Հօրէ ելլելը չէր ընդունէր։

Մակեդոնիոս փառասէր ու կուսակցութեան մը գլուխն անցնելու առապատիր փառաց ետեւէ էր. եւ միանգամայն անգութ ըլլալով, պաղարիւնութեամբ իր հակառակորդները կը հալածէր։ Իսկզբան ինք կիսարիանոսեան էր, եւ Կոստանդիոս կայսեր շատ սիրելի, որ իր ձեռքովը կ՚ուզէր կիսարիանոսեանները տիրապետող ընել։ Բայց Անոմեանց եւ ուղղափառաց դէմ բռնած բռնաւորական ընթացքին պատճառաւ, պատրիարքական աթոռէն ձգուեցաւ (360)։

Թէպէտ Մակեդոնի մոլար վարդապետութիւնը՝ նախ Աղեքսանդրիա ու ետքը Հռոմ գումարուած

սիւնհոդոսներու մէջ դատապարտուեցաւ, բայց չմա-րեցաւ։ Ուստի եւ Մեծագոյն չարեաց առջեւն առնե-լու համար, Թէոդոս կայսեր ու Դամասոս Քահանայա-պետին ժամանակ (381) Կոստանդնուպոլիս ժողով մը գումարուեցաւ, որ երկրորդ տիեզերական սիւնհոդոսն է։ Հարիւր յիսուն արեւելեան եպիսկոպոսք հոն ժո-ղովեցան, որոնց 36ը մակեդոնեան էին։ Ժողովոյն հայրքը Նիկիական հանգանակը հաստատեցին, եւ յաւելուած մ'ալ աւելցուցին, որուն մէջ Հոգւոյն սրբոյ աստուածութիւնը յայտնի կը դաւանին։ Այս դաւանանքը Նիկիական-կոստանդնուպոլսական հանգա-նակ կոչուեցաւ։ Ասոր մէջ Հոգւոյն Սրբոյ վրայ եղած վարդապետութիւնը հետեւեալ կերպով կը մեկնուի. Կը հաւատանք նաեւ ի Հոգին Սուրբ՝ որ կենդանարար Տէր է, ի Հօրէ կ'ելլէ, եւ Հօր ու Որդւոյ հետ կը փառաւո-րուի ու երկրպագութիւն կ'ընդունի, եւ մարգարէներէն ձեռ-քով խօսեցաւ*։

## 35.

### Դ. Պեղագեան աղանդը։

Այս աղանդին հեղինակն եղաւ Պեղագիոս Բրի-տանացի կրօնաւորը, որուն վարդապետութիւնը հե-տեւեալ գլխաւոր կէտերը կը բովանդակէ։ Ադամայ մեղքը միայն իրեն վնասեց, եւ ոչ թէ իր սերնդոցն ալ, որոնք նոյն հոգեւոր առանձնաշնորհութիւններով

* Այս սիւնհոդոսին հանգանակին մէջ Հոգւոյն սրբոյ համար կ'ըսուի. Հաւատամք ի Հոգին սուրբ . . . . , որ ի Հօրէ ելանէ. բայց ետքն աւել-ցուեցաւ, որ ի Հօրէ եւ յՈրդւոյ ելանէ։ Եւ յՈրդւոյ յաւելուածը, որով թէ Ս. Գրոց եւ թէ Ս. Հարց վարդապետութեանը մէջ հաս-տատուած, եւ արդէն 381էն յառաջ ծանօթ ուղղափառ հաւատոյ վար-դապետութիւն մը կը բացատրուէր, ամէնէն յառաջ հինգերորդ դա-րուն սկիզբը Սպանիա, յետոյ ութերորդ դարուն Գաղղիա ու Գերմա-նիա եւ վերջապէս նաեւ Հռոմ հաւատոյ հանգանակին մէջ առնուե-ցաւ։ — Իսկ աս յաւելուածին Կոստանդնուպոլսոյ (381) տիեզերական ժողովոյն հանգանակին մէջ չըլլալուն պատճառն ան էր, որ սիւնհո-դոսը միայն Մակեդոնեանց դէմ վճիռ կու տար, որոնք զՀոգին սուրբ Որդւոյ արարածը կը համարէին, ուստի եւ ժողովոյն գործքն էր սահ-մանել թէ Հոգին սուրբ համագոյ է Հօր եւ ի Հօրէ կ'ելլէ։ Յոյներէն հերձուածողներէն ոմանք աս վարդապետութիւնը փոխեցին. Հոգւոյն սրբոյ աստուածութիւնն ընդունելով՝ յՈրդւոյ ելլելն ուրացան, որուն չէ թէ միայն ընդհանուր ուղղափառ վարդապետութիւնն՝ այլ նաեւ իրենց հարքն ընդդէմ կ'ելլեն։

կը ծնանին, զորոնք Ադամ իր անկմանէն յառաջ ու-
նէր. ուստի եւ սկզբնական մեղք չկայ։ Մահը մեղաց
պատիժը չէ, հապա մարդկային բնութեան էական
մէկ պարագը։ — Յաւիտենական երանութեան հա-
նելու համար մարդ ինք իրեն բաւական է. պարզապէս
իր բնական կարողութեամբը՝ առանց ներքին գերբնա-
կան շնորհաց օժանդակութեան, մարդ կրնայ բարին
գործել եւ չարէն խորշիլ։ — Մարդուն ազատ կամքը
բարւոյն եւ չարին մէջ հաւասարապէս կեցած է. չա-
րին աւելի հակիլը՝ սուտ սկզբունքներուն եւ գէշ օրի-
նակներուն ազդեցութենէն է։ Անոր համար ալ մար-
դուն վերստին նորոգութեանը համար՝ թէեւ արտաքին
միջոց մը օգտակար է, բայց հարկաւոր չէ։ Այս միջոցն
Աստուած մարդուն պատրաստած է յայտնութեամբ,
զորն որ նախ Հին Կտակարանին մէջ հաղորդած ու
ետքէն Նոր Կտակարանին մէջ ի գլուխ հանած է Քրիս-
տոսի ձեռքով, որ բարձրագոյն օրինակաւը՝ մարդկային
կամքը զօրացուց իր վարդապետութիւնը գործադրե-
լու։ Ասկէ կը տեսնուի, որ Պեղագիոսի մոլորութիւնը
քրիստոնէութեան աս կամ ան վարդապետութեանը
հակառակ չէր, հապա ընդհանրապէս քրիստոնէու-
թեան դէմ ուղղուած էր։

Պեղագիոս 409ին Կեղեստինոս բարեկամին հետ
Հռոմ եկաւ, եւ հոն իր վարդապետութիւնն սկսա
սորվեցընել։ Ինք բարեպաշտ ու հմուտ մարդ մըն էր,
բայց չափազանց եռանդը՝ միջին չէր ճանչնար։ Սաս-
տիկ նախանձաւորութեամբ լեցուած անոնց դէմ,
որոնք բարւոյն մէջ ունեցած հեղգութիւննին ներքին
անկարողութեամբ ամբաստիր կ'ուզէին ընել, մարդուն
բնական ու բարոյական կարողութիւնը չափէն աւելի
բարձրացուց, որով վերյիշեալ մոլորութեանց մէջ
ինկաւ։ Երբոր Ալարիկոս Հռոմ առաւ, Պեղագիոս
Ափրիկէ ու անկէ Պաղեստին փախաւ։ Ս. Աւգոստինոս
20 տարի իրեն նախանձընդդէմ ախոյեանն եղաւ։
Կարքեդոն գումարուած ժողովի մը մէջ (416), ուր
60էն աւելի եպիսկոպոսք կային, Պեղագիոսի մոլո-
րութիւնը դատապարտուեցաւ, եւ ինքը Կեղեստինոս
բարեկամին հետ եկեղեցւոյ հաղորդութենէն մեր-

*ժուեցաւ։ Նոյն վճիռը տուաւ Միղեւի ժողովն ալ, որուն ներկայ գտնուեցաւ նաեւ Ս. Աւգոստինոս։ Այս երկու ժողովներուն արձանագրութիւններն Իննովկենտիոս Ա. Քահանայապետին խաւրուեցան, որպէս զի ելած որոշումները՝ Հռոմայ Գահին հեղինակութեամբն աւելի եւս զօրութիւն ստանան։ Քահանայապետն երկու ժողովներուն վճիռները հաստատեց, եւ Ափրիկէի եպիսկոպոսները գովեց, որ ըստ պատշաճի Հռոմայ աթոռոյն դիմեցին։ Քահանայապետն Ափրիկէի եպիսկոպոսաց մտաց համաձայն խնդիրն որոշած ըլլալով, Ս. Աւգոստինոս այս միջոցիս ըսաւ այն նշանաւոր խօսքը թէ. Հռոմ խօսեցաւ, դատը լմնցաւ։ Անկէ ետքը պատմութիւնը Պեղագիոսի վրայ կը լռէ։*

*Պեղագեան աղանդէն ուրիշ նոր մոլորութիւն մ'ելաւ, որն որ Կիսապեղագեան աղանդ կոչուեցաւ, ինչու որ անոր ջատագովները Պեղագիոսի մոլորութեան եւ ուղղափառ վարդապետութեան միջինը կը պաշտպանէին։ Հարաւային Գաղղիայի՝ մանաւանդ Մարսիլիայի վանականներն ու քահանաները, Ս. Աւգոստինոսի մէկ քանի գրուածքներն աղէկ չհասկընալով, կը վարդապետէին որ թէպէտ բարի գործելու համար ներքին գերբնական շնորհք հարկաւոր է, բայց բարւոյն սկզբնաւորութիւնը մարդուն ազատ գործունէութենէն միայն յառաջ կու գայ. նոյնպէս վախճանական յարատեւութիւնն ի բարին՝ մարդուն արդիւնքը կու գային։ Սկզբնական մեղքն ուղղափառ եկեղեցւոյ հետ կ'ընդունէին, եւ կը հաստատէին թէ մարդ չէկրնար ինք իր զօրութեամբն ոչ սկզբնական եւ ոչ ներգործական մեղքէն ազատ մնալ։ Այս մոլորութիւնը՝ որ նոյնպէս եկեղեցիէն դատապարտուեցաւ, մինչեւ վեցերորդ դար տեւեց։ — Պեղագեան մոլորութիւնը՝ մանաւոր աղանդ մը չկազմեց. ինչու որ միայն մէկ քանի գիտնականք անոր պաշտպան ելան, եւ ընդհանրապէս հասարակ ժողովրդեան մէջ մուտք չգտաւ։*

## 36.

### Ե. Նեստորականութիւն ու Երրորդ տիեզերական ժողով։

Արեւմուտք՝ պեղագեան մոլորութիւնն անհետ ըլլալու վրայ էր, երբոր արեւելք Քրիստոսի անձին վրայ մոլորութեանց շարք մը սկսաւ երեւան ելլել, որոնց իբրեւ յառաջընթաց կրնանք սեպել Ապողինար Լաւոդիկէ քաղքին եպիսկոպոսը։ Ասիկայ արիանոսութեան դէմ կռուած եւ Քրիստոսի անձին միութիւնն ու աստուածութիւնը պաշտպանած ատեն, ուրիշ մոլորութեան մը մէջ ինկաւ, զլանալով Քրիստոսի՝ մարդկութեան էական մասը, այսինքն բանաւոր հոգին, որուն հետ ըստ իր կարծեացը մեղանչականութիւնն անհրաժեշտ կապուած է։ Ապողինարի այս մոլորութիւնն իրեն անուանը խնայելով՝ նախ Աղեքսանդրիա (362), ետքը Հռոմ գումարուած սինհոդոսներու եւ վերջապէս Կոստանդնուպոլսոյ առաջին տիեզերական ժողովոյն մէջ (381) դատապարտուեցաւ, եւ քիչ մ'ետքը դրեթէ անհետ եղաւ. բայց անոր սերմէն ուրիշ մոլորութիւններ բուսան։

Նեստոր Կոստանդնուպոլսոյ պատրիարքն՝ ուրացաւ ի Քրիստոս մարդկային ու աստուածային բնութեանց ի մի անձն (այսինքն անձնաւորական) անճառ միութիւնը, եւ կ'ըսէր թէ Քրիստոս երկու անձ ունի։ Նեստոր իր այս մոլորութիւնը մեկնած ատեն՝ կը վարդապետէր թէ Բանը՝ այսինքն աստուածութեան երկրորդ անձը, Քրիստոս մարդուն մէջ իբրեւ ի տաճարի բնակելով՝ իրեն կ'առաջնորդէր, եւ աստուածային անձը՝ մարդկային անձին իբրեւ գործիք կը գործածէր։ Նեստոր կ'ըսէր նաեւ թէ Քրիստոսի մօրը՝ Ս. Կոյս Մարեմայ, պէտք չէ սովորական Աստուածածին (θεοτόχος) վերադիր անունը տալ, ինչու որ միայն զՔրիստոս իբրեւ մարդ ծնաւ, որուն մէջ ետքէն աստուածութեան երկրորդ անձը բնակեցաւ։

Նեստոր սաստիկ ամբարտաւան էր, բայց խորամանկութեամբ զանիկայ կը ծածկէր։ Քաշուած ու խիստ կենցաղավարութեամբը, ժողովրդեան ամէն կարգի

անձանց համարումն ու վստահութիւնը վաստըկած էր, մանաւանդ որ նուիրական ճարտարախօսութեան զարմանալի ձիրք մ'ալ ունէր։ Թէեւ իր մոլորութիւնն սկզբան ժողովրդեան մէջ մեծ դժկամակութիւն պատճառեց, սակայն եւ այնպէս կցաւ անոր հետեւողներ գտնել։ Իր մոլար վարդապետութիւնը՝ մինչեւ Եգիպտոսի անապատները թափանցեց։ Հոս Նեստորի մոլորութեան դէմ ելաւ Աղեքսանդրիոյ պատրիարքը Ս. Կիւրեղ, որ այս նորայայտ կռուին մէջ՝ եկեղեցւոյ օգուտն նոյն արիութեամբ եւ յաջողութեամբ պաշտպանեց, ինչպէս յառաջագոյն Ս. Աթանաս եւ Ս. Աւգոստինոս Արիանոսաց ու Պելագեանց դէմ ըրած էին։ Կիւրեղ նախ շրջաբերական թղթով մը իր թեմին վանականներուն այս մոլորութենէն զգուշացուց, ետքը կայսեր ու կայսրուհւոյն ի Քրիստոս ուղղափառ հաւատքին վրայ հրահանգիչ թղթեր գրեց։ Նեստորի հետ ալ թղթակցելու սկսաւ, բայց տակաւ զգօնանալու տեղ աւելի եւս զայրացաւ։ Աս հերձուածոյն լուրը Հռոմ հասնելով, Կելեստինոս Քահանայապետը Ս. Կիւրղի յանձնեց, որ անոր վրայ իրեն ճիշդ ու մանրամասն տեղեկութիւն տայ, զորն որ Կիւրեղ կատարեց։ Բայց նոյն միջոցին Նեստոր անձամբ Հռոմ երկու թուղթ գրեց, եւ իր քարոզներէն մէկ քանին Քահանայապետին խաւրեց, որպէս զի իր վրայէն նորութեան կասկածը վերցնէ եւ Քահանայապետն իր կողմը շահի։ Այս ամէն գրուածքները Հռոմ (430) գումարուած ժողովի մ'առջեւը հանուեցան, ուր Կիւրղի վարդապետութիւնն իբրեւ ուղղափառական ճանչցուեցաւ, իսկ Նեստորինը դատապարտուեցաւ։ Ժողովը Նեստորի ալ նզովք սպառնաց՝ եթէ Քահանայապետին թուղթը ձեռքը հասնելէն տասն օր ետքը չի զղջանար։ Ս. Կիւրեղ՝ որուն յանձնուած էր այս որոշման ծանուցումն ու գործադրութիւնը, Նեստորի 12 նզովքով նախադասութիւն խաւրեց, որոնք ի Քրիստոս երկու բնութեանց վրայ եկեղեցւոյ վարդապետութիւնն որոշ-կը բացատրէին, եւ իրմէ խնդրեց որ զանոնք ընդունի։ Նեստոր չէ թէ միայն զանոնք չընդունեցաւ, այլ նաեւ 12 հակառակ

նախադասութիւններ չմնաց։ Այսպէսով արեւելք եկեղեցական խռովութիւններն երթալով շփոթ ու պղտոր կերպարանք մը սկսան առնուլ, այնպէս որ գործունեայ դարման մը միայն տիեզերական ժողովէ կրնար յուսացուիլ։ Ուստի Կեղեստինոս Քահանայապետին հաւանութեամբն եւ Թէոդոս Բ. կայսեր հրամանաւն Եփեսոսի ժողովը գումարուեցաւ (431), որ ըստ կարգի երրորդ տիեզերական սինհոդոսն է։ Այս ժողովոյս 200էն աւելի եպիսկոպոսք ներկայ գտնուեցան, եւ Ս. Կիւրեղ Քահանայապետին անուամբը գահերեց նստաւ։ Ժողովոյն Ս. Հարքը Նեստորի մոլորութիւնը դատապարտեցին, եւ ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութիւնը Քրիստոսի մի աստուածային անձին վրայօք միաբան հաստատեցին, եւ զՍ. Կոյսն Աստուածածին խոստովանեցան։ Նեստոր՝ որ նոյն միջոցին Եփեսոս կը գտնուէր, եւ երեք անգամ հրաւէր ընդունելէն ետքն ալ յանձն չառաւ ժողով գալ, իբրեւ յամառ հերետիկոս պատրիարքական պատուէն ձգուեցաւ եւ եկեղեցւոյ հաղորդութենէն մերժուեցաւ։ Քանի մը անհանգոյ դէպքերէ ետեւ, վերջապէս Թէոդոս Բ. կայսրն ալ ժողովոյն որոշումներն ընդունեցաւ, եւ զՆեստոր Լիբէա աքսորեց՝ ուր 440ին մեռաւ. բայց իր մոլորութիւնը մահուանէն ետքն ալ մնաց։

## 37.

### Գ. Միաբնեայց աղանդն ու չորրորդ տիեզերական ժողովը։

Եւտիքէս՝ Կոստանդնուպոլսոյ մօտ վանքի մ'առաջնորդը, Նեստորի մոլորութեան դէմ կռուած ատեն, անոր ներհակ մոլորութեան մը մէջ ինկաւ։ Նեստոր՝ Քրիստոսի երկու բնութիւն ունենալը հիմ առնելով, ի Քրիստոս երկու անձ կը դնէր. իսկ Եւտիքէս՝ Քրիստոսի մէկ անձ ունենալը հիմ դնելով, մէկ բնութիւն սկսաւ պաշտպանել, եւ կ'ըսէր թէ՝ ի Քրիստոս երկու բնութիւնները խառնուած ու իրարու հետ նոյնացած են, այնպէս որ մարդկութիւններն ետքը՝ մէկ բնութեան միայն կը կազմացնեն։ Ինչպէս որ, կ'ըսէր, Ովկիանոսի

մէջ ինկած ջրոյ կաթիլ մը, ծովուն աւերացը հետ կը խառնուի, նոյնպէս աստուածային բնութիւնը՝ մարդկային բնութիւնն իր մէջն ընկղմած է։

Աս մոլորութիւնը՝ որ վարդապետողին անուամբն Եւտիքականութիւն, իսկ վարդապետութեան նայելով՝ Միաբնակաց աղանդ կը կոչուի, Քրիստոսի փրկագործութիւնը բոլորովին կ՚ոչնչացընէ։ Այս վարդապետութեան համաձայն, Քրիստոս կը դադրի ճշմարիտ Աստուած ու ճշմարիտ մարդ ըլլալէն. աստուածային բնութիւն չունի, որովհետեւ անոր հետ մարդկային բնութիւնը խառնուած է. մարդկային բնութիւն ալ չունի, ինչու որ անոր հետ աստուածային բնութիւնը չփոթած է։ Արդ թէ որ Քրիստոս ճշմարիտ մարդ ու ճշմարիտ Աստուած չէ, ան ատեն Աստուծոյ եւ մարդկան մէջ միջնորդ ըլլալէն դադրած է, ինչու որ իբրեւ մարդ՝ կրնար հնազանդիլ ու չարչարուիլ, իսկ իբրեւ Աստուած՝ մարդկային բնութեան գործողութեանցն անսահման արժէք տալ։ Այսպէս աս վարդապետութիւնը՝ Քրիստոսի սքանչելի օրինակին ազդեցութիւնը, եւ չարչարանաց, մահուան ու յարութեան ճշմարտութիւնը կ՚ոչնչացընէ։

Եւտիքէս խոր ծերութեան հասակի մէջ այս մոլորութիւնն սկսաւ քարոզել։ Իր յառաջուան կեանքն անարատ էր, բայց մոլորութեան ճամբուն մէջ՝ ուր Նեստորի դէմ ունեցած սաստիկ եռանդը զինքը մղեց, տեսնուեցաւ որ իր առաքինութիւնը հաստատուն հիմ չունի եղեր։ Կրթութեան ու մտաց սրութեան պակասութենէն՝ անտարակոյս չիմացաւ իր վարդապետութենէն յառաջ գալու հետեւութիւնները, բայց խիստ յամառութիւնը՝ որով անոր յարեցաւ, զինքը հերետիկոսապետ մ՚ըրաւ։ Երբոր բարեկամական ազդարարութիւններն օգուտ չըրին, Փլաւիանոս Կոստանդնուպոլսոյ հայրապետը՝ զինքը ժողով մը առջեւ հանեց (448)։ Ժողովը՝ Եւտիքէսի վարդապետութիւնը դատապարտեց. եւ որովհետեւ ինք յանձն չառաւ զանիկայ ետ կանչել, վանահայրութեան պատուէն ու վանաց առաջնորդութենէն վար առնուեցաւ։ Եւտիքէս ասոր վրայ սաստիկ դառնացած՝ Լեւոն Ա.

Քահանայապետին դիմեց, զինքը սիւնհոդոսին դէմ՝ իր կողմը շահելու համար. բայց պարապ տեղ: Լեւոն Քահանայապետն ու Փլաւիանոս գրած թղթի մը մէջ՝ եղած որոշումները հաստատեց: Ան ատեն Եւտիքէս Թէոդոս կայսեր՝ որուն շատ սիրելի էր, աղաչեց որ իր խնդիրը նորէն քննուի, եւ վերջապէս կրցաւ յաջողցընել որ աս վախճանիս համար 449ին Եփեսոս ժողով մը գումարուի, որ Աւազակային ժողով (Latrocinium Ephesinum) կոչուեցաւ: Աղեքսանդրիայի պատրիարքը Դիոսկորոս, որ կատաղի եւ բռնաւոր մարդ մըն էր, ժողովոյն գահերէց նստաւ: Դիոսկորոս երբոր տեսաւ որ քաղցրութեամբ ուզածը չի կրնար յառաջ տանիլ, բռնի ի շնորհս Եւտիքէսի վճիռ տուաւ: Եւտիքէս արդարացաւ, իսկ Փլաւիանոս ու իրեն համախոհ եպիսկոպոսներն իրենց պաշտօնէն ձգուեցան: Դիոսկորոս ասով ալ գոհ չըլլալով՝ զՓլաւիանոս այնպէս անողորմաբար ծեծել տուաւ, որ սուրբ հայրապետն երեք օրէն վախճանեցաւ: Թէոդոս այս ժողովոյ վճիռներն ընդունեցաւ, բայց քիչ մը ետքն ինք մեռնելով, յաջորդը Մարկիանոս Լեւոն Քահանայապետին հաւանութեամբը, որ Եփեսոսի աւազակական ժողովը մերժած էր, Քաղկեդոն (451ին) ընդհանուր ժողով մը գումարեց, որ չորրորդ տիեզերական սիւնհոդոսն է:

Այս ժողովոյս 520 եպիսկոպոս ներկայ գտնուեցան, եւ Քահանայապետին հրեշտակները գահերէց նստան: Նախ եւ յառաջ Լեւոն Քահանայապետին Փլաւիանոսի գրած վերոյիշեալ օծութեամբ լի թուղթը կարդացուեցաւ, որուն մէջ Քրիստոսի երկու բնութեանց վրայ եկեղեցւոյ ունեցած վարդապետութիւն այնպիսի զարմանալի պայծառութեամբ ու ճշդութեամբ մեկնուած էր, որ ժողովականք իրենց կատարեալ հաւանութիւնն այս խօսքերով յայտնեցին. Պետրոս՝ Լեւոնի բերնովը խօսեցաւ: Աս ժողովոյս մէջ Կոստանդնուպոլսոյ ժողովոյն որոշումները հաստատուեցան. ասկէ զատ հաւատոյ դաւանութեան ձեւ մ՚ալ յօրինուեցաւ, որ կը դաւանէր թէ. Ի Քրիստոս երկու՝ այսինքն աստուածային ու մարդկային բնութիւնները, առանց շփոթութեան, առանց փոփոխութեան, առանց բա-

ձուլման եւ առանց անջատման, մէկ անձի վրայ միաւորած են, բայց առանց ասով նաեւ բնութեանց տարբերութիւնը վերնալու։

Նեստորէս վանահայրութեան պաշտօնէն ձգուելովʼ աքսոր խրկուեցաւ, եւ շատ չանցաւ ինք մոռացութեան անդունդը գահավիժեցաւ, բայց մոլորութիւնն եւ անունը իր հետեւողներուն մէջ կենդանի մնաց։ Նեստորականութիւնը կամ Միաբնեայց աղանդըʼ արեւելք շատ տարածուեցաւ, մանաւորաբար մուտք գտաւ Ասորիք, Միջագետք, Հայաստան, Եգիպտոս ու Հաբեշստան։

Բայց Քաղկեդոնի ժողովքով եկեղեցին խաղաղութիւն չգտաւ։ Նեստորականք ամէն կողմ ձայն հանելովʼ թէ Նիկիական հաւատքը մոռնուեցաւ եւ Քաղկեդոնի Ս. Ժողովը Նեստորականաց մոլորութիւնն ընդունեցաւ, բովանդակ Հռոմէական տէրութեան մէջ նոյն սուրբ ժողովոյն դէմ մեծ հակառակութիւն հանեցին. ամէն աղէտալի միամներ ու խռովութիւններ պատճառեցան, որոնք բոլոր արեւելք գրեթէ երկու հարիւր տարի տեւեցին։ Աս խռովութիւնները հանդարտեցընելու եւ զանազան կողմնակցութիւնները միաբանելու համար, Յունաց կայսրներն անխոհեմութեամբ կրօնական խնդրոց միջամուխ եղան, որով չփոթութիւնն աւելի եւս մեծցաւ։ Զենոն կայսրը Կոստանդնուպոլսոյ Ակակիոս պատրիարքին խորհրդովը (482) Հենոտիկոն (ἑνωτικόν) ըսուած միաբանութեան թուղթ մը հանեց, որուն մէջ կայսրը Նիկիական հանգանակը Կոստանդնուպոլսոյ ժողովոյն յաւելուածովն իբրեւ հաւատոյ կանոն առաջարկելէն ետեւ, Մի բնութեան վրայ յիշատակութիւն չʼըներ. իսկ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն վրայ անորոշ կերպով կը խօսի։ Սակայն այս թուղթն ալ օգուտ մը չունեցաւ, ինչու որ ո՛չ ուղղափառք եւ ո՛չ միաբնեայ Նեստորականք զանիկայ ընդունեցան, որով եկեղեցին դարձեալ չկրցաւ խաղաղութիւն գտնել. մանաւանդ որ Նեստորականաց մէջ հերձուածներ* ու գժտութիւններ ելած էին,

* Ասոնց մէջ ամենէն նշանաւորներն են Սեւերիանիանք ու Յուլիանիանք։ Առաջիններըʼ որ իրենց անունն առած են Անտիոքի Սեւերոս պա-

ի Մամասուրի երեքարբեան եղանակին վրայ ոմանց՝ Որ խաչեցար վասն մեր յաւելուածն ընելուն համար։ — Եւտիքականաց շփոթութիւնները դեռ չդադրած, ելաւ Երէց Գլխոց ըսուած կռիւը, որուն պատճառաւ գումարուեցաւ Հինգերորդ տիեզերական (երկրորդ կոստանդնուպոլսոյ) ժողովը (553), Վիգիլիոս Քահանայապետին ատեն Յուստինիանոս կայսեր ձեռքով։ Այս ժողովը դատապարտեց Նեստորական կարծիք ունեցող երեք մոլորեալներուն (Թէոդորոս Մոպսուեստացւոյն, Թէոդորետոսի ու Իբասայ) գրուածքները, որոնք այն երեք գլուխները կը կացուցանէին։

## 38.

### Է. Միակամեայց աղանդն ու վեցերորդ տիեզերական ժողովը։

Քրիստոսի մարդեղութեան խորհուրդը քննելու եւ իմանալու հետաքրքիր բերումը, նոր մոլորութիւն մ'ալ յառաջ բերաւ։ Նեստորականք՝ ի Քրիստոս երկու բնութիւնները բաժնելու համար, երկու անձ կը դնէին. ասոր հակառակ Եւտիքականք՝ անձին միութիւնն ի Քրիստոս հաստատուն պահելու համար, իրեն աստուածային ու մարդկային բնութիւններն իրարու հետ կը շփոթէին։ Նեստորի դէմ եկեղեցին սահմանեց, որ Քրիստոս մի միայն անձ ունի. իսկ Եւտիքեսի դէմ վճիռ տուաւ՝ որ Քրիստոս երկու բնութիւն ունի։ Արդ եկեղեցւոյ այս վարդապետութիւնն Եւտիքականաց դիւրաւ ընդունել տալու համար, ոմանք սկսան ըսել որ, թէ եւ ի Քրիստոս երկու բնութիւնները տարբեր են, բայց անով իրարու հետ կը միանան՝ որ երկուքը մի միայն կամք ունին, որով միանգամայն

արիաքէն, կը վարդապետէին թէ Քրիստոսի աստուածային բնութիւնը՝ մարդկային բնութեան հետ խառնուած է, եւ կ'ըսէին թէ Քրիստոսի մարմինն ապականացու է, որ պատճառաւ Ապականապաշտք (Corruptiocolæ) ըսուեցան։ Իսկ Յուլիանեանք, որոնց գլուխն էր Յուլիանոս Աղիկառնացի եպիսկոպոսը, կը վարդապետէին թէ աստուածութիւնը մարդկային բնութեան մէջ ընկղմած ըլլալով, Քրիստոսի մարմնոյ բնական կիրք ու ապականութեան տակ ինկած չէր, ուստի եւ զանոնք հարկաւ չէ կրած, հապա միայն մարդկային աչքին փրկութեան համար առ աչք (Երեւութականք, Phantasiastæ)։

Քրիստոսի մէկ անձ ունենալը կը հաստատուի։ Որով-
հետեւ, կ՚ըսէին, անձնաւորութիւնք կամաց վրայ ըլ-
լալով՝ ի Քրիստոս երկու կամք դնելը, կրկին անձնա-
ւորութիւն յառաջ կը բերէ։ Այս մոլորութեան պաշտ-
պանները Միակամեայք ըսուեցան։

Միակամեայց վարդապետութեան մոլար ու ան-
հիմն ըլլալը դիւրաւ կրնայ ցուցուիլ։ Ի Քրիստոս եր-
կու բնութիւնք կան, որոնց իւրաքանչիւրն ըստ իր
սեփհական յատկութեանը կը գործէ։ Մարդկային
բնութիւնը՝ մարդկային ճանաչում եւ կամք յառաջ կը
բերէ, իսկ աստուածային բնութիւնը՝ աստուածային
ճանաչում ու կամք. անոր համար ի Քրիստոս կրկին
գործողութեան եղանակ կայ, այսինքն աստուածային
ու մարդկային։ — Ըստ ինքեան Միակամեայց աղանդն
ուրիշ բան չէր, բայց եթէ Նեստորականութեան նոր
մէկ տեսակը։ Քրիստոս իբրեւ Աստուած ու մարդ
երկու բնական՝ այսինքն աստուածային ու մարդկային
կամք ունի։ Իր գործողութեանցը մէջ սկիզբն ու ա-
ռաջնորդն է աստուածային կամքը, իսկ հետեւողն եւ
ստորակարգեալը մարդկային կամքը։ Այս մարդկային
ու աստուածային բնութեանց, կամաց եւ գործոց ան-
բաժին բայց անշփոթ միաւորութիւնը, որով մարդ-
կային կամքը աստուածային կամաց կը հետեւի, չի
ներեր որ ի Քրիստոս կրկին անձնաւորութիւն ըլլայ։

Այս մոլորութեան ծագումը Է. դարուն սկիզբը
կ՚իյնայ։ Թէ ով հնարած է որոշ չի գիտցուիր, միայն
սա ստոյգ է որ Սարգիս Կոստանդնուպոլսոյ հայրապետն
անոր յարելէն ետեւ, Հերակլ կայսրն ու Աղեքսան-
դրիայի Կիւրոս պատրիարքն իր կողմը շահելով, դար-
ձեալ ցաւալի շփոթութիւն մ՚ելլելուն պատճառ
եղաւ։

Մարտինոս Քահանայապետն օրէ օր աճող չա-
րեաց առջեւն առնելու համար, 649ին Հռոմ ժողով
գումարեց, ուր որ Միակամեայց վարդապետութիւնը
նզովքով դատապարտեց։ Քահանայապետին՝ ճշմար-
տութեան համար ցուցուցած այս եռանդը, իրեն
դառն հալածանքներու եւ մահուան պատճառ եղաւ.
654ին աքսորանաց մէջ մեռաւ։

Քանի մը տարի ետքը (680ին) Կոստանդին Բոկոնատոս կայսրն արեւելք խաղաղութիւնը դարձեալ հաստատելու համար, Կոստանդնուպոլիս տիեզերական ժողով գումարեց, որ վեցերորդ տիեզերական (երրորդ Կոստանդնուպոլսոյ) անունով է, եւ Ագաթոն Քահանայապետին աղաչեց որ իր հրեշտակներն ալ խրկէ։ Աս ժողովին մէջ նախընթաց հինգ ընդհանուր ժողովները հաստատուեցան, եւ եկեղեցւոյ վարդապետութիւնը Միակամեայց դէմ հետեւեալ խօսքերով սահմանուեցաւ. Մէկ Տէր Յիսուս Քրիստոս կը խոստովանինք, որ կատարեալ Աստուած ու կատարեալ մարդ է. նոյնպէս կը դաւանինք, որ ի Քրիստոս երկու բնութեանց համաձայն՝ երկու բնական կամեր ու երկու բնական գործողութիւններ (գործելու կերպ) կան, որոնք ըստ Հարց վարդապետութեանն անբաժին, անանջատ ու անխառն են։ Բայց երկու կամք ընդունելով՝ երկու իրարու հակառակ կամք չենք իմանար, այլ մէկ աստուածային կամք՝ որ առաջնորդող է, եւ մէկ մարդկային կամք որ հետեւող է*։ — Անկէ ետքը Միակամեայց աղանդն երթալով ինկաւ ու քայքայեցաւ, ամէնէն աւելի երկայն ատեն Ասորիք մնաց։

Միակամեայց մոլորութեամբ՝ Քրիստոսի մարդեղութեան խորհրդոյն վրայ հարիւրաւոր տարիներ տեւող վէճերը դադրեցան։ Որչափ որ աս վէճերը՝ ժամանակին կրօնական խնդրոց ունեցած հետաքրքիր մասնակցութեանը ցոյց են, սակայն մէկ կողմանէ աս վէճերուն երկար տեւողութիւնը եւ մէկալ կողմանէ թեթեւութիւնն որով կ'ըլլուէին, քրիստոնէից հաւատացեալ ու բարոյական զգածումը խախտելու պատճառ եղաւ, եւ արեւելեան ու արեւմտեան եկեղեցեաց ապագայ բաժանման ճամբայ բացաւ։

* Վեցերորդ տիեզերական ժողովոյն դէմ ալ հակառակութիւն ելաւ, որ պատճառաւ երկրորդ Տրուլլեան ժողովը (692) անոր վճիռները դարձեալ հաստատեց։ Եւ որովհետեւ Տրուլլեան ժողովը՝ հինգերորդ ու վեցերորդ ընդհանուր ժողովներուն հաւասար վճիռներուն վրայ եկեղեցւոյ սահմանադրութեան ու հրահանգաց վերաբերեալ 102 կանոն ալ աւելցուց, անոր համար Հինգ-Վեցեան ժողով ալ կ'անուանուի։ Աս կանոններէն մէկ քանին, ի մասնաւորի Զ ու ԺԳ (քահանայից ամուսնութեան վրայ) ԼԶ (Կոստանդնուպոլսոյ պատրիարքին առաջնութեան վրայ) ԾԵ (Շաբաթն օրը պահելու վրայ) Յունաց եկեղեցւոյն՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ ունեցած ապագայ յարաբերութեանցը վրայ մեծ ազդեցութիւն ունեցան։

## 39.

### Ը. Պատկերամարտից մոլորութիւնն ու եօթներորդ տիեզերական ժողովը:

Յունաց կայսրներուն իրենց ժամանակին կրօնական խնդիրներուն մէջ մտնելով անուն վաստրկելու ջանքը, երբեք այնպէս չարաչար կերպով չյայտնուեցաւ, ինչպէս Պատկերամարտից խնդրոյն մէջ, որ Լեւոն Իսաւրացւոյն ժամանակ սկսաւ (726): Աս մարդը, որ հասարակ զինուորութենէ գահը բարձրացած էր, միտքը դրաւ որ Պատկերաց յարգութիւնը կռապաշտութիւն է, եւ երկրպագութեան մէջէն պէտք է ջնջել: Անոր համար 726ին հրովարտակով պատուիրեց որ պատկերները ջնջուին: Կոստանդնուպոլսոյ Գերմանոս պատրիարքին ազդարարութեանցն ու աղաչանացը միտ չդնելով, հրամայեց որ եկեղեցիներէն պատկերները վերցընեն, արձանները կործանեն եւ պատի վրայ եղած նկարները քերեն: Քաղաքացիք ստիպուեցան իրենց պատկերները հրապարակաւ այրել. ով որ հրամանը չէր կատարեր կամ կը պահուէր կամ խեղանդամ կ'ըլլար: Կայսրն իր հրովարտակը Հռոմ ալ խաւրեց, բայց Հռոմայեցիք չէ թէ միայն չհնազանդեցան, այլ նաեւ կայսեր պատկերներն անարգելով ոտքի տակ առին: Նոյն անհաճութիւնը պատճառեց հրովարտակը՝ Իտալիոյ ամէն քաղաքներուն, ուր դեռ կայսերական իշխանութեան ստուեր մը մնացած էր: Գրիգոր Բ. Քահանայապետը բովանդակ ազդեցութիւնն ի գործ դրաւ, դառնացած սիրտերը հանդարտեցընելու եւ արիւնահեղ պատերազմի մը առջեւն առնելու համար: Նոյն միջոցին կայսրը մեռնելով, որդին Կոստանդին Կոպրոնիմոս (741—775) հօրն սկսած գործքն աւելի կատաղութեամբ յառաջ տարաւ:

Բազմախումբ ժողով մը՝ զոր կայսրը 754ին Կոստանդնուպոլիս գումարել տուաւ, իր ամպարիշտ գործքին ջատագով ու պաշտպան եղաւ: Պատկերաց յարգութեան կողմն ըլլողներուն՝ գլխաւորաբար վանականաց դէմ, որոնք ժողովրդեան վրայ մեծ ազդե-

ցութիւն ունէին, խիստ հալածանք մ՚ելաւ: Կոստանդին Կոպրոնիմոսին յաջորդեց իր որդին Լեւոն Դ., որն որ պատկերաց յարգութեան դէմ տրուած օրէնքները կանգուն պահեց: Սակայն ալ հինգ տարի կառավարելէն ետեւ մեռաւ, եւ Կոստանդին Պորփիւրոգենէս իրեն աթոռը ժառանգեց: Բայց որովհետեւ ինքը դեռ անչափահաս էր, անոր համար Իրենէ մայրը տէրութիւնը կը կառավարէր: Սակայն ամէն շփոթութեանց վերջ տալու համար՝ Ադրիանոս Քահանայապետէն խնդրեց, որ ժողով մը գումարէ: Քահանայապետը կայսրուհւոյն առաջարկութեանը հաւանելով, ժողովը գումարուեցաւ Նիկիա (787 ին), եւ է Եօթներորդ տիեզերական ժողովը: Քահանայապետն իր հրեշտակները հոն խաւրեց, 245 եպիսկոպոս ու աբբայք եւ 132 վանականք ներկայ էին: Աստ մէջ հաստատուեցաւ՝ որ պատկերաց յարգութիւն ընելը թոյլ տուեալ է, մեկնելով միանգամայն որ աս յարգութիւնը չէ թէ պատկերաց նիւթոյն, այլ անոնց միջնորդութեամբ մեզի ներկայացուած անձինքներուն կ'ընծայուի: Նոյնպէս զանազանութիւն դրուեցաւ յարգութեան (προσκύνησις) ու երկրպագութեան (λατρεία) մէջ, որն որ միայն Աստուծոյ կը պատշաճի: Սակայն եւ այնպէս պատկերաց դէմ հակառակութիւնն անկէ ետքն ալ բաւական ժամանակ շարունակուեցաւ: Բայց միտ դնելու է՝ որ աս կռիւներուն մէջ հակառակութիւնը միայն սրբոց պատկերաց յարգութեանը դէմ էր, եւ ոչ թէ անոնց բարեխօսութիւնը խնդրելու: Սակայն չէ թէ միայն յառաջուան պէս միշտ մնաց, այլ նաեւ վերոյիշեալ Կոստանդնուպոլսոյ չարաժողովոյն մէջ (754) առանձին կերպով ալ հաստատուեցաւ:

Ադրիանոս Քահանայապետը՝ Նիկիայի սիւնհոդոսին արձանագրութիւնները լատիներէնի թարգմանելով Կարոլոս կայսեր խաւրեց, եւ իրմէ խնդրեց որ եղած որոշմունքներն իր տէրութեան եպիսկոպոսաց առջեւը դնէ, որպէս զի անոնք ալ ընդունին: Սակայն եպիսկոպոսներն ընդդիմադրական գրուածքով մը աս որոշմունքները մերժեցին: Նոյնպէս զանոնք չընդունեցաւ չորս տարի ետքը (794) Ֆրանքֆորդի գումա-

րուած ժողովին ալ, ուր Փռանկաց թագաւորութեան ամէն գաւառներէն բազմաթիւ եպիսկոպոսք եկած էին։ Աս թերիմացութեան պատճառն էր խաւրուած լատիներէն թարգմանութիւնը, որուն բացատրութեան կերպը զանազան ծուռ ըմբռնմանց առիթ տուած էր. օրինակի համար յունարէնի մէջ յարգութիւն ցուցընող բառը (Προσκύνησις) երկրպագութիւն (adoratio) թարգմանուած էր, որ միայն Աստուծոյ կ'ըսուի։ Բայց թէ արեւելեան ու արեւմտեան եկեղեցիներուն մէջ՝ այս խնդրոյս վրայ կարծեաց տարբերութիւն չկար, կը վկայէ եպիսկոպոսաց վերոյիշեալ ընդդիմադրական գրութենէն զատ, որուն մէջ պատկերաց ու անոնց յարգութեան օրինաւոր ու պատշաճ ըլլալը կը խոստովանին, նաեւ այն պարագան, որ ինչպէս ժողովէն յառաջ՝ նոյնպէս անկէ ետքը մինչեւ Հերձուածոյն ժամանակ, երկու եկեղեցեաց մէջ ալ պատկերաց յարգութիւնը դեռ արդեամբ կը գտնուէր։

## 40. *Հայոց եկեղեցւոյն ընդհանուր եկեղեցիէն բաժնուիլը* (500—700):

Ինչպէս վերը տեսանք (Համար 37) չորրորդ տիեզերական ժողովքէն ետքը՝ գրեթէ 200 տարի արեւելք եւ տիեզերական վէճերը դեռ շարունակուեցան։ Հայք՝ քաղաքական խռովութեանց պատճառաւ սա վէճերուն եւ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն նկատմամբ յուզուած խնդիրներուն բաւական ժամանակ մասնակից չեղան։ Բայց արդէն քաղաքական խռովութիւններուն ժամանակին եւ առաւել եւս անկէ ետքը, արեւելեան կողմերը զօրացած Դիոսկորեանք, ինչպէս ուրիշ տեղեր նոյնպէս Հայաստան՝ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն վրայ ամէն կարելի զրպարտութիւններ ու չար համբաւներ տարածած եւ անոր ողջամիտ եւ ուղղափառ վարդապետութիւնը՝ Նեստորի վարդապետութեանը հետ շփոթելու ջանացած էին։ Իրենց այս վնասակար ճիգն ինչպէս ուրիշ տեղեր, նոյնպէս Հայաստան առանց հետեւութեան չմնաց։ Հայոց մէջ ալ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն եւ անոր մէջ քարո-

զուած մարդեղութեան վարդապետութեան վրայ՝ կամաց կամաց սկսաւ ըմբռնում մտաւ, որուն աւելի եւ հիմնուելուն եւ տարածուելուն պատճառ եղան՝ ժամանակին խառնակութիւնները եւ Յունաց հետ օրէ օր աւելցած պաղութիւնն ու կռիւները։ Ասոնք սխալ քայլ մ'առնելու պատրաստութիւններ էին, զոր չորրորդ տիեզերական ժողովոյն պատճառաւ Հայք դժբախտութեամբ առնելով, իրենք զիրենք կաթուղիկէ եկեղեցիէն բաժնեցին։ Հայք՝ Նախընթաց երեք տիեզերական ժողովքները (Թէպէտ եւ ոմանց մէջ իրենց կողմանէ մարդ չկար) ընդհանուր եկեղեցւոյ հետ ընդունելէն ետեւ, Քաղկեդոնի Ս. Ժողովոյն իրենց դայթակղութեան հիմ եղաւ։ — Աս վիճակի մէջ էր Հայոց եկեղեցին, երբ որ Քաղկեդոնի Ս. Ժողովքէն իբր 40 տարի ետքը՝ Զենոն կայսեր Հանած Հէնոտիկոն ըսուած միաւորութեան թուղթը, Բաբգէն կաթուղիկոսին ձեռքը հասնելով, ինչպէս կը պատմուի (ըստ Յովհ. Կաթուղիկոսի) Վրաց ու Աղուանից կաթուղիկոսներուն հետ Վաղարշապատ ժողով մը գումարեց (491) եւ զանիկայ ընդունեցաւ, որով Հայք առաջին անգամ (գուցէ լռելեայն) Քաղկեդոնի Ս. Ժողովը մերժեցին։ Որչափ ալ աս դէպքը Հայոց կողմանէ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն դէմ իբրեւ առաջին վճիռ համարինք, սակայն աս անտարակոյս կ'երեւայ՝ որ մինչեւ վեցերորդ դար՝ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ընդդիմութիւնը կամ միաբնեայց աղանդը, Հայաստանի ընդհանուր կրօնն եղած չէր, բայց բաւական աստին անդին ճարակած եւ շատ առանձնականաց համոզումն էր։

Վեցերորդ դարուն սկիզբը՝ Ներսէս Բ. Աշտարակեցին, ինչպէս հաւանական կ'երեւայ Պարսից Թագաւորին դրդելովը, որ իրեն մեծ շահ կը համարէր կրօնական խնդրոյ մը ձեռքով իր տէրութեան քրիստոնեաները Յունացմէ բաժնուած տեսնել, Դուին ժողովք ըրաւ (527), եւ Քաղկեդոնի Ս. Ժողովը յայտնի մերժեց։ Աս ժողովոյս մէջ հաստատուեցաւ ի Քրիստոս մի բնութիւն ըսել եւ Սուրբ Աստուածն Որ խաչեցար յաւելուածով երգել։ Բայց աւելի որոշ եւ

կերպական բաժանմամբ զատուեցաւ Հայոց եկեղեցին ընդհանուր եկեղեցւոյ հաղորդութենէն՝ Մովսէս կաթուղիկոսին կամ իրեն տեղապահ Վրթանէսի առեն։ Այդ ժամանակ՝ անուանի Մուժեղ Մամիկոնեանը Կոստանդնուպոլիս երթալով, Մօրիկ կայսրը հաւատոյ վրայ խօսք բացաւ, եւ հրամայեց որ Յունաց եւ Հայոց մէջ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն վճռոյն վրայ միաբանութիւն ըլլայ։ Այս վախճանաւ Կոստանդնուպոլիս ժողովք եղաւ, ուր Հայոց կողմանէ կային 21 եպիսկոպոս՝ 19 Յունաց բաժնէն, երկուքը բուն Հայաստանի կողմերէն։ Զանազան խօսակցութիւններէ եւ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն վճիռը քննելէն ետեւ, բոլոր եպիսկոպոսները հաւանեցան եւ ընդունեցան, միայն Մեծ Հայաստանէն եկող երկու եպիսկոպոսները՝ Գրիգոր եւ Վրթանէս առանց ընդունելու ետ դարձան։

Այս հակառակութեան հետեւութիւնն ան եղաւ, որ Մօրիկ կայսրը Յունաց բաժնին վրայ Յովհաննէս անուամբ հայ ուղղափառ՝ այսինքն Քաղկեդոնի Ս. Ժողովն ընդունող կաթուղիկոս մը դրաւ (580 — 590), իսկ Պարսից կողման վրայ Մովսէս կաթուղիկոս մնաց։ Վերջինոյն գլխաւոր աթոռը Դուին, իսկ առաջինոյն Աւան էր։ Եւ այսպէս վեցերորդ դարուն վերջերն՝ ինչպէս յունական եւ պարսկական Հայաստան կար, նոյնպէս կրօնական բաժանմամբ՝ Քաղկեդոնի Ս. Ժողովն ընդունող եւ չընդունող Հայաստանի բաժանում մը տեսնուեցաւ։ Կրկին կաթուղիկոսութիւնն երկայն չտեւեց, Յովհաննու մահուամբը լմընցաւ (շուրջ 616), բայց կրկին կղերի եւ ժողովրդեան բաժանումը մնաց. ինչու որ աւելի ետքը կը տեսնենք, որ չէ թէ միայն Յունաց եւ Հայոց մէջ, այլ նաեւ Հայոց եւ Հայոց մէջ հակառակութիւն եւ վէճ կայ։ Մովսէսէն ետքը Սմբատ Բագրատունւոյն ազդեցութեան տակ՝ յաջորդեց Աբրահամ, որ իր նախորդին չէ թէ միայն աթոռոյն՝ այլ նաեւ ծուռ վարդապետութեանը ժառանգ ըլլալով, թէ գրով եւ թէ գործքով Քաղկեդոնի Ս. Ժողովին ընդունողներուն դէմ էր։ Այդ ժամանակ Վրաց կաթուղիկոսական աթոռը բռնած էր Կիւրիոն, որ Մովսէս Բ. կաթուղիկոսին ձեռնասուն

աշխերան եւ կաթուղիկոսարանին երեւելի անձինքնե-
րէն մէկն էր։ Ասիկայ խելացի եւ գործունեայ մարդ
մ՚ըլլալով, իրեն մինչեւ նոյն ատեն ունեցած ուղղա-
փառական համոզումը գործնական կերպով մը ցուցուց,
Յունաց եկեղեցւոյն հետ հաղորդութիւն եւ թղթա-
կցութիւն ընելով, եւ Քաղկեդոնի Ս. Ժողովը ընդու-
նելով։ Աբրահամ՝ զանազան թղթերով ուզեց զինքն
իր ուղիղ համոզումէն ետ դարձընել, բայց երբոր Կիւ-
րիոն ճշմարտութեան վրայ հաստատուն կենալով՝ Քաղ-
կեդոնի Ս. Ժողովոյն ուղղափառական ըլլալը թղթով
ցուցուց, եւ զԱբրահամ յորդորեց՝ որ բոլոր քրիս-
տոնէութեան հետ զանիկայ ընդունի, Աբրահամ կա-
թուղիկոսը բարկացած Դուին ժողովք ըրաւ (596),
Վրացիներն իբրեւ մոլորեալ նզովեց եւ Հայոց՝ Վրաց
հետ ամէն հաղորդութիւն արգելեց։

Երբոր այսպէս Հայք թէ Յունացմէ եւ թէ
Վրացմէ բաժնուեցան, բնական էր որ Յունաց կայսր-
ները թէ կրօնական եւ թէ քաղաքական շահէ դըր-
դուած, Հայերը Յունաց հետ միաբանելու ետեւէ ըլ-
լային։ Ուստի առաջին միաբանութեան փորձէն քա-
ռասուն տարի ետքը (629), Հերակլ կայսրը Պար-
սից դէմ ըրած յաղթական արշաւանքէն Կարին դառ-
նալով, Հայերը Յունաց հետ միաբանելու երկրորդ
փորձ մ՚ըրաւ։ Ասոր համար Մժէժ Գնունին՝ որ Յունաց
բաժնին վրայ գլխաւոր էր, Դուին խաւրեց որ Եզր կա-
թուղիկոսը՝ Կարին գաւառական ժողովի հրաւիրէ։ Եզր
ալ հրաւէրն ընդունելով՝ իր երեւելի անձինքն ա-
ռած Կարին եկաւ (շուրջ 629ին)։ Հոն Յունաց կղեր
իրենց հաւատոյ դաւանութիւնը գրով տուին. Եզր
կաթուղիկոսը տեսաւ անոր ուղղութիւնն եւ առանձին
Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ուղղափառութիւնը եւ ամե-
նայն յօժարութեամբ ընդունեցաւ։ Կայսրն իր ուրա-
խութիւնն ու գոհութիւնը ցուցուց, Տայոց Կողբայ
կողմերուն մէկ կալուածը եւ աղահանքը կաթուղիկոսին
պարգեւ տալով։ Մեծ ուրախութիւն էր կաթուղիկոսին
տեսնելը՝ որ իր ժողովուրդն ալ, մանաւանդ կղերա-
կանք՝ զինքն ի դարձին հանդիսիւ ընդունեցան։ Բայց
հակառակորդ կողմն՝ որուն գլուխն անցած էր Յովհան-

նէս Մայրագոմեցին, բուռն ու զօրաւոր էր։ Ուստի յայտնի էր, որ սա միաբանութիւնն ալ այնչափ միայն կրնար տեւել, որչափ Եզրին կեանքը։ Քանի մը տարի ետքը՝ Հայաստանի յունական զօրքը, Հերակլի թոռան Կոստանդ Բ. կայսեր գանգատ ըրին, որ Հայք իրենց հետ չեն հաղորդիր։ Կայսրը բարկացած՝ հրամայեց որ Քաղկեդոնի վճռոյն եւ Ս. Լեւոնի առ Փլաբիանոս գրած թղթոյն վրայ միաբանութիւն ըլլայ։ Աս վախճանիս համար հայազգի Դաւիթ փիլիսոփան Կոստանդնուպոլսէն խաւրուած դաւանութեան թղթով մը Դուին եկաւ։ Հոս բազմաթիւ եպիսկոպոսք, Ներսէս Գ. Շինող կաթուղիկոսին գահերիցութեամբը ժողվուած, թէ չորրորդ տիեզերական ժողովոյն վճիռն ու թէ Ս. Լեւոնի գիրը, Դաւիթ փիլիսոփային մեկնութեանը հետ մոլար գտան ու մերժեցին, եւ իրենց սիւնհոդոսական վճիռը նամակով մը կայսեր ծանուցին։ Երկու տարի ետքը (654ին մօտերը) Կոստանդ կայսրն անձամբ սաստիկ սպառնալեօք Հայաստան եկաւ. բայց Ներսէս կաթուղիկոսին աղաչանացը զիջանելով՝ Հայոց հետ խաղաղութեամբ վարուելու խորհրդէն ետ կեցաւ։ Կայսրն եկաւ Դուին կաթուղիկոսարանը նստաւ, եւ յոյն լեզուաւ ու արարողութեամբ պատարագ ընել տալով, կաթուղիկոսին եւ իր եպիսկոպոսներուն հետ հաղորդուեցաւ, եւ չորրորդ տիեզերական ժողովը դարձեալ քարոզել տուաւ։ Անկէ ետքը կայսրն Արաբացւոց պատերազմներէն ստիպուած, անճապարելով Կոստանդնուպոլիս երթալու ատեն, Ներսէս կաթուղիկոսն՝ որ Քաղկեդոնի Ս. Ժողովը հաստատուն կերպով ընդունած էր, Դուին թողուց եւ Տայոց գաւառը գնաց բնակեցաւ, Թէոդորոս Ռշտունեաց իշխանէն վախնալուն համար, որովհետեւ աս իշխանը քաղաքական գործառնութեանց պատճառաւ իրեն հակառակ էր։ Ներսէս Գ. կաթուղիկոսին բացակայութեան ատեն՝ Ռշտունեաց իշխանին ազդեցութեան տակ, Հայոց կաթուղիկոս գրուեցաւ Յովհաննէս Մանազկերտցին, որ գրով ու գործքով Քաղկեդոնի Ս. Ժողովոյն դէմ կռուեցաւ։ Մանազկերտ ժողով ընելով, Քաղկեդոնի Ս. Ժողովին ու Ս. Լեւոնի թուղթը նզովեց, Ե-

զըի ժողովը մերժեց, եւ հրամայեց որ պատարագի բաժակին մէջ ջուր չխառնուի, Ծննդեան տօնը՝ Յայտնութեան հետ մէկտեղ տօնուի։ Բայց Թէոդորոս իշխանին մեռնելէն ետքը՝ Ներսէս Դուին դառնալով, դարձեալ կաթուղիկոսական աթոռն ելաւ։ Իրեն կաթուղիկոսութեան վերջին տարիներն էր՝ որ Հայաստան Պաւլիկեան բսուած Մանիքեցւոց հետեւող աղանդաւորներն երեւան ելան, որոնք ընդհանրապէս ամէն եկեղեցւոյ արտաքին պաշտամունք եւ խորհուրդ մերժելէն զատ՝ միանգամայն պատկերամարտ էին. Նոյնպէս Յովհաննէս Մայրագոմեցին եւ անոր աշակերտը Սարգիս, ասոնց վրայ Յուլիանեանց եւ Ապողինարեանց մոլորութիւններն ալ աւելցընելով, Հայաստան տակն ու վրայ կ'ընէին։ Ներսէս շատ աշխատեցաւ զիրենք սիրով ուղղութեան բերելու, բայց երբ որ անկարելի եղաւ, աշխարհական իշխանութեան զօրութեամբը զիրենք նուաճեց եւ Հայաստանէն մերժեց։ Սակայն եւ այնպէս առաջինները մինչեւ ութերորդ դար տեւեցին, որ միջոցին Յովհաննէս Իմաստասէր կաթուղիկոս իրենց դէմ զօրաւոր գրուածք մը հանեց*. իսկ վերջիններուն դէմ կռուեցաւ Թէոդորոս Քռթենաւոր՝ իր գրած մէկ ճառովը։

## 41. *Այս ժամանակի շրջանին Եկեղեցւոյ Ս. Հարքը:*

Այս շրջանին մոլորութեանց դէմ դնելու եւ ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութիւնը պաշտպանելու համար, թէ արեւելեան եւ թէ արեւմտեան եկեղեցւոյ մէջ անուանի հայրապետներ ելան, որոնց մէջէն նշանաւորները հոս կը դնենք։

### ա. Արեւելեան եկեղեցւոյ Ս. Հարք։

1. *Ս. Աթանաս*՝ Աղեքսանդրիայի հայրապետը, չորրորդ դարուն սկիզբը ծնաւ։ Բնականէ դասը ճար-

* Պաւղիկեան աղանդաւորներուն մնացորդներէն յառաջ եկած կ'երեւան իններորդ դարուն մէջ՝ Թոնդրակեցի բսուած աղանդաւորները։ Ասոնք մինչեւ մետասաններորդ դար տեւեցին, որ միջոցին Գրիգոր Մագիստրոս անուանի իշխանին ձեռքովը, Հայաստանէն բոլորովին ջնջուեցան։

տասանութեան եւ տրամաբանութեան ձիրքերուն հետ, խիստ կրօնական ոգի մը վրան միացուցած ըլլալով, շատ յարմար էր արիանոսաց կռուոյն մէջ՝ նախախնամութեան ձեռքը զօրաւոր գործիք մ'ըլլալու։ Ս. Աթանաս՝ իր խօսքն ու գրիչն Երրորդութեան վարդապետութիւնն եւ ի մասնաւորի Որդւոյն աստուածութիւնը պաշտպանելու նուիրեց։ Երկասիրութեանց շատը մեր ձեռքը հասած են, որոնք պարզ, պայծառ եւ կենդանի ոճով գրուած են, եւ իր մտաց խորութեանն ու սրութեանը կը վկայեն։ Միտքը դրած վախճանին հասնելու համար, ամենադժուարին զոհեր ընելէն ետ չկեցաւ։ Վերը յիշեցինք (տես երես 129), որ ամենայն զօրութեամբ արիանոսաց դէմ մաքառելուն համար, անոնց ձեռքէն դառն հալածանքներ քաշեց։ Հինգ անգամ աքսորք գնաց եւ քանի տարի աքսորանաց մէջ ապրեցաւ։ Բայց Աստուած իր հաւատարիմ ծառային աշխատութիւնն օրհնեց, եւ համբերութեամբ ու հաստատութեամբ քաշած տառապանաց հատուցումը նաեւ աս աշխարհքիս վրայ տուաւ։ Ձէ թէ միայն նոյն ժամանակին երեւելի անձինքները, ինչպէս է Ս. Հիլարիոն՝ Բուատիէի եպիսկոպոսը, Ոսիոս՝ Կորտուպայի եպիսկոպոսը, եւ աս պատուական խոստովանողին գահերիցութեամբը Սարդիկէ գումարուած ժողովոյն Հայրքը, Ս. Աթանասի անմեղութեանն ու հաւատոյ ուղղութեանը փառաւոր վկայութիւն տուին, այլ նաեւ գրեթէ 50 տարի իբրեւ Աղեքսանդրիայի եպիսկոպոս՝ եկեղեցւոյ օգտին աշխատելէն վերջը, կրցաւ ուրախութեամբ տեսնել արիանոսութեան քայքայումը, եւ իր հաւատոյ եռանդեան մեծ գործքին յաջողութեամբ պսակուիլը։ Հաւատոյ արի դիւցազնը՝ 373ին Աղեքսանդրիա վախճանեցաւ, եւ Եկեղեցին զինքը Մեծ վերադիր անուամբ պատուեց։ — Իր անուանի գրաւոր երկասիրութիւններէն մէկն է՝ Ս. Անտոն անապատականին վարուց պատմութիւնը, որուն մէջ վանական կենաց գեղեցիկ նկարագիրը կ'ընէ։ Հռչակաւոր Աթանասեան Հանգանակը, իր անուամբը կոչուած է կամ անոր համար՝ որ ինք, իրօք անոր յօրինիչն եղած է, կամ որովհետեւ անոր մէջ Ս. Եր-

*րորդութեան եւ առանձինն Որդւոյն Աստուծոյ աստուածութեան վարդապետութիւնը, որուն համար Ս. Աթանաս այնպիսի արիութեամբ կռուած էր, իրեն յատուկ ճշդութեամբ ու պայծառութեամբ բացատրուած է։*

*2. Ս. Բարսեղ Մեծ՝ Կապադովկիայի Կեսարիա քաղաքին արքեպիսկոպոսը, 329ին հարուստ եւ առաքինի ծնողքներէ ծնաւ, եւ տղայութեան ժամանակը քրիստոնէի վայել կրթութիւն մ՚առաւ։ Ի մասնաւորի բարեպաշտ մայրը՝ ջանաց աստուածպաշտութեան, խոնարհութեան ու զգաստութեան սուրբ զգածմունքն իր սրտին մէջ անջնջելի դրոշմել։ Ս. Բարսեղ բարձրագոյն ուսումնական կրթութիւնն ընդունեցաւ նախ Կոստանդնուպոլիս ու ետքն Աթէնք, որ գիտութեանց ու արուեստից հռչակաւոր՝ կեդրոնն եղած էր, եւ հոս Ս. Գրիգոր Նազիանզացւոյն հետ սերտ բարեկամութեան զօդիւ կապուեցաւ։ Աս երկու ազնիւ երիտասարդները, որոնք երկու մարմնոյ մէջ՝ մէկ հոգի կ՚երեւային, նոյն քաղաքին վարժարանին բոլոր աշակերտաց՝ ուսումնասիրութեան եւ բարեպաշտութեան օրինակ էին։ Բարսեղ հազիւ երեսուն տարուան հասակին մէջ՝ Կեսարիա դարձաւ. բայց անմիջապէս իր հրապարակական գործունէութիւնը չսկսաւ, այլ նախ երկայն ատեն ինք զինքը հոգեւոր առանձնութեան տուաւ։ Ասորիքի, Պաղեստինի ու Եգիպտոսի կրօնաւորաց ու ճգնաւորաց խցիկները պտըտելէն ետեւ, ունեցածն աղքատաց բաժնեց, եւ ինք զինքը բոլորովին Աստուծոյ նուիրելով՝ անկէ ետքը միանձնութեան մէջ խստամբեր եւ ժուժկալ կեանք մը սկսաւ վարել։ Բայց երբոր եկեղեցւոյ օգուտը պահանջեց, իր եպիսկոպոսին ձայնին հետեւելով՝ բովանդակ հոգեւոր ու մտաւոր զօրութիւններն անոր ծառայութեանը նուիրեց։ Անգրգուելի էր արիութիւնն արիանոսաց դէմ ուղղափառ հաւատքը պաշտպանելու մէջ, մանաւանդ երբոր Եւսեբիոս եպիսկոպոսին մահուանէն ետքը, Կեսարիայի եպիսկոպոսական աթոռը նստաւ (370)։ Զարմանալի քաջասրտութեամբ Վաղէս կայսեր դէմ դրաւ, որ կ՚ուզէր արիանոսութիւնը*

Կապադովկիա տարածել, եւ իր ժողովուրդն ուղղափառ հաւատոյ մէջ հաստատուն պահեց։ Ս. Բարսեղ մեռաւ 379ին տասը տարի եպիսկոպոսութիւն ընելէն ետքը։ — Իր գրութեանց մէջէն՝ որոնք խորին իմաստով եւ բարձր ոճով գրուած են, ամէնէն նշանաւորներն են, 1. Իր վարդապետական գործքը Հոգւոյն Սրբոյ վրայ։ 2. 350 նամակները՝ որոնց մէջ իր մրրկայոյզ ժամանակին պայծառ նկարը կ'ընծայեցընէ։ 3. Ճառերը՝ որոնք լի են պերճախօսութեամբ։ Ուսումնասէր երիտասարդաց համար շատ օգտակար է, իր Վասն երիտասարդաց անուն ճառը, որուն մէջ կը ցուցընէ թէ քրիստոնեայ պատանիք հեթանոս մատենագիրներէ ինչպէս կրնան օգուտ քաղել։ Ասոնցմէ զատ անուանի են նաեւ կրօնաւորաց համար դրած կանոնները, որոնց համաձայն իր ժամանակն արդէն հազարաւոր վանականք կ'ապրէին, եւ ցայսօր ալ Բարսեղեան ըսուած արեւելեան կրօնաւորները կ'ապրին։

3. *Ս. Գրիգոր Նիւսացին*՝ իր երկու երեց եղբարցը՝ այսինքն վերոյիշեալ Մեծն Բարսղի ու Սեբաստիայի Պետրոս եպիսկոպոսին հետ, Աստուծմէ առանձին օրհնուած ընտանեաց մը կը վերաբերի, որ գրեթէ ամբողջ սուրբերէ կը բաղկանար։ Ինչու որ աս երեք եղբայրներէն զատ, իրենց քոյրերը՝ ի մասնաւորի Ս. Մակրինա, հայրերնին՝ Բարսեղ, Եմմելիա՝ իրենց մայրը ու Մակրինա՝ մեծ մայրերնին, ամէնքն ալ եկեղեցիէն իբրեւ սուրբ կը մեծարուին։ Ս. Գրիգոր՝ անուանի է իբրեւ քաջ ճարտասան ու Նիկիական հանգանակին նախանձաւոր ջատագով։ Իր ծննդեան քաղքին եպիսկոպոս ըլլալէն ետեւ, շատ նեղութիւններ քաշեց արիանոսներէն, եւ Վաղէս կայսրմէ քանի մը անգամ աքսորք խաւրուեցաւ, բայց անոր մահուանէն ետքը՝ կրցաւ իր աթոռը դառնալ։ Յամի 381ին Կոստանդնուպոլսոյ ժողովոյն ներկայ գտնուեցաւ, եւ հոն Հոգւոյն Սրբոյ աստուածութեանը փառաւոր վկայութիւն տուաւ։ Ս. Գրիգոր մեռաւ չորրորդ դարուն վերջը՝ Նիւսա քաղաքը։ — Նիւսացւոյն ճառերէն ու նամակներէն զատ, շատ գեղեցիկ գրուածքներ ունինք, որոնց մէջ անուանի է՝ Մեծ քրիստոնէական վարդապետութիւն

ըսուած գիրքը, որուն մէջ հրէից ու հեթանոսաց՝ դիւրըմբռնելի կերպով կը ջանայ ցուցընել քրիստոնէական կրօնքին ճշմարտութիւնը։

4. Ս. Գրիգոր Նազիանզացին՝ տղայութենէն Ս. Բարսղի եւ Ս. Գրիգոր Նիւսացւոյն մտերիմ բարեկամն էր, որոնք սովորաբար Կապադովկիացւոց եկեղեցական աստղերը կը կոչուին։ Ս. Գրիգոր իր կենացը վրայ շինած բանաստեղծական գրուածքի մը մէջ, տղայութեան ժամանակ Աթէնք ընդունած կրթութեան եւ Ս. Բարսղի հետ ունեցած սերտ յարաբերութեան վրայ՝ ընդարձակ տեղեկութիւններ կու տայ, որմէ կը տեսնուի նաեւ թէ սա երկու երիտասարդ բարեկամները, չար ընկերութիւններէն իբրեւ անմեղութեան ու աստուածպաշտութեան գերեզմաններէն կը խորշէին։ Մենք, կ'ըսէ Ս. Գրիգոր, ան ուսանողներուն հետ կենակցութիւն չէինք ըներ, որոնք անամօթ ու կրօնն անարգող էին, այլ անոնց հետ միայն կը կենցաղավարէինք՝ որոնք խաղաղասէր ու պարկեշտ էին, եւ որոնց հետ խօսակից ըլլալը մեզի օգտակար կրնար ըլլալ։ Ս. Գրիգոր՝ իր մեծ խոնարհութեանն ու համեստութեանը համար, կ'ուզէր բոլորովին առանձնանալ եւ քաշուած կեանք մ'անցընել, բայց եկեղեցւոյն ան առենուան վիճակը թող չտուաւ որ իր այս յօժարութեանը հետեւի. ընդ հակառակն կեանքը շփոթութեանց ու խռովութեանց մէջ անցուց։ Իբրեւ արիանոսաց սաստիկ հակառակորդ՝ շատ անգամ հրապարակաւ անոնց դէմ ելաւ, եւ վերոյիշեալ երկու Ս. Հարց եւ Ս. Աթանասի հետ միաբանած, ժամանակին շփոթութեանց մէջ ուղղափառ կրօնքին պաշտպան կեցաւ։ Իր հրաշալի ճարտարախօսութեամբն աղանդաւորներն՝ ի մասնաւորի Մակեդոնեանները յաղթահարեց, որով իր թշնամեացը սաստիկ ատելութեանն ու անհնարին թշնամանացը նշաւակ եղաւ, զորոնք ինք զարմանալի համբերութեամբ ու հեզութեամբ կրեց։ Որդւոյն Աստուծոյ եւ Հոգւոյն Սրբոյ աստուածութիւնը զօրաւոր խօսքերով պաշտպանելուն համար, Աստուածաբան կոչուեցաւ։ Երբոր ծանրացեալ հասակի մէջ՝ վատառողջութեանը պատճառաւ Հրապարա-

կական գործքերէն քաշուեցաւ, ինք զինքը գրաւոր աշխատութեանց եւ ի մասնաւորի Նուիրական բանաստեղծութեան տուաւ։ Ս. Գրիգոր Նազիանզացին մեռաւ 390ին, եւ շատ գրքեր թողուց, որոնց մէջէն յիշուելու արժանի են՝ իր նամակներէն ու բանաճառութիւններէն զատ, նաեւ բազմաթիւ բարոյական բանաստեղծութիւնները, որոնք ոչ այնչափ իրենց բանաստեղծական աշխուժութիւն, որչափ ազնիւ ու աստուածասէր կրօնական զգածմամբը յարգի են։

5. *Ս. Յովհաննէս Ոսկեբերան*՝ ծնաւ 347ին Անտիոք քաղաքը, ուր քանի մը տարի իբրեւ քահանայ մեծ համբաւ ստանալէն ետեւ, 398ին Կոստանդնուպոլսոյ պատրիարք ընտրուեցաւ։ Անարատ ու ամբիծ վարուց հետ, միանգամայն արտաքոյ կարգի մտաց ձիրքեր ունէր։ Հրալից ու ազդու ճարտարախօս լեզուին պատճառաւ Ոսկեբերան կոչուեցաւ, եւ այս պարծանքը ԺԵ դարէ վեր եկեղեցւոյ մէջ առանց հակառակութեան հաստատուն պահած է։ Ճշմարտութեան ունեցած սաստիկ եռանդը, իրեն շատ նեղութիւններ կրել տուաւ։ Ունայնասէր, ամբարտաւան ու բռնաւոր Եւդոքսիա կայսրուհին, միտքը դրած էր որ Ոսկեբերանի գլուխը չարիք մը բերէ, որովհետեւ իր եկեղեցական բաներուն մէջ խառնուելուն համարձակ դէմ դրած էր։ Թէոփիլոս՝ Աղեքսանդրիայի եպիսկոպոսը՝ Ոսկեբերանին անհաշտ թշնամին, կայսրուհւոյն դիտմանցը գործիք եղաւ։ Ասիկայ 403ին Քաղկեդոնի մօտ ամարաստան մը մէջ, որ Կաղնի կը կոչուէր (ուստի ժողովն ալ Ժողով առ Կաղնեաւ ըսուեցաւ), 45 եպիսկոպոսաց չարաժողով մը գումարեց, եւ զՈսկեբերան Ըջին պատճառներու համար պատրիարքութենէն ձգեց։ Արկադէոս՝ կայսրը վճիռը հաստատեց եւ զՈսկեբերան աքսորք խաւրեց, բայց երկրաշարժ մ՚ելլելով՝ որ իրեն եղած նախատանաց իբրեւ պատիժ համարուեցաւ, Ոսկեբերան ետ կանչուեցաւ։ Սակայն շատ չանցաւ Եւդոքսիայի դրդելովը, որ՝ իր մէկ քարոզէն վշտացած էր, Ոսկեբերան դարձեալ աքսորք գնաց, եւ հոն շատ նեղութիւն քաշելէն ետքը՝ 407ին Հայաստանի Կոկիսոն քաղաքը 60 տարուան մեռաւ։

Ս. Յովհաննէս Ոսկեբերանին չափ գրաւոր աշխատութիւն, ամենեւին յոյն Ս. Հայր մը մեզի ձգած չէ։ Պզտիկուց յունական մատենագրութեան՝ ի մասնաւորի Պղատոնի եւ Դեմոսթենէսի գրուածոց ուսման ինք զինք տուած ըլլալով, ընտիր գրիչ մը ստացաւ։ Ոճը՝ պարզութեանն եւ բնականութեանը հետ, վսեմ բարձրութիւն մ՚ունի, եւ զրուցուածքն ալ հաճոյական է խորհրդածութեանցը, այլաբանութեանցն ու համեմատաւոր նմանութեանցը պատճառաւ։ Նշանաւոր են իր ատենաբանութիւններն ու հոգեւոր ճառերը, մանաւանդ Անդրիանդրական բսուած 21 ճառերը, որոնց մէջ կը ջանայ ի հպատակութիւն եւ ի զեղջ յորդորել Անտիոքի ժողովուրդը, որ Թէոդոս կայսեր արձանները կործանած էր եւ անոր բարկութենէն կը վախնար։ Գերազանց երկասիրութիւն մըն է նաեւ Քահանայութեան վրայ շինած գործքը, որուն մէջ անհամեմատ գեղեցիկ կերպով կը ցուցնէ բարի քահանային յատկութիւնները, անոր՝ հոգիները խնամելու եւ զանոնք ուսուցանելու պարտքը կը մեկնէ, եւ վերջապէս ճշմարիտ հովուի մը պատկերը կը նկարագրէ, զորն որ ինք իր կենացը վրայ արդեամբ դրոշմած էր։

6. Ս. Գրիգոր Լուսաւորիչ՝ Հայաստանեայց լուսաւորութեան եւ հաւատոյ Հայրը, Վաղարշապատ քաղաքն Արշակունի թագաւորական ցեղէ ծնաւ (257ին մօտերը)։ Երբ որ իր Անակ հայրը՝ զԽոսրով մեռցընելուն համար սպաննուեցաւ, Եւթաղ անուանով մէկը զինքն իր ազգատոհմին կոտորածէն ազատեց եւ Կեսարիա փախցուց։ Հոս մկրտուելով՝ Գրիգոր անունն ընդունեցաւ, եւ ինչպէս կը կարծուի Փիրմիլիանոս անուանի եպիսկոպոսին առաջնորդութեանը տակ քրիստոնէական հաւատոյ ճշմարտութեանց եւ արտաքին գիտութեանց մէջ կրթուեցաւ։ Չափահաս ըլլալէն ետեւ, Դաւիթ անունով մէկու մը աղջկան հետ կարգուելով, երկու որդի ունեցաւ՝ Վրթանէս ու Արիստակէս։ Հայաստանի դարձին պատմութեան մէջ արդէն յիշեցինք, որ ինչպէս աս Հայաստանի սուրբ առաքեալն իր դառն տանջանքներէն ու լուսաւոր-.

վարդապետութեամբը Տրդատ Թագաւորին ժամանակ, կռապաշտ Հայաստանը քիչ ժամանակուան մէջ քրիստոնեայ ըրաւ։ Կեսարիայի Ղեւոնդիոս Հայրապետէն՝ Հայաստանի հովիւ ձեռնադրուելէն ետքը, գրեթէ քսանուհինգ տարի իր նորադարձ հօտն իմաստուն խոհականութեամբ կառավարեց։ Վերջապէս ծերութեան պատճառաւ, Հայոց եկեղեցւոյն կառավարութիւնն իր Արիստակէս որդւոյն յանձնելով, ինք Մանեայ այրը քաշուեցաւ։ Հոն հոգեւոր առանձնութեան մէջ քանի մը տարի ալ ապրելէն ետքը, լի արդեամբ վախճանեցաւ (շուրջ 333)։ Անմիջապէս իրաւամբ իր հոգեւոր որդիքն իրեն Լուսաւորիչ Հայաստանեայց վերադիր անունը տուած են։ Իր առաքելական ջանից պտուղն է՝ որ քրիստոնէական հաւատոյ լոյսը, Հայաստանի վրայ ծագեցաւ։ Հայոց եկեղեցին չորրորդ դարէն վեր իր սուրբ առաքելոյն յիշատակն սկսաւ տօնել. իսկ արեւմուտք՝ միայն Նեապոլիս ութերորդ դարէն վեր իր յիշատակը կը կատարուէր, մինչեւ որ Գրիգոր ԺԶ. Քահանայապետը 1837 Սեպտեմբեր 1ին հանած հրամանագրով մը, հրամայեց որ իր անունը Հռովմայ տօնացուցին մէջ ալ առնուի, եւ տօնը Հոկտեմբեր 1ին կատարուի։ Մարմինը՝ զորն որ հովիւք անծանօթ տեղ մը թաղած էին, ետքէն գտնուեցաւ։ Ութերորդ դարուն՝ Բարսեղեան կուսանք Ս. Գրիգորի մասունքն՝ ի մասնաւորի գլուխը եւ չարչարանաց գործիքները Կոստանդնուպոլսէն Նեապոլիս տարին, ուր մինչեւ ցայսօր մեծ յարգութեամբ կը պահուին ու կը մեծարուին։ Պիոս Թ. սըրբազան Քահանայապետը՝ կաթուղիկոսական աթոռոյն Կոստանդնուպոլիս փոխադրուելուն առթիւ (1869). հաճեցաւ այս մասունքներուն մէկ մասը (այսինքն ոլքը, գանկին մէկ կտորն ու շղթային մէկ քանի օղերը) Կոստանդնուպոլսոյ ուղղափառ Հայոց հասարակութեան պարգեւել։

Ս. Գրիգորի գրաւոր աշխատութիւններէն ունինք, բաց ի ժողովրդեան բերնով խօսած եւ Ագաթանգեղոսի մեզի գրով աւանդած քրիստոնէական վարդապետութենէն, քանի մը ճառեր, Յաճախապա-

տամ ըսուած գրքին մէջ։ Իրեն կ՚ընծայուին նաեւ Հայոց կանոնագրքին մէջ եղող եկեղեցւոյ բարեկարգութեան վերաբերեալ քանի մը կանոններ, բայց առանց հիման։

7. *Ս. Ներսէս Մեծ*՝ Ս. Յուսկան թոռն եւ Աթանագինէսի որդին, ծնաւ չորրորդ դարուն սկիզբները։ Սկզբնական կրթութիւնն իր հաւուն խնամոցը տակ ընդունեցաւ, զորն որ ետքէն Կեսարիա աւելի եւս կատարելագործեց ամէն տեսակ ուսում սորվելով։ Անկէ Կոստանդնուպոլիս գնաց, ուր Ալպիոն անուն մէկուն աղջկան հետ կարգուելով՝ ծնաւ զՍ. Սահակ։ Հայրենիքը դառնալէն ետեւ, իր անդիւտ հանճարն ու սքանչելի ձիրքերը՝ զինքը շուտով մեծամեծ աշխարհային պատիւներու հասցուցին։ Արշակ թագաւորը զինքն իր սենեկապետն եւ բոլոր թագաւորական պալատան գործակալ ըրաւ։ Դեռ զինուորութեան մէջ եղած ատեն՝ Ներսէս ամէն տեսակ առաքինութեանց օրինակ էր, որմէ կրնայ մակաբերուիլ թէ ինչ աստիճանի հասած պիտ՚որ ըլլայ իր սրբութիւնը, երբ որ կաթողիկոս ընտրուելով՝ հասարակաց հայր եղաւ։ Փառէն կաթողիկոսին մահուանէն ետքը, երբ որ յաջորդ մ՚ընտրելու համար ժողովք կ՚ըլլար, ժողովականք միաբան խնդրեցին՝ որ Ս. Գրիգորի ցեղէն մէկը կաթողիկոս դրուի, եւ ամենուն հաւանութեամբ ընտրուեցաւ Ս. Ներսէս։ Ըստ սովորութեան Կեսարիա՝ Եւսեբիոս արքեպիսկոպոսէն ձեռնադրութիւն առած ժամանակ, Հոգւոյն սրբոյ շնորհքն իբրեւ աստուածային հաճութեան նշան՝ աղաւնւոյ կերպարանօք վրան իջաւ։ Հայաստան դառնալուն պէս իրեն յանձնուած հօտը բարեկարգելու ձեռք զարկաւ։ Աշտիշատ ժողով գումարելով՝ ժամանակին զեղծմանցը դէմ կանոններ հաստատեց։ Ամէն տեղ աղքատանոցներ ու հիւանդանոցներ շինել տուաւ, շատ վանքեր, եւ յունարէն ու ասորերէն սորվեցընելու դպրոցներ դրաւ։ Աս սուրբ հայրապետին Կոստանդնուպոլսոյ ժողովոյն (381) ներկայ գտնուիլը, ժամանակագրական համեմատութեամբ սուտ կ՚ելլէ։ Սակայն ասոր տեղ զՍ. Ներսէս 371ին կամ 372ին Ս. Բարսղի Կեսարիա գումա-

րած ժողովոյն մէջ կը գտնենք, ուր իր վեցերորդապետ-
ոին Հեռ՝ արեւմտեան եպիսկոպոսաց եւ ի մասնաւորի
Ս. Դամասոս Քահանայապետին արեւելեան եկեղե-
ցւոյն վիճակին վրայ տեղեկութիւն տալով, իրեն կը
դիմէ որ իր իշխանութեան առաւելութեամբն Ասիա-
ցւոց երկպառակութիւնը դադրեցնելու օգնէ։ Ս. Ներ-
սէս տասնուերեք տարի (360—373) իր հօտն իմաստուն
հոգւով ու հայրական սիրով կառավարելէն ետքը, Պապ
անառակ թագաւորէն թունաւորուելով մեռաւ։ Թէ-
պէտ սա իմաստուն Հայրապետէն քանի մը կանոննե-
րէն զատ՝ ուրիշ գրաւոր աշխատութիւն մը չունինք,
սակայն անժխտելի է՝ որ Հայաստան ուսում եւ դպ-
րութիւն տարածելու ունեցած ջանքերն պատճառաւ,
Հայոց ապագայ մտաւոր լուսաւորութեանը վրայ մեծ
ազդեցութիւն ունեցած է։ Հայ գրականութեան
ոսկեդարն անցնող երկու լուսաւոր ջահերը՝ Ս. Սահակ եւ
Ս. Մեսրոպ, իր ձեռնասուն աշկերտներն են։

8. *Ս. Սահակ Ա. Մեծ* Պարթեւ Հայրապետը՝
Սուրբ Ներսէսի որդին, Կոստանդնուպոլիս ծնաւ։ Իր
իմաստուն հօրն առաջնորդութեանը տակ, չէ թէ
միայն քրիստոնէի վայել կրթութիւն մ'ընդունեցաւ,
այլ նաեւ արտաքին գիտութեանց եւ առանձինն
Յունաց, Ասորւոց եւ Պարսից դպրութեանցը մէջ
քաջ հրահանգուեցաւ։ Ուսումնական կրթութիւնը
լմնցընելէն ետքը, եկեղեցական վիճակն ընդունե-
ցաւ եւ ազգին՝ բարիք ընելու նպատակաւ քանի աշա-
կերտներ ժողվելով, սկսաւ անոնց ուսումնական ու
բարոյական կրթութեանը պարապիլ։ Յամի 389ին
Ասպուրակէսէն ետքն՝ ընտրուեցաւ արժանաւոր յա-
ջորդ եւ ժառանգ Ս. Լուսաւորչին։ Բայց հազիւ թէ
կաթուղիկոսական աթոռն ելաւ, Շապուհ Պարսից
թագաւորն առանց իր հաւանութեանը կաթուղի-
կոսութիւնն առնելուն համար, զինքն աթոռէն ձգեց։
Շապուհին յաջորդն Արտաշիր՝ Հայ նախարարաց հա-
ճոյ ըլլալու համար՝ զՍ. Սահակ դարձեալ իր աթոռը
դարձուց։ Անկէ ետքը գրեթէ յիսուն տարուան կա-
թուղիկոսութեան ժամանակ, Ս. Մեսրոպայ աջա-
կցութեամբը, քրիստոնէութիւնը պայծառացընելու,

Հայերէն գրութիւնն եւ լեզուն մշակելու, դպրոցներ հաստատելու, աշակերտներ կրթելու, եւ ընդհանրապէս ազգին մէջ բարեպաշտութիւն եւ ուսում տարածելու ետեւէ եղաւ։ Մեծ հոգ ունէր նաեւ ազգին քաղաքական բարօրութեան վրայ, որ պատճառաւ քանի մ'անգամ Պարսից արքունիքը գնաց։ Բայց երբ որ նախարարներէն ոմանք Արտաշէս զեղծ թագաւորը Պարսից ձեռքը մատնել ուզեցին, Ս. Սահակ զիրենք այս վնասակար խորհրդէն ետ կեցընելու ջանաց. բայց անոնք թէ Արտաշէս թագաւորն եւ թէ զՍ. Սահակ իբրեւ Հռոմայեցւոց կողմնակից Վռամ Պարսից թագաւորին ամբաստանեցին։ Վռամ զՍ. Սահակ կաթողիկոսութենէն ձգեց եւ Պարսկաստան արգելեց, եւ հետզհետէ անարժան անձինք (Սուրմակ 429—430 ու Բրքիշոյ 430—432) կաթողիկոսական աթոռն հանեց։ Քանի մը տարի ետքը՝ նախարարաց մէկ մասին խնդրելովը, Ս. Սահակ Հայաստանի հոգեւոր կառավարութիւնը դարձեալ իր ձեռքն առաւ, հակառակաթոռ ունենալով Շմուէլ ասորին (432—438)։ Ասոր վրայ շատ չանցաւ Ս. Հայրապետն ազգին վրայ գալու ապագայ չարիքները գուշակելով՝ վախճանեցաւ Բլուր գեղն իր ծննդեան օրը (440)։ — Ս. Սահակ նաեւ իբրեւ մատենագիր Հայոց եկեղեցւոյն գլխաւոր պարծանքներէն մէկն է։ Նոյն միջոցին Ս. Մեսրոպայ եւ անոր աշակերտաց ձեռքով եղած թարգմանութեանց մէջ մեծ մասնակցութիւն ունենալէն զատ, առանձինն իրեն կ'ընծայուի հայերէն Աստուածաշնչին Հին Կտակարանին թարգմանութիւնը։ Մեծ արդիւնք ունի նաեւ Հայոց եկեղեցւոյն պաշտամունքը վայելչապէս կարգաւորելուն եւ ժամերգութիւնը պէսպէս աղօթքներով ճոխացընելուն համար։ Ունի նաեւ զանազան անձինքներու գրած քանի մը թղթեր։

9. *Ս. Մեսրոպ կամ Մաշթոց վարդապետը*՝ Մամիկոնեան անուանի ցեղէն ծնաւ 361 ին Տարօն գաւառին Հացեկաց գեղը։ Ս. Մեսրոպ բնութեան իրեն տուած զարմանալի հանճարն ընտիր դաստիարակութեամբ աւելի եւս կատարելագործեց։ Քիչ ժամանակուան մէջ Ասորւոց եւ Պարսից լեզուները սորվե-

ցաւ, եւ յունական դպրութեան մէջ շատ յառա-
ջացաւ: Իր այս բազմապատիկ հմտութեանցը համար՝
Ս. Ներսէս զինքն իր նօտարն ըրաւ, որ պաշտօնը մին-
չեւ նոյն Ս. Հայրապետին մահը վարեց: Զինուորա-
կան հրահանգաց մէջ վարժ ու ատենական դպրու-
թեանց մէջ կիրթ ըլլալով, Արշակ Գ.ին կամ Խոսրով
Գ.ին ժամանակ թագաւորական քարտուղարութեան
պաշտօնն ունէր: Սակայն աշխարհքիս ունայնութիւնն
եւ առանձնութեան ունեցած սաստիկ բաղձանքը, զին-
քը քիչ մը ետքը ամէն բան թող տալու եւ անապատ
քաշուելու ստիպեցին, ուր խստամբեր եւ ժուժկալ
կեանք մը սկսաւ անցընել: Քահանայ ձեռնադրուե-
լով՝ իր առանձնութիւնը թող տուաւ, եւ բոլոր հո-
գեկան ու մտաւոր զօրութիւնն եկեղեցւոյ օգտին
նուիրեց: Առաքելական հոգւով լեցուած՝ Գողթն
գաւառը, Սիւնեաց երկիրն, Աղուանք ու Վրաստան
պտըտեցաւ՝ հեթանոսութեան մնացորդներն անկէ ան-
հետ ընելու համար: Այս առաքելութեան գործը շա-
րունակեց Մեսրոպ մինչեւ Վռամշապուհին հինգերորդ
տարին (397), որ միջոցին Ս. Սահակայ քովը գալով, եր-
կուքը մէկտեղ ազգին լուսաւորութեանն աշխատելու
սկսան: Ս. Մեսրոպ՝ Հայաստանի զանազան կողմերն
ըրած ճամբորդութեանցը մէջ՝ շատ անգամ առիթ
ունեցած էր հայ մանկտւոյն ու ժողովրդեան վրայ
ցաւելու, վասն զի առաջինները զաջան կ'աշխատէին
օտար լեզուաց տառականին տակ ուսում առնելու,
իսկ վերջինները՝ աստուածային պաշտամունքէն եւ Ս.
Գրոց ընթերցուածէն օգուտ մը չէին կրնար քաղել,
ասորերէն լեզուին անտեղեակ ըլլալնուն, որ նոյն միջոցին
եկեղեցական պաշտամանց ընդհանուր լեզու էր եղած:
Այս չարեաց դարմանը միայն Հայերէն գիր գտնելով
կրնար ըլլալ, որուն գիւտին Մեսրոպ՝ Ս. Սահակայ եւ
ուրիշ գիտնոց ձեռնտուութեամբն երկայն ժամա-
նակ աշխատելէն ետեւ, վերջապէս Աստուծոյ օգնու-
թեամբն ի գլուխ հանեց (406): Գրոյն գիւտովը՝ ազ-
գային մատենագրութեան հիմը դրաւ Ս. Մեսրոպ,
որով իր հայրենեացն անզուգական երախտիք մ'ըրաւ
եւ անունը դարուց ի դարս անմահացուց: Այս գիւտը՝

Հայոց ազգին համար թէ կրօնական եւ թէ քաղաքա-
կան նկատմամբ մեծ նշանակութիւն ունեցաւ։ Բայց ա-
պարգեւը միայն Հայ ազգին վրայ չամփոփուեցաւ. գրաց
Վիրք եւ Աղուանք ալ իրենց լեզուին պատշաճ գի-
մ'ընդունեցան։ Գիրը գտնուելէն ետքը՝ թէ եկեղեցա-
կան ու թէ աշխարհական մեծամեծներն իրարու հե-
միացած, դպրոցներ հաստատելու, հայերէն լեզու-
սորվեցնելու, աշակերտներ կրթելու եւ հայերէ-
դպրութիւնը ծաղկեցնելու եռեւէ եղան։

Ս. Մեսրոպ իր ամենէն հանճարաւոր աշակերտ-
ները Յունաստան, Եգիպտոս եւ Ասորիք խաւրեց
որպէս զի անոնց լեզուն սորվելով, երեւելի մատեն-
գիրները հայերէնի թարգմանեն։ Աս աշակերտաց ձեռ-
քով Յունաց, Ասորւոց եւ ի մասնաւորի անոնց եկե-
ղեցւոյն Ս. Հարց եւ երեւելի վարդապետաց գործ-
քերը հայերէնի թարգմանուեցան, որ թարգմանու-
թեանց գոնէ մէկ մեծ մասը ցայսօր ունինք։ Նոյն ա-
տենուան երանելիք՝ ազգին ապագայ վիճակին իրենց
աչքին առջեւն ունենալով, իրենց անանկ ժառանգու-
թիւն մը թողուլ ուզեցին, որ քրիստոնէութեան հե-
ազգային գոյութեան ամենէն հզօր նեցուկն եղաւ։
Ափսոս որ կարճ եղաւ աս ոսկեղէն ժամանակը։

Աս միջոցիս թարգմանուեցաւ յունարէն եօթա-
նասնից թարգմանութեան վրայէն՝ Ս. Սահակայ ու Մես-
րոպայ եւ իրենց աշակերտաց գործակցութեամբը, հայ-
երէն Աստուածաշունչ մատեանը, որ իր հնութեան
համար շատ յարգի եւ պատուական է։ Անկէ ետքը
Ս. Մեսրոպ աջակից եղաւ Ս. Սահակայ իր ամէն գործ-
քերուն, եւ բոլոր մտադրութիւնն ուղղեց մէկ կողմա-
նէ Հայաստանէն հեթանոսութիւնը ջնջելու, եւ մէ-
կալ կողմանէ Հայոց եկեղեցւոյն ամեն մաքրութիւ-
ներէ ազատ պահելու։ Երբ որ վերջապէս 440ին Ս.
Սահակ մեռաւ, Ս. Մեսրոպ իրեն փոխանորդ ընտրուե-
ցաւ, բայց վեց ամիս ետքն ինքն ալ վախճանեցաւ
(441)։

Ս. Սահակայ եւ Մեսրոպայ աշկերտները՝ որոնք
առաջնին անուամբ թարգմանիչք կ'ըսուին, բազմա-
թիւ են. մենք հոս միայն անոնց համառօտ պատմու-

թիւնը կը գտնենք, որոնք թէ սրբութեամբ եւ թէ իմաստութեամբ երեւելի են, եւ Հայոց եկեղեցւոյն Ս. Հարց ու մատենագրաց կարգը կը դասուին։

10. *Եզնիկ Կողբացին* Ս. Սահակայ գլխաւոր աշակերտներէն եւ առաջին կարգի թարգմանիչներէն մէկն է։ Միջագետք ու Կոստանդնուպոլիս ըրած ճամբորդութեններէն դառնալէն ետքը, իր հայերէն, պարսկերէն, ասորերէն եւ յունարէն լեզուներուն մէջ ունեցած խորին տեղեկութիւնը, մեծ դաշտ մը բացին առջեւն ազգին նոյն ատեն ծագող մտաւոր լուսաւորութեան գործակից ըլլալու։ Եզնիկ՝ նոյն ատեն եղած սքանչելի թարգմանութիւններէն զատ, որոնց մէջ անտարակոյս ինքն ալ մեծ մասնակցութիւն ունեցած է, անունն անմահացուց առանձինն (հիմայ) Եղծ աղանդոց ըսուած մատենիկովը, որ որչափ ծաւալով փոքր՝ այնչափ յարգով մեծ է։ Աս ոսկեղինիկ մատեանը՝ ոչ թէ միայն իր մէջը բովանդակած աստուածաբանական ու փիլիսոփայական հմտութեանցը պատճառաւ նշանաւոր է, այլ նաեւ յատակ ու հոյակապ իմաստներուն եւ լեզուին յստակութեան եւ հայկաբանութեան [illegible] ճաշակին համար՝ դասական մատեաններուն առջինն է։ Մատենագրին միտքն էր ժամանակին աղանդաւորներուն եւ մանաւանդ կռապաշտից դէմ Հայաստանի մէջ զօրաւոր թումբ մը կանգնել։ Ուստի եւ վերոյիշեալ գիրքը չորս մաս բաժնուած է. առաջինը կը խօսի ընդհանրապէս հեթանոսաց դէմ. երկրորդը՝ Պարսից կամ կրակապաշտից դէմ. երրորդը՝ յոյն փիլիսոփաներուն դէմ, իսկ չորրորդը՝ Մարկիոնեան եւ Մանիքեցի աղանդաւորներուն դէմ։ Կը կարծուի՝ որ Եզնիկ իբրեւ Բագրեւանդայ եպիսկոպոս՝ Արտաշատու ժողովքին ներկայ գտնուած ըլլայ։ Ասկէ զատ բան մը պատմութիւնն իր վրայ չ՚աւանդեր. մահուան ինչպէս նաեւ ծննդեան տարին բոլորովին անծանօթ է։

11. *Ս. Եղիշէ վարդապետը*՝ Մեսրոպայ կրտսեր աշակերտներէն, որով եւ երկրորդ կարգի թարգմանիչներէն է։ Իր ուսումնական ընթացքն Աղեքսանդրիա ու Աթէնք կատարելէն ետեւ՝ Հայաստան դառնալով, քահանայական վիճակն ընդունեցաւ եւ քանի

մը տարի Վարդան սպարապետին քարտուղարն եղաւ։ Կը համարուի որ Ս. Եղիշէ Ամատունեաց եպիսկոպոս եղած եւ Արտաշատ գտնուող տասնուեօթն եպիսկոպոսներէն մէկն եղած ըլլայ։ Իր գրուածքներուն մէջ անուանի է Վարդանանց պատերազմին պատմութիւնը, զոր որ Դաւիթ Մամիկոնեան քահանային խնդրելովը գրեց ընտիր ոճով։ Աս գրքէն զատ ունինք նաեւ քանի մը խրատական կանոններ, մեկնութիւններ ու ճառեր։ Ս. Եղիշէ մեռաւ Ռշտունեաց գաւառն՝ առանձնութեան մէջ քաշուած։

12. *Ս. Մովսէս Խորենացին* երկրորդ կարգի թարգմանիչներէն մէկը։ Տուրուբերան գաւառին Խորէն կամ Խորոնք գեղը ծնաւ չորրորդ դարուն վերջերը։ Տղայութեան ժամանակ՝ Ս. Սահակայ եւ Մեսրոպայ աշակերտեցաւ, եւ նոյն ժամանակ ամէն տեսակ գիտութեանց կեդրոն համարուող քաղաքները՝ Եդեսիա, Աղեքսանդրիա, Հռոմ, Աթէնք ու Կոստանդնուպոլիս ութը տարի պտըտելով, զանազան ուսումներ սորվեցաւ։ Հայաստան դառնալէն ետքը՝ Եղնիկայ տեղ Բագրեւանդայ եւ Արշարունեաց եպիսկոպոս ընտրուեցաւ։ Երկայն ժամանակ իր հօտն ամենայն բարեկարգութեամբ եւ իմաստութեամբ կառավարեց, եւ խոր ծերութեան հասակի մէջ մեռաւ։ Իր բազմաթիւ երկասիրութեանց մէջէն երեւելի են՝ Հայոց պատմութիւնը, աշխարհքիս սկիզբէն մինչեւ իր ատենը. Համառօտ աշխարհագրութիւնն եւ ուրիշ մեկնութիւններ, ճառերն ու թղթերը. Պիտոյից գիրքն ալ ոմանք իրեն կ'ընծայեն։

13. *Դաւիթ փիլիսոփային* վարուց պատմութեան վրայ շատ քիչ բան գիտենք. իբրեւ ստոյգ գիտցածնիս աս է՝ որ ինքն ալ Ս. Մեսրոպայ կրտսեր աշակերտներէն էր։ Տղայութեան ժամանակն Աթէնք, Աղեքսանդրիա եւ Կոստանդնուպոլիս յունաց մատենագրութեան եւ լեզուին մէջ քաջ կրթուելով, իմաստութեամբ երեւելի հանդիսացաւ եւ Անյաղթ անուամբ փառաւորուեցաւ։ Մահուան տարին անծանօթ է։ Բազմաթիւ թարգմանութիւններէն զատ՝ ունինք շատ ճառեր եւ փիլիսոփայական գրուածքներ։

## 42.

### Բ. Արեւմտեան Եկեղեցւոյ Ս. Հարք:

1. *Ս. Ամբրոսիոս*՝ ազնուական Հռոմայեցւոյ մը որդին, 340ին Տրիէր քաղաքը ծնաւ: Հօրը մահուանէն ետքը՝ որ Գաղղիայի կուսակալ էր, Հռոմ եկաւ, ուր իր հանճարն ու ազնիւ սիրտը զինքը շուտով աշխարհքիս պատիւներուն հասցուցին: Իբրեւ արքունի գործակալ Միլան եղած ատեն, օր մը երբ որ եպիսկոպոսի ընտրութեան համար եկեղեցին ժողված ուղղափառաց եւ արիանոսաց մէջ մեծ աղմուկ մ'ելաւ, Ամբրոսիոս բեմը ելլելով՝ ժողովուրդը յորդորեց որ հանդարտին: Նոյն միջոցին յանկարծ տղու մը ձայնը լսուեցաւ, որ կ'աղաղակէր. Ամբրոսիոս թող եպիսկոպոս ըլլայ, եւ շուտ մը ամէնքն ուրախութեամբ այս ձայնին միաբանեցան: Այսպէս Ամբրոսիոս՝ որ դեռ երախայ էր, թէեւ շատ դէմ դրաւ, սակայն եւ այնպէս եպիսկոպոս ընտրուեցաւ: Ամբրոսիոս իբրեւ եպիսկոպոս դժուարին ատիթներու մէջ՝ որ իր ժամանակը չէին պակսեր, ճշմարիտ առաքելական հոգւով մեծամեծ բաներ գործեց. Նոյն իսկ թագաւորաց առջեւ ճշմարտութիւնը համարձակ քարոզեց: Թէոդոս կայսրը՝ Թեսաղոնիկէ իր արքունի գործակալին եղած նախատանաց վրէժը զարհուրելի արիւնհեղութեամբ մը առնելէն ետեւ, երբ որ օր մը Միլան եկեղեցի գալ կ'ուզէր, Ամբրոսիոս դրան քովը դիմացն ելաւ ու ըսաւ. "Արիւն թափող մարդ մը, սրբութեան մէջ մաս չունի,,: կայսրն իր եպիսկոպոսին խօսքը յարգութեամբ մտիկ ըրաւ, եւ խոնարհութեամբ ինք զինքն երկարատեւ ու ծանր ապաշխարանաց տակ ձգեց: Ամբրոսիոս նաեւ իր հոգեշահ ու եռանդնալից ճառերովը ժողովրդեան վրայ զարմանալի ազդեցութիւն մը կ'ընէր, եւ շատերուն առաքինութեան ճամբուն կ'առաջնորդէր. ի մասնաւորի կուսական զգաստութիւնը կը յանձնէր ամէնուն: Ս. Ամբրոսիոս մեռաւ 397ին, 22 տարի եպիսկոպոսութիւն ընելէն ետքը:

Ս. Ամբրոսիոս իր գրուածքներովն ալ եկեղեցւոյ

առջեւը մեծ արդիւնք ունի: Երկասիրութեանցը մէջ երեւելի են իր հոգեւոր ու բարոյական գրութիւնները, եւ առանձինն Յաղագս պարտուց պաշտօնէից գիրքը, նոյնպէս Կրատիանոսեան, Հաւատոյ ու Հոգւոյն Սրբոյ վրայ շինած վարդապետական գրութիւնները: Մեծ արդիւնք ունի նաեւ արեւմտեան եկեղեցւոյ պաշտամունքն ու երգերը կարգի դնելուն համար: Իրեն կ'ընծայուի ի մասնաւորի Զքեզ Աստուած գովաբանեմք օրհնութեան երգը:

2. *Ս. Աւգոստինոս*՝ արեւմտեան եկեղեցւոյ ամենէն մեծ վարդապետը՝ 354ին Նումիդիայի Տագաստէ քաղաքը երեւելի ազգատոհմէ աշխարհք եկաւ: Թէեւ իր մայրը Ս. Մոնիկա, քրիստոնէական վարդապետութեան սերմը մատաղ հասակին մէջ Օգոստինոսի սիրտը տնկած էր, բայց դժբախտութեամբ ուշ յառաջ եկաւ: Միտքը շատ հասունցաւ, բայց սիրտն անկարգ կեաց մէջ ընկղմած մնաց: Ճշմարտութեան ունեցած ծարաւէն թելադրուած՝ Մանիքեցւոց աղանդն ընդունեցաւ, եւ թէպէտ ութը տարի անոր մէջ մնաց, սակայն սիրտը գոհ չեղաւ: Անկէ ետքն իր. ծննդեան տեղը Կարքեդոն ու Հռոմ մեծ համբաւով քերականութեան եւ ճարտասանութեան դասախօսութիւն ըրելէն ետեւ, երեսուն տարւան հասակին մէջ իբրեւ ճարտարախօսութեան ուսուցիչ Միլան կանչուեցաւ: Հոն Ս. Ամբրոսիոսին հետ ըրած յաճախ տեսութիւնները, եւ ի մասնաւորի անոր քարոզները մտիկ ընելը՝ վրան մեծ ազդեցութիւն ըրին, եւ քրիստոնէական կրօնին ճշմարտութիւնն սկսաւ կամաց կամաց միտքին մէջ տեղի գտնել: Երկարատեւ ու դժուարին ներքին կռուէ մը ետքը, ամէն տարակոյսները փարատեցան եւ 387ին Զատկին օրը Ս. Ամբրոսիոսէն մկրտուեցաւ: Աստուծոյ շնորհօքը վերստին ծնանելէն ետքը՝ հայրենիքը դարձաւ, միտքը դնելով՝ որ հոն աստուածպաշտութեամբ ու գրաւոր աշխատութեանց պարապելով օրերն անցընէ: Աս միջոցիս շատ գրքեր շարադրեց, որոնք անունն ամէն կողմը համբաւեցին: Քիչ մը ետքը Հիպպոն քաղաքն երթալով, տեղւոյն Աւրելիոս եպիսկոպոսէն բռնադատուած՝ 391ին քահանայ ու 395ին

իրեն աթոռական եպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Անկէ ետքն իր անխոնջ գործունէութիւնն ուրիշ նպատակ չունէր, բայց եթէ Աստուծոյ փառքն եւ սուրբ եկեղեցւոյ պայծառութիւնը։ Իբրեւ եպիսկոպոս՝ իր կղերին հետ կ'աղօթէր եւ անձամբ կ'աշխատէր նորընծայ քահանաները գիտութեան ու հոգւոց փրկութեան հարկաւոր եղած բաներու մէջ կրթելու։ Ժողովրդեան բարւոյն ունեցած եռանդը՝ յոգնիլ չէր գիտեր. ինչ որ խնայութեամբ կրնար աւելցնել՝ եկեղեցեաց շէնութեան ու աղքատաց կը գործածէր։ Վանական կենաց հաստատութեան եւ զարգացման ալ շատ աշխատեցաւ, եւ իբրեւ Հիպպոնի եպիսկոպոս 430ին Օգոստոս 28ին վախճանեցաւ։

Իր անհամար գրաւոր աշխատութիւնները՝ որոնք նշանաւոր են ընդարձակ հմտութեամբ, գերազանց հանճարով եւ արտեւանդն բարեպաշտութեամբ, բովանդակ եկեղեցւոյ մէջ տարածուեցան եւ իր անունն անմահացուցին։ Առանձինն յիշուելու արժանի են. 1. Առանձնախօսութիւնք եւ Հոգւոյ անմահութեան, Հաւատոյ օգտին, Ճշմարիտ կրօնք ու Մանիքեցւոց բարուց վրայ գրած ճառերը։ 2. Քրիստոնէական վարդապետութեան վրայ չորս գիրք, որոնց մէջ քրիստոնէութեան ամէն վարդապետութիւնները կը մեկնէ, եւ 15 գիրք Երրորդութեան վրայ։ 3. Դոնատեանց դէմ գրածները, ի մասնաւորի Մկրտութեան ու Եկեղեցւոյ միութեան վրայ։ 4. Պեղագեանց դէմ գրած բազմաթիւ գրուածքները, որոնց մէջ շատ ընտիր են՝ Մեղաց թողութեան, Քրիստոսի շնորհաց, Սկզբնական մեղաց եւ Յարատեւութեան շնորհաց վրայ գրած ճառերը։ 5. Վասն քաղաքին Աստուծոյ գործքը 22 գրոց մէջ, որ քրիստոնէութեան ընդարձակ ու հիմնական ջատագովութիւն մըն է։ 6. Վերջապէս 13 գիրք Խոստովանութեան, որուն մէջ ճշմարիտ խոնարհութեամբ եւ զղջացեալ անձնուրացութեամբ՝ կը պատմէ իր պատանեկութեան անկարգութիւնները։

3. *Ս. Յերոնիմոս*՝ Դալմատիայի Ստրիդոն քաղաքը ծնած է 331ին։ Պատանեկութեան ժամանակ Հռոմ ինք զինքը գեղեցիկ ուսմանց տուաւ, բայց ինչ-

պէս ինքն ալ կը խոստովանի՝ հին աշխարհքիս հրապուրանացը չկրցաւ ըստ բաւականի դէմ դնել: Յակոյն ետքէն համոզուելով, որ Քրիստոսէ զատ ամէն բան ընդունայնութիւն է, երկրաւոր զուարճութիւններէն հրաժարեցաւ ու Ասորիքի Քաղկիս անապատը քաշուելով, շատ տարի իբրեւ ճգնաւոր խիստ կեանք մը վարեց: Յամի 378ին անկէ Անտիոք երթալով՝ հոն քահանայ ձեռնադրուեցաւ, եւ քիչ մը ետքը Կոստանդնուպոլիս գնաց՝ ուր նոյն միջոցին կը գտնուէր Ս. Գրիգոր Նազիանզացին: Քանի մը տարի վերջը Դամասոս Քահանայապետը զինքը Հռոմ կանչեց, եւ իրեն յանձնեց որ Նոր Կտակարանին նոր լատին թարգմանութիւն մ'ընէ: Աս Քահանայապետին մահուանէն ետքը, Երոնիմոս աղմկալից մայրաքաղաքին անհանգիստ կեանքը, վանական խցկան հետ փոխեց եւ Բեթղեհէմի քով առանձնացաւ: Հոս անցուց իր կեանքը մինչեւ մահը, որ պատահեցաւ 420ին եւ շատ գրաւոր աշխատութիւններ թողուց, որոնք անուանն եկեղեցւոյ մէջ համբաւաւոր ըրին: Գլխաւորաբար իբրեւ արեւելեան լեզուաց հմուտ անձ եւ Ս. Գրոց լատիներէն թարգմանութեան սրբագրիչ, եկեղեցւոյ առջեւը մեծ արդիւնք ունի: Իր գրուածքներն երեւելի են իմաստից լիութեամբ ու լեզուի յստակութեամբ: Եկեղեցւոյ հին սովորութեանց վրայ ունեցած հմտութիւնն ի մասնաւորի կ'երեւայ Եկեղեցական մատենագրաց վրայ շինած գործքին, եւ Հին ու Նոր Կտակարանին եբրայեցի յստակ անուանց ստուգաբանութեան վրայ շինած աշխատասիրութեանը մէջ: Շատ յարգի են նաեւ մարգարէութեանց, աւետարաններուն եւ առաքելական թղթոց տուած մեկնութիւնները:

4. Ս. Լեոն Ա. Մեծ՝ 440ին քահանայապետական աթոռը նստաւ, եւ արիութեամբ ու իմաստութեամբ եկեղեցին կառավարեց: Իր անձնական ճոխութեամբն երկու անգամ Հռոմ քաղաքն ազատեց, մէյմը Ատտիղասի ու մէյմ'ալ Գենսերիկոսի ձեռքէն, որոնք Հռոմի վրայ եկած էին: Իր անունը կը փայլէ Մանիքեցւոց, Պեղագեանց եւ ի մասնաւորի Եւտիքեականաց կռիւներուն մէջ: Ինք առաջին Քահանայա-

պետն է, որ եկեղեցւոյ՝ գրաւոր աշխատութիւններ (96 ճառ ու 141 նամակ) ձգած է։ Ս. Լեւոն մեռաւ 461ին։

5. *Ս. Գրիգոր Ա. Մեծ* (590—604) քահանայապետը, դժուար ժամանակներու մէջ՝ անխոնջ գործունէութեամբ արեւմուտք եւ արեւելք, հերետիկոսաց դէմ հաւատքն ու եկեղեցական հրահանգը պաշտպանեց։ Ի մասնաւորի արեւմտեան եկեղեցւոյ պաշտամունքը կարգաւորեց եղած երգերն ու շարականները ժողվելով, անոնց վրայ նոր աւելցնելով (Գրիգորեան երգ), եւ տօներուն շրջանին համեմատ բաժնելով։ Այս երգերն իրենց վայելչութեանն ու պատշաճութեանը համար, կամաց կամաց բովանդակ արեւմուտք ընդունուեցան։ Ս. Գրիգոր թէեւ գործքերուն շատութենէն նեղուած եւ մարմնոյ տկարութենէն ընկճած էր, սակայն եւ այնպէս շատ աստուածաբանական գրքեր շարադրեց, որոնցմով իր ժամանակին ու յաջորդ դարերուն վրայ փրկաւէտ ազդեցութիւն մ'ունեցաւ։ Քահանայապետաց մէջ ինք առաջինն եղաւ, որ "Ծառայ ծառայից Աստուծոյ" տիտղոսն առաւ։

---

## ՀԱՏԱԾ Բ.

### ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

**43.** *Եկեղեցւոյ ներքուստ զարգանալն եւ աշխարհական տէրութեան հետ ունեցած յարաբերութիւնը։*

Քրիստոս Տէրն մեր՝ իր եկեղեցւոյն յօրինուածութեան հիմնական ծրագիրը միայն շինած էր, որն որ յետնեայց դարուց պիտ՚որ զարգանար ու կատարելագործուէր։ Այս զարգացումն՝ թէեւ առաջին շրջաններն մէջ արդէն սկսած էր, բայց շատ կամաց յառաջանալ կ՚ըլլար, ինչու որ եկեղեցին նոյն միջոցին անընդհատ հալածանաց մէջ ըլլալով, ամէն բանէ յառաջ իր գոյութիւնը պահելու կը ջանար։ Եւ որովհետեւ հաւատացեալք աւանդութեամբ ընդունած վար-

դաւանութիւնը հաւատարմութեամբ կը պահէին, անոր համար թէ իրենց առաջնորդաց եւ թէ իրարու հետ սերտ միութեան մէջ կ'ապրէին: Իսկ աշխարհական ազատութեան հետ եկեղեցին որոշ յարաբերութեան մը մէջ չէր կրնար մտնել, որովհետեւ աշխարհական ազատութիւնը զեկեղեցին չէր ճանչնար, մանաւանդ թէ կը հալածէր: Բայց երկրորդ ժամանակի շըրջանին սկիզբը՝ ասոր ամէն բան բոլորովին կերպարանափոխ եղաւ: Քրիստոնէութիւնը՝ Կոստանդիանոսի ձեռքով ազատութեան կրօն ըլլալէն ետքը, եկեղեցին ազատութեամբ սկսաւ թէ ներքնապէս եւ թէ արտաքնապէս զարգանալ:

1. Եկեղեցւոյ ներքին զարգացման նկատմամբ՝ կը տեսնենք որ Քրիստոսէ գրուած եկեղեցւոյ Գլխոյն գործունէութիւնը միշտ աւելի որոշ ու պայծառ մէջտեղ կ'ելլէր, որուն գլխաւորապէս պատճառ եղան այս շրջանին մէջ ելած հերձուածներն ու մոլորութիւնները: Արիանոսներէ հալածուած եպիսկոպոսները Հռոմայ Քահանայապետին՝ իբրեւ եկեղեցւոյ գերագոյն պաշտպանին կը դիմէին. աստուածաբանական խնդիրներու մէջ՝ Հռոմայ եպիսկոպոսին կարծիքը կը հարցունէր. Հռոմայ Քահանայապետաց կամ անձամբ կամ իրենցմէ խրկուած հրեշտակներու ձեռքով ընդհանուր ժողովներու մէջ գահերէց նստելու եւ անոնց առաջնորդելու իրաւունքն, ընդհանուր եւ ամէնէն առանց հակառակութեան ընդունուած էր: Վերջապէս հաւատոյ վերաբերեալ որոշմունքները միայն Հռոմայ Քահանայապետաց հաստատութեամբը կատարեալ զօրութիւն եւ հեղինակութիւն կը ստանային: Նոյն իսկ հերետիկոսներէն ոմանք՝ ինչպէս Նեստոր ու Եւտիքէս, Հռոմայ Քահանայապետաց գլխաւորութիւնը ճանչցան, ջանալով զիրենք իրենց մոլորութեանց կողմը վաստըկիլ, որով ամէն բան լմնցած կը համարէին: — Քահանայապետը՝ եկեղեցւոյ միութեան երեւելի ներկայացուցիչն էր, որուն հետ ամէն եպիսկոպոս հաղորդութեան մէջ պիտ'որ ըլլար: Նոյնը կը հաստատեն նաեւ այս շրջանին անուանի Ս. Հարքը: Անոր համար, կ'ըսէ, Ս. Յերոնիմոս, պատասխանեցին

մէջ ընդունեցաւ, որպէս չէ եղած դարձեալ՝ հերձուա-
ծոյ անէն պատճառ մեծերէն վերնայ։ Պետրոսի աթոռոյն
հետ կը հաղորդակցիմ. ով որ Հռոմէական եկեղեցւոյ հետ
կապուած չէ՝ եկեղեցիէն դուրս է։ Նոյնպէս Ս. Աւգոս-
տինոս կը գրէ. Հռոմայ քաղաքացին՝ համօրէն եկեղեցւոյ
քաղաքացին է. եթէ մէկն ամբողջոյն աշխարհին թշնամի
չ'ըլլար, հապա անէն մասը զերծ է ընդհանուր միաբանու-
թեամբ ընդունուի եւ է փոքր մնէ։ Ով որ Հռոմէն դատա-
պարտուած է, ընդհանուր եկեղեցիէն դատապարտուած է.
Հռոմ խօսեցաւ, դատը լմնցաւ. Երանի՜ թէ մոլորութիւնն
ալ վերջ առնուր։

Ուրիշ կողմանէ եպիսկոպոսներն ալ իրենց թե-
մերուն՝ այսինքն քաղաքներու եւ գեղերը գտնուած
համայնքութեանց հետ սերտիւ կապուած էին։ Ամէն
համայնքութեան գլուխը՝ քահանայ մը կը կենար,
որուն՝ եպիսկոպոսը համայնքութիւնը կառավարելու
պէտք եղած իշխանութիւնը կու տար։ Այսպէս եկե-
ղեցւոյ ներքին սահմանադրութիւնը կատարեալ էր.
ամէն հաւատացեալ իր եպիսկոպոսին եւ ամէն եպիս-
կոպոս Քահանայապետին հետ անձուկ միութեան ու
սերտ յարաբերութեան մէջ էր։ Եպիսկոպոսաց ըն-
տրութեան նկատմամբ՝ հին սովորութիւնը դեռ կը
պահուէր, այսինքն եպիսկոպոսները կ'ընտրուէին ե-
պիսկոպոսներէն՝ խորհրդակցութեամբ կղերին ու մաս-
նակցութեամբ ժողովրդեան։ Արդէն անդին եպիսկոպո-
սաց ընտրութեան մէջ մտած անկարգ ազդեցութիւն-
ները, սինոդոսք կը ջանային իմաստուն կանոններով
ըստ կարի խափանել։ — Քահանայապետին ընտրու-
թիւնը՝ աշխարհական իշխանութենէն կը հաստատուէր։

2. Եկեղեցւոյ առ արտաքս զարգացումը յայտնի
տեսնուեցաւ, որ այս ժամանակի շրջանին մէջ՝ եկե-
ղեցին տէրութեան հետ ազատութեամբ ու անկախ
սկսաւ վարուիլ, որն որ առաջին երեք դարերուն մէջ՝
ժամանակին յարաբերութեանց պատճառաւ անկա-
րելի եղած էր։ Աս առեն աշխարհական իշխանութիւնը՝
եկեղեցին ճանչցած ըլլալով, տէրութեան ու եկեղե-
ցւոյ մէջ բարեկամական յարաբերութիւն մը կար։
Տէրութիւնն եկեղեցւոյ նիւթական պաշտպանութիւն

կ՚ընէր, եկեղեցին ալ տէրութեան Թիկունք կ՚ըլլար ժողովուրդը յորդորելով՝ որ անոր օրէնքները մեծարէ ու պահէ: Ազատ գոյութեան օրինաւոր իրաւունքը, զոր որ եկեղեցին այս միջոցիս սկսած էր վայելել, ուրիշ իրաւունքներ ալ իր մէջը կը բովանդակէր, ինչպէս է ինչք ստանալու իրաւունքը, եկեղեցականաց անձնական ծառայութենէ ազատ ըլլալը, եկեղեցականաց առանձին դատաստանարան ունենալը, եպիսկոպոսաց քաղաքական իրողութեանց վերաբերեալ խնդիրներու մէջ ալ իրաւասութիւն բանեցընելը՝ երբոր եկեղեցականք կամ աշխարհականք իրենց դիմելու ըլլային:

Կոստանդիանոս առաջին քրիստոնեայ կայսրը, եկեղեցւոյ ու տէրութեան մէջ եղած յարաբերութիւնն ասանկ ըմբռնած էր: Ինք եկեղեցին իր արտաքին գործողութեանցը մէջ կը պաշտպանէր, ինչպէս Նիկիայի ժողովոյն մէջ յայտնած էր: Բայց դժբախտութեամբ՝ յաջորդներէն շատերն իր օրինակին չհետեւեցան. կամ աստուածաբանական վէճերու մէջ խառնուելով, կամ կրօնն իբրեւ փառասիրութեան ու քաղաքականութեան նիւթ գործածելով, եւ կամ եկեղեցական ու քաղաքական խնդիրներն իրարու հետ շփոթելով, իրենց սահմանէն դուրս օտարին իրաւանցը ձեռնամուխ եղան, որմէ ի վնաս կրօնից ու բարուց մեծ շփոթութիւններ ծագեցան:

## 44. Եկեղեցականաց անկնութիւնը.

Եկեղեցականաց ամուրի կեանք անցընելու պարտքը (անկնութիւնը) յաստուածային օրինաց չէ, հապա յեկեղեցական օրինաց:

Ա. Գիրքն՝ առաքելոց ընտանեկան յարաբերութեանցը վրայ մեզի շատ քիչ բան աւանդելով, այնչափ միայն գիտենք, որ Պետրոս առաքեալն ամուսնացած էր, իսկ Պօղոս ու Յովհաննէս առաքեալները մինչեւ իրենց մահը կուսակրօն կեանք անցուցին: Առաքեալք եպիսկոպոսութեան մէջ իրենց յաջորդներէն կը պահանջէին, որ հաւատոյ մէջ հաստատուն, հիմնովին ուսեալ եւ ուրիշներուն ալ սորվեցընելու կարող

ըլլան, եւ ի վեր քան զամենայն անբիծ ու անարատ վարք ունենան (Բ. Տիմ. Բ. 2։ Տիտ. Ա. 7 — 9)։ Եւ որովհետեւ այս ամէն սեպհականութիւններն ունեցող ամուրի մարդիկ նոյն միջոցին շատ չկային, անոր համար ամուսնացեալք ալ կ'ընտրուէին, բայց անոնք միայն որ մէկ անգամ աշխարհք մտած էին, ինչու որ առաջին կնոջ մահուանէն ետքը, երկրորդ անգամ ամուսնանալը, անժուժկալութիւն համարուած էր (Ա. Տիմ. Գ. 2. Տիտ. Ա. 7)։

Նոյն սովորութիւնը մնաց եկեղեցւոյ մէջ առաքեալներէն ետքն ալ։ Հասարակօրէն ամուրի անձինք եպիսկոպոսական աստիճանին կ'ընտրուէին, բայց ի հարկաւորութեան կարգուածներ ալ կ'ընդունուէին, այսինքն անոնք որ առաջին ամուսնութեան մէջ կ'ապրէին եւ կը խոստանային իրենց ամուսնոյն մահուանէն ետքն ամուրի մնալ։ Այսպէս քահանայական վիճակին մէջ ամուրի կեանք անցընելու սովորութիւնն երթալով եկեղեցւոյ մէջ ընդհանուր ընդունելութիւն գտաւ։ Եւ ինչպէս կրնար ալ այլապէս ըլլալ։ Ըստ Ս. Գրոց (Մատթ. ԺԹ. 12. Ա. Կորնթ. Է. 8 — 32. Յայտն. ԺԴ. 3 — 4) կուսութիւնն առանձին գերազանցութիւն մ'ունի, եւ եկեղեցական պատմութեան վկայութեանն նայելով ընդհանրապէս ժուժկալութիւնն եւ ի մասնաւորի կուսակրօն սրբութիւնը՝ նախնի քրիստոնէից մէջ մեծ յարգ ու պատիւ ունէր, որուն համար բազմաթիւ քրիստոնեայք ամուրի կեանքը կ'ընտրէին (Յուստ. Թղ. Ջատ. Ա. 15). արդ ինչպէս կարելի էր որ եկեղեցականք իրենց օրինակաւն քրիստոնեաներէն վար մնային։

Սոզոմենոսի ու Սոկրատէսի պատմութեան նայելով, Նիկիայի ընդհանուր ժողովոյն մէջ առաջարկութիւն եղաւ, որ օրէնք մը դրուի՝ որուն զօրութեամբ նոյն իսկ ձեռնադրութենէ յառաջ ամուսնացած եկեղեցականաց՝ ամուսնական կեանքը շարունակելն արգիլուի, բայց Պափնուտիոս եպիսկոպոսին խրատին հետեւելով, որ կ'ըսէր թէ հին սովորութիւնը պէտք է պահել, աս խորհրդէն ետ կեցան։ Բայց անկէ ետքն եկեղեցին միշտ կը ջանար՝ որ չկարգուած անձինք

եպիսկոպոս ու քահանայ ձեռնադրութիւն, որ բաղձանքին վերջապէս հասաւ չորրորդ դարուն վերջերը։ Այնպէս որ Ս. Յերոնիմոսի եւ Ս. Եպիփանու ժամանակ քահանայից անկնութիւնն արդէն արեւմուտք ընդհանուր տարածուած ու խորապէս հաստատուած էր։ Անկէ ետքը տրուած օրէնքները, միայն անոր պահպանութեան կը նայէին, որուն առանձինն հոգ տարին Իննովկենտիոս Ա. (402 — 417), Լեւոն Մեծ Ա. (440—461) եւ ի մասնաւորի Գրիգոր Է. Քահանայապետը, որ եկեղեցւոյ խանգարած հին հրահանգը դարձեալ նորոգեց։ Այսպէս արեւմուտք. իսկ արեւելք՝ մանաւանդ Տրուղղեան յունական ժողովէն ետքը (692), որ միայն եպիսկոպոսներէն կուսութիւն կը պահանջէր, իսկ քահանայից՝ ձեռնադրութենէ յառաջ ամուսնանալը թոյլ կու տար, յառաջուան սովորութիւնը շարունակուեցաւ եւ մինչեւ ցայսօր մնաց։

Եկեղեցւոյ ասոր մէջ այս ընթացքը բռնելուն գլխաւոր պատճառները հետեւեալներն են.

1. Եկեղեցին կը բաղձայ՝ որ քահանայք՝ որոնց ամէնէն նուիրական պաշտօնները յանձնուած են, ինչպէս է Ս. Պատարագի զոհը ու խորհրդոց մատակարարութիւնը, ամուսնական վիճակին երկրաւոր հաճութիւններէն կամաւ հրաժարելով, բարձրագոյն կատարելութեան ձգտելու փոյթ եւ ջանք ունենան։

2. Եկեղեցին կ՚ուզէ որ քահանայք՝ իրենց կոչման պարտքերուն, այսինքն վարդապետութեան, քարոզութեան եւ շնորհաց միջնորդներուն՝ մանաւանդ ապաշխարութեան խորհրդոյն մատակարարութեանն անբաժին զօրութեամբ ու անզբաղ միտք պարապին։

3. Եկեղեցին՝ կղերականները կուսական կենաց պարտաւորելովը, կ՚ուզէ եկեղեցական վիճակը աշխարհական վիճակէն անկախ ընել։ Ինչու որ քահանան ընտանեաց կապով աշխարհքիս հետ կապուելուն պէս, ինք զինքը զանազան պարտաւորութեանց տակ կը ձգէ, որոնք դիւրաւ իր վիճակին յարգն ու պատիւը կրնան նուաստացընել, եւ կամ գէթ իր կոչման փութաջանութեանն արգելք ընել։ — Կուսութեան պահպանութիւնն՝ եկեղեցին շնորհաց վարդա-

պետութեանը վրայ կը հիմնէ, որուն համաձայն՝ Աստուած ժուժկալութեան շնորհքը չի զլանար անոր, որ զանիկայ իրմէ սրտանց կը խնդրէ։

## 45. Վանականութեան սկիզբն ու նպատակը։

Վանականութիւնն՝ որ այս շրջանին մէջ շատ զարգացաւ, քրիստոնէութեան ներքին էութենէն յառաջ եկած հաստատութիւն մըն է, որն որ անձնուրացութեան ու մահացուցման ճամբով՝ մարդուն իր վախճանին՝ այսինքն կրօնական-բարոյական կատարելութեանը հասնելու կ'առաջնորդէ, եւ վերջապէս ատենոք ըսելու համար քրիստոնէութեան ծաղիկն է։ Այն քրիստոնեայ՝ որ անխափան երկնային կեանք ապրելու համար, աշխարհքիս կապերէն ինք զինքը կ'անջատէ, կրնայ ըստ ընդարձակ իմաստի վանական կարգին վերաբերիլ, որով կրօնաւորութեան սկիզբը՝ քրիստոնէութեան սկզբան հետ միակերպ կ'իյնայ։ Ինչու որ արդէն շատ կանուխ ժամանակներ, քրիստոնեայից մէջ կը գտնենք այնպիսիներ՝ որոնք Քրիստոսի սիրոյն համար իրենց ստացուածքէն հրաժարելով, ամուրի կեանք կ'անցընէին, եւ իրենց կենաց հարկաւոր ապրուստը ձեռագործով կը հոգային։ Ասոնք ճգնաւոր կը կոչուէին, մարդկան ընկերութեան մէջ կ'ապրէին եւ կրօնաւորական ուխտ չունէին։ Սակայն ալ երկրորդ շրջանին մէջ՝ վանականութեան եղանակն աւելի եւս արծարծեցաւ. գլխաւորաբար անոր համար՝ որ վանական կեանքը, ճիշդ ընդդիմադրականներն էր բազմութիւն աշխարհասէր քրիստոնէից մեղկ եւ ցուրտ զգածմանցը, որոնք կամ ժամանակին պարապաշտներէն առնուած եկեղեցի մտած եւ կամ վերը յիշած մոլորութեանց ու հերձուածոց մէջ ինկած էին. Եգիպտոսի՝ ուր ամենէն աւելի ծաղկեցաւ էր վանականութիւնը, բազմաթիւ անձինք քաղաքներն ու գեղերը թող տալով անապատ կը քաշուէին։ Ասոնք Անապատական, Միայնակեաց կամ Վանական կը կոչուէին, եւ այսպէս ճգնաւորութենէ՝ կամաց կամաց վանականութեան կարգը յառաջ եկաւ։

Վանական կենաց Հայր կը համարուի Ս. Անտոն, որ վերին Եգիպտոսի Քոմա գեղը հարուստ ծնողքներէ ծնած է (251)։ Քրիստոսի այն խօսքէն յորդորուած թէ. Եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զինչ քո, եւ տուր աղքատաց (Մատթ. ԺԹ. 21), բոլոր ունեցածը բաշխեց եւ հեռու անապատ մը առանձնանալով, սկսաւ աղօթից պարապիլ եւ ձեռագործով ապրուստը հոգալ։ Կերակուրն աղ ու հաց էր, իսկ ըմպելիքը ջուր, եւ փսիաթի կամ պարզ երկրի վրայ կը պառկէր։ Իր աստուածահաճոյ կեանքն ու առաքինի վարուց օրինակը՝ շատերուն իրեն նմանող ըլլալու յորդորեց, որով վանական կեանքն Եգիպտոս շատ պայծառացաւ։ Ս. Անտոն մեռաւ 356ին 105 տարեկան։ Իր խօսքերէն մէկ քանին՝ զորոնք պատմութիւնը մեզի կ'աւանդէ, կը ցուցնեն որ սովորականէ աւելի հանճար ալ ունէր։

Պաքոմիոս՝ Ս. Անտոնին աշակերտն 325ին Թեբաիդէ առանձին բնակող ճգնաւորները, մանաւանդ կանոնաց տակ միաբանութեան ժողովեց, որով բուն վանական կենաց հիմնադիրն եղաւ։ Այսպէս եղան Վանքերը կամ Մենաստանները, որոնց մէջ միայն փորձուած ու ընտիր անձինք կ'ընդունուէին։ Իրենց զբաղումը ձեռագործ էր, երկրի բերքերէն կ'ապրէին, իսկ աւելցածն աղքատաց կը բաշխէին։ Ս. Հաղորդութիւնը սովորաբար քաղքէն իրենց կը տարուէր, ինչու որ ի սկզբան մէջերնին քահանայք սակաւաւոր էին։ Պաքոմիոս՝ ընդ ամէնը 9 վանք հաստատեց, որոնց մէջ իր իշխանութեան տակ 9000 միաբանք կային։ Ս. Պաքոմիոս մէկ քանի կուսանաց վանքեր ալ հիմնեց։

Ս. Հիլարիոնի ձեռքով՝ որ նոյնպէս Ս. Անտոնի աշակերտն էր, վանականութիւնը մտաւ Պաղեստին ու Ասորիք, ուստի դէպ ի արեւելեան կողմերը տարածուեցաւ, եւ ամէն տեղ պատրաստական ընդունելութիւն գտաւ։ Վանականութեան արեւելք պայծառանալուն առանձին եղանակաւ աշխատեցաւ Ս. Բարսեղ, կրօնաւորաց մէջ գիտութեան սէր զարթուցանելով։

Արեւմուտք՝ ի սկզբան վանականութիւնն այնչափ ընդունելութիւն չգտաւ. օդն ու ապրելու կերպն անոր նպաստաւոր չէին։ Երբոր Ս. Աթանաս՝ Արիանոսներէն հալածուելով 345ին Հռոմ գնաց, առաջին անգամ ան կողմերը վանականութեան փափաքը զարթոյց, որ քիչ ժամանակուան մէջ աղէկ պտուղներ յառաջ բերաւ։ Գաղղիա՝ ուր վանականութիւնն Իտալիայէն մտած էր, Ս. Մարտինոս Դուրի եպիսկոպոսն ու Յովհաննէս Կասսիանոս, Ե. դարուն սկիզբն անոր պայծառութեանը կ'աշխատէին։ Նոյն միջոցին շինուեցաւ նաեւ Լերինա կղզւոյն վրայ ան հռչակաւոր վանքը, որ ետքէն ընդհանուր տիրող բարբարոսութեան դէմ զօրաւոր թումբ մ'եղաւ, թէ բարեպաշտութեամբ ու թէ գիտութեամբ երեւելի անձինք հանելով։ Վանականութիւնն Իտալիայէն Ափրիկէ անցաւ, ուր Ս. Աւգոստինոս զանիկայ ծաղկեցընելու շատ փոյթ տարաւ։ Ափրիկէէն անցաւ Սպանիա. իսկ Անգղիա արդէն չորրորդ դարուն վերջերը վանականներ կային։

Արեւմուտք՝ Ս. Բենեդիկտոսի ձեռքով վանականութիւնը նոր կերպարանափոխութիւն մ'ընդունեցաւ։ Ինք Ումբրիայի Նուրսիա քաղաքն ազնուական տոհմէ ծնած (480) ու Հռոմ կրթուած էր։ Յամի 529ին Կամպանիայի Կասինեան լեռան վրայ վանք մը շինեց, որուն մէջ հաստատած կանոններուն զօրութեամբ՝ միաբանք իրենց աբբային բացարձակ հնազանդութիւն կը խոստանային, միշտ վանքը մնալու պարտաւորեալ էին, եւ սահմանեալ կանոնական ժամերգութենէն զատ՝ ամէն մէկն իր կարողութեան համաձայն արտաքին գործքերու պիտ'որ զբաղէր, ինչպէս է տղոց կըրթութեան, ձեռագիր օրինակելու եւ ձեռագործի։ Կրօն առնուողներուն համար տարի մը փորձի ժամանակ (Նորընծայութիւն) սահմանուած էր։ Յարմար գըտնուողները՝ հանդիսական ուխտիւ իրենք զիրենք այս կանոնաց պահպանութեան կը պարտաւանդէին։ Ս. Բենեդիկտոսի կանոնները՝ արեւմուտքի ամէն վանքերուն ընդհանուր ընդունելութիւն գտան։

Վանականութիւնը մարդկութեան համար օրհնութիւն մըն է, թէ որ առջեւը դրուած գեղեցիկ նպատակին ճշմարիտ

եւանդեանք հասնելու կ'աշխատի։ Վանականութիւնը շարունակեալ ու գործնական քարոզ մըն է այն բարձրագոյն առաքինութեանց, զորոնք Փրկիչն երկրիս վրայ քալած ատեն խօսքով ու օրինակաւ սորվեցուց։ Այս քարոզն՝ այնպէս ազդու ու սրտաշարժ է, որ նոյն իսկ թեթեւամիտ աշխարհասէր անձ մը կրնայ ի բարին յորդորել։ Ինչու որ ստուգիւ անըմբռնելի բարձր մտածութիւն մըն է, որ մարդ մը, անդիի աշխարհքը շահելու համար սա աշխարհքն իր ամէն հրապոյրներովը արհամարհէ եւ վանական խցկան առանձնութիւնն իրեն բաժին ընտրէ, որպէս զի իբրեւ Աստուծոյ նուիրեալ անձ՝ նկատողական կենաց մէջ կարող ըլլայ տիրել ան զգայական բերմանց վրայ, որոնք մարդկային բնութեան մէջ ամենէն սաստիկ ու ամէհի են։ Բայց վանական հասարակութիւնները չէ թէ միայն իրենց տուած օրինակաւն ու աղօթիւքն աշխարհքիս օգտակար են, այլ նաեւ եկեղեցական գիտութեանց լուսովը՝ զորն որ ամէն տեղ կը սփռեն։ Այս ժամանակի շրջանին ամենէն հռչակաւոր անձինքը վանքերու մէջ կրթուած էին։ Չորրորդ դարուն կէսէն ետքն եկող Եկեղեցւոյ անուանի վարդապետներն ամէնն ալ վանքերէն ելած են։ Անկէ զատ վանքերը՝ ժամանակաւոր ու նիւթական բարիք ալ ըրած են, ինչպէս անտառներ հարթած, ճահիճներ չորցուցած ու խոպան երկիրներ մշակելի ըրած են։

---

## ՀԱՏԱԾ Գ.

### ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ

### 46. Ա. Պատարագն ու խորհուրդները։

Ս. Պատարագի զոհը յառաջուան պէս կը կատարուէր, եւ թէ նոյն ժամանակ պատարագը մատուցանելու կերպը հիմնկուանին հետ նոյն էր, յայտնի կը վկայեն սա ժամանակի շրջանէն մեզի հասած պատարագամատոյցները, որոնք իրենց անունն առած են, կամ ան եկեղեցիներուն հիմնադիրներէն՝ ուր կը գործածուէին (ինչպէս Ս. Յակոբայ, Ս. Մարկոսի պատարագամատոյցները) կամ անուանի եպիսկոպոսներէն՝ որ զանոնք կը գործածէին (ինչպէս Ս. Ոսկեբերանի, ու Ս. Բարսղի)։

Այս ժամանակի շրջանին մէջ՝ մկրտութիւնն առանձին տեղ մը կը տրուէր, որ Մկրտարան կ'ըսուէր։ Երախայք երեք կարգի կը բաժնուէին.

Ա. Ունկնդիրք՝ որ պատարագին միայն առաջին մասին ներկայ կը գտնուէին, այսինքն Ս. Գրոց ընթեր-

ցուածոյն եւ քարոզչին, ուստի նաեւ անուններն ալ ա-ռած են:

Բ. Ծնրադիրք՝ որ Աւետարանէն ետքը եկած աղօթքներուն կրնային ներկայ ըլլալ, եւ ծունկ իջած եպիսկոպոսին օրհնութիւնը կ'ընդունէին:

Գ. Ընտրեալք՝ այսինքն ուսեալ երախայք, որոնք առաջին մերձաւոր տօնի օր մը պիտի՛որ մկրտուէին:

Դ. Հաղորդութիւնը մէկ տեսակաւ ընդունելու սովորութիւնը կամաց կամաց ընդհանուր եղաւ: Բայց Լեւոն Մեծ ու Գելասիոս Ա. քահանայապետնե-րը՝ հարկ սեպեցին աս սովորութեան դէմ դնել, որ-պէս զի առով ուղղափառ քրիստոնեայք զանազանուին Մանիքեցիներէն, որոնք պատարագի մէջ գինի չէին գործածեր: Ծոմ հաղորդուելու սովորութիւնը՝ որ արդէն շատոնց կար, աս միջոցիս օրէնք եղաւ, թէ ա-մէն տեսակ անկարգութեանց առջեւն առնելու եւ թէ խորհրդոյն արժանաւորութիւնը ցուցընելու հա-մար, զորն որ իբրեւ երկնային կերակուր՝ երկրաւորէն յառաջ ընդունելու է:

Ապաշխարութեան հրահանգը՝ աւելի որոշ կեր-պարանք առաւ. Նոյն իսկ աշխարհքիս աւագ ան-ձինքն անկէ ազատ չէին: Թէոդոս կայսրը՝ պարտաւո-րեցաւ ինք զինքն անոր տակ ձգել, եւ կայսերական ծիրանին ապաշխարողի քրձոյն հետ փոխել: Բայց ետ-քէն երբոր հեթանոսք՝ խուռն բազմութեամբ սկսան ե-կեղեցի մտնել, եպիսկոպոսք չկրցան ապաշխարութեան հրահանգը՝ նախնի խստութեան մէջ պահել, ինչու որ իւրաքանչիւրոց բարուցը վրայ ըստ պատշաճի հսկելն անկարելի էր: Այս պատճառաւ սոյն ժամանակի մի-ջոցին մէջ արդէն տեղ տեղ հրապարակական խոստո-վանութիւնը բոլորովին վերցուեցաւ, եւ անկէ ետքը ապաշխարութեան հին հրահանգները կամաց կամաց թուլցան:

Վերջին օծումը՝ յառաջուան պէս կը տրուէր: Պսակը՝ զանազան արարողութիւններով քահանան կ'օրհնէր:—Քահանայական կարգը՝ հին սովորութեան համաձայն եպիսկոպոսը կու տար աղօթիւք եւ ձեռ-նադրութեամբ:

### 47. Ս. ժամանակներ, տեղեր ու սովորութիւններ:

#### ա. Ս. ժամանակներ ու պահեր։

Այս շրջանին մէջ՝ տօնի օրերը շատցան։ Նոր հաստատուեցան Քրիստոսի Համբարձման տօնը՝ Զատիկէն 40 օր ետքը. Քրիստոսի Ցնորէնութեան կամ Թլփատութեան տօնը՝ Յունուարի 1ին, որ Հռոմայեցւոց տարեգլխոյն կատարած սպանդարամետական անառակ տօնին տեղը բռնելու համար էր. Տեառնընդառաջ Փետր. 2ին եւ Ս. Կուսին Աւետման տօնը՝ Մարտ 25ին։ — Նոյնպէս մարտիրոսաց եւ ուրիշ սրբոց տօներ ալ աւելցան։ Արեւմուտք՝ Ս. Ստեփաննոսի եւ Անմեղ մանկանց տօնը, անմիջապէս Քրիստոսի Ծննդենէն ետքը կը կատարուէր։ Ս. Պետրոս եւ Պօղոս առաքելոյ մահուան օրը՝ Յունիսի 29ին ի մասնաւորի Հռոմ կը տօնուէր։ Ս. Յովհաննէս Մկրտչին ծննդեան օրը՝ Յունիսի 24ին կը կատարուէր։ Ամենայն Սրբոց տօնը՝ Յունաց եկեղեցին չորրորդ դարէն Հոգեգալստեան երկրորդ կիրակին կը կատարէր, իսկ արեւմտեան եկեղեցին եւթներորդ դարէն Նոյեմ. 1ին։ — Եկեղեցական տարին յառաջ Զատիկէն կը սկսէր, իսկ աս ատեն Ծնընդեան յիսնեկաց սկիզբը։

#### բ. Ս. Տեղեր։

Այս ժամանակի շրջանին մէջ՝ շատ հոյակապ եկեղեցիներ կանգնուեցան։ Կոստանդիանոս կայսրն եւ իր մայրը Հեղինէ՝ չտեսնուած փառաւորութեամբ եկեղեցիներ շինեցին. Կոստանդիանոս Երուսաղէմ Փրկչին գերեզմանին վրայ եւ Կոստանդնուպոլիս Առաքելոց եկեղեցին շինել տուաւ, իսկ Հեղինէ Քրիստոսի ծննդեան տեղւոյն ու Ձիթենեաց լերան վրայ, ուստի Քրիստոս երկինք համբարձած էր։ Շատ մը հրապարակական գատաստանարաններ՝ որ Բազիլիկ կամ Արքունական կը կոչուէին, եւ նոյն իսկ կռոց մեհեաններ եկեղեցւոյ փոխուեցան։ — Եկեղեցիներն երկայն նաւու ձեւ ունէին, երեք գլխաւոր բաժանմունքով, այսինքն Սրահ՝

ուր երախայք ու ապաշխարողք կը կենային. բուն նաւը կամ եկեղեցւոյն միջավայրը, ուր հաւատացեալք կը ժողվէին, եւ Դասը՝ որ վարագուրաւ ու վանդակաւ եկեղեցւոյ ուրիշ մասերէն զատուած էր. ասոր մէջն էր խորանը, եպիսկոպոսին գահն ու անոր շրջանակը՝ քահանայից աթոռները: Խորանին առջեւը բարձր տեղ մը կար՝ երգիչներու համար, իսկ կողմնակի ամբիոնը՝ (ἄμβων) Ս. Գիրքը կարդալու եւ քարոզելու համար: Եկեղեցւոյն մուտքն օրհնուած ջրոյ աման մը կար, ցօղուելու համար: Եկեղեցիներուն ներքին պատերը շքեղ պատկերներով զարդարուած էին, ինչու որ պատկերները յարգելով՝ հեթանոսական կռապաշտութեան դառնալու վախն ալ անցած էր: Զանգակաց եւ եկեղեցւոյ աշտարակաց գիւտն Է. դարէն է:

### Գ. Ս. Անօթք ու արարողութիւնք:

Այս շրջանին՝ եկեղեցական պաշտամանց մէջ ոսկիէ եւ արծաթէ սուրբ անօթներ եւ քահանայական հարուստ զգեստներ սկսան գործածուիլ: Կոստանդիանոս՝ եկեղեցիներուն թանկագին ընծաներ ըրաւ: — Յառաջուան Ս. Գրոց մեկնութեան տեղ, դեղեցիկ արուեստիւ յօրինուած քարոզներ յաջորդեցին: Որոց նշխարաց յարգութիւնն աս միջոցիս աւելի եւս յաճախեց. հաւատացեալք առանձինն կը մեծարէին սուրբ խաչափայտը, զորն որ Ս. Հեղինէ՝ Կոստանդիանոսի մայրը գտած էր: Նոյնպէս սովորութիւն եղաւ մարտիրոսաց գերեզմաններուն վրայ եկեղեցիներ շինել: Արեւելքի նուիրական տեղերն ուխտի երթալու սովորութիւնն արդէն չորրորդ դարուն վերջերը կար: Աս ուխտագնացութիւնները յառաջ եկած են՝ քրիստոնէից այն տեղերը տեսնելու սաստիկ փափաքէն, որոնք Փրկչին երկրաւոր կենօքը նուիրական եղած են, եւ հիմնեալ են այն ճշմարտութեան վրայ՝ որ թէեւ մարդ ամէն տեղ ներկայ եղող Աստուծոյ մերձաւոր է, եւ ամէն տեղ կրնայ իրեն աղօթք ընել ու խնդրուածքն ընդունիլ, սակայն կան տեղեր ուր մարդ Աստուծոյ հոգւով աւելի կը մերձենայ, եւ անոր

՝Համար ներքին կրօնական բարեպաշտութեամբ աւելի ուժգին կը զգածուի: — Եկեղեցական երգերն ալ շատ յառաջացան մասնաւոր երգիչներ գտնելով ու նոր երգեր յօրինելով: Ասոր նկատմամբ մեծապէս արդիւնաւոր եղան արեւելք՝ Ս. Եփրեմ ասորին, Գրիգոր Նազիանզացին ու Մեծն Բարսեղ. իսկ արեւմուտք՝ Ս. Ամբրոսիոս ու Մեծն Գրիգոր Քահանայապետը, որոնց անուամբն երգերն ալ կոչուեցան Ամբրոսեան ու Գրիգորեան եղանակ. այս վերջինը գրեթէ բովանդակ արեւմուտք տարածուեցաւ:

# ԵՐՐՈՐԴ ԾՐՋԱՆ

## ՄԵԾՆ ԿԱՐՈՂՈՍԷՆ ՄԻՆՉԵՒ ԳՐԻԳՈՐ Է.

**768—1073.**

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԵԿԵՂԵՑԻՈՅ ՏԱՐԱԾՈՒՄՆ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

**48.** *Մեծն Կարողոսի՝ քրիստոնէական եկեղեցւոյ ընդարձակման ունեցած արդիւնքը:*

Մեծն Կարողոսի հետ՝ քրիստոնէական եկեղեցւոյ պատմութեան մէջ նոր ժամանակի շրջան մը կը սկսի։ Այս միջոցին՝ արեւելեան եկեղեցւոյ մէջ կրօնական գժտութիւնները դադրեցան, եւ արեւմտեան եկեղեցին սկսաւ ընդարձակուիլ ու զօրանալ։ Եկեղեցին տէրութեան հետ ալ սերտ յարաբերութեան մէջ մտաւ, ինչու որ Կարողոս կայսրը կը ջանար տէրութիւնը քրիստոնէական հիման վրայ հաստատել։ Քրիստոնէութեան տիեզերականութեան մեծ գործը՝ որ Կարողոսի ձեռքով սկսաւ, ետքէն շուտ իր աճումն ու լրումը գտաւ։

Այս շրջանին սկիզբը՝ Գերմանիայի հիւսիսային կողմը հեթանոսութիւնը դեռ կը տիրէր։ Սաքսոնիացիք՝ որ գերմանական երեք գլխաւոր ցեղերէն մէկն էին, զիրենք քրիստոնէութեան դարձնելու համար եղած ամէն փորձերը մերժեցին։ Իրենք բիրտ վայրենութեան մէջ կ՚ապրէին, եւ սահմանակից Փռանկաց հետ անդադար պատերազմ ընելով, քրիստոնէութեան դէմ ունեցած սաստիկ ատելութիւննին անոնց

զգալի կերպով կը ցուցընէին։ Կարոլոս երեսուն տարի Սաքսոնիացւոց դէմ պատերազմ մղելէն ետեւ, վերջապէս զիրենք նուաճեց (772—803)։ Անկէ ետքը Կարոլոս աշխատեցաւ իրենց մէջ քրիստոնէութիւն խոթելու, որ նպատակին հասնելու համար՝ նոյն իսկ բռնական միջոցներ ի գործ դրաւ։ Մահուան պատիժ դրաւ անոնց՝ որ յանձն չեն առնուր մկրտուիլ, մեռելոց մարմինները կ՚այրեն եւ մեծ պահոց մէջ միս կ՚ուտեն, եւ սահմանեց որ այս պատժէն միայն խոստովանանք ըլլալով եւ ապաշխարութեան յանձնառութեամբ կարենայ մէկն ազատիլ։ Կարոլոս կայսեր բռնած այս խիստ ընթացքն՝ ըստ մասին անով կ՚արդարանայ, որ Սաքսոնիացւոց հետ ըրած հաշտութեան գլխաւոր պայմաններէն մէկն աս էր, որ Սաքսոնիացիք քրիստոնէութիւնն ընդունին, ուստի եւ քրիստոնէութեան դէմ հակառակիլը կամ քրիստոնէութիւնն ուրանալը, իբրեւ խաղաղութեան դաշանց եղծում կը մտածէր, եւ ըստ մասին՝ որ այս խիստ ու բռնական միջոցները կամ քիչ անգամ կամ ամենեւին ի գործ չդրուեցան։ Բայց Կարոլոսի ջանքը՝ միայն եկեղեցւոյ արտաքին տարածման վրայ չամփոփուեցաւ, նոյն փոյթը ցուցուց նաեւ գիտութեանց ու ճշմարիտ քրիստոնէական աստուածպաշտութեան յառաջադիմութեանը։ Այս վախճանաւ Անգղիայէն ու Իտալիայէն ուսումնական անձինք արքունիքը բերել տուաւ, որոնց մէջ անուանի է Ալկուինոս Բենեդիկտեան կրօնաւորը։ Անկէ զատ Կարոլոս՝ եկեղեցիներուն ու վանքերուն քով դպրոցներ դրաւ, եւ ամէն կարելի միջոցներով ուսումնականութիւնը ծաղկեցընելու աշխատեցաւ, այնպէս որ իրաւամբ կրնայ ըսուիլ թէ իրեն նախորդ ամէն իշխաններէն աւելի աշխատեցաւ հաւատոյ եւ գիտութեան պայծառութեանը։

Կարոլոս հաստատեց ու ընդարձակեց նաեւ Հռոմայ Քահանայապետին աշխարհական իշխանութիւնը (տես Համար 56)։ Յամի 800ին պալատական մեծամեծաց բազմութեամբ Հռոմ երթալով, հոն Քրիստոսի Ծնընդեան տօնին օրը, Ս. Պետրոսի եկեղեցւոյն մէջ պատարագ տեսնելու համար ծունր դրած ատեն,

յանկարծ Լեւոն Գ. Քահանայապետն իբրեւ թէ Աստուծմէ դրդուած մեծագին թագ մ'առաւ եւ գլուխը դնելով գոչեց. Կեցցէ Կարոլոս վեհափառ կայսր Հռոմայեցւոց: Հոն գտնուող ժողովրդեան բազմութիւնը նոյն խօսքը ցնծութեամբ երեք անգամ կրկնեց: Թագադրութիւնն անով աւելի հանդիսաւոր եղաւ, որ Քահանայապետն անմիջապէս օծման հանդէսն ալ կատարեց: Այս արարողութիւնն սկզբնաբար միայն կայսերաց Իտալիայի վրայ ունեցած իշխանութեան վերականգնումը պիտ'որ նշանակէր, սակայն ընդարձակ մտօք նաեւ իբրեւ բոլոր քրիստոնեայ աշխարհքիս վրայ կայսեր ունեցած պաշտպանութեան եւ ուրիշ քրիստոնեայ ազգաց վրայ ունեցած վերին իշխանութեան նշան համարուեցաւ: Քահանայապետը ճանչցաւ զկայսրըն իբրեւ քրիստոնէութեան աշխարհական գլուխ. կայսրն ալ՝ մեծարեց զՔահանայապետն իբրեւ հոգեւոր գլուխ բովանդակ եկեղեցւոյ: Ասով յայտնի տեսնուեցաւ երկու գերագոյն իշխանութեանց սերտ միաբանութիւնը, բայց միանգամայն իրարմէ բոլորովին անջատեալ ըլլալը: Անկէ ետքը Հռոմէական կայսրութեան պատիւն ու բովանդակ քրիստոնէական եկեղեցւոյ պաշտպանութեան իրաւունքը, 1000 տարիէ աւելի Գերմանիայի կայսերաց քով մնաց:

## 49. Քրիստոնէութեան տարածումն Եւրոպայի հիւսիսային ու արեւելեան կողմերը:

1. Աս ատենները քրիստոնէութիւնը Հիւսիսային ազգաց մէջ մտաւ: Բայց միշտ ազատ համոզումը չէր՝ որ քրիստոնէութեան ճամբայ կը բանար; շատ հեղ քաղաքական շահեր ալ անոր մէջ գործունեայ մասնակցութիւն կ'ունենային: Թէ որ յառաջագոյն քրիստոնէութիւնը ժողովրդեան ստորին աստիճաններէն դէպ ի վեր մեծամեծաց կարգերը կ'ելլէր, Եւրոպայի հիւսիսային կողմերն ի հասարակի ներհական ընթացք մ'ունեցած կը գտնենք, այսինքն նախ իշխանները քրիստոնէութիւնը կ'ընդունէին եւ ետքէն ժողովուրդն անոնց կը հետեւէր:

Կարոլոսի որդին՝ Լուդովիկոս Բարեպաշտը, որ Այտէր ու Տիբերիս, Էլպա եւ Էպրոյ գետերուն մէջ եղած երկիրներուն կը տիրէր, հօրը պէս քրիստոնէութիւնը տարածելու եռանդ ու փոյթ ունեցաւ։ Եիւթլանտի Հարալտ Թագաւորը՝ որ իշխանութենէն մերժուած էր, իրմէ օգնութիւն խնդրեց. Լուդովիկոս խոստացաւ իրեն օգնել, եթէ յանձն կ'առնու մկըրտուիլ ու քրիստոնեայ քարոզիչներ հետն առնուլ։ Թագաւորն այս պայմանները ընդունելով՝ Անսկար անուանով կրօնաւորն իբրեւ առաքեալ հիւսիսային կողմերը գնաց, եւ հանատեղուանքը քրիստոնէութիւնը տարածեց։ Անսկար Համպուրկի արքեպիսկոպոս ձեռնադրուելով, նոյն քաղքէն զանազան ճամբորդութիւններ ըրաւ, հիւսիսային ազգաց մէջ քրիստոնէութիւնը տարածելու համար (†865)։ Իրեն հաստատեց Եիւթլանտի եւ Շլեզուիկի եկեղեցիները, եւ Տանիմարգա ու Շուետ Աւետարանը քարոզեց, ուր մեծամեծ արգելքներ դէմ ելլելով՝ քրիստոնէութիւնը հազիւ անկէ քանի մը տարի ետքն ընդհանուր մուտք գտաւ։ Նոյնը պատահեցաւ Նորուեգիա ալ, ուր թէեւ քրիստոնէութիւնն իններորդ դարուն արդէն Անգղիայէն մտած էր, բայց հազիւ 1000էն ետքը բովանդակ երկրին տիրող կրօնն եղաւ։ Նորուեգիայէն քրիստոնէութիւնը անցաւ Իսլանտա ու Կրէօնլանտա։

2. Եւրոպայի արեւելեան կողմը՝ Էլպա գետէն մինչեւ Տոն եւ Արեւելեան ծովէն մինչեւ Ադրիական ծով տարածուած՝ կը բնակէին Սլաւեան ազգերը։ Ասոնց մէջ՝ամենէն յառաջ քրիստոնէութիւնն ընդունեցան Խռուատները, որոնց հետեւեցան Գարինթիա, Քրայն ու Շթայերմարք բնակող Գարանդացիք, եւ Դակիա, Դալմատիա ու Իլլիրիա եւ ինչպէս հաւանական կ'երեւայ նաեւ Յունաստան ու Պելոպոնէս բնակող Սլաւերը։ — Մեթոդիոս եւ Կիւրեղ՝ երկու յոյն կրօնաւորները, իններորդ դարուն քրիստոնէութիւնը Բուլղարաց քարոզեցին, որոնք Դանուբին հարաւային ու Սեւ ծովուն արեւմտեան կողմը կը բնակէին։ Անկէ Մորաւիա անցան, ուր նոյնպէս քրիստոնէութիւնը տարածեցին, եւ Մեթոդիոս Մորաւիայի առաջին ար-

քեպիսկոպոսն եղաւ։ Անկէ քրիստոնէութիւնն անցաւ Պոհեմիա, որ նոյն միջոցին անկախ էր, եւ 973ին Փրակի արքեպիսկոպոսութիւնը հաստատուեցաւ։ Քրիստոնէութիւնը Մորաւիայէն Շլեզիա ու Լեհաստան տարածուեցաւ, ուր 966ին պետութեան կրօն եղաւ։

Ռուսաստանի դարձը տասներորդ դարուն կէսին Կոստանդնուպոլսոյ կողմանէ եղաւ. նախ Օլկա Աւագ իշխանուհին քրիստոնեայ եղաւ. բայց Ռուսաց մէջ քրիստոնէութիւնը բուն հիմնողն եղաւ, իր եղբօրորդին Վլատիմիր, որ 980ին միահեծան իշխան ըլլալէն ետքը, 989ին Ռուսերը գունդագունդ Դնիեբեր գետը մկրտել տուաւ։ Քիեվ մայրաքաղաքն՝ առաջին եպիսկոպոսանիստ աթոռն եղաւ։ — Ս. Ստեփանոս Հունգարիայի առաջին թագաւորը, շուրջ 1000ին իր տէրութեան մէջ քրիստոնէութիւնը տիրող կրօն ըրաւ, որով եւ իր ժողովուրդը քաղաքականացեալ ազգաց կարգը դասեց։ — Ասոնց քրիստոնէութիւնն ընդունեցան նաեւ Լիվլանտ ու Եստլանտ գաւառները. Ռիկայ՝ եպիսկոպոսանիստ աթոռ եղաւ։ Ամենէն ուշ մնաց քրիստոնէութիւնը Պրուսիա, ուր խաւրուած երկու քարոզիչները՝ Ատալբերդոս Փրակացին ու Պրունոյ սպաննուեցան։ Սակայն վերջապէս Պրուսիացիք ալ քրիստոնէութիւնն ընդունեցան Տեւտոնեան կարգին ձեռքով, որ (1226 — 1283) անոնց երկրին տիրեց։

## 50. *Այս շրջանին մոլորութիւններն ու հերձուածները։*

### ա. Որդեգրականաց աղանդը։

Ազգաց գաղթականութենէն ետքն՝ արեւմուտք երեւան ելած գլխաւոր մոլորութիւնն է, Որդեգրականաց աղանդը։ Այս աղանդին հեղինակներն են՝ Եղիպանդոս ու Փելիքս սպանիացի եպիսկոպոսները (790), որոնք Նեստորի չար մոլորութեան հետեւելով, կը վարդապետէին թէ Քրիստոս Յիսուս ըստ աստուածութեանը՝ Աստուծոյ ճշմարիտ որդի է, բայց ըստ մարդկութեանը՝ միայն որդեգրական որդի է, եւ ըստ անուան։ Բանը՝

իրեն որդեգրած մարդուն մէջ՝ իբրեւ ի տաճարի բնա-
կեցաւ, եւ որդեգրութիւնը կատարուեցաւ մկրտու-
թեան ժամանակ Յորդանան գետը երկնքէն եկած Դա
է որդի իմ սիրելի խօսքերով: Այս մոլորութիւնը՝ որ
Սպանիայի Մահմետականները քրիստոնէութեան շա-
հելու համար հնարուած էր, թէեւ Քրիստոսի մար-
դեղութեան վարդապետութիւնը կ'ոչընչացընէր, սա-
կայն եւ այնպէս բոլոր Սպանիա ինչպէս նաեւ Պիրե-
նեան լեռներէն անդին մեծ ընդունելութիւն գտաւ:
Սակայն հակառակորդներ ալ չպակսեցան, որոնց մէջ
երեւելի է Ալկուինոս Բենեդիկտեան կրօնաւորը, որ
իր ժամանակին ամենէն անուանի աստուածաբանն էր:
Ասիկայ գիտնականութեամբ ու սրամտութեամբ ցու-
ցուց թէ Ս. Գիրքն ու Եկեղեցին մի միայն որդի կը
ճանչնայ թէ՛ ըստ աստուածութեանն ու թէ՛ ըստ
մարդկութեանը: — Այս մոլորութիւնը՝ Մեծն Կարոլոսի
ձեռքով Ռեկէնսպուրկ (792) ու Ֆրանքֆուրդ (794)
գումարուած երկու սինհոդոսներու մէջ դատապար-
տուեցաւ, եւ վճիռն ետքէն Ադրիանոս Քահանայա-
պետը Հռոմ ժողովոյ մը մէջ հաստատեց: Ասոր վրայ
շատ չանցաւ մոլորութիւնն անհետ եղաւ, բայց զա-
նիկայ հնարողները չկրցան անկէ բոլորովին հրաժա-
րիլ: Ասոնք ալ գրեթէ ամէն աղանդապետաց ճամ-
բուն հետեւեցան, որոնք թէեւ իրենց խնդիրն եկե-
ղեցւոյ վճռոյն տակը կը ձգեն, բայց թէ որ վճիռն ի-
րենց մտացն ու քմացը համաձայն չըլլայ, զանիկայ
ամբարտաւանութեամբ կը մերժեն:

## 51.

### Բ. Ս. Հաղորդութեան վարդապետութեան դէմ ելած մոլորութիւններ:

Մինչեւ իններորդ դար՝ Գոհութեան Ս. խորհըր-
դոյն մէջ Քրիստոսի իրական ներկայութեան ու գոյա-
ցափոխութեան վրայ գրեթէ ամենեւին խնդիր ելած
չէր: Բայց այս միջոցիս Ս. Հաղորդութեան վարդապե-
տութեան դէմ զանազան մոլորութիւններ ելան, ո-

րանց մէջ ամէնէն նշանաւորն է Բերենգար Դու-
րացին։ Բերենգար 1030էն սկսեալ Դուր քաղա-
քը վանքի մը դպրոցին վերակացուն՝ լեզուանի եւ
միանգամայն իր ժամանակին գիտուն անձինքներէն
մէկն էր, եւ գլխաւորաբար վարուցը խստութեանը
պատճառաւ մեծ անուն ունէր։ Նորասիրութեան
բաղձանքը՝ զինքը մոլորցուց գոյացափոխութեան վար-
դապետութիւնը մերժելու։ Բերենգար կը վարդապե-
տէր, որ Քրիստոս՝ Գոհութեան խորհրդոյն մէջ հոգե-
ւորապէս միայն կը ճաշակուի։ Այս անլուր վարդապետու-
թեամբ Բերենգար մեծ շփոթութիւն ու աղմուկ հա-
նեց, եւ ամէն բարեկամական յորդորներն ու զանա-
զան անձանց հետ ըրած վիճաբանութիւնները, չկրը-
ցան զինքն այս մոլար կարծիքէն ետ կեցընել։ Վեր-
ջապէս եկեղեցին միջամուխ ըլլալով՝ իր վարդապե-
տութիւնը դատապարտեց։ Բայց երբոր Բերենգար
ասոր վրայ ալ չդադրեցաւ իր վարդապետութիւնը
պաշտպանելէն, եւ սկսաւ իրեն կողմնակիցներ վաստը-
կելու ետեւէ ըլլալ, Նիկողայոս Բ. Քահանայապետը
1059ին զինքը Հռոմ 113 եպիսկոպոսաց ժողովի մը
կանչեց։ Բերենգար եկաւ եւ յանձն առաւ ստորա-
գրել ու երդնուլ առջեւը դրուած հաւատոյ դաւա-
նութեան մը, որուն մէջ գոյացափոխութեան վարդա-
պետութիւնը բացայայտ կը մեկնուէր։ Բայց Գաղղիա
դառնալէն ետքն սկսաւ ըսել՝ որ իրեն սպառնացուած
մահուան վախէն իր վարդապետութիւնը յետս կոչած
է, եւ զանիկայ յամառութեամբ պաշտպանելէն զատ,
սկսաւ Հռոմայ Գահին դէմ ալ դառն նախատանօք
ու կծծանօք խօսիլ։ Ասոր համար Գրիգոր Է. վրան
դարձեալ եկեղեցական քննութիւն ընել տուաւ, եւ
այս վախճանաւ Բերենգար 1078ին 150 եպիսկոպոս-
ներէ Հռոմ գումարուած երկրորդ ժողովոյ մ'առջեւը
հանուեցաւ։ Հոս թէեւ երկրորդ անգամ մոլորութիւնն
ետ առաւ, բայց հայրենիքը դառնալուն պէս դարձեալ
միտքը փոխեց։ Բերենգար կենացը վերջին տարիները
կղզի մ'առանձնանալով, հոն քաշուած ապաշխարու-
թեամբ կեանք անցուց, եւ կ'ըսուի որ ուղղափառ հա-
ւատոյ դաւանութիւն տալով 90 տարեկան մեռած ըլլայ

(1088)։ Մահուանէն ետքը՝ իր մոլար վարդապետութիւնն անհետ եղաւ, որ երբեք եկեղեցիէն բաժնուած մասնաւոր աղանդ մը չկազմեց։ Լատերանեան Դ. (երկոտասաներորդ տիեզերական) ժողովը (1215) ամէն երկդիմի բացատրութեանց առջեւն առնելու համար, հաղորդութեան վարդապետութեան մասին մէջ՝ հետեւեալ ճիշդ ու նշանակական խօսքերը դրաւ. Հացն ու գինին՝ Աստուծոյ ամենակարող զօրութեամբը կը փոխարկին (գոյացափոխութիւն կ՚ըլլայ) է մարմին եւ յարիւն Քրիստոսի։

52.

Գ. Յունաց եկեղեցւոյն Հռոմայ եկեղեցիէն բաժնուիլը ու ութներորդ տիեզերական ժողովը։

Յունաց եկեղեցին՝ պատկերամարտից շփոթութիւններէն ետքը, քիչ մը ժամանակ հանդարտութիւն վայելեց. բայց 858ին դարձեալ փոթորիկ մ՚ելաւ, որուն ողբալի հետեւութիւնները դժբախտութեամբ դեռ կը տեւեն։ Այս տարին արեւելեան կայսրութեան գահը նստած էր Միքայէլ Գ., որ ինք զինքն ամէն կերպ անկարգութեանց ու անառակութեանց տուած էր։ Իգնատիոս Կոստանդնուպոլսոյ պատրիարքը, որ ճշմարիտ աստուածապաշտ անձ մըն էր, կայսրը սաստ կը յանդիմանէր իր այս անվայել ու անկարգ ընթացիցը համար, որուն վրայ Միքայէլ բարկանալով զԻգնատիոս բանտարկել տուաւ, եւ տեղը իր Փոտ քարտուղարը պատրիարքական աթոռը նստեցուց։ Փոտ՝ որ գիտութեամբ աննշանաւոր մարդ չէր, բայց չարութեամբ ալ անկէ վա՛ր չէր մնար, վեց օրուան մէջ աշխարհական վիճակէն եպիսկոպոսական աստիճանը բարձրացաւ, որուն վրայ թէ կղերն ու թէ ժողովուրդը շատ դժկամակեցաւ։ Փոտ իր աստիճանին մէջ հաստատուն մնալու համար, Նիկողայոս Ա. Քահանայապետին աղաչեց՝ որ զինքը հաստատէ, ծանուցանելով որ Իգնատիոս ծերութեան տկարութեան պատճառաւ, ազատ կամօք իր հրաժարումը տուած

վանք մ՚առանձնացած է: Քահանայապետն այս ամէն բան քննելու համար՝ Կոստանդնուպոլիս դեսպաններ խրկեց. բայց ասոնցմէ ոմանք Փոտին սպառնալիքներ-րէն վախցած, ոմանք ալ ընծաներով շահուած, չկըր-ցան բան մ՚ընել: Կոստանդնուպոլիս գումարուած ժո-ղովոյ մը մէջ՝ Իգնատիոս կերպապէս աթոռէն վար առնուեցաւ կամաւ հրաժարիլ չուզելուն համար, եւ Փոտ իր պատրիարքութեան մէջ հաստատուեցաւ: Սակայն Իգնատիոս առիթ մը գտնելով՝ Քահանայա-պետին ամէն բան տեղն ի տեղ իմացուց, որ անմիջա-պէս իր դեսպանները պատժեց եւ զՓոտ իբրեւ աթո-ռոյն բռնակալ՝ վար առաւ: Քահանայապետն այս վճիռը թէ կայսեր ու թէ Փոտին ծանոյց:

Մինչեւ հոս Փոտին մտքէն ալ չէր անցած Հռո-մայ եկեղեցւոյ գլխաւորութեանը դէմ հակառակիլ, բայց տեսնելով որ ալ անկէ ետքը Հռոմէն բան մը յուսալիք չունի, ինք զինքն Յունաց եկեղեցւոյն գլուխ անուանեց: Կոստանդնուպոլիս գումարած սինո-հոդոսի մը մէջ (867) յանդգնեցաւ Նիկողայոս Ա. Քահանայապետը յայտնի նզովել, որ մինչեւ նոյն ժա-մանակ եկեղեցւոյ մէջ լսուած բան չէր: Պատճառ-ներն որոնց վրայ Փոտ իր դատապարտութեան վճիռը կը հիմնէր հետեւեալներն են. 1. Արեւմտեան եկե-ղեցին շաբաթ օրերը պահք կը պահէ: 2. Մեծ պահ-քէն շաբաթ մը պակսեցուցած է, եւ մեծ պահոց մէջ կաթնեղէն ուտելու հրաման կու տայ: 3. Քահա-նայից՝ ամուսնանալը կ՚արգելու, եւ վերջապէս. 4. տիեզերական ժողովներով հաստատուած սուրբ հան-գանակին մէջ՝ Եւ յՈրդւոյ յաւելուածն ըրած է, եւ կը վարդապետէ՝ որ Հոգին սուրբ չէ թէ միայն ի Հօրէ, այլ ի Հօրէ եւ յՈրդւոյ կը բխէ*:

Վասիլ Մակեդոնացին աս կռուոյն սրով վերջ տուաւ (867): Ինք զՄիքայէլ կայսրը՝ որ իր կենացը դաւաճանութիւն ըրած էր, մեռցընել տուաւ, զՓոտ աթոռէն ձգեց եւ զԻգնատիոս օրինաւոր պատրիարքը

* Այս վերջին կէտը միայն նշանակութիւն մը կրնար ունենալ, ինչու որ հաւատոյ վարդապետութեան կը վերաբերէր, բայց ասոր լուծումն առ-ջէն յառաջագոյն տուինք (Տես երես 131 ծանօթ.):

դարձեալ աթոռը նստեցուց։ Սակայն անկէ ետքն ալ շփոթութիւնները շարունակուեցան, ինչու որ Փոտ տասը տարուան պատրիարքութեան միջոցին՝ եպիսկոպոսական աթոռներուն վրայ իրեն կողմնակից անձինք նստեցընելով, զօրաւոր կուսակցութիւն մը կազմած էր։ Այս շփոթութեանց վերջ տալու համար՝ Նիկողայոսին յաջորդ Ադրիանոս Բ. Քահանայապետը, Կոստանդնուպոլիս (ութերորդ տիեզերական) սինհոդոս մը գումարել տուաւ (869), որ եկեղեցւոյն բաղձացուած խաղաղութիւնը շնորհեց։

Սակայն այս խաղաղութիւնն երկարատեւ չեղաւ. գժտութեան սերմը մէյ մը արտերուն մէջ խորունկ արմատ ձգած էր, որ այնչափ աւելի շուտ աճեցաւ ու զօրացաւ, որչափ արեւելք դարերէ վեր հաւատոյ վարդապետութեանց վրայ եղած շարունակեալ վէճերը, Յունաց կղերին ու ժողովրդեան կրօնական զգածումը խախտած ու տեսակ մը անզգայութիւն յառաջ բերած էին։ Հակառակութիւնք դարձեալ բորբոքեցաւ Միքայէլ Կերուլարիոս պատրիարքին ատեն (1053ին), որ առանց Փոտին գիտութիւնն ունենալու, փառասիրութեամբն անկէ վար չէր մնար։ Ասիկայ վերոյիշեալ մեղադրանաց վրայ, ուրիշ մէկ քանի ոչնչուց բաներ ալ աւելցուց, օրինակի աղագաւ, թէ Լատինք պատարագի մէջ անխմոր հաց կը գործածեն, հերձեալ կենդանեաց միսը կ'ուտեն եւ մեծ Պահոց մէջ Ալէլուիա չեն երգեր։ Լեւոն Թ. Քահանայապետը՝ զԿերուլարիոս ըստ արժանւոյն յանդիմանեց, եւ խաղաղութեան ճամբայ բանալու համար Կոստանդնուպոլիս հրեշտակներ խաւրեց։ Բայց Կերուլարիոս եւ ոչ խօսիլ ուզեց անոնց հետ, անոր համար հրեշտակները կղերին ու ժողովըրդեան ներկայութեամբը՝ Ս. Սոփիա եկեղեցւոյն խորանին վրայ նզովքի թուղթ մը դրին, որուն մէջ պատրիարքին եւ իրեն կուսակցացը վրայ կը դարձընէին այն ամէն ամբաստանութիւնները՝ զորոնք ինք Լատինաց դէմ յառաջ բերած էր։ Անկէ ետքը կայսեր պաշտպանութեամբն իրենց հայրենիքը դարձան։ Կերուլարիոս՝ Քահանայապետին հրեշտակները նզովեց, եւ անմիջապէս սկսաւ ետեւէ ըլլալ արեւելեան Յու-

նաց եկեղեցին՝ Հռոմայ միութենէն բաժնելու: Ամբարտաւանութիւնն այն աստիճանի հասաւ, որ քանի մը տարի ետքը կայսրը զինքն աքսորը խաւրեց, ուր 1059ին մեռաւ: Սակայն եկեղեցւոյ հասցուցած չարիքն իր մահուամբը չվերջացաւ, մանաւանդ թէ հետագայ դարերուն մէջ, արեւելեան ու արեւմտեան եկեղեցւոյ բաժանման վիհն երթալով ընդարձակեցաւ: Թէպէտ եւ մէկ քանի անյաջող փորձերէ ետքը, երկու եկեղեցեաց միութիւնը՝ Եւգինէոս Դ. Քահանայապետին ատեն Փլորենտիայի ընդհանուր սինհոդոսին (1439) մէջ բարեբախտութեամբ յաջողեցաւ, բայց Յունաց մեծագոյն մասը դարձեալ յառաջուան հերձուածոյն մէջ ինկաւ:

## 53. *Աս շրջանիս մէջ Հայոց եկեղեցւոյն վիճակը (700 — 1080):*

Ութերորդ դարուն՝ Հագարացիք գրեթէ ամբողջ Մեծ Հայաստանի տիրելով, յունական տէրութեան Հայաստանի վրայ ունեցած ազդեցութիւնը կտրեցաւ, որով նաեւ ինկաւ ան նեցուկը՝ որ ան կողման Հայոց կղերին ու ժողովրդեան ուղղափառ մասը կ'ամրացընէր: Անկէ ետքն Իսմայելեան սոյն իշխանութեան տակ, Քաղկեդոնի Ս. Ժողովոյն հակառակ կողմնակցութիւնն աւելի համարձակութիւն ու յանդգնութիւն ստացաւ: Ներսէս Գ. կաթուղիկոսին չորրորդ յաջորդն Եղիա՝ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն դէմ ընդդիմութիւնը մինչեւ ծայրը հասցուց: Իր կաթուղիկոսութեան ատեն (703—718) Ներսէս Բակուր Աղուանից կաթուղիկոսը, Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ճշմարտութիւնն եւ անոր մէջ քարոզուած վարդապետութեան ուղղափառութիւնը ճանչնալով, Աղուանից Թագուհին համոզեց եւ միաբան գործակցութեամբ կ'ուզէին Աղուանից ազգն ուղղափառութեան դարձընել: Սակայն իրենց հակառակորդները բանն անմիջապէս Եղիային ականջը հասուցին, որ երբոր երկու երեք անգամ պատգամաւորութիւն խաւրելով չկրցաւ զիրենք իրենց խորհրդէն ետ կեցընել, Դամասկոս Ոմար ամիրապետին ամբաս-

տանութեան թուղթ մը գրեց, որուն մէջ կ'ըսէր թէ Ներսէս ու Թագուհին՝ Աղուանից երկիրը Յունաց կայսեր տակը ձգելով, ամբարտաւան իշխանութենէն ելլել կ'ուզեն։ Ասոր վրայ ամբարտաւան հրամանաւն Աղուանից կաթողիկոսը դշխոյին հետ շղթայակապ Դամասկոս տարուեցան, եւ Եղիա անձամբ Պարտաւ քաղաքը ժողովք ընելով՝ Ներսէսին տեղ Սիմոն անուանով մէկը կաթողիկոս դրաւ։ Եղիային յաջորդեց Յովհաննէս Օձնեցին (718—729), որ իր բարակ մտաւոր կրթութեամբն եւ նախորդներէն ունեցած աւելի աստուածաբանական ու փիլիսոփայական հմտութեանցը համար, Իմաստասէր վերադիր անունը կը կրէ։ Իր կաթողիկոսական աթոռն եղած ժամանակը՝ Հայոց եկեղեցին շատ պղտոր եւ մրրկալից կերպարանք մ'ունէր։ Մէկ կողմանէ Հայոց կղերին ու ժողովրդեան մէջ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն վրայ եղած վէճերը սաստկացած էին. միւս կողմանէ խիստ Եւտիքական (Երեւութական) աղանդ մը Հայաստան ճարակելու կը սպառնար։ Յունաց հետ ալ արարողութեանց ու հաւատոյ վերաբերեալ խնդիրները դեռ կը շարունակուէին, եւ նոյն իսկ Հայոց մէջ խառնակ տարբերութիւններ կային։ Թէեւ Յովհաննէս Իմաստասէրը՝ մեծ արդիւնք ունի եկեղեցւոյ բարեկարգական կանոնները Հայաստանի մէջ յարգի եւ զօրութեան բերելուն, եւ Հայոց մէջ եղած տարբերութիւններն առանձին սիւնհոդոսով մը (Դըւնոյ Ն. 719) վերցընելուն եւ հաստատ միօրինակութեան մը բերելուն համար, բայց ափսոս որ իր նոր սեպհական կարգադրութեանցը մէջ ինչ ինչ ուղղելի կը թողու։ Երեւութականաց դէմ ալ նշանաւոր ճառ մը գրած է, որուն մէջ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ամենեւին ընդդիմութիւն մը չկայ։ Սակայն աս ստոյգ է, որ իր կաթողիկոսութեան ատեն Հայաստան՝ ընդհանրապէս խօսելով, կաթողիկէ եկեղեցւոյ հետ հաղորդութեան մէջ չէր, որուն ակներեւ ապացոյց է նաեւ հետագայ պատմութիւնը։ Ս. Գերմանոս Կոստանդնուպոլսոյ հայրապետը, որուն հայրապետութեան ժամանակը՝ Յովհաննէս Իմաստասիրին կաթողիկոսութենէն յառաջ սկսելով, միատեղ կը լմըննայ

(714—729), Հայոց տաճարին ընդարձակ թուղթ մը գրեց, որուն մէջ Ս. Լեւոնի եւ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն եւ Հինգերորդ ու Միակամեայց դէմ գումարուած վեցերորդ տիեզերական ժողովներուն վարդապետութիւնը մեկնելով՝ Հայերը կը յորդորէ, որ զանոնք ընդունին եւ կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միանան։ Ստեփանոս Սիւնեցին՝ դեռ իբրեւ քահանայ, իր արեմուտք ըրած ուսումնական ճամբորդութենէն դարձած ատեն, աս թուղթը Հայաստան բերաւ։ Բայց հետեւութեանը վրայ ստոյգ տեղեկութիւններ չունինք։ Այսչափս միայն գիտենք, որ Ստեփանոս Սիւնեցին իր բերած թղթոյն ընդդիմագրական պատասխան մը գրած է, զոր ցայսօր ունինք. Թէպէտ ոմանք այս թուղթն ետքէն խարդախուած կը համարին։ Քանի մը աննշանաւոր կաթուղիկոսներէ ետքը, Յովհաննէս Իմաստասէրէն գիտութեան կողմանէ քիչ ստորին, իսկ եկեղեցական միութեան գաղափարով իրմէ վեհագոյն կաթուղիկոս մը աթոռը նստած կը գտնենք, այսինքն Զաքարիա կաթուղիկոսը (854—876)։ Աս իմաստուն եւ բարեպաշտ կաթուղիկոսին կրքէ ազատ բարքը, զինքը միաբանութեան փորձ մ'ընելու դրդեց։ Աս ատենները Կոստանդնուպոլսոյ հայրապետն էր Փոտ. Զաքարիա իրեն թուղթ մը գրելով աս երեւելի գործառնութեան դուռ բացաւ։ Փոտ աս գործքը Նիկիայի Յովհաննէս (ըստ ազգային պատմագրաց Վահան) հայազգի արքեպիսկոպոսին յանձնեց, որն որ ինչպէս հաւանական կ'երեւայ Փոտին կողմանէ թէ Զաքարիա կաթուղիկոսին եւ թէ Աշոտ Բագրատունի թագաւորին թղթեր գրեց, եւ սուրբ խաչափայտէն մաս մը պարգեւ խաւրեց։ Աս թղթերուն մէջ պատմական կերպով կը ցուցնէ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ուղղութիւնը, եւ նոյն ժողովոյն վրայ Հայոց մէջ ինչ կերպով ծուռ կարծիք մտնելուն պատմութիւնը կու տայ։ Աս թղթակցութեան հետեւութիւնն ան եղաւ, որ Յովհաննէս արքեպիսկոպոսն անձամբ Հայաստան գալով, Զաքարիա կաթուղիկոսը Շիրակվանու ժողովը գումարեց (862)։ Աս ժողովոյս մէջ՝ որուն ներկայ էին Աշոտ Ա. Թագաւորն եւ ու-

բէշ երեւելի անձինք, Վահան Երրորդութեան ու Մարդեղութեան վրայ ճառ մը խօսեցաւ, եւ խնդիրը պայծառացընելով ժողովականաց առջեւը դրաւ։ Դժուարութիւնները լուծուեցան, ժողովականք Վահանայ խօսքերուն հաւանեցան եւ երկու եկեղեցեաց միաբանութիւնը կատարուեցաւ։ Բայց ժողովը նախ ընդհանրապէս Երրորդութեան, Մարդեղութեան եւ Ս. Կուսին Աստուածամայրութեանը վրայ խնդրոյ տակ չեղող նախադասութիւններ իբրեւ կանոն որոշելէն ետքը, բուն խնդրոյն՝ այսինքն Քաղկեդոնի Ս. Ժողովոյն եւ հետեւեալ ժողովքներուն վրայ աս երկակողմանի կանոնները որոշեց։

Եթէ ոք զՔաղկեդոնի ժողովն եւ զհետեւողս (այսինքն զհետեւեալ ժողովսն) նորա հակառակ կամ դիմամարտ գիտիցէ առաքելական կամ մարգարէական սահմանեալ ուղղութեան կամ երից սուրբ ժողովոցն աւանդութեան, եւ վասն մարդահաճութեան եւ կամ վասն ընչասիրութեան ոչ նզովիցէ, նզովեալ եղիցի (կանոն ԺԴ)։

Եթէ ոք զՔաղկեդոնի սուրբ ժողովն կամ զհետեւողսն նորա զհինգերորդ ժողովն եւ զվեցերորդն եւ զեօթներորդն, հետեւող եւ համախոհ գիտիցէ առաքելական եւ մարգարէական ուղղութեան եւ երից սուրբ ժողովոցն եւ յանդգնի նզովել կամ զրպարտել, իբրեւ զպղծոյն Նեստորի համաձայնեալ, այնպիսին զինքն նզովէ. զի գրեալ է, եթէ ոք զոչ արժանին նզովիցէ, նզովէ զանձն իւր եւ ի գլուխ իւր նզովքն եղիցի, եւ եղիցի նզովեալ (կանոն ԺԵ*)։

Թէպէտ Շիրակվանու ժողովքէն ետքն ալ Զաքարիա կաթուղիկոսը Վահան արքեպիսկոպոսին հետ իր Թղթակցութիւնը շարունակեց, որպէս զի կամաց կամաց տուներու տարբերութիւններն ալ կարգի դրուին, բայց չէ թէ միայն տուներուն համար մնայուն բան մը չկրցաւ գործադրուիլ, այլ նաեւ Շիրակվանու ժողովոյն որոշումներն ալ երկարատեւ ազդեցութիւն մը չունեցան։ Ինչու որ Զաքարիայի մահուանէն քանի տարի ետքը, Մաշտոցի պէս կաթուղիկոս մը գահին վրայ կը գտնենք, որուն ուղղափառաց դէմ գրաւոր

* Աս վերջի կանոնին մէջ ան մասնաւորութիւն արժանի է, որ Թէպէտ կանոնը Թէական ձեւով շինուած է, սակայն զնզովներուն կողմանէ ընդունուած ըլլալն եւ ժողովոյն ուղիղ ըլլալն հաստատուած է, ինչու որ անմիջապէս ետեւը Քաղկեդոնի ժողովը սուրբ կ'անուանէ։ Սակայն տարակոյս չկայ, որ գովելի բան չէր ան աղաւաղութիւնը՝ որն որ կերպով մը կը շնորհուի այն կանոններուն մէջ, Թէպէտ եւ մեծագոյն չարիքէ ազատելու համար մտածուած ըլլայ, այսինքն Ս. Ժողովոյն Թշնամիները քիչ մը Թմրեցընելու։

դաւանութիւնը ցայսօր ունինք։ Անկէ վերջ ամիս ետքն ալ իր աշակերտը Յովհաննէս Զ. Պատմագիր կաթուղիկոսը կը յաջորդէ, որուն բոլոր պատմագրութիւնը միանգամայն իր դաւանանքն է։ Սակայն Յովհաննէս կաթուղիկոսէն կէս դար մը ետքը, յանկարծ դէմերնիս դարձեալ միաբանասէր կաթուղիկոս մը կ'ելլէ, այսինքն Վահան (965—980)։ Ասիկայ կաթուղիկոս ընտրուելէն յառաջ արդէն Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ուղղութիւնը ճանչցած էր. ուստի կաթուղիկոսական աթոռն ելլելուն պէս՝ Թէոդորոս Մելիտինոյ արքեպիսկոպոսին ձեռքով՝ կաթուղիկէ եկեղեցւոյն հետ ունեցած միաբանական հաղորդութիւնը յայտնեց։ Բայց ընդհանուր տիրող կարծիքն սաստ հակառակ էր։ Յամի 970ին Անի քաղաքն եկեղեցականներու եւ վանականներու ժողով մ'եղաւ, ուր Սեւանայ վանահայրը՝ Վահան կաթուղիկոսին հակառակաթոռ ընտրուեցաւ Ստեփանոս Գ. անուամբ։ Վահան Վասպուրականի Աբուսահլ Թագաւորին ապաւինեցաւ, որ զինքը սիրով ընդունեցաւ եւ ուզեց իրեն իրաւունքը պաշտպանել. սակայն անկարելի եղաւ։ Ստեփանոս Գ. քիչ մը ետքը մեռնելով, ուրիշ Անւոյ ժողով մը (972ին) Խաչիկ կաթուղիկոսը նստեցուց, թէպէտ օրինաւոր կաթուղիկոսը Վահան, Վասպուրականի Թագաւորաց արքունեացը մէջ դեռ կենդանի էր։ Աս արքունիքը՝ Գագիկ Թագաւորէն վեր բոլոր խնդրոյն ընթացքը դիտէր, եւ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն կողմն էր։ Նոյն իսկ Գագիկ Թագաւորը Ռոմանոս Ա. կայսեր եւ նոյն ատենուան Կոստանդնուպոլսոյ Տրիփոն հայրապետին թուղթ մը գրեց, ուզելով որ աս թղթակցութեամբ մեծագոյն իրական միաբանութեան մը սկիզբ ըլլայ։ Բայց Յոյնք կամ հաստատուն եւ տեւական միաբանութեան մը յոյսը կորսնցուցած ըլլալով՝ աս առիթը հաստատ չբռնեցին, կամ ուրիշ մեզի անծանօթ դիպուածով մը միաբանութիւնն արգելուեցաւ։ Աս Վասպուրական երկրին մէջ տիրող ուղղափառ եւ միաբանասէր հոգւոյն վկայ են, նաեւ Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսն եւ իր որդին Ս. Գրիգոր Նարեկացին, որոնք իրենց հաւատքն իրենց գրուածքներովը յայտնած են։

Ա՛ս մինչեւ տասներորդ դար յառաջացող եկեղեցական պատմական տեսութեան մէջ, միայն ան կաթուղիկոսները յիշուած են, որոնց համար՝ պատմութեան բացայայտ վկայութեան նայելով, դիւրին էր որոշելը թէ ո՛ր կողման են, Քաղկեդոնի Ս. Ժողովոյն ու անոր ուղղափառ դաւանութեան կողմը, թէ անոր հակառակ: Իսկ մնկալ բազմաթիւ կաթուղիկոսներն՝ որոնց անուններն եւ աթոռակալութեան տարիէն զատ բան չենք գիտեր, պատմութեան շքոյն մէջ են: Սակայն միտ դնելով՝ որ աս իրենց կրօնական կարծեաց նկատմամբ անյիշատակ մնացած կաթուղիկոսները, ըստ մեծի մասին կամ յայտնապէս Քաղկեդոնի Ս. Ժողովոյն հակառակորդ կաթուղիկոսի մը անմիջական յաջորդ, կամ յայտնի Քաղկեդոնի Ս. Ժողովոյն կողմը ծանուցուած կաթուղիկոսի մը նախորդ են, պէտք ենք ի սէր պատմական ճշմարտութեան խոստովանիլ, որ վեցերորդ դարուն Հայոց եկեղեցին կաթուղիկէ եկեղեցիէն բաժնուելէն ետքը, մինչեւ տասներորդ դար իրարու յաջորդող կաթուղիկոսներուն մեծ մասը՝ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն հակառակ էին եւ անոր ուղղափառ դաւանութիւնը չունէին: Բայց գտնուեցան մէկ քանի իմաստուն կաթուղիկոսներ, որոնք արութեամբ ամէն նախապաշարմանց յաղթելով, չորրորդ տիեզերական ժողովոյն ճշմարտութիւնը ճանչցան, դաւանողներն ընդունեցան ու դաւանանքը քարոզեցին:

---

## ՀԱՏԱԾ Բ.

### ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

### 54. *Քրիստոսի եկեղեցւոյ ներքին սահմանադրութիւնը:*

Քահանայապետին գլխաւորութիւնն եկեղեցական կրաց մէջ, այս շրջանին՝ նախընթաց շրջանէն աւելի որոշ յայտնուեցաւ. Քահանայապետն իրեն դիմող եպիսկոպոսներուն վրայ վերին դատաւորական իշխանութիւն մը կը բանեցընէր: Նիկողայոս Ա. սահմանեց՝ որ առանց Հռոմայ Քահանայապետին հաւանութեանն եպիսկոպոս մը, ո՛չ կարենայ դատապարտուիլ եւ ո՛չ աթոռէն վար առնուիլ: Ծանրակշիռ ու հարկաւոր դէպքերու մէջ՝ Քահանայապետն եպիսկոպոսները Հռոմ կը կանչէր, որ հոն գումարուած սինոհոդոսաց մասնակից ըլլան: Նոր եպիսկոպոսական մանաւանդ մետրապոլտական աթոռի մը հաստատութիւնը, գլխաւորաբար Քահանայապետին իշխանութեամբը կ'ըլլար: Պալլիումը (եմիփորոնը) որ յատուկ

Քահանայապետին փոխանորդաց եւ մէկ քանի եպիսկոպոսաց պատուոյ նշանն էր, այս շրջանին մէջ մետրապոլտական արժանապատուութեան նշանակ սկըսաւ համարուիլ, որուն ստացումն անհրաժեշտ կարեւոր էր նոյն իշխանութեան իրաւունքներն ի գործ դնելու համար։ Եպիսկոպոսաց հրաժարումը կամ մէկ քաղքէ ուրիշ քաղաք փոխադրութիւնն առանց Քահանայապետին հաւանութեանը չէր կրնար ըլլալ։ Նախընթաց շրջանին մէջ՝ Քահանայապետն եկեղեցական խնդիրները Թագաւորութեան մը Մետրապոլիտներէն ընտրուած փոխանորդութեանց ձեռքով կ'որոշէր, իսկ հիմայ ուղղակի խաւրած արտաքոյ կարգի հրեշտակաց ձեռքով, որոնք նաեւ ազգային սինհոդոսաց գահերէց կը նստէին։ Քահանայապետական իրաւանց այսչափ ընդարձակուելուն շատ օգնեցին նոյն իսկ եպիսկոպոսները, որ յաճախ աշխարհական իշխանաց անկարգ դիտաւորութեանցը գործիք կ'ըլլային, բարոյական ու եկեղեցական օրինաց դէմ կը պակսէին, եւ իրարու հետ անդադար գժտութիւններ կ'ունենային։

Փռանկաց Թագաւորութեան մէջ խանգարած Մետրապոլիտական յօրինուածութիւնը, այս շրջանին՝ Քահանայապետաց ձեռքով նորոգուեցաւ։ Մետրապոլիտները՝ մինչեւ իններորդ դարուն կէսը, այնպիսի իրաւունքներ ու իշխանութիւններ ձեռք բերած էին, որ եպիսկոպոսներն անոնցմէ շատ անգամ կը հարըստահարուէին։ Ուստի հարկ եղաւ որ Քահանայապետներն անոնց իշխանութիւնը չափաւորեն, Հռոմ բողոքելու իրաւունքը դիւրացընելով ու ընդարձակելով։

Եպիսկոպոսներն իրենց ստորակարգեալ քահանայից վրայ յառաջուան իշխանութիւնը կը բանեցընէին։ Անարժան քահանաներն ոչ թէ բատ հաճոյից, հապա կանոնական վճռով միայն կրնային իրենց եկեղեցական պաշտօնէն մերժուիլ. ասկէ զատ մերժուողներուն թոյլ տուեալ էր Մետրապոլտին կամ գաւառական սինհոդոսին բողոքել։ Եպիսկոպոսաց իրենց թեմին մէջ եղած ամէն եկեղեցական պաշտօններուն վրայ մարդ զետեղելու իրաւունքը, թէեւ ընդ-

հանրապէս ճանչցուած էր, բայց տուանձնականաց շի-
նած եկեղեցիներուն վրայ իրենց ուզած անձը դնելու
իրաւունք տալով (jus patronatus), եպիսկոպոսաց վե-
րակիշխեալ իրաւունքն արդեամբ գրեթէ վերցուած էր:
Մանաւանդ թէ կամաց կամաց աշխարհական աւա-
գանիք՝ քահանայից եկեղեցական պաշտօններ ալ
սկսան տալ, եւ զանոնք հպատակի պէս գործածել: Ի
մասնաւորի շատ մեծ վնաս տուաւ եպիսկոպոսական
իշխանութեան ու եկեղեցական հրահանգաց, աշխար-
հական աւագանւոյն իրենց ամրոցներուն կամ պա-
լատներուն մէջ առանձնական մատուռներ ունենալը:
Ասով ազնուականաց քահանաներու դաս մը կազմուե-
ցաւ, որոնց վրայ եպիսկոպոսն իր իրաւասութիւնը չէր
կրնար ի գործ դնել, ինչու որ աւագանին զիրենք կը
պաշտպանէր. այսպէսով անգիտութիւնն ու բարուց
ապականութիւնը մէջերնին ընդհանուր տիրեց: Եկե-
ղեցական հրահանգն աւելի եւս թուլցաւ, երբոր եկե-
ղեցւոյ վաղեմի սովորութեան հակառակ այնպիսի
քահանաներ սկսան ձեռնադրուիլ, որոնք որոշ պաշ-
տօն մը չունէին կամ եկեղեցւոյ մը կապուած չէին:
Ասոնք Թափառական+ կամ Անգլուխ+ կը կոչուէին, դա-
տարկասուն ու քահանայական վիճակին անպատուաբե-
րող կեանք կ'անցընէին, եւ եկեղեցական պաշտա-
մունքներն իբրեւ արուեստ կը գործածէին: Աւագ-
սարկաւագներ ալ կային, որոնք իբրեւ եպիսկոպոսին
տեղապահ՝ թեմերուն այց կ'ելլէին, եւ եպիսկոպոսա-
կան իրաւասութիւն կը բանեցընէին: Բայց ետքէն
երբոր ասոնք առանձին ժողով մը կազմեցին, եւ երի-
ցանց ժողովատեղիներուն առաջին պաշտօններն սկը-
սան իրենց դրաւել, եպիսկոպոսաց վտանգաւոր՝ իսկ
ժողովրդապետաց անտանելի եղան. առաջիններուն՝
իրենց չափէն աւելի իշխանութիւն սեպհականելով,
իսկ վերջիններուն՝ նոյն իշխանութիւնը չարաչար
գործածելով:

Ս. Աւգոստինոսին օրինակին հետեւելով՝ շատ ե-
պիսկոպոսք իրենց եկեղեցւոյն վերաբերող քահանայից
հետ հասարակաց կեանք կ'անցընէին: Աս հինաւուրց
սովորութիւնը՝ որ մոռցուած էր, Քրոտէկանկ եպիս-

կողմէն ձեռօք 765ին դարձեալ նորոգուեցաւ, եւ այնպէս աղէկ ընդունելութիւն գտաւ, որ նոյն դարուն վերջերն արդէն շատ թեմերուն մէջ մտած կը գտնենք: Եպիսկոպոսն իր Հայրապետական եկեղեցւոյն կղերը տուն մը կը ժողվէր եւ իրենց կանոնաւոր կենաց կարգ մը կը սահմանէր: Ասոնք՝ կանոնիկոս կը կոչուէին եւ կրօնաւորներէն անով կը տարբերէին, որ ինչք կրնային ստանալ եւ ուխտ չունէին, բայց եպիսկոպոսին հնազանդութեան տակն էին: Տասներորդ դարուն՝ գլխաւորաբար Գերմանիա, այս երիցանց ժողովները լուծուեցան. կանոնիկոսք՝ հասարակաց ինչքերը մասնական եկեղեցական հասերու բաժնեցին, եւ իրարմէ զատուած տներ սկսան բնակիլ, բայց միշտ իրենք զիրենք իբրեւ մէկ ընկերութեան անդամ կը նկատէին:

Մինչեւ ԺԱ դարը՝ եպիսկոպոսանիստ քաղաքներուն մէջ՝ Հայրապետական եկեղեցին քաղքին բնակչաց մի միակ եկեղեցին էր, ուր կիրակի օրերը պատարագ կը մատուցուէր, եւ սուրբ խորհուրդները կը մատակարարուէին: Անկէ ետքը քաղաքներու մէջ առանձին ժողովրդապետութիւններ ալ հաստատուեցան:

Տասանորդը՝ որ յառաջ ալ եկեղեցւոյ պիտոյից համար կը տրուէր, այս շրջանին Կարոլոս Մեծին ձեռքով բովանդակ տէրութեան մէջ ընդհանուր խոթուեցաւ:

## 55. Եկեղեցւոյ ու տէրութեան մէջ եղած յարաբերութիւնը:

Գերմանական տէրութեանց քաղաքակրթութեան վրայ եկեղեցւոյ ունեցած մեծ ազդեցութիւնը, պատճառ եղաւ որ եկեղեցին նոյն տէրութեանց մէջ նաեւ արտաքին իշխանութիւն մ'ալ ձեռք բերէ: Եպիսկոպոսք ու աբբայք ընդարձակ կալուածներ ու երկիրներ պարգեւ ընդունեցան. իրենք կրնային թագաւորաց գարնան գումարած տէրութեան ժողովներուն մասնակից ըլլալ, եւ ետքէն մինչեւ աւագ նախարարաց կարգն անցան: Թագաւորք եւ իշխանք ալ շատ հեղ

եկեղեցական ժողովներու ներկայ կը գտնուէին, եւ անոնց վճիռներն իրենց աշխարհական իշխանութեամբը կը պաշտպանէին։ Եկեղեցւոյ ու տէրութեան մէջ եղած այս փոփոխ յարաբերութիւնք, աւելի եւս հաստատուեցան արեւմտեան հռոմէական կայսրութեան նորոգուելովը։ Մեծն Կարոլոս ու իր յաջորդները՝ Քահանայապետներէն ընդունած կայսերական թագին հետ, եկեղեցւոյ վերին պաշտպանութեան իրաւունքն ու պարտքն ալ վրանին առին։

Բայց տէրութեան ու եկեղեցւոյ մէջ եղած այս փոփոխ յարաբերութենէն շատ անկարգութիւններ ու շփոթութիւններ ելան, երբ որ աշխարհական իշխանք՝ իրենց իրաւանց չափն անցնելով, եկեղեցւոյ իրողութեանցն սկսան խառնուիլ։

Ասոր մերձաւոր առիթ կու տար Ա տ ո փ ա յ ե ն կ ո չ ք ո ւ ր ո ն ի ն ը, որ Կարոլինեանց ժամանակէն արդէն սկսած էր։ Եպիսկոպոսական եկեղեցեաց կալուածներուն մեծ մասն աւատային ըլլալով, իններորդ դարէն վեր նոր ընտրուած կամ անուանուած եպիսկոպոսները թագաւորին՝ իբրեւ իրենց աւատապետին, հաւատարմութեան երդում կ'ընէին, որ զիրենք իր իշխանութեան տակը կ'առնուր։ Երդումէն ետքը կ'ըլլար եկեղեցւոյ կալուածոց տուչութիւնը, զորն որ աւատապետը կը կատարէր՝ եպիսկոպոսին մատանի ու գաւազան տալով, իբրեւ նշան եպիսկոպոսական արժանապատուութեան ու իշխանութեան։ Այս կերպ հանդերձաւորութիւնը, որուն սկիզբն ինչպէս հաւանական կ'երեւայ Մեծն Կարոլոսի ատենէն է, իսկզբան աննշանակ բան մըն էր. բայց իրեն յաջորդ կայսերաց ատեն՝ անով ծանրակշռութիւն մ'ստացաւ, որ անոնք եպիսկոպոսի մը անուանումը սովորաբար այս նշանները տալով կը ցուցընէին, եւ անոնց մահուանէն ետքը տրուած նշաններն ետ կը պահանջէին։ Բաց ասկէ ժամանակին հոգւոյն համաձայն, որ արտաքին իրաց վրայ մեծ յարգ կը դնէր, շատերն եպիսկոպոսաց աս կերպով հանդերձաւորիլը տեսնելով, կը կարծէին թէ աւատատուն՝ եպիսկոպոսներն աշխարհական աւատառուներուն հաւասար կը դնէ, եւ չէ թէ միայն հո-

դեւոր պաշտօնին հետ կապուած ստացուածքները, այլ նոյն իսկ եպիսկոպոսական աստիճանն ու իշխանութիւնն ինք կու տայ։ Մանաւանդ որ տրուած նշանակները պարզ հոգեւոր բանի ցոյց էին, ինչպէս է մատանին, որ եպիսկոպոսին իր եկեղեցւոյն հետ պսակումը կը ցուցընէ, եւ գաւազանն՝ որ անոր հովուական իշխանութեան նշանակ է։ Յետագայ դարերուն մէջ ասկէ մեծ շարիքներ ծագեցան։ Իշխանք եպիսկոպոսներն իրենց ծառայական հպատակութեան տակն առնելով՝ շատ անգամ հոգեւոր պաշտօնները սակով կը ծախէին եւ անարժան անձինք եպիսկոպոսութեան կը հասցընէին։ Ասոր հետեւութիւնն ան եղաւ, որ եկեղեցւոյ մէջ ընդհանուր բարուց ապականութիւն մը տիրեց, որուն աւելի եւս տարածուելուն օգնեց աս ժամանակի շրջանին եւ առանձինն Ժ. դարուն մէկ քանի Քահանայապետաց անարժան վարքը։ Սակայն քահանայապետական աթոռոյն վրայ չպակսեցան առաքինի ու ազնուաբարոյ անձինք ալ, որոնք ժամանակին թերութիւնները ճանչցան, եւ մեծ փութով զանոնք շտկելու աշխատեցան, բայց իրենց ջանքը բաղձացուած հետեւութիւնը չունեցաւ։ Եկեղեցւոյ հրահանգաց վերստին նորոգութիւնը Գրիգոր Է. Քահանայապետին վերապահուած էր, որ յաջորդ երրորդ շրջանին գլուխը կ'անցնի։

### 56. *Հռոմայ Քահանայապետաց աշխարհական իշխանութիւնը։*

Արդէն այս ժամանակի շրջանէն յառաջ՝ Իտալիա քաղաքական յեղաշրջութիւն մը կը պատրաստուէր, որուն ի հարկէ Քահանայապետք ալ իրենց դիրքը պատճառաւ մասնակից պիտ'որ ըլլային։ Օրէ օր աւելի յայտնի կը տեսնուէր Բիւզանդեան կայսրութեան Իտալիա ունեցած երկիրները Լոնգոբարդացւոց յարձակմանցը դէմ պաշտպանելու անկարողութիւնը, որոնք մտքերնին դրած էին բոլոր Իտալիայի եւ ի մասնաւորի Հռոմայ տիրելու։ Աս վտանգաւոր ժամանակը՝ Հռոմայ կառավարութեան բովանդակ ծանրութիւնը

Քահանայապետաց վրայ ինկած էր. իրենք էին Հռոմայ հասարակութեան իրական գլուխը, այնպէս որ կայսերական վեցերորդապետը դրեթէ ամենևին ազդեցութիւն չունէր: Երբոր Լևոն Խաւրացին պատկերաց դէմ հանած հրովարտակը, Իտալիայի մէջ ապստամբութիւն հանեց և կայսերական պաշտօնատէրները վռնտուեցան, Քահանայապետն ստիպուեցաւ Հռոմայ բովանդակ աշխարհական իշխանութիւնը ձեռքն առնուլ: Աս ատենէն սկսեալ Քահանայապետաց աշխարհական իշխանութիւնը միշտ աճելու վրայ էր. այնպէս որ Իտալիա Լոնգոպարդացւոց թագաւորներէն ետքը, ամենէն մեծ իշխանութիւնն իրենք ունէին: Բայց աս իշխանութիւնը զինու զօրութեան վրայ հիմնեալ չէր, հապա իրենց պատուոյն արժանաւորութեանն և Հռոմայ եկեղեցւոյն Իտալիայի զանազան կողմերն ունեցած կալուածներուն վրայ:

Զաքարիա Ս. Քահանայապետը՝ իր կառավարութեան վերջին տարին ծանրակշիռ եկեղեցական-քաղաքական գործք մը կատարեց: Փռանկք ուզելով իրենց թագաւորական ցեղը փոխել, Քահանայապետին դիմեցին, որ իրենց առաջարկութեանը հաւանելով Պեպինոս Կարճը թագաւորական գահը հանեց (752): Զաքարիայի յաջորդը՝ Ստեփանոս Բ., տեսնելով որ Բիւզանդեան կայսրութեան ու Հռոմայ մէջ բաժանում մը դեռ արդեամբ կը տեւէ, զՊեպինոս ու իր յաջորդները Հռոմէական Պատրիկ անուանեց, և Հռոմայ եկեղեցւոյ պաշտպանութեան իրաւունքն իրենց տուաւ, զորն որ յառաջագոյն Յունաց կայսրները կամ իրենց տեղ Ռաւեննա նստող վեցերորդապետները կը վարէին:

Քանի մը տարի ետքը՝ Պեպինոս անձամբ Հռոմ եկաւ, Ստեփանոս Բ. Քահանայապետը Լոնգոպարդացւոց դէմ պաշտպանելու համար, որոնք մինչև Հռոմայ դուռը հասած էին: Պեպինոս անոնց յափշտակած երկիրները ձեռքերնէն առաւ, և զանոնք (Վեցերորդապետութիւնը, Պենտապոլիս ու Հռոմայ դքսութիւնը) մշտնջենաւոր ժամանակաց համար Ս. Պետրոսի, Եկեղեցւոյ ու Հռոմէական հասարակապետութեան պարգևեց, այսինքն Հռոմայ Քահանայապե-

տաց, որոնք արդէն ժամանակէ մը վեր Հռոմայ հասարակութեան գլուխն անցած էին։ Քիչ մ'ետքը աս պարգեւատուութիւնը Պեպինոսի որդին Մեծն Կարոլոս՝ չէ թէ միայն հաստատեց, այլ նաեւ ընդարձակեց։ Այսպէս հիմ դրուեցաւ Եկեղեցւոյ տէրութեան ու Քահանայապետաց վեհապետութեան, որ անկէ ետքն երթալով աւելի որոշ երեւան ելաւ։

Քահանայապետաց աշխարհական իշխանութիւն ունենալը, Եկեղեցւոյ կառավարութեան համար անհրաժեշտ հարկաւոր է, ինչու որ ասով Քահանայապետք ուրիշ անկախ իշխանաց կարգը կ'անցնին, եւ Քրիստոսէ իրենց յանձնուած պաշտօնն ազատ ու անարգել կրնան ի գործ դնել։

## 57. Քահանայապետաց ու եպիսկոպոսաց ընտրութիւնը։

Բիւզանդեան կայսրութեան Հռոմայ վրայ ունեցած իշխանութիւնը դադրելէն՝ մինչեւ արեւմտեան կայսրութեան վերստին հաստատուիլը, Քահանայապետաց ընտրութիւնը բոլորովին ազատ էր։ Բայց անկէ ետքն ազնուականաց ու կայսերաց ազդեցութեան պատճառաւ պէսպէս դժուարութեանց տակ ինկաւ։ Նիկողայոս Բ. 1059ին Քահանայապետաց ազատ ընտրութիւնը դարձեալ հաստատեց, եւ միանգամայն ապագայ ժամանակներու համար ալ նոյնն ապահովցնելու համար, ընտրութեան իրաւունքը Կարդինալաց ժողովոյ մը յանձնեց։ Կարդինալները Հռոմայ եպիսկոպոսին երիցանց ժողովէն յառաջ եկած են։ Հին ատեններ Հռոմայ հասարակութեան ամէն քահանաներն ու սարկաւագները կարդինալ վերադիր անունն ունէին։ Ուրիշ հասարակութեանց մէջ ալ աս անունը կը գործածուէր, եւ կարդինալ եպիսկոպոս, քահանայ կամ սարկաւագ կը կոչուէր անիկայ, որ եկեղեցւոյ մը ընդ միշտ կապուած էր։ Իններորդ դարուն՝ Հռոմայ շրջակայքն եղող Է. եպիսկոպոսներն ալ՝ այսինքն Ոստիա, Ռուփինա, Բորդոյ, Ալպանոյ, Տուսկուլի, Սապինա ու Բրենեստէ քաղաքներուն եպիսկոպոսները,

Հռոմայ կարդինալաց կարգը դասուեցան, ինչու որ անոնք իբրեւ Հռոմայ մետրապոլտական եկեղեցւոյն օգնական եպիսկոպոս՝ ամէն ծանրակշիռ դէպքերու մէջ խորհրդի կը կանչուէին։ Այսպէս Հռոմայ կարդինալաց ժողովն, որուն յանձնուած էր Քահանայապետին ընտրութիւնը, կը բաղկանար 7 եպիսկոպոսէ, 28 քահանաներէ (այսինքն Հռոմայ 28 ժողովրդապետական եկեղեցիներուն առաջնորդներէն) եւ 18 սարկաւագներէ։ Եւ որովհետեւ աս կարդինալները Քահանայապետ ընտրելու իրաւունքն ունէին, եւ իբրեւ Քահանայապետին խորհրդական՝ բովանդակ եկեղեցւոյ կառավարութեան մասնակից էին, անոր համար պատիւնին կամաց կամաց այնչափ մեծցաւ, որ իրենց՝ ուրիշ հասարակութեանց արքեպիսկոպոսներէն ու եպիսկոպոսներէն վեր աստիճան մը տրուեցաւ։ Ասոր համար Պիոս Ե. Քահանայապետն (1567), ուրիշ քահանայից արգելեց անկէ ետքը կարդինալ անունը կրելը։

Կարդինալաց թիւն ամէն ժամանակ հաւասար չէր. առաջին անգամ Սիքստոս Քահանայապետը (1586) որոշեց անոնց թիւն (այսինքն 6 եպիսկոպոս կարդինալ, 50 քահանայ կարդինալ եւ 14 սարկաւագ կարդինալ. ընդ ամէնը 70)բայց շատ քիչ անգամ աս թիւն ամբողջ կ'ըլլայ։ Ասոնք կը կազմեն եկեղեցւոյ ծերակոյտը, եւ պաշտօննին է Քահանայապետին եկեղեցւոյ կառավարութեան մէջ օգնական ըլլալ, եւ ամէն ծանրակշիռ խորհուրդներու ներկայ գտնուիլ։

Եպիսկոպոսաց ընտրութիւնը՝ Մեծն Կարոլոսի եւ իր որդւոյն Լուդովիկոսի ատեն ազատ էր, վասն զի իրենք որոշած էին, որ կղերն ու ժողովուրդն ուզած անձերնին եպիսկոպոս ընտրեն, բայց ընտրութեան հաստատութիւնն ըստ հին սովորութեան իրենց վերապահած էին։ Իններորդ դարուն կէսին՝ եպիսկոպոսաց ընտրութիւնը մայր-եկեղեցեաց եւ ուրիշ եկեղեցիներուն կանոնիկոսաց ձեռքով սկսաւ ըլլալ։ Բայց շատ հեղ կը պատահէր՝ որ կայսրն որոշ անձ մը յանձնելով, ամենեւին ընտրութիւն չէր ըլլար։ Թագաւորական իշխանութեան ինկած ատեն, նոյն իսկ դքսեր ու կոմսեր յանդգնեցան իրենց ազդեցութեան տակ ե-

ղող եպիսկոպոսական աթոռներուն վրայ կամ իրենց ազգականները կամ մտերիմները նստեցընել, մանաւանդ զանոնք՝ որ գիտէին թէ եկեղեցական ստացուածքները յափշտակած ատեննին իրենց պիտո՛ր չընդդիմանան, որով եպիսկոպոսական աթոռներուն վրայ շատ անարժան անձինք նստան։

## 58. Վանականաց վիճակը։

Ութերորդ դարուն՝ Փռանկաց թագաւորութեան մէջ վանքերը շատ ինկած էին, նախ Սարակինոսաց արշաւանքներուն եւ երկրորդ Կարոլոս Մարդելին պատճառաւ, որ վանքերուն ստացուածքները վատնած փճացուցած էր. վանքերուն հետ ինկան նաեւ անոնց հետ կապուած հրապարակական դպրոցները։

Գերմանիա գլխաւորաբար Ս. Բոնիփակիոսի ջանքովը՝ Ֆրիցլարի, Ֆուլտայի ու Հիրշֆելտի վանքերը շինուեցան, որոնք ետքէն կղերականաց կրթարաններ եղան։ Յամի 742ին Ս. Բենեդիկտոսի կանոնները, Փռանկաց պետութեան ամէն վանքերուն մէջ ընդունուեցան։ Կրօնաւորաց մեծ մասն աս միջոցիս եղբայր էին, բայց ետքէն որոշուեցաւ որ միայն քահանայ մը կարենայ աբբայ ընտրուիլ։ Եպիսկոպոսաց իշխանութիւնը շատ մեծ էր իրենց թեմին մէջ եղած կրօնաւորներուն վրայ։

Իններորդ դարուն կէսէն ետքը, շատ ծաղկեալ վանքեր աւերիչ պատերազմներու պատճառաւ ջնջուեցան։ Նոյնպէս վանական հրահանգաց անկման վրայ, ընդհանուր քանքատներ սկսան լսուիլ։ Բայց տասներորդ դարուն սկիզբը (910) Գլունիի աբբայարանը հաստատուեցաւ, որ հին կրօնաւորական հոգին չէ թէ միայն իր մէջը նորոգեց, այլ նաեւ ուրիշ մենաստաններու մէջ ալ արծարծելու պատճառ եղաւ։ Աս վանքին կ'առաջնորդէր Բուրգունտիացի Բեռնոյ կոմսը։ Գաղղիայի վանքերն աս օրինակին հետեւեցան, եւ նոյն իսկ Իտալիայի, Սպանիայի ու Լեհաստանի վանքերուն վրայ բարերար ազդեցութիւն մը ունեցաւ։ Այսպէս կրօնաւորական կարգը՝ ժողովրդեան աչքերը նորէն համա-

բուռն տուացու, եւ թէ բարեպաշտութեամբ ու թէ գիտութեամբ մեծամեծ բարիքներ յառաջ բերաւ։

Տասներորդ դարուն վերջերը՝ Իտալիա տիրող ընդհանուր եղծումն ու բարուց ապականութիւնը, վանականութեան հոգին նորէն արծարծեց։ Ս. Հռոմուալդոս 1023ին Ապեննինեան լեռանց Գամալտոլի ըսուած ձորին մէջ, Գամալտոլեանց կրօնը հաստատեց։ Քիչ մը ետքը Ս. Գուալբերտոս՝ Փլորենտինայի կողմերը Վալլոմբրոզեանց խիստ կրօնը հիմնեց։ -- Վանքերուն ունեցած արտօնութիւններն էին, ազատ աբբայընտրութեան իրաւունք, եւ իրենց ստացուածոցը վրայ տրամադրելու բացարձակ իշխանութիւն։ Բայց ինչպէս անցեալ՝ նոյնպէս աս շրջանին մէջ, վանքերն եպիսկոպոսին կարգաւոր իրաւասութեան տակն էին. անկէ բոլորովին ազատ վանքեր ԺԱ երորդ դարէն յառաջ շատ քիչ կային։

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ

#### 59. *Կրօնական սուրբ գործողութիւններ:*

Աս ժամանակի շրջանին մէջ՝ սուրբ պատարագի զոհն եւ ուրիշ խորհրդոց մատակարարութիւնն եկեղեցւոյ հին սովորութեան համաձայն կ'ըլլար։

Հրապարակական խոստովանանքը՝ Կոստանդնուպոլսոյ Նեկտարիոս եպիսկոպոսին ժամանակ (391) արդէն վերցուած էր, որուն հետեւեցան քիչ մը ետքն արեւելքի գրեթէ ամէն եկեղեցիները։ Արեւմուտք ալ Մեծն Լեւոն Քահանայապետը յայտնի սահմանեց, որ քահանային եղած գաղտնի խոստովանութիւնը բաւական է։ Սակայն ապաշխարութեան հին հրահանգը՝ քիչ մը ժամանակ ալ դեռ արեւմուտք պահուեցաւ, բայց եւթներորդ դարէն ետքն անոր գործածութիւնն ալ սկսաւ կամաց կամաց նուազիլ, եւ Մետասաներորդ դարուն գրեթէ բոլորովին վերցուեցաւ։ Ինչու որ անկէ ետքը սովորութիւն եղաւ կանոնական պատիժնե-

րը՝ ողորմութեամբ ու խաչակնքեր դրուելով քաւել։ — Խոստովանանք լսելը իրաւունքն եպիսկոպոսինն էր, բայց շատ կանուխ ժամանակներէ վեր քահանայք ալ հաւատացելոց խոստովանանքը կը լսէին, եպիսկոպոսէն իրաւասութիւն առնելով։ — Հին հրահանգաց համաձայն՝ ապաշխարողաց արձակումը՝ սովորաբար ապաշխարանքը կատարելէն ետքը կը տրուէր, բայց դաղտնի ապաշխարողներուն ամէն ժամանակ կրնային արձակուիլ։

Նովէտը՝ որ յառաջ եկեղեցւոյ հաղորդութենէն մերժում մըն էր, ութերորդ դարէն սկսեալ արեւմուտք եկեղեցական պատիժ մ'եղաւ հրապարակական յանցաւորաց համար, որոնք 15 օրուան մէջ երեք անգամ ազդարարութիւն ընդունելէն ետքը, եկեղեցւոյ սահմանուած կանոնական ապաշխարանքները յանձն չէին առնուր։ Եպիսկոպոսն այնպիսին կը նզովէր, այսինքն եկեղեցւոյ հաղորդութենէն կը մերժէր ցորչափ ապաշխարանքը չէր ուզեր յանձն առնուլ, եւ իրեն հետ ամէն կերպ հաղորդակցութիւն կ'արգելուր։ Եթէ յանցաւորը բարձրաստիճան անձ մըն էր, եւ նզովքը բանի տեղ չէր դներ, եպիսկոպոսը պատիժը կը սաստկացընէր, այսինքն Արգելք կը դնէր, որ ուրիշ բան չէր բայց եթէ նզովքին յանցաւորին անձէն՝ ստացուածոցը վրայ ընդարձակուիլը։

Այս դէպքիս մէջ՝ կ'արգելուէր յանցաւորին ամրոցին կամ կալուածներուն մէջ աստուածային պաշտօն կատարելն եւ հրապարակաւ խորհուրդ մատակարարելը։ Խորաններն իրենց զարդերէն կը մերկացուէին, եկեղեցիները կը գոցուէին, եւ օրը միայն մէկ անգամ ապաշխարութեան աղօթք ընելու համար կը բացուէին։ Պսակը հանդիսիւ չէր օրհնուէր, մեռելոց թաղումն եկեղեցական հանդիսութեամբ չէր կատարուէր, եւ նոյն իսկ միս ուտելն արգելեալ էր։ Արգելքին գործածութիւնը տասներորդ դարուն սկսաւ։ Չի կրնար ուրացուիլ՝ որ արգելքն երբեմն զեղծմամբ աշխարհական նպատակներու հասնելու ալ կը գործածուէր, եւ այս անկարգութիւնը չկրցան խափանել նոյն իսկ երեւելի Քահանայապետաց, ի մասնաւորի Իննովկենտիոս Գ․ին խիստ պատուէրները։ Երբեմն նաեւ արգել-

քին երկար տեւողութենէն շատ մեծ վնասներ կը ծագէին։ Ինչու որ եթէ արգելքը քաղքի մը վրայ տարիներ մնար, ժողովուրդն երբեմն ան աստիճանի կը վայրենանար՝ որ աստուածային պաշտօնը նորէն սկսած ատեն, անոր դէմ ներհակութիւն կը զգար։

Աս միջոցիս երեւան ելան մէկ քանի աւելորդապաշտական գործողութիւններ, ինչպէս են Աստուծոյ վճիռ կամ Անմեղութեան փորձ ըսուածները։ Ասոնց սկզբնապատճառը ժողովրդեան ան համոզումն էր, որ Աստուած արդար բան մը, զոր վկաներով ապացուցանելն անկարելի է, նոյն իսկ հրաշքով յայտնի կ՚ընէ։ Ասոնց կը վերաբերին նաեւ մենամարտութիւնը, պաղ ու տաք ջրոյ փորձը, հրաշէկ երկաթի, եւ Ս. Հաղորդութեան ու խաչի փորձերը։ Եկեղեցին զանազան օրէնքներով կամաց կամաց աս անկարգութեանց վերջ տուաւ. ի մասնաւորի Իննովկենտիոս Գ. Քահանայապետն անոնց դէմ սաստիկ կռուեցաւ։ Մենամարտութիւնը դժբախտութեամբ մինչեւ մեր ժամանակը մնաց։

# ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԳՐԻԳՈՐ Է·ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՒԹԵՐ

**1073—1517.**

---

## ՀԱՏԱԾ Ա.

### ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՑ ՏԱՐԱԾՈՒՄՆ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

**60.** *Գրիգոր Է·ին եկեղեցւոյ նկատմամբ ունեցած արդիւնքը:*

Այս շրջանին սկիզբը՝ եկեղեցին շատ խեղճ վիճակի մէջ կը գտնուէր. մէկ կողմանէ աշխարհական տէրութեան գերի եղած էր; եւ մէկալ կողմանէ կենդանի հաւատքը շատ քրիստոնէից սրտին մէջ մարած եւ պէսպէս մոլորութիւններ անոր տեղ սպրդած մըտած էին: Չէ թէ միայն իշխանք, այլ նաեւ եկեղեցականք, իրենց վիճակին պարտքերը մոռնալով՝ աշխարհական կեանք մը կը վարէին: Եկեղեցին այս անկածութեան վիճակէն հանելու համար՝ Աստուած իր ձեռքը գործիք առաւ Հիլտեպրանտը, որ Թոսքանայի Սիենա քաղաքը հարուստ ազգատոհմի մը սերունդէն է: Հիլտեպրանտ 1073ին իր կամացը դէմ Քահանայապետ ընտրուելով՝ Գրիգոր Է. անունն առաւ: Ընդհանուր պատմութիւնն իրեն իրաւամբ Մեծ վերադիր անունը տուած է:

Գրիգոր Է. որ երկայն ժամանակ իբրեւ կրօնաւոր Գլունիի վանքը խստամբեր կեանք մը անցուցած էր, ամէն բան բովանդակող միտք եւ սուր դիտողութիւն

մ'ունէր, բարուց նկարագիրն ալ ծանր ու անյողդողդ, իսկ գործունէութիւնը անխոնջ էր։ Արդէն հինգ Քահանայապետաց եւ ի մասնաւորի իր անմիջական նախորդին Աղեքսանդր Բ.ին ատեն, Գրիգոր իբրեւ աւագ սարկաւագ՝ եկեղեցւոյ նորոգութեան անվհատ աշխատած էր, սակայն քահանայապետական աթոռն ելլելէն ետեւ, իր մի միակ նպատակն էր եկեղեցին զինքը կաշկանդող շղթաներէն ազատել։ Մինչեւ մետասաներորդ դար Քահանայապետաց իշխանութիւնն արդէն ըստ բաւականի բարձր աստիճանի հասած էր, ինչու որ ժողովուրդք վարժած էին հարստահարութիւն մը կրած ատեն Հռոմ դիմելու, եւ անկէ իրենց նեղութեանցն օգնութիւն խնդրելու։ Գրիգոր իր անձնական ճոխութեամբն աս իշխանութիւնն աւելի եւս բարձրացուց, որուն մեծապէս նպաստաւոր եղան նաեւ ժամանակին քաղաքական յարաբերութիւնները։ Իր բովանդակ միտքը գրաւող ու գործունէութեանն առաջնորդող միակ մտածութիւնն աս էր, որ Եկեղեցին պէտք է ազատ, եւ աշխարհական իշխանութենէ անկախ ըլլայ։ Մանաւանդ թէ աշխարհական տէրութիւնն եկեղեցական իշխանութեան գերագոյնութիւնը պէտք է ճանչնայ։ Սակայն Գրիգոր իր աս ջանիցը վախճան չէր դրած իր անձը կամ փառասիրութիւնը, հապա խեղճ ու հարստահարեալ ժողովրդոց հոգեւոր ու մարմնաւոր երջանկութիւնը, եւ եկեղեցւոյ բարեկարգութիւնը, որ նոյն միջոցին շատ խանգարած էր։

Աս ատեններս էր, որ ամենաբարձր եկեղեցական պաշտօնները (եպիսկոպոսութիւն ու աբբայութիւն), Հանդերձատուութեան պատճառաւ՝ աշխարհական իշխանութեան ձեռքով կը տրուէին, եւ եկեղեցականք աշխարհականաց գերի եղած էին։ Եկեղեցական ընտրութիւնն ալ ըստ արժանեաց չէր ըլլար, հապա իշխաններուն շնորհքովը, զորն որ՝ ամէն մարդ անարգ շողոքորթութեամբ ու ծառայամիտ սուտակապատութեամբ կրնար վաստըկիլ։ — Ասոր յարակից էր ուրիշ անկարգութիւն մ'ալ, այսինքն Սիմոնականութիւնը, որն որ գլխաւորաբար Գերմանիա Հենրիկոս Դ.ին մահուանէն ետքը շատ ճարակ գտած էր։ —

Երրորդ թերութիւնն էր եկեղեցականաց անկնութեան օրէնքը ճշդիւ չպահելը (Հարճակալութիւնը), եւ աստ իրենց վիճակին պատիւն ու անկախութիւնը կորսնցընելը։

Գրիգոր քահանայապետ ըլլալուն պէս այս երեք անկարգութեանց դարման տանելու փոյթ տարաւ. 1074ին Հռոմ բազմախուռն ժողովի մը մէջ՝ սիմոնականութիւնն արգելեց, եւ կղերականաց անկնութեան օրէնքները նորոգեց*։

Գրիգոր՝ ժողովոյն որոշմունքներն իբրեւ կանոն արեւմտեան եկեղեցւոյ մէջ հրատարակել տուաւ, եւ միանգամայն զանոնք գործադրել տալու համար պատուիրեց, որ ժողովուրդն իրենց պարտքը մոռցող քահանաներէն խորհուրդ կամ պաշտօն չընդունին։ Քահանայապետին միտքն էր աստ ըմբոստ ու դիմադարձ քահանաները հրապարակական խայտառակութեան վախովն եկեղեցւոյ հնազանդելու ստիպել։ Գրիգոր թէպէտ գլխաւորաբար կղերականաց կողմանէ մեծ հակառակութիւն գտաւ, բայց ժողովրդեան մեծագոյն մասն իր կողմն ըլլալով վերջապէս յաղթեց։ Ինչու որ ժողովուրդն անհնազանդ քահաներն իրենց պաշտօնէն կը մերժէր, եւ անոնց դէմ երբեմն նաեւ բռնութիւն ալ ի գործ կը դնէր։ Հետեւեալ տարին (1075) Գրիգոր Հռոմ գումարած երկրորդ սիւնհոդոսի մը մէջ, բաց ի սիմոնականութենէն՝ նզովքի պատժով արգելեց նաեւ հանդերձաւորութիւնը, այսինքն աշխարհականաց մատնի ու գաւազան տալով մէկու մը եկեղեցական պաշտօն շնորհելն ու կղերականաց նոյնն ընդունիլը։ Աս արգելքին պատճառաւ ծագեցաւ Հանդերձաւորութեան ըսուած կռիւը՝ Հենրիկոս Դ. Գերմանիայի կայսեր ու Գրիգոր Է. Քահանայապետին մէջ։ Հենրիկոս թէ եւ գեղեցիկ ձիրքեր ունէր, բայց մեղկ ու անառակ վարուքն եւ գլխաւորաբար խստութեամբն ու անհաւատարմութեամբը հպատակաց ատելութիւնն

* Աս որոշումները հետեւեալներն են. 1. Ասկէ ետքը եկեղեցական մը ստակով ընդունած աստիճան կամ եկեղեցական պաշտօն մը պիտի որ չվարէ։ — 2. Ոչ ոք կրնայ ստակով ընդունած եկեղեցի մը պահել ու եկեղեցւոյ իրաւունքները ծախել կամ գնել։ — 3. Անժուժկալ քահանայից ամէն եկեղեցական պաշտօն կատարելն արգելեալ է։

իրեն դէմ գրգռած էր, եւ այսչափ անկարգութիւնները բաւական չսեպելով՝ նաեւ եկեղեցւոյ հասերն անամօթութեամբ մէկուն մէկալին կը ծախէր: Գրիգոր Է. զՀենրիկոս Դ. անկէ ետ կեցընելու համար ամէն կերպ միջոց ի գործ դնելէն եւ օգուտ մը չտեսնելէն ետեւ, վերջապէս զինք Հռոմ կանչեց, որպէս զի ըրածներուն համար տայ: Բայց Հենրիկոս չէ թէ միայն հրաւէրը մերժեց անարգանօք, այլ նաեւ յանդգնեցաւ Որմս գումարած ժողովին մէջ (1076), զԳրիգոր իբրեւ բռնաւոր քահանայապետութենէ վար առնուլ: Ասոր վրայ Քահանայապետը զինքը նզովեց եւ Գերմանիայի ու Իտալիայի վրայ թագաւորական իշխանութիւն բանեցընելն արգելեց, նոյնպէս հպատակներն իրենց երդումէն արձակեց: Սակայն Գրիգոր ասով զՀենրիկոս կայսերական իշխանութենէն վար չառաւ, այլ միայն կախեց: Գերմանիայի իշխանները կայսեր բռնած ընթացքին վրայ սաստիկ զայրացած, 1076ին Տրիբուր քաղաքը ժողովեցան եւ որոշեցին որ կայսրն աթոռէն ինկած է, եթէ մէկ տարուան միջոցի մէջ նզովքէն ինք զինքն արձակել չի տար: Ամբարտաւան ինքնակալը նեղի իյնալով՝ ձմեռ ատեն ձիւնապատ Ալպեան լեռներէն Իտալիա անցաւ եւ Գանոսսա քաղաքը Քահանայապետին հանդիպեցաւ: Հոն երեք օր երեք գիշեր ծանր ապաշխարանք քաշելէն ետեւ, չորրորդ օրը Քահանայապետը զինքը նզովքէն արձակեց, երդմամբ իրմէ խոստում առնելով՝ որ տուած գայթակղութիւններն ամէն կերպով շտկելու կ'աշխատի, եւ եկեղեցական իրաց մէջ մտած զեղծումները Քահանայապետին կամաց համաձայն ուղղել յանձն կ'առնու: Քահանայապետը պատարագ մատոյց եւ Հենրիկոսի Ս. Հաղորդութեան խորհուրդը մատակարարեց, իբրեւ նշան եկեղեցի ընդունուած ըլլալուն:

Բայց Հենրիկոս հազիւ թէ նորէն գահն ելաւ, կրած խոնարհեցուցմանը վրայ դառնացած՝ խոստմունքները չուզեց կատարել: Բանակի մը գլուխն անցնելով Իտալիա մտաւ, 1084ին Հռոմ քաղաքն առաւ եւ Քահանայապետը Հրեշտակի բերդին մէջ պաշարեց: Բայց Կուիսքար՝ Նորմանդացւոց դուքսն օգնութեան

հասաւ, եւ Քահանայապետն այս նեղ վիճակէն ազատեց։ Գրիգոր Քահանայապետը Հռոմէն Մոնդեկասսինոյ եւ անկէ Սալեռնոյ փախաւ, ուր 1085ին Մայիս 25ին կնքեց իր բազմարդիւն կեանքը սա խօսքերն ըսելով՝ Արդարութիւնը սիրեցի, եւ անիրաւութիւնն ատեցի. անոր համար աքսորքի մէջ կը մեռնիմ։

Գրիգոր՝ մահուան դուռը հասած այս խօսքերն ամենայն համարձակութեամբ կրնար ըսել, վասն զի խիղճը կը վկայէր, որ չէ թէ անձնասիրութեան, փառամոլութեան կամ տիրապետելու բաղձանքէն, հապա միայն եկեղեցին ազատելու դիտմամբ աշխարհքն իրեն դէմ պատերազմի գրգռած էր, եւ թէ ինք սա նշանաւոր պատերազմն անյողդողդ հաստատութեամբ մղած էր։ — Գրիգոր Է. աշխարհական իշխանութենէն հաստատուած վերջին Քահանայապետն է։

Գրիգոր Է.ին մահուանէն ետքը՝ հանդերձաւորութեան կռիւը դեռ շարունակուեցաւ, եւ ինչ որ Գրիգոր չկրցաւ գլուխ հանել, իր յաջորդները կատարեցին։ Կաղիքստոս Բ. ու Հենրիկոս Ե. կայսեր առեն Վորմս քաղաքը գումարուած սիւնհոդոսի մը մէջ 1122, վերջապէս սա կռիւն որոշուեցաւ ըստ էական մասանց ի նպաստ եկեղեցւոյ։ Կայսրը մատնի ու գաւազան տալու իշխանութենէն հրաժարեցաւ, եւ թոյլ տուաւ որ թագաւորութեանը մէջ եղած ամէն եկեղեցիներուն պաշտօնեայք կանոնական ընտրութեամբ ու օծմամբ դրուին։ Երկու կողմանէ ալ հաստատուած դաշնաւորութիւնը, Կալիքստեան կամ Վորմսեան Միաբանագիր ըսուեցաւ, զոր որ տարի մը ետքը Լատերանեան Ա. ընդհանուր ժողովն (1123) ալ հաստատեց։ Այսպէս վերջացաւ Գերմանիա՝ 50 տարուան հանդերձաւորութեան կռիւը, որմէ թէպէտ եկեղեցին յաղթող ելաւ, բայց անոր պատճառաւ անկէ ետքն եկեղեցւոյ ու տէրութեան մէջ պաղութիւն մը մնաց։

## 61. *Խաչակիրք:*

*Խաչակրաց արշաւանքները՝ որոնք Միջին դարուն երեւելի դէպքերէն մէկն են, աս ժամանակի շրջանին մէջ կ'իյնան: Ասոնք քրիստոնէից արեւելք ըրած արշաւանքներն են Ս. Երկիրն ազատելու համար, ուր Քրիստոս Տէրն մեր ապրած ու գործած էր: Խաչակիր անունն անկէ առած են, որ աս արշաւանքներուն մասնակից եղող մարտիկները, իրենց աջ ուսոյն վրայ խաչի նշան մը կը կրէին:*

*Թէեւ աս նշանաւոր ձեռնարկութեան մասնակից եղողներէն ոմանց ոմանց սրտին մէջ՝ թիւր շարժառիթներ մտած ըլլան, ինչպէս է առատ աւարի յոյս, օտար երկիրներ տեսնելու եւ անոնց բնակչաց սովորութիւնները ճանչնալու հետաքրքիր բաղձանք եւ բախտախնդիր ոգի մը, սակայն չի կրնար ուրացուիլ որ բարձր կրօնական եռանդէ մը յառաջ եկած են:*

*Խաչակրաց արշաւանքներուն գլխաւոր նպատակն էր՝ Ս. Գերեզմանին ուխտի գացող քրիստոնեաները, Արաբացւոց ձեռքէն քաշած անտանելի նեղութիւններէն ազատել: Մեծն Կոստանդիանոսի ժամանակն արդէն Ս. Գերեզմանին ուխտի երթալու սովորութիւն կար: Քրիստոնեայք Երուսաղէմ կ'երթային կամ ծանր մեղքերու ապաշխարանքը քաշելու կամ ան սուրբ տեղերն իրենց հաւատքը զօրացընելու համար, զորոնք Քրիստոս իր կենօքն ու չարչարանքներովը նուիրական ըրած էր: Իսկզբան Արաբացիք բարեպաշտ ուխտաւորաց նեղութիւն չէին տար, բայց վերջի ժամանակները քրիստոնեայք արեւմուտք դարձած ատեննին, սկսան գանգատիլ Արաբացիներէն կրած չարակրութեանցը վրայ: Անկէ շարժեալ՝ արդէն Սեղբեստրոս Բ. Քահանայապետը Ժ. դարուն վերջերը թուղթ մը հանած էր, որուն մէջ քրիստոնեաները կը յորդորէր որ խեղճ ուխտաւորաց օգնեն: Գրիգոր Է. Քահանայապետն ալ պատրաստութիւն տեսած էր, բանակով մը արեւելք երթալու: Բայց աս խորհրդոյն գործադրութիւնը՝ Ուրբանոս Բ. Քահանայապետին մնաց:*

Պետրոս Անապատականը՝ որ 1093ին Երուսաղէմ ուխտի գացած եւ ուխտաւորաց քաշած անտանելի տառապանքներն աչքովը տեսած էր, արեւմուտք դարձած ատեն իր ողբերովը բոլոր Իտալիան ու Գաղղիան դղրդեց: Ուրբանոս Բ. Քահանայապետն ալ իր խօսքերուն անսալով, քրիստոնեաներն անհաւատից ձեռքէն ազատելու խնդիրը՝ 1095ին նախ Բիաչէնցա ու ետքը Գլերմոն գումարած երկու սիւնհոդոսներու բանակցութեան նիւթ ըրաւ: Այս վերջի քաղաքը՝ բազմաթիւ կղերականաց ու աշխարհականաց առջեւը խօսած հրաբորբոք ճառը, զամենքը յարտասուս շարժեց: Միաբերան Աստուծոյ կամքն այս է, Աստուծոյ հաճոյքն այս է գոչելով, իրենք զիրենք յօժար ու պատրաստ ցուցուցին այս սուրբ պատերազմին երթալու: Ժողովն ալ խոստացաւ անոնց՝ որոնք ուղիղ դիտաւորութեամբ այս արշաւանաց մասնակից կ'ըլլան, որ այս ճանապարհորդութիւնն իրենց ապաշխարութեան գործքերուն տեղ կ'արժէ: Յամի 1096ին գարնան անհամար բազմութիւն մը Պետրոս Անապատականին առաջնորդութեամբը ճամբայ ելաւ. բայց ասոնք առանց Ս. Գերեզմանը տեսնելու, ճամբան մեռան: Նոյն տարին ճամբայ ելաւ 80.000 հետեւակ ու 10.000 ձիաւոր զօրքով, Ստորին Լոթարինգիայի Գոտֆրիտ Պույլիոն դուքսը, որ իր ժամանակին ազնուաբարոյ ու արի ասպետներէն մէկն էր, եւ շատ վտանգներէ ու կռիւներէ ետքը 1099ին Երուսաղէմ քաղաքն առաւ: Գոտֆրիտ Երուսաղէմի թագաւոր ընտրուեցաւ, բայց ինք ամէն արքունական պատիւ մերժեց, ըսելով որ չի կրնար ան տեղն ուր Փրկիչը փշէ պսակը գլուխը կրած է, ոսկի թագով իր գլուխը զարդարել, եւ խոնարհ երկիւղածութեամբ ինք զինքը միայն սուրբ Գերեզմանին ազատիչն ու ասպետն անուանեց: Մահուանէն ետքը (1100) իշխանութիւնն իր Բաղդուինոս եղբօրն անցաւ:

Անկէ ետքը տարուէ տարի Երուսաղէմ ուխտի գացող քրիստոնէից թիւը կը շատնար: Բայց երբ որ Բաղդուինոս Գ.ին ժամանակ (1144ին մօտերը), Տաճիկք նորահաստատ թագաւորութեան շատ երկիրներն

տուին, Ս. Բեռնարդոս արեւմտից քրիստոնեաներն Երկրորդ խաչակրքի մը յորդորեց: Գերմանիայի Կոնրատոս Գ. կայսրն ու Գաղղիայի Լուդովիկոս Է. Թագաւորն աս արշաւանաց գլուխն անցան. բայց յաջողութիւն մը չունեցան: Յունաց կայսրն իրենց հետ թշնամութեամբ վարուելով, Ասիա ալ սովը, ժանտախտի եւ ուրիշ չարակրութեանց դէմ կռուելու հարկադրելով, երկու թագաւորներն ալ առանց բան մ'ընելու ետ դարձան:

Երբոր Եգիպտոսի Սալաթին թագաւորն՝ Երուսաղէմ քաղաքն 88 տարի քրիստոնէից ձեռքը մնալէն ետեւ՝ 1187ին նորէն առաւ, դարձեալ առաջին եռանդը բորբոքեցաւ: Արեւմուտքի տիրող վեհապետները՝ Փրիդերիկոս Պարպարոսա, Գաղղիայի Փիլիպպոս Աւգոստոս ու Անգղիայի Ռիքարտոս Ա. թագաւորներն Երրորդ խաչակրաց արշաւանք մ'ընելու միաբանեցան: Սակայն իրենց զօրքը կէս մը հիւանդութենէ ու սովէ, կէս մ'ալ Ցածկաց սրովը ջարդուեցան: Փրիդերիկոս Պարպարոսա Կիլիկիայի Սելեֆ գետը խղդուեցաւ, նոյնպէս իր որդին Փրիդերիկոս, որ իրեն ընկերացած էր՝ Ագգոնի պարիսպներուն տակն ինկաւ: Աս արշաւանքին միակ օգուտն ան եղաւ՝ որ Ագգոն (հին Պըտղոմայիս) քաղաքը, դարձեալ քրիստոնէից ձեռքն անցաւ եւ քրիստոնեայք հրաման ընդունեցան Երուսաղէմ երթալու:

Իննովկենտիոս Գ. Քահանայապետը 1202ին չորրորդ խաչակիրքը հանեց, որուն առաջնորդ եղաւ Ֆլանտրիայի Բաղդուինոս կոմսը: Բայց խաչակրաց զօրքը Ս. Երկիրն երթալու տեղ՝ Կոստանդնուպոլիս տարին, եւ հոն լատինաց կայսրութիւն մը հաստատեցին, որ 57 տարի տեւեց (1203 — 1261):

Հինգերորդ խաչակրաց արշաւանքն ըրաւ (1228) Պարպարոսային թոռը Փրիդերիկոս Բ., որ թէպէտ Երուսաղէմն առաւ, բայց անձնական գործքերու համար շուտ ետ դառնալու ստիպուելով, Երուսաղէմի թագաւորութիւնն որ նոյն իսկ ներքին երկպառակութեամբ քայքայած էր, չկրցաւ երկայն ատեն դիմա-

նալ Սարակինոսաց յարձակմանցը դէմ, որոնք վերջապէս տասնուվեց տարի ետքն Երուսաղէմ առին։

Առոր վրայ Լուդովիկոս Թ. Գաղղիայի Թագաւորը 1248ին ու 1270ին վերջի երկու (Վեցերորդ ու Եօթներորդ) խաչակրաց արշաւանքներն ըրաւ, բայց երկուքն ալ յաջող ելք չունեցան։ Լուդովիկոսի մահուանէն 21 տարի ետքը (1291), քրիստոնէից արեւելք ունեցած վերջին տեղն ալ ձեռքերնէն առնուեցաւ։

Թէեւ աս խաչակրաց արշաւանքներն իրենց դիտած վախճանին չհասան, սակայն Եւրոպայի համար շատ օգտակար հետեւութիւններ ունեցան։ Անոնց պատճառաւ քրիստոնէական կրօնի ընդհանուր եռանդ մը զարթեաւ, եւ երթեւեկութիւնը դիւրացաւ, առեւտուրը, նաւագնացութիւնն ու պատերազմի արուեստը կատարելագործուեցաւ եւ գիտութեանց ու արուեստից ոգին արծարծեցաւ։ Միանգամայն քրիստոնեայ արեւմուտք՝ այս հասարակաց ձեռնարկութիւններով ճանչցաւ, որ մէկ ամբողջի մը կը վերաբերի։

## 62. *Ասպետաց կարգեր։*

Խաչակրաց պատճառաւ զանազան ասպետաց կարգեր ալ ելան, զորոնք եկեղեցին՝ ինչպէս աս ժամանակիս ամէն նշանաւոր դէպքերը, իր օգտին ծառայեցուց։

1. *Ս. Յովհաննու կարգը:* Նէապոլսոյ Թագաւորութեան Ամալֆի քաղքէն մէկ քանի վաճառականներ, ուխտաւորները հոգալու համար 1048ին Երուսաղէմ Ս. Գերեզմանին եկեղեցւոյն քովը՝ Ս. Յովհաննէս անուամբ հիւրանոց մը շինեցին։ Աս հիւրանոցին հոգաբարձուները կրօնաւորական կեանք կը վարէին, եւ ողջախոհութեան, հնազանդութեան ու աղքատութեան երեք ուխտերէն զատ՝ աղքատները դարմանելու պարտքն ալ ունէին. ետքէն սկսան ուխտաւորները նաեւ զէնքով պաշտպանել ճամբորդութիւն ըրած ատեն։ Աս ընկերութեան անդամներն երեք դաս կը բաժնուէին. այսինքն քահանայ, ասպետ ու աշխատաւոր եղբայր, որոնք Հիւրանոցի Մեծավարպետի մը տակն

էին։ Իրենց հագուստը սեւ էր, որուն վրայ ութանկիւն ճերմակ խաչ մը կար։ Պասգալիս Բ. Քահանայապետն 1119ին աս կրօնը հաստատեց, որ ետքէն Կիպրոս, անկէ Հռոդոս եւ վերջապէս Կարոլոս Ե. կայսեր ձեռքով Մալթա փոխադրուեցաւ։ Այս վերջի տեղէն առնելով՝ ասպետներն Մալթայի Ասպետք ալ կոչուեցան։ Աս կրօնը՝ միշտ իր ազնուական կոչման հաւատարիմ մնաց, բայց սկզբնական վախճանը՝ այսինքն հիւանդաց խնամ տանիլը, ասպետութենէն յետադաս եղաւ։

2. Տաճարականաց կարգն ալ Երուսաղէմ հաստատուեցաւ. ասոր վախճանն. էր ուխտաւորներն անհաւատից դէմ պաշտպանել։ Աս ընկերութիւնը հաստատողն եղաւ Հուկոյ Տըփէյէն գաղղիացի ասպետը, Բաղդուինոս Բ. Թագաւորին պաշտպանութեամբը։ Եւ որովհետեւ Թագաւորը՝ Սողոմոնի տաճարին աւերակներուն վրայ շինուած պալատին մէկ մասը բնակութեան համար աս ընկերութեան տուած էր, ասկէ Տաճարական ըսուեցան։ Այս կրօնին անդամներն երեք կարգ կը բաժնուէին. 1. Ասպետք՝ որ ազնուական զարմէ պիտ՚որ ըլլային. 2. Քահանայք ու 3. Աշխատաւոր եղբարք, որոնց ամէնուն վրայ Կարգապետ մը կար։ Աս կարգին համազգեստն էր ճերմակ վերարկու՝ պարզ կարմիր խաչով։ Ոնորիոս Բ. Քահանայապետն աս կրօնը հաստատեց, որ մեծամեծ պարգեւներ ընդունելով շատ պայծառացաւ, եւ քաջագործութիւններ ընելով մեծ անուն հանեց։ Փիլիպպոս Գեղեցիկ Գաղղիայի Թագաւորը (1312), Կղեմէս Ե. Քահանայապետին հաւանութեամբն աս ասպետաց կարգը ջնջեց։

3. Գերմանացւոց կամ Տեւտոնեանց կարգը 1191ին Ս. Մարիամ կոչուած Գերմանացւոց հիւանդանոցէն յառաջ եկած է, որ 1228ին քանի մը գերմանացի վաճառականք Երուսաղէմ շինած էին։ Եւ որովհետեւ աս եղբայրութիւնը՝ Ազգօնի բանակին հիւանդաց ցուցուցած արտաքոյ կարգի խնամքովը, գերմանացի խաչակիր զօրաց առջեւը մեծ արդիւնք ստացած էր, անոր համար Սուապիայի դուքսը Փրիդերիկոս՝ 1191ին զանիկայ ասպետաց կարգը բարձրացուց,

զորն որ ետքէն Կեղեստինոս Գ. Քահանայապետն ալ հաստատեց։ Իրենց բուն վախճանն էր հիւանդներն ու ուխտաւորները դարմանել, հագուստնին ճերմակ էր վրան սեւ խաչով։ Երբոր ասպետները Պաղեստինէն վռնտուեցան, նախ Վենետիկ ու ետքէն (1309ին) Բրուսիայի Մարիէնպուրկ քաղաքը հաստատուեցան, ինչու որ Բրուսիա 1283էն վեր իրենց ստացուածքն եղած էր։

Սակայն 1525ին Բրուսիան կորսնցուցին, ինչու որ ան ատենուան կարգապետն՝ Ալբերդոս Բրանտէնպուրկեան իշխանը՝ Լութերի վարդապետութիւնն ընդունելով կայսեր իրեն դէմ հանած տարապարտութեան վճռոյն հակառակ Տեւտոնեան կարգին ստացուածքները աշխարհականացուց, եւ ժառանգական դքսութեան փոխեց։ Անկէ ետքը Տեւտոնեանք Փրանկոնիոյ Մերկէնդհայմ քաղաքը քաշուեցան, ուր մնացին մինչեւ իրենց ընջնուիլը Մեծն Նափոլէոնի ձեռքով (1809)։

## 63. Գրիգոր Է.էն մինչեւ Բոնիփակիոս Ը. յաջորդող Քահանայապետները:

Գրիգոր Է.ին ազնուական ջանից նպատակն էր եկեղեցւոյ միութիւն ու հաստատութիւն, իսկ աշխարհական տէրութեան խաղաղութիւն շնորհել։ Իր յաջորդներուն մէջ գտնուեցան ստուգիւ նշանաւոր անձինք, որոնք իր մտաց համաձայն սկսած գործքը գլուխ հանելու աշխատեցան. բայց եղան ալ մէկ քանի Քահանայապետք, որոնք իր անշահախնդիր հոգիէն հեռանալով, մեծամեծ շփոթութեանց պատճառ եղան։ Այս շրջանիս անուանի Քահանայապետներուն մէջ յիշուելու արժանի են՝ Աղեքսանդր Գ. (1160—1181), Իննովկենտիոս Գ. (1198—1216), Ոնորիոս Գ. (1216—1227)։ Իննովկենտիոս Դ. (1243—1254) ու Գրիգոր Ժ. (1271—1276)։ Աս Քահանայապետները գլխաւորաբար Հոհենշդաուֆեան կայսերաց հետ, զանազան դժուարութիւններ ունեցան որ 100 տարի տեւեցին, եւ որոնց պատճառն էր կայսերական ու քահանայապետական իշխանութեանց սահմանն որոշել։

Վերյիշեալ Քահանայապետաց մէջ ամենէն նշանաւորն է Իննովկենտիոս Գ., որ թէ իմաստութեամբ ու թէ գիտութեամբ երեւելի անձ մըն էր։ Ինք ազնուական տոհմէ յառաջ եկած, եւ քահանայապետական աթոռը նստած ատեն՝ հազիւ 37 տարեկան էր։ Եկեղեցւոյ ազատութեան հետ շատ գաւառներ ու քաղաքներ միացընելով՝ զանիկայ ընդարձակեց, եւ Հռոմ՝ Քահանայապետաց իշխանութիւնը դարձեալ հաստատեց։ Նոյնպէս Գերմանիա, Գաղղիա, Անգղիա ու Սպանիա զանազան առիթներու մէջ, քահանայապետական աթոռոյն ազդեցութիւնն ու համարումը բարձրացուց։ Իր ժամանակը գումարուեցաւ Չորրորդ Լատերանեան (երկոտասաներորդ տիեզերական) ժողովը (1215), ուր բազմաթիւ եպիսկոպոսք ու եկեղեցական աստիճանաւորք ժողոված էին (71 արքեպիսկոպոս, 413 եպիսկոպոս եւ 800 աբբայ) Աղեքսանդրիայի ու Անտիոքի պատրիարքներն իրենց հրեշտակները խաւրած էին, իսկ Կոստանդնուպոլսոյ ու Երուսաղէմի պատրիարքներն անձամբ եկած էին, նոյնպէս Եւրոպայի իշխաններէն շատերը։ Աս ժողովոյս նպատակն էր, եկեղեցին նորոգել, ժամանակին հերետիկոսութիւնները դատապարտել, եւ արեւելեան քրիստոնէից օգնութեան հանելու ճար մը հոգալ։ Եկեղեցական հրահանգաց նորոգութեան համար 70 կանոն դրուեցաւ. ի մէջ այլոց որոշուեցաւ՝ որ ամէն հասակն առած քրիստոնեայ՝ տարին գոնէ մէկ անգամ խոստովանանք ընէ, եւ Զատկի միջոցին Ս. Հաղորդութիւնն ընդունի։

Իննովկենտիոս Գ. մեռաւ 1216ին։ Իր ժամանակը քահանայապետական իշխանութիւնը՝ բարձրութեան ծայրը հասած էր. իրմէ յառաջ չեղաւ Քահանայապետ մը՝ որ իրեն պէս ամէն քրիստոնեայ թագաւորաց ու տէրութեանց վրայ իշխած ըլլայ։ Բայց ոչ թէ անարգ եւ պատժապարտ փառասիրութիւն մըն էր զինքն այս բարձրութեան հասցընողը, հապա ժամանակին յարաբերութիւնները։ Այնպիսի բարբարոս ժամանակի մը մէջ, ուր պէսպէս գժնդակ կռիւներն անսանձ կը գործէին, երկրաւոր վեհապետի մը զօրու-

թիւնը բաւական չէր ազգաց կենաց լուծուելու վրայ եղող տարրներն իրարու հետ կապելու, հարկ էր որ ծայրագոյն հոգեւոր իշխանութիւն մը միջամուխ ըլլայ, որովհետեւ ինքը միայն կրնար թէ թագաւորաց եւ թէ ժողովրդոց ինք զինքը պատկառելի եւ ակնածելի ընել։ Իննովկենտիոս Գ. այս իշխանութիւնը բանեցուց, եւ այնչափ աւելի մեծ արդիւնքով ու ազդուութեամբ, որչափ նոյն իսկ ինքը մնաց ու բնութեան զարմանալի ձիրքերով զարդարուած անձ մըն էր։ Իրմէ ետքն եկող Քահանայապետները, մինչեւ Բոնիփակիոս Ը. քիչ շատ իր շաւղացը հետեւեցան։ Ութերորդ յաջորդը՝ Գրիգոր Ժ. Քահանայապետը, գումարեց Լիոնի երկրորդ (չորեքտասաներորդ տիեզերական) սիւնհոդոսը (1274), որուն գլխաւոր նպատակն էր Յունաց եկեղեցւոյն Հռոմայ Գահին հետ միութիւնը։ Թէեւ միաբանութիւնը յաջողութեամբ գլուխ ելաւ, բայց մնայուն ու ակներեւ արդիւնք մը չունեցաւ։ Գրիգոր Ժ. Քահանայապետը՝ սոյն սիւնհոդոսին առանձին թղթով հրաւիրեց նաեւ Հայոց Յակոբ Ա. կաթողիկոսն եւ Լեւոն Գ. թագաւորը, բայց մեզի անծանօթ պատճառի մը համար (թերեւս նոյն ժամանակուան պատերազմական աղմուկներէն արգելեալ) Հայք Լիոնի ժողովը չեկան։

## 64. Քահանայապետք յԱւինիոն (1306—1377):

Իննովկենտիոս Գ.ին յաջորդաց ատեն արդէն Քահանայապետաց տիեզերական իշխանութիւնը կամաց կամաց սկսած էր իյնալ. բայց բուն զօրաւոր հարուածն ընդունեցաւ Բոնիփակիոս Ը.ին ժամանակ։ Այս հարուածը տուողն եղաւ Գաղղիա, որուն թագաւորներն իրենց զօրութիւնն այնչափ աւելի միացընելու կ'աշխատէին, որչափ Գերմանիայի կայսրներն իրենց ոյժը ցրուելու վրայ էին։ Յամէ 1285 Գաղղիայի վրայ կը թագաւորէր Փիլիպպոս Գեղեցիկը, որ իր իրաւանցը նախանձախնդիր, խորամանկ ու բռնակալ մարդ մըն էր. ասոր հետ Բոնիփակիոս Ը. Քահանայապետը դժտեցաւ։ Փիլիպպոս՝ Անգղիայի հետ ունեցած

պատերազմին ստակ գտնելու համար, Գաղղիայի եկեղեցականաց վրայ տուրք դրաւ. Քահանայապետն ասոր դէմ բողոքեց, որուն վրայ Թագաւորն իր հպատակացն արգելեց օտար երկիր ստակ խաւրելը, բայց միտքն ուղղակի Հռոմ կը նայէր: Այսպէս Քահանայապետին ու Փիլիպպոս Գեղեցիկ Թագաւորին մէջ հակառակութիւն՝ մը մնաց, որն որ վերջապէս Բոնիփակիոս Ը. Քահանայապետին մահուամբը (1303ին) լմնցաւ: Թէեւ վերջնական յաղթութեան որուն կողմը ըլլալն անորոշ մնաց, բայց ասով իշխանաց օրինակ տրուեցաւ, որ ինչպէս կրնան Քահանայապետաց դէմ հակառակիլ եւ անոնց աշխարհական իշխանութեան մէջ ըրած միջամտութիւնները պարապի հանել:

Բոնիփակիոս Ը.էն ետքը քահանայապետական աթոռն ելաւ Ոստիայի կարդինալ եպիսկոպոսը՝ Բենեդիկտոս ԺԱ, որուն տարի մը ետքը յաջորդեց Կղեմէս Ե. Պորտոյի արքեպիսկոպոսը: Անիկայ Գաղղիայի Թագաւորին միջնորդութեամբն ընտրուած ըլլալով, ինք զինքն ամէն բանի մէջ Թագաւորին հաճոյիցը հպատակ կը ցուցընէր: Ինքն եղաւ որ առաջին անգամ Հռոմ թող տալով, աթոռն Աւենիոն փոխադրեց: Անկէ ետքը Քահանայապետները 70 տարի հոն մնացին, որ օտարութիւնն իրաւամբ Եօթանասնամեայ գերութիւն Բաբելոնական կ'անուանուի: Ինչու որ Քահանայապետական աթոռոյն փոխադրութիւնը՝ եկեղեցական նուիրապետութեան վրայ շատ վնասակար ազդեցութիւններ ունեցաւ: Քահանայապետները շատ բաներու՝ ի մասնաւորի կարդինալաց ժողովը կազմելու մէջ, Գաղղիայի Թագաւորներէն կախում ունէին, եւ քիչ մը ետքը Կարդինալաց ժողովոյն մեծագոյն մասը գաղղիացի կարդինալները բռնեցին: Քահանայապետաց հեռաւորութեան առեն՝ Իտալիա ունեցած երկիրնին կամաց կամաց ձեռքերնէն ելաւ, որով դրամական նեղութեան մէջ ինկան: Ասոր ճար մը հնարելու համար Քահանայապետք, զանազան միջոցներու ձեռք զարկին, այսինքն տարեկան հարկեր եւ տուրքեր դրին, զորոնք եկեղեցական հաս մը տալու կամ հաս-

տատելու առեն կ'առնուին։ Այս ժամանակէն սկսեալ քահանայապետական արքունեաց դէմ տրտունջները սկսան յաճախել. չէ թէ միայն իշխանք՝ այլ նոյն իսկ եկեղեցականք՝ Քահանայապետաց վրայ տժգոհ էին։ Եկեղեցիները ծանր պարտուց տակ ընկճած եւ չքաւորութեան վերջի ծայրը հասած էին։

Ի մանաւորի Գերմանիա այս միջոցիս մեծ շփոթութեան մէջ կը գտնուէր։ Կղեմէս Ե.ին յաջորդը՝ Յովհաննէս ԻԲ., Լուդովիկոս Պաւարեցւոյն հետ Գերմանիայի գահակալութեան պատճառաւ երկարատեւ կռուոյ մը բռնուեցաւ։ Վերջապէս Քահանայապետը կայսեր հպատակները հաւատարմութեան երդումէն արձակեց, եւ իր կողմնակիցներուն վրայ արգելք դրաւ, որով շփոթութիւնն աւելի եւս մեծցաւ։ Յովհաննէս ԻԲ. 90 տարեկան մեռաւ, անբաւ գանձ մը ձգելով, զորն որ խաչակիրք հանելու համար ժողված էր։

Իրեն յաջորդեց Բենեդիկտոս ԺԲ., որն որ կ'ուզէր թէ եկեղեցւոյ ու թէ Գերմանիայի մէջ մտած անկարգութիւնները վերցընել, եւ քահանայապետական աթոռը Հռոմ փոխադրել, բայց Փիլիպպոս Զ. Գաղղիայի թագաւորին ու գաղղիացի կարդինալները դէմ գնելով՝ չկրցաւ բան մը ընել։ Բենեդիկտոս ԺԲ. իբրեւ եկեղեցւոյ գլուխ՝ արդարակորով եւ անպարսաւ ընթացք մը ցուցաւ։ — Իր յաջորդը՝ Կղեմէս Զ. աշխարհային պերճութեանց տաւէ էր։ Իր քահանայապետութեան սկիզբը՝ Հռոմայեցիք իրեն հրեշտակութիւն մը խաւրեցին, աղաչելու համար որ Հռոմ դառնայ եւ եկեղեցւոյ տէրութեան մէջ կարգ կանոն հաստատէ։ Բայց Կղեմէս Զ. իրենց աղաչանքը մերժեց, պատճառ բերելով նոյն միջոցին աշխարհքիս գտնուած քաղաքական վիճակը։ Մանաւանդ թէ 1348ին Աւենիոն քաղաքն ու անոր շրջակայ տեղերը Նէապոլսոյ Յովհաննա այրի թագուհիէն գնեց։ Իր մահուանէն ետքը (1352), յաջորդեցին Իննովկենտիոս Զ. եւ Ուրբանոս Ե. Քահանայապետները, որոնք աստուածապաշտ ու գիտուն անձինք էին։ Ասոնք Բենեդիկտոս ԺԲ.ին ճամբուն հետեւեցան, սակայն յաջողութիւն

չդատան: Ուրբանոս թէպէտ Հռոմ գնաց եւ ժամանակ մ՚ալ հոն կեցաւ, բայց ինչպէս հաւանական կ՚երեւայ, Գաղղիացի կարդինալներուն թախանձելովը նորէն Աւենիոն դարձաւ, ուր 1370ին վախճանեցաւ:

Վերջապէս վեց Քահանայապետ Աւենիոն մնալէն ետքը, Գրիգոր ԺԱ. 1377ին աթոռը դարձեալ Հռոմ փոխադրեց: Եկեղեցւոյ տէրութեան քաղաքներուն հետզհետէ քահանայապետական իշխանութենէն ապստամբիլը, զինքն առ այս ստիպեցին. բայց ինք չկրցաւ հոն կարգ կանոն հաստատել, ինչու որ հետեւեալ տարին մեռաւ:

## 65. *Քառասնամեայ արեւմտեան հերձուածը, եւ Կոստանդիայի, Բասիլիայի ու Փլորենտիայի ընդհանուր ժողովները:*

Քահանայապետաց 70 տարի Աւենիոն կենալուն ողբալի հետեւութիւններէն մէկն եղաւ քառասնամեայ հերձուածը, որով ի սկզբան երկու՝ ետքէն երեք Քահանայապետք եկեղեցւոյ իշխանութեան համար սկսան իրարու հետ կռուիլ:

Գրիգոր ԺԱ.ին մահուանէն ետքը, Ուրբանոս Զ. Վենետիկցին (1378ին) քահանայապետական աթոռն ելաւ: Գաղղիայի կարդինալները՝ ի սկզբան զինքն ընդունեցան, բայց ետքէն տեսնելով իր նորոգութեան ունեցած եռանդը, սկսան վախնալ եւ առանց պատճառի ընտրութիւնը մերժեցին, եւ իրենց համախոհ հակառակաթոռ Քահանայապետ մը ընտրեցին, որ ինք զինքը Կղեմէս Է. անուանեց: Երկուքն ալ իրենք զիրենք իբրեւ օրինաւոր Քահանայապետ ճանչցնել կ՚ուզէին. Կղեմէս Է.՝ որ աթոռը Աւենիոն հաստատած էր, Գաղղիան ու ետքէն անոր միջնորդութեամբը Սկովտիան, Սաւոյան ու Լոթարինգիան իր կողմը շահեցաւ. բայց քրիստոնէութեան մեծագոյն մասն ինք զինքն Ուրբանոսի կողմն որոշեց: Ասով սկիզբը եղաւ արեւմտեան մեծ հերձուածին, որն որ Աւենիոնի օտարութենէն աւելի՝ Քահանայապետաց համարումը նուաստացուց եւ եկեղեցւոյ վնասակար եղաւ: Ինչու որ ե-

կեղեցին երկու իրարու հակառակորդ քահանայապետ-
ներ ունենալով, եւ հաւատացեալք չգիտնալով թէ
որ քահանայապետն իրենց օրինաւոր գլուխ պիտ՚որ
ճանչնան, հաւատքներնուն մէջ սկսան տատանիլ ու
խղճի անհանդարտութեամբ տանջուիլ։

Ուրբանոս 1389ին, իսկ Կղեմէս 1394ին մեռաւ։
Առաջնոյն տեղ՝ Բոնիփակիոս Թ., իսկ երկրորդին տեղ՝
Պետրոս տը Լունա Արագոնացին ընտրուեցաւ Բենե-
դիկտոս ԺԳ. անուամբ։ Բոնիփակիոսի յաջորդեց Գրի-
գոր ԺԲ. (1406). սակայն այն պայմանաւ ընտրուած
էր, որ պաշտօնէն պիտ՚որ հրաժարի, եթէ Բենեդիկ-
տոս ալ հրաժարելու ըլլայ։

Եկեղեցւոյ մէջէն հերձուածը վերցնելու համար՝
Պիզա ժողով գումարուեցաւ 1409ին։ Աս ժողովին՝ եր-
կու քահանայապետներն ալ վար առաւ, եւ զԱղե-
քսանդր Ե. քահանայապետ ընտրեց։

Բայց ասով չարիքն աւելի եւս մեծցաւ. վար առ-
նուած քահանայապետները փախան. Գրիգոր Ռի-
մինի, իսկ Բենեդիկտոս Սպանիա, ուր չէ թէ միայն
հաստատուեցան, այլ նաեւ իրենց կարդինալներ ըն-
տրեցին. Աղեքսանդր Ե. ալ աթոռը Պոլոնիա հաստա-
տեց։ Ասոր մահուանէն ետքը՝ Պաղտասար տը Կոսսա
կարդինալը Յովհաննէս ԻԳ. անուամբ քահանայապետ
ընտրուեցաւ, որ բնութեամբ խիստ եւ բարուք չգովելի
անձ մըն էր։ Ասիկայ Հռոմ գնաց, որով 3 քահա-
նայապետ սկսան եկեղեցին կառավարել, որմէ՝ ինչպէս
բնական է, եկեղեցւոյ մէջ մեծ շփոթութիւններ ե-
լան։ Ուստի եկեղեցւոյն ի գլուխն եւ յանդամս նորոգելու
ձայներն ամէն ժամանակէ աւելի ընդհանուր՝ սկսան
լսուիլ։

Այս բաղձանքը լեցնելու համար Սիկիսմունտոս
կայսրը շատ աշխատելէն ետեւ, Յովհաննէս ԻԳ. քա-
հանայապետը կրցաւ համոզել, որ Կոստանդիա քաղաքը
տիեզերաժողով մը գումարէ։ Յովհաննէս ԻԳ. քահանայա-
պետն անձամբ բացաւ այս ժողովը (1414ին), որն որ
մինչեւ այս ատեն եղած ժողովներուն մէջ ամէնէն բազ-
մաթիւն է։ Աս ժողովոյս ներկայ գտնուեցան 18.000
եկեղեցականք, որոնց մէջ կային 20 արքեպիսկոպոս,

92 եպիսկոպոս ու 124 աբբայ։ Ժողովոյն գումարուելուն պատճառն էր, եկեղեցւոյ մէջէն հերձուածը վերցնել, նոյն ժամանակուան հերետիկոսութիւնները դատապարտել ու եկեղեցին նորոգել։ Քուէարկութիւնը՝ ձայնից առաւելութեամբ չէր, հապա ազգաց ձայնին նայելով։ Իսկզբան ժողովը 4 ազգէն երբոր Պիւզանդեան Թերակղզւոյն թագաւորութիւններն ալ ժողովը ճանչցան, 5 ազգ բաժնուեցաւ, այսինքն՝ Խաղդացիք, Գերմանացիք, Գաղղիացիք, Անգղիացիք ու Սպանիացիք, որոնք ամէն մէկն առանձին առանձին ժողով կ'ընէին։ Այս ազգերը՝ պատգամաւորաց միջոցաւ իրարու հետ հաղորդութեան մէջ կը մտնէին, եւ ինչ որ այս պատգամաւորներուն ձեռքով ներկայացուած հինգ ազգաց ժողովոյն մէջ կը սահմանուէր, հրապարակական նիստերուն մէջ՝ իբրեւ ընդհանուր վճիռ կը ծանուցուէր եւ կ'ընդունուէր։

Յովհաննէս ԻԳ. Քահանայապետը՝ որ խոստացած էր հրաժարիլ եթէ ժողովը պատշաճ դատէ եւ անով հերձուածը վերնայ, աթոռէն ձգուեցաւ։ Գրիգոր ԺԲ. կամաւ հրաժարեցաւ, իսկ Բենեդիկտոս՝ որ յանձն չառաւ հրաժարիլ, դահէն վար առնուեցաւ։ Անկէ ետքը Կոստանդիա եղած կարդինալները միաբան համաձայնութեամբ Քահանայապետ ընտրեցին զՄարտինոս Ե.։ Աս ընտրութիւնն ալ հասարակ ամէնուն ցնծութեան պատճառ եղաւ, ինչու որ Մարտինոս իր բարեպաշտութեանը, արդարասիրութեանն ու չափաւորութեանը համար ամէնուն սիրելի էր։

Ժողովականք՝ նորընտիր Քահանայապետէն անմիջապէս ստիպաւ խնդրեցին, որ եկեղեցւոյ նորոգութեան դժուարին գործքը գլուխ հանէ, զոր որ թէեւ խոստացաւ, բայց գործադրութիւնը յապաղեց։ Վերջապէս նորոգութեան կանոնաւորութիւն մը ժողովոյն առջեւը դրաւ, բայց սակայն ընդունելութիւն չգտնելով, իւրաքանչիւր ազգ իր կարօտութեանը դարման տանելու համար, Քահանայապետին հետ առանձին միաբանագիրներ դրին։ Հուսկ վերջը Քահանայապետը 7 նորոգութեան վճիռներ հրատարակեց, որոնք եկեղեցւոյ մէջ մտած անկարգութեանց վերնալուն ու ե-

կեղեցական հրահանգաց նորոգութեան հիմունքը պիտի՛ որ ըլլային։ Նոյնպէս ժողովոյն հաւատոյ վերաբերեալ որոշումները հաստատեց. ի բաց առեալ այն նորահնար ու մերժելի սկզբունքը՝ թէ ընդհանուր ժողովը, Քրիստոսէն է իւր իշխանութիւնը, եւ թէ քահանայապետէն կրնայ առ ընդհանուր ժողով բողոքել։ Ասոր դէմ քահանայապետը յայտնի սահմանեց որ՝ Ոչ ոք Առաքելական Գահէն կրնայ բողոքել կամ անոր հաւատոյ կարգապահութեան վերաբերեալ վճիռները մերժել։ — Հերետիկոսութեանց դատապարտութեան վրայ, որ նոյնպէս ժողովոյն գլխաւոր գործքերէն մէկն էր, վարը պիտի՛ որ խօսինք։

Վերջապէս 1418ին ժողովը գոցուելով, որոշուեցաւ որ հինգ տարի ետքը Բաւիա նոր սիւնհոդոս մը գումարուի։ Քահանայապետն Իտալիա դարձաւ, եւ եկեղեցւոյ տէրութեան մէջ եղած անկարգութիւնները բոլոր ուշադրութիւնն իրենց գրաւեցին։ Բաւիա գումարուելիք ժողովը ժանտախտին պատճառաւ չկրցաւ հոն գումարուիլ, ուստի եւ նախ Սիէնա փոխադրուեցաւ եւ ետքէն որոշուեցաւ որ 1431ին Բազիլիա գումարուի։ Բայց քահանայապետը՝ ժողովը դեռ չբացուած մեռաւ, բովանդակ քրիստոնէութիւնը դառն սգոյ ու տրտմութեան մէջ ձգելով։

Իր յաջորդը՝ Եւգինէոս Դ. Չեզարինի հրեշտակին ձեռքով Բազիլէայի ժողովը բացաւ։ Ժողովոյն վախճանն էր՝ հերետիկոսութեանց ի մասնաւորի Հուսեան մոլորութեան բարձումը, արեւելեան եկեղեցեաց ի մասնաւորի Յունաց Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանութիւնը, քրիստոնեայ տէրութեանց մէջ խաղաղութիւն հաստատել եւ եկեղեցին նորոգել։ Գումարուած եպիսկոպոսները՝ Կոստանդիայի ժողովոյն հոգւոյն համաձայն սկսան վարուիլ, եւ եկեղեցւոյ մէջ մտած անկարգութեանց դէմ խիստ կանոններ հաստատեցին։ Բայց քահանայապետը 1431ին վերջերը հրամայեց որ ժողովը Պոլոնիա փոխադրուի, որպէս զի Յոյներն ալ հոն գան։ Ասոր վրայ ժողովը քահանայապետին հետ բանակցութեան մէջ մտաւ, որուն հետեւութեամբն Եւգինէոս Դ. ժողովոյն խնդրանաց մտ-

չեւ նոյն ժամանակ ըրածները հաստատեց։ Այսով ժողովը յարգ ու համարում ստանալով, քանի մը եպիսկոպոս ալ հոն եկան, որով ժողովականաց թիւը շատցաւ։ Բայց քիչ մը ետքը Քահանայապետը, որ ժողովոյն նորոգութեան վճիռներուն վրայ գոհ չէր, դարձեալ հրամայեց որ ժողովն Իտալիայի քաղաքներրէն մէկը փոխադրուի։ Ժողովական Հարց մեծագոյն մասը Քահանայապետին կամացը հպատակեցաւ, որով Փերրարա նոր ժողով մը գումարուեցաւ (1438), բայց մէկալ կողմանէ Բասիլիայի ժողովն ինքնագլուխ իր նիստերը կը շարունակէր։ Այս ժողովն՝ իր յանդգնութեան մէջ այնչափ յառաջ գնաց, որ Եւգինէոս Դ. Քահանայապետը գահէն ինկած հրատարակեց, եւ Սաւոյայի Ամադէոս դուքսը՝ Փեղիքս Ե. անուամբ հակառակաթոռ Քահանայապետ ընտրեց, որ չկրցաւ ինք զինքն իբրեւ օրինաւոր Քահանայապետ ընդունել տալ։ Ժողովն այս գործքով ինք իրեն վնասեց, որովհետեւ երբոր սկսաւ Քահանայապետին դէմ այս կերպ ընթացք բռնել, ան ատեն ամէնէն երեւելի անձինքը ժողովէն հեռացան եւ 1443ին ժողովը բոլորովին լուծուեցաւ։ Այսպէսով եկեղեցին նորոգելու ջանքերը դարձեալ անպտուղ մնացին։ Բասիլիայի ժողովը՝ մինչեւ 25երորդ նիստը, այսինքն մինչեւ որ Քահանայապետն անկէ քաշուեցաւ, տիեզերական ժողով կը համարուի։

Հազիւ թէ Փերրարայի ժողովը սկսած էր, Քահանայապետն արտաքին պարագաներէ ստիպուած ժողովը Փլորենտիա փոխադրեց (1439), ուր եկան Յունաց Յովհաննէս Պալէոլոգ կայսրը եւ Կոստանդնուպոլսոյ Յովսէփ պատրիարքը բազմաթիւ եկեղեցականներով։ Հոս Յունաց եւ Հռոմայ եկեղեցւոյ միաբանութեան վրայ արդէն Փերրարա սկսուած բանակցութիւններն աւելի ժրութեամբ շարունակուեցան, եւ Յոյնք՝ Հոգւոյն Սրբոյ ի Հօրէ եւ յՈրդւոյ բխումը, քաւարանն եւ Հռոմայ Քահանայապետին բովանդակ եկեղեցւոյ վրայ ունեցած գլխաւորութիւնն ընդունելով՝ 1439ին միաբանութեան արձանագրին ստորագրեցին։ Բայց Փլորենտեան միաբանութիւնը՝ գլխաւորա-

բար Մարկոս Եփեսոսի եպիսկոպոսին դրդուելովը, որ երկու եկեղեցեաց միութեան հակառակ էր, Յունաց մէջ սաստիկ ընդդիմութիւն գտնելով, բաղձացուած հետեւութիւնը չունեցաւ։ Հազիւ Յունաց մէկ փոքր մասը Հռոմայ եկեղեցւոյ ծոցը դարձաւ, որոնք Միացեալ կամ Ուղղափառ Յոյնք կոչուեցան, իսկ մեծագոյն մասն իրենց յառաջուան մոլորութեանը մէջ մնացին, եւ Չմիացեալ կամ Հերձուածող Յոյնք ըսուեցան։ Շատ չանցաւ յամառ ու դիմադարձ Յոյները պատիժնին գտան. 1453ին Տաճիկները Կոստանդնուպոլիս առնելով, հոն իրենց իշխանութիւնը հաստատեցին։ Անկէ ետքը Յունաց եկեղեցին իր նախնի բարձրութենէն ու պայծառութենէն երթալով ինկաւ։ — Այս ժողովոյս մէջ Հայք եւ Ասորիք ալ իրենց միաբանութիւնը Հռոմայ ուղղափառ եկեղեցւոյ հետ հաստատեցին, որուն վրայ տես ընդարձակ Համար 68 եւ 70։

Ռուսական եկեղեցին՝ Յունաց եկեղեցւոյն դուստրը, անոր հետ մէկտեղ արեւմտեան եկեղեցիէն բաժնուեցաւ։ Իսկզբան Ռուսաց մետրապոլիտները՝ Կոստանդնուպոլսոյ պատրիարքներէն կ՚անուանուէին, բայց ետքէն Ռուսաց պետութեան Տաճկաստանի հետ ունեցած քաղաքական յարաբերութեանց փոխուելովը, Ռուսաստանի իշխանները սկսան ետեւէ ըլլալ անկախ ռուսական եկեղեցի մը հաստատելու։ Այսպէս 1448ին արդէն Ռուսաստանի Աւագ իշխանը՝ Յովնան անունով մէկը մետրապոլիտ դրաւ, որ բոլոր տէրութեան եպիսկոպոսներէն Մոսկուա գումարուած ժողովի մը մէջ ընտրուեցաւ։ Վեշտասաներորդ դարուն (1585ին) Ֆէոտոր Իւանովիչ կայսրը՝ զՄոսկուա պատրիարքական աթոռ ըրաւ, զորն որ Կոստանդնուպոլսոյ Յունաց պատրիարքն ալ ճանչցաւ։ Անկէ ետքը Ռուսաց եկեղեցին՝ Կոստանդնուպոլսոյ պատրիարքներէն անկախ եղաւ։ Քանի մը դար ետքը՝ Մեծն Պետրոս Ա., որուն տիրապետելու տենչանքը՝ Ռուսաստանի հոգեւոր գլուխ մ՚ունենալը չէր կրնար տանիլ, միտքը դրաւ պատրիարքութիւնը վերցնել, եւ անոր տեղ իր մտացը համաձայն նոր եկեղեցական կարգաւորութիւն մ՚ընել։ Ուստի Ադրիանոս պատրիարքին մահուանէն

ետքը (1702), պատրիարքական աթոռը դատարկ թողուց ու ինք զինքը Ռուսաց եկեղեցւոյն միակ գլուխ հրատարակեց։ Մի եւ նոյն ժամանակ կղերականներէ եւ աշխարհականներէ բաղկացած Վարիչ Սուրբ Սինոդոս մը հաստատեց, որ իբրեւ վերնագոյն դատաստանական ատեան՝ ամէն կրօնական խնդիրները պիտի որոշէր։ Այս սինոդոսն իր աթոռը հիմայ Բետերսպուրկ ունի, եւ Ռուսի կայսրներն իբրեւ ռուսական եկեղեցւոյ գլուխ, Պետրոս Ա. էն սկսեալ, նոյն սինոդոսին վճիռները փոխելու իրաւունքն իրենց պահած են։ Նիկողայոս կայսրը՝ եկեղեցւոյ գլուխ անուանուելու ունայնամտութենէն հրաժարելով, ինք զինքը ռուսական եկեղեցւոյն գերագոյն պաշտպան անուանեց։

Մինչեւ հնգետասաներորդ դար յառաջացող այս եկեղեցական պատմութեան ընթացքին մէջ տեսանք, որ գտնուեցան մէկ քանի քահանայապետներ, որոնք իրենց վիճակին ու պարտուցը համաձայն կեանք չվարեցին։ Ասիկայ եկեղեցւոյ թշնամիներէն ոմանք իբրեւ յարմար զէնք կը գործածեն Հռոմայ քահանայապետաց գլխաւորութիւնը վար զարնելու. բայց առանց իրաւացի պատճառի։ Քանի մը միջինդարեան քահանայապետաց պակասութիւնները, իրենց միայն անձնական չէին, այլ ժամանակին թերութիւններն էին, որոնցմէ իրենք ալ ազատ չմնացին։ Ասկէ զատ իրենց անձին եւ ոչ թէ պաշտօնին վրայ կ'իյնան։ Պաշտօնը կրնայ արատաւորիլ (ինչպէս նաեւ ամէն սուրբ բան, որ մարդու ձեռք յանձնուած է), բայց ատով պաշտօնը աստուածային կարգաւորութիւն ըլլալէն չի դադրիր։ Հեղիէն սկսեալ մինչեւ Կայիափա ետեւէ ետեւ յաջորդող Հրէից քահանայապետներուն մէջ ալ գտնուեցան ոմանք, որոնք իրենց վարուքն իրենք զիրենք անպատուեցին, առանց ատով իրենց պաշտաման աստուածային ըլլալը տարակուսի տակ ձգելու։ Նոյն իսկ Փրկիչը պարսաւեց անոնց վարմունքը, որոնք իր ժամանակը Մովսէսի աթոռը նստած էին, բայց անոնց իշխանութիւնը յարգել հրամայեց (Մատթ. ԻԳ. 2—3)։ — Պէտք չէ նաեւ մոռնալ, որ խիստ սակաւաւոր են այն քահանայապետները, որոնց բարոյական կեանքն ամբաստանաց արժանի է — հաւատքն ամէնն ալ առանց բացառութեան անբիծ ու անարատ պահեցին —, իսկ ատոր հակառակ շատ աւելի բազմաթիւ են այն քահանայապետները, որոնք գեղեցիկ առաքինութեանց պայծառ լուսովը կը փայլին։ Առաջին դարերուն քահանայապետներն ամէնն ալ սրբոց կարգը դասուած են. ասոնցմէ շատերը կամ իբրեւ մարտիրոս կեանքերնին զոհած կամ իբրեւ խոստովանող մեռած են։ Քահանայապետաց յաջորդութեան շարքն այնչափ երկայն է, որ աշխարհքիս իշխանական ցեղերէն եւ ոչ մէկը կարող է այնչափ արժանաւոր գլուխներ ցուցընել։ Բայց նոյն իսկ Միջին

դարու քահանայապետաց մեծ մասը, թէ՛ սրբութեամբ ու թէ՛ գիտութեամբ երեւելի են, իսկ նորոգողութենէն ետքն եկող քահանայապետաց բարոյական համբաւը բոլորովին անաղարտելի է։

## 66. *Հայոց եկեղեցւոյն վիճակն այս ժամանակի շրջանին մէջ (1080—1385 կամ 1440):*

Արեւմուտքէն արեւելք խաչակրաց արշաւանքները դեռ չսկսած, Բագրատունի ցեղերուն իշխանաց երկպառակութենէն խախտած Հայաստան, օտար եւ բարբարոս ազգաց կոխան եղած էր։ Արեւելեան Հայաստանի մէկ մասը Պարսից, մէկալ մասը Սկիւթացւոց իշխանութեանը տակ ընկճած էր, իսկ արեւմտեան մասը Յունաց ազդեցութենէն զերծ չէր։ Բագրատունեաց թագաւորութիւնն իյնալէն ետքը, Հայաստանի մահաբեր վէրքերը բժշկելու դարմանը, Ռուբէն մեծանձն եւ կորովի իշխանին պահուած էր, որ ազգին նախարարացն անմիաբանութենէն պառակտած ցիրուցան եղած զօրութիւնները մէկտեղ բերելով, Տաւրոսի լեռանց բարձունքներուն վրայ ազատիկ՝ բայց ըստ բաւականի զօրաւոր եւ կարգաւորեալ թագաւորութեան մը սկիզբ ըրաւ (1080)։ Քիչ մը ետքն ազգին հոգեւոր իշխանութեան աթոռն ալ, որ ասպատակիչ թշնամեաց ձեռքէն աստանդական եղած էր, իր տեւական հաստատութիւնը ստիպուեցաւ նոյն փոքրիկ թագաւորութեան հովանաւորութեան տակ փնտռել։ Այսպէս ազգին թէ՛ ժամանակաւոր եւ թէ՛ հոգեւոր իշխանութիւնն արեւելքէն արեւմուտք փոխադրուելով, անոնց յարաբերութիւններն ալ բոլորովին կերպարանափոխ եղան։ Հայք՝ որ մինչեւ մետասաներորդ դար իրենց կրօնական ու քաղաքական փրկութիւնը Յունաց տէրութենէն կը սպասէին եւ առանձինն Հայ կղերը յունական եկեղեցւոյ միջնորդութեամբն ընդհանուր եկեղեցւոյ հետ հաղորդութեան մէջ մտնել կրնար, ասկէ ետքն ուղղակի արեւմտեան Հռոմայ եկեղեցւոյն հետ հաղորդութեան մէջ մտնելու սկսաւ (1080—1385 կամ 1440), մէկալ կողմանէ դեռ մէկ դարու չափ, յունական

եկեղեցւոյն հետ միաբանութեան փորձերը շարունակելով։ Ուստի Հայոց եկեղեցւոյն այս ժամանակի պատմութիւնն՝ երկու գլխոյ տակ կրնանք ամփոփել. այսինքն նախ երբ Հայք Հռոմայ եկեղեցւոյ հետ անընդհատ հաղորդութեան մէջ էին՝ Յունաց հետ մի եւ նոյն ատեն միաբանութեան փորձերը տեւելով (1080—1180). երկրորդ միայն արեւմտեան հռոմէական եկեղեցւոյ հետ հաղորդութեան մէջ ըլլալով (1180—1385 կամ 1440)։

## 67.

### ա. Հայոց եկեղեցին՝ Յունաց եկեղեցւոյն հետ միաբանելու վերջին փորձը (1080—1180)։

Տասներորդ դարուն վերջերը՝ Հայաստանի մէջ Արաբացւոց զօրութիւնը քայքայելով, եւ Հայք այլազգեաց յարձակմանց առջեւն իրենք զիրենք բռնելու անկարող տեսնելով, կամաց կամաց դարձեալ յունական զօրութեան գիրկն իյնալու սկսան։ Բայց դժբախտութեամբ աս ատեններս Յունաց եկեղեցին զանազան հերձուածներով ապականուած, եւ իր կենդրոնէն՝ Հռոմայ եկեղեցիէն հեռանալու վրայ էր։ Երկու արեւելեան եկեղեցիներուն մէջ ալ, այնչափ միաբանութեան անյաջող փորձերէ ետեւ, պաղութիւն եւ անվստահութիւն մը մնացած էր, որն որ աս ատեններս գլխաւորաբար Յունաց կողմանէ եղած բռնութեանց եւ իրաւանց բռնաբարութեան պատճառաւ, իրական հակառակութեան եւ ատելութեան փոխուած էր։ Ինչպէս յայտնի է, աս միջոցիս Յունաց մէջ Հայ ազգը՝ կրօնապէս եւ քաղաքականապէս իրենց մէջ ընկղմելու մեծ ճիգը կը տիրէր։ Յոյնք Պետրոս Գետադարձին յաջորդող Խաչիկ Բ. կաթողիկոսը Կոստանդնուպոլիս արգելելէն զատ, անոր մահուանէն ետքը նոր կաթողիկոսի մ՚ընտրութիւնն ամէն կերպով խափանել կը ջանային։ Հազիւ Գագիկ թագաւորին աղաչելովը կրցան Հայք անուանի Գրիգոր Մագիստրոսին որդին, Գրիգոր Բ. Վկայասէրը՝ կաթողի-

կոսական աթոռը հանել (1065—1105)։ Աս թէ սըրբութեամբ եւ թէ գիտութեամբ մեծանուն կաթողիկոսը, Յունաց եւ Հայոց մէջ կերպաւորեալ բաժանումը վերցնելու եւ երկու եկեղեցեաց մէջ միաբանութիւն մը յառաջ բերելու համար, անձամբ Կոստանդնուպոլիս Ալէքս Կոմնենոս կայսեր գնաց. բայց առանց բան մ'ընել կարենալու ետ դարձաւ։ Աս կաթողիկոսն եղաւ նաեւ՝ որ առաջին անգամ Հռոմայ Գրիգոր Է. քահանայապետին թուղթ գրեց, Հռոմայ եկեղեցւոյն հետ միաբանելու բաղձանքը յայտնելով։ Գրիգոր Վկայասէր այս թուղթը Յովհաննէս անուն քահանայի մը ձեռքով Հռոմ խաւրեց։

Քահանայապետը սիրով ընդունեցաւ պատգամաւորը, եւ թղթով մը կաթողիկոսէն Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնն ուզեց։ Գրիգոր անձամբ Հռոմ երթալով՝ Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնը Քահանայապետին ներկայացուց եւ քանի մը ամիս ետքն իր աթոռը դարձաւ։ Վկայասիրին յաջորդեց Բարսեղ, որ իր կենդանութեան ատեն արդէն իբրեւ կաթողիկոսի փոխանորդ Անի կը նստէր։ Բայց հազիւ ութը տարի առանձին կաթողիկոսութիւն ընելէն ետքը մեռնելով, կաթողիկոսական աթոռը ժառանգեց Գրիգորիս Գ. Պահլաւունին, ինչպէս որ Գրիգոր Վկայասէրը մեռնելէն յառաջ յանձնած էր*։

Աս հռչակաւոր կաթողիկոսն իր երկայնժամանակեայ (1113—1165) հայրապետութեան ատեն, թէ խօսքով եւ թէ գործքով մէկ քանի առիթներու մէջ ցուցուց իր հպատակութիւնն եւ մեծարանքը Հռոմայ եկեղեցւոյ։

Գրիգորիս կաթողիկոսն ու իր եղբայրը Ս. Ներսէս Շնորհալին 1141ին (ըստ ոմանց 1136ին) ամբաստանուած լատին եպիսկոպոսի մը պատճառաւ Անտիոք գումարուած ժողովի մը հրաւիրուեցան։ Աս ժողո-

* Վասպուրականի եպիսկոպոսներն Գրիգոր Գ. կաթողիկոսին հակառակաթոռ ընտրեցին Դաւիթ Աղթամարայ արքեպիսկոպոսը։ Եւ երբոր ազգային ժողովքի մը մէջ Գրիգոր օրինաւոր կաթողիկոս ճանչցուեցաւ, Դաւիթ Աղթամար կղզւոյն վրայ ինքնագլուխ կաթողիկոսութիւն մը հաստատեց, որ ցայսօր կը տեւէ։ — Ոմանք Աղթամարայ ինքնագլուխ կաթողիկոսութեան հաստատութիւնն աւելի երկու դար յառաջ կը դնեն (921)։

վոյս գահերէց նստած էր Ալբերիկոս Ոստացւոց արքեպիսկոպոսը, որ իբրեւ առաքելական նուիրակ Ինովկենտիոս Բ. Քահանայապետէն ան կողմերը խաւրուած էր։ Առաքելական նուիրակը ճամբորդութիւնը դէպ ի Երուսաղէմ յառաջ տանելով, Գրիգորիս իրեն ուղեկից եղաւ, որպէս զի ճամբան իրեն հետ զանազան ազգային նիւթերու վրայ խօսելու առիթ ունենայ։ Քահանայապետին նուիրակը բարեկարգութիւններ ընելու միտօք Սիոն քաղաքը դարձեալ ժողով գումարեց։ Աս ժողովքին մէջ՝ խօսքը Հայոց վրայ դառնալով, կաթուղիկէ միութեան եւ հաղորդութեան հոգւով զգածեալ Գրիգորիս կաթուղիկոսը, Հայոց եկեղեցւոյն հաւատոյ դաւանութիւնը ժողովականաց առջեւը պարզեց եւ քանի մը թերութիւններն ուղղել խոստացաւ։ Նոյնպէս Հայոց ծէսերուն եւ արարողութեանց վրայ աւելի յստակ գաղափարներ հաղորդեց, որով թէ մեծարոյ նուիրակին եւ ժողովականաց միտքը շինեց եւ թէ իր աթոռոյն պարծանք եղաւ։ Ինովկենտիոս Բ. Քահանայապետն այս ամենայն լսելով, ի նշան սիրոյ եւ առաքելական հաճութեան՝ Գրիգորիս կաթուղիկոսին կոնդակով մը հայրապետական քող ու գաւազան խաւրեց։ Քանի մը տարի ետքը (1145) նոյն կաթուղիկոսը՝ Եւգինէոս Գ. Քահանայապետէն ալ թուղթ մ՚ընդունեցաւ, որուն մէջ Քահանայապետը՝ Հայոց կաթուղիկոսին բաղարջ հացիւ պատարագելու հաճութիւնը ցուցընելէն ետքը, խորհրդոյ բաժակին մէջ քիչ մ՚ալ ջուր խառնելու եւ Ծննդեան տօնը Դեկտեմբեր 25ին կատարելու խնդիրներուն լուծումը կու տայ։

Աս կաթուղիկոսին ժամանակ սկիզբ եղաւ նաեւ Յունաց հետ միաբանութեան վերջին փորձին, որուն սկզբնապատճառն եղաւ իր եղբայրը Ս. Ներսէս Շնորհալին։ Աս երանելի հայրապետը ճամբորդութեան մը ժամանակ Մամեստիա քաղաքը Կիր Մանուէլ կայսեր Ալէքս փեսին հետ ճանչուորութիւն ընելով, աս միաբանութեան փորձին դուռ բացաւ։ Ալէքս՝ Շնորհալւոյն համբաւը լսած ըլլալով, իրեն հետ կրօնական խնդիրներու վրայ խօսակից ըլլալու

սկսաւ, եւ խնդրեց որ Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնն իրեն գրով տայ։ Շնորհալին ասանկ երեւելի անձի մը ինքնաշարժ առաջարկութիւնը տեսնելով, եւ միանգամայն իր միաբանասէր ոգւոյն եւ գիտուններուն համաձայն գտնելով, Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնը գրով տուաւ, զոր որ Ալէքս անձամբ Կոստանդնուպոլիս Մանուէլ կայսեր ու Միքայէլ պատրիարքին տարաւ։ Կայսրն՝ որ ի բնէ կրօնական խնդիրներու մեծ մտադրութիւն ունէր, Շնորհալւոյն թղթէն շարժեալ, բաժանման բուն պատճառները քննութեան տակ ձգեց եւ միաբանութեան կողմն սկսաւ միտել*։ Ուստի Սմբատ Հայ ներքինւոյն ձեռքով Գրիգորիս կաթողիկոսին թուղթ մը խաւրեց, որուն մէջ երկու եկեղեցեաց միաբանութեան ինչչափ հարկաւոր բան ըլլալը յայտնելէն եւ մէջերնին եղած տարաձայնութեան եւ բաժանման պատճառները վերցընելու բաղձանք ցուցընելէն ետեւ, աս գործքն աւելի շուտ եւ ապահով գլուխ տանելու համար՝ զՍ. Ներսէս Կոստանդնուպոլիս կը հրաւիրէր։ Սակայն կայսեր նուիրակը դեռ Հռոմկլա չհասած Գրիգորիս կաթուղիկոսը մեռած ըլլալով, իրեն Ս. Ներսէս յաջորդած էր (1166)։ Շնորհալին թէպէտ զանազան պատճառներու համար Կոստանդնուպոլիս երթալու հրաւէրը չընդունեցաւ, բայց յաճախ թղթակցութեամբ փոխխ վստահութիւնը վաստըկուեցաւ։ Կայսրն անձամբ Հայաստան կ'ուզէր գալ, բայց նոյն տարեւան արեւմտից պղտոր կերպարանքը զինքը կապած էր. ուստի իր տեղն առանձին թղթով մը Թէորիանոս անունով իմաստասէր մը խաւրեց։ Թէորիանոս զանազան անգամներ Շնորհալւոյն հետ հաւատոյ խնդիրներու եւ առանձինն Քրիստոսի երկու բնութեանց միաւորութեանը վրայ խօսելով, մէկմէկու միտքն ու պատճառ-

* Մանուէլ կայսրը Հայոց հետ միաբանութեան վրայ խօսելու սկսելէն յառաջ, արդէն արեւմտեան Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանութեան խօսակցութիւններ ըրած էր, Ադրիանոս Դ. Քահանայապետին ատեն (1154 — 1159) Թեսաղոնիկեցւոց Բասիլ արքեպիսկոպոսին միջնորդութեամբը։ Բանակցութիւններն Ադրիանոսին յաջորդող Աղեքսանդր Գ. Քահանայապետին ժամանակն ալ շարունակուեցան. մինչեւ անոր համար 1168ին Կոստանդնուպոլիս ժողով մ'ալ եղաւ, բայց առանց հետեւութեան։ Աս միաբանութեան փորձը Շնորհալին ալ Մանուէլ կայսեր գրած առաջին թղթին մէջ կը յիշէ։

ները հասկըցան*։ Այս խոստովանութեան արձանագիրն առանձին թղթով մը Շնորհալին Թէորիանոսի ձեռքով Մանուէլ կայսեր խաւրեց։ Կայսրը՝ Հայոց միաբանութեան յօժարամիտ ըլլալը տեսնելով, Կոստանդնուպոլիս ժողով գումարեց, ուր Յոյնք իրենց առաջարկութիւնները շինեցին, որոնք հետեւեալ ինը կէտերը կը բովանդակէին. Նախ Հայք նզովեն մի բնութիւն ըսող հերձուածողապետները (զԵւտիքէս, զԴիոսկորոս, զՍեւերոս եւ զՏիմոթէոս Կուզ)։ Երկրորդ՝ ի Քրիստոս մէկ անձ, երկու բնութիւն, երկու կամք ու երկու գործողութիւն խոստովանին։ Երրորդ՝ Ս. Աստուածն առանց յաւելուածի երգեն։ Չորրորդ՝ գլխաւոր տօները (Ծնունդը, Թլփատութիւնը, Մկրտութիւնը, Աւետումն ու Տեառնընդառաջը) Յունաց եկեղեցւոյն սովորութեան համաձայն տօնեն։ Հինգերորդ՝ սուրբ մեռոնը ձէթէ շինեն։ Վեցերորդ՝ խմորուն հացիւ ու ջրախառն գինւով պատարագեն։ Եօթներորդ՝ պատարագի ժամանակ քահանայք ու ժողովուրդն եկեղեցւոյ մէջ կենան։ Ութերորդ՝ Քաղկեդոնի Ս. Ժողովն եւ հինգերորդ, վեցերորդ ու եօթներորդ տիեզերական ժողովներն ընդունին։ Իններորդ՝ Հայոց կաթուղիկոսները Յունաց կայսեր առաջարկութեամբն ու հաւանութեամբն ընտրուին։

Այս առաջարկութիւնները՝ Մանուէլ կայսրը Թէորիանոսի ձեռքով Շնորհալւոյն խաւրեց, որպէս զի ժողովոյ մը առջեւը հանէ։ Շնորհալին աս վախճանիս համար ընդհանուր ազգային ժողով մը գումարելու պատրաստութիւն տեսած ատեն մեռաւ (1173), որով միաբանութեան գործքն անկատար մնաց։ Ս. Ներսէ-

* Շնորհալւոյն Թէորիանոսի հետ ըրած վերոյիշեալ վիճաբանութեան կարգին մէջ, Յովհաննէս անուն ասորի եպիսկոպոսի մը հետ ալ վիճաբանութիւն կամ խօսակցութիւն մ՚եղած կը պատմուի։ Մանուէլ կայսրն ուզելով մի եւ նոյն ժամանակ միաբանեալ Ասորիներն ալ Յունաց եկեղեցւոյն հետ միաբանել, անոնց Միքայէլ կաթուղիկոսին ասոր նկատմամբ յորդորական թուղթ մը գրեց։ Արդ երբոր Թէորիանոս առաջին անգամ Հռոմկլա եկաւ, զՄիքայէլ կաթուղիկոսը հրաւիրեց որ նոյն քաղաքը գայ, որպէսզի իրարու հետ խօսին։ Բայց Միքայէլ անձամբ գալ չուզելով, իր տեղը Յովհաննէս անունով եպիսկոպոս մը խաւրեց։ Սակայն աս վիճաբանութիւնը կ՚երեւայ որ հետեւութիւն մը չունեցաւ. ինչու որ նոյն իմաստասէրն երկրորդ անգամ Հռոմկլա եկած ատեն, դարձեալ հրաւէր խաւրեց։ Կաթուղիկոսն աս անգամ ալ յանձն չառաւ ինքն անձամբ գալ, այլ իր տեղը Թէոդորոս միայնակեացը խաւրեց. բայց աս անգամ ալ չկրցան իրարու հետ միաբանիլ։

սի յաջորդեց իր եղբօրորդին Գրիգոր Դ. Տղայ, որ նոյն եռանդեամբ եւ հոգւով միաբանութեան գործքը յառաջ տարաւ, եւ հակառակորդներուն (Սանահնեցի ու Հաղբատացի վանականներուն) դէմ զօրաւոր թուղթ մը գրեց: Ասիկայ իր նախորդւոյ սկսածն ուզելով կատարել՝ Հռոմկլա ժողով գումարեց (1179): Այս ժողովոյս ներկայ գտնուեցան Աղուանից կաթուղիկոսը, Ասորւոց պատրիարքին պատգամաւորները, երեսունումէկ եպիսկոպոս (ըստ մեծի մասին Կիլիկիայէն) եւ բազմաթիւ եկեղեցականք:

Ժողովոյս գեղեցիկ զարդերէն մէկն էր՝ Ս. Ներսէս Լամբրոնացին, Տարսոնի արքեպիսկոպոսը, որ իր ժողովականաց առջեւը խօսած աքանչելի ատենաբանութեանը մէջ՝ շատ ճարտարութեամբ ցուցուց, որ Հայոց եկեղեցին՝ ընդհանուր եկեղեցւոյ մէկ ճիւղն է, եւ իր կենդանութիւնը միայն արմատին հետ միանալով կրնայ պահել: Գլխաւորաբար ալ Ս. Հայրապետին խօսքերէն շարժեալ, ժողովականք Միքայէլ պատրիարքին Հայոց գրած հաւատոյ դաւանութեան թուղթն ընդունեցին եւ իրենց հաւանութիւնը կամ վճիռը սինհոդոսական նամակով մը կայսեր խաւրեցին: Բայց պատգամաւորները դեռ Կոստանդնուպոլիս չհասած՝ Կիր Մանուէլ կայսրը մեռած ըլլալով եւ ետքէն երկու կողմանէ ալ մնացեալ մէկ քանի՝ կէտերուն վրայ չկրնալով միաբանիլ, աս վերջին միաբանութեան փորձն ալ պարապի ելաւ: Անկէ ետքն ըստ մասին կրօնական եւ ըստ մասին քաղաքական պատճառներու համար, երկու ազգաց մէջ եղած յառաջուան անելութիւնը դարձեալ արթնցաւ:

## 68.

### Բ. Հայք միայն Հռոմայ եկեղեցւոյ հետ կանոնաւոր հաղորդակցութեան մէջ (1180—1385):

Յունաց հետ վերջին միաբանութեան փորձը չյաջողելէն ետեւ, Հայք բոլորովին արեւմտեան հռո-

մէական եկեղեցւոյ յարելով, ուղղակի անոր հետ աւելի եւս սերտ ու յաճախ հաղորդութիւն ընելու սկսան: Բարեբախտութեամբ ասոր նպաստաւոր էին ժամանակին պարագաներն ալ. ինչու որ նոյն միջոցին խաչակրութեանց պատճառաւ դէպ ի արեւելք եկող Լատինաց հետ, Հայք մտերմական յարաբերութեան մէջ մտնելու առիթ ունենալով, մէկ կողմանէ Ռուբինեան իշխանները զինուք խաչակրաց օգնած ատեն, մէկալ կողմանէ կաթուղիկոսաց գլխաւոր ջանքն էր Հայոց եկեղեցին Հռոմայ եկեղեցւոյ հետ հաւատոյ եւ սիրոյ միութեան մէջ պահել, Քահանայապետաց հպատակութեան թուղթ գրելով կամ առանձին նուիրակ խաւրելով: Կաթուղիկոսաց ձեռնտու օգնական էին Ռուբինեան թագաւորները, որոնք իրենց արքունական թագը Հռոմայ Քահանայապետաց պարտական էին, եւ զանիկայ չորս կողմն առած թըշնամեաց դէմ կանգուն բռնելու համար՝ անոնց օգնութեանը կը կարօտէին:

Բայց ինչպէս քաղաքական կողմանէ Հայաստան արեւմտեան ու արեւելեան կը զանազանէր, նոյնպէս կրօնի կողմանէ համոզումները կը տարբերէին: Որչափ արեւմտեան կամ Կիլիկիայի Հայք իրենց կաթուղիկոսներովն, եպիսկոպոսներովն ու թագաւորներովը Հռոմայ եկեղեցւոյ յարելու միտեալ էին, այնչափ արեւելեան կամ Մեծ Հայաստանի ժողովուրդն (որոնք 1180էն վեր առանձին կաթուղիկոս մ'ունէին), եւ մանաւանդ վանքերուն մութ խորշերուն բնակչաց միտքն ասոր հակառակ էր, եւ բանիւ ու գրով հերձուածն ու պարականոնը յառաջացընել կ'ուզէին: Բայց ողջամիտ կաթուղիկոսաց արթնութիւնն եւ թագաւորական իշխանութիւնը, կրցաւ զիրենք առ ժամանակ մի սանձահարել:

Աս ողջամիտ կաթուղիկոսաց առաջին օղը կը կազմէ Գրիգոր Դ. Տղայ, որ Հռոմկլայի ժողովքէն ետքը լսելով, որ Յոյնք միաբանութեան փորձին չյաջողելուն վրայ զայրացած, պէսպէս չարախօսութիւններով Լատինաց եւ Հայոց մէջ թշնամութիւն կ'ուզեն ձգել, Ղուկիոս Գ. Քահանայապետին հպատակութեան

թուղթ գրեց եւ պատգամաւորի ձեռքով Հռոմ խաւրեց։ Քահանայապետը վերոնա ըլլալով, պատգամաւորը հոն ընդունեցաւ, եւ կաթուղիկոսին թղթին պատասխան գրելէն զատ, իրեն եմիփորոն (Պալլիոն) եւ եպիսկոպոսական թագ խաւրեց։ Ասոր երկրորդ յաջորդին Գրիգոր Զ. Ապիրատ կաթուղիկոսին ժամանակ (1195—1202), Լեւոն Բ. Հայոց իշխանը Կեղեստինոս Գ. Քահանայապետին դեսպանի ձեռքով նամակ խաւրեց, եւ իրմէ խնդրեց որ իրեն թագաւորական պատիւ տայ. Թուղթ մ'ալ Հենրիկոս Զ. կայսեր գրեց։ Քահանայապետը Լեւոնին դեսպանը սիրով ընդունեցաւ եւ կայսեր հաւանութեամբը Մոգունտիայի արքեպիսկոպոս Կոնրադոս կարդինալին ձեռքով փառաւոր թագ մը խաւրեց, պահանջելով միանգամայն որ Հայք քանի մը ուղղելի բաներ որ կային ուղղեն։ Հայք՝ Քահանայապետին ուզածները յանձն առին, եւ Գրիգոր Զ. կաթուղիկոսը բազմաթիւ եկեղեցական ու աշխարհական մեծամեծաց ներկայութեամբը զԼեւոն Բ. թագաւոր օծեց (1198)։ Օծման հանդէսը լմննալէն ետքը, երբոր Քահանայապետին նուիրակը Հռոմ կը դառնար, Լեւոն թագաւորը Կեղեստինոսին յաջորդ Իննովկենտիոս Գ. Քահանայապետին շնորհակալութեան նամակ գրեց. աս առթով նաեւ Գրիգոր Զ. կաթուղիկոսը՝ Քահանայապետին հպատակութեան թուղթ մը գրեց, որոնց նոյն տարին Իննովկենտիոս Գ. պատասխան տուաւ, կաթուղիկոսին եմիփորոն ու մատանի, իսկ Լեւոն թագաւորին Ս. Պետրոսի շքանշանը խաւրելով։ Գրիգոր Զ. կաթուղիկոսին յաջորդեց Յովհաննէս Է. (1202—1220), որ Անտիոքի իշխանութեան յաջորդութեան պատճառաւ ծագած վէճին համար Կիլիկիա եկող Պետրոս կարդինալին առջեւը, Քահանայապետին հնազանդութիւն եւ հպատակութիւն խոստացաւ, զորն որ ետքէն Իննովկենտիոս Գ. Քահանայապետին գրած առանձին թղթով մ'ալ հաստատեց։ Իրմէ ետքը կաթուղիկոսական աթոռն ելաւ Կոստանդին Ա. (1220—1268)։ Աս կաթուղիկոսին ու Անտիոքի պատրիարքին մէջ աթոռոյ գլխաւորութեան նկատմամբ վէճ մ'ելաւ։ Խաչակրաց

ժամանակ՝ Լատինք Անտիոք պատրիարքութիւն մը հաստատած էին, եւ որովհետեւ Կիլիկիա Անտիոքի պատրիարքութեան կը վերաբերէր, կ՚երեւայ որ Անտիոքի պատրիարքն իր իրաւաբանութիւնը Հայոց կաթուղիկոսին վրայ ալ ընդարձակել ուզած ըլլայ: Բայց Կոստանդին յանձն չառնելով՝ Անտիոքի պատրիարքը (1238ին) Գրիգոր Թ. Քահանայապետին ամբաստանութեան թուղթ գրեց Հայոց կաթուղիկոսին վրայ, ըսելով որ իրեն չ՚ուզեր հնազանդիլ: Քահանայապետը նոյն միջոցին ան կողմերը գտնուող երկու արքեպիսկոպոս կարգեց, որ խնդիրը քննեն: Բայց վերջապէս Լեւոն Հայոց թագաւորին բաղձանքին համեմատ՝ Քահանայապետն Անտիոքի Լատին պատրիարքէն անկախ հրատարակեց Հայոց նուիրապետութիւնը: Գրիգոր Թ. Քահանայապետը յաջորդ տարին (1239) հայրական սիրով լի թուղթ մ՚ալ գրեց Կոստանդին կաթուղիկոսին եւ իրեն չէ թէ միայն խնդրած եմիփորոնը՝ այլ նաեւ եպիսկոպոսական թագ, ուրար ու մատնի խաւրեց: Նոյն միջոցին Հայոց եկեղեցական օրէնսդրութեանց մէջ անկարգութիւններ մտած ըլլալով, Կոստանդին կաթուղիկոսը Սիս ժողով գումարեց (1243), եւ Հայոց եկեղեցւոյն բարեկարգութեանը համար քսանուհինգ կանոն հաստատեց, որոնց վերջինը՝ Իննովկենտիոս Քահանայապետին բաղձանաց համաձայն, հիւանդաց վերջին օծման խորհուրդ տալը կը սահմանէ: Քանի մը տարի ետքը (1251) նոյն Քահանայապետը Կոստանդին կաթուղիկոսէն խնդրեց Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնը Հոգւոյն սրբոյ բխման վրայ: Կոստանդին Սիս դարձեալ ժողով գումարեց, ուր բոլոր ժողովականք Հռոմայ եկեղեցւոյն դաւանութիւնն ուղիղ ճանչցան, եւ կաթուղիկոսը՝ Քահանայապետին գրած պատասխանագրին մէջ կը հաստատէ, որ Հայոց եկեղեցին՝ Հռոմայ եկեղեցւոյն պէս Հոգւոյն սրբոյ բխումը ի Հօրէ եւ յՈրդւոյ կը դաւանայ:

Ասկէ գրեթէ կէս դար մը ետքն այնպիսի երեւելի անձ մը կաթուղիկոսական աթոռը նստած կը գտնենք, որ նախընթաց կաթուղիկոսներուն պէս Հռոմայ եկեղեցւոյ միութեան հոգւով զգածեալ ըլլալէն զատ,

նոյն զգածումը նաեւ հանդիսական գործքով մ՚ալ ուզեց ցուցընել։ Գրիգոր Է. Անաւարզեցին (1294—1307) կաթուղիկոսական աթոռն ելլելուն պէս Բոնիփակիոս Ը. Քահանայապետին հպատակութեան եւ մեծարանաց թուղթ գրելը բաւական չհամարելով, ուզեց Հռոմայ եկեղեցւոյ հետ ունեցած միութիւնը ժողովքով մ՚ալ հաստատել։ Ուստի երբ որ Լեւոն գահէն ելլելով՝ Կիլիկիա առ ժամանակ մի խաղաղութիւն գտաւ, Գրիգոր անմիջապէս իր խորհուրդն ի գործ դնելու ձեռք զարկաւ, եւ ժողովի նիւթ ըլլալու խնդիրները զարմանալի հմտութեամբ գրած թղթով մը՝ Լեւոն թագաւորին եւ Հեթում թագաւորահօր ծանոյց։ Թէպէտ ինք նոյն միջոցին յանկարծ մեռնելով, միտքը դրածը չկրցաւ անձամբ գլուխ հանել, սակայն իր ջանքն առանց հետեւութեան չմնաց։ Լեւոն թագաւորն ուզեց որ իր գրած թղթոյն վրայ խորհուրդ եւ որոշում մ՚ըլլայ։ Ուստի աս վախճանիս համար Սիս ժողով կանչեց (1307), որուն ներկայ գտնուեցան նորընտիր Կոստանդին Գ. կաթուղիկոսը, մետրապոլիտներ, եպիսկոպոսներ, վանահայրեր, վարդապետներ թէ Հայաստանէն եւ թէ Կիլիկիայէն, երեք թագաւոր (Հեթում, Լեւոն եւ Օշին) տէրութեան սպարապետն եւ այլն, որ պատճառաւ աս ժողովը իրաւամբ Հայոց ազգային ժողովներուն մէջ թէ հեղինակութեամբ եւ թէ պատուով առաջինը կրնայ սեպուիլ։ Աս ժողովյս մէջ՝ Գրիգոր Է. Անաւարզեցւոյն օծութեամբ լի թուղթը քննութեան առնուեցաւ, եւ հասուն խորհրդածութենէ ետքը միաբան հաւանութեամբ ընդունուեցաւ։ Աս գրութիւնը հետեւեալ գլխաւոր կէտերը կը բովանդակէր, այսինքն՝ Նախ Հռոմայ Քահանայապետին գլխաւորութիւնն եւ եօթն ընդհանրական ժողովներուն եւ անոնց որոշմանց պարտաւորիչ ըլլալը։ Երկրորդ՝ ի Քրիստոս երկու բնութիւն եւ երկու գործողութիւն գտնուիլը։ Երրորդ պատարագի բաժակին մէջ ջուր խառնելը։ Չորրորդ՝ տօներու եւ պահոց նկատմամբ Հռոմայ եկեղեցւոյ սովորութեան հետեւիլը։ Թէպէտ Սսոյ ժողովոյն որոշմունքները Կիլիկիայի Հայոց մեծ մասը սիրով

ընդունեցաւ, սակայն Մեծ Հայաստանի ժողովուրդը, մանաւանդ Զորոգետացիներուն, Հաղբատացիներուն ու Սանահնեցիներուն հետեւողները, ժողովոյն վճիռները մերժեցին։ Եւ որովհետեւ Լեւոն թագաւորին անոնց գործադրութիւնը կը պահանջէր, ժողովրդեան Սսոյ ժողովոյն որոշմանց դէմ ունեցած հակառակութիւնը մոլեռանդն վանականներու ձեռքով՝ կատաղութեան փոխուեցաւ, եւ մեծամեծ շփոթութիւններու պատճառ եղաւ։ Այս շփոթութիւնները խաղաղցընելու համար՝ Նորապատակ Օշին թագաւորը Կոստանդին Բ. կաթուղիկոսին աջակցութեամբն Ատանայի ժողովը գումարեց (1316), որն որ Սսոյ ժողովոյն վճիռներն ու սահմանադրութիւնները հաստատեց եւ չանսացող հակառակորդներուն դէմ նզովք սպառնաց։

Այս դառն աղէտից ու շփոթութեանց ժամանակ՝ աստուածային նախախնամութիւնը նոր լոյս եւ զօրաւոր նեցուկ մը հանեց Հայաստանի մէջ ուղղափառութեան եւ կաթուղիկէ հաւատոյ միութեան։ — Չորեքտասաներորդ դարուն սկիզբները (1318), Յովհաննէս ԻԲ. Քահանայապետը՝ որ Հայոց ազգին մեծ գութ եւ սէր ունէր, Դոմինիկեանց կարգէն երանելի Բարթողիմէոս Պոլոնիացին իբրեւ Մարաղա քաղքին եպիսկոպոս՝ առաքելութեամբ Ատրպատական խաւրեց։ Այս երանելի անձը՝ իր հոգելից քարոզութեամբը, եւ գլխաւորաբար վարուց սրբութեամբը քիչ ժամանակուան մէջ մեծ անուն ստացաւ, եւ բազմաթիւ աշկերտներ ու հետեւողներ գտաւ։ Ասոնցմէ մէկն էր Յովհաննէս Քռնեցին, որ երանելւոյն ողջամիտ վարդապետութենէն լուսաւորուելով՝ կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնն ընդունեցաւ եւ ուզեց նոյնն իր ազգին մէջ ալ տարածել։ Ուստի աս վախճանիս համար քանի մը ընկերներով Դոմինիկեանց կառավարութեանը տակ եւ Ս. Աւգոստինոսի կանոններով՝ *Միաբանող Եղբարց* ըսուած ընկերութիւնը հաստատեց։ Այս կրօնին կամ ընկերութեան նպատակն էր, հայերէն գրքեր թարգմանելով կամ գրելով, Հայ ազգը լուսաւորել, եւ քարոզութեամբ Հռոմայ եկեղեցւոյ հետ ընդհանուր հաւատոյ միութիւնը յառաջա-

ցընել։ Քիչ ժամանակուան մէջ՝ առ ընկերութիւնն այնչափ աճեցաւ, որ Հայաստանէն ու Վրաստանէն զատ, Թաթարստան ու Խրիմ վանքեր ու եկեղեցիներ չինեց, եւ Թէոդոսիա քաղաքը վարժարան մ՚ալ կանգնեց։ Գրեթէ երեք դարու չափ ան կողմերը հռոմէական ուղղափառ հաւատոյ պաշտպան եւ քարոզիչ էին, եւ մինչեւ 1680 (որ միջոցին Յիսուսեանք ան կողմերն եկան) Նախիջեւան գաւառին արքեպիսկոպոսական աթոռն իրենց ձեռքն էր, եւ նոյն գաւառին Հայ ուղղափառաց բազմութիւնն ալ իրենց առաքելական ջանից պտուղն էր։ Աս առաքելական աշխատութիւններն աւելի պտղաբեր ու տեւական կ՚ըլլային, եթէ ոմանք իրենց հիմնադրին ճամբէն չշեղելով՝ փոփոխութեան կարօտ չեղած բաներն անփոփոխ թողտային, եւ նորաձեւութիւններով իրենց հակառակորդներն աւելի եւս չգրգռէին, որոնց մէջ ամէնէն կատաղիները գտնուեցան՝ Յովհաննէս Որոտնեցին ու Գրիգոր Տաթեւացին։ Ասոնք բանիւ եւ գրով սաստիկ հակառակութիւն մը սկսան իրենց դէմ, որմէ մեծամեծ շփոթութիւններ ելան։ Այս կրօնական շփոթութիւնները քաղաքական հետեւութիւններ ալ ունեցան, եւ ո՛չ Լեւոն Ե. թագաւորին իշխանութիւնն եւ ո՛չ Յակոբ Բ. կաթուղիկոսին հայրական յորդորները կրցան զանոնք խաղաղել։ Չարիքն այնչափ մեծցաւ, որ Միաբանող եղբարցմէ շատերը Հայաստանէն հալածուեցան եւ նոյն իսկ Յակոբ Բ. կաթուղիկոսն՝ անոնց կողմը բռնելուն կամ կարծուելուն համար, աթոռէն ձգուեցաւ։ Իր յաջորդին՝ Մխիթար Քռնեցւոյն ժամանակ, թէպէտեւ Հայաստանէն հալածուած Միաբանող եղբարցմէ ոմանք, Բենեդիկտոս ԺԲ. Քահանայապետին՝ Հայոց եկեղեցւոյն վրայ հաւատոյ նիւթերու մէջ 117 գլուխ ամբաստանութեան թուղթ մը ներկայացուցին։ Քահանայապետը զանոնք քննել տալէն ետեւ, Մխիթար կաթուղիկոսին խաւրեց որ ազգային ժողովքով մը դատապարտէ եւ ինք զինքն ու բոլոր ազգն ան ամբաստանութիւններէն սրբէ։ Մխիթար՝ Լեւոն թագաւորին հաւանութեամբը Սսոյ Զ. ժողովը գումարեց (իբր 1342) եւ Քահանայապետին թուղթ

գրելով իր Հրամանին կատարումը ծանոյց, եւ ամբաստանութեանց դէմ գրուած Ջատագովութեան գիրքն ալ պատգամաւորի մը ձեռքով Հռոմ խաւրեց: Այս Ջատագովութեան գիրքը Բենեդիկտոսի յաջորդ Կղեմէս Զ. Քահանայապետն առնելով՝ շատ ուրախացաւ, եւ Մխիթար կաթուղիկոսին Հայրական սիրով Հաճութեան նամակ մը գրելէն զատ, խնդրած Քահանայապետաց այլեւայլ օրէնքներն ալ խաւրեց: Քիչ մ'ետքն երբոր դարձեալ նոյն ամբաստանութիւնները լսուեցան, Իննովկէնտիոս Զ. Մխիթար կաթուղիկոսին երկայն թուղթ մը գրեց, որուն մէջ իրեն հաւատոյ զանազան մասերու վրայ հարցումներ կ'ընէ: Մխիթար անմիջապէս իր նախորդ Յակոբ կաթուղիկոսն Աւենիոն խաւրեց, որպէս զի կենդանի բերնով Հայոց եկեղեցւոյն հաւատոյ դաւանութիւնը Քահանայապետին առջեւը պարզէ: Յակոբ իր նպատակին լաւ հասնելէն ետքը, Սիս դարձած ատեն Մխիթար մեռած ըլլալով, ինք անոր յաջորդ ընտրուեցաւ: Բայց հազիւ չորս տարի (1355—1359) կաթուղիկոսութիւն ընելէն ետեւ, ինքն ալ մեռաւ, եւ իրեն յաջորդեց Մեսրոպ Բ. (1359—1372): Անիկայ ազգին մէջ տարաձայնութեանց ու ծէսերու պատճառաւ դեռ շարունակուած վէճերը դադրեցընելու համար, թոյլ տուաւ քանի մը բաներու, որոնք օրինաւորապէս չէին կրնար թոյլ տրուիլ: — Անոր վրայ շատ չանցաւ եկան այն դժբախտ տարիները, որոնց մէջ արդէն հոգեվարութեան մէջ ինկած Կիլիկիոյ վերջին թագաւորութիւնը, իր չորս կողմն առած թշնամիներուն ալ դէմ կենալ չկարենալով՝ բոլորովին ինկաւ կործանեցաւ (1385): Այսպէս Կիլիկիոյ թագաւորութեան կործանելովը՝ զանազան արգելքներու վրայ նիւթական դժուարութիւններ ալ աւելնալով, Հայոց կաթուղիկոսաց Հռոմայ աթոռոյն հետ ունեցած հաղորդութիւնը դժուարցաւ: Սակայն եւ այնպէս Հայք ասկէ գրեթէ կէս դար մ'ետքն իրենց միաբանական ոգւոյն ցոյց մը տուին, երբոր Եւգինէոս Դ. Քահանայապետին ձայնին հետեւելով, Փլորենտիայի ժողովին եկան Հռոմայ եկեղեցւոյն հետ միաբանութիւնն նորոգելու համար:

Եւգինէոս Դ. ինչպէս մէկալ արեւելեան եկե-ղեցիներուն պատրիարքացը, նոյնպէս Հայոց Կոստան-դին Ե. կաթուղիկոսին հրաւէր խաւրած էր Փլորէն-տիայի ժողովը գալու։ Կոստանդին ծերութեան պատ-ճառաւ անձամբ նոյն տիեզերական սինհոդոսը գալ չկարենալով, իր տեղը չորս հոգի իբրեւ պատգամաւոր լիակատար իշխանութեամբ Փլորենտիա խաւրեց։ Ճամ-բուն դժուարութեանց պատճառաւ հազիւ ժողովը լմննալէն ետքը Հայոց պատգամաւորները Փլորենտիա հասան։ Սակայն ժողովականներէն ամէնը դեռ գա-ցած չըլլալով, Եւգինէոս Դ. քահանայապետը հոն կա-րեւոր խնդրոց վրայ Հայոց նուիրակացը հետ նա-խընթաց բանակցութիւններ ընել տալէն ետքը, միա-ցած կարդինալաց ու եպիսկոպոսաց հետ առանձին նիստ մ'ըրաւ, որուն մէջ Հայոց պատգամաւորները Փլորենտիայի ժողովոյն վճիռներն ընդունեցան։ Եւ-գինէոս Դ. քահանայապետն աս միաբանութեան առ-թիւ Հրահանգ մը տուաւ (որ հասարակօրէն Հրահանգ վասն Հայոց կ'անուանուի), որուն մէջ խորհրդոց վրայ կը խօսի եւ ի մասնաւորի կը վճռէ, որ Հայոց քահա-նայք պատարագի բաժակին մէջ քիչ մը ջուր խառնեն։ Քահանայապետին այս կոնդակը եւ հրահանգը՝ Հայոց պատգամաւորներն իրենց ու իրենց ամենապատիւ կաթո-ղիկոսին ու բոլոր հայ ազգին անուամբն ընդունեցան եւ ստորագրեցին։ Եւգինէոս Դ. աս կոնդակին հայերէն թարգմանութիւնը հրեշտակներուն ձեռքով Կոստան-դին կաթուղիկոսին եւ բոլոր հայ ազգին խաւրեց*։

Թէպէտ պատմութիւնն որոշ չի ցուցըներ հայ Մարկոս Եփեսացի մը՝ որ Փլորենտիայի միաբանու-թիւնը քակելու աշխատած ըլլայ, սակայն չի վկայեր ալ՝ որ Փլորենտիայի ժողովոյն վճիռները Հայոց եկե-ղեցին ձեռքը հասան եւ թէ ինչ ընդունելութիւն գտան։ Աս միայն ստոյգ է՝ որ նոյն միջոցին կաթուղի-կոսական աթոռը գահափրութեան եւ երկպառակու-թեան խաղալիկ եղած էր։ Պատգամաւորներուն Հայ-աստան դառնալէն յառաջ՝ արդէն Կոստանդին կա-

* Աս կոնդակին հին թարգմանութիւնը՝ կաթուղիկոսին հրեշտակներուն ինքնագիր ստորագրութեամբը, մինչեւ հիմայ կը գտնուի Փլորենտիայի Լաւրենտեան կոչուած մատենադարանին մէջ։

թուղիկոսը մեռած, իրեն Յովսէփ Գ. եւ ասոր տարի մ'ետքը Գրիգոր Թ. յաջորդած էր։ Այս ժամանակ քանի մ'արեւելեան եպիսկոպոսներ իրարու հետ միաբանելով, Հայ կղերին թուղթ մը հանեցին, որուն մէջ Գրիգոր Թ.ին բռնած ընթացքին եւ ընդհանրապէս Սսոյ աթոռոյն խեղճութեանը վրայ քանքատելէն ետեւ, զիրենք կը յորդորէին որ կաթուղիկոսական աթոռն Էջմիածին փոխադրեն։ Եւ որովհետեւ Գրիգոր Թ. յանձն չառաւ աթոռն Էջմիածին փոխադրել, բազմաթիւ եպիսկոպոսներ, վանահայրեր ու քահանաներ խօսք մէկ ընելով՝ 1441ին Էջմիածին ժողով մ'ըրին եւ Կիրակոս Վիրապեցին կաթուղիկոս ընտրեցին, որն որ ուրիշ բան չէր կրնար անուանուիլ, բայց եթէ հակաթոռ կաթուղիկոս մը։

## 69. Այս ժամանակի շրջանին մէջ Հայաստանի գիտնական վիճակը։

Ինչպէս հինգերորդ դարուն ընթացքին մէջ Հայոց եկեղեցական մատենագրութիւնը Ս. Մեսրոպայ եւ իր աշակերտաց ջանքովն այնպէս փառաւոր կերպարանք մ'առաւ, բայց դժբախտութեամբ անկէ ետքն եկող դարերուն մէջ, ուսում եւ գիտութիւն սորվելու գրգիռն ու եռանդը կամաց կամաց կորսուեցաւ, եւ եկեղեցական մատենագրութիւնն երթալով իր սկզբնական փառաւորութիւնը կորսնցուց։ Թարգմանչաց յաջորդներն՝ անոնց սկսած մատենագրական ընթացքը շարունակելու եւ կատարելագործելու տեղ, անոնցմէ ժառանգած մէկ քանի հատոր մատենագրութեամբ գոհ եղան. ուսումնական ճամբորդութիւնները կամ բոլորովին դադրեցան կամ շատ ցանցառցան։ Ասոր պատճառներն էին քաղաքային ազատութեան կորուստը, Հայաստանի քաղաքական վիճակին հետզհետէ փոփոխուիլը, պատերազմներուն յաճախութիւնը, կրօնական վէճերն եւ գլխաւորաբար Հայոց ու Յունաց մէջ մնած կրօնական բաժանումը։ Հայոց եկեղեցին՝ որ իր ուսումն սկզբնաբար Յունաց եկեղեցիէն առած էր, եւ անոր հետ հաղորդուելով

միայն կրնար զանիկայ պահել, վեցերորդ դարուն՝ Քաղ-
կեդոնի Ս. Ժողովոյն պատճառաւ անկէ բաժնուելով,
իւր եկեղեցական ուսումն ալ նախնական բնէն բեկած
ոստի մը պէս, կամաց կամաց իր կենսական զօրութիւնը
կորսնցուց: Թէպէտ եօթներորդ դարուն Սիւնեաց
Հռչակաւոր դպրոցին կանգնուելովը, նոյն գաւառին
մէջ ուսումը քիչ մը կենդանութիւն առաւ, բայց ա-
սիկայ ընդհանուր Հայաստանի նկատմամբ մասնական
բան մըն էր: Սակայն Հայաստանի մէջ ալ գտնուեցան
մէկ քանի իրարմէ աւելի կամ պակաս հմուտ եւ գի-
տուն անձինք, ինչպէս են Յովհաննէս Օձնեցին (Ը
դար), Զաքարիա Ա կաթողիկոսը (Թ), Խոսրով Ան-
ձեւացեաց եպիսկոպոսը (Ժ), Գրիգոր Նարեկացին (Ժ)
եւ Գրիգոր Մագիստրոս (ԺԱ), որոնց խօսքը պատգամի
տեղ կ'անցնէր: Հազիւ տասներորդ դարուն՝ բոլոր
Հայաստանի մէջ ուսումնականութեան ոգի մը սկսաւ
զարթնուլ: Ինչպէս արեւմուտք՝ նոյնպէս Հայաստան
վանքերն եղան գիտութեանց օթարանները, որոնց
մէջ տիրող լռիկ հանդարտութիւնը՝ բնականապէս
գիտութիւններն իրենց գոգը կը հրաւիրէին*:

Աս նկատմամբ երեւելի եղան տասներորդ դա-
րուն՝ Արշարունեաց Նաւահանգին Կամրջաձորոյ վանքն եւ
Նարեկայ վանքը Վասպուրական գաւառին մէջ: Մեծ
անուն ունէին նաեւ Սեւանայ ու Ղազարու վանքերը,
որոնց վրայ երկոտասաներորդ դարուն մէջ աւելցան
Կիլիկիայի Կարմիր ըսուած վանքը, Սկեւռա կամ Սեւ
լեռան եւ Գետիկ վանքերը:

Ու որչափ Հայաստանի վրդովմանց պատճառաւ
աս ատենուան ուսումնական եւ մտաւոր յառաջադի-
մութեան արգելքները մեծ էին, սակայն եւ այնպէս
վերոյիշեալ վանքերուն եւ Մեծ Հայաստանի ուրիշ մե-
նաստաններուն մէջ քիչ շատ գիտութեան փոյթ կը
տարուէր: Ինչպէս արեւմուտք՝ նոյնպէս արեւելք ձե-
ռագիր օրինակելը վանքերուն գլխաւոր զբաղմունքներ-
էն մէկն էր: Անկէ զատ Ս. Հայրց գործքերուն եւ ժո-
ղովից հմտութեան կը պարապէին, որոնք նոյն տաե-

* Շատ հաւանական է՝ որ Հայաստանի մէջ գտնուած վանքերն իրենց հաստատութիւնը Ս. Բարսղի կանոններուն վրայ հիմնած էին:

նուած կղերին թէ բարոյից կրթութեան եւ թէ հազեւոր ծանօթութիւններ ու ձեւեր քաղելու միակ աղբիւր եղած են. ի մասնաւորի մեծ փայլ կը ստանուէր Ս. Գրոց մեկնութեան։ Նոյնպէս երաժշտութիւնը՝ արեւելեան ճաշակով, աստուածականաց ու մեծատօնից զբաղմունքներէն մէկն եղած էր։ Տաղաչափութեան արուեստն ալ՝ զուտ կրօնական նկարագրով, արդէն քանի մը դար յառաջ սկսած էր զարգանալ նոր արուեստով շինուած (բաց. մասին արձակ կամ արձականման) շարականներով, գանձերով ու քերթուածներով (Անյանգ թուական), որոնց մէջ առանձինն իրենց միայն սեպհական նկարագիր մ'ունին Ս. Գրիգոր Նարեկացւոյն (951—1005) տաղերը։ Այս անյանգ թուական տաղաչափութիւնը՝ մետասաներորդ դարուն՝ գիտութեանց մէջ կիրթ եւ անուանի Գրիգոր Մագիստրոս († 1058) հայկազն իշխանին ձեռքով նոր ձեւ մը ստացաւ (Յանգաւոր թուական), որ Արաբացիներէն առնուած ըլլալուն՝ Արաբական տաղաչափութիւն ըսուեցաւ։ Այս տաղաչափութեան արուեստը՝ Ս. Ներսէս Շնորհալին երկոտասաներորդ դարուն մէջ աւելի եւս կատարելագործեց, իր անթիւ քերթուածներովը, տաղերովը, երգերովը ու խորավայրին ըսուած շարականներովը, որոնք ազգին մէջ մեծ ընդունելութիւն գտան եւ մինչեւ հիմայ Հայաստանեայց եկեղեցիներուն մէջ կը հնչեն։

Թէեւ այս ժամանակիս մատենագիրները բազմաթիւ են, սակայն մենք միայն անոնց կենսագրութիւնը հոս կը դնենք, որոնք մատենագիր ըլլալէն զատ, նաեւ վարուց սրբութեամբ երեւելի հանդիսացած են, եւ Հայոց եկեղեցւոյն Ս. Հարց կարգը կը դասուին։

**Ս. Գրիգոր Նարեկացին՝** տասներորդ դարուն Հայաստանեայց եկեղեցւոյ յիշատակաց արժանի անձինքներէն մէկը, ծնաւ Վասպուրական աշխարհքին Անձեւացեաց գաւառը (շուրջ 951ին)։ Իր հայրը՝ Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոսը, որ ուսմամբ աննշանաւոր մարդ չէր, անձամբ իր որդւոյն թէ կրօնական թէ մասնաւոր դաստիարակութեան առաջին սկզբունքը հաղորդեց։ Չափահաս ըլլալէն ետեւ աշ

խորհրդես հրաժարելով՝ Նարեկայ վանքը մտաւ, ուր Հռչակաւոր Անանիա Նարեկացւոյն առաջնորդութեանը տակ թէ՛ վարուց սրբութեամբ եւ թէ՛ աստուածային գիտութեամբ պայծառացաւ։ Քանի մը տարի ետքը քահանայ ձեռնադրուելով, մէկալ միաբանից ուսուցիչ դրուեցաւ, եւ իբրեւ աստուածաբան ու քարոզիչ մեծ անուն հանեց։ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն պաշտպան ըլլալով՝ Վասպուրականի աշխարհը փախչող Վահան ուղղափառ կաթուղիկոսին ժամանակ, Հայոց պառակտեալ եկեղեցւոյն խաղաղութեանն եւ համաձայնութեանը շատ աշխատեցաւ, որուն համար նաեւ հակառակորդներէն հալածուած կը պատմուի։ Անկէ ետքը Ս. Գրիգոր քանի մը տարի ալ մեծ սրբութեամբ կեանք վարելէն ետեւ, լի արդեամբք կնքեց իր կեանքը (1003ին) հասակին յիսուներկուերորդ տարին։ Իր բազմաթիւ մատենագրութեանց մէջ երեւելի են՝ 1. Երգ Երգոցին Մեկնութիւնը, զոր որ Գուրգէն արծրունի թագաւորին խնդրելովը շարադրած է քսանուվեց տարեկան եղած ատեն. 2. Աղօթից Գիրքը, զորն որ ամբողջութիւն եղած է Նարեկ անուանել։ Ասոնցմէ զատ գրած է խորին իմաստիւք հոգելից գանձեր, տաղեր ու ճառեր, որոնց մէջէն ի գովեստ Ս. Կուսին գրած ճառը՝ թէ՛ խորհրդոց նշանաւորութեամբ եւ թէ՛ բացատրութեան վսեմութեամբ մեկնիչները կը զարմացնէ։

*Ս. Ներսէս Շնորհալին* որ երկայն ժամանակ Հռոմկլայ կաթուղիկոսութիւն ընելուն համար՝ Կլայեցի ալ կ'ըսուի, Պահլաւունի իշխանական ցեղէ եւ բարեպաշտ ծնողքներէ յառաջ եկած է (1103)։ Ապիրատ՝ իւր հայրը տղայութենէն վրան կարգէ դուրս հանճար եւ զարմանալի ձիրքեր տեսնելով, զինքը Գրիգոր Մեծ եղբօրը հետ քահանայական վեհարանին ղրկեց եւ Մեծն Գրիգոր Վկայասէրին յանձնեց, որ իրենց դաստիարակութիւնը վրան գնէ։ Ան իմաստուն եւ սուրբ Հայրապետին ջանքովը երկու Պահլաւունի եղբայրք, վարուց սրբութեան եւ ամէն տեսակ գիտութեանց մէջ կրթուեցան, զորոնք ետքէն Սեւ լեռան Կարմիր վանքին Հռչակաւոր Ստեփաննոս առաջնորդին տակ,

աւելի եւս կատարելագործեցին։ Յամի 1113ին Բար-
սեղ կաթողիկոսը մեռնելով, Ներսէսին մեծ եղբայրը
Գրիգոր Պահլաւունին՝ կաթողիկոս ընտրուեցաւ։ Ա-
սիկայ անմիջապէս զՆերսէս քահանայ ձեռնադրեց, եւ
քիչ մը ետքը (1135) եպիսկոպոսական աստիճանին
ալ բարձրացուց, եւ իբրեւ օգնական իր քովը պահեց։
Աս ժամանակէս արդէն սկսաւ Շնորհալւոյն ազգին
եկեղեցական իրողութեանց վրայ ունեցած ազդեցու-
թիւնը, այնպէս որ կրնայ ըսուիլ թէ եղբօրն ամէն
գործողութեանց հոգին եւ շունչն էր։ Բայց ի մաս-
նաւորի իր ողւոյն չնաշխարհիկ ձիրքերուն, բարեպաշ-
տութեանն եւ ազգին հոգեւոր վիճակը նորոգելու
եռանդեան ցոյց տուաւ, երբ որ իր եղբայրը ծերու-
թեան պատճառաւ կաթողիկոսութենէն հրաժարե-
լով, ինք անոր յաջորդ ընտրուեցաւ (1165)։ Երկայն
ժամանակէ վեր Ս. Լուսաւորչին գահն այնպիսի անձ
մը չէր նստած։ Կաթողիկոսաց երկայն շարքին մէջ՝
չենք գտներ կաթողիկոս մը, որ իր պարագաներուն ծա-
նրութեանն այնպէս խորունկ թափանցած եւ զանոնք
բազմադիմի արդեւնքներու մէջ հաստատութեամբ
գործադրելու ջանք ցուցուցած ըլլայ, ինչպէս Շնոր-
հալին։ Իր գործունէութեան յատակագիծն արդէն
եղբօրը կենդանութեան ատեն շինած էր. իր նպա-
տակն որուն բոլոր կեանքը մէջ աշխատեցաւ՝ էր ազ-
գին թէ եկեղեցականներուն թէ աշխարհականներուն
մէջ մտած զեղծումներն անհետ ընել։ Ուստի կաթո-
ղիկոսական աթոռն ելլելուն պէս՝ զինքն ընտրող ե-
պիսկոպոսներուն սքանչելի ատենախօսութեամբ մը
նկարագրեց նոյն ժամանակուան ազգին խեղճ վիճա-
կը, բոլոր ազգին ալ հոգւական թուղթ կամ Ընդ-
հանրական մը հանեց, որուն մէջ ընտրող համարձա-
կութեամբ ամէն մէկ վիճակներուն ունեցած պարտա-
քերն առջեւնին կը դնէ։ Նոյնպէս իր նախորդին ժա-
մանակ արդէն Յունաց հետ սկսուած միաբանութեան
բանակցութիւններն աւելի եւս ժրութեամբ յառաջ
տարաւ, զանազան երեւելի անձանց թղթեր գրելով։
Բայց այս վախճանաւ ժողով գումարելու պատրաստու-
թեան մէջ եղած ատեն, մահը վրան հասաւ (1173)։

Շնորհալին չէ թէ միայն իբրեւ հովիւ այլ նաեւ իբրեւ մատենագիր Հայոց եկեղեցւոյն գլխաւոր պարծանքներէն մէկն է։ Իր մատենագրական գործունէութիւնն ըստ արժանեաց իմանալու համար, հարկ է զինքն իբրեւ բանաստեղծ, աստուածաբան եւ բանասէր նկատել։ Իբրեւ բանաստեղծ՝ նոյն միջոցին ազգին մէջ սովորական եղած Արաբական տաղաչափութիւնը պայծառացընողներուն մէջ առաջին արդիւնաւորն է։ Իբրեւ աստուածաբան՝ մեծ անուն թողուց իր յաջորդացը։ Նոյնպէս իբրեւ բանասէր՝ երեւելի ըլլալը կը ցուցընեն բազմաթիւ գրուածքները, որոնց մէջ ամէնէն յառաջ յիշուելու արժանի է Յիսուս Որդի անուն քերթուածը, որ 8000 արուեստիւ քովէ քով բերուած տուներու մէջ՝ բոլոր Հին եւ Նոր կտակարանին պատմութիւնը կը բովանդակէ։ Երեւելի է նաեւ Եդեսիա քաղքին ողբերգութիւնը եւ ոտանաւոր շարքով շինած Հայոց պատմութիւնը։ Ասկէ զատ գեղեցիկ շարականներով եւ աղօթքներով զարդարեց Հայոց եկեղեցւոյն պաշտամունքն ու ժամերգութիւնը, այնպէս որ իր ժամանակակիցներէն մէկը զինքն իրաւամբ Հոգւոյն սրբոյ երաժիշտը կ'անուանէ։ Աղօթքներուն մէջ երեւելի է Հաւատով խոստովանիմ եռանդնալից աղօթքը, զորն որ ամէն մարդու համար շինած է՝ օրուան ժամերուն համեմատ 24 տուն բաժնելով։ Շնորհալւոյն ժամանակակից ու իրեն մտերիմ բարեկամն էր

*Ս. Ներսէս Լամբրոնացին*, Հայոց եկեղեցւոյն աս ժամանակիս մեծարանաց արժանի անձինքներէն մէկը, որ ծնաւ 1153ին Կիլիկիայի Լամբրոն բերդը հին եւ ազնուական զարմէ։ Տղայութենէն ուխտիւք Աստուծոյ նուիրուած ըլլալով, մատաղ հասակի մէջ Սկեւռա վանքը մտաւ, ուր մեծ եռանդեամբ սկսաւ իմաստասիրական ուսմանց պարապիլ։ Տասնուվեց տարեկան եղած ատեն՝ Հռոմկլա գալով, Շնորհալին զինքը քահանայ ձեռնադրեց։ Բայց Լամբրոնացին չկրցաւ երկայն ժամանակ իր առանձնութիւնը թողուլ, ուստի քիչ մը ետքը Սեւ լեռան վանքը քաշուեցաւ եւ հոն ինք զինքն անզբաղ գրաւոր աշխատութեանց տուաւ։ Երբեմն միայն քաղաք իջնալով՝ ժողովրդեան կը քա-

բողքը։ Իր իմաստութեան եւ աստուածպաշտութեան համբաւը Լամբրոն քաղաքը տարածուելով, ժողովուրդն ուզեց որ իրենց եպիսկոպոս ձեռնադրուի, բայց Ներսէս իմանալուն պէս՝ Սաղրոս անապատը փախաւ, ուր առանձին տեղ մը քաշուելով միայնութեան ախորժանքն ու երկրաւոր հաճոյքներէ զերծ մխիթարութիւն մը կը վայելէր։ Բայց Շնորհալւոյն յաջորդը Գրիգոր Տղայ կաթողիկոսը զինքն աս առանձնութեան մէջ երկայն չձգեց, հապա իր քովը կանչելով՝ քսանուերեք տարուան հասակին մէջ Տարսոնի արքեպիսկոպոս ձեռնադրեց։ Իրաւ հոլիւ մեծ էր Լամբրոնացւոյն եռանդն իրեն յանձնուած հօտին փրկութեան ճամբուն մէջ առաջնորդելու, բայց միաբանութեան ունեցած արտաքոյ կարգի սէրը, զինքը շատ անգամ հեռաւոր անապատներ կը տանէր։ Ճշմարիտ եղբայրսիրութիւնը, երկիւղած բարեպաշտութիւնն ու խոնարհ ծառայութիւնը զինքն ամէնուն սիրելի եւ պատուելի ըրած էին, չէ թէ միայն իր ազգակցացն այլ նաեւ օտար ազգաց։ Պատմութիւնն եւ իւր մատենագրութիւններ յայտնի կը քարոզեն, ընդհանուր քրիստոնեայ ազգաց հետ եւ ի մասնաւորի Հռոմայ եկեղեցւոյ հետ միութիւնն եւ համաձայնութիւնը պահելու համար ունեցած եռանդը, որ պատճառաւ քանի մը յաջորդներէն հակառակութիւն կրեց, որոնք զինքն առանձին թղթով Լեւոն Բ. թագաւորին ամբաստանեցին։ Ս. Ներսէս անոնց դէմ ջատագովութեան թուղթ մը գրեց նոյն թագաւորին։ Սակայն իր կաթողիկէ միութեան ունեցած անպայման սէրն ամէնէն աւելի կը փայլի, Հռոմկլա գումարուած ազգային ժողովոյն առջեւ խօսած ատենաբանութեանը մէջ, որ իբրեւ ճարտասանութեան օրինակ մինչեւ հիմայ ընթերցողներուն սիրտը կը զմայլեցընէ։ Գրեթէ քսանուերկու տարի իրեն յանձնուած հօտին եւ եկեղեցւոյն օգտին եւ բարեկարգութեանն աշխատելէն ետեւ, քառասունուհինգ տարուան վախճանեցաւ (1198)։ Լամբրոնացւոյն ձգած մատենագրութեանց մէջ նշանաւոր են՝ բաց ի վերոյիշեալ գրութիւններէն Պատարագի խորհրդոյն մեկնութիւնը եւ Ս. Գրոց զանազան գրքերուն

մեկնութիւնները։ Ունի նաեւ բազմաթիւ ուրիշ գրուածքներ, ճառեր, թղթեր եւ զանազան թարգմանութիւններ, որոնց մէջ կը փայլի իր աստուածաբանական հմտութիւնը, սրբազան ճարտարախօսութիւնն եւ հանճարեղ մտաց գիւտերը։

## 70. Ասիոյ արեւելեան եկեղեցիներուն վիճակը:

### ա. Նեստորականք։

Թէեւ Եփեսոսի ժողովոյն մէջ Նեստորականաց աղանդը դատապարտուեցաւ եւ Նեստոր աքսորուեցաւ, բայց նեստորականութիւնը բոլորովին չջնջուեցաւ։ Մանաւանդ թէ հինգերորդ դարուն մէջերը նեստորականութիւնը գլխաւորաբար Եդեսիայի աստուածաբանական դպրոցին ձեռքով եւ Թէոդորոս Մոպսուեստացւոյն գրքերովը, Միջագետք ու Ասորիք շատ ճարակեցաւ։ Յամի 459ին Նեստորականք՝ Եդեսիայէն մերժուելով, Պարսկաստան գացին. Հոն Բարծումա անուանի եպիսկոպոսը յիսուն տարիէ աւելի (435 — 489) նեստորականութեան պաշտպան ու քարոզիչ եղաւ։ Վերջապէս երբոր Բաբէոս Բ. զորն որ Բարծումա նեստորականաց աղանդին վաստըկած էր, Տիզբոնի կամ Սելեւկիայ պատրիարքական աթոռն ելաւ (498), երկրորդ տարին ժողով գումարելով Սելեւկիայի մետրապոլտական աթոռն Անտիոքի աթոռէն բոլորովին անկախ հրատարակեց, եւ ինքնիշխան Նեստորականաց եկեղեցի կամ Նուիրապետութիւն մը հաստատեց։ Ինք՝ նոյնպէս իր յաջորդները Պատրիարք կամ Կաթողիկոս տիտղոսն առին։ Անկէ ետքը նեստորականութիւնը Պարսից պետութեան օժանդակութեամբն արեւելք հսկայաքայլ սկսաւ յառաջադէմ ըլլալ. չէ թէ միայն Ասորիք, Միջագետք, ու Քաղդէաստան տիրեց, այլ նաեւ Արաբիա, Եգիպտոս, Մարաստան եւ մինչեւ Հնդկաստան տարածուեցաւ։ Մետասաներորդ դարուն մէջ՝ նեստորականութիւնն իր պայծառութեան ու ընդարձակութեան վերնակէտը հասած էր. նոյն միջոցին Նեստորականաց

պատրիարքը, 25 մետրապոլիտ ու 150 եպիսկոպոս իր իշխանութեան տակն ունէր, որոնք Ասիայի մէկ ծայրէն մինչեւ մէկալ ծայրը ցրուած էին: Սակայն ասիկայ երկայն չտեւեց. չորեքտասաներորդ դարուն վերջերն իրենց իշխանութիւնն սկսաւ կամաց կամաց նուազիլ, մէկ կողմանէ Մոնկոլներուն իրենց դէմ հանած հալածանաց եւ մէկալ կողմանէ մէջերնին ելած երկպառակութեանց պատճառաւ:

Յամի 1551ին Նեստորականաց մէջ մեծ հերձուած մ՚ելաւ: Նոյն տարին Սիմէոն պատրիարքը մեռնելով՝ քանի մը եպիսկոպոս եւ բազմաթիւ քահանայք ու վանականք իրարու հետ միաբանած Մուսուլ ժողով գումարեցին եւ Սուլաքա (կամ Սիուտ) անուամբ կրօնաւոր մը պատրիարք ընտրեցին: Եւ որովհետեւ բաց ի մեռնող պատրիարքին եղբօրորդիէն, որուն ըստ կանոնաց եւ յաջորդութեան իրաւանց կ՚իյնար պատրիարքութիւնը, ուրիշ մետրապոլիտ չկար զՍուլաքան ձեռնադրելու, անոր համար եպիսկոպոսները զինքը Հռոմ Յուլիոս Գ. Քահանայապետին խաւրեցին: Յուլիոս Գ. Քահանայապետը նորընտիր պատրիարքէն ուղղափառ հաւատոյ դաւանութիւն առնելէն ետեւ, զինքը Քաղդէացւոց կամ միացեալ ուղղափառ Նեստորականաց պատրիարք անուանեց (1553): Իրմէ կը սկսի ուղղափառ Նեստորականաց կամ Քաղդէացւոց պատրիարքներուն յաջորդութիւնը:

Շատ չանցաւ Նեստորականաց մէջ ուրիշ հերձուած մ՚ալ ելաւ: Սալմասի Սիմէոն արքեպիսկոպոսը (1575ին) Եղիա Ե. պատրիարքէն բաժնուելով, ինք զինքը Քուրտիստանի պատրիարք ընտրել տուաւ, եւ Ուրմիա քաղաքին աթոռը հաստատեց: Ասիկայ 1582ին Հռոմայ եկեղեցւոյն հետ միացաւ եւ ուղղափառ Նեստորականաց կամ Քաղդէացւոց պատրիարք եղաւ: Իրմէ սկսեալ Ուրմիա նստող պատրիարքները Սիմէոն անունն սկսան կրել. իսկ Մուսուլ նստող Նեստորական պատրիարքները՝ Եղիա անունն առին: Բայց որովհետեւ Նեստորական պատրիարքներուն Հռոմայ եկեղեցւոյ հետ միութիւնը հաստատուն ու տեւական չէր, եւ լատին քարոզիչներու ձեռքով ազգին անգին բազմա-

թիւ Նեստորականք ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դարձած էին, Իննովկենտիոս ԺԱ. Քահանայապետն անոնց համար 1681ին Տիարպէքիր քաղաքը նոր պատրիարքութիւն մը հաստատեց, որ քիչ մը ետքը վերցաւ. երբոր 1780ին Մուսուլի Եղիա ԺԱ. պատրիարքը Հռոմայ եկեղեցւոյ հպատակեցաւ։ Յամի 1827ին ամբողջ միացեալ Նեստորականաց կամ Քաղդէացւոց եկեղեցին՝ Մուսուլի պատրիարքութեան տակը դրուեցաւ, եւ թէպէտ Պիոս Ը. 1830ին պատրիարքական աթոռը Պաղտատ փոխադրեց, սակայն եւ այնպէս հիմայ միացեալ պատրիարքն երբեմն Մուսուլ ու երբեմն Ալքոշ կը նստի։ Պատրիարքին իրաւաբանութիւնն Ասիա գտնուող բովանդակ ուղղափառ Քաղդէացւոց վրայ կը տարածուի, որոնց թիւը 30—40.000 կը համարուի։ Իսկ չմիացեալ պատրիարքը Քուրտիստանի Քօչանէս քաղաքը կը նստի, որուն իրաւասութեան տակն եղող չմիացեալ Նեստորականաց թիւը 200,000ի կը հասնի։ —Նոյնպէս Հնդկաստանի Նեստորականաց (Թովմայեան քրիստոնէից) մէկ մասը 1599ին Տիամբէր գումարուած ժողովոյն մէջ Հռոմայ եկեղեցւոյ հետ միացաւ, որ ժամանակէն սկսեալ մինչեւ 1838 լատին մետրապոլիտներու տակ էին։ Նոյն տարին Գրիգոր ԺԶ. Քահանայապետը Հնդկաստանի միացեալ Նեստորականաց համար, առանձին առաքելական փոխանորդութիւն մը հաստատեց։ Հնդկաստանի միացեալ Նեստորականաց թիւը 100—150.000 է. իսկ չմիացելոց թիւը 70.000։

### բ. Միաբնեայք։

Եւտիքէսի մահուանէն ետքը՝ Ասորիք ու Միջագետք միաբնեայց աղանդին գլխաւոր պաշտպաններէն ու տարածողներէն մէկն եղաւ Յակոբ Բարադէոս կամ Ծանծաղոս (541—578), որ Եդեսիայի մետրապոլիտ ընտրուելով՝ բաժանեալ եւտիքեական կուսակցութիւններն առանձին եկեղեցական կարգաւորութեան մը միաւորեց, եւ անոր երկրորդ հիմնադիրն եղաւ։ Անկէ ետքն իր անուամբը՝ Ասորիքի ու Միջա-

վանքի միաբանեալք՝ Յովհաննէսեանք ալ կոչուեցան։ Այս միջոցին Թէոդորոս Անտիոքի պատրիարքը մեռնելով՝ Ծանծաղոս իրեն յաջորդ դրաւ Սարգիս անունով մէկը, որմէ սկսաւ Անտիոքի եւտիքական պատրիարքներուն յաջորդութիւնը։ Թէպէտ ժամանակ ժամանակ ուղղափառ եկեղեցւոյ կողմանէ փորձեր եղան՝ ասորի Եւտիքականները միաբանելու, բայց այս ամէն փորձերն ակներեւ ու տեւական արդիւնք մը չունեցան։

Երկոտասաներորդ դարուն՝ Ասորիները խաչակրութեանց պատճառաւ արեւելք եկող Լատինաց հետ յարաբերութեան մէջ մտնելով, Հռոմայ եկեղեցւոյ կողմանէ զիրենք դարձընելու փորձերն սկսան, որոնք նոյնպէս սկզբան մեծ ու նշանաւոր հետեւութիւն մը չունեցան, ինչու որ Յակոբիկեանք ան ամէն պատրիարքները՝ որոնք Հռոմայ եկեղեցւոյ հետ կը միաբանէին, աթոռէն կը ձգէին, եւ տեղը միաբնեայց աղանդին նախանձաւոր մէկը կը դնէին։ Սակայն եւ այնպէս ասդին անդին մէկ քանի քաղաքներու մէջ փոքր միացեալ ուղղափառ Յակոբիկեանց հասարակութիւններ կազմուեցան։ Լատին քարոզիչներուն շատ օգնեց երեքտասաներորդ դարուն վերջերն Եւտիքականաց մէջ ելած հերձուածը, որով Ասորւոց պատրիարքութիւնն երկուքի բաժնուեցաւ։ Աս պատրիարքներէն մէկը՝ Եւգինէոս Դ. Քահանայապետին հրաւէրն ընդունելով, 1440ին Փլորենտիայի ժողովը նուիրակ մը խաւրեց, որ Փլորենտիայի ժողովոյն վճիռներն ընդունեցաւ, եւ Եւգինէոս Դ. Քահանայապետը Յակոբիկեանց համար առանձին հաւատոյ դաւանութիւն մը շինեց։ Սակայն Ասորիներուն մեծ մասն այս միաբանութիւնը չընդունեցաւ։ Աւելի ընդհանուր ու տեւական միաբանութիւն մ'եղաւ ութեւտասներորդ դարուն վերջերը։ Յամի 1781ին Գէորգ Գ. Յակոբիկեան պատրիարքը մեռնելով, Իգնատիոս Ճիարվէ Հալէպի ուղղափառ եպիսկոպոսը, մտքը դրաւ Անտիոքի չմիացեալ պատրիարքութիւնը Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանել։ Անոր համար Հաւատոյ Տարածման Ս. Ժողովոյն հաւանութեամբը՝ Մերտին գնաց, եւ հոն քանի մը եպիսկոպոս, բազմաթիւ կղերականներ ու ժո-

ղովրդականներ Հռոմայ եկեղեցւոյ շահեցաւ: Ասոնք նոյն քաղաքը ժողով գումարելով՝ զԻգնատիոս իրենց պատրիարք ընտրեցին, եւ Հռոմայ Պիոս Զ. Քահանայապետէն խնդրեցին, որ ընտրութիւննին հաստատէ, որ 1783ին խնդիրքնին կատարեց: Սակայն նոյն միջոցին չմիացեալ Ասորիներն իրենց ուրիշ պատրիարք մ'ընտրելով, եւ տէրութիւնն ալ զանիկայ օրինաւոր պատրիարք ճանչնալով, Իգնատիոս ստիպուեցաւ Լիբանան փախչիլ, ուր 1800ին մեռաւ: Սակայն իր յաջորդները կրցան վերջապէս (1830ին) Օսմանեան տէրութենէն առանձին հրովարտակ մ'առնուլ, որով չմիացեալ պատրիարքէն անկախ ըլլալնին ճանչցուեցաւ: — Թէպէտ վերջի ժամանակները միացեալ ուղղափառ Ասորիք, չմիացելոց պատրիարքէն շատ նեղութիւն կրեցին, սակայն եւ այնպէս անոնց թիւն երթալով աճելու վրայ է, եւ հիմայ միացեալ ուղղափառ ասորի պատրիարքին տակ, որ 1854էն վեր Մերտին կը նստի, Ասորիք ու Միջագետք գրեթէ 30.000 ուղղափառ Ասորիք կան. իսկ չմիացելոց թիւը 160.000 է:

Ասկէ զատ կը գտնուին միաբնեայ Եւտիքականներ Եգիպտոս (Խըպտիք) եւ Հապէշստան. Եգիպտոս՝ միաբնեայց աղանդը մտաւ հինգերորդ դարուն Դիոսկորոս Աղեքսանդրացւոյն ձեռքով. իսկ Հապէշստան եօթներորդ դարուն վերջերը: Հռոմայ եկեղեցին զանոնք ալ իրեն հետ միաբանելու փորձեր ըրաւ. ամէնէն աւելի յաջողութիւն գտաւ Հապէշստան, ուր Մահմետականաց դէմ՝ Բորդուգալցւոց տեղացիներուն ըրած օգնութիւնը, երկու եկեղեցիներուն մէջ մերձաւորութիւն մը յառաջ բերած էր: Գլխաւորաբար Յիսուսեանց ջանքովը Հապէշստանի կայսրը՝ Աղեքսանդրիայի եւտիքական պատրիարքէն ինք զինքն անկախ հրատարակելէն ետեւ, մեծամեծներովն ու ժողովրդովն հռոմէական ուղղափառ հաւատքն ընդունեցաւ (1626): Սակայն իրեն յաջորդը Սուլդան Սէխէտ նոյն ընթացքը չբռնեց, եւ 1632ին հրովարտակ մը հանելով, հին ազգային հաւատքը դարձեալ իբրեւ տէրութեան կրօն հրատարակել տուաւ: Յիսուսեանք Հապէշստանէն մերժուեցան, եւ Հռոմայ եկեղեցւոյ հետ

ամէն յառաջդիմութիւն կորեցաւ։ Բայց այս վերջին ժամանակները զանազան կրօններու քարոզչաց ձեռքով, հռոմէական ուղղափառ հաւատքը դարձեալ Հապէշստան մուտք գտաւ, եւ հիմայ հոն ուղղափառաց փոքր հասարակութիւն մը կը գտնուի, որ երթալով աճելու վրայ է։ Թէ ասոնք եւ թէ Եգիպտոս գտնուող միացեալ Խըպտիները (իբր 10.000 հոգի), առաքելական փոխանորդի մը տակ են, որ Գահիրէ կը նստի։

### գ. Մելքիթք։

Անտիոքի, Երուսաղէմի բայց գլխաւորաբար Աղեքսանդրիայի պատրիարքութեան մէջ՝ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն կողմն եղող Յոյները, իրենց հակառակորդներէն Մելքիթ (Մելքի, թագաւորական) անուանուեցան, ինչու որ Քաղկեդոնի Ս. Ժողովը՝ ուր միաբնեայց մոլորութիւնը դատապարտուեցաւ, Մարկիանոս կայսեր ձեռնտուութեամբը գումարուած էր, եւ նոյն կայսրը ժողովոյն ընդունելութեանը շատ նախանձախնդիր էր։ Ասոնք Յունաց եկեղեցւոյն հետ միացեալ մնացին. եւ երբոր Կոստանդնուպոլսոյ Յունաց եկեղեցին՝ արեւմտեան կաթողիկէ Հռոմայ եկեղեցիէն բաժնուեցաւ, ասոնք ալ նոյն հերձուածոյն հետեւեցան եւ մինչեւ ութեւտասներորդ դար նոյն վիճակի մէջ մնացին։ Յամի 1720ին Աթանաս Գ. Անտիոքի պատրիարքը Հռոմայ եկեղեցւոյ հետ միացաւ, եւ իրմով սկսաւ արեւելեան ուղղափառ միացեալ Յունաց (Մելքիթներու) պատրիարքութիւնը։ Իրենց թիւն Ասորիք, Պաղեստին ու Եգիպտոս 40—50.000 հոգւոյ կը հասնի։ Պատրիարքը Լիբանան կը նստի։

### դ. Մարոնիտք։

Մարոնիտ անունը թէ առանձին ժողովուրդ եւ թէ կրօնական աղանդ մը կը նշանակէ։ Ուստի եղած ըլլալը չի գիտցուիր, սակայն հաւանական կ՚երեւայ

որ Յովհաննէս Մարոն անուն սուրբ կրօնաւորէ մը յառաջ եկած ըլլայ, որ եօթներորդ դարուն պատրիարքը եղաւ եւ Լիբանանու լերան չորս կողմը բնակող ժողովրդոց մէջ մեծ անուն հանեց: Մարոնիդք՝ որ ինչպէս հաւանական կ'երեւայ միակամեայց աղանդին կը հետեւէին, ըստ մասին երկոտասաներորդ (1182) եւ ըստ մասին վեշտասաներորդ դարուն՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանեցան: Եւ որպէս զի իրենց կատարեալ միութեան ցոյց մը տան, 1736ին քահանայապետական հրեշտակի մը դահերէցութեամբը գումարուած ազգային ժողովոյ մը մէջ, Տրիտենդեան սիւնհոդոսին որոշումներն ալ ընդունեցան: Մարոնիդք (որոնց թիւը 150—200,000 կը կարծուի) առանձին պատրիարքի մը տակ են, եւ Հռոմայ եկեղեցւոյ արտաքոյ կարգի յարեալ:

## 71. *Այս ժամանակի շրջանին մոլորութիւններն ու հերձուածները:*

1. *Մանիքեցիք կամ Քաթարեանք:* Ասոնք ԺԱ. դարուն սկիզբներն Եւրոպայի արեւմտեան կողմն երեւցան. հաւանական է՝ որ նախ վերին Իտալիա երեւան ելած ըլլան, ուստի ետքէն Ալպեան լերանց անդին դին, հարաւային Գաղղիա, Գերմանիա եւ Անգղիա տարածուեցան, եւ մեծ աւեր ու ապականութիւն ըրին: Ասոնք Երրորդութիւնը կ'ուրանային, եւ մկրտութեան ու Ս. Հաղորդութեան խորհուրդներուն զօրութիւն մ'ունենալը չէին ընդուներ: Գերմանիա ու Իտալիա Քաթարեան (այսինքն Մաքրակրօնք) կը կոչուէին, ինչու որ կը հաստատէին թէ իրենք են Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին կացուցանողը, եւ թէ միայն իրենց եկեղեցւոյն մէջ կրնայ մարդ փրկուիլ: Ուրիշ վարդապետութեանց մէջ եւ բարուց կողմանէ հին Մանիքեցւոց շատ նմանութիւն ունէին (տես Համար 17): Երկուորականութեան պաշտպան ըլլալով՝ աշխարհքիս ստեղծումը կամ գոնէ այժմեան յօրինուածութիւնը սատանայէն կ'ընծայէին, ամուսնութեան ու շնչաւոր կենդանեաց միսն ուտելու

հրաման չէին տար։ Ղուկիոս Գ. Քահանայապետը 1184ին Վերոնա գումարած ժողովի մը մէջ, Մանիքեցւոց վարդապետութիւնը դատապարտեց. սակայն առիկայ բաւական չըլլալով՝ հարկ եղաւ որ ետքէն Իննովկենտիոս Գ. ալ իրենց դէմ խիստ հրամաններ հանէ։

2. Վալդէական՝ (որ Լիոնի աղքատք ալ կը կոչուին), իրենց անունը Պետրոս Վալդոյ Լիոնցի հարուստ մարդէ մը առած են, որ 1170ին ստացուածքն աղքատաց բաժնելով, անոնց հետ հասարակաց կեանք մը հաստատեց, եւ իբրեւ վարդապետ անոնց կը մեկնէր աւետարանական կատարելութեան վրայ ունեցած կարծիքները, ինչպէս որ ինք Ս. Գիրքը կարդալով ըմբռնած էր։ Երբոր այս աղանդը Գաղղիա սկսաւ տարածուիլ, Լիոնի Յովհաննէս եպիսկոպոսը Վալդոյի քարոզելն արգելեց։ Սակայն եւ այնպէս մոլեռանդ նախանձաւորութեամբ կրցաւ հարաւային Գաղղիա, Իտալիա եւ քանի մը ուրիշ տեղեր հասարակութիւններ կազմել։

Վալդեանց վարդապետութեան բովանդակութիւնը, որուն ընդհանրապէս միութիւն կը պակսի, կամաց կամաց կերպարանափոխեցաւ, որովհետեւ իսկզբան ուղղափառ եկեղեցիէն բաժնուելու միտք չունէին, այլ միայն կ'ուզէին զանիկայ նորոգել։ Իրենց վարդապետութեան գլխաւոր մասերն ասոնք են. Հռոմայ եկեղեցին Սեղբեստրոս Ա. Քահանայապետէն սկսեալ, Քրիստոսի ճշմարիտ եկեղեցին ըլլալէն դադրած է. Ս. Գիրքը՝ քրիստոնէական հաւատոյ միակ աղբիւրն է. խորհուրդներն ու պատարագը մերժելի են, նոյնպէս ընդունելի չեն աստուածային պաշտամանց մէջ արարողութիւնները, քաւարանը, քահանայից անկնութիւնը, Սրբոց յարգութիւն ընելն ու պահքը։ Դարձեալ կը հաստատէին թէ եկեղեցին ու անոր առաջնորդները, ժամանակաւոր ինչք չեն կրնար ստանալ։ Այս աղանդին եկեղեցւոյ միութենէն սակաւ առ սակաւ բաժնուիլը, իրեն երկար ժամանակ տեւելուն շատ օգնեց։ Ալբիգեանց արիւնէն անհետ եղած ատեն՝ Վալդեանք բազմութեամբ ասդին անդին դեռ կը գտնուէին։

3. *Ալբիգեանք*՝ իրենց անունը Լանկատոք գաւառին Ալպի քաղաքէն առած են, որ իրենց գլխաւոր կեդրոնն էր։ Իրենց վարդապետութիւնք Գնոստիկեանց ու Մանիքեցւոց մոլորութեանցը խառնուրդ մըն է։ Աշխարհքիս արարչագործութիւնը սատանային կ'ընծայէին, եւ Հին Կտակարանը, եկեղեցին, խորհրդները ու արտաքին պաշտամունքը կը մերժէին։ Բարոյական վարդապետութիւննին խիստ չափազանց էր, մինչեւ որ ամէն աստուածային ու մարդկային օրէնք կ'անգոսնէին։ Իննովկենտիոս Գ. ամէն խաղաղական միջոց ի գործ դրաւ զիրենք իրենց մոլորութենէն ետ կեցնելու, բայց անօգուտ։ Իրենց ցուցուած ներողամտութիւնը զիրենք աւելի եւս կը յանդգնեցնէր։ Ուստի թէ եկեղեցին եւ թէ տէրութիւնն՝ անոնց չափազանց յարձակմունքներէն ազատելու համար, 1209ին իրենց դէմ խաչակիր զօրք հանուեցաւ, եւ 20 տարուան պատերազմէ ետքը վերջապէս ընկճեցան. Մնացորդներն ալ այս շրջանին հաստատուած Հաւատոյ Քննութեան ատեանը ջնջեց։

Հետապօտութիւնք կամ Հաւատաքննութեան ատեանք՝ եպիսկոպոսէն դրուած Հաւատոյ ատեան մըն էր, որն որ հերետիկոսութեան համար ամբաստանեալները կը քննէր, եւ յանցաւորութեամբ անոր մէջ Տեղացիներն աշխարհական իշխանութեան ձեռքը կը յանձնէր, որպէս զի ըստ օրինաց պատժուին։ Միջին դարու մէջ՝ եկեղեցին ու տէրութիւնն իրարու հետ այնպէս սերտիւ կապուած էին, որ եկեղեցւոյ վրայ եղած յարձակումն ի հարկէ տէրութեան ալ վնասը կը բերէր։ Գրիգոր Թ. Քահանայապետին ատենն Հետապօտութեան պաշտօնն եպիսկոպոսներէն Դոմինիկեանց կրօնից անցաւ, որոնց կոչումն էր ճշմարիտ կրօնը քարոզել։ Բայց շատ անգամ հարկ եղաւ, որ Քահանայապետք Դոմինիկեանց ի գործ դրած խստութեանը դէմ ելլեն։ Հաւատաքննութիւնք գլխաւորապէս մուտք գտան Սպանիա եւ Իտալիա - Գերմանիա ալ մտաւ, բայց հաստատուն ոտնկոխ չգտաւ։ Սպանիոյ Հետապօտութեան ատեանն աւելի աշխարհական քան թէ եկեղեցական նկարագիր ունէր։

4. *Վիքլեֆեանք*։ Յովհաննէս Վիքլեֆ 1324ին Եորք կոմսութեան գիւղի մը մէջ ծնաւ, եւ ուսումնառութեան ընթացքը Օքսֆորտի համալսարանը կատարելէն ետեւ, քահանայական վիճակին ընծայուեցաւ։ Համալ-

նակակից եւ իբր ժամանակակից պատմագիրները միաբան կը վկայեն իր սրամտութեանն ու անագխուա վարուցը։ Քանի մը տարի ետքն Օքսֆըրտի Համալսարանին ուսուցիչ դրուեցաւ, որ միջոցին ըրած դասախօսութեանցը մէջ՝ ժամանակին անկարգութեանցը դէմ սկսաւ խօսիլ, ի մասնաւորի վանականաց ու բարձրաստիճան եկեղեցականաց պակասութիւնները վեր կը զարնէր։ Վերջապէս վանականք Վիկլեփին դէմ Գրիգոր ԺԱ. Քահանայապետին ամբաստանութեան թուղթ մը տուին, որուն մէջ իր վրայ հերետիկոսութեան բիծ կը դնէին։ Քահանայապետը հրամայեց որ Վիկլեփ քննուի. բայց տիկայ հետեւութիւն մը չունեցաւ, որովհետեւ թագաւորական արքունիքը զինքը կը պաշտպանէր. միայն հրաման ընդունեցաւ որ անկէ ետքը լուռ կենայ։ Վիկլեփ ասկէ քաջալերուելով՝ աւելի եւս ազատական սկզբունքներով ասպարէզն ելաւ։ Եկեղեցւոյ հրահանգացը դէմ խօսիլը բաւական չհամարելով, սկսաւ եկեղեցւոյ հաւատոյ վարդապետութեանց ի մասնաւորի գոյացափոխութեան դէմ հակառակիլ։ Ասոր վրայ նոյն իսկ Համալսարանը, որ մինչեւ ան ատեն Վիկլեփի պաշտպան կը կենար, զինքը մերժեց, եւ քիչ մը ետքը Լոնտոն գումարուած սինոդոս մը իր գրուածքներէն քաղուած 24 նախադասութիւն իբրեւ հերետիկոսական դատապարտեց։ Վիկլեփ ուսուցչութեան պաշտօնէն ձգուեցաւ, եւ ստիպուեցաւ ինք զինքը մեծաւորացը վճռոյն հպատակեցընել, հաւատոյ դաւանութիւն մը կարդալով։ Անկէ ետքը Լուգդերֆըրդ իր ժողովրդապետութեան տեղը քաշուեցաւ, եւ կենացը մնացած օրերը հոն հանդարտութեամբ անցընելով 1384ին 60 տարեկան մեռաւ։

Իր մոլորութեանց գլխաւոր աղբիւրն է, իր Եռախօսութիւն ըսուած գիրքը, որուն մէջ եկեղեցւոյ դէմ ունեցած հակառակութիւնը կարգաւոր յօրինուածութեան մը մէջ խոթած է։ Ս. Գիրքը՝ քրիստոնէական հաւատոյ ճանաչման իբրեւ միակ աղբիւր կը դնէ. ասկէ զատ գոյացափոխութիւնը, խորհրդական խոստովանութիւնը, ներողութիւնը, վերջին օծումը, Սրբոց

յարգութիւնը, քահանայից անկնութիւնն եւ վանական կեանքը չ'ընդունիր: Կը վարդապետէր նաեւ, որ աշխարհական կամ եկեղեցական առաջնորդի մը հնազանդելու պարտք չկայ, երբ գիտցուի որ մահացու մեղաց մէջ է:

Եկեղեցւոյ պաշտօնեայ կը համարէր միայն քահանաները ու սարկաւագները. իսկ եպիսկոպոսութեանն ու քահանայապետութեան համար մարդկային գիւտեր են կ'ըսէր: Եկեղեցւոյ ստացուածք ունենալն ալ չէր հաւնէր, եւ կ'ըսէր թէ աշխարհական իշխանք պէտք են զանոնք յափշտակել:

Վիկլեֆ շատ հետեւողներ ունեցաւ, որոնք Վիկլեֆեանք կամ Լոլհարդեանք կոչուեցան: Ասոնք անոր մտացը համաձայն սկսան գործել, եւ գլխաւորաբար իրենց ան վարդապետութեանը պատճառաւ, որ եկեղեցւոյ ինչքերը պէտք է յափշտակել, մեծ ընդունելութիւն գտան: Երբոր զիրենք հպատակեցընելու համար եկեղեցւոյ ամէն միջոցները բաւական չեղան, ան ատեն Հենրիկոս Դ. Անգղիայի թագաւորն ու խորհրդանոցն իրենց դէմ ելան, եւ վերջապէս պատերազմաւ զիրենք նուաճեցին: Վիկլեֆին վարդապետութիւնը նախ Հռոմ (1413ին) եւ ետքէն Կոստանդիա (1414ին) դատապարտուեցաւ:

5. *Հուսեանք*: Վիկլեֆին վերոյիշեալ եռախօսութիւն անուն գիրքը՝ Աքսֆորտէն Բրակ գալով, հոն աղէկ ընդունելութիւն գտաւ: Գլխաւորաբար ատ գրքին շատ զարմնուեցաւ թագուհւոյն խոստովանահայրը՝ Յովհաննէս Հուս, որ Պոհեմիայի Հուսինեց քաղաքը ծնած եւ 1412էն վեր Բրակի համալսարանին աստուածաբանութեան ուսուցիչ էր: Ինք բարուց կողմանէ անարատ, պերճ ճարտարախօս ու տրամաբանութեան մէջ հմուտ անձ մըն էր: Ամենուն կը յանձնէր՝ որ Վիկլեֆին գրքերը կարդան, եւ ինք եռախօսութիւնը բոհեմերէնի թարգմանեց: Մի եւ նոյն ժամանակ սկսաւ Բրակի եկեղեցականաց դէմ գրել, եւ խառնախանճ ամբոխն անոնց դէմ գրգռել: Յերոնիմոս Ֆաուլֆիշ անունով ազնուականը, որ Բրակ ազատ արուեստից ուսուցիչ էր, եւ աշխու-

նեաց մէջ մեծ ազդեցութիւն ունէր, Հուսի հետ միանալով, երկուքը մէկտեղ սկսան գործել։ Բրակի արքեպիսկոպոսը պարտաւորեցաւ իրենց դէմ ելլել. իրենց հերետիկոսական կարծիքներով լի գրքերը կարդալն արգելեց, եւ հրամայեց որ այրելու համար իր ձեռքը յանձնեն։ Սակայն շատ օգուտ մը չեղաւ, քանզի որ Վենկեսլաւոս վատ եւ թուլամորթ թագաւորը, անոնց պաշտպան կը կենար։ Նոյն իսկ Աղեքսանդր Ե. Քահանայապետին կոնդակը (1409), որ այս նորութիւնները կը դատապարտէր, չկրցաւ վրդովեալ խաղաղութիւնը վերստին հաստատել։ Հուս եւ իր բարեկամը Յերոնիմոս՝ թագաւորին ապաւինած, աւելի եւս յանդգնութեամբ սկսան գործել։ Վերջինը համարձակեցաւ մինչեւ բռնութեան ալ ձեռք զարնել, եւ երկու կրօնաւոր բանտ դրաւ, ուրիշ մ'ալ Մոլդաւ գետը խեղդել տուաւ։

Այս միջոցին Հուսի վրայ գանգատները Հռոմ կը յաճախէին։ Յովհաննէս ԻԳ. Քահանայապետը խնդիրը քննելու համար մասնաժողով մը դրաւ, որն որ թէ զՀուս եւ թէ զՅերոնիմոս իբրեւ հերետիկոս դատապարտեց (1413)։ Միանգամայն որոշուեցաւ որ իրենց բնակած տեղերն արգելքի տակ իյնան։ Բրակի արքեպիսկոպոսը՝ դարձեալ հաշտութեան փորձ մ'ըրաւ, բայց երբոր ասիկայ ալ օգուտ չունեցաւ, ան ատեն Քահանայապետին վճիռն ի գործ դրաւ, եւ Բրակի վրայ՝ թագաւորական պալատը դուրս առնելով, արգելք դրաւ։ Ասոր վրայ Հուս քաղաքէն ելաւ եւ գեղերը պտտելով սկսաւ Քահանայապետին ու կարդինալաց դէմ քարոզել։ Իր միտքն էր ազգային եկեղեցի մը հաստատել։ Շատ գրքեր շարադրեց, որոնց մէջ դաւանացեալ սուրբ իր մոլար սկզբունքներն յառաջ կը բերէ։ Այս գրուածոց՝ի մասնաւորի Ի վերայ Եկեղեցւոյ անուն գրքին մէջ բովանդակուած մոլորութիւնները հետեւեալներն են։ Եկեղեցին խորհրդական մարմին մըն է, որուն գլուխը Քրիստոս է, իսկ անդամները նախասահմանեալներն են. անարգեալք եկեղեցւոյ չեն վերաբերիր, թէեւ անոր պաշտամանցը մասնակից ըլլան։ Եկեղեցւոյ գլուխը Պետրոս ա-

առքեալը չէ Հայպա Քրիստոս միայն, ինչու որ եկեղեցին անտեսանելի ըլլալով, երեւելի գլուխ հարկաւորութիւն չունի. Պետրոսի տրուած բանալեաց իշխանութիւնը, միայն հոգեւոր իշխանութիւն մըն է ուսուցանելու, պատժելու եւ արձակելու: Եկեղեցւոյ հնազանդելու պարտքը՝ քահանայից գիտուն է, եւ Ս. Գրոց բացայայտ վկայութեան հակառակ: Վերջապէս մեղաց թողութեան համար զղջումը միայն բաւական է:

Յամի 1414ին Հուս Բրակ դարձաւ եւ անկէ Կոստանդիայի ժողովը գնաց: Թէ ինչ պատճառէ շարժեալ հոն եկաւ, պատմութիւնն որոշ չ'աւանդեր, սակայն կ'երեւայ որ Վենկեսլաւոսին եղբօրը՝ Սիկիսմունտոս կայսեր յորդորելովն եղած ըլլայ, որ միանգամայն իրեն ապահովութեան թուղթ տուաւ: Սակայն եւ այնպէս Կոստանդիա հասնելէն ետքը, զինքը զգուշութեամբ պահեցին մինչեւ որ ժողովն իր վճիռը տայ: Հրապարակական նիստի մը մէջ՝ իր գրուածքներէն քաղուած քառասուն նախադասութիւն իբրեւ մոլորական առջեւը դրուեցան: Հուս այս նախադասութիւններէն շատերն ընդունեցաւ, վրան մեկնութիւններ աւելցնելով. մէկ քանի նախադասութեանց համար ալ ըսաւ, որ իր գրքերէն հաւատարմութեամբ քաղուած չեն; եւ վերջապէս մէկ քանիին ալ բոլորովին մերժեց: Բանակցութիւնը լմննալէն ետքը, զինքը յորդորեցին որ եկեղեցւոյ հնազանդի. բայց Հուս պատասխան տուաւ, որ մոլորութիւն ունենալը չէր գիտեր, ինչու որ չէին կրնար իրեն Ս. Գրքէն ապացուցանել: Երկրորդ օրը յետոյ կոչման ձեւ մը առջեւը դրուեցաւ, բայց ինք իր միտքը վրայ յամառեալ մնաց, եւ զանիկայ բացարձակապէս չուզեց ընդունիլ: Ան ատեն իբրեւ հերետիկոս դատապարտուեցաւ եւ քահանայական պատուէն մերկացուելով կայսեր ձեռքը յանձնուեցաւ: Կայսրն ալ զինքը Լուդովիկոս Փալցի կայսրընտրին յանձնեց, հրամայելով որ հերետիկոսաց համար սահմանուած պատիժը վրան կատարէ. Այսպէս Հուս (1415 Յուլիս 6ին) խարուկի վրայ մեռաւ: Այս կերպ պատժապարտութիւնը ոչ թէ եկեղեցւոյ, հապա ժամանակին դատաստանական օրի-

նաց յանցանք կրնայ սեպուիլ։ Հետեւեալ տարին նոյն կերպով մեռաւ նաեւ Հուսին Յերոնիմոս բարեկամը։

Հուսին Կոստանդիա եղած ատեն՝ Բրակ Յովհաննէս Միս անունով մէկն ելաւ, որ սկսաւ վարդապետել թէ Ս. Հաղորդութիւնն ամբողջ ընդունելու համար՝ բաժակին ալ հարկաւոր է, եւ Բրակ՝ երեք ժողովրդապետս համոզեց, որ Հաղորդութիւնն երկու տեսակաւ տան։ Հուսին կուսակիցները՝ այս սովորութիւնն ընդունեցան, եւ բաժակին կիրառութիւնն անով նշանաւորութիւն ստացաւ, որ իրենց կուսակցութեան իբրեւ միութեան արտաքին նշան մը համարուեցաւ։

Հուսին մահուան լուրն իրեն հետեւողներուն արտաքոյ կարգի զայրացուց, եւ իրենց թշնամիները հալածելու գրգռեց։ Ապստամբութեան հողին մէջերնին աւելի եւս արծարծեցաւ, երբ որ Յովհաննէս Ցիսկա անունով ասպետ մը իրենց գլուխն անցնելով, 40.000 Հուսեանք Հարատախդին (որ ետքէն Թաբոր կոչուեցաւ) լերան վրայ ժողվեց, եւ Բրակ մտնելով ժողովուրդն ոտք հանեց։ Խռովութիւնն այնչափ սաստկացաւ, որ Հուսեանք խորհրդարանը մտան եւ խորհրդականներէն 13 հոգի պատուհաններէն վար նետեցին, ուր ռամիկ ժողովուրդը զիրենք սուիններով մեռցուց։ Վենկեսլաւոսին մահը՝ որ անկէ քիչ մը ետքը պատահեցաւ, Հուսեանց առիթ տուաւ կերպապէս տէրութեան դէմ ապստամբելու, ինչու որ թագաւորութիւնը Վենկեսլաւոսին եղբօրը Սիկիզմունտոսին կ'իյնար, բայց Հուսեանք զինքը չուզեցին ընդունիլ։ Անկէ երկարատեւ ու արիւնահեղ պատերազմ մ'ելաւ, որուն մէջ Հուսեանք՝ Ցիսկային առաջնորդութեամբը յաջողութիւն գտան եւ ուղղափառաց դէմ խիստ անգթութիւններ ըրին. ամբողջ քաղաքներ ու գեղեր սրոյ ու հրոյ ճարակ եղան։

Ցիսկային մահուանէն ետքը՝ Հուսեանք երկու կողմնակցութեան բաժնուեցան, այսինքն Քալիքստեանք կամ Ութրաքուիստականք ու Թաբորեանք։ Վերջինները կը մերժէին ան ամէն բան՝ զորն որ Քրիստոս ու առաքեալք

բացայայտ չէն պատուիրած։ Այս երկու կուսակցութիւններն իրարու հակառակորդ էին։ Բաժակեանք՝ Բասիլեայի ժողովոյն մէջ (1431) Հռոմայ եկեղեցւոյ հետ միացան, այն պայմանաւ որ երկու տեսակաւ հաղորդուիլն իրենց թոյլ տրուի։ Եկեղեցին զիջաւ իրենց կամացը, բայց քահանայից պատուիրեց որ ժողովրդեան սորվեցընեն, որ Հաղորդութիւնը թէ մէկ ու թէ երկու տեսակաւ ընդունիլն օրինաւոր է։ Իսկ Թաբորեանք ամենեւին յանձն չառին միանալ ուղղափառ եկեղեցւոյ հետ, բայց 1434ին Պէօմիշպրօտ քաղքին քով արիւնահեղ ճակատի մը մէջ Բաժակեաններէն յաղթուելով ընկճեցան։ Ասոնց մնացորդներէն ելան ետքէն Բոհեմիացի կամ Մօրաւիացի Եղբարք՝ ըսուած աղանդաւորները։ Ասոնք չէ թէ միայն Հաղորդութեան խորհուրդն երկու տեսակաւ ընդունելու վրայ հաստատ մնացին, այլ նաեւ դաւանափոխութիւնն ու եկեղեցւոյ ուրիշ մէկ քանի էական վարդապետութիւնները մերժեցին։

**72.** *Այս ժամանակի շրջանին գիտնական վիճակը:*

Եկեղեցին միշտ հոգ տարած է մշակելու եւ ծաղկեցընելու գիտութիւնը, որ քրիստոնէական կրօնին հետ սերտ կապակցութեան մէջ է։ Հազիւ թէ արեւմուտք քրիստոնէութիւնն ընդունեցաւ, անմիջապէս եկեղեցւոյ հովանաւորութեան տակ՝ գլխաւորաբար մայր եկեղեցիներուն ու վանքերուն քով, անուանի դպրոցներ հաստատուեցան։ Կարոլինգեանց ժամանակն արդէն այս դպրոցներէն ելած հռչակաւոր գիտուններ կային։

Բայց տասներորդ դարուն պատերազմական շփոթութեանց մէջ՝ գիտութեան փափուկ տունկը չէր կրնար բարգաւաճիլ, անոր համար նոյն միջոցին միայն վանքերու մէջ գիտութեանց խնամք կը տարուէր։ Սակայն Գրիգոր Է. Քահանայապետին ժամանակ՝ երբոր կրօնական կեանքը նոր զօրութիւն առաւ, ան առեն նաեւ ուսումնականութեան հոգին արծարծեցաւ։ Չէ թէ միայն Քահանայապետք՝ այլ նաեւ հզօր իշխանք, ինչպէս Լուդովիկոս Է. Գաղղիայի թագաւո-

րը, Փրիդերիկոս Ա. ու Բ. Գերմանիայի կայսրները, Հենրիկոս Ա. Անգղիայի թագաւորը, գիտութեան փափաքող ու պաշտպան էին, եւ գիտնական անձինքներն եկեղեցական ու աշխարհական պատիւներու կը հասցընէին: Երկոտասաներորդ դարուն մէջ՝ վանքերու եւ մայր եկեղեցիներու դպրոցներէն յառաջ եկան Համալսարանները, որ Միջին դարու կրթութեան հրաշակերտ օթարաններն են, եւ անոնց վախճանն էր մինչեւ ան ատեն միայն եկեղեցականաց սեպհական եղող գիտութիւնը, ամենուն հասարակաց ստացուածք ընել: Եւրոպա վաթսունի չափ այսպիսի համալսարաններ կային, որոնց մէջ անուանի էին՝ Բրակի (1348), Վիեննայի (1365), Հայտէլպէրկի (1386) ու Լայբցիկի (1409) համալսարանները: Այս ուսումնարանները յաճախող երիտասարդաց թիւը անհաւատալի կ'երեւայ. Օքսֆորդի համալսարանը (շուրջ 1340 ին) 30.000 ուսանող, իսկ Բրակի համալսարանը (1408 ին) 36.000 ուսանող ու 700 ուսուցիչ ունէր: Դար մը ետքը Բարիզի համալսարանը 20.000 աշակերտ ունէր: Ընդհանրապէս ամէն քաղաքաց համալսարաններուն դասաւորութեան սրահները պզտիկ կու գային, որուն ապացոյց է նաեւ ետեւէ ետեւ նորանոր դպրոցներուն կանգնուիլը: Այս դպրոցները, որոնք ժողովրդեան ամէն կարգի անձանց վստահութիւնը կը վայելէին, եկեղեցիէն յառաջ եկած են: Քահանայք՝ ըստ մեծի մասին կրօնաւորք էին ան երեւելի ուսուցիչները, որոնք Պոլոնիա, Բաւիա ու Բարիզ հազարաւոր ուսումնատենչ երիտասարդներ իրենց ոտքը բերած էին: Սակայն չի կրնար ուրացուիլ՝ որ համալսարանները, մեծամեծ չարեաց ալ պատճառ եղան: Անոնց ծաղկելովն ու պայծառանալովը՝ մայր եկեղեցիներու եւ վանքերու դպրոցներն ինկան, ինչու որ անոնց ուսուցիչները բարձրագոյն վարժոցներուն ուսուցչացը հետ չէին կրնար մրցիլ: Ասով իրենց մէջ ագիտութիւն ու բարուց ապականութիւն մտաւ: Նոյնպէս համալսարաններուն մէջ անսանձ ազատութեան վայելմունքը, շատ երիտասարդաց բարոյական ապականութեան պատճառ եղաւ:

Աստուածաբանութիւնը՝ կանոնական իրաւունքն ալ մէկտեղ առեալ ; Միջին դարու մատենագրութեան գլխաւոր առարկան եղած էր, այնպէս որ այս միջոցիս ի լոյս ընծայուած գրուածոց երեքին երկուքն այս նիւթիս վրայ են։ Աստուածաբանութիւնը՝ որ մինչեւ երկոտասաներորդ դար քրիստոնէական վարդապետութիւններն առանց յօրինաւոր կարգի մը պարզապէս աստուածաբանութեան աղբիւրներէն յառաջ կը բերէր, այս միջոցին Դպրոցական (այսինքն գիտնական, ուսական) ըսուած ոճով նոր կերպարանաւորութիւն մը առաւ։ Անիկայ եկեղեցւոյ վարդապետութիւնն իբրեւ անտարակուսելի ճշմարտութիւն ենթադրելէն ետքը, կը ջանար մտօք անոնց թափանցել, անոնց որպիսութիւնը կամ մտաց ընծայելի ըլլալը ցուցընել, որով բնականապէս յայտնի ու ճիշդ գաղափարներ ու սահմաններ երեւան կ՚ելլէին։ Դպրոցական աստուածաբանութեան վախճանն էր, ցուցընել թէ քրիստոնէական յայտնեալ վարդապետութիւններն իրարու ու մարդկային մտաց հակառակ չեն, ուստի եւ ներքին պատճառներու համար անոնց հաւատք ընծայելու է։ Այս վախճանիս համար կը գործածէին Արիստոտէլի փիլիսոփայութեան ձեւը կամ ոճը, եւ ոչ թէ բովանդակութիւնը։ Դպրոցականաց մէջ իսկզբան երեւելի եղան Բենեդիկտեան կրօնէն երկու անուանի գիտնական անձինք, այսինքն Լանֆրանք Բաւիացին, որ ետքէն Քանթըրպըրիի արքեպիսկոպոս եղաւ եւ Բերենգարի դէմ (տես Հ. 51) Ս. Հաղորդութեան վրայ գիրք մը շարադրեց, եւ իր աշակերտն ու եպիսկոպոսական աթոռոյն յաջորդը՝ Ս. Անսելմոս։ Ասոնցմէ ետքը մեծ գործունէութիւն ցուցուց Բարիզի եպիսկոպոսը Պետրոս Լոմբարդոս (Վճռոց վարդապետը), իր Չորս գիրք վճռոց ըսուած անուանի գործքովը, որ 300 տարի դպրոցներու մէջ կը գործածուէր։ Նոյնպէս մեծ անուն հանեցին Դոմինիկեանց կրօնէն Մեծն Ալպերտոս Շուաբիացին, Բարիզի ու Պոլոնիայի համալսարաններուն աստուածաբանութեան ուսուցիչը, եւ իր հռչակաւոր աշակերտը՝ Ս. Թովմաս Ագուինացին, որ Ս. Աւգոստինոսէն ետքն ամէնէն մեծ փիլիսոփայական հանճարն

է, եւ եկեղեցւոյ առջեւը խիստ արդիւնաւոր։ Վերջապէս Փրանկիսկեանց կարգէն Աղեքսանդր Հալէս, Բարիզի աստուածաբանութեան ուսուցիչն եւ իր աշակերտը Ս. Բոնաւենդուրա։

Դպրոցականութեան հետ մէկտեղ կը ծաղկէր խորհրդական ըսուած աստուածաբանութիւնը, որ քրիստոնէական վարդապետութեանց այնչափ մտաց սրութեամբ թափանցելու ետեւէ չէր ըլլար, որչափ զանոնք սրտով ընդգրկել եւ գործական կենաց մերձեցընելու կը ջանար։ Այս ուղղութեան հետեւող երեւելի անձինքներն են՝ Ս. Բեռնարդոս որ շատ անուանի է խորին կրօնական ոգւովն ու պերճ ճարտասանութեամբը. Հուգոն Ս. Վիկտորեան,(†1141), Յովհաննէս Տաուլէր (†1361) Դոմինիկեանց կրօնէն, որ Կողոնիա ու Շդրասպուրկ խորհիմաց եւ մեծ ազդեցութիւն ունեցող քարոզիչ մըն էր. դարձեալ Գերսոն, Հենրիկոս Սուզոյ (†1365) ու Թովմաս Գեմբացի կանոնիկոսը (†1471), որ Նմանութիւն Քրիստոսի անուն անզուգական գրքոյկը շարադրած է։

Վերոյիշեալ անձինքներուն մէկ քանիին վարուց պատմութիւնը հոս կը գտնենք, ինչու որ իբրեւ եկեղեցւոյ սքանչելի զարդերն առ հասարակ կը մեծարուին, եւ Հռոմայ Գահը զիրենք եկեղեցւոյ վարդապետաց կարգը դասած է։

1. *Ս. Անսելմոս*՝ Քանթըրպըրիի արքեպիսկոպոսը, ծնաւ 1033ին Բիէմոնդի Աոստա քաղաքը։ Այս ազնուաբարոյ անձը՝ ան ատենուան հաւատոյ մէջ թոյլ եւ բարուք ապականեալ աշխարհքին, խոնարհ հաւատոյ ու անարատ վարուց օրինակ ըլլալէն զատ, նաեւ իբրեւ Պեկ քաղաքին վանական դպրոցին վերատեսուչ՝ ճշմարիտ կրթութիւն ու կրօնասիրութիւն տարածելու փոյթ տարաւ։ Քիչ մը ետքն ալ իբրեւ արքեպիսկոպոս ու Անգղիայի նախագահ՝ հալածեալ եկեղեցւոյ ազատութեան ու իրաւանցը համար աննկուն քաջասրտութեամբ կռուեցաւ։ Թէեւ եպիսկոպոսական պաշտաման կատարման մէջ՝ հարկ եղաւ անպատմելի վշտաց ու տառապանաց համբերել, սակայն անյողդողդ հաստատութեամբը կեցաւ վերջապէս

Անգղիայի եկեղեցին աշխարհական իշխանութենէն լուծէն ազատել, եւ անոր յուսալից ապագայ մը պատրաստել: Իր գիտնական աստուածաբանական գրուածքներուն անուններ անմահացուց, որոնց մէջ յիշուելու արժանի են. 1. Միայնախօսութիւնը՝ որ Աստուծոյ գերագոյն ու ամենակատարեալ էակին գոյութեան, էախօսական ցոյց մը կը բովանդակէ: 2. Ինչո՞ւ Աստուած մարդ գործքը, որուն մէջ կը ցուցընէ թէ Փրկիչը հարկ էր որ ճշմարիտ Աստուած ըլլար, որպէս զի կարենար մարդկան մեղացը հատուցում ընել: 3. Սկզբնական մեղաց եւ Ս. Աստուածածնի անարատ յղութեան վրայ շինած գիրքը: (Ս. Անսելմոս առաջինն եղաւ որ այս տօնն Անգղիա խոթեց): 4. Ուրիշ նաեւ շատ մտածականներ ու աղօթքներ, որոնց մէջ Յիսուսի ունեցած սաստիկ սէրն ու ջերմեռանդ բարեպաշտութիւնը կը փայլի: — Ս. Անսելմոս մեռաւ 1109ին. Կղեմէս ԺԱ. Քահանայապետը զինքը 1720ին Եկեղեցւոյ վարդապետ անուանեց:

2. *Ս. Թովմաս Աքուինացին* (1226—1274) Նէապոլսոյ ազնուական ընտանիքէ մը յառաջ եկած է: Զարմանալի հոգւոյ ձիրքերով զարդարուած այս մեծ ուրբը, մատաղ հասակէն վեր միտքը դրած էր աշխարհքէ բոլորովին հրաժարիլ, եւ ինք զինքը վանքի մը մէջ իբրեւ աղքատ եղբայր Աստուծոյ ծառայութեան ու սրբազան գիտութեանց ուսման նուիրել: Նէապոլսոյ համալսարանին ուսում մը լմնցընելէն ետքը, 17 տարեկան Դոմինիկեանց վանքը մտաւ, եւ թէպէտ ծնողքն ամէն հնարք մտածեցին զինքն աս խորհրդէն ետ կեցընելու, սակայն ինք ընտրած վիճակին մէջ հաստատուն մնաց: Անկէ ետքը հռչակաւոր Ալբերդոս Մեծին առաջնորդութեանը տակ, աստուածաբանական գիտութեանց մէջ այնչափ շուտ յառաջացաւ, որ ամէնքը վրան կը զարմանային: Միանգամայն իր խորին խոնարհութեամբը, եռանդուն աստուածպաշտութեամբն ու վարուց անարատութեամբն ինք զինքն ամէնուն սիրելի ըրած էր: Մեծաւորացը հրամանաւը գնաց երիտասարդ հասակին մէջ Կողոնիա ու Բարիզ աստուածաբանութեան ուսուցչութիւն սկսաւ ընել,

եւ քահանայ ձեռնադրուելէն ետքն իբրեւ քարոզիչ՝ հաւատոյ վարդապետութեանց վրայ այնպէս մեկին ու համոզողական կերպով կը խօսէր, որ համբաւն ամէն կողմն ելաւ, եւ իրենց փրկութեան փափաքող բազմաթիւ երիտասարդք հեռաւոր տեղերէն գալով իր վարդապետութեան բեմբին շուրջ դիրք ժողվեցան: Ս. Թովմաս ետքէն Հռոմ ալ աստուածաբանութեան ուսուցիչ եղաւ. Ուրբանոս Դ. Քահանայապետը՝ որ զինքը հոն կանչած էր, ուզեց բարձրագոյն պատիւներու հասցրնել: Սակայն Ս. Թովմաս՝ որ չէ թէ իր անձնական փառքը՝ հապա Աստուծոյ պատիւը միայն կը փնտռէր, խոնարհութեամբ ու համեստութեամբ ամէն արժանապատուութիւն մերժեց, եւ թախանձանօք խնդրեց՝ որ զինքը թողուն որ իբրեւ աղքատ եղբայր մը վանքի մէջ ապրի ու մեռնի: Իր ամէնէն մեծ բաղձանքն ու միակ երջանկութիւնն էր գիտութեան ետեւէ ըլլալ, բայց չէ թէ երկրաւոր ու մարդկային գիտութեան, այլ Աստուծոյ որդւոց յատուկ իմաստութեան, որ երկնքէն կ'իջնայ: Անոր համար խաչելութեան կամ ամենասուրբ Հաղորդութեան առջեւն աղօթք չըրած, երբեք սորվելու, գրելու, կարդալու կամ ուրիշ ուսումնական գործքի չէր սկսեր: Անով կրցաւ խիստ դժուարին խնդիրները դիւրութեամբ լուծել, Ս. Գրոց մթին տեղերը լուսաւորել եւ ամէն երկդիմութիւն փարատել: Այսպիսի սուրբ վարուք ապրեցաւ մինչեւ մահը՝ որ պատահեցաւ 1274ին Մարտի 7ին, տարիքը 48երորդ տարին: Պիոս Ե. Քահանայապետը 1567ին զինքն Եկեղեցւոյ վարդապետաց կարգը դասեց: Իր բազմաթիւ գրութիւններն աստուածաբանական գիտութեանց շտեմարան մըն են, եւ իրաւամբ կ'ըսուի որ ով որ աստուածաբանութիւն ու փիլիսոփայութիւն խորունկ կ'ուզէ սորվիլ, պէտք է Ս. Թովմայի աշակերտի: Սովորութիւն եղած է զՍ. Թովմաս Հրեշտակային վարդապետ մակադիր անուամբ կոչել: Իր գրաւոր աշխատութեանց մէջ ամէնէն նշանաւորն է՝ Աստուածաբանական Բովանդակութիւնը, որ ուղղափառ կրօնքին ամէն ճշմարտութեանց ու վարդապետութեանցը գիտնական մեկնութիւն եւ

հաստատութիւն մըն է։ Ասկէ զատ շարադրած է նաեւ շատ աղօթքներ ու եկեղեցական երգեր։

3. Ս. Բոնավենտուրա ԺԳ. դարուն (1221—1274) բարեպաշտ ծնողքներէ ծնաւ, որոնք զինքը տղայ հասակին մէջ Աստուծոյ ծառայութեանը նուիրեցին։ Սակայն հազիւ 21 տարեկան եղած ատեն կրցաւ Փրանկիսկեանց կրօնքը մտնել։ Ս. Բոնաւենտուրա եւ Ս. Թովմաս իրարու մտերիմ բարեկամ էին. ինքն ալ Բարիզ աստուածաբանութեան ուսուցիչ եղաւ եւ իր զքանչելի առաքինութեանց պայծառութեամբն ու երկնաւոր գիտութեամբն աշխարհքը լուսաւորեց։ Օր մը երբոր Ս. Թովմաս իրեն աղաչեց որ ցուցընէ այն գրքերը, ուստի իր հրաշալի գիտութիւնը քաղած է, Ս. Բոնաւենտուրա խաչելութեան ակնարկելով ըսաւ. Ահա՛ իմ գիրքս։ Այն խօսքն ինք ամենայն ճշմարտութեամբ կրնար ըսել, ինչու որ այնչափ յաճախ եւ այնպիսի եռանդեամբ խաչելոյն ոտքն ինկած կ'աղօթէր, եւ անոր հինգ վէրքացը մէջ կ'ընկղմէր, որ աստուածեղէն Փրկչին սիրոյ հուրը սիրտը զեղած ու հոգին բոլորովին գրաւած էր։ Թէ սորվելու, թէ գրելու ատեն՝ միշտ աչուըները խաչելութեան վրայ սեւեռած կը բռնէր, եւ անկէց առաջ այն սուրբ գիտութիւնը, որն որ իր քարոզներուն մէջ կը փայլի, եւ գրուածոցը մէջ անջինջ դրոշմուած է։ Իր կրօնակից եղբարքը վրան մեծ համարում ունէին, եւ 1256ին աբբայընտրութեան ժողովոյն մէջ, զինքը միաբան կրօնին ընդհանրական Աբբայ ընտրեցին։ Քահանայապետներն ալ զինքը շատ կը յարգէին. արդէն Կղեմէս Դ. Քահանայապետը, զինքն Եորքի արքեպիսկոպոս անուանած էր, եւ հազիւ սրբոյն աղաչանացը զիջանելով, յանձն առաւ որ պատիւն ընդունելէն զինքը անօրինել։

Սակայն Գրիգոր Ժ. Քահանայապետը Բոնաւենտուրայի աղաչանացն ականջ չդնելով, զինք Ալբանոյի կարդինալ եպիսկոպոս անուանեց, եւ հրամայեց որ 1274ին Լիոն գումարուելի ընդհանուր սիւնհոդոսին ներկայ գտնուի։ Ս. Բոնաւենտուրա հնազանդեցաւ, եւ բոլոր հոգեկան զօրութիւններն եկեղեցւոյ

բարւոյն նուիրեց. իր քաղցր ու սիրալիր խօսքերէն շարժեալ Յոյնք, թէեւ քիչ ժամանակի համար, Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանեցան։ Այս միաբանութեան քակտումն ինք չտեսաւ, ինչու որ ժողովոյն հինգերորդ նիստին նախընթաց իրիկունը (1274 Յուլիս 5) վախճանեցաւ, բովանդակ քրիստոնէութիւնը դառն սգոյ մէջ ձգելով։ Իր յուղարկաւորութիւնը չտեսնուած փառաւորութեամբ կատարուեցաւ, Քահանայապետն ու բոլոր ժողովոյն Հայրքը զինքը գերեզման յուղարկեցին։

Ս. Բոնաւենտուրա Սիքստոս Ե. Քահանայապետէն Եկեղեցւոյ վարդապետաց կարգը դասուեցաւ, եւ որովհետեւ սերովբէական սիրոյ կայծ մը սիրտը գրաւած էր, որն որ նոյն իսկ երեսին վրայ կը շողար, Սերովբէական վարդապետ կոչուեցաւ։ — Իր բազմաթիւ գրուածոց մէջէն, որ մեծ յարգ ունին, յիշուելու արժանի են Համառօտախօսութիւնը, որն որ աստուածաբանութեան համառօտ բովանդակութիւն մըն է, դարձեալ Ս. Ֆրանկիսկոս Ասսիզեցւոյն՝ իր հոգեւոր հօրը վարուց պատմութիւնը։ Ունի նաեւ գեղեցիկ աղօթքներ ի պատիւ չարչարանաց Քրիստոսի ու Աստուածամօր։

4. Ս. Բեռնարդոսի վրայ տես վարը համար 75։

**73. *Շարունակութիւն: Դասական գիտութեանց վերստին հաստատութիւնը:***

Չի կրնար ուրացուիլ՝ որ գեղեցիկ արուեստները ու գիտութիւնները, որոնց գլխաւոր աղբիւրները են Յունաց ու Հռոմայեցւոց մատենագիրները, քրիստոնէութեան առաջին ժամանակներն արդէն մեծ փութով ու խնամքով կը մշակուէին։ Ի մասնաւորի տնար մէջ կը հրահանգուէին քրիստոնեայ երիտասարդք։ Քանի մը Ս. Հարց խօսքերէն զատ՝ ասոր յայտնի ապացոյց է նաեւ Յուլիանոս Ուրացող կայսեր քրիստոնեայ երիտասարդաց՝ հեթանոս մատենագրաց ուսման պարապիլն արգելելը (տես երես 102). բայց Միջին դարու մէջ՝ ժամանակ մը դասական գիտութեանց փոյթ չտարուեցաւ։ Անոնց վերստին հաստատու-

թիւնը՝ որ միանգամայն աստուածաբանութեան վրայ մեծ ազդեցութիւն ունեցաւ, այս շրջանին վերջին ժամանակները կ'իյնայ: Ասոր սկիզբ ընողն եղաւ Իտալիա, եւ պարծանքը կը պատշաճի Տանդէի, Պետրարքայի ու Բոքքաչչիոյի, որոնք ԺԴ երորդ դարուն մէջ ծաղկեցան: Տանդէ Փլորենտիացին՝ իր Աստուածային կատակերգութեամբը, ազնիւ ճաշակի զգածումը զարթոյց. գիտուն ու բանաստեղծ Պետրարքան՝ իր ժամանակակիցները Կիկերոնի ու Վիրգիլիոսի հետեւելու յորդորեց. իսկ Բոքքաչչիօ յունարէն լեզուն Իտալիա ծաղկեցընելու ետեւէ եղաւ: Հնգետասաներորդ դարուն՝ դասական մատենագրութեան ուսումն Իտալիա այնչափ ընդունելութիւն գտաւ, որ ամէն բարձրագոյն դպրոցներու եւ մեծ քաղաքներու մէջ մասնաւոր ուսուցիչներ դրուեցան եւ հասարակաց գործածութեան համար դրատուններ բացուեցան: Մետիչիներուն տունն առաջինն եղաւ, որ Փլորենտիա ամէն տեսակ ուսումնական անձինք ժողվեց: Քահանայապետներն ալ գեղեցիկ գիտութեանց սէրն ու եռանդն արծարծելու ետեւէ եղան եւ Հռոմ անոնց աթոռանիստ քաղաքն եղաւ: Այս ջանից առանձինն օգնեցին նաեւ ժամանակին պարագաները: Փլորենտիայի սինհոդոսին պատճառաւ (1438), Իտալացիք Յունաց իմաստուններուն հետ հաղորդութիւն ընելու առիթ ունեցան, նոյնպէս Կոստանդնուպոլիս Տաճիկներէն առնուելէն ետքը (1453), Յունաց մեծ բազմութիւն մը Իտալիա անցաւ: Տպագրութեան գիւտովը գիտութիւնը հասարակաց ստացուածք եղաւ, եւ Լուդովիկոս ԺԱ.ին ձեռքով հաստատուած թղթատար սուրհանդակները, նոր գաղափարները զարմանալի արագութեամբ ամէն կողմ տարածելու օգնեցին:

Հին դասական մատենագրութեան ուսումն Իտալիայէն Անգղիա, Գաղղիա ու Սպանիա անցաւ: Մասնաւոր յաջողութիւն գտաւ Ստորին Նահանգներն ու Գերմանիա: Հոս գլխաւորաբար երեւելի հանդիսացաւ Էրազմոս Ռոտերտամցին ու Յոհաննէս Ռոյխլին (1455—1522), որ քաջ հմուտ էր յունարէնի, լատի-

ներքին եւ առանձնին եբրայեցերէնի, եւ մանաւոր փոյթ ցուցուց այս վերջի լեզուին ուսման իր ժամանակակիցներուն մէջ կենդանացընելու։

Այս ամէն ըսուածներէն կ'երեւայ՝ որ Միջին դարու մէջ չէ թէ միայն կրօնական կրթութիւնը, այլ նաեւ արտաքին աշխարհական գիտութիւնը բարձր աստիճանի հասած էր։ Բայց չ'ուրացուիր ալ, որ այս ժամանակի շրջանին վերջերը, աշխարհական կղերին մէկ մասը՝ քանի մը եպիսկոպոսաց չգովելի օրինակին հետեւելով, սկսան գիտութեան ծուռ աչքով նայիլ եւ անոր փոյթ չտանիլ։ Ստոյգ է ոմանց դատական գիտութեանց այսպէս ծուռ աչքով նայելուն պատճառն այն ցաւալի դիտողութիւնն էր, որ շատերը հին հեթանոսութեան ոգիէն արբեալ, քրիստոնէութեան դէմ թշնամական դիրք մը կ'առնուին. բայց կային ոմանք ալ որ այս գիտութեանց յարգն ամենեւին չէին ճանչնար։ Սակայն ասոնց բռնած ուղղութիւնը մասնական էր, եւ ոչ թէ ժամանակին հոգւոյն արտադրութիւնն էր։

Գիտութեան ծուռ ուղղութիւնը մէկ քանի չարիքներ յառաջ բերաւ, ինչպէս է աւելորդապաշտութիւն, աստեղանշմարութեան, մեռելահարցութեան ու ոսկեփոխութեան հաւատալ, որոնց դէմ Քահանայապետներն ամենայն զօրութեամբ կռուեցան։ Այս ժամանակի գլխաւոր թերութիւններէն մէկն էր նաեւ կախարդութիւնը, որ ետքէն ԺԷ. դարուն իր բարձրութեան կէտը հասաւ, եւ մինչեւ ութեւտասներորդ դար տեւեց։ Այս ծուռ ուղղութենէն յառաջ եկան նաեւ անհաւատութիւնն եւ անբարոյականութիւնը, որ եկեղեցւոյ շատ մեծ վնաս հասցուցին, ինչու որ գիտնական կրթութիւնն առանց կրօնասիրութեան ամենաչար ապականութիւնն է։

# ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

**74.** *Եկեղեցւոյ ներքին կերպարանաւորութիւնը, եւ ան աշխարհական իշխանութեան ունեցած դիրքը:*

ա. Քահանայապետական ու եպիսկոպոսական իշխանութեանց իրարու հետ ունեցած յարաբերութիւնը:

Ինչպէս աշխարհական իրողութեանց՝ նոյնպէս եկեղեցական խնդիրներու մէջ, Քահանայապետք արտաքոյ կարգի մեծ իշխանութիւն մը կը բանեցընէին, որ մինչեւ ԺԳ. դար երթալով միշտ աճելու վրայ էր: Որովհետեւ եպիսկոպոսներէն շատերուն իրենց պաշտօնն անհոգութեամբ կը վարէին, եւ երբեմն նաեւ զեղծմունքներով կը նուաստացընէին. ոմանք ալ աշխարհական իշխանաց՝ եկեղեցւոյ իրաւանցը ձեռք երկընցուցած ատեն, պատժապարտ տկարութեամբ անոնց չէին ընդդիմանար, մանաւանդ թէ ըստ պարագայից նաեւ կ'օգնէին. ասով բնականապէս իրենք իսկ պատճառ եղան եպիսկոպոսական իշխանութեան չափաւորուելուն: Ինչու որ որպէս զի եկեղեցւոյ միութիւնն անվնաս պահուի, հարկ կ'ըլլար որ այսպիսի դէպքերու մէջ Քահանայապետք միջամտութիւն ընեն, եւ ինչ ինչ իրաւունքներ ի գործ դնեն, որոնք յառաջ եպիսկոպոսաց սեպհական էին:

Քահանայապետաց իշխանութիւնն աւելի եւս հաստատութիւն գտաւ այս ժամանակի միջոցին մէջ գումարուած ընդհանուր ժողովներու ձեռքով, որոնց մէջ գլխաւորաբար հրահանգաց վերաբերեալ նիւթերու վրայ կը խօսուէր: Դարձեալ ամէն տարի Հռոմ գումարուած սինոդոսներով, ուր նաեւ հեռաւոր երկիրներէն եպիսկոպոսք կը կանչուէին, եւ վերջապէս լիազօր իշխանութեամբ ամէն տեղ խաւրած հրեշտակաց ձեռքով: Գրիգոր Է.էն յառաջ արդէն Քահանայապետք խիստ ծանրակշիռ դէպքերու մէջ հրեշտակներ գործածելու սովորութիւն ունէին. եպիս

տեններն առանց մասնաւոր պատճառի իբրեւ եկեղեցեաց քննիչք սկսան ասդին անդին խաւրուիլ, որ պատճառաւ իրենց համարումը խիստ մեծցաւ։

### բ. Թեմական յարաբերութիւնները։

Թէեւ տեղ տեղ եպիսկոպոսք կը ջանային կանոնիկոսաց ժողովատեղիներուն մէջ համարակալ կեանքը վերստին հաստատել, բայց ընդհանրապէս խօսելով այս ջանքն ակներեւ արդիւնք մը չունեցաւ։ Ասոր հակառակ կանոնիկոսաց ժողովներուն իրաւունքներն ընդարձակեցան, հանդերձաւորութեան կռուէն ետքը՝ եպիսկոպոսաց ընտրութեան իրաւունքն իրենց առնելով։ Նոյնպէս միջերնին դատարկ մնացած տեղերն իրենք իրենցմէ բռնելու իրաւունքն իրենց սեպհականեցին։ Այսպէս սիմոնականութիւնը՝ որուն դէմ Գրիգոր Է. եւ իր յաջորդ քահանայապետներն այնչափ կռուեցան, ուրիշ ձեւի տակ դարձեալ եկեղեցւոյ մէջ մտաւ։ Ուստի Աղեքսանդր Գ. էն սկսեալ քահանայապետաց եկեղեցւոյ աւագութիւն մը տալու իրաւունքն իրենց սեպհականելը, մեծապէս օգտակար եղաւ, ինչու որ անկէ ետքը դարձեալ սկսուեցաւ արժանաւոր անձինք միայն եկեղեցական աստիճանի մը բարձրացընել։

Աւագ սարկաւագաց իշխանութիւնը՝ որ այս ժամանակի միջոցին սկիզբն աւելի եւս ընդարձակած էր, ԺԳերրորդ դարուն չափաւորուեցաւ, եւ քիչ մը ետքը բոլորովին վերցուեցաւ։ Անոնց տեղն անցան եպիսկոպոսական դատաւորներն ու փոխանորդները։ — Օգնական եպիսկոպոսաց սկիզբը՝ երեքտասաներորդ դարուն մէջ կ'իյնայ։

### գ. Եկեղեցւոյ՝ տէրութեան հետ ունեցած յարաբերութիւնը։

Եկեղեցւոյ՝ տէրութեան հետ ունեցած յարաբերութիւնք, Միջին դարու մէջ հիմակուընէ բոլորովին տարբեր էր։ Անտարակոյս է որ տէրութիւնն ու ե-

կեղեցին ամէն ժամանակ իրարմէ տարբեր նպատակ-
ներու կը դիմեն. տէրութիւնը՝ մարդկան երկրաւոր,
իսկ եկեղեցին՝ յաւիտենական բարօրութեանը միտ կը
դնէ։ Աս պատճառիս համար սոյն կրկին իշխանու-
թիւններն իրարու երբեմն մերձաւոր ու երբեմն հե-
ռաւոր կ'իյնան։ Միջին դարու մէջ՝ այս երկու իշխա-
նութիւնները գրկախառն միաւորութեան մէջ էին։
Նոյն միջոցին տէրութիւնն այնպէս եկեղեցւոյ վրայ
յեցած էր, որ ինք իր գոյութիւնը պահելու համար
անոր օգնականութեանը կը կարօտէր. ուստի եւ էա-
կան պարտքերէն մէկը կը սեպէր, եկեղեցին ու հա-
ւատքը պաշտպանել եւ զանիկայ իր ամէն արտաքին
կամ ներքին թշնամիներուն դէմ պատսպարել։ Նոյն-
պէս եկեղեցին իր կողմանէ ամէն ձեռքէն եկածը կ'ը-
նէր, օրինաւոր տէրութիւնը պաշտպանելու։ Քահա-
նայապետը Գերմանիոյի կայսրն ու քրիստոնեայ թա-
գաւորները կը պսակէին, որով աշխարհական իշխա-
նութեան հաստատուն մնալուն երաշխաւորութիւնը
վրանին կ'առնուին։ — Եկեղեցւոյ ու տէրութեան մէջ
եղած այս սերտ յարաբերութիւնն ետքէն քակուե-
ցաւ, բայց չէ թէ մարդկային կամքը կամ նորահնար
տեսական սկզբունքներով, հապա ինչպէս աշխարհքիս
պատմութեան մէջ ամէն արտաքոյ կարգի դէպք,
յանդէտս ծածուկ գործող ժամանակին ձեռքով, ո-
րուն պատահարներն աստուածային տնտեսութիւնը կը
կարգադրէ։ Այս երկու իշխանութեանց բաժանումն
արդէն Միջին դարու մէջ պատրաստուած էր, բայց
գործադրութիւնն ետքէն բողոքականութեան եւ ան-
կէ յառաջ եկած ուրիշ պատահարաց ձեռքով եղաւ։
Եկեղեցին ու տէրութիւնը հիմայ փոխփոխ կը կենան։
Եկեղեցին մարդկութեան համար իր աստուածեղէն
հաստչէն ընդունած մշտատեւ առաքումը կը կա-
տարէ, եւ տէրութենէն ուրիշ բան չի պահանջեր՝
բայց եթէ այս առաքումը կատարելու ազատութիւն,
իրաւունք մը՝ որմէ երբեք չի կրնար հրաժարիլ,
առանց իր գոյութիւնն ուրանալու։ Եկեղեցին տէ-
րութեանց կառավարութեան մէջ եղած փոփոխու-
թիւնները, իբրեւ անցաւոր ժամանակի պատահար կը

նկատել, եւ առանց հակառակութեան անոնց կը հան-դուրժէ։

## 75. Կրօնական կարգեր ու միաբանութիւններ:

Բնտանոյ կոմսին (տես Հ. 58) ձեռքով նորոգուած Գլունիի Բենեդիկտեանց կրօնը, ԺԲ. դարուն առա-ջին կէսին դեռ կը բարգաւաճէր, ի մասնաւորի Պետրոս Պատուելի աբբային ժամանակ, որ իր առաջնորդու-թեան տակ ունէր 300 եկեղեցի, դպրոց ու վանք։ Աս կրօնէն ելաւ ուրիշ նոր ընկերութիւն մը, այսինքն՝ Կիստերսեանց կարգը, որուն հիմնադիրն եղաւ Ս. Ռոբերտոս՝ Շամբայն գաւառէն ազնուականի մը որդին։ Դիժոն քաղաքին քով հաստատուած Կիտոյ ըսուած (Cistertium) աբբայարանէն առաւ կրօնն իր անունը։ Բայց բուն Կիստերսեանց կրօնը պայծառա-ցնողն եղաւ Ս. Բեռնարդոս, Բուրկունտիայի ազ-նուականի մը որդին, որ թէ բարեպաշտութեամբ ու հոգւոց փրկութեան եռանդով, եւ թէ խորին գիտու-թեամբ իր ժամանակին գերազանց մարդերէն մէկն էր։ Կրօն մտնելէն քիչ մը ետքը, անտառի մը մէջ Կիս-տերսեանց վանք մը հաստատեց, որ ետքէն Պայծառա-ձոր (clara vallis) կոչուեցաւ։ Ս. Բեռնարդոս հազիւ 25 տարեկան նոյն վանքին աբբայ ընտրուեցաւ։ Հոս իր կրօնակից եղբարցը հետ բոլորովին մեկուսացեալ նկատողական կեանք կ'անցընէր, եւ զարմանալի յա-րատեւութեամբ ինք զինքը մահացուցմանց, աղօթից ու մտածութեանց տուած էր, մինչեւ որ անձին կատա-րելապէս տիրեց, այնպէս որ երկրագործութեան ծանր ու աշխատեցուցիչ գործքերուն զբաղած ատենն ալ, կրնար անարգել միտքն աղօթից ու երկնաւոր իրաց մտածութեան ամփոփել։ Մանաւանդ թէ՝ ինչպէս իր կենացը վերջին ժամանակները կ'ըսէր, աստուածային գիտութիւն առնելու եւ Ս. Գիրք հասկընալու ու-րիշ ուսուցիչ ունեցած չէ բաց ի անտառաց կաղնի-ներէն ու գեղօջներէն։ Աստուծոյ ծառայութեան ու ապաշխարութեան խիստ կրթութեանց մէջ չթուլնա-լու համար, սովորութիւն ունէր առէջ ինք իրեն հարցը-

նելու․ Բնաւորապէս, ինչպէս եկար՝ խստամբեր բազմավաստակ կեանքը՝ մարմինն այնչափ նիհարցուցած էր, որ աւելի մեռելի քան թէ կենդանւոյ կը նմանէր։ Թէ Գաղղիա ու թէ անկէ դուրս եկեղեցական ու աշխարհական երեւելի անձանց հետ հաղորդակցութեան մէջ էր, եւ ամէն եկեղեցւոյ գործքերուն մասնակցութիւն ունէր։ Ճարտասանութեան զարմանալի ձիրք մ'ունենալով՝ իր եռանդուն, բայց քաղցր ու գողտր խօսքերովն ամէնուն սիրտն իրեն կը յանկուցանէր։ Իր հեզութեամբն ու համեստութեամբը՝ շատ անգամ ժողովրդներն իրենց իշխանացը հետ հաշտեցուց, եւ աշխարհական իշխանաց մէջ ծագած բազմաթիւ հակառակութիւնները վերցուց։ Նոյն յաջողութեամբ աշխատեցաւ հաւատոյ միութեան ու հերետիկոսութեանց բարձման, որոնք նոյն միջոցին եկեղեցւոյ խաղաղութիւնը կը վրդովէին։ Բայց նաեւ չէր քաշուեր ճշմարտութիւնը պարզերես ու համարձակ քարոզելու թէ աշխարհական իշխանաց եւ թէ քահանայապետաց։ — Ս. Բեռնարդոս մեծաւ թախանձանօք կը յանձնէր ամէն հաւատացելոց ամենասուրբ կուսին ջերմեռանդութիւնը, որ բոլոր քրիստոնէից մայրն է. անոր գովութիւնը հռչակելու համար բերանն երբեք խօսք չէր պակսեր, իր պատրաստած համար շարադրած աղօթքներն լի են որդիական ջերմեռանդութեամբ ու սիրով։ Ինքը շարադրած է Յիշէ՛ ով Մայր, գեղանչելի աղօթքը. նոյնպէս Ողջ լեր Թագուհւոյն վերջին տունը՝ Ով գթած, ով բարեգթած, ով քաղցր Կոյս Մարիամ։ — Իր աստուածահաճոյ մահը պատահեցաւ 1153ին Օգոստոս 20ին։ Քանի տարի ետքը Աղեքսանդր Գ. Քահանայապետը զինքը սրբոց կարգը դասեց, եւ Պիոս Ը. Քահանայապետը 1830ին Եկեղեցւոյ վարդապետ անուանեց։ Իր աշխատասիրութիւններէն անթիւ ճառեր ու գրուածքներ, ի մասնաւորի յաւիտենական ճշմարտութեանց մտածութեանց վրայ. դարձեալ Ս. Գրոց գործնական մեկնութիւններ ու հոգեւոր բանաստեղծութիւններ։

Կարթուսեանց կրօնը՝ հաստատեց 1084ին Ս. Բրունոյ Կողոնիացին։ Անիկայ իր կրօնին հիմ դրաւ Ս.

Բենեդիկտոսի ամենէն խիստ կանոնները, որ ցկեանս լռութեան եւ ուրիշ անձնուրացութեան գործքերու կը պարտաւորէին։ Միանձունք շաբաթը միայն մէկ անգամ կրնային քովէ քով գալ ապաշխարութեան խորհուրդն ընդունելու եւ վանական գործողութիւնները կարգաւորելու համար։ Ասկէ դուրս իրենց ժամանակը կ'անցընէին աղօթիւք, գիրք ընդօրինակելով ու երկիր մշակելով։ Թէպէտ կրօնն այսչափ խիստ էր, սակայն եւ այնպէս քիչ ժամանակուան մէջ շատ յառաջացաւ, այնպէս որ ամենէն ծաղկեալ ատենը 168 կրօնաւորաց ու հինգ կուսանաց վանք ունէր, որոնց մէջ 3000էն աւելի միանձունք եւ կուսանք կային։

*Պրեմոնստրատեանց կարգը*՝ հիմնեց Ս. Նորբերտոս, որ Ռենոսի Քսանթէն քաղաքը ծնած է (1082)։ Ասիկայ իշխանի աշխարհական կեանք մը կը վարէր, բայց Աստուծոյ շնորհաց միջնորդութեամբը յանկարծ վարքը փոխելով՝ սուրբ աստիճաններն ընդունեցաւ, եւ իբրեւ ապաշխարութեան քարոզիչ Գաղղիոյ մեծ մասը պտըտեցաւ։ Վերջապէս Բրէմոնդրէ բաւական տեղը քաշուելով, հոն կրօնաւորաց միաբանութիւն մը հաստատեց, որ նկատողական կենաց հետ քարոզութեան եւ հոգւոց փրկութեան պարապելու պարտքն ալ ունէր։ Հիմնադրին մահուան տարին (1134), կրօնն արդէն շատ տարածուած էր։

*Կարմելեանց կրօնը*՝ խաչակրութեան գացող Բերթոլդոս Գալաբրիացին հաստատեց, որ 1152ին քանի մը ընկերներով Կարմեղոս լեռան վրայ առանձնացաւ։ Սարակինոսաց արշաւանքներն այս կրօնն արեւելք ջնջեցին, որ ետքէն արեւմուտք գալով հոն աղէկ ընդունելութիւն գտաւ։ — *Երրորդականաց կրօնը*՝ ԺԲ. դարուն երկու Գաղղիացիք հիմնեցին, զոր Իննովկենտիոս Գ. հաստատեց։ Այս կրօնին վախճանն է Մահմետականաց ձեռքն ինկած քրիստոնեայ գերիները փրկանօք ազատել, որուն մինչեւ հիմայ նոյն կրօնը հաւատարիմ մնացած է։

*Դոմինիկեանց ու Փրանկիսկեանց մուրացիկ կրօնները*։ — Դոմինիկեանց կրօնին հիմնադիրն եղաւ Ս. Դոմինիկոս, որ 1170ին Հին Գաստիլիայի Կալարուեգա

քաղաքն ազնուական առհմէ յառաջ եկած է։ Քահանայ ձեռնադրուելէն ետքը (1199), իր եպիսկոպոսին հետ հարաւային Գաղղիա ըրած ճամբորդութեան մը առթիւ, տեսնելով որ աղէկ ուղղափառ քարոզչաց պակասութենէն ալպիգեան աղանդը ճարակ կը գտնէ, միտքը դրաւ իբրեւ քարոզիչ անոնց մոլորութեանցը դէմ մաքառիլ։ Շատ համախոհներ իրեն հետ միաբանեցան, եւ Թուլուզ իրենց բնակութեանը համար տուն մը բռնեցին, որով նոր կրօնի մը հիմ դրուեցաւ։ Իննովկենտիոս Գ. Քահանայապետը զանիկայ հաստատեց, սա պայմանաւ որ Դոմինիկոս եկեղեցիէն ընդունուած կանոններէն մէկն ընտրէ։ Ս. Դոմինիկոս հաւանեցաւ եւ Ս. Աւգոստինոսի կանոններն ընտրեց, զորոնք յաւելուածներով խստացուց։ Սեպհական ինչք ունենալը կրօնին արգելեց եւ քարոզութիւնը՝ կրօնին գլխաւոր վախճան դրաւ, ուստի առեալ այս կրօնը Քարոզչաց Կարգ ալ կ՚անուանուի։

Փրանկիսկեանց կրօնը հիմնեց Ս. Փրանկիսկոս, հարուստ վաճառականի մը որդին, որ 1182ին Ումբրիայի Ասիզի քաղաքը ծնած է։ Անիկայ օր մը երբ որ Փորցիունգուլայի Ս. Աստուածածնի եկեղեցին՝ առաքելոց առանց արծաթի ու ոսկւոյ քարոզութեան խաւրուելուն Աւետարանը լսեց, աստուածային եռանդով բորբոքած՝ միտքը դրաւ անոնց շաւղացը հետեւիլ, եւ իրեն համախոհ անձանց միաբանութիւն մը հաստատել։ Հայրն ասոր համար զինքը տնէն մերժեց, եւ աշխարհային հոգւով զգածեալ քաղաքացիներն ալ զինքն անգոսնեցին. բայց շատերն ալ իր առաքինութեանցը վրայ զարմանալով՝ զինքը կը մեծարէին։ Ս. Փրանկիսկոս իր կրօնին հիմը Փորցիունգուլա դրաւ, եւ ապաշխարողի զգեստ հագած սկսաւ քարոզել եւ դռնէ դուռ պտըտելով ապրուստ մուրալ։ Յամի 1210ին 11 ընկեր գտնելով, մտածեց անոնց կանոն մը տալ։ Կրօնաւորական սովորական պարտաւորութեանց վրայ, խիստ աղքատութեան պարտքն աւելցուց, եւ հարստութենէ յառաջ եկած վնասուց առջեւն առնելու համար, չէ թէ միայն առանձնականաց, այլ նոյն իսկ կրօնին ինչք ստանալն արգելեց։

Կրօնն իր ապրուստը աշխատութեամբ եւ ի հար-կաւորութեան մուրալով պիտի որ հոգար։ Ս. Փրան-կիսկոս մեծ դժուարութեամբ ընդունեցաւ իր կրօնին հաստատութիւնը Իննովկենտիոս Գ. Քահանայապե-տէն։ Բայց մէյմը որ ընդունեցաւ ալ անկէ ետքը համբաւն ու աշակերտացը թիւն երեւելապէս աճեցաւ, որուն շատ օգնեց նաեւ առաքելական քարոզութեամբ ուղղափառ հաւատոյ տարածումն իր կրօնին նպատակ դնելը։ Ս. Փրանկիսկոս իր վերատեսչութեան տակ ունէր նաեւ կուսանքը, որոնց մէկն էր Ասիզի քաղքէն Ս. Կլարա բարեպաշտ կոյսը, որ 1212ին Կլարեան կու-սանաց կրօնը հաստատեց։ Վերջապէս Ս. Փրանկիսկոս եղբայրութիւն մ'ալ հաստատեց, որուն անդամներն աշխարհիկ կը մնային եւ Երրորդ կարգի եղբարք կ'ա-նուանուէին։ Ս. Փրանկիսկոսի մահուան տարին (1226) եղբարց թիւը հազարաւորներու հասած էր. կրօնին այսչափ բարգաւաճելուն պատճառն էր իր հիմնադրին բարեպաշտութիւնն ու հոգւոց փրկու-թեան ունեցած սաստիկ եռանդը։ Փրկչին պատկերը՝ Փրանկիսկոս ինչպէս ի ներքուստ նոյնպէս նաեւ ար-տաքուստ իր մարմնոյն վրայ կը ներկայացընէր, եւ որ-պէս զի այս նմանութեան մէջ բան մը թերի չըլլայ, Քրիստոսի նոյն իսկ իր չարչարանաց սուրբ վէրքը, մար-մնոյն վրայ դրոշմեց։ Մահուանէն երկու տարի ետքը սրբոց կարգը դասուեցաւ։

Այս վերջին երկու կրօնները՝ մեղաւորներու դար-ձերով եւ աստուածաբանական ուսմանց մշակու-թեամբ, մեծապէս օգտաւէտ եղան։ Աստուածա-բանական գիտութեանց նկատմամբ՝ Դոմինիկեանց կարգէն Ս. Թովմաս Ագուինացին, իսկ Փրանկիսկեանց կարգէն Ս. Բոնաւենտուրա Եկեղեցւոյ գլխաւոր պար-ծանքներն եղած են այն ժամանակ։

Այս ժամանակի շրջանին մէջ ուրիշ կրօններ ալ հաստատուեցան, ինչպէս են Սերվիտները (Ծառայք Երանելի Կուսին Մարիամու), զորն որ Փլորենտիացի եօթ անուանի վաճառականք հիմնեցին (1233), եւ Աղեքսանդր Դ. Քահանայապետը 1255ին հաստատեց։ — Աւգոստինեան Անապատականք, որ Ս. Աւգոստինոսի

կանոններու տակ Իտալացի անապատաւորաց միաբա-նութիւն մըն է։ — Փրկչին կարգը՝ զոր որ Ս. Բրիգի-տա Շուէտացի թագաւորին աղջիկը հիմնեց, եւ Ուրբա-նոս Ե. 1370ին հաստատեց։

---

# ՀԱՏԱԾ Գ.

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ

### 76. *Նուիրական գործողութիւններ, ժամանակներ ու տեղեր։*

#### *ա. Նուիրական գործողութիւններ։*

Այս ժամանակի շրջանին մէջ՝ աստուածային պաշտամունքը մեծ փառաւորութեամբ կը կատա-րուէր, որպէս զի հաւատացելոց սրտերն արտաքին տպաւորութենէն ուժգին զգածին եւ ներքին ջերմե-ռանդութեան շարժին։ — Լատին լեզուն աստուա-ծային պաշտամանց մէջ տիրող եղաւ. իսկ ազգային եկեղեցիներու համար կամ լատիններէնէ թարգմա-նուած կամ անկախ ազգային երգեր յօրինուե-ցան։ Հնգետասաներորդ դարուն վերջերը կամ վեշ-տասաներորդ դարուն սկիզբները, արդէն տպուած շա-րականներ կը գտնենք։ Աստուածային պաշտաման միշտ կից էր, Աստուծոյ խօսքին քարոզութիւնը։

Ապաշխարութեան խորհուրդին ընդունելու հա-մար, նոյն իսկ գաղտնի ծանր մեղաց խոստովանու-թիւնը, յաստուածային օրինաց հարկաւոր է։ Եկեղե-ցւոյ գործածութիւնն եւ Ս. Հարց միաբան վկայու-թիւնք կը հաստատեն, որ խոստովանանքն ամէն ժա-մանակ եկեղեցւոյ մէջ կար։ Չորրորդ Լատերանեան տիեզերական ժողովը (1215), հաւատացելոց գաղջու-թեան չափ դնելու համար պատուիրեց, որ ամէն քրիստոնեայ՝ բանաւորութիւնը բացուելէն ետքը, գո-նէ տարին մէկ անգամ խոստովանանք ըլլայ, եւ Զատկին միջոցներն իր ժողովրդապետական եկեղեցւոյն մէջ Ս. Հաղորդութիւնն ընդունի։

Ապաշխարութեան նկատմամբ արդէն Ը. դարէն մնած թուլացուցումները, այս միջոցիս ալ դեռ կը շարունակուէին։ Եկեղեցւոյ ապաշխարանքները՝ խաչակրաց զինուորութեան գրուելով կրնային քաւուիլ։ Քահանայապետք՝ եկեղեցական պատժոց լիակատար ներողութիւն շնորհած էին անոնց, որ իրենց մեղացը վրայ զղջալով եւ զանոնք խոստովանելով, կամ անձամբ կամ օգնութիւն ընելով խաչակրաց մասնակից կ՚ըլլան։ Ասոր մէջ մնած զեղծմունքները, եկեղեցւոյ յանցանք չեն կրնար սեպուիլ։ Ինչպէս կ՚երեւայ ներողութեանց յաճախ շնորհմամբը, ԺԳ. դարուն հրապարակական ապաշխարանքը բոլորովին վերցաւ։ Անկէ ետքը միայն խոստովանանքի ժամանակ ապաշխարանք կը տրուէր, որ ըստ մեծի մասին էին՝ աղօթք, պահք եւ ողորմութիւն։

### բ. Տօնք ու նուիրական ժամանակներ։

Տօներու թիւն այս ժամանակի շրջանին մէջ շատ աճեցաւ. յառաջուան տօներուն վրայ աւելցան՝ Ս. Աստուածածնի Անարատ Յղութեան, Ծննդեան ու Վերափոխման տօները։ Անկէ զատ Մարմնոյ եւ Արեան տօնը, զոր նախ Լիւդդիխի Հուգոն եպիսկոպոսն 1246ին իր թեմին մէջ հաստատեց ու ետքէն Ուրբանոս Դ. Քահանայապետը (1264) բովանդակ եկեղեցւոյ համար հաստատեց։ Ննջեցելոց տօնը՝ արեւմուտք 998էն սկսեալ կար։ — Այս ընդհանուր տօներէն զատ, ամէն գաւառ ու ամէն թեմ իր առանձին տօներն ունէր։

Յոբելեաններն ալ այս ժամանակի միջոցիս մէջ կ՚իյնան։ Բոնիփակիոս Ը. Քահանայապետը 1300ին Յոբելեան ըսուած ներողութիւնը հաստատեց, որ հարիւր տարի մէյմը կը տրուէր. բայց ետքէն 25 տարի մէյմը սկսաւ տրուիլ։ Ասով բովանդակ աշխարհքիս վրայ գտնուող քրիստոնեայք պիտ՚որ իմանային, որ Աստուծոյ նոյն տանը մէջ կը բնակին եւ մի եւ նոյն շնորհաց աղբիւրէն կը խմեն։

### գ. Նուիրական բանաստեղծութիւն, եկեղեցական ճարտարապետութիւն ու նկարչութիւն:

Նուիրական բանաստեղծութիւնն ու եկեղեցական ճարտարապետութիւնն աստուածաբանական հրահանգաց հետ (տես Հ. 72) անմիջական կապակցութիւն ունին: Այս ժամանակի միջոցիս մէջ շատ եկեղեցական երգեր շինուեցան (Եկ Ս. Հոգի. Կայր առ խաչին եւ այլն), որոնք իրենց խորին իմաստից լիութեամբն եւ անպաճոյճ պարզութեամբը, մշտատեւ յարգ մը ստացած են: — Այս ժամանակէս մնացած են նաեւ անթիւ անհամար եկեղեցական շէնքեր: Եկեղեցական ճարտարապետութեան հոգին՝ արեւմուտք առաջին անգամ խաչակրութեանց ժամանակ արթնցաւ: Բիւզանդեան ոճով շինուած արեւելքի մեծագործ եկեղեցիներուն տեսքը, խաչակիրները գրգեց նոյնպիսի շինուածներ իրենց հայրենիքն ալ կառուցանելու: Աւստի եւ ամէն տեղ նոյն ձեւով մեծ եկեղեցիներ ու վանքեր շինուեցան: Հոհենշդաուֆեանց ժամանակ Բիւզանդեան ու Հռոմէական ձեւին տեղ, Գոթական կամ լաւ եւս Գերմանական ճարտարապետութեան ձեւը յաջորդեց: Այս կերպ ճարտարապետութեան հոյակապ յիշատակարաններն ԺԳ. ու ԺԴ. դարէն են, ինչպէս Գրիեքի Աստուածածնի եկեղեցին, Մարպուրկի Ս. Եղիսաբէթի եկեղեցին, Կոլոնիայի, Ռեկենսպուրկի ու Շդրասպուրկի մայր եկեղեցիները: Ասոնք մինչեւ հիմայ դեռ կանգուն կեցած են, եւ մարդկանց բնակութիւններէն վեր կը շողան: Իրենց բոլորտիքն եղած տուներն ինկան կործանեցան եւ դարձեալ կանգնուեցան. սովորութիւնները, լեզուներն ու սահմանագրութիւններն իրենց չորս դին փոխուեցան, բայց իրենք անխախտ ու անսասան մնացին, եւ իրենց մեծայաղթ ու երկնաբերձ շինուածքովը՝ հետագայ դարերուն մարդկան կը ցուցընեն ան ազնուական անձինքներուն բարձր բանաստեղծական եւ խորին կրօնական զգածումը, որոնք այսպիսի գործքեր յառաջ բերին: Գոթացի ճարտարապետութեան ձեւը բոլոր քրիստոնեայ արեւմուտք Իտալիա, Գաղղիա ու Անգ-

դիտ տարածուեցաւ։ Ճարտարապետութեան հետ ի միասին նկարչութիւնն ալ եկեղեցւոյ ծառայութեան մէջ սքանչելի պտուղներ ցուցուց։ Որո՞ւն ծանօթ չէ Լէոնարդոս տը Վինչի, Ռաֆայէլ, Հոլպայն, Ալպէրդոս Տիւրէր եւ ուրիշ նմաններուն անունները։

### 77. Սրբոց եւ անոնց նշխարաց յարգութիւնը։

Սրբոց յարգութիւնը քրիստոնէի մը համար շատ բնական բան է. որչափ որ քրիստոնեայ մը իր վախճանն աչքին առջեւն ունի, այնչափ աւելի մեծ կ'երեւան իրեն անոնք, որ ծանր աշխատութեամբ ու մեծամեծ զոհերով՝ այս վախճանին արդէն հասած են, եւ իրենց հաւատոյ մեծ զօրութիւնը, աշխարհքի ու անձին ուրացութիւնը, եւ բոլորանուէր սէրն իրենց ժամանակակից ու ապագայ դարերուն իբրեւ նմանելու օրինակ ձգած են։ Սրբոց յարգութեան սկիզբը, քրիստոնէութեան մինչեւ ամէնէն հին ատենները կը հասնի։ Բայց ի Ս. Կոյս Մարիամ Աստուածածնէն եւ Հին կտակարանի սուրբերէն, զորոնք նոյն իսկ Աստուած յայտնած է, քրիստոնէութեան առաջին ժամանակները միայն մարտիրոսք իբրեւ սուրբ կը մեծարուէին։ Այս ժամանակի միջոցիս սրբոց յարգութիւնն աւելի որոշ կերպարանք առաւ։ Ի մասնաւորի մեծարանք ու պատիւ կ'ընծայուէր Ս. Կոյս Մարեմայ. Վարդարանի Եղբայրակցութիւնը, որ խաչակրաց ժամանակ սկսաւ, ընդհանուր ամէն կողմն մեծ ընդունելութիւն գտաւ։

Սրբոց յարգութեան հետ կից է անոնց նշխարաց յարգութիւնը։ Սրբոց մարմինները մեծարելը, որ քրիստոնէութեան չափ հին է, այս ժամանակի միջոցիս աւելի որոշ կերպով յայտնուեցաւ։ Բայց ինչպէս ամէն բարի բանի գործածութեան, նոյնպէս աս մէջ զեղծումներ մտան։

Գլխաւորաբար խաչակրաց ատեն՝ արեւելքէ սրբոց մասունքներով սկսան առուտուր ընել, որուն դէմ եկեղեցին միշտ զինեցաւ, եւ պատուիրեց որ առանց իր հաւանութեանը սրբոց մասունքի մը հրապարակաւ յարգութիւն չընծայուի։ — Սրբոց նշխարաց յար-

գութեան հետ կապակցեալ էին Ուխտագնացութիւն-ները, որոնք քրիստոնեայք իրենց եռանդը բորբոքելու եւ կամ մեղացը վրայ ապաշխարելու համար կ'ընէին։ Անուանի ուխտատեղիներն էին՝ Երուսաղէմ, Հռոմ, Դուր՝ Գաղղիայի ու Գոմբոստելլա՝ Սպանիայի մէջ։

Սրբացուցման իրաւունքը՝ զոր յառաջագոյն եպիսկոպոսք ունէին, ԺԲ. դարէն սկսեալ Քահանայապետք իրենց վերապահեցին, զանազան անկարգութեանց ու զեղծմանց առջեւն առնելու համար։ Սըրբացուցման կերպն Ուրբանոս Ը. Քահանայապետն որոշեց, որ հետեւեալ եական կէտերուն վրայ հիմնեալ է։ Ուղղափառ եկեղեցին հիմայ ալ հրաշքն իբրեւ իր աստուածային հաստատութեան ցոյց կը համարի։ Կը հաւատայ միանգամայն՝ որ Աստուած իր ամենակարողութեան այս ցոյցերն յարդիւնս բերելու համար, գլխաւորաբար իւր բարեկամները կ'ընտրէ, այնպէս որ կենդանութեան ժամանակն իրենց ձեռքով, իսկ մահուանէն ետքը՝ իրենց գերեզմաններուն վրայ՝ իրենց նշխարացը միջոցաւ, եւ կամ իրենց բարեխօսութեամբը-սքանչելիք կը գործէ։ Ուստի երբոր եկեղեցին այնպիսի պատահարաց խելամուտ կ'ըլլայ՝ որոնք հրաշք կ'երեւան, անմիջապէս անոնց վրայ հրապարակաւ խիստ ու հիմնական քննութիւններ ընել կու տայ։ Եթէ այս քննութիւններն աներկբայ կը ցուցընեն, որ եղած դէպքն իրական հրաշք է, եւ հաւատացեալներէն մէկէ մը գործուած կամ անոր հետ անմիջական յարաբերութիւն մ'ունի, ան ատենն նախ Երանեցուցման վճիռը կու տայ, այսինքն կը հրատարակէ՝ որ այս կամ այն հանգուցեալը՝ եղած անուրանալի ցոյցերուն համեմատ, Աստուծոյ հաղորդութեան մէջ կը գտնուի։ Բայց եկեղեցին այսչափ բաւական չհամարելով, կը պահանջէ որ չէ թէ միայն մէկ, հապա մէկ քանի այսպիսի ստոյգ դէպքեր ըլլան. հանգուցելոյն ամբողջ կեանքը մանաւանդ վերջին ամէն ստգտանքէ ազատ ըլլայ, եւ վերջապէս մահուան վրայ բաւական ժամանակ անցած ըլլայ։ Երանեցուցմամբ միայն եկեղեցւոյ մէկ մասին հրաման կը տրուի մեռեալ հաւատացելոյն յարգութիւն ընծայելու։ Երանեցուցման կը յա-

Ջորդէ Սրբացուցումը, որմէ ետքն ամէն հաւատացելոց կը յանձնուի՝ որ սրբոյն բարեխօսութիւնը խնդրեն։ Սրբացուցման վճռովը՝ Նախընթաց երանեցուցման վճիռն ալ կատարելապէս կը հաստատուի։ — Եկեղեցին ասով կ'ուզէ հաւատացելոց աչքին առջեւը դնել այն ճշմարտութիւնը, որ պատերազմող ու յաղթանակող եկեղեցւոյ անդամներն իրարու հետ սերտ հաղորդակցութեան մէջ են, եւ միանգամայն հաւատացելոց առջեւը հետեւելու գեղեցիկ օրինակներ ընծայեցընել։

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԼՈՒԹԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԸ

**1517—1870.**

---

### 78. *Նախաշաւիղ:*

*Երբոր աշխարհքիս վրայ դէպք մը կը պատահի, որ եղած իրաց կարգը վեր ի վայր կը շրջէ, եւ անոր տեղ նոր կարգաւորութիւն մը կը դնէ, սոյն դէպքը հասարակօրէն իր զօրութիւնն ինք իրմէ չ'առնուր, հապա ժամանակին յարաբերութեանց մէջ արդէն պատրաստուած կը գտնէ: Անիկայ կրնանք ի մասնաւորի ըսել ԺԶ. դարուն եկեղեցւոյ հերձուածին համար: Այս միջոցիս եղած կրօնական յեղաշրջութիւնն առանձնականաց գործքը չէր, որոնք այլեւայլ կուսակցութեանց գլուխն անցած էին, հապա անոր բուն պատճառ եղան բազմապատիկ անկարգութիւնները, որոնք շատոնց ի վեր եկեղեցական-կրօնական կենաց սահմանին մէջ ասդին անդին երեւան ելած էին: Ինչու որ դժբախտութեամբ չի կրնար ուրացուիլ՝ որ այս շրջանիս սկիզբն եկեղեցւոյ մէջ շատ անկարգութիւններ ու թուլութիւններ կային: Այն կենսաբեր հոգին՝ զորն որ Գրիգոր Է. քահանայապետն եկեղեցւոյ շնչած էր, միշտ եկեղեցւոյ մէջ չմնաց: Գրիգոր Է.ին յաջորդներէն ոմանք՝ ինչպէս Աղեքսանդր Զ. ու Յուլիոս Բ., եկեղեցին իր հոգւոյն ու մտաց համաձայն չկառավարեցին, այլ հաւատացելոց բարւոյն միտ չդնելով՝ անձնական վախճաններու ետեւէ եղան: Ասով քահանայապետական աթոռոյն յարգն ու պատիւը նուազեցաւ, եւ Գլխէն չար օրինակ մը տրուեցաւ՝ որ եպիսկոպոսաց, ստորին կղերին, վանականաց ու բոլոր քրիստոնեայ ժողովրդոց վրայ գէշ ազդեցու-*

թիւն մը յառաջ բերաւ։ — Եպիսկոպոսական աթոռ-
ներուն վրայ՝ ժամանակ ժամանակ այնպիսի անձինք
նստան, որոնք բարձրագոյն աստուածային կոչում չու-
նէին, եւ միայն ժամանակաւոր շահու համար եկեղե-
ցական աւագութիւնը յանձն առած էին. ուստի ժո-
ղովրդեան հոգեւոր օգտին հոգ չտանելէն զատ, ժա-
մանակնին աշխարհային զբաղմունքներով եւ երբեմն
նաեւ կռիւներով ու պատերազմներով կ՚անցընէին։
Ոմանք ալ մէկ քանի եպիսկոպոսական աթոռներ ի-
րենց տակն ունէին, ինչպէս Ալբերդոս Պրանտենպուր-
կեան արքեպիսկոպոսը, դեռ 24 տարուան երիտասարդ
հասակին մէջ՝ Մոգունտիայի (Մայնցի) ու Մագտե-
պուրկի արքեպիսկոպոսական եւ Հալպէրշդատի եպիս-
կոպոսական աթոռներն իր իշխանութեան տակը միա-
ցուցած էր։ Գերմանիա՝ ուր եպիսկոպոսք նաեւ եր-
կրի իշխանք էին, եպիսկոպոսաց վիճակը շատ աւելի
գէշ էր. ինչու որ անոնք աշխարհային իրողութեանց
պատճառաւ քաղաքական իշխանութեանց հետ ստէպ
դժտութիւններ ու տարաձայնութիւններ կ՚ունենայ-
ին։ — Եկեղեցականաց մեծ մասն իրենց հովուաց օրի-
նակին հետեւելով՝ իրենց վիճակին մէջ միայն հարըս-
տութիւն ու գիրութիւն կը փնտռէին. քահանայա-
կան կրթութիւն, ընտիր ու անսգիւտ քաղաքավարու-
թիւն չունենալով՝ իրենց հօտին հովիւ չէին, հապա
վարձկանք էին։ — Վանքերը՝ որոնք ԺԲ. դարէն վեր
զարմանալի կերպով յառաջացած եւ գիտութեամբ
ու աստուածպաշտութեամբ քրիստոնէութեան մե-
ծամեծ օգուտներ բրած էին, նոյն բարձրութեան մէջ
չմնացին. Հաւաքած հարստութիւննին՝ որ միշտ աճե-
լու վրայ էր, նախնի խիստ հրահանգաց թողնալուն
պատճառ եղաւ, ուստի պէսպէս անկարգութիւններ
ծնան. մանաւանդ որ շատերն առանց ճշմարիտ կոչում
ունենալու, պարզ արտաքին շարժառիթներէ ու ա-
նարգ աշխարհային նկատմունքներէ գրդեալ, վանա-
կան կեանքն ընդունած էին։ — Յայտնի է որ այս ա-
մէն չարիքները՝ ժողովրդեան կրօնական-բարոյական
վիճակը յոռեցընելու պատճառ կ՚ըլլային։ Թէեւ Մի-
ջին դարը շատ աղէկ բաներ ալ կ՚ընծայեցընէ, եւ

շքեղ ու հոյակապ եկեղեցիները, մեծայաղթ բարե-
գործական հիմնարկութիւնները, եկեղեցական դպրոց-
ներն ու համալսարանները՝ որ այս միջոցիս ամենէն
ծաղկեալ վիճակի մէջ էին, եւ պէսպէս օգտակար
գիւտերը, նոյն աւենուան քրիստոնէից ազնուական
ու վեհ զգածմանցը ցոյց են, բայց չի կրնար ուրա-
ցուիլ որ մի եւ նոյն ժամանակ մեծամեծ պակասու-
թիւններ ալ կային՝ ինչպէս են ներքին բարեպաշտու-
թեան պակասութիւն, եկեղեցական կենաց անտար-
բերութիւն, կրօնական իրաց տգիտութիւն ու բարուց
ապականութիւն։ Սակայն ժողովրդեան այս ողբալի
վիճակին պատճառը միայն վերոյիշեալ չարիքները
չէին, այլ մեծաւ մասամբ նաեւ յառաջ կու գային
հռոմէական պետութեան կործանմանէն ետքը քրիս-
տոնէութեան դարձող ազգաց անկրթութենէն ու
բռտութենէն, զորս որ եկեղեցւոյ տուած դաստիարա-
կութիւնը չէր կրցած բոլորովին վերցընել։ Ասոր հա-
մար Եկեղեցին ի գլուխն եւ յանդամս նորոգելու աղա-
ղակը շատոնց արդէն կը լսուէր, որուն ձայնակից եղան
նոյն իսկ մէկ քանի սուրբեր։ Բայց որպէս զի այս նո-
րոգութիւնը բարեյաջող ելք ունենար, հարկ էր որ
նոյն իսկ եկեղեցիէն ելլէր, այսինքն Քրիստոսի եկե-
ղեցւոյ տուած փրկութեան միջոցաց ձեռքով՝ իր ան-
դամոց մեռեալ հոգին վերստին կենդանանար, եւ ա-
պականեալ մասերն իրմէ հեռանային*։ Բայց դժբախ-
տութեամբ այս նորոգութիւնն եկեղեցւոյ մէջէն չե-
լաւ, հապա դրսէն. այնպէս որ նորոգողութիւնն աւերիչ
յեղափոխութեան մը դարձաւ, եւ հերձուած մը յա-
ռաջ բերաւ՝ որ Գերմանիայի կէսն եկեղեցիէն բաժ-
նեց, եւ բովանդակ Եւրոպայի վրայ մեծամեծ ազդե-
ցութիւն ունեցաւ։

* Յառաջագոյն ալ ժամանակ ժամանակ եկեղեցւոյ մէջ անկարգութիւններ ելած էին, զորոնք Եկեղեցւոյ հոգւովը վառեալ անձինք ուղղեցին, իրենց առաքինութ. ունենալով այն սկիզբը, զորն որ ետքէն հինգերորդ Լատերանեան ընդհանուր ժողովը (1512—1517) յայտնի քարոզեց. այսինքն թէ՝ Մարդիկ զսուրբը պէտ'որ չնորոգեն, հապա իրենք սրբոյն ձեռքով պէտ'որ նորոգուին։

## 79. Լութեր եւ Նորոգողութեան սկիզբը:

Այս նորոգութեան սկիզբը բնաղն եղաւ Մարտին Լութեր, աղքատ գեղացւոյ մը որդին, որ 1483ին Նոյեմ. 10ին Սաքսոնիայի Այսլեպէն քաղաքը ծնած է: Ի բնէ գեղեցիկ ձիրքերով զարդարուած ըլլալով, իր սկզբնական ուսումը մեծ յաջողութեամբ Մագտեպուրկ, Այզէնախ ու Էրֆուրդ սորվեցաւ, եւ այս վերջին քաղաքն է մանաւորի ինք զինքն իրաւագիտութեան տուաւ: Սակայն հասակին քսանուերկուերորդ տարին յանկարծական դէպքէ մը շարժեալ՝ հօրը կամացը դէմ Աւգոստինեանց կրօնք մտաւ: Հոս աստուածաբանութիւն սորվեցաւ, եւ շարունակ Ս. Գիրքն ու Ս. Աւգոստինոսի գործքերը կը կարդար եւ մեծ փութով հոգեւորական կրթութեանց կը պարապէր: Բայց մի եւ նոյն ժամանակ խղճի անհանգստութիւն ու ներքին տժգոհութիւն մը զինք անդադար կը նեղէր: Քահանայ ձեռնադրուելէն ետքը՝ Վիդդէնպերկի համալսարանը փիլիսոփայութեան դասատու դրուեցաւ, ուր Լութեր իր միայն սրութեամբն ու բնական ճարտարախօսութեամբը քիչ ատենուան մէջ մեծ անուն հանեց: Յամի 1510ին կրօնին գործոյը պատճառաւ իր կրօնակից եղբարքը զինքը Հռոմ խաւրեցին, ուր մեծ ջերմեռանդութեամբ սուրբ տեղեաց ու եկեղեցեաց այցելութիւն ըրաւ: Հռոմէն Վիդդէնպերկ դառնալով՝ աստուածաբանութեան ուսուցիչ անուանուեցաւ եւ սկսաւ հրապարակաւ վարդապետել եւ Ս. Գիրքը մեկնել: Նոյն միջոցին արդէն Ս. Պօղոսի թղթերն ու Ս. Աւգոստինոսի գրքերը ծուռ հասկընալով, Լութեր մոլորական կարծիքներ սկսաւ պաշտպանել, գլխաւորաբար մարդուն ազատութեան վրայ: Լութեր կը վարդապետէր թէ մարդուն ազատ կամքը՝ միայն չար կրնայ գործել, եւ մարդը միայն հաւատքով ու Քրիստոսի արդիւնքներուն հաւատալով կ՚արդարանայ, ուստի եւ բարեգործութիւններն օգուտ մը չունին, մանաւանդ թէ մեղք են: Լութեր կը կարծէր՝ որ մարդուն գործակցութիւնն իր արդարացուցման գործոյն մէջ ոչնչացընելով եւ զանիկայ բոլորովին Աստուծոյ

ընծայելով, զԱստուած աւելի կը փառաւորէ։ Այս տեսանց բարի գործոց՝ միայն հաւատքով փրկութեան հասնելու վարդապետութիւնը՝ Լութեր արդէն 1515—1517ի մէջ կը պաշտպանէր, ինչպէս նոյն միջոցին գրած թղթերէն կ'երեւայ. բայց անտարակոյս առանց այն հետեւութիւնները մտքէն անցընելու՝ որոնք անկէ կրնային յառաջ գալ։ Ինք կը համարէր թէ նոր Աւետարան մը գտած եւ զանիկայ աշխարհքիս քարոզելու կոչուած ըլլայ*։

Այսպէս Լութեր իր նոր վարդապետութեան յօրինուածութեանը մէջ ըստ բաւականի յառաջանալէն ետեւ, շատ չանցաւ առիթն ալ պատահեցաւ հրապարակաւ աշխարհքիս առջեւն ելլելու։ — Յուլիոս Բ. Քահանայապետը՝ մեծ գաղափար մ'ունեցած էր քրիստոնէական աշխարհքին մայրաքաղաքը Հռոմ, ի պատիւ Ս. Պետրոսի՝ առաքելոց իշխանին, բովանդակ քրիստոնէութեան դրամական նպաստիւքն ու ձեռնտուութեամբը հոյակապ ու մեծակառոյց եկեղեցի մը շինելու, որ միանգամայն իրենց հաւատոյ միութեան արտաքին ցոյց մը պիտ'որ ըլլար։ Այս վախճանիս համար՝ նախ ինք ու ետքէն իր յաջորդը Լեւոն Ժ., ըստ նախնի սովորութեան ամէն երկիրներու մէջ լիակատար ներողութիւն հրատարակել տուաւ անոնց, որոնք ճշմարիտ զղջմամբ խոստովանանք կ'ըլլան, եւ եկեղեցւոյ շինութեան այս բարի վախճանին համար դրամական օգնութիւն մը կ'ընեն։ Այս դրամական նպաստները ժողվելու պաշտօնը՝ եպիսկոպոսք մասնաւոր քարոզիչներու ըստ մեծի մասին կրօնաւորաց կը յանձնէին, որոնք շատ անգամ ներողութիւնը փոխելու մէջ չափը կ'անցընէին։ Գերմանիա այս պաշտօնը՝ Մոգունտիայի արքեպիսկոպոս Ալբերտոս Բրանտենպուրկեան կայսրընտիրը՝ Յովհաննէս Դէցլ Դոմինի-

* Լութեր կը ջանար իր մոլար կարծիքները Պօղոս առաքելոյն թղթոց մէկ քանի տեղերէն (Թղթ. առ Հռոմ. Գլ. Գ. 28) հաստատել, զորոնք ուզածին պէս կը մեկնէր, կը կրճատէր ու կը խարդախէր։ Պօղոս առաքեալն ուր որ հաւատքով արդարացուցման վրայ կը խօսի, հաւատք ըսելով՝ կ'իմանայ կամ ըստ առարկական մտաց՝ Քրիստոսի ձեռքով հաստատուած փրկութեան ամբողջ հիմնարկութիւնն ընդդէմ Մովսիսական օրինաց, եւ կամ ըստ ենթակայական մտաց՝ կենդանի ոգւոյն գործնական սէրը հետն ունեցող հաւատքը. բայց ոչ երբեք Լութերը նոր գտած ըլլալուն պարզ վստահութիւնը։

կեան կրօնաւորին յանձնած էր։ Ներողութեան քարոզութեան լուրը Վիթդենպէրկ հասնելուն պէս, Լութեր անոր դէմ ելաւ եւ ներողութեան վաճառման դէմ սկսաւ քարոզել. թէեւ ինչպէս ինք կը խոստովանի, ներողութեան ինչ ըլլալը չէր գիտեր։ Լութեր այսչափ բաւական չհամարելով՝ 1517ին ներողութեան վրայ 95 նախադասութիւն ալ գրեց, եւ զանոնք Վիթդենպէրկի Ամենայն Սրբոց եկեղեցւոյն դրան վրայ փակցընել տուաւ, ծանուցանելով որ զանոնք ամէնուն դէմ պաշտպանելու պատրաստ է։ Այս նախադասութիւնները տպագրութեան միջոցաւ բոլոր Գերմանիա տարածուեցան, եւ թէեւ Լութեր անոնց մէջ բուն ներողութեան էութեան դէմ չէր խօսեր*, հապա զանիկայ հրատարակողներուն անկարգ կերպին դէմ, սակայն եւ այնպէս հասարակաց ըմբռնումն այս հրատարակութիւնն իբրեւ եկեղեցւոյ դէմ ուղղուած յարձակում նկատեց, եւ ծափահարութեամբ ընդունեցաւ։ *

Այս զարմանալի երեւութին պատճառը՝ Գերմանիայի նոյն ատենուան ներքին հանգամանքներն էին։ Ժողովուրդը սաստիկ ատելութիւն ունէր թէ՛ բարձրաստիճան ու թէ՛ ստորին կղերին դէմ, ըստ մասին իրենց տգիտութեան ու զեղծ վարուց պատճառաւ, եւ ըստ մասին աշխարհական իշխանութիւն վարած ատեննին ցուցուցած կողմնակալութեանը համար, եւ այս ատելութիւնը քիչ մը ետքն եկեղեցւոյ դէմ դարձաւ, ինչու որ կղերականք անոր պաշտօնեաններն էին։ Ազնուականք ու ասպետք՝ եկեղեցականաց դէմ զայրացած էին, որովհետեւ իրենց դրդելովը Մաքսիմիլիանոս կայսրն յափշտակիչ ու աւազակաբարոյ ասպետներուն անկարգութեանցը դէմ խիստ օրէնքներ հրատարակած էր. ասոնք ալ եկեղեցական կամ քաղաքական յեղափոխութեան մը կը բաղձային, եւ զԼութեր ասոր իբրեւ յարմար գործիք կը համարէին։ Վերջապէս շատերն ալ իսկզբան Լութերի հետ միացան չէ թէ եկեղեցւոյ դէմ ելլելու դիտմամբ, հապա իրեն ձեռնարկութիւնն իբրեւ բարի ու օգտակար կը համարէին, եւ զինքն ալ իբրեւ Աստուծմէ ընտրեալ գործիք, այն նորոգութիւնն ի գլուխ հանելու, որուն շատոնց կը փափաքէին։ Սակայն ասոնք ետքէն իրմէ բաժնուեցան, երբոր տեսան որ իր միտքը չէ թէ եկեղեցին նորոգել էր, հապա հին եկեղեցւոյ աւերակացը վրայ նոր եկեղեցի մը հաստատել։

Լութերի բոլոր Գերմանիա գտած այս ընդհանուր հաճութիւնը սրտին մէջ իր վրայ մեծ համարում

* Մանաւանդ թէ այս նախադասութեանց 71 երորդը յայտնի կ'ըսէ թէ՝ Ով որ քահանայապետական կամ առաքելական ներողութեանց դէմ կը խօսի, անիծեալ ու նզովեալ ըլլայ։

մը ծնաւ, որ իր հակառակորդաց ընդդիմադրութեանցն աւելի եւս մեծցաւ։ Դէցլ՝ որ նոյն ատենը Ֆրանկֆուրդ կը գտնուէր, իր յառաջուան վարպետին Վիմբինայի օգնականութեամբը, Լութերի նախադասութեանց դէմ 156 հակառակ նախադասութիւններ հրատարակեց, որոնց մէջ ներողութեան վրայ եկեղեցւոյ հին վարդապետութիւնը կը մեկնէ եւ Լութերի մոլորութիւնները կը խայտառակէ։ Իրմէ զատ ուրիշ գիտուն անձինք ալ Լութերի դէմ ելան, ի մասնաւորի Պրիէրիաս հռոմայեցին ու Յովհաննէս Էք անուանի աստուածախօսն ու Ինկոլշդադի համալսարանին ուսուցիչը, որ իր Կոլնօտ ըսուած գրքին մէջ՝ Լութերի մոլորութեանց Պոհեմիայի հերետիկոսաց (Հուսեանց) սկզբանցը հետ ունեցած մերձաւորութեանը մատդիր կ'ընէր։ Այս ընդդիմադրութիւնը նորոգիչը շատ գայրացուց, այնպէս որ սաստիկ թշնամանաց խօսքերով սկսաւ իր հակառակորդներուն դէմ գրել, եւ նորանոր մոլորութիւններ ու այլանդակ կարծիքներ պաշտպանել, որոնք գուցէ թէ առանց իր գիտնալուն եւ ուզելուն, զինք եկեղեցւոյ հետ յայտնի հակառակութեան մէջ կը ձգէին։ Այս միջոցիս երեւան հանեց ան սկիզբը թէ՝ միայն Ս. Գիրքն է հաւատոյ կանոն, որուն դէմ աւանդութիւնն եւ ընդհանուր ժողովոց որոշմունքներն արժէք մը չունին։ Նոյն սկզբան վրայ հիմնեալ, Լութեր սկսաւ յայտնի քարոզել այն մոլար վարդապետութիւնը, որ փրկութեան հասնելու համար միայն ի Քրիստոս եւ իր փրկարար մահուան հաւատալ հարկաւոր է, իսկ բարի գործք պէտք չէ. դարձեալ թէ սկզբնական մեղքէն ետքը մարդն ազատութիւնը կորսնցուցած է։

Լեւոն Ժ. Քահանայապետը՝ Լութերի այս մոլորութեանց պատճառաւ Գերմանիա ելած շփոթութիւնները լսելով, ջանաց իմաստուն եւ խոհեմ պատգամաւորաց ձեռքով Լութերի խելքը գլուխը բերելու եւ զինքն իր մոլորութիւններէն ուղղելու, սակայն ամէն փորձերը պարապ ելան։ Լութեր իր մոլար կարծեաց մէջ յամառ մնաց, եւ օրէ օր աւելի յանդգնութիւն առնելով՝ մինչեւ ան ատեն Քահանայա-

պետին ցուցուցած կեղծուպատիր ձեռնարկներն ալ մեկդի ձգեց, եւ սկսաւ անամօթութեամբ իրեն դէմ խօսիլ ու գրել։ Եւ կանխատես ըլլալով՝ որ Քահանայապետը զինքն իր մոլորութեանցը համար պիտ'որ բանադրէ, կանխնական իրաւանց դէմ՝ Քահանայապետէն առ ընդհանուր ժողով բողոքեց։ Այս միջոցին Հուշակաւոր Յովհաննէս Էքին, եւ Լութերի վարդապետութեանց խիստ ջատագով Անդրէաս Գարլշդատի մէջ Լայբցիկի համալսարանին առջեւը վիճաբանութիւն մ'ալ եղաւ, որուն Լութեր ալ ներկայ գտնուեցաւ, եւ ինչպէս ինք կը խոստովանի յաղթուեցաւ*։ Այս պարտութիւնն ամբարտաւան Նորոգչին ունայնասիրութիւնը ստուգիւ ի խոր խոցեց, եւ իր կենացը մէջ երեւելի փոփոխութիւն մը յառաջ բերաւ։ Մինչեւ աս ատեն՝ Լութերի եկեղեցւոյ դէմ ցուցուցած հակառակութիւնը քիչ շատ անդիտութեամբ էր, բայց ասկէ ետքը դիտութեամբ յամառ կռիւ մը սկսաւ եկեղեցւոյ դէմ, եւ բոլոր կամքի անոր վարդապետութիւնները մէկիկ մէկիկ մերժել։ Լութեր ուրիշ կերպ ալ չէր կրնար ընել, ինչու որ ա՛լ իրեն համար արժէք չունէր ուղղափառ հաւատոյ այն հիմնական սկիզբը՝ թէ ամէն հաւատացեալ պարտական է հնազանդիլ եկեղեցւոյ ներկայ ու տեսանելի հեղինակութեան։

### 80. Քահանայապետին ու կայսեր Լութերի դէմ բռնած ճամբան:

Լեւոն Ժ. Քահանայապետը վերջապէս տեսնելով՝ որ երեք տարուան մէջ զԼութեր ուղիղ ճամբու բերելու համար բրած ամէն փորձերն արդիւնք մը չունեցան, հարկ սեպեց խստագոյն միջոցներու ձեռք զարնել։ Ուստի 1520ին Յուլիսի 15ին կոնդակ մը հանեց, որուն մէջ Լութերի գրուածքներէն քաղուած 41 նախադասութիւն իբրեւ մոլորական, դատ-

* Լութեր՝ իր Սպալատինի բարեկամին գրած մէկ թղթին մէջ կ'ըսէ թէ՝ վիճաբանութիւնն իրեն համար դէշ վերջ ունեցած է։ Նոյնը կը հաստատեն նաեւ վիճաբանութեան արձանագիրը, Լեօվէնի ու Կողոնիայի համալսարաններուն տուած վճիռները, եւ Լայբցիկի համալսարանին դէմ իբրեւ յաղթող ողջունելը։

թակղեցուցիչ եւ ուղղափառ հաւատոյ հակառակ նշանակելէն ետքը, Լութերի նզովք կը սպառնայ եթէ երկու ամսուան միջոցի մէջ զանոնք ետ չի կանչեր: Թէեւ Կոնդակին ընդհանրապէս շատ չափաւորութեամբ գրուած էր, եւ աւելի հայրական ազդարարութիւն քան թէ պատժիչ խստութիւն կը բովանդակէր, սակայն եւ այնպէս Լութեր չխոնարհեցաւ: Ընդ հակառակն կոնդակին Գերմանիոյ մէկ քանի քաղաքները գտած ընդդիմադրութեանց քաջալերուած (Գերմանիա կոնդակը հրատարակողը հաշակաւոր Էքն եղաւ), յանդուգն գործքերու ձեռնարկեց: Վիդդենպէրկ քաղքին դռան առջեւը կրակ վառել տալով՝ բազմաթիւ ուսանողաց առջեւ հին կանոնական իրաւանց գրքերն ու Քահանայապետին կոնդակը մէջը նետեց ըսելով՝ Որովհետեւ դուն Աստուծոյ Սուրբը վրդովեցուցիր, ուրեմն ալ յաւիտենական հուրը վրդովեցնէ զքեզ: Լութեր իր այս ամպարիշտ գործքը՝ յիմարական ու այլանդակ գրուածքով մը բովանդակ աշխարհքիս ծանոյց: Առոր վրայ Քահանայապետը չուզեց ալ աւելի երկայն ուշացընել դատապարտութեան վճիռը. ուստի զԼութեր եւ իր հետեւողները անանձին կոնդակով նզովեց (1521 Յունուար 3), որով ուղղափառ եկեղեցիէն բաժանումը կերպական ու կատարեալ եղաւ: Այսպէս Լութեր յամառ ամբարտաւանութեամբ, ստութեամբ ու մոլորութեամբ ուրիշ ամէն հերետիկոսաց ճամբուն հետեւեցաւ, որուն մէջ ցաւալի կուրութեամբ մինչեւ աւելի յառաջ երթալով՝ անդառնալի չարեաց պատճառ եղաւ:

Անկէ ետքը կը մնար գերմանական իշխանութեան օրինաց՝ հերետիկոսներուն դէմ սահմանած պատիժները Լութերի վրայ՚ի գործ դնել, որ մեծամեծ դժուարութեանց հետ կապուած էր, ինչու որ Լութեր արդէն Գերմանիա բաւ բաւական բազմաթիւ ու զօրաւոր կողմնակիցներ ունէր, որոնց մէջ երեւելի էին Սաքսոնիայի Փրիդերիկոս կայսրընտիրը, եւ Փիլիպպոս Մելանքթոն, որ Վիդդենպէրկ յունարէն լեզուի դասատու էր, եւ Լութերէ շատ աւելի հմուտ ու ծանրախոհ անձ մըն էր:

Ուստի Կարոլոս Ե. կայսրը, որ նոյն միջոցին (1520) Մաքսիմիլիանոս կայսեր յաջորդած էր, եւ ուղղափառ եկեղեցւոյ սատարիկ մէկ ունէր, տէրութեան մէջ խաղաղութիւնը հաստատելու համար՝ Վորմս աւագաժողով մը գումարեց, ուր Լութեր ալ եկաւ, կայսերմէ ապահովութեան թուղթ առնելէն ետքը։ Հոն Լութերի հարցուեցաւ թէ ինչ որ եկեղեցւոյ ու անոր վարդապետութեանցը դէմ խօսած կամ գրած է, կ'ուզէ պաշտպանե՞լ թէ ետ կանչել։ Լութեր իսկզբան շփոթեցաւ եւ մտածելու ժամանակ ուզեց, բայց Գերմանիայի մէկ քանի իշխաններէն գտած օգնութեան վրայ վստահացած, երկրորդ օրն իր մոլորութիւնները յամառութեամբ պաշտպանեց։ Ան ատեն կայսրն ու աւագանւոյն մեծագոյն մասը՝ Լութերի եւ իր հետեւողաց դէմ աքսորագրութեան վճիռ տուին։ Բայց վճիռն ի գործ չդրուեցաւ, ինչու որ Լութեր իմանալով՝ ժամանակէն յառաջ Վիդդենպէրկէն փախաւ եւ Փրիդերիկոս կայսրընտիրը զինքը ծպտեալ ասպետաց ձեռքով յափշտակել ու Վարդպուրկ բերդը տանել տուաւ, ուր ինն ամիս գրաւոր աշխատութեանց պարապելով անցուց։ Այս առանձնութեան մէջ Լութեր շարադրեց Պապական անհարկաւորութեան վրայ եւ Կրօնաւորական ուխտերուն դէմ գրուածքները. նոյնպէս հոս սկսաւ նաեւ Աստուածաշնչի գերմաներէն թարգմանութիւնը*։

Այս միջոցիս (1521 Դեկտ. 1) մեռաւ Լեւոն Ժ. Քահանայապետը, որ իր կարճատեւ կառավարութեան ժամանակ (1513—1521), աւելի արուեստից ու գիտութեանց փոյթ տարաւ, քան թէ եկեղեցւոյ օգտին։ Իրեն տեղ ընտրուեցաւ Ադրիանոս Ուդրեխդցի կարդինալը, Կարոլոս Ե.ին յառաջուան ուսուցիչը, որ գիտուն եւ միանգամայն արդարակորով անձ մըն էր։

* Բողոքականք սխալ կ'ուզեն կարծեցնել, որ Լութեր առաջինն եղաւ, որ Աստուածաշունչը գերմաներէնի թարգմանեց կամ այնպէս ըսելու [illegible]։ Բայց ասիկայ սուտ է. ինչու որ յայտնի պատմական ստուգութիւն մըն է, որ տպագրութեան գիւտէն մինչեւ Լութերի թարգմանութեան հրատարակութիւնը՝ միայն գերմաներէն լեզուաւ Աստուածաշնչի 20 կանուխ թարգմանութիւններ արդէն կային, 14ը գրաւոր լեզուաւ, իսկ 6ը հասարակ ժողովրդեան լեզուաւ։

Այս Քահանայապետն ամենայն փութով աշխատեցաւ թէ երթալով ճարակ գտնող Նորաղանդութեան դէմ կռուելու եւ թէ եկեղեցւոյ մէջէն այն անկարգութիւնները վերցընելու, որոնք անոր թշնամեացը գայթակղութեան պատճառ կ'ըլլային։ Ասոր համար շատ դժկամակութիւններ ունեցաւ, որոնցմէ մահը զինքն ազատեց (1523)։ Ադրիանոս վերջին օտարազգի քահանայապետն եղաւ. իրեն յաջորդեց Կղեմէս Է. Մետիչեան ցեղէն։

## 81. *Լութերի վարդապետութեանց պատճառաւ յառաջ եկած սաստիկ յուզմունքներ:*

Վորմսի աւագաժողովէն ետքը՝ Կարոլոս Ե. Գերմանիայէն հեռացաւ, եւ եօթը տարի Սպանիա մնաց։ Իր բացակայութեան ատեն՝ տէրութեան կառավարութիւնը Նիւռնպէրկ զանազան իշխաններէ կազմուած ժողովոյ մը ձեռքն էր, որուն գլուխն անցած էր կայսեր եղբայրը՝ ութեւտասնամեայ Ֆերդինանդոս արքիդուքսը։ Այս տկար ու անզօր կառավարութեան ժամանակ ոչ Լութերի դէմ գրուած տարագրութեան վճռոյն գործադրութեան, եւ ոչ Նորաղանդութեան տարածուելուն առջեւն առնուելու վրայ կրնար մտածուիլ։ Այսպէսով Լութերի մոլորութիւնները, եւ անոնցմէ յառաջ եկած անպիտան ու վտանգաւոր հոգին, չէ թէ միայն իշխանաց, ազնուականաց եւ ուսումնականաց մէջ սկսաւ տարածուիլ, հապա նոյն իսկ հասարակ ժողովրդեան եւ մինչեւ գեղացւոց մէջ, եւ ամէն տեղ խիստ վնասակար հետեւութիւններ ունեցան, եւ թէ կրօնի եւ թէ քաղաքական մեծամեծ յուզմունքներ պատճառեցին։ Լութերի կրօնակից եղբայրքը՝ Մայսէնի ու Թիւրինկէնի Աւգոստինեան կրօնաւորները։ Վիթէնպէրկ գումարած ժողովի մը մէջ իրենց մեծաւորին կամացը դէմ, պատարագը վերցուցին, կրօնի ուխտերը ջնջեցին, եւ իւրաքանչիւրոց ազատ ձգեցին վանքէն ելլելը։ Ասով վանքերը կամաց կամաց սկսան պարպուիլ, եւ կրօնաւորներն ու կուսանք աշխարհք մտնել։ Նոյն իսկ Վիթ-

դենպերկ՝ որ Լութերի վարդապետութիւնն այնպէս սիրով ընդունած էր, մեծամեծ շփոթութիւններ ելան, եւ կրօնի վերաբերեալ նիւթերու մէջ շատ փոփոխութիւններ եղան։ Այս խռովութեանց պատճառն էր Գարլշդատ, որ Լութերի Վարդպուրկ կեցած ատենը յարմար առիթ սեպելով, իր միտքը դրած կատարել ու բարբարոսական նորոգութեանցը ձեռք զարկաւ։ Գարլշդատ շատ մը ուսանողներու, կարգուրաց կրօնաւորներու եւ բանուորներու գլուխն անցած, եկեղեցիներուն մէջ կը մտնէր, խաչերն ու արձանները կը կոտրէր, պատկերներն ու քահանայական զգեստները կը պատռէր ու ոտքի տակ կը կոխկռտէր։ Ինք եւ իր կողմն եղողները սկսան հրապարակական պատարագը գերմաներէն ընել, վերացուցում չէին ըներ, հաղորդութիւնն երկու տեսակաւ կը մատակարարէին եւ խոստովանանք չեղած սրբութիւն առնել կուտային։ Գարլշդատ աշխարհային կամ արտաքին գիտութեանց ալ դէմ էր, եւ Աւետարանին այն խօսքը յառաջ բերելով թէ՝ Իմաստուններէն ու գիտուններէն ծածուկ մնացած բաներն Աստուած պարզամիտներուն կը յայտնէ, խաղախորթներուն ու հօշկակարներուն խանութները կ'երթար, որպէս զի Ս. Գիրքն անոնց մեկնել տայ։ Լութեր Վարդպուրկ այս ամէն բան լսելով կայսրընտրին կամացը դէմ իր առանձնութենէն ելաւ Վիդդենպերկ եկաւ, ուր հարկ եղաւ բովանդակ ազդեցութիւնն ի գործ դնել, որպէս զի իրեն ապստամբած աշկերտներուն յանդգնութիւնը զսպէ։ Գարլշդատ վերջապէս խոնարհեցաւ, քարոզչութեան պաշտօնէն իջաւ, եւ ստիպուեցաւ Վիդդենպերկէն փախչիլ, բայց որպէս զի Լութերէն յաղթուած չկարծուի, սկսաւ զանազան նոր մոլորութիւններ քարոզել։ Լութերէ տարբեր վարդապետած գլխաւոր մոլորութիւններէն մէկն էր, Ս. Հաղորդութեան մէջ Քրիստոսի իրական ներկայութիւնն ուրանալը, զոր Լութեր ուղղափառաց հետ կը պաշտպանէր, թէեւ ոչ ուղղափառ եկեղեցւոյ մտաց համաձայն (ասոր վրայ տես երես 315)։

Գրեթէ մի եւ նոյն ժամանակները մեծամեծ

շփոթութիւններ պատճառեցին կրկնաշնական (Anabaptistes), որոնք բանավարութիւնները բացուելէն յառաջ մկրտուած տղաքն երկրորդ անգամ կը մկրտէին, ուստի անուններին ալ առած են։ Ասոնք միանգամայն ամենեւին իշխանութիւն մը չէին ճանչնար, եւ քաղաքային ու հոգեւոր իշխանութեանց ջնջում եւ երկրաւոր քրիստոնէական-աստուածպետական թագաւորութիւն մը կը քարոզէին, որուն մէջ ամէնքը՝ հարուստ ու աղքատը, ազնուականն ու գեղացին իրարու հաւասար պիտ'որ ըլլային։ Այս աղանդաւորներուն գլխաւոր քարոզիչներէն ու առաջնորդներէն մէկն էր Թովմաս Մունցէր, որ իր աշկերտներուն հետ քաղաքներն ու գեղերը պտըտելով ռամիկ ժողովուրդն ապստամբութեան կը յորդորէր։ Ասոր խօսքերէն ու Լութերի աւետարանական ազատութեան վրայ գրածներէն գրգռուած՝ Շուաբիա ու Փռանկիա գաւառներուն գեղացիներն ոտք ելան (1524), եւ գունդ գունդ եղած վանքերու եւ ասպետաց բերդերուն վրայ սկսան յարձակիլ, զանոնք թալլել եւ իրենց հակառակորդացը դէմ անլուր անագորոնութիւններ գործել։

Ապստամբութիւնը շուտ տարածուելով՝ բոլոր Էլզասի գաւառն ու Ռենոսի երկու կողմերը բռնեց։ Լութեր երբ տեսաւ որ գեղացիներն՝ եկեղեցական նաց լուծը խզելու վրայ իր տուած յորդորներն աշխարհական իշխաններուն վրայ ալ տարածելով, անոնց դէմ ալ սկսան կռուիլ, եւ այս պատճառաւ ամէն կողմանէ իրեն դէմ քանքատներ կը յաճախեն, լեզուն փոխեց եւ սկսաւ գեղացւոց դէմ գրել։ Այս գրուածքներէն մէկուն մէջ Լութեր իշխանները կը յորդորէ որ՝ Գեղջուկներն անխնայ ջարդեն, եւ խեղդեն շներու պէս մեռցընեն, քանզի որ եթէ իրենք ալ մեռնելու ըլլան, անկէ երջանիկ մահուան չեն կրնար հանդիպիլ։ Իշխաններէն ոմանք զօրք ժողվելով ապստամբ գեղացիներուն դէմ ելան, եւ սաստիկ մեծ կոտորածով զերենք նուաճեցին։ Այս պատերազմին մէջ՝ որ Գեղջ-ջուց պատերազմ կ'անուանուի, 100.000էն աւելի մարդ մեռաւ, հազար վանք քանդեցաւ եւ երեքհարիւր եկեղեցի այրեցաւ, իսկ ստացուածոց ու արուեստական

հնութեանց եղած վնասն անթուելի է։ Ահա ասոնք եղան Լութերի եկեղեցւոյ մէջ խոթել ուզած նորոգութեան գեղեցիկ պտուղները։ Բայց այս նորահնար աւետարանական ազատութեան ամէնէն գեղեցիկ պտուղը Լութեր իր անձին վրայ ցուցուց։ Երբ բովանդակ Գերմանիա այս աղէտալի արիւնհեղութեանց պատճառաւ սգոյ մէջ էր, ինք քահանայութիւնն ու կրօնաւորութիւնը մոռնալով, իր մոլորցուցած ու վանքէ հանած կատարինէ Պորէ կուսանին հետ ամուսնացաւ (1525 Յուլիս 14)։ Լութերի այս ամպարիշտ գործքը նոյն իսկ իր բարեկամներուն ու աշկերտներուն վրայ գէշ ազդեցութիւն ըրաւ։ Մի եւ նոյն ատեն Լութեր Տեւտոնեան կարգին կարգապետ՝ Ալբերդոս Պրանտենպուրկեանն ալ յորդորեց, որ իր կանոնները թողու աշխարհք մտնէ, եւ զՊրուսիա աշխարհականացընելով իւր ժառանգական իշխանութեան տակն առնու։ Կարգապետը՝ Լութերի խրատին անսալով կրօնէն եւ ուղղափառ եկեղեցիէն ելաւ (1525ին), եւ Դանիայի թագաւորին աղջիկն իրեն կնութեան առաւ։ Եւ թէպէտ Տեւտոնեան կարգն ու Քահանայապետն այս անիրաւ յափշտակութեան դէմ բողոքեցին, բայց պարապ տեղ։

Այս ատենները կ'իյնայ Լութերի՝ Էրազմոս Ռոդդերտամցւոյն հետ ըրած հռչակաւոր վէճը։ Այս գիտնական անձը՝ որուն անունը բոլոր Եւրոպա ելած էր, արդէն Լութերէն յառաջ զանազան գրուածքներով եկեղեցւոյ մէջ եղած անկարգութեանց դէմ խիստ կերպով գրած էր։ Ինք ուղղափառ հաւատքին վրայ հաստատուն էր, այնպէս որ Լութերի ո՛չ շողոքորթութիւնները եւ ո՛չ պարսաւը կրցան զինքն իր մտաց հաստատութենէն խախտել. բայց Լութերի բռնած ընթացքին նկատմամբ ժամանակ մը լռութիւն պահեց, որ գովելի չէ։ Վերջապէս 1524ին Լութերի չափազանց ու դառն պարսաւանքներէն գրգռուած, եւ միանգամայն եկեղեցւոյ դէմ ըրած անիրաւութիւններուն հատուցում ընելու համար, հրապարակաւ Լութերի դէմ յասպարէզ ելաւ Ի վերայ ազատ կամաց ըսուած գրքովը, որուն մէջ կամաց անձնիշխանութեան վրայ ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութիւնը մտքէն ու Ս. Գրքէն կը ցուցընէ։ Էրազմոս նիւթոյն ընտրութեամբը ցուցուց, որ կամաց ազատ չըլլալուն վարդապետութիւնը, իբրեւ Լութերի մոլար տեսութեանցը միջնակէտն աղէկ ճանչցած էր։ Թէ որ Էրազմոս Վորմսի աւագաժողովէն յառաջ Լութերի դէմ ելած ըլլար, ան ատեն իր համբաւոյն ազդեցութեամբը նորոգութեան տարածուելուն մեծ թումբ մը կը կանգնէր, բայց հիմայ ըրած ազդեցու-

*թիւնը շատ քիչ եւ գրեթէ ոչինչ էր, ինչու որ Նորոգու-թիւնն արդէն արմատ ձգած եւ զանազան առանձնական ու քաղաքական յարաբերութեանց հետ գիրկընդխառն միացած էր։*

## 82. Նորոգութեան քաղաքական նշանաւորութիւն ստանալը:

Նորոգութեան պատճառած արտաքին շփոթու-թիւններն եւ անոր վարդապետութեանց խախուտ հիման վրայ հաստատուած ըլլալը, որ օրէ օր աւելի կը յայտնուէր, եւ վերջապէս Նորահաստատ եկեղե-ցւոյն մէջ ծագած բազմապատիկ երկպառակութիւն-ներն ու հերձուածները, բաւական էին քիչ մը խո-րունկ մտածողներուն աչուըները բանալու, եւ զանոնք յորդորելու որ Նորէն ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դառնան։ Սակայն այս նկատմունքներն յընդհանուրն արդիւնք մը չունեցան. Նորաղանդութիւնը մէյմը ինք իրեն ճամբայ բացած էր, եւ այնչափ աւելի յօժարա-կամ ընդունելութիւն կը գտնէր, որչափ մարդկան հոգւոյն կրկին բերմանցը՝ այսինքն ամբարտաւանու-թեանն ու զգայականութեանը կը նպաստէր։

Նորաղանդութիւնն իր մեծ ազդեցութիւնն ու տարածութիւնն անով ստացաւ, որ մէկ կողմանէ կրից սանձերն արձակելով՝ ամէն մարդու ուզածն ընելու գրեթէ բացարձակ ազատութիւն կու տար, եւ մէկալ կողմանէ փառասէր աւագանւոյն՝ մեծութիւն ու իշ-խանութեան ընդարձակութիւն, ընչասէր ապետնե-րուն՝ եկեղեցեաց ու վանքերուն ինչքերը յափշտա-կել, կամաւ յանձն առած կապանքներէն ձանձրացած քահանայից ու վանականաց՝ աշխարհք մտնելու հրա-ման, իբրեւ խայծ առջեւնին կը դնէր։ Ի մասնաւորի իշխանք՝ Նորոգութիւնն իբրեւ յարմար գործիք ու պատրուակ ձեռուընին առին իւրաքանչիւրն իրենց քաղաքական նպատակներուն հասնելու։ Այսպէս Նո-րաղանդութիւնը քաղաքական նշանաւորութիւն մը ստացաւ, եւ անոր կուսակիցները կամաց կամաց քա-ղաքական կուսակցութիւն մը կազմեցին։ Ասոր տեսնե-լով ուղղափառ իշխանք՝ Ռեկենսպուրկ (1524, Յու-լիս 6) դաշնադրութիւն մը դրին, որով ամէն մէկն ինք

զէնքը կը պարտաւորէր իր երկրին մէջ Վորմսի հրովարտակն ի գործ դնելու, եւ ամենայն զօրութեամբ լութերականութեան տարածուելուն հակառակ կենալու։ Ասոր դէմ Նորադանդ իշխաններն ալ՝ Սաքսոնիայի կայսրընտրին ու Հեսսէնի Փիլիպպոս աշխարհակոմսին գլխաւորութեամբը Դորկաւ (1526) միաբանութիւն մ'ըրին։ Ասկէ սպառնացուած ներքին պատերազմը խափանելու, եւ կրօնական շփոթութեանց վերջ տալու համար, 1529ին Շփայեր աւագաժողով մ'եղաւ, ուր որոշուեցաւ որ մինչեւ նոյն ժամանակ Վորմսի հրովարտակին հետեւողներն անկէց ետքն ալ նոյնը հաստատուն պահեն. իսկ նոր վարդապետութիւնն ընդունողները մինչեւ ընդհանուր ժողովոյն գումարուիլը, կարելի եղածին չափ զգուշանան նոր փոփոխութիւններ ընելէն, եւ իրենց երկիրներուն մէջ ուղղափառ կրօնին հետեւողներն ազատ թողուն։ Բայց Նորադանդք այս վճիռը չուզելով ընդունիլ, անոր դէմ բողոքեցին, որ պատճառաւ *Բողոքող* կամ *Բողոքականք* անուանուեցան, որ անունը մինչեւ հիմայ պահած են։ Այսպէսով աւագաժողովէն օգուտ մը չելլելով, Կարոլոս Ե. կայսրը, որ դեռ միշտ կը յուսար մոլորեալներն ուղղափառ եկեղեցւոյ հետ միաբանել, երկրորդ տարին (1530) Աւկսպուրկի հռչակաւոր աւագաժողովը գումարեց։ Հոս բողոքողք առաջին անգամ գրով հաւատոյ դաւանութիւն մը տուին, որն որ ետքէն *Աւկսպուրկեան դաւանութիւն* անուամբ իրենց մէջ հաւատոյ հանգանակի արժէք ունեցաւ։ Ուղղափառ աստուածաբանք ասոր դէմ Հերքում մը շարադրեցին. սակայն ասիկայ հրեշտակային գործք մը պէտք էր ըլլալ, որպէս զի այս պարագայից մէջ արդիւնք մը յառաջ բերէր։ Անկէ ետքն երկու կողմանէ որոշուած աստուածաբանք սկսան իրարու հետ բանակցիլ, եւ բողոքողաց աստուածաբանին (Մելանքթոնի) խաղաղասէր բնութեամբն ու մեղմական ընթացքովն իրարու այնչափ մօտեցան, որ շատերն սկսան յուսալ թէ միաբանութիւն պիտ'որ ըլլայ։ Բայց Լութերի եւ գլխաւորաբար բողոքող իշխաններուն չուզելովը միաբանութիւնը չյաջողեցաւ։ Ան ա-

տեն կայսրը հրաման հանեց, որ մինչեւ ընդհանուր ժողովոյն գումարումը, հաւատոյ վարդապետութեանց մէջ նորութիւն չըլլուի, մոլար վարդապետութիւններն անկէ ետքը. չտարածուին եւ ուղղափառ եկեղեցւոյ հին պաշտամունքը հաստատուն պահուի։ Սակայն բողոքականք այս որոշումները չընդունեցան, եւ որովհետեւ կը վախնային որ կայսրը զէնքով զիրենք պիտ'որ տիպէ, Շմալքալտ քաղաքը նիզակակցութիւն մ'ըրին վեց տարուան համար, որուն գլխաւոր պայմանն աս էր, որ եթէ իրենցմէ մէկուն դէմ կրօնի պատճառաւ բըռնութիւն կամ անիրաւութիւն մ'ըլլայ, ամէնքը նաեւ զէնքով ու զօրքով զանիկայ պաշտպանեն։ Այս նիզակակցութեամբ բողոքողք յայտնի կայսեր դէմ ապըստամբեցան, եւ ասով հիմ դրուեցաւ Գերմանիայի ապագայ աղէտալի քաղաքային պատերազմաց։ Կարոլոս Ե. կայսրը Օսմանեանց վերահաս պատերազմին պատճառաւ չկրցաւ բողոքական իշխաններուն հետ խստութեամբ վարուիլ, մանաւանդ թէ իրենց օգնութեանը կարօտ ըլլալով՝ հարկադրեցաւ Նիւռնպէրկի առժամանակեայ խաղաղութեան դաշինքով (1532), բողոքական իշխաններուն խօսք տալ, որ մինչեւ ընդհանուր ժողովոյն գումարումը զիրենք հանդարտ կը թողու։ Բողոքողք ասով ալ գոհ չեղան, եւ կայսեր Թունուզ ըրած արշաւանքն ու Գաղղիացւոց դէմ ունեցած պատերազմը յօգուտ գործածելով, իրենց նիզակակցութիւնն աւելի ընդարձակելու ետեւէ եղան, եւ յանդգնագոյն գործքեր սկսան գործել*։ Վերջապէս Կարոլոս արտաքին պատերազմներէն ազատելով՝ եւ երկարժամանակեայ փորձերով համոզուած ըլլալով, որ ապստամբ բողոքականք զիջանելիք չունին, միտքը դրաւ քան տարուընէ աւելի կրօնական ու քաղաքական վրդովմունքներով աւերուած Գերմանիայի

* Ասոնց մէջ շատ նշանակական է Հեսէնի Փիլիպպոս աշխարհակալին՝ Լութերի, Մելանքթոնի եւ Նորաղանդից ուրիշ քանի մը անուանի աստուածաբաններուն հաւանութեամբն իրեն օրինաւոր ամուսինը պահելով, երկրորդ կին մ'ալ առնուլը։ Լութեր՝ աշխարհակալին գրած թղթին մէջ կ'ըսէ, որ միայն անոր համար աս բանիս հրաման կու տայ, որովհետեւ անօգնական մնացած եկեղեցին, իրեն պէս բարեպաշտ իշխաններու կարօտութիւն ունի, եւ աստուածային օրէնքը բազմակնութիւնը չ'արգիլեր։ Բայց կը պատուիրէ, որ բանը ծածուկ պահէ, որպէս զի չըլլայ թէ այս պատճառաւ Աւետարանը բամբասուի։

խաղաղութիւնը զէնքի զօրութեամբ վերստին հաստատել, մանաւանդ որ ընդհանուր ժողովը՝ զոր Պաւղոս Գ. Քահանայապետը կանչած էր, 1515ին Դեկտ. 13ին Տրիդենտ քաղաքը բացուած էր, եւ բողոքողք ամենեւին կերպով մը յանձն չէին առնուր հոն մարդ խաւրել, թէ եւ յառաջագոյն խօսքով նոյնն այնչափ անգամ խնդրած էին։ Պատերազմը 1546ին սկսաւ եւ իսկզբան կայսեր յաջող էր, բայց ետքէն Սաքսոնիայի Մօրիկ բողոքական դուքսը, որ յառաջ կայսեր դաշնակից էր, մասնութեամբ բողոքականաց կողմն անցնելով, Դիրոլի մէջ յանկարծ կայսեր վրայ յարձակեցաւ։ Կայսրն անպատրաստ ըլլալով՝ նեղի ինկաւ, եւ հարկադրեցաւ բողոքականաց հետ դաշնադրութիւն ընել, որուն գլխաւոր պայմանները հետեւեալներն էին. 1) Բողոքականք կրօնի կատարեալ ազատութիւն ունենան։ 2) Վեց ամսուան մէջ աւագաժողով մը գումարուի, որուն մէջ կրօնական երկպառակութիւնները վերցընելու միջոցներ մտածուին։ Սակայն քաղաքական շփոթութեանց պատճառաւ հազիւ երեք տարի ետքը (1555) կարելի եղաւ նոյն աւագաժողովն Աւկսպուրկ գումարել։ Հոս ութ ամիս պարապ տեղ բանակցելէն ու վիճելէն ետեւ, տեսնելով որ երկպառակութիւններն ու շփոթութիւններն ոչ աւագաժողովով եւ ոչ ընդհանուր ժողովով կրնան կարգի խոթուիլ, ուզեցին երկու կողմանց մէջ գոնէ արտաքին եւ քաղաքական խաղաղութիւն մը հաստատել։ Այս խաղաղութեան դաշինքով սահմանուեցաւ, որ իշխանք իրենց ժողովրդոմն ազատ են ուղղափառ եկեղեցւոյ մէջ մնալու եւ կամ նորաղանդութեան կողմն անցնելու։ Դարձեալ Եկեղեցական վերապահութիւն ըսուած վճռով որոշուեցաւ որ եթէ եկեղեցական աստիճանաւոր մը (արքեպիսկոպոս, եպիսկոպոս) կամ քահանայ մը բողոքականութեան դառնալու ըլլայ, իրեն եկեղեցական ստացուածքներն ու թոշակն անմիջապէս կորսնցընէ։ Բայց այս ազատութիւնները միայն Աւկսպուրկի դաւանութեան հետեւողներուն կը տրուէր, եւ ոչ թէ ամէն նորաղանդներուն (Զուինգլիականաց, Կրկնակնունք աղանդաւորաց եւ-

այլն)։ Այս կերպով թէպէտ Նորաղանդութեան պատճառաւ Գերմանիա եղած քաղաքական շփոթութիւններն առժամս դադրեցան, բայց կրօնի աղէտալի բաժանումն ասով հաստատութիւն ընդունեցաւ, եւ ապագայ քաղաքական կռիւներու հիմ դրուեցաւ։

Լութեր քաղաքային պատերազմն սկսելէն յառաջ արդէն՝ իր ծննդեան քաղաքն Այսլեպէն 62 տարւան հասակին մէջ մեռած էր (1546 փետր. 16), իր Նորահնար սկզբանց դառն հետեւութեանցը վրայ խիստ տրտմած, եւ հաստատած եկեղեցւոյն մէջ տիրող երկպառակութեանց ու անկարգութեանց վրայ սիրտը կոտրած։ Ուղղափառ եկեղեցւոյ եւ անոր Գլըխոյն դէմ ունեցած սաստիկ ատելութիւնը ցմահ պահեց։ — Չ'ուրացուիր որ Լութեր երեւելի եւ հազուագիւտ ձիրքերով զարդարուած անձ մըն էր. իր ազնիւ յատկութիւնները՝ ինչպէս են աներկիւղութիւնը, անխոնջ գործունէութիւնը, մարդ ճանչնալու խորին գիտութիւնն ու սիրտ յափշտակող ճարտասանութիւնը, զինքը Ս. Բեռնարդոսի ու Ս. Վինկենտիոս Պաւղայեցւոյն պէս եկեղեցւոյ ճշմարիտ Նորոգիչ մը կրնային ընել, եթէ խոնարհութիւն ու սէր ունենար։ Բայց աս ամէն գեղեցիկ ձիրքերը՝ սաստիկ ամբարտաւանութեանը, եւ կատաղի ու անսանձ կրիցը պատճառաւ, իր ձեռքը վտանգաւոր զէնքեր եղան, եւ գործունէութիւնն եկեղեցւոյ վնասակար ու անհատնում չարեաց պատճառ։ Եկեղեցին՝ իր մտաց համաձայն նորոգել ուզելով՝ Աստուծմէ դրուած եկեղեցւոյ Գլխոյն՝ Հռոմայ Քահանայապետին դէմ ելաւ, Քրիստոսի՝ առաքելոց աւանդած հաւատոյ էական վարդապետութիւններն ուրացաւ, եւ քրիստոսադիր կարգաւ եկեղեցւոյ իսկզբանէ ի գործ դրած շնորհաց միջնորդներուն մեծ մասը մերժեց։ Ասով Քրիստոսի եկեղեցւոյն միութիւնը պատռեց, եւ միլիոնաւոր հոգւոց կորստեան պատճառ եղաւ։

### 83. *Լութերի եւ իր հետեւողաց վարդապետութիւնը:*

Լութերի եւ իր հետեւողաց վարդապետութիւնն ո՛չ նոր եւ ո՛չ ալ եկեղեցւոյ հին վարդապետութիւնն է։ Լութեր երկոտասաներորդ դարէն ետքն ելած ու եկեղեցիէն արդէն շատոնց դատապարտուած մոլար կարծիքները դարձեալ մէջտեղը հանեց, եւ անոնց վրայ մէկ քանի նոր մոլորութիւններ աւելցուց. ի մասնաւորի մարդուն միայն հաւատքով արդարանալուն վարդապետութիւնը, եւ այս ամէն մոլորութիւնները յօրինուածութեան մը մէջ խոթեց, որուն ինք սուտ Աւետարան անունը տուաւ*։

Լութերի մոլորութիւնները գլխաւորաբար ուղղուած են՝ 1. Քրիստոնէական կրօնին աղբերաց. 2. Անոր վարդապետութեանցն ու 3. Սահմանադրութեանը դէմ։

1. *Աղբերաց նկատմամբ՝* Լութեր մերժեց քրիստոնէական կրօնին ճանաչման երկու աղբիւրները, այսինքն աւանդութիւնն ու եկեղեցւոյ անսխալ վարդապետութեան իշխանութիւնը։ Ս. Գիրքն իբրեւ քրիստոնէութեան ճանաչման միակ աղբիւր դրաւ, եւ իւրաքանչիւրոց միտքն անոր վրայ դատաւոր կարգեց։ Հին եկեղեցւոյ հանդանակաց մէջ բովանդակուած ան հաւատոյ վարդապետութիւններն ու որոշումնքները միայն կ'ընդունէր, որոնք Ս. Գրոց մէջ արդէն կը գտնուին։

2. *Վարդապետութեանց նկատմամբ՝* Լութեր քրիստոնէական կրօնին հիմնական վարդապետութեանցը դէմ ելաւ։ Ուղղափառ եկեղեցին կը վարդապետէ, որ Աստուծոյ մարդուն տուած բարոյական-կրօնական զօրութիւններն սկզբնական մեղօք ջնջուած չեն, հապա միայն տկարացած են, այնպէս որ մարդ կրնայ ունեցած բնական զօրութեամբը՝ Քրիստոսի արդիւնաւորած շնորհաց ձեռնհերէց ըլլալ, եւ անոր հետ ազատութեամբ գործել։ Դարձեալ ուղղափառ հաւատքը կը վարդապետէ՝ որ Աստուած ինկած մարդն անով կ'արդարացընէ, որ իրմէ մեղքը կը բառնայ եւ

* Ասկէ Լութերականք իրենք զիրենք Աւետարանական ալ կ'անուանեն։

երեք աստուածային առաքինութիւնները (հաւատք, յոյս ու սէր) իրեն կը շնորհէ, այնպէս որ Աստուծոյ առջեւ արդարացեալ մարդը նաեւ ի ներքուստ արդար ու սուրբ է։ Ասկէ զատ կը սորվեցնէ թէ արդարացուցման եւ սրբացուցման շնորհաց արժանի ըլլալու համար, չէ թէ հաւատք միայն, այլ սիրով յաջողեալ հաւատք կը պահանջուի։ — Ուղղափառ հաւատոյ այս հիմնական վարդապետութիւնները Լութեր մերժեց։ Ինք կ'ըսէր թէ սկզբնական մեղքը ապականեալ մարդուն կրօնական-բարոյական զօրութիւնները բոլորովին ոչնչացած են, այնպէս որ հոգին ամենեւին բնական զօրութիւն չունի բարին ճանչնալու եւ սիրելու։ Աստուծոյ շնորհքը միայն՝ ի մարդն ամէն բարի բան կը գործէ, իսկ մարդն Աստուծոյ առջեւ անով կ'արդարանայ ու երանութեան կը հասնի, որ Քրիստոսի արդարութիւնն իրեն արտաքուստ կը համարուի։ Ինքը արդար չ'ըլլար, հապա միայն արդար կ'ըսուի։ Սկզբնական մեղքն ինչպէս նաեւ անձնական մեղքերը, որոնք ըստ Լութերի ուրիշ բան չեն, բայց եթէ սկզբնական մեղաց արտահոսումը, արդարացած մարդուն վրայ կը մնան, եւ միայն Քրիստոսի արդարութեամբը կը ծածկուին։ Արդարացուցման համար՝ մարդուն կողմանէ Աստուծոյ սէր եւ անկէ յառաջ եկած բարի գործք հարկաւոր չէ, մի միայն ի Քրիստոս հաւատք կը պահանջուի։ Բայց նոյն իսկ այս հաւատքն՝ Աստուած մարդուն սրտին մէջ կը զարթուցանէ։ Այս վարդապետութեան համաձայն մարդ իր փրկութեան գործքին մէջ պարզապէս կրող է, եւ գործողը միայն Աստուած է։

Բնական էր՝ որ քրիստոնէական կրօնին հիմունքը խախտող այս միայն փրկարար հաւատոյ նորահնար վարդապետութեամբ, ուղղափառ եկեղեցւոյ շատ մը ուրիշ վարդապետութիւններն ալ վերցուէին։ Ինչու որ այս հաւատքն ու անոր ձեռքով Քրիստոսի արդեանց ըմբռնումն ըստ Լութերի վարդապետութեան այնպէս հզօրապէս կը ներգործէ, որ անով մեղաց թէ յանցանքն ու թէ պատիժը կատարեալ կը թողուի, որով մարդուն կողմանէ ամենեւին հատուցման (ներո-

ղութեան, քաւարանի) տեղի չի մնար: Դարձեալ այս հաւատքը՝ Քրիստոսի արդեանցն անընդմիջապէս ձեռներեց կ՚ըլլայ, այնպէս որ հաւատացեալ մարդուն ու Քրիստոսի մէջ ամէն միջնորդութիւն աւելորդ կ՚ըլլայ: Այսպիսի միջնորդութիւն մըն է Ս. Պատարագի զոհը, որով Քրիստոսի արդիւնքները մեզի կը մերձեցուին. Կապելու և արձակելու իշխանութիւնը, զորն որ Քրիստոս բանալեաց իշխանութեան ձեռքով եկեղեցւոյ առաջնորդաց տուած է, եւ վերջապէս Սրբոց բարեխօսութիւնը. անոր համար Լութեր այս երեք վարդապետութիւններն ալ մերժեց:

*Խորհուրդներն*՝ որոնց թիւը Լութեր երկուքի վերածեց, այսինքն Մկրտութիւն ու Հաղորդութիւն, իր վերոյիշեալ վարդապետութեանց հետեւութեամբն իբրեւ աւելորդ կրնան մտածուիլ, ինչու որ շնորհք կրող ու պատճառող չեն: Ըստ Լութերի վարդապետութեան՝ մեղք քաւող ու արդարացընող մի՛ միայն շնորհք կայ. եւ այս շնորհքը մեղաւորը հաւատքով կ՚ընդունի, զորն որ Հոգին սուրբ առանց իր գործակցութեանը սրտին մէջ՝ կ՚արծարծէ: Անոր համար Լութեր իսկզբան խորհուրդները միայն իբրեւ հաւատոյ ձեռքով արդէն ստացած մեղաց թողութեան ու արդարութեան առհաւատչեայ կամ նշան կը համարէր, բայց ետքէն վիճաբանութեանց ընթացքին մէջ քիչ մը ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեանը մօտեցաւ: Մկրտութիւնն ըստ ուղղափառ վարդապետութեան սկզբնական մեղքն ու չափահասներուն անձնական մեղքերն ալ կը ջնջէ, եւ երեք աստուածային առաքինութիւնները շնորհելով՝ մկրտելոյն նոր կեանք կը պարգեւէ: Իսկ Լութերի վարդապետութեան համաձայն՝ մկրտութիւնն ուրիշ բան չէ, բայց եթէ նշան մը՝ որ սկզբնական մեղքը մարդուն չի սեպուիր: Եւ որովհետեւ ինք կ՚ըսէր թէ անձնական մեղքերը՝ մկրտելոյն վրայ միշտ մնացող սկզբնական մեղաց արտահոսումներն են, եւ ըստ հետեւորդի ասոնք արդէն մկրտութեան ժամանակ ներուած են, անոր համար աս մեղքերուն թողութիւն առնելու համար առանձին փրկութեան միջնորդ մը (Ապաշխա-

րութեան խորհուրդ) հարկաւոր չէ, այլ մկրտութեան ժամանակ ընդունուած ապահովութեան յիշատա-կութիւնը միայն բաւական է։

Լութեր Ս. Հաղորդութեան վրայ ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութիւնն ըստ էական մասին միայն պահեց. գոյացափոխութիւն չէր ընդունէր, եւ կը վարդապետէր թէ Քրիստոս Հաղորդութեան մէջ ներկայ է՝ հացին մէջ, հացին հետ ու հացին ներքեւը. ասկէ զատ կ'ըսէր թէ Քրիստոս միայն ճաշակման ժա-մանակ ներկայ է։ Այս վարդապետութեան առաջին մասովը, Լութեր կ'ուզէր սոյն անհաս խորհուրդն զգայարանաց շօշափելի ընել, բայց յայտնի է որ ա-սով նոյնն աւելի հրաշալի եւ մտաց անըմբռնելի ըրաւ. ինչու որ աստուածային ու մարդկային բնութեանց ի Քրիստոս՝ հացին եւ գինւոյ գոյացութեանց հետ խոր-հրդաւոր միաւորութիւնը, մարդեղութեան անճառ խորհրդոյն վրայ նոր աքանչելիք մ'ալ կ'աւելցընէ։ Իսկ երկրորդ մասովը կ'ուզէր Լութեր Ս. Խորհրդոյն երկրպագութիւնը խափանել եւ Ս. Պատարագը վեր-ցընել։ Եւ որպէս զի իր այս անլուր կարծեացը հիմ մը տայ, Քրիստոսի մարմնով ամէն տեղ ներկայ ըլլալուն (համատարածեան ամենուրեքութեան) վարդապե-տութիւնը հնարեց, հաստատելով՝ որ Քրիստոս ամէն արարածոց մէջ, նաեւ ըստ մարդկութեան, ուստի եւ մարմնով ներկայ է։ Լութեր աշխարհականաց Հաղոր-դութիւն տալու ժամանակ՝ բաժակի սովորութիւնը նորէն խոթեց, որն որ իր բովանդակ վարդապետու-թեան յօրինուածութեանը մէջ միակ դրական բանն է։

3. Նոր եկեղեցւոյն Սահմանադրութեանը գալով՝ Լութեր բոլորովին մերժեց այն նուիրապետական կարգաւորութիւնը, զորն որ Քրիստոս ըստ էական մա-սանց իր եկեղեցւոյն աւանդած, եւ որուն զարգա-ցումը հետագայ ժամանակաց ձգած էր։ Լութեր զՔահանայապետն իբրեւ եկեղեցւոյ գլուխ չէր ընդու-նէր. նոյնպէս եպիսկոպոսաց, քահանայից եւ աշխար-հականաց մէջ աստիճանի զանազանութիւն չէր ճան-չնար։ Քրիստոս միայն է, կ'ըսէր, այս Նոր եկեղեցւոյն

անտեսանելի Գլուխը, որուն ամէն անդամներն իրաւ Հաւատար են, եւ միրտութեամբ ամէնն ալ ուսուցանելու եւ խորհուրդ մատակարարելու իշխանութիւնը կ'ընդունին։ Բայց այս իշխանութիւնն ան անդամը միայն ի գործ կը դնէ, զոր որ Հասարակութիւնն առ այն կը կոչէ։ Այս կոչումը՝ որ կարգ ալ կ'ըսուի, վերոյիշեալ իշխանութեան եւ անկէ յառաջ եկած պաշտամանց տուչութիւնը չէ, այլ միայն Հասարակութեան կողմանէ ծանուցում մը, որ ինք այս իշխանութենէն կը Հրաժարի եւ զանիկայ իրեն կը յանձնէ։ Ուստի այս կարգը խորհուրդ չէ, ինչու որ առով ընտրելոյն այնպիսի բան մը չի տրուիր, զոր որ ինք արդէն ունեցած չըլլայ, եւ ոչ ալ իրեն վրայ անջնջելի կնիք մը կը դրոշմուի։ Մէծ կամ տարաձայնութիւն մ'ելած ատեն, խնդիրն որոշելու իրաւունքն ի վերին առենի աշխարհական իշխանին կը վերաբերէր, որուն եւ քէն անցաւ եկեղեցական իշխանութեան բովանդակ լրութիւնը։

Այսպէս Լութեր եկեղեցւոյ նուիրապետութեան դեղեցիկ կարգն այլայլեց, սկսեալ կղերի ու աշխարհականի պարզ զանազանութենէն, մինչեւ ամէնէն բարձր եկեղեցական աստիճանները, Քահանայապետութիւնն ալ մէկտեղ։ Առով Հին եկեղեցւոյ գործարանաւոր յօդակապը քակուեցաւ, քահանայական կարգին կամ ձեռնադրութեան խորհրդական նկարագիրն ոչնչացաւ, քահանայութիւնը՝ պատարագի զոհին հետ վերցաւ, եւ նոյն իսկ եպիսկոպոսաց առաքելական յաջորդութեան շղթան խզեցաւ։

Բայց յայտնի է՝ որ ան եկեղեցին որ իր վարդապետութեանցն ու սահմանադրութեանցը համար, հիմնադրին անձնական հեղինակութենէն զատ երաշխաւորութիւն մը չ'ընծայեցըներ, քրիստոնէական հաւատոյ հաստատութիւն չի կրնար ունենալ։ Անփոփոխ ու զօրաւոր հաւատք այն եկեղեցւոյ մէջ միայն կրնայ գտնուիլ, որ իր վարդապետութեանցն ու յօրինուածութեանը մէջ՝ Աստուծմէ հաստատուած միութեան պարգեւը կը վայելէ։ Այս միութեան պակասութիւնը բողոքականք շատ շուտ զգացին, եւ

ասոր դարման տանելու համար նախ Աւկսպուրկի աւ-
ազգաժողովոյն ու ետքն ուրիշ առիթներու մէջ գրաւ-
որ դաւանութիւններ շինեցին, որ իրենց եկեղեցւոյն
իբրեւ հիմ պիտ՚որ ծառայէին։ Բայց այս գրուածք-
ները մարդկային հեղինակութեան գործքեր էին,
ուստի եւ դիտուած նպատակին չէին կրնար հասցը-
նել։ Անոնց համար միայն պարտաւորիչ էին, որոնք
կրնային իմանալ թէ անոնց բովանդակածը Ս. Գրոց
իմաստին հետ միաբան է. իսկ որոնք որ այս համոզու-
մը չէին կրնար վաստըկիլ, անոնց համար խղճի մտաց
առջեւը պարտաւորիչ չէին։

## 84. Նորաղանդութիւն ի Հելուետիա. — Ցուինկլի ու Կալուին նորոգողութեան գլուխները:

Գերմանիա Լութերի ձեռքով նորաղանդու-
թիւնն ելած ատեն, գրեթէ մի եւ նոյն ժամանակ
Հելուետիա ալ նորոգողութեան սկիզբ ըրաւ Ուլրիխ
Ցուինկլի քահանան։ Ցուինկլի ծնաւ 1484ին Դոկկեն-
պուրկի կոմսութեան Վիլտհաուզէն քաղաքը, եւ Հե-
լուետիայի զանազան քաղաքներն ուսում առնելէն եւ
եկեղեցական պաշտօններ կատարելէն ետեւ, վերջա-
պէս Ցիւրիխի քարոզիչ եղաւ։ Ցուինկլի խիստ կատա-
ղի եւ աւելի կրակոտ քան թէ հիմնովին կրթեալ
անձ մըն էր։ Իր բանախօսութեանցը մէջ ուրիշ ա-
ղանդապետներէն աւելի սաստկութեամբ ուղղափառ
եկեղեցւոյ վարդապետութեանցն ու պաշտամանցը
դէմ կը զինէր. բարոյական կեանքն ալ պէսպէս ան-
կարգութիւններով արատաւորած էր։ Ինչպէս Լու-
թերի՝ Մելանքթոն, նոյնպէս Ցուինկլիի օգնական ե-
ղաւ Օքոլամբատիոս անուամբ Պազէլի քարոզիչ մը,
որ թէեւ բարակ ու կիրթ բայց միանգամայն խիստ
նենգաւոր մարդ մըն էր։ Ասոր ձեռնտուութեամբը
կրցաւ Ցուինկլի նորաղանդութիւնը Հելուետիա խո-
թել. ի մասնաւորի Ցիւրիխ, Պեռն, Պազէլ ու Շաֆ-
հաուզէն նահանգները, իսկ բուն հին նահանգները՝
Ուրի, Շուից, Ունդերվալտըն, Լիւցեռն, Ցուկ եւ
Ֆրայպուրկ, որոնք յառաջագոյն Հելուետիայի անկա-

խութիւնը պատերազմաւ ձեռք բերած էին, ուղղափառ եկեղեցւոյ հաւատարիմ մնացին։

Ցուինկլիի Հելուետիա քարոզած վարդապետութիւնն ըստ էական մասանց նոյն է Լութերի վարդապետութեան. անով միայն կը տարբերի անկէ, որ Ցուինկլի յայտնութիւնն իբրեւ պարզ մտաց գործք մը կը նկատէ, եւ անոր ձեռքով մարդկան յայտնուած ճշմարտութիւնները մտաց սահմանին մէջ կ՚ամփոփէ։ Դարձեալ Ցուինկլի ու իրեն հետեւողներն ուղղափառ եկեղեցւոյ ամբողջ պաշտամունքն ու արարողութիւնները, պատկերաց յարգութիւնն եւ նոյն իսկ երաժշտութիւնն ու զանգակ զարնելը վերցուցին։ Ասկէ զատ Ցուինկլիականաց ու Լութերականաց մէջ գլխաւոր կարծեաց տարբերութիւն մը կար Ս. Հաղորդութեան խորհրդոյն վարդապետութեան նկատմամբ։ Ցուինկլի Գարլշդատին կարծեացը հետեւելով, առաջնորդ եղաւ խորհրդական (sacramentaire) ըսուած աղանդաւորներուն, որոնք կ՚ըսէին թէ Ս. Հաղորդութեան խորհուրդը՝ Քրիստոսի մարմնոյն եւ արեան պարզ նշանը կամ պատկերն է, եւ լոկ մեր փրկագործութեան յիշատակը, ուստի եւ Քրիստոսի Այս է մարմին իմ. Այս է արիւն իմ ըսելը այլաբանական իմաստով է, եւ է բառը՝ նշանակ է, կը նշանակէ, օրինակ է բառին իմաստն ունի։ Այս կարծեաց տարբերութիւնն երկու աղանդապետներուն մէջ երկար վէճերու եւ գժտութեանց պատճառ եղաւ, եւ վերջապէս երկու կողմնակցութեանց մէջ հերձուած մը յառաջ բերաւ։ Ցուինկլի նոր կուսակցութեան մը գլուխն անցաւ, որ ինք զինքը Նորոգեալ (réformé) անուանեց։

Նորաղանդք ինչպէս ամէն տեղ՝ նոյնպէս Հելուետիա ուղղափառաց դէմ ամէն կերպ բռնութիւններ սկսան ընել, որով երկու կողմանց մէջ թշնամութիւն մտաւ, եւ վերջապէս քաղաքական պատերազմ յառաջ եկաւ։ Նորաղանդք եւ ուղղափառք Գաբբէլի քով (1551 Հոկտ. 11) արիւնահեղ ճակատ մը տուին, ուր Նորաղանդք չարաչար յաղթուեցան, եւ նոյն իսկ Ցուինկլի՝ որ իբրեւ քարոզիչ մէկտեղ գացած էր, պատերազմի դաշտին վրայ մնաց։ Պատերազմին յա-

*ջող ելքը՝ Հելուետիայի մէջ նորոգողութեան առաջեւը թումբ մը կանգնեց։ Լութեր մինչեւ կը ցաւէր՝ որ ինչո՛ւ ուղղափառք յաղթութիւնը յօգուտ չգործածելով, Ցուինկլիականաց աղանդը բնաջինջ չըրին, որն որ երկու նորաղանդ կուսակցութեանց իրարու դէմ ունեցած սաստիկ ատելութիւնը կը ցուցընէ։ Լութերականաց եւ նորոգելոց մէջ եղած այս ատելութիւնն՝ անկէ ետքն ալ գրեթէ երկու դար տեւեց։*

*Ցուինկլիի շաւղացը հետեւեցաւ Յովհաննէս Կալուէն, որ 1509ին Բիգարտիայի Նոյոն քաղաքը ծնած է։ Երիտասարդութեան ժամանակը Գաղղիա անցաւ, ուր փոփոխակի աստուածաբանութեան ու իրաւագիտութեան ետեւէ եղաւ։ Բայց Գերմանիայի նորաղանդից հետ ունեցած բազմապատիկ յարաբերութիւններն իրեն ծուռ ուղղութիւն մը տուին, եւ քիչ մը ետքը բոլորովին անոնց յարեցաւ։ Երբոր սկսաւ իր մոլորութիւնները հրապարակաւ քարոզել, ստիպուեցաւ Գաղղիան թողուլ եւ Կենֆ փախչիլ, ուր նորաղանդութիւնն արդէն խորունկ արմատ ձգած էր. հոս Կալուին իր վնասակար ջանից կենդրոն ըրաւ։*

*Կալուինի մոլորութիւնը Լութերի ու Ցուինկլիի վարդապետութենէն միայն անով կը զանազանի, որ այս երկու աղանդապետաց մոլար սկզբունքները Կալուին աւելի խիստ եւ միանգամայն քրիստոնէական զգածումը վշտացընող կերպով կը մեկնէր։ Լութեր չհամարձակեցաւ իր արդարացուցման վարդապետութենէն հարկաւ բխած հետեւութիւնները յառաջ բերել. ուր որ Կալուին անպայման նախասահմանութեան վճիռ մը կ՚ընդունէր, որով Աստուած մարդկան մէկ մասը՝ առանց իրենց արդեանցը կանխատես ըլլալու, պարզապէս իր ողորմութիւնը ցուցընելու համար, ի յաւիտենից երանութեան կը նախասահմանէ, այնպէս որ ասոնք որ եւ իցէ ծանր մեղքով երանութիւնը չեն կրնար կորսնցընել. իսկ զմանս ալ անպայման կը նախասահմանէ յաւիտենական դատապարտութեան, որպէս զի ձեռքը գործիք ունենայ անոնց վրայ իր արդարութիւնը ցուցընելու։ Կալուինի նախասահմանութեան վրայ ունեցած այս մոլար կարծիքը, խոր-*

հրդոց վարդապետութեան վրայ ալ անոնց ազդեցութեան չմնաց։ Թէեւ Կալուին, յընդհանուրն խորհրդոց վարդապետութեան մէջ Լութերի կը համաձայնէր, բայց ինք խորհրդոց սրբարար զօրութիւնն արտաքին նշանէն բաժանեալ կը դնէր. սրբարար զօրութիւնը միայն ընտրեալք կ՚ընդունին, կ՚ըսէր, իսկ չնախասահմանեալք անկէ զուրկ կը մնան։ Ասոնք մկրտութեան ձեռքով միայն արտաքուստ կը լուացուին, եւ Հաղորդութիւն ընդունած ատեննին միայն հաց ու գինի կ՚ընդունին։ Հաղորդութեան վրայ Կալուինի մոլորութիւնը Ցուինկլիի կարծիքին համեմատ էր, նոյնպէս իրեն հետ կը մերժէր ամէն եկեղեցական պաշտամունք ու արարողութիւնները։

Կալուինի այս վարդապետութիւնն որչափ ալ խիստ ու խրտուցիչ էր, սակայն եւ այնպէս Կալուին կրցաւ զանիկայ Կէնֆ ընդունել տալ։ Նոյն քաղաքը Կալուին երիցական սահմանադրութիւն մը յօրինելով, նոր եկեղեցական կարգաւորութիւն մը հաստատեց, եւ որչափ իր ազդեցութիւնն ու համբաւը կ՚աճէր այնչափ աւելի անհանդուրժող կ՚ըլլար անոնց դէմ՝ որոնք իր կարծեացը չէին հետեւեր։ Իր յանդգնութիւնը մինչեւ հոն հասաւ, որ յայտնի սկսաւ պաշտպանել թէ հերետիկոսները մահուամբ պէտք է պատժել։ Միքայէլ Սերվէտ սպանիացի բժիշկն՝ Երրորդութեան վրայ Պաւղոս Սամոսատացւոյն նման մոլորական կարծիք մը պաշտպանելուն համար, Կալուինի թելադրութեամբը բանտ դրուեցաւ եւ քիչ մ՚ետքը կրակի վրայ ողջ ողջ այրեցաւ։ Կալուին, Մելանքթոն եւ Լութեր սոյն պարսաւելի գործքն առանձին գրուածքներով ջատագովեցին։

Կալուին մեռաւ 1564ին. իր վարդապետութիւնը Կէնֆէն շուտ տարածուեցաւ Գաղղիա, Ստորին Նահանգները, Անգղիա, Գերմանիայի քանի մը կողմերը, եւ մինչեւ Լեհաստան, Բոհեմիա, Հունգարիա ու Տրանսիլվանիա մուտք գտաւ։

## 85. Նորաղանդութեան տարածումն Եւրոպայի ուրիշ երկիրները:

«Նորաղանդութիւնը միայն Գերմանիայի ու Հելուետիայի վրայ ամփոփուած չմնաց, հապա աւերիչ հեղեղի մը նման, Եւրոպայի ուրիշ երկիրներն ալ տարածուեցաւ եւ այս միջոցիս արդէն ան ընդարձակութիւնն ընդունած էր, զորն որ ետքէն պահեց: Գերմանիայէն դուրս կալուինականութիւնը մտաւ Անգղիա, եւ ըստ մասին տարածուեցաւ նաեւ Գաղղիա, Ստորին Նահանգները, Բոհեմիա, Լեհաստան եւ Հունգարիա. սակայն այս երկիրները՝ մեծաւ մասամբ ուղղափառ վարդապետութեան հաւատարիմ մնացին: Նորաղանդութիւնը մուտք գտաւ գլխաւորաբար մէկ քանի հիւսիսային տէրութեանց մէջ, ուր այնչափ աւելի դիւրաւ տարածուեցաւ, որչափ նոյն տէրութեանց իշխանները պէսպէս քաղաքական շահերու եւ նպատակներու համար, անոր յառաջացման օգնեցին:

1. *Շուետ՝* Կուստաւոս Վազա թագաւորը՝ լութերականութիւնը տարածելու ետեւէ եղաւ, որպէս զի անով իր նորակառոյց թագաւորական աթոռը հաստատէ, եկեղեցականաց ազդեցութիւնը կոտրէ եւ եկեղեցական ինչքերն յարքունիս գրաւէ: Բայց շատ մեծ դժուարութեամբ կրցաւ գլխաւորաբար ռամիկ ժողովրդեան սրտէն՝ հնաւանդ ուղղափառ հաւատքը ջնջել, եւ հազիւ ամէն կերպ բռնական ու անագորոյն միջոցներով զանոնք իր կամացը խոնարհեցուց: Նոր Շուետական եկեղեցին եպիսկոպոսական սահմանադրութիւնը պահեց, բայց եպիսկոպոսական պատիւը պարզ անուն եւ լոկ տիտղոս մնաց:

2. *Դանիա՝* բողոքականութեան հիմ դրաւ Քրիստիան Բ. (1513—1523) թագաւորը, զորն որ իր հօրեղբայրն ու յաջորդը Շլեզուիկի ու Հոլշդայնի Փրիդերիկոս Ա. դուքսը, մեծ յաջողութեամբ յառաջ տարաւ: Անոր որդին ու յաջորդը Քրիստիան Գ., որ արդէն Շլեզուիկի ու Հոլշդայնի մէջ ուղղափառ կրօնը վերցուցած էր, Դանիայի գահն ելլելուն պէս (1524), հոն ինչպէս նաեւ Նորուեգիա, որ նոյն միջոցին Դա-

նիայի հետ միացած էր, ուղղափառ կրօնը ջնջելու եւ լութերականութիւնը խօթելու ետեւէ եղաւ: Եպիսկոպոսները բանտարկել տուաւ, եւ զիրենք չարձակեց, մինչեւ որ խօսք տուին, թէ եկեղեցական ինչքերէն կը հրաժարին եւ նոր վարդապետութեան Դանիա խօթուելուն չեն ընդդիմանար: Անկէ ետքն ուղղափառաց դէմ խիստ հալածանք մը հանեց, եւ իրենց կամ ուղղափառ հաւատքն ուրանալու կամ աքսորք երթալու մէջ ընտրութիւն ընելը միայն ազատ թողուց: Ասանկով կրցաւ ժողովուրդը ստիպել, որ իր հայրենի կրօնը փոխէ:

3. *Մեծն Բրիտանիա:* ա. Անգղիա: Իսկզբան չէր կարծուէր որ նորոգողութիւնը կարող ըլլայ Անգղիա մտնել, ինչու որ նոյն իսկ Անգղիայի Հենրիկոս Ը. թագաւորը նորաղանդութեան այնչափ հակառակ էր, որ Լութերի մոլորութիւններն իր տէրութեան մէջ դատապարտել տալէն զատ, ինք անձամբ անոնց դէմ գիրք մը գրած եւ անոր համար Կղեմէս Է. Քահանայապետն իրեն Պաշտպան Հաւատոյ տիտղոսը տուած էր: Բայց քանի մը տարի ետքը, թագաւորն իր անսանձ կրքէն մղուելով՝ եկեղեցիէն բաժնուեցաւ, եւ տէրութիւնն ալ իր ետեւէն ձգեց: Հենրիկոս Ը. Աննա Պոլէն անուն օրիորդի մը վրայ աչք տնկելով՝ ուզեց անոր հետ կարգուիլ, ուստի Կղեմէս Է. Քահանայապետին առաջարկեց, որ Կատարինէ Արակոնացւոյն հետ 20 տարիէ վեր ունեցած օրինաւոր ամուսնութիւնը լուծէ: Երբ որ այս առաջարկութիւնն, ինչպէս յայտնի էր, Քահանայապետը մերժեց ըսելով որ Անգղիայի թագաւորին սիրոյն համար չի կրնար անիրաւ վճիռ մը տալ, եւ քրիստոնէից մէջ եղած օրինաւոր ամուսնութեան անլուծանելիութեան աստուածային օրէնքը փոխել, թագաւորը մոլեկան ցանկութեամբ վառեալ, իր երկրին քանի մը աստուածաբաններուն ու իրաւագէտներուն որոշումը բաւական համարելով (օտար համալսարաններէն գրեթէ ամէնն ալ իրեն հակառակ վճիռ տուած էին), Կատարինէի հետ ունեցած ամուսնութիւնն անվաւեր հրատարակեց, եւ Աննա Պոլէնի հետ ամուսնացաւ

(1533)։ Ասոր վրայ Քահանայապետն իրեն նզովք սպառնաց եթէ մէկ տարուան մէջ Աննա Պոլէնէն չի բաժնուիր եւ իր օրինաւոր ամուսինը նորէն իրեն չ՚առնուր։ Թագաւորն ասոր վրայ զայրացած՝ եկեղեցւոյ միութենէն բաժնուեցաւ, եւ խորհրդանոցին ձեռքով ինք զինքն Անգղիայի եկեղեցւոյն գլուխ հրատարակել տուաւ։ Հռոմայ աթոռոյն հետ ամէն հաղորդակցութիւն արգելեց, անկէ եկած տնօրինումներն անվաւեր հրատարակեց, եւ տնօրինում ուզողներուն հրամայեց՝ որ Թովմաս Գրէնմէր Գենթրպըրիի արքեպիսկոպոսին դիմեն, որ այս ամէն գործողութեանց մէջ թագաւորին գլխաւոր օգնականն եղած էր։ Ասոր վրայ Պաւղոս Գ. Քահանայապետը զՀենրիկոս նզովեց։ Անկէ ետքը թագաւորն իր անիրաւ ու ապօրինաւոր հրամանները չկատարողներուն դէմ՝ սաստիկ բռնութիւններ ու անագորոյնութիւններ սկսաւ գործել։ Ով որ թագաւորին ամուսնութեան օրինաւորութիւնն եւ եկեղեցւոյ վրայ ունեցած բացարձակ գլխաւորութիւնը չէր ուզեր ճանչնալ՝ մահուամբ կը պատժուէր։ Ռոչեստրի Յովհաննէս Ֆիշէր եպիսկոպոսն եւ Թովմաս Մորոս դիւանապետը գլխատուեցան։ Կղերականաց մեծ մասը խոնարհեցաւ եւ թագաւորին եկեղեցական գլխաւորութիւնը ճանչցաւ, միայն վանքերը՝ ի մասնաւորի խստագոյն կրօնները դէմ կեցան, որ պատճառաւ իրենց դէմ անլուր անգթութիւններ եղան. 1540ին բոլոր վանքերը ջնջուեցան եւ ինչքերնին յարքունիս առնուեցաւ։

Հենրիկոս Ը. լութերականութեան հակառակ ըլլալուն համար, ուղղափառ վարդապետութեան մէջ փոփոխութիւն մը չըրաւ. մանաւանդ թէ անոր մէկ քանի էական մասերը խորհրդարանին վճռովը հաստատել տուաւ։ Բայց իր մահուանէն ետքը Եդուարդ Զ. որդւոյն խնամապետութեան ժամանակ, Գրէնմէրի ձեռքով Անգղիա կալուինականութիւնը մտաւ։ Եդուարդ Զ.էն ետքը (1553), գահն ելաւ Հենրիկոս Ը.ին առաջին օրինաւոր ամուսնութենէն ունեցած Մարիամ աղջիկը, որ եռանդուն ուղղափառ էր։ Ասիկայ Հռոմայ եկեղեցւոյ հետ միութիւնը նորէն հաս-

տանել. Եդուարդ Զ.ին ժամանակ եղած կրօնական փոփոխութիւնները ջնջեց, եւ ուղղափառ հաւատքը դարձեալ տէրութեան կրօն ըրաւ: Այս բանիս երկու պարագայ իրեն օգնական եղան, նախ որ ժողովուրդն ընդհանրապէս հին ուղղափառ կրօնին դեռ հաւատարիմ մնացած էր, եւ երկրորդ ժողովուրդն այնչափ հաւատոյ փափոխութեանց պատճառաւ կրօնական անտարբերութեան մէջ ինկած էր: Բայց դժբախտութեամբ իր կառավարութիւնը կարճատեւ եղաւ. 1558ին մեռնելով՝ իրեն յաջորդեց Եղիսաբեթ թագուհին, Հենրիկոսի Աննա Պոլինէն ունեցած աղջիկը, որ իր հօրը սկսած նորոգութեան գործքը գլուխ տարաւ: Եղիսաբեթ իր Մարիամ քրոջը կառավարութեան ժամանակ ուղղափառութեան դարձած էր, բայց գահն ելլելուն պէս դարձեալ բողոքականութիւնն ընդունեցաւ, վախնալով որ ապօրինաւոր ծննդեանը համար գահէն կը զրկուի: Խորհրդանոցին օգնականութեամբն իր նախորդին եկեղեցական կարգաւորութիւնները ջնջեց, եւ եկեղեցւոյ գլխաւորութիւնն աշխարհական իշխանութեան հետ նորէն միացուց: Խորհրդանոցին ձեռքով հաստատել տուած 39 յօդուածները, որոնցմով Ս. Գրոց երկրորդականոն գրքերը, աւանդութիւնը, քահանայապետին գլխաւորութիւնը, խորհըրդոց եօթն ըլլալը, պատարագը, գոյացափոխութիւնը, ներողութիւնը, քաւարանն ու սրբոց բարեխօսութիւնը մերժուեցան, անկէ ետքն ուղղափառ եկեղեցւոյն եւ նորահաստատ անգղիական եկեղեցւոյն բաժանման վիհերն եղան: Եպիսկոպոսները պահուեցան բայց տէրութեան իշխանութեան տակ եւ իրենց եկեղեցական իրաւանցը մէջ խիստ սեղմեալ. իսկ աշխարհական պատուոյ կողմանէ, տէրութեան առաջին սեպուհներն էին: Այսպէս հաստատուեցաւ անգղիական եկեղեցին, որ Բարձր կամ Եպիսկոպոսական եկեղեցի ալ կը կոչուի: Այս նորահնար կրօնը տէրութեան մէջ խոթելու համար, Եղիսաբեթ խիստ հալածանք մը հանեց ուղղափառաց դէմ. եպիսկոպոսները՝ որոնք ամէնքը միաբան, բաց ի մէկէն, այս կարգաւորութեանց դէմ դրին, իրենց աթոռէն մերժուեցան ու բան-

տարկուեցան. ընդդիմացող քահանաներուն տեղ՝ նախաղանդութեան հետեւող քարոզիչներ դրուեցան, եւ անթիւ ու անհամար ուղղափառք իրենց կրօնին համար ինչքերնին, պատիւնին ու կեանքերնին իսկ կորսնցուցին։ Իսկ խիստ կալուինականք այսչափն ալ բաւական չհամարելով, անգղիական եկեղեցւոյն մէջ դեռ մնացած մէկ քանի ուղղափառ վարդապետութիւններն ու ծէսերն ալ կ՚ուզէին ջնջել. ի մասնաւորի հաճեալ չէին եպիսկոպոսաց գերագոյն իշխանութեանը վրայ, որոնց տեղ տէրութենէ անկախ երէցներ կ՚ուզէին դնել, եւ Ս. Գիրքը միայն իբրեւ եկեղեցւոյ կարգաւորութեանցն ու հրահանգացը կանոն ու որոշիչ կը համարէին. ասոնք Պուրիթէնք (Puritains) կամ Երէցականք անուանուեցան։ Թէեւ ասոնք բարձր եկեղեցւոյ կողմնակիցներէն խիստ հալածանքներ կրեցին, սակայն եւ այնպէս Անգղիա շատ հետեւողներ գտան։

Ե. Սկովտիա՝ Նորոգողութեան տարածուելուն շատ օգնեց մէկ կողմանէ ժողովրդեան ազատութիւնն ու կղերականաց բարուց ապականութիւնը, եւ մէկալ կողմանէ Մարիամ Ստուարդ թագուհւոյն ժամանակ դրուած տկար խնամակալութիւնը։ Այս միջոցիս Յովհաննէս Քնոքս անուամբ սոսկական բիրտ անձը, որ Կէնֆ կալուինի վարդապետութիւնը սորված էր, Սկովտիա կալուինականաց աղանդը տարածեց։ Ասիկայ կէս մը բռնութեամբ կէս մը նենգութեամբ կըրցաւ Սկովտիա ուղղափառ կրօնն իբրեւ ջնջուած հրատարակել տալ, եւ հոն Կէնֆի եկեղեցական կարգաւորութեան համաձայն՝ նոր եկեղեցական սահմանադրութիւն մը խօթել։ Մարիամ Ստուարդ ուղղափառ թագուհւոյն դէմ, որ 1561ին կառավարութիւնը ձեռքն առաւ, ապստամբութիւն մ՚ելաւ. ինք ստիպուեցաւ Սկովտիայէն փախչիլ եւ Անգղիայի Եղիսաբեթ թագուհւոյն ապաւինիլ (1568)։ Ասիկայ իր գլխաւոր թշնամին ըլլալով՝ զինքը բերդի մը մէջ բանտարկեց, եւ քսան տարւան գերութենէ ետքը՝ 1587ին գլխատել տուաւ։ Մարիամ Ստուարդին անչափահաս որդւոյն Յակոբ Զ.ին առեն, ըստ մեծի մա-

սին կալուինականներէ բաղկացած խնամակալութիւն մը դրուեցաւ, որ Սկովտիայէն ուղղափառ կրօնը բոլորովին ջնջելու ետեւէ եղաւ։ Իսկզբան եպիսկոպոսական սահմանադրութիւնը հաստատուեցաւ, բայց 1592էն ետքն երիցական կարգաւորութիւնն աւելի ընդունելութիւն գտաւ։

Գ. Իրլանտա։ Անգղիայի թագաւորաց՝ նորաղանդութիւնն Իրլանտա խոթելու ամէն փորձերը պարապ ելան. ժողովրդեան ուղղափառ եկեղեցւոյ ունեցած հաւատարմութիւնն անդրդուելի էր։ Ստոյգ է Անգղիայի ու Սկովտիայի ուղղափառաց այնչափ դարերու մէջ կրած բռնութիւններն անլուր ու զարհուրելի են, բայց Իրլանտացւոց քաշած հալածանքները գրչի ու խօսքի տակ չեն իյնար։ Մէկ քանի դար ամենեւին իրաւունք կամ ազատութիւն մը չունէին, նոյն իսկ խորհրդանոցի անդամ կամ զօրաց հրամանատար չէին կրնար ըլլալ։ Հազիւ իննեւտասներորդ դարուն սկիզբներն (1829) ելած ազատութեան օրինագրով՝ Իրլանտայի ուղղափառք ազատութիւն եւ մէկ քանի քաղաքական իրաւունքներ առացան։

4. Գաղղիա՝ Նորաղանդութիւնը (Կալուինի վարդապետութիւնը) Հելուետիայէն մտաւ, եւ աադին անդէն շատ հետեւողներ գտաւ, որոնք իրենք զիրենք առանձին անուամբ Հիւկընօյ կամ Հիւկէնօտ կը կոչէին։ Փրանկիսկոս Ա. թագաւորին եւ մանաւանդ իր որդւոյն Հենրիկոս Բ.ին զօրաւոր ու խիստ կառավարութեան ատեն Հիւկեանք ընդհանրապէս անզօր ու ընկճեալ էին, բայց 16 տարուան տկար ու հիւանդոտ Փրանկիսկոս Բ.ին ժամանակ սկսան զօրանալ, եւ մեծ քաղաքներու մէջ հասարակութիւններ կազմել։ Ասոնք աւելի եւս յանդգնութիւն առին, երբոր թագաւորին մայրը՝ Կատարինէ Մետիչեան, Փրանկիսկոս Բ.ին եղբօրը՝ Կարոլոս Թ.ին անչափահասութեան ատեն քաղաքական նպատակներու համար իրենց կրօնի ազատութիւններ տուաւ։ Արդէն 1559էն սկսած էին եկեղեցիներն ու վանքերը կողոպտել ու այրել, բայց հետեւեալ տարիներն սկսան աւելի եւս բռնութիւններ ընել, որով կ՚ուզէին ցուցընել թէ իրենց հետ ներողա-

մտութեամբ վարուիլը բաւական չեն համարիր, Հապա մտքերնին է Գաղղիայէն ուղղափառ կրօնը բոլորովին ջնջել։ Քահանաներն ու կրօնաւորները կը չարչարէին եւ նոյն իսկ կը մեռցընէին, ուղղափառներն իրենց տներէն կը հալածէին, պատկերներն ու խորանները կը կործանէին, որոց մարմիններն ու սուրբ անօթնե-րը կ՚այրէին ու եկեղեցիները կը քանդէին։ Այս ամէն բռնութեանց ուղղափառք չդիմանալով, բռնութիւնը բռնութեամբ վանելու համար վերջապէս ձեռուընին զէնք առին, որմէ սոսկալի քաղաքային պատերազմ մը յառաջ եկաւ։ Տրեօ քաղքին քովը ճակատ մը տալէն ետքը, երկու կողմանք խաղաղութիւն ըրին, եւ թէպէտ Հիւկընոնները յաղթուած էին, սակայն եւ այնպէս աւելի ընդարձակ կրօնի ազատութիւններ ա-ռին։ Անկէ ետքն երկու կուսակցութեանց մէջ ալ երկպառակութիւնը ծածուկ կը շարունակուէր, մին-չեւ որ վերջապէս Հենրիկոս Նովարրայի իշխանին եւ Թագաւորին քրոջը Մարգարիտային իրարու հետ ա-մուսնանալուն առթիւը, զարհուրելի կերպով մը դուրս ժայթքեցաւ։ Այս ամուսնութեան պատճառաւ Բարիզ ժողվուած Հիւկընոններուն գլխաւորները 1572ին Օգոստոսի 24ին գիշերը յանկարծ անխնայ ջարդուեցան*։ Կարոլոս Թ. Թագաւորին այնպէս հա-կըցուցած էին, թէ նոր քաղաքական պատերազմի վախ եւ Հիւկընոններուն կողմանէ իր կենացը դէմ դաւա-դրութիւն մը կայ, ուստի եւ շատ ընդդիմանալէն ետ-քը վերջապէս այս անագորոյն գործողութեան հաւա-նեցաւ։

Նոյն կոտորածն եղաւ նաեւ գաւառներուն մէջ, եւ 4000—5000 կալուինականք (բողոքական մատե-նագիրք շատ չափազանցութեամբ մինչեւ 100,000 կը դնեն) սպաննուեցան։ Թէեւ այս անագորոյն գործքը, որ ամենեւին կերպով մը չի կրնար արդարանալ, կրօ-նէ յառաջ եկած բան մը չէր, եւ պատճառը պարզ քաղաքական էր, սակայն ասդին անդին ժողովրդեան կողմանէ կրօնական նախանձաւորութիւն ալ մէջը

* Այս դէպքն աշխարհական պատմութեան մէջ՝ Բարթողիմէոսի գիշեր կամ Բարթղէմէոսեան հարսանիք անուամբ կը յիշատակուի։

խառնուեցաւ: — Հենրիկոս Գ. Հիւկընոններուն հետ կրօնի նոր խաղաղութիւն մ'ըրաւ, որով անոնք կատարեալ կրօնի ազատութիւն ձեռք բերին: Հենրիկոս Դ. որ յառաջ կալուինական էր եւ ետքէն ուղղափառութեան դարձած էր, թագաւորական գահն ելլելէն քանի մը տարի ետքը (1598), ժամանակին պարագաներէն ստիպուած՝ Նանդի հռչակաւոր հրովարտակը հանեց, որով Հիւկընոններուն կատարեալ քաղաքային իրաւունք եւ բոլորովին կրօնի ազատութիւն կը շնորհուէր: Անկէ ետքը Հիւկընոներն սկսան ետեւէ իյնալ իրենց առանձին եկեղեցական ու քաղաքական սահմանադրութիւն մը շինելու եւ յայտնի կը ցուցընէին որ մտքերնին տէրութենէ բաժնուիլ էր, ինչպէս որ եկեղեցիէն արդէն բաժնուած էին: Բայց Լուդովիկոս ԺԴ.ին ատեն Նանդի հրովարտակն ետ առնուեցաւ, որով Հիւկեանք նեղի մնալով 67,000 հոգւոյ չափ Գաղղիայէն ելան եւ Անգղիա, Հոլլանտա, Դանիա ու Բրուսիա գաղթեցին: Սակայն մեծագոյն մասը Գաղղիա մնաց, որոնք Լուդովիկոս ԺԴ.ին մահուանէն ետքը հանդիստ գտան, եւ Լուդովիկոս ԺԶ.ին (1787) հանած հրովարտակաւն ուղղափառաց հետ հաւասար իրաւունք ստացան:

5. **Ստորին Նահանգները**՝ կալուինականաց մոլորութիւնը Գաղղիայէն ու Անգղիայէն մտաւ, զորն որ ոչ Կարոլոս Ե.ին եւ ոչ Փիլիպպոս Բ.ին խիստ օրէնքները կրցան խափանել: Մանաւանդ թէ վերջիններն նորաղանդից դէմ հանած խիստ պատժական հրովարտակները, ապստամբութիւն մը յառաջ բերին, որուն հետեւութեամբը Ստորին Նահանգները Սպանիայէն բաժնուեցան: Հարաւային Նահանգներուն մէջ ուղղափառ կրօնը մնաց, բայց հիւսիսային նահանգաց մէջ (Հոլլանտա), որոնք իրենք իրենցմէ ամբողջ գումարութիւն մը կը կազմէին, Անգղիայէն ու Գաղղիայէն եկած բազմաթիւ կալուինականաց ձեռքով կաթուղիկէ կրօնն ընկճուեցաւ եւ ուղղափառ եկեղեցական պաշտամունքը բոլորովին արգելուեցաւ (1581): Կալուինական հասարակութեանց 1618ին Տորդրեխդ գումարած առաջին սինոդոսը, Հոլլանտայի համար ճիշդ Կալուինի մտաց

համաձայն եկեղեցական յօրինուածութիւն մը հաստատեց։ Սակայն եւ այնպէս ըստ բաւականի բազմաթիւ ուղղափառք հոն մնացին, որոնք առաքելական փոխանորդի մը տակ էին, որ Կոզոնիա կը նստէր։

6. *Լեհաստան՝* թէեւ յառաջագոյն ամէն կրօնական կուսակցութեանց (Հուսեանց, Լութերականաց եւ Կալուինականաց) ժողովատեղին եղած էր, սակայն եւ այնպէս հոն ուղղափառ կրօնը հաստատուն մնաց։ Լեհաստան՝ ուղղափառ կրօնը հաստատուն պահելուն մեծ շնորհքն իր եպիսկոպոսաց անխոնջ եռանդեան ու Յիսուսեանց արթնութեան պարտական է։ Թէեւ Լեհաստանի բողոքական կուսակցութիւնները, որոնք Այլակրօն (Dissident) կ'անուանուէին, կատարեալ կրօնի ազատութեան ապահովութիւն ընդունեցան, բայց ԺԸ. երրորդ դարուն սկիզբները քաղաքական նկատմունքներու համար այս ազատութիւնները չափաւորուեցան։ Ասոր վրայ Այլակրօնները Ռուսաստանի հետ գաղտնի հաղորդակցութեան մէջ մտան, եւ անոր հովանաւորութեան տակ շինած դաշնաւորութիւններին Լեհաստանի թագաւորութեան կործանման առաջին քայլն եղաւ։ — Լիֆլանտ՝ 1522ին բողոքականութիւնն ընդունեցաւ, եւ քիչ մ'ետքը Քուրլանտ։ — Հունկարիա՝ որչափ ալ տէրութիւնը նորաղանդութեան հակառակ էր, սակայն եւ այնպէս շատ կանուխ արդէն մուտք գտաւ, գլխաւորաբար ժողովրդեան տգիտութեան եւ մեծամեծաց ընչաքաղցութեան պատճառաւ, որոնք եկեղեցական ընչից աչքերնին տնկած էին։ — Նոյնպէս Դրանսիլվանիա՝ Շլէզիայէն մտաւ Լութերի մոլորութիւնը, բայց ետքէն կալուինականաց աղանդը հոն տիրող եղաւ. հիմայ դարձեալ լութերականութիւնն աւելի զօրացած է։ Այս երկու կրօնական բաժանումներէն զատ հոն կը գտնուի Սոկինեան ըսուած աղանդաւորներու մեծ բազմութիւն մը։

Նորաղանդք իրենց մոլորութիւնն Եւրոպա տարածելը բաւական չհամարելով, զանիկայ արեւելք տարածելու եւ արեւելեան եկեղեցին ալ իրենց հետ միաւորելու փորձեր ըրին։ Այս վախճանաւ նախ

Լութերականք՝ Յունաց Յովասափատ Բ (1555—1565) եւ ետքէն Երեմիա Բ. Կոստանդնուպոլսոյ պատրիարքներուն իրենց դաւանանքը խաւրելով, զանոնք յորդորեցին որ իրենց հետ միանան։ Բայց Երեմիա պատրիարքը բողոքականաց դրած ընդարձակ թղթի մը մէջ իրենց մոլորութիւնները մերժեց, զորն որ ետքէն 1672ին Երուսաղէմ գումարուած սիւնհոդոսն ալ հաստատեց։ Լութերականներէ աւելի յաջողութիւն չգտան Կալուինականք ալ։ Անոնց ձեռքը յարմար գործիք մ'եղաւ Կիւրեղ Լուկարիս անուամբ Յոյնը, որ Բատուա ուսում սորվելէն ետքը, Կէնֆ քաղաքէն եւ ուրիշ բողոքակրօն երկիրներէն անցնելով՝ Կալուինականաց մոլորութիւններէն շատ բան իրեն սեպհականած էր։ Ասիկայ կաշառքի զօրութեամբ՝ Աղեքսանդրիայի պատրիարք ընտրուելէն ետքը, 1621ին Կոստանդնուպոլսոյ պատրիարքութիւնն ալ ձեռք բերելով, հոն տպարան մը դրաւ եւ կալուինականաց վարդապետութիւնները դիւրաւ տարածելու համար Հելուետիայէն քարոզիչներ կանչեց։ Սակայն այս ամէն ջանքերն երկայն չտեւեցին. Յոյնք իմանալով իրենց բողոքակրօն պատրիարքին միտքը՝ զինքը վար առին, եւ Կոստանդնուպոլիս գումարուած սիւնհոդոսի մը մէջ (1638), իր վճիռները մերժեցին ու ջնջեցին, որով նորաղանդից նոյն տանենուան արեւելեան առաքելութեան ջանքերը դադրեցան։

## 86. *Բողոքականաց մէջ եղած զանազան բաժանումներ։*

Ա. Գիրքն ուզածին պէս մեկնելու ազատութիւնը, նոր եկեղեցւոյն մէջ իսկզբան անդ արդէն երկպառակութիւններ յառաջ բերած էր. նոյնն ետքէն աւելի եւս յայտնի տեսնուեցաւ, երբոր հետզհետէ բողոքականաց մէջ բազմաթիւ աղանդներ ելան, որոնք քիչ շատ առաջին նորոգիչներուն վարդապետութենէն կը տարբերէին, եւ իրարու մէջ ուրիշ կապ մը չունէին, բայց եթէ ուղղափառ եկեղեցւոյ դէմ բողոքողութիւնը։ Անոնց գլխաւորները հետեւեալներն են.

1. *Կրկնակնունք* աղանդաւորները, որոնց սկիզբն արդէն վերը (տես երես 305) յիշեցինք։ Ասոնք Հոգւոյն Սրբոյ անմիջական ազդեցութեան վրայ վստահացած, չէ թէ միայն տղոց մկրտութիւնը չէին ընդունէր, այլ նաեւ ամէն եկեղեցական պաշտամունք կը մերժէին։ Այս աղանդաւորները թէեւ ամէն տեղ կը գտնուէին, բայց գլխաւորաբար Գերմանիա, Հելուետիա ու Ստորին Նահանգները շատ տարածուած էին։ Գերմանիայի Միւնստէր քաղաքն իրենց գլխաւոր կենդրոնն էր, ուր Յովհաննէս Բոքելսոն անունով դերձակ մը ինք զինքն իբրեւ մարգարէ կարծեցընել տալէն ետքը, ինքնիշխան թագաւոր ընտրել տուաւ, եւ ամէն կերպ անգթութիւններ ու զազրագործութիւններ սկսաւ գործել, մինչեւ որ Վալտէքի իշխան եպիսկոպոսը՝ նոյն քաղաքը 1535ին այս բռնաւորին ձեռքէն ազատեց, եւ ուղղափառ կրօնը հոն դարձեալ հաստատեց։ — Մեննօ Սիմոնիս անուամբ ուղղափառ քահանան՝ Կրկնակնունքներուն կողմն անցնելով, անոնց վարդապետութիւնը չափաւորեց եւ մէջերնին եկեղեցական խիստ հրահանգ խոթեց. որմէ այս աղանդին հետեւողները Մեննոնեան ալ կոչուեցան։ Ասոնք ետքէն երկու կուսակցութեան բաժնուեցան։

2. *Սոկինեանք*: Վեշտասաներորդ դարուն ընդհանուր կրօնական շարժումը, Իտալիա ալ մէկ քանի հոգւոյ գլուխը տաքցուց։ Ասոնք միտքերնին դրած էին որ Նորոգողաց մինչեւ նոյն ատեն ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեանցը մէջ ըրած փոփոխութիւնները բաւական չեն։ Ասոնցմէ մէկն էր Սիենայի երեւելի տոհմէ մը յառաջ եկած Լելիոս Սոկինոս անուամբ մէկը, որ իր մոլար սկզբունքները տարածելու համար 1547ին Գերմանիայէն ու Հելուետիայէն անցնելով Լեհաստան եկաւ, ուր իրեն հետեւողներ կրցաւ գտնել։ Իր եղբօրորդին Փաւստոս Սոկինոս, Լելիոսի վարդապետութիւնները բովանդակութեան մը մէջ խոթեց։ — Սոկինեանք Ս. Գիրքն իբրեւ ամէնէն բարձր հեղինակութիւն կը դնեն, բայց անոր մէջէն ան կտորները միայն կ'ընդունին, զորոնք մտօք կրնան ըմբռնել։ Քրիստոսի աստուածութիւնը կ'ուրանան,

եւ զինքը միայն աստուածացեալ մարդու տեղ կը դնեն. նոյնպէս չեն ընդունիր Հոգւոյն Սրբոյ աստուածութիւնը, որ իրենց վարդապետութեան համաձայն Աստուծոյ պարզ զօրութիւն կամ սեպհականութիւն մըն է, եւ հետեւաբար ամբողջ Երրորդութիւնը կը մերժեն (անոր համար ալ Միապետական, Unitair կը կոչուին)։ Անկէ զատ չեն ընդունիր սկզբնական մեղքը, եւ մկրտութեան ու Ս. Հաղորդութեան խորհուրդներուն գերբնական զօրութիւնը։ Մկրտութիւնը լոկ արարողութիւն մը կը համարին մէկը՝ քրիստոնեայ հաւատարակութեան մէջ ընդունելու. իսկ Հաղորդութիւնն իբրեւ Քրիստոսի մահուան յիշատակ կը դնեն, որուն մէջ հացն ու գինին Քրիստոսի մարմնոյն պարզ նշաններն են։ — Սոկինեանք 1685ին Լեհաստանէն մերժուելով, անոնց մէկ փոքր մասն ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դարձաւ, իսկ մեծագոյն մասը Բրուսիա, Տրանսիլվանիա ու Հոլլանտա գաղթեց։

3. *Արմինեանք*։ Ասոնց հիմնադիրը Յակոբոս Արմինիոս՝ Լայտէն քաղաքին աստուածաբանութեան ուսուցիչ էր, որ Կալուինի բացարձակ նախասահմանութեան վարդապետութիւնը մերժելով, արդարացուցման ու շնորհաց խնդիրներուն մէջ աւելի ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեանը մօտեցաւ։ Իր պաշտօնակիցը Գոմարոս՝ խիստ կալուինական ըլլալով, իրեն ամենէն մեծ ախոյեանն եղաւ. սակայն եւ այնպէս երկուքն ալ հետեւողներ գտան։ Արմինիոսի մահուանէն ետքը՝ կալուինականք իրեն հետեւողներն ամբաստանեցին, որ բուն Նորալանդից հաւատոյ հանգանակէն խոտորած են, որուն դէմ Արմինեանք Հաակի ընդհանուր կարգաժողովոյն ջատագովութեան թուղթ մը (rémonstrance) ներկայացուցին։ Բայց վերջապէս 1618 կալուինականաց Տորդրեխդ գումարած ժողովոյն մէջ Արմինեանք յաղթուեցան, իբրեւ հերետիկոս պաշտօններնէն ձգուեցան եւ շատերն ալ Հոլլանտայէն աքսորուեցան. բայց ետքէն նորէն հրաման ընդունեցան Հոլլանտա դառնալու։

4. *Քուէքէրք*։ Ասոնց հիմնադիրն եղաւ Գէորգ Ֆոքս կօշկակարը՝ որ 1624ին Անգղիայի Լայչեսդըր

քաղաքը ծնած է։ Անիկայ անգղիական բարձր եկեղեցւոյն աստուածային պաշտամունքը չհաւնելով՝ անկէ բաժնուեցաւ, եւ Հոգւոյն Սրբոյ ազդեցութենէն՝ որուն կը հաւատար, սրտի ու հոգւոյ մնունդ առնուլ կը կարծէր։ Ֆոքս շատ հետեւողներ ունեցաւ, որոնց գլխաւոր վարդապետութիւնն էր, թէ ներքին լոյս մը կ'ընդունին, որ իբրեւ աստուածային յայտնութիւն՝ ճշմարտութիւնը ճանչնալու համար ամէն մարդու անընդմիջաբար կը հաղորդուի։ Այս ներքին լոյսն իրենց առջեւն աւելի արժէք ունէր քան թէ Ս. Գրոց խօսքերը։ Արտաքին վարդապետութիւն, խորհուրդ կամ որպիսի եւ իցէ կրօնական արարողութիւն չեն ընդունիր։ Ջինուորութեան երթալը, տասանորդ տալն ու երդում ընելն իրենց արգելեալ է։ Նոյն իսկ անմեղ աշխարհական զբօսանքները կ'արհամարհեն, եւ սովորական քաղաքավարական ձեւերը չեն գործածեր։ Եկեղեցական պաշտամունք կատարելու համար անզարդ սրահի մը մէջ կը ժողվին, եւ լռիկ մնջիկ Հոգւոյն Սրբոյ ազդեցութեանը կը սպասեն։ Եթէ Հոգին Սուրբ ինք զինքը մէկու մը կը յայտնէ, այր եղեր է, կին եղեր է, ոտք կ'ելլէ եւ ժողովականաց առջեւը կը սկսի խօսիլ. իսկ եթէ չի յայտներ, ան ատեն կը ցրուին կ'երթան։ Հոգւոյն սրբոյ գալստեան անձկանօք սպասելնին հեծելով ու դողդողալով (to quake) կը յայտնեն, ուստի Քուէքէր (Երերոտ) անունն ալ առած են։ Կարոլոս Բ. Անգղիայի թագաւորին ժամանակ Քուէքէրք Անգղիա շատ հարստահարուելով, Գուլիէլմոս Բէն անուամբ մէկը՝ Հիւսիսային Ամերիկայի Բենսիլվանիա գաւառն իրենց համար ապահով ապաստանարան մը գտաւ, եւ մեծագոյն մասը հոն գաղթեց։ Բայց Յակոբ Բ. թագաւորն ետքէն մայր երկրին մէջ ալ իրենց ազատութիւն տուաւ։

5. *Հէրնհութեանք կամ Եղբարց համայնութիւնը*։ Ասոնց հիմնիչն է Լուդովիկոս Զինձէնտորֆ կոմսը (ծն. 1700), որ բարեպաշտական ուղղութեան մը հետեւելով, կրօնի զանազանութեան վրայ ծանրակշռութիւն մը չէր դներ, այլ իբրեւ էական բան կը համարէր Քրիստոսի փրկագործութեան վարդապե-

տութիւնք հիմնական ու կենդանի օրինակաւ ըմբռնել ու զգալ։ Ասիկայ իր կալուածներէն մէկուն մէջ՝ Մօրաւիացի գաղթականներու հիւրասիրութիւն ընելով, զանոնք որոշ կանոնադրութեամբ Եղբարց հասարակութեան մը միաւորեց, որուն առաջնորդութիւնն ինք իր վրայ առաւ։ Անուննին առած են Հէրնհուդ քաղքէն, զորն որ 1722ին իրենք շինեցին։ Այս աղանդին նկարագիրը մասնաւոր վարդապետութեան մը վրայ չէ, հապա առանձին բարեպաշտ հոգւոյ ուղղութեան մը վրայ, որ պատճառաւ այս աղանդը շատ տեղ աղէկ ընդունելութիւն գտաւ. իրենց թիւը 100,000ի մօտ է։

6. *Մեթոտիստ կամ կարգապահ* ըսուած աղանդաւորները, թէ Անգլիա ու թէ Ամերիկա երիցական կուսակցութիւն մըն են, եւ անուննին անկէ առած են, որ խիստ կանոնաւորեալ կեանք կը վարեն, զորն որ իբրեւ միակ փրկութեան ճամբայ կը համարին։ Ասոնց հիմնադիրն է Յովհաննէս Վէսլի, որ անգղիական բարձր եկեղեցւոյն ցուրտ եւ անհամ պաշտամունքը չհաւնելով՝ 1729ին Օքսֆըրդ իր կարօղաւ եղբօրն ու բազմաթիւ համախոհներու հետ միաբանելով, սկսաւ խստամբեր հոգեւորական կրթութիւններու ետեւէ ըլլալ։ Այս միաբանութիւնը շատ տարածուեցաւ, եւ արտաքոյ կարգի ընդարձակութիւն առաւ, երբ որ Վէսլի հրապարակաւ սկսաւ իր սկզբունքները քարոզել։ Անկէ ետքը Վէսլի իր կուսակցացը հետ՝ անգղիական բարձր եկեղեցիէն բաժնուեցաւ, եւ առանձին հասարակութիւն մը կազմեց, որուն ինք եպիսկոպոս եղաւ եւ քահանաներ ձեռնադրեց։ Ասոնք Հէրնհուդեանց հետ շատ նմանութիւն ունին, եւ ի մասնաւորի եկեղեցական հրահանգաց խիստ պահպանութեամբ երեւելի են։ Միթոտիստներուն թիւը հիմայ Անգղիա 300,000էն աւելի է. իսկ Ամերիկա 3 միլիոնը կ'անցնի։

## 87. Տրիդենտեան ժողովը:

Մ՚ինչեւ հիմայ ըսուածներէն ըստ բաւականի տեսնուեցաւ՝ թէ Լութերի փորձած նորոգութիւնն ինչ աղէտալի հետեւութիւններ ունեցաւ. ամբողջ ազգեր կաթողիկէ ուղղափառ եկեղեցիէն բաժնուելով՝ առանձին ազգային եկեղեցիներ հաստատեցին, որոնք իրարու նախանձընդդէմ հակառակորդ եւ միայն կաթողիկէ եկեղեցւոյ դէմ ունեցած ընդդիմութեան մէջ իրարու միաբան էին: Այս ցաւալի վիճակը՝ չէր կրնար անտարբերութեամբ տեսնել կաթողիկէ ուղղափառ եկեղեցին, որ իբրեւ գթած մայր ամենուն փրկութեան հոգ կը տանի: Ուստի մոլորեալները ճշմարտութեան ճամբան դարձընելու համար շատ անգամ ձայնը բարձրացընելէն ետեւ, երբ որ տեսաւ որ անօգուտ է, անատեն վերջին զօրաւոր միջոցի մը ձեռք զարկաւ, այսինքն ընդհանուր ժողով գումարելու: Արդէն Կղեմէս Է. (1523—1534) Քահանայապետն ատոր վրայ ուղղափառ տէրութեանց հետ սկսած էր բանակցիլ, բայց զանազան արգելքներու պատճառաւ հազիւ Պաւղոս Գ. Քահանայապետին ժամանակ կարելի եղաւ ժողովը Տրիդենտ քաղաքը գումարել: Այս յապաղումն այն օգուտն ունեցաւ, որ ժողովոյն գումարուած ատեն, մէկ կողմանէ հոգիներն արդէն հանդարտած էին, եւ միւս կողմանէ նորաղանդութիւնն այնչափ զարգացած էր, որ եկեղեցին կրնար անոր մոլար վարդապետութեանցը դէմ ուղղափառ ճշմարտութիւնն որոշ սահմանել: Ժողովը բացուեցաւ 1545ին Դեկտեմբեր 13ին, շարունակուեցաւ Յուլիոս Գ. (1550—1555) ու Պաւղոս Դ. (1555—1559) Քահանայապետաց ատեն, եւ մէկ քանի անգամ ընդհատելէն ետեւ վերջապէս Պիոս Դ.ին ժամանակ (1563) լմնցաւ: Այս ժողովոյս ներկայ գտնուեցան Քահանայապետին հրեշտակներէն զատ, բազմաթիւ եպիսկոպոսք ու աբբայք, որոնց մէջ սրբութեամբ ու գիտութեամբ շատ երեւելի անձինք կային: Ընդ ամէնը 25 նիստ եղաւ եւ քուէարկութիւնն եկեղեցւոյ հին սովորութեան համաձայն՝ ըստ անձանց եւ ոչ թէ

ըստ ազգաց կատարուեցաւ, ինչպէս Կոստանդնուպոլսոյ ժողովոյն մէջ եղած էր։ Սիւնհոդոսին նպատակը կրկին էր. այսինքն ուղղափառ ճշմարիտ հաւատքը պաշտպանել ու հաստատել, եւ եկեղեցական հրահանգը նորոգել։ Հաւատոյ վարդապետութեան վերաբերեալ վճիռները, ըստ մասին յօդուածներու եւ ըստ մասին կարճ նախադասութիւններու մէջ բովանդակուած են։ Այս վերջինները՝ որ կանոն կ'ըսուին, դիւրիմաց ու բացայայտ կերպով ուղղափառ վարդապետութիւնը կը մեկնեն, եւ անոր ներհակ մոլար վարդապետութիւնը կը դատապարտեն։ Իսկ հրահանգաց վերաբերեալ որոշումներն ըստ ճշմարիտ մտաց՝ եկեղեցւոյ նորոգութեան կը հային եւ եկեղեցւոյ մէջ սպրդած անկարգութիւնները վերցնելու համար սահմանուած են։

Հաւատոյ վարդապետութեանց վճիռները՝ հետեւեալ նիւթերու վրայ են։ Նախ նիկիական հանգանակը կարդացուելով՝ հաւատոյ հիմ մը դրուեցաւ, որ ատքէն ըլլալու վարդապետական որոշմունքներով պիտ'որ մեկնուէր ու ընդարձակուէր։ Անկէ ետքը ժողովը յայտնեց, որ Հին ու Նոր Կտակարանի բոլոր գրքերէն զատ, նոյն յարգութեամբ կ'ընդունի նաեւ հաւատոյ ու բարուց վրայ եղած աւանդութիւնները, զորոնք Քրիստոս բերնով աւանդած, Ս. Հոգին ազդած եւ եկեղեցւոյ մէջ միշտ պահուած են։ Ժողովը միանգամայն Ս. Գրոց կանոնն որոշեց, եւ բազմաթիւ թարգմանութեանց մէջէն Վուլկաթա (Հրատարակած) ըսուած թարգմանութիւնը, հրապարակական ճառերու եւ քարոզներու համար իբրեւ վաւերական ճանչցաւ, այսինքն վճռեց որ անոր մէջ հաւատոյ ու բարուց դէմ մոլորութիւն կամ սխալ բան չկայ։ Հինգերորդ նիստին մէջ՝ զանազան մոլորութեանց դէմ սկզբնական մեղաց վարդապետութիւնը 5 կանոնով մեկնուեցաւ։ Վեցերորդ նիստին մէջ՝ արդարացուցման էական ու ընդարձակ վճռագիրը հրատարակուեցաւ, որուն յարակցեալ 33 կանոններն այս վարդապետութեան հակառակ եղած մոլորութիւններուն դէմ ուղղուած են։ Հետեւեալ նիստերուն մէջ խօսուեցաւ խորհրդոց վրայ ընդհանրապէս, եւ սուն-

նոդոսը վճռեց՝ որ Քրիստոս Տէրն մեր եօթը խորհուրդ-
հաստատած է։ Ասկէ ետքն առանձին առանձին իւրա-
քանչիւր խորհրդոց՝ ի մասնաւորի Ս. Հաղորդութեան
ու Պատարագի վրայ ուղղափառ եկեղեցւոյ վարդապե-
տութիւնը պարզ ու բացայայտ մեկնուեցաւ, եւ ա-
նոնց հակառակ եղած մոլորութիւնները դատապար-
տուեցան։ Քսանուհինգերորդ՝ վերջին նիստին մէջ,
քաւարանի, սրբոց բարեխօսութեան եւ անոնց նշխա-
րաց յարգութեան ու պատկերաց վրայ կաթուղիկէ
եկեղեցւոյ վարդապետութիւնը սահմանուեցաւ. հուսկ
վերջը՝ երկրորդ օրը ներողութեան վճռագիրը հրա-
տարակուեցաւ։ — Պիոս Դ. Ս. Քահանայապետը ժո-
ղովոյն այս ամէն որոշմունքները հաստատեց (1564ին
Յունուար 6ին), որոնք համառօտ հանգանակի մը մէջ
ամփոփուեցան, որ Տրիդենտեան հաւատոյ դաւանութիւն
կը կոչուի։

Ասկէ յառաջ եղած ժողովներէն եւ ոչ մէկուն
մէջ, այնչափ շատ նիւթերու վրայ խօսուած ու վճիռ
տրուած էր, ինչպէս Տրիդենտեան ժողովոյն մէջ։ Ժո-
ղովական հարց յառաջ բերած արդիւնքն իբրեւ
հրաշալիք կեցած է, որուն վրայ իրաւամբ ամէն դա-
րերը պիտ'որ զարմանան։ Հաւատոյ վարդապետու-
թեան վերաբերեալ վճիռներն արտաքոյ կարգի բա-
ցայայտ ու ճիշդ են. իսկ հրահանգաց վրայ եղած
կարգաւորութիւնները փորձառական հանճարով ու
խոհականութեամբ.լի են։

Տրիդենտեան ժողովոյն գլխաւոր դիտումներէն
մէկն էր նաեւ բողոքականներն ուղղափառ եկեղեցւոյ
հետ միաբանել, բայց այս ցանկալի նպատակը դժբախ-
տութեամբ չյաջողեցաւ։ Բողոքականք՝ որ յառաջագոյն
առ ընդհանուր ժողով բողոքած էին, ժողովը գումա-
րուելէն ետքն ամենեւին յանձն չառին հոն մարդ
խաւրել, ինչու որ յայտնի կը տեսնէին թէ բոլոր
քրիստոնեայ աշխարհքներէն գումարուած սինհո-
դոսի մը մէջ իրենք քիչուոր ու տկար պիտ'որ ըլլան։

Տրիդենտեան ժողովէն ետքը՝ որուն վճիռները
Վենետիկ, Սպանիա, Նէապոլիս, Ստորին Նահանգնե-
րը, Բորդուկալ, Սաւոյա, Լեհաստան, Աւստրիա եւ

Գերմանիայի ուղղափառ տէրութիւններն անմիջապէս հրապարակուեցան, ուղղափառ եկեղեցին նոր ոյժ եւ կենդանութիւն առաւ։ Աւերիչ փոթորիկը՝ անցած էր, եւ անոր տեղ նոր ծագող արեգական լոյսն առաւել պայծառութեամբ կը շողար։ — Եկեղեցական-բարոյական կենաց նորոգութեան համար բազմաթիւ նոր կրօններ հաստատուեցան։ Գիտնականութիւնն ի մասնաւորի Գաղղիա ու Իտալիա, մինչեւ այս ատեն չտեսնուած բարգաւաճանօք սկսաւ պայծառանալ, եւ եկեղեցին արեւմուտք կորսնցուցած անդամներուն տեղ, մեծ առաւելութեամբ լեցուց արեւելք եւ ուրիշ տեղեր խաւրած քարոզիչներուն ձեռքով։

## 88. Յիսուսեանց կրօնը:

Տրիդենտեան ժողովոյն հաւատոյ եւ բարուց վճիռները հաւատացելոց գործնական կենացը մէջ ընդհանուր մուծանելու համար, եկեղեցին յարմար եւ ընդունակ գործարաններու կը կարօտէր։ Նոյն աստուածեղէն Հոգին՝ որ եկեղեցւոյ առաջին դարերուն մէջ՝ Գնոստիկեանց, Մանիքեցւոց, Արիանոսաց, Պեղագեանց ու Նեստորականաց դէմ գիտութեամբ ու սրբութեամբ երեւելի անձինք հանեց, որոնք խօսքով ու գրով ուղղափառ ճշմարտութեան պաշտպան ու ջատագով կեցան, նոյն Հոգին վեշտասաներորդ դարուն ալ՝ Լութերականաց եւ Կալուինականաց մոլորութեանցը դէմ կաթուղիկէ եկեղեցին պաշտպանելու համար, ընկերութիւն մը երեւան հանեց։ Այս ընկերութիւնն էր Յիսուսեանց Ընկերութիւնը, որուն հիմնադիրն եղաւ Ս. Իգնատիոս Լոյոլեան ասպետը (ծն. 1491)։ Ասիկայ իր երիտասարդութիւնը Սպանիայի արքունիքին անցընելէն ետեւ, Բամբելոնայի պաշարման ատեն վիրաւորուելով, աշխարհքէս հրաժարեցաւ եւ ինք զինքն Աստուծոյ նուիրեց։ Առողջանալէն ու Երուսաղէմ երթալէն գալէն ետեւ, ուսումը կատարելագործելու համար Պարչելոնա, Ալքալա ու Բարիզ սորվեցաւ (1524—1535), եւ այս վերջին քաղքին համալսարանին մէջ փիլիսոփայութեան ու-

տուցիչ եղաւ։ Բայց Իգնատիոս միեւնոյն ժամանակ Հոգեւորական կրթութեանց ալ ետեւէ կ'ըլլար, եւ իր ուսումնակից երիտասարդաց կանոնաւոր ու բարի վարուց օրինակ եղած էր։ Ս. Իգնատիոս Բարիզ քանի մը հոգւոյ հետ ծանօթանալով, որոնց երեւելիներէն մէկն էր Ս. Փրանկիսկոս Քսաւերեան, անոնց հետ միաբանեցաւ եւ ամէնը մէկտեղ նոյն քաղքին Մոնմարդր վանքին եկեղեցւոյն մէջ ուխտ ըրին (1534), որ Ս. Երկիրն երթան եւ հոն անհաւատից դարձին զբաղին. իսկ եթէ իրենց այս նպատակին չեն կրնար հասնիլ, ան ատեն իրենք զիրենք Հռոմայ Քահանայապետին տրամադրութեանը տակ ձգեն, որ զիրենք ուզածին պէս եկեղեցւոյ ծառայութեան գործածէ։ Ս. Իգնատիոս՝ Պաղեստին երթալու դիտաւորութիւնը կատարելու համար ճամբայ ելլելու կը պատրաստուէր, երբ որ յանկարծ Վենետիկի հասարակապետութեան ու Տաճկաց մէջ պատերազմ բացուելով, միտքը դրածը կատարելէն արգելուեցաւ։ Ան ատեն Ս. Իգնատիոս իր ընկերներովը Հռոմ գնաց, եւ հոն բոլորովին նոր կրօն մը հաստատեց։ Պաւղոս Գ. Քահանայապետը Ս. Իգնատիոսի շինած սահմանադրութիւնն ընդունեցաւ, եւ հիմնած կրօնը Յիսուսի Ընկերութիւն անուամբ հաստատեց (1540)։ Այս ընկերութեան վախճանն ու նշանաբանն էր Աստուծոյ մեծագոյն փառքը (A. M. D. G. ad majorem Dei gloriam), որուն հասնելու պիտ'որ ջանային անոր անդամները՝ թէ մարդկային տկարութեան հնարաւոր անձնական կատարելութեամբ, եւ թէ ընկերաց փրկութեան աշխատելով։ Ընկերաց բարւոյն աշխատիլը պիտ'որ ըլլար քարոզելով, քրիստոնէական վարդապետութիւն սորվեցընելով, հաւատացելոց հոգեւոր ճամբուն մէջ առաջնորդելով, եւ գլխաւորաբար տղոց ճշմարիտ քրիստոնէական կրթութիւն տալով։

Ընկերութեան առաջնորդութիւնն ընդհանրական աբբայի մը ձեռքն է, որ Հռոմ կը նստի, եւ իւրաքանչիւր անդամոց կարողութեանը համաձայն տեղն ու պաշտօնը կ'որոշէ։ Ընդհանրական աբբային օգնական տրուած է Եւրոպայի գլխաւոր ազգերէն եւ կրօ-

նին նշանաւոր ու հմուտ անձինքներէն բաղկացած 5—6 առաջակայից ժողով մը։ Կրօնին սահմանադրութիւնը մինչեւ հիմայ եկեղեցւոյ մէջ եղած կրօններուն սահմանադրութիւններէն ամէնէն կատարելագոյնն է. մեծաւորաց խիստ հնազանդութեան պարտաւորութեան հետ՝ առանձնականաց ազատութիւնն ալ պահած է։ Կրօնին անդամներուն արգելեալ է եկեղեցական արժանապատուութեան մը բաղձալ կամ զանիկայ ընդունիլ, ի բաց առեալ եթէ Քահանայապետը զօրութեամբ հնազանդութեան զիրենք առայն պարտաւորէ։ — Միայն պրժանաւորք կրօն կ՚ընդունուին եւ նորընծայութիւնն երկու տարի կը տեւէ, որ միջոցին նորընծայք միայն հոգեւորի կը պարապին։ Աղքատութեան ուխտիւ՝ առանձնականաց արգելեալ է ինչք ստանալը, բայց կրօնը կրնայ ստացուածք ունենալ։ Հագուստին նկատմամբ՝ սահմանադրութիւնը միայն կ՚որոշէ, որ պարկեշտ ու տեղւոյն պատշաճական պիտ՚որ ըլլայ։

Յիսուսեանց ընկերութիւնը քիչ ատենուան մէջ այնպէս բազմացաւ ու տարածուեցաւ, որ հիմնադրին մեռած տարին (1556) 1000 անդամէն ու 100 տնէն աւելի ունէր։ Այս ընկերութեան՝ աստուածային պաշտամունքն արժանապէս ու վայելչապէս կատարելով, հոգւոց փրկութեան ցուցուցած մեծ եռանդովը, եւ ուղղափառ մանկտւոյն կրթութիւնը ձեռքն առնելով՝ եկեղեցւոյ ըրած բարիքն արտաքոյ կարգի մեծ է։ Եւ նորաղանդութեան առջեւ իբրեւ զօրաւոր թումբ մը կանգնուելէն զատ, նաեւ առաքելութեամբ ուղղափառ կրօնին աշխարհքիս հինգ մասերը տարածուելուն արդիւնապէս գործակից եղած է։

Յիսուսեանց այս անխոնջ եռանդը՝ շատ չանցաւ իշխանաց եւ նոյն իսկ մէկ քանի կրօններու նախանձը գրգռեց։ Գերմանիա՝ իրենց ոխերիմ թշնամիներն էին Լութերականներն ու Նորոգեալները, Գաղղիա՝ Կալուինականներն ու Յանսենեանները, եւ վերջապէս գրեթէ ամէն տէրութեանց խորհրդարանները*։ Ինչ

* Բայց ամէնէն զարմանալին այն է, որ նոյն իսկ ուղղափառաց մեծ մասին մտքին մէջ՝ ցայսօր նոյն կրօնին վրայ ճիշդ ու պայծառ գաղափար մը դեռ չկրցաւ տեղի գտնել։

դէշ բան որ զրպարտութիւնը կրնայ հնարել՝ ամէնն
ալ Յիսուսեանց վրայ դրուեցաւ, եւ առանձնականաց
ըրած յանցանքներն ընդհանուր ընկերութեան սե-
պուեցան։ Սակայն եւ այնպէս ցորչափ Թագաւորք ի-
րենց տէրութեանց մէջ կ'իշխէին, Յիսուսեանց Թըշ-
նամիներն իրենց վնաս մը չկրցան ընել, որովհետեւ
արդիւնքնին անժխտելի եւ ընդհանուր ծանուցուած
էր։ Բայց երբ որ ԺԸ. դարուն՝ իշխաններու տեղ պաշ-
տօնեաները սկսան կառավարել, իրենց Թշնամեաց միա-
ցեալ զօրութեան առջեւն ընկճեցան. 1759ին Փոր-
դուկալէն, 1764ին Գաղղիայէն, 1767ին Սպանիայէն
ու Նէապոլսէն մերժուեցան։ Վերջապէս Կղեմէս ԺԴ.
Քահանայապետն աշխարհական իշխանաց Թախան-
ձանքին չդիմանալով, 1773ին Յուլիսի 21ին հանած
համառօտագրով մը՝ Յիսուսեանց կրօնն ամէն ուղ-
ղափառ տէրութեանց մէջէն վերցուց։ Նոյն միջոցին
կրօնը 22,000 անդամ ունէր։ — Պիոս Է. Քահա-
նայապետն 1814ին Աւգ. 7ին հանած առանձին կոն-
դակաւ, Յիսուսեանց ընկերութիւնը բոլոր աշխարհ-
քիս վրայ նորէն հաստատեց. հիմայ ընկերութիւնը
8000—9000 անդամ ունի։

### 89. Նոր հաստատուած ուրիշ կրօններ ու միաբանու-թիւններ։

Վերջին արեւմտեան հերձուածոյն ժամանակ,
եկեղեցւոյ ամէնէն աւելի վնաս տուին ու անարգու-
Թեանը պատճառ եղան վանքերը, որոնց մեծագոյն
մասը նոյն միջոցին իրենք իրենցմէ լուծուեցան։ Բայց
վանականութեան հոգին իրենց հետ չմարեցաւ, մա-
նաւանդ Թէ քիչ մ'ետքն առաւել զօրութեամբ կեն-
դանացաւ, եւ եկեղեցւոյ մէջ հետզհետէ նոր կրօններ
եւ քրիստոնէական եղբայրսիրութեան նորանոր հի-
մնարկութիւններ եղան, որոնք ամէն տեսակ մարդկան
եւ ամէն կերպ մարդկային ծառայութեանց իրենք զի-
րենք նուիրեցին։ Ժամանակին մասնաւոր կարօտու-
Թիւնները զանազան ծնան, եւ եկեղեցին՝ որ իրաց փո-
փոխութեան մէջ իր մարդկային ազգին ունեցած կո-

չուժը միշտ հաստատուն կը պահէ, անոնց գործելու հոգի եւ զօրութիւն տուաւ։ Ասոնց երեւելիները հետեւեալներն են։

1. *Թէադինեանց կրօնը.* Հաստատողներն եղան մէկ քանի երեւելի անձինք (1524), ի մասնաւորի Պետրոս Կարաֆֆա Թէադէի եպիսկոպոսը, որ ետքէն Քահանայապետ եղաւ Պաւղոս Դ. անուամբ։ Ասոնք իրենց եկեղեցական աստիճանէն ու ինչքերնէն հրաժարելով, միայն բարերարներէն ընդունած ողորմութեամբ կ՚ապրէին. սովորական երեք ուխտերն ունէին եւ զգեստնին աշխարհական քահանայից պէս էր։ Այս կրօնին գլխաւոր վախճանը կղերականաց մէջ գիտութեան սէր ու ճշմարիտ բարոյականութիւն խոթել, եւ մոլար ուսմանց դէմ կռուիլ էր։

2. *Գափուչինք կամ Կնգղաւորք:* Ասոնց կրօնը Փրանկիսկեանց կարգէն յառաջ եկած է, եւ հիմնադիրն է Մատաթիա Պաշի Մոնդէֆալգոնի Կրտսեր եղբարց առաջնորդը։ Ասիկայ Կղեմէս Է. Քահանայապետէն խնդրեց, որ Ս. Փրանկիսկոսի խիստ աղքատութիւնն եւ բուն զգեստը կարող ըլլայ նորէն հաստատել, որուն Քահանայապետը հաւանեցաւ։ Այս նորահաստատ կրօնն (1526) այնպէս աղէկ ընդունելութիւն գտաւ եւ շուտ տարածուեցաւ, որ ութեւտասներորդ դարուն սկիզբը 1600 վանք եւ 25,000 անդամ ունէր։

3. *Բառնաբիտեանց կրօնը՝* Միլան երեք ազնուականք հաստատեցին, եւ անունն առած է Միլանի Ս. Բառնաբասի եկեղեցիէն (1530)։ Այս կրօնին նպատակն ըստ տեղական պիտոյից խոստովանութեան, քարոզութեան, տղոց կրթութեան եւ առաքելութեան պարապիլ էր։ Կղեմէս Է. Քահանայապետն այս կրօնը հաստատեց, որ անկէ ետքն ամէն տեղ՝ բայց ի մասնաւորի Իտալիա մեծ գործունէութիւն սկսաւ ցուցընել։

4. *Սոմասքեանց կրօնը՝* որ կանոնաւոր կղերականաց միաբանութիւն մըն է, Յերոնիմոս Էմիլիանոս Վենետիկցի ազնուականը հիմնեց (1528)։ Այս ընկերութիւնը՝ որուն վախճանն է որբ տղոց կրթութիւն

տալ, Պաւղոս Գ. ու Պիոս Դ. Քահանայապետները հաստատեցին։

5. *Ողորմած եղբարք*։ Ասոնց հիմնադիրն եղաւ Յովհաննէս Աստուածոյ, որ 1545ին Կրանատա ընկերութիւն մը հաստատեց հիւանդաց ծառայելու համար։ Այս կրօնին այնուական նպատակն եւ ցուցուցած մեծ արդիւնքն անոր հռչակուելուն ու տարածուելուն պատճառ եղան։ Գաղղիա՝ Frères hospitaliers, իսկ Գերմանիա Barmherzige Brüder կ'անուանուին։

6. *Հարք քրիստոնէական վարդապետութեան*։ Այս միաբանութիւնը հիմնեց Կեսար տը Պիւս գաղղիացին (1592), եւ Կղեմէս Ը. զանիկայ հաստատեց։ Վախճանն է տղոց քրիստոնէական վարդապետութիւն սորվեցընել։

7. *Աղօթարանից ընկերութիւնը* Հռոմ Ս. Փիլիպպոս Ների հիմնեց, եւ Գրիգոր ԺԳ. Քահանայապետը հաստատեց (1574)։ Անունն առած է Հռոմայ Ս. Յերոնիմոսի եկեղեցւոյն մէկ աղօթարանէն, որ իսկզբան Ս. Փիլիպպոս Ներիին եւ իր ընկերաց բնակելու տեղն էր։ Այս ընկերութեան անդամներուն գործքն է աստուածաբանական ուսմանց ետեւէ ըլլալ, քարոզել ու հիւանդաց ծառայել։ — Ասոր նման ընկերութիւն մը հաստատեց Գաղղիա 1611ին Պետրոս տը Պէրիւլ կարդինալը, քահանայական վիճակին յարմար ու արժանաւոր անձինք կրթելու վախճանաւ։ Այս ընկերութենէն շատ երեւելի անձինք ելան՝ ինչպէս Մալպրանշ, Մորինոս, Թոմասէն, Ռիշարտոս Սիմոնեան ու Մասիյլօն։

8. Այս միջոցիս հիմնուեցաւ նաեւ *Առաքելութեանց միաբանութիւնը* (Lazaristes) Ս. Վինկենտիոս Պաւղայեցւոյն ձեռքով, որ Գաղղիայի Կասգոյն գաւառին Փուի գեղը ծնած է։ Ուրբանոս Ը. 1632ին այս միաբանութիւնը հաստատեց, որուն անդամներն աշխարհական քահանայք են, եւ միայն կրօնաւորական երեք պարզ ուխտերն ունին։ Գլխաւոր նպատակնին է առաքելութիւն (mission) ընելով՝ ժողովուրդը կրօնական նիւթերու մէջ հրահանգել, եւ հոգեւոր

համբուն մէջ անոնց առաջնորդել: Ինոկենտիոս ԺԱ. Քահանայապետն առաջին անգամ զիրենք հեռաւոր աշխարհքներ քարոզութեան խաւրեց, եւ իրբեւ հեթանոսաց առաքեալ մինչեւ հիմայ մեծ եռանդեամբ ու ակներեւ արդիւնքով Արեւելք ու Ճենաստան կ'աշխատին:

9. *Ս. Մաւրոսի միաբանութեան հիմնադիրն* եղաւ Ցիտիէ որ լա Գուր, Սէն Վանի աբբայարանին մեծաւորը, որ Բենեդիկտեանց թուլցած կրօնը նորոգեց, եւ իր կրօնակիցներուն պարտք դրաւ ձեռագործի տեղ՝ մտաւոր աշխատութեան պարապիլ: Այս միաբանութիւնը գիտութեան մէջ շատ պայծառացաւ, մինչեւ նաեւ վարժարաններ եւ ուսումնարաններ իր կառավարութեան տակն ունէր: Անունն առած է Ս. Մաւրոսէն, որ Ս. Բենեդիկտոսի առաջին աշկերտներէն էր:

10. *Դրապիստները* իրենց անունն առած են Լա Դրապ աբբայարանէն, որուն մէջ՝ որ Ռանսէ աբբան 1662ին Կիստերեանց կրօնին նախնական կանոնները վերստին հաստատեց: Այս կրօնը՝ արտաքոյ կարգի խստութեամբ երեւելի է. միաբանք օրն երեք ժամ ձեռագործի կը զբաղին, եւ միշտ լռութիւն կը պահեն:

11. *Փրկչականներու միաբանութիւնը կամ Լիգուորեանք:* Ութեւտասներորդ դարուն վերջերն երբ Եւրոպայի գրեթէ ամէն կողմն անկրօնութիւնն ու անբարոյականութիւնը գլուխն ամբարձած՝ ընդհանուր տիրելու կը սպառնար, աստուածային նախախնամութիւնն առաքելական եռանդեամբ լի մարդ մը հանեց, այսինքն զՍ. Ալփոնսոս Լիգուորի, որ ոչ թէ միայն իր առաքինի վարուքն եւ ողջամիտ գրուածքներովը սպառնացող վտանգին դէմ արիաբար կռուեցաւ, այլ նաեւ նոր միաբանութիւն մը հաստատելով՝ եկեղեցւոյ առջեւ յարատեւ արդիւնք մը տուաւ: Ս. Ալփոնսոս ծնաւ 1696ին Նէապոլիս քաղաքն ազնուական ազգատոհմէ: Մտաց գեղեցիկ ձիրքերով զարդարուած ըլլալով, ինք զինքը նախ իրաւագիտութեան նուիրեց, բայց ետքէն աշխարհքիս վտանգներէն

փախչելու դիտմամբ՝ Աստուծոյ ձայնին անսալով քահանայական վիճակն ընդունեցաւ։

Արդէն իբրեւ աշխարհական քահանայ՝ Նէապոլիս քարոզութիւն բրած ատեն, առիթ ունեցած էր ի մերձուստ ճանչնալու հասարակ ժողովրդեան պիտոյքն ու կարօտութիւնները, որմէ դրդուած վերոյիշեալ միաբանութիւնը հաստատեց։ Այս միաբանութեան անդամներն աղքատութեան, ողջախոհութեան ու հնազանդութեան երեք պարզ ուխտերն ունին եւ վախճաննին է քարոզութեամբ ու հոգեւոր կրթութիւններով գլխաւորաբար ռամիկ ժողովրդեան հոգեւորական պիտոյից հոգ տանիլ։ Բենեդիկտոս ԺԴ. Քահանայապետը միաբանութեան կանոնները հաստատեց, իսկ իրեն յաջորդը Կղեմէս ԺԴ. նոյն միաբանութեան հիմնադիրը՝ զՍ. Ալփոնսոս Ագաթա քաղաքին եպիսկոպոս անուանեց։ Բայց Ս. Լիգուորի քանի մը տարի նոյն թեմը մեծ իմաստութեամբ ու խոհականութեամբ կառավարելէն ետեւ, Քահանայապետին հրամանաւն եպիսկոպոսութենէն հրաժարեցաւ, եւ իր սիրելի որդւոցը քով դարձաւ, ուր իր բազմարդիւն կեանքը կնքեց ծանրացեալ հասակի մէջ (1787)։ Ս. Ալփոնսոս Լիգուորի՝ ինչպէս իր աստուածաբանական գրուածքներովն անհաւատութեան դէմ ուղղափառ կրօնին պաշտպան կեցաւ, նոյնպէս իր հոգեւոր աշխատասիրութիւններովը, որ լի են ջերմեռանդ ու բարեպաշտիկ իղձերով առ ամենասուրբ Հաղորդութիւնն եւ որդիական սիրով առ երանելի Կոյսն, բազմաթիւ հաւատացելոց սրտին մէջ աղօթքի սէրն ու կատարելութեան փափաքը զարթոյց։ Իսկ իր բազմահատոր բարոյից վերաբերեալ ընդարձակ գրութիւնները, ցայսօր ամէն բարոյախօս աստուածաբանից կանոն ու առաջնորդ եղած են։ Գրիգոր ԺԶ. Քահանայապետը 1839ին զՍ. Ալփոնսոս Լիգուորի սրբոց կարգը դասեց՝ իսկ Պիոս Թ. Քահանայապետը զինքը (1871 Մարտ 23) Եկեղեցւոյ Վարդապետ անուանեց։

Վերջապէս յիշուելու արժանի են նաեւ մէկ քանի կուսանաց կրօններն ու միաբանութիւնները, ինչպէս է Կարմելեան կուսանաց կրօնը, զորն որ Ս. Թերեզիա

Գաէտիլիացին նորոգեց։ — Ուրսուլեան կուսանաց կրօնը, զորն որ հիմնեց Անճելա Մէրիչիացին (1537), եւ կրօնին վախճան դրաւ բարեպաշտական գործքերու ետեւէ ըլլալ, ի մասնաւորի հիւանդ հոգալ եւ աղջիկներու կրթութիւն տալ։ Պաւղոս Գ. Քահանայապետն այս կրօնը հաստատեց, որ Իտալիայէն դուրս ուրիշ երկիրներ ալ տարածուեցաւ։ Անունն առած է Ս. Ուրսուլայէն, որ կրօնին պաշտպան սրբուհին է։ — Ս. Կուսին Այցելութեան կամ Սալեզեանց կրօնը հաստատեց Ս. Փրանկիսկոս Սալեզ Ս. Շանդալ այրի տիկնոջ օգնականութեամբը Սաւոյայի Աննէսի քաղաքը (1610), եւ Պաւղոս Ե. զանիկայ հաստատեց։ Այս կրօնին վախճանն է հիւանդներ դարմանել։ — Ս. Վինկենտիոս Պաւղայեցին Ողորմած Քերց (filles de la charité, soeurs grises) ըսուած կուսանաց միաբանութիւնը հաստատեց, հիւանդաց ծառայելու եւ պզտիկ աղջիկներու կրթութիւն տալու համար։

**90**. *Եկեղեցական գիտութեանց վիճակն այս ժամանակի շրջանին մէջ:*

Ինչպէս եկեղեցական-բարոյական կեանքը, նոյնպէս եկեղեցական գիտութիւնները Տրիդենտեան ժողովէն ետքը նոր թափիչք ու զօրութիւն առին։ Եկեղեցական գիտութիւններն այս միջոցիս շատ ծաղկեցան մէկ կողմանէ ուղղափառաց եւ բողոքականաց մէջ ելած հակաճառութեանց, եւ մէկալ կողմանէ նոյն իսկ ուղղափառաց մէջ ծագած վէճերուն պատճառաւ։

Նոր կենդանութիւն առնող աստուածաբանութեան ուսումը, նախընթաց դարերուն պէս հաւատոյ ճշմարտութիւններն եկեղեցւոյ բերնէն առնելով, կը ջանար զանոնք կարգաւոր ու պայծառ յօրինուածութեան մը խոթել, եւ նախնի Ս. Հարց գեղեցիկ օրինակին հետեւելով՝ Ս. Գրքէն, յարատեւ աւանդութենէն եւ գերբնական լուսէն օժանդակուած մարդկային մտքէն ցուցընել։ Գրաւորական ոճին կողմանէ ընդհանրապէս հին դպրոցական ոճը դեռ պահուեցաւ։ Եւ որովհետեւ բողոքականք գլխաւորաբար ուղղա-

փառ եկեղեցւոյ մէկ քանի հաւատոյ վարդապետու-
թեանց դէմ կը զինէին, անոր համար տեսական աս-
տուածաբանութեան վարդապետական մասն ամէնէն
աւելի մշակուեցաւ, որուն մէջ դարձեալ գլխաւոր պար-
ծանքն ու արդիւնքն ունեցան Յիսուսեանք, թէեւ
ուրիշ կրօններէն ալ երեւելի անձինք ու հոյակապ
մատենագիրներ չպակսեցան։ Դոմինիկեանց մէջէն յի-
շուելու արժանի է Մելքոն Կանոս (†1560), որ Տրի-
դենտեան ժողովոյն գիտութեան կողմանէ համբաւ-
աւոր անձինքներէն մէկն էր։ Իր բազմաթիւ գրուա-
ծոց մէջէն, մանաւորապէս երեւելի է Աստուածաբա-
նական տեղիք (loci theologici) անուն գիրքը։ Յիսու-
սեանց մէջէն երեւելի է Դիոնեսիոս Բետաւիոս գաղ-
ղիացին, որ իր կրօնին առաջին գիտուններէն էր։ Իր
զանազան գիտնական գրուածոց մէջէն, որոնք իրենց
հիմնականութեամբն ու հազուագիւտ հանճարովը՝
մինչեւ հիմայ ուսումնականաց զարմանքը կը շարժեն,
ամէնէն նշանաւորն է Պոգմական-Վարդապետական Ըն-
թացքին անուն աշխատասիրութիւնը, որուն մէջ ա-
մէն ժամանակի հերձուածողաց դէմ ուղղափառ
հաւատոյ ճշմարտութիւնը կը ցուցընէ։ Այս աշխա-
տասիրութիւնը դժբախտութեամբ մատենագրին վա-
ղահաս մահուամբն անկատար մնաց (†1562)։ Բայց
այս երկուքն ալ գերազանցեց Ռոպերտոս Պելլարմինոս
Փլորենտիացի Յիսուսեանը, որ ետքէն արքեպիսկոպոս
ու կարդինալ եղաւ (†1620)։ Խորին գիտութեան
հետ սերտ բարեպաշտութիւն ու անպաճոյճ կենցա-
ղավարութիւն մ'ունէր։ Շատ երկասիրութիւններ ու-
նի, բայց ամէնէն աւելի անուն հանեց իր Վիճաբանու-
թիւնք Տրիդենտեան հաւատոյ ընդդիմախօսներուն վրայ ա-
նուն մեծայաղթ գրուածքովը։ Այս վիճական գրուա-
ծոց կարգը կրնանք դասել նաեւ Գաղղիայի Մոյ քաղա-
քին եպիսկոպոսին՝ Մեծն Բոսիւէի Բացատրութիւն
վարդապետութեան ուղղափառ եկեղեցւոյ (Exposition de
la doctrine de l'Eglise catholique) երկասիրութիւնը,
որուն մէջ ազդու եւ յափշտակիչ ճարտասանութեամբ,
բայց միանգամայն հաշտարար քաղցրութեամբ ուղ-
ղափառ եկեղեցւոյ անփոփոխելի վարդապետութիւն-

ները կարծ, մեկին ու պարզ ոճով բողոքականաց առ-
ջեւը կը դնէ։ Նոյնպէս երկրորդ աւելի ընդարձակ մէկ
գրուածքը (Histoires des variations des églises Protestantes), որուն մէջ ակներեւ կը ցուցընէ բողոքականաց
միութեան գեղեցիկ նկարագիրը չունենալը, եւ նո-
րաղանդութեան ներքին հակասութիւնները։ Այս
ժամանակի եւ նմանօրինակ մատենագրութեան գե-
ղեցիկ արդասիքներէն մէկն է նաեւ Պետրոս Կանիսիոս
Յիսուսեանին փոքր ու ընդարձակ .քրիստոնէականը,
որ թէ եկեղեցականաց ու թէ հասարակ ժողովուր-
դեան մէջ մեծ ընդունելութիւն գտաւ։

Աստուածաբանութեան հետ մէկտեղ նոր դար
մը սկսաւ նաեւ եկեղեցական պատմութեան համար,
որուն ծաղկելուն նոյնպէս պատճառ եղաւ ուղղափա-
ռաց եւ բողոքականաց մէջ եղած հակառակութիւնը։
Որովհետեւ Աստուածմէ յայտնուած ճշմարտութիւն-
ները միշտ նոյն են եւ անփոփոխ, կը ջանար միայն
պատմաբանօրէն ցուցընել, որ արդեօք կաթուղիկէ
ուղղափառ հաւատքը, թէ բողոքականաց վարդա-
պետութիւնները, Քրիստոսի եւ առաքելոց ժամանա-
կէն սկսեալ եկեղեցւոյ մէջ միշտ կային ու կը հաւա-
տացուէին։ Ասոր նկատմամբ նախ բողոքականք ուղ-
ղափառ եկեղեցւոյ դէմ հակառակութիւնն սկսան,
որոնց դէմ ելաւ ուղղափառաց կողմանէ Կեսար Պա-
րոնիոս հռոմայեցին իր ժամանակագրութիւններովը. ա-
սով ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեան ճըշ-
մարտութիւնը պատմաբանօրէն ալ երեւան ելաւ։ Ան-
կէ ետքն եկեղեցական պատմութեան ուսումը, Իտա-
լիա, Գաղղիա (Թիլլմոն, Ֆլէօրի, Նատալիս Աղեքսան-
դր, Հարտուէն ու Լապպէ) ու Գերմանիա խիստ ծաղ-
կեցաւ։ — Աստուածաբանութեան ու եկեղեցական
պատմութեան հետ սերտ կապակցութիւն ունի եկե-
ղեցական իրաւունքը, որ նոյնպէս այս միջոցիս շատ
յառաջադէմ եղաւ։ Տրիդենտեան ժողովն այս նուի-
րական գիտութեան նոր հիմ մը դրած էր, զորն որ
գիտնականութիւնն ու օրըստօրեայ փորձն ետքէն կա-
տարելագործեցին։ Այս ժամանակիս անուանի իրաւա-
գէտներէն մէկն էր հռչակաւոր Բենեդիկտոս ԺԴ.

Քահանայապետը (1740—1758), որուն դրած օրէնքները եկեղեցական իրաւանց մէջ գլխաւոր դարագլուխ մը կը կազմեն։ — Շատ մեծ փոյթ ու խնամք կը տարածէր նաեւ Ս. Գրոց մեկնութեան, որուն մէջ երեւելի եղան Կայետանոս կարդինալը, Պելլարմինոս, Կոռնելիոս Լափիտեան, եւ Յակոբոս Պոնֆրէր ու Մալդոնատ Յիսուսեանները։ — Թէեւ վարդապետական հակառակութեանց պատճառաւ, բարոյական աստուածաբանութեան մշակութեան համար ժամանակն այնչափ յարմար չէր, սակայն եւ այնպէս աստուածաբանութեան այս մասին մէջ ալ գեղեցիկ աշխատասիրութիւններ ի լոյս ընծայուեցան, որոնք նախընթաց դարերուն պէս դպրոցական, դիպուածական կամ խորհրդական ոճով գրուած են։ Յիսուսեանց կրօնէն բարոյական աստուածաբանութեան վրայ գրողներն են՝ Տոլետոս (†1596), Սանքէզ (†1610, Սուարէզ (†1617), Լայման (†1635), Պուզէնպաում (†1668) եւ Լա Գրուա (†1714), իսկ Դոմինիկեանց կրօնէն Ալվարէզ (†1640), Կոնետ (†1681) ու Պիլուարտ (†1757)։ — Այս միջոցիս ընդհանուր տիրող բարոյական կենաց զարմանալի արգասիքներէն մէկն էին բազմաթիւ հոգեւոր գրքերը, որոնք հաւատացելոց կրօնական եռանդն ու քրիստոնէական զգածումը զարթուցանելու մեծապէս օգնեցին։ Այս կարգին կը վերաբերին Ս. Թերեզիայի, Ս. Յովհաննէս Խաչեանին, Լուդովիկոս Կրանատացւոյն, Ս. Փրանկիսկոս Սալեզեանին (Աստուածասէր) եւ Լաւրենտիոս Սգուբուլիի (Հոգեւորական պատերազմ) հոգեշահ գրուածքները։

Մարդկեղէն մտաց ու սրտին այս արգասիքները, շուտ ամէն կողմ տարածուեցան տպագրութեան միջոցաւ։ Բայց այս գերազանց գիւտը ինչպէս բարւոյն նոյնպէս չարին հաւասարապէս կրնար ծառայել։ Ուստի ասկէ ծագելու վտանգ առջեւն առնելու համար, եկեղեցին Տրիդենտեան ժողովոյն մէջ սահմանեց, որ կրօնի վրայ խօսող գրքերը հրատարակուելէն յառաջ եպիսկոպոսէն քննուին, եւ առանց անոր հաւանութեանն ի լոյս չընծայուին։ Ասկէ զատ նաեւ հաւատոյ ու բարուց հակառակ արդէն հրատա-

բակուած խել մը գրքեր ցանկի (Index) առնուեցան, եւ անոնց ընթերցումը ուղղափառ հաւատացելոց արգելուեցաւ։

## 91. Ուղղափառ եկեղեցւոյ տարածումը:

«Նորաղանդութեան ձեռքով՝ ամբողջ ազգեր ու տէրութիւններ ուղղափառ եկեղեցւոյ ծոցէն բաժնուած ատեն, աստուածային նախախնամութիւնը՝ հնգետասաներորդ դարուն վերջերն ու վեշտասաներորդ դարուն սկիզբը, Քրիստափոր Կոլոմբոս Ճենովացւոյն եւ ուրիշ Փորթուկալցի նաւապետներուն ըրած գիւտերովն երեք նոր ու լայնածաւալ աշխարհքներ յայտնեց, եւ ուղղափառ եկեղեցւոյ առաքելական գործունէութեանն ընդարձակ ասպարէզ բացաւ։ Այս նոր գիւտերուն լուրն Եւրոպա հասնելուն պէս, ամէն կրօններէ բազմաթիւ քարոզիչք այն հեռաւոր աշխարհքներն աճապարեցին, որպէս զի հոն իրենց հեթանոս եղբարցը քրիստոնէական հաւատքը քարոզեն, եւ անոնց մէջ ճշմարիտ բարոյականութիւն ու կրթութիւն խոթեն։ Բայց դէմերնին ելած դժուարութիւններն արտաքոյ կարգի մեծ էին, այնպէս որ անձնանուէր սիրոյ բովանդակ լիութիւնը կը պահանջուէր (որ միայն կաթուղիկէ ուղղափառ եկեղեցւոյ մէջ կը գտնուի) Աւետարանին պատգամաւորները յորդորելու, որ իրենք զիրենք այնպիսի ծանր ու տաժանելի ձեռնարկութեան մը որոշեն։ Դժուարին ու վտանգաւոր ճանապարհորդութենէ ետեւ, աներկիւղ քաջասրտութեամբ պիտ'որ մտնէին վայրենի ու բթամիտ ժողովրդոց մէջ, որպէս զի անոնց սրտէն ու մտքէն խորունկ արմատ ձգած հեթանոսական նախապաշարմունքներն եւ անոնց հետ կապուած ամէն տեսակ մոլորութիւններն ու մոլութիւնները խլեն, եւ անոնց տեղ քրիստոնէական բարձր ու սուրբ գաղափարներ տնկեն։ Ստոյգ է Սպանիայի ու Փորթուկալի արքունիքները կարելի եղածին չափ քարոզիչներու ձեռնտու եւ օգնական կ'ըլլային, որովհետեւ իրենք էին տեղացիները բուն կրթողներն ու հպատակութեան մէջ պահող-

ները, բայց անոր դէմ կար այն աննպաստաւոր պարագան, որ տեղացիք Սպանիացւոց ու Բորդուկալցւոց խիստ հարստահարութիւններէն նեղուած, քրիստոնէութեան դէմ սաստիկ ատելութիւն մ'ունէին, ինչու որ զիրենք նուաճողներուն կրօնն էր։ Այսպիսի յարաբերութեանց մէջ, կաթուղիկէ ուղղափառ եկեղեցին սկսաւ վեշտասաներորդ դարուն այս հեռաւոր աշխարհքները քրիստոնէութեան դարձընելու մեծ գործքը։

Արեւելեան Հնդկաստան գացող առաջին Փրանկիսկեան քարոզիչները մարտիրոսական մահուամբ մեռան. սակայն իրենց ետեւէն գացողներ չպակսեցան, որոնք աւելի եռանդեամբ քրիստոնէական կրօնն ան կողմերը քարոզեցին, եւ վերջապէս Գոա 1534ին եպիսկոպոսական աթոռ մը հաստատեցին։ Ընդհանրապէս հեթանոսաց՝ բայց ի մասնաւորի Հնդկաց դարձին համար շատ մեծ նշանաւորութիւն ունեցաւ, այս ատենները հիմնուած Յիսուսեանց կրօնը։ Յովհաննէս Գ. Բորդուկալի թագաւորին խնդրելովը, Ս. Իգնատիոս՝ Պաւղոս Գ. Քահանայապետին հաւանութեամբը, զՍ. Փրանկիսկոս Քսաւերեան ուրիշ երեք ընկերներով Հնդկաստան խաւրեց։ Եռանդուն եւ ճշմարիտ առաքելական հոգւով վառեալ այս սուրբ անձը, իր խօսքերուն անդիմադարձ զօրութեամբը, դիւցազնական առաքինութեամբն ու գործած զարմանալի հրաշքներովը՝ քիչ ատենուան մէջ մէկ միլիոնէն աւելի մարդ դարձուց, եւ շատ թագաւորներ ու իշխաններ քրիստոնեայ մկրտեց։ Սաստիկ եռանդէն մղուած՝ Հնդկաստանէն Ճաբոն անցաւ, ուր նոյնպէս մէկ քանի տարուան մէջ հեթանոսաց բազմութիւն մը քրիստոնէական հաւատոյ դարձուց։ Վերջապէս քրիստոնէութիւնը քարոզելու համար Չենաստան երթալու ատեն, ճամբան ծանր հիւանդութենէ մը բռնուելով մեռաւ (1552)։ Ս. Փրանկիսկոսի սկսածը յառաջ տարին իր կրօնակից եղբարքը, որոնք իրենց առաքելական եռանդեամբն ու ծաղկեալ գիտութիւններովն ամէն տեղ մուտք կը գտնէին։ Ասոնց մէջէն ի մասնաւորի յիշուելու արժանի են Մատթէոս Ռիչչի ու

Ադամ Շալ կողոնիացին, որոնց ձեռքով 1552ին քրիստոնէութիւնը ճենաստան մտաւ։ Թէեւ նորադարձ քրիստոնեայք հոս իսկզբանէ խիստ հալածանքներ կրեցին եւ շատերն ալ մարտիրոսացան, սակայն եւ այնպէս քրիստոնէութիւնը մինչեւ հիմայ դեռ հոն մնացած եւ միշտ ծաղկելու վրայ է։ — Քրիստոնէութիւնը ԺԵ. եւ ԺԶ. դարուն մտաւ Թիպէդ, Թունքին, Գոչինչինա ու Սիամ։ Այս երկիրներուն մէջ ալ քրիստոնէական եկեղեցին դառն հալածանքներ կրեց եւ հաւատացեալց ու քարոզչաց մեծ մասը մարտիրոս եղաւ։ — Ճափոն՝ ուր քրիստոնէական հաւատոյ սերմը Ս. Փրանկիսկոս Քսաւերեան տնկած էր, իր մահուանէն ետքը քրիստոնէութիւնք Յիսուսեանց ձեռքով այնպէս բարգաւաճ սկսաւ ծաղկիլ, որ ամբողջ երկիրը դարձընելու յոյս կար. 1582ին հոն 250 եկեղեցի, 3 վարժարան, մէկ նորընծայարան եւ 200,000 քրիստոնեայ կար, որոնց մէջ բարձրաստիճան անձինք ալ կը գտնուէին։ Բայց Հոլլանտացւոց շահասիրութեանը պատճառաւ 1587ին ելած սաստիկ հալածանքը՝ քիչ ատենուան մէջ այս ամէն գեղեցիկ արդիւնքները փճացուց, անանկ որ եօթեւտասներորդ դարուն կէսին (1649) Ճափոն քրիստոնէութեան եւ ոչ հետքը մնաց։ Հետեւեալ դարերուն մէջ քրիստոնէութիւնը հոն խոթելու ջանքերը թէեւ բոլորովին անպտուղ չմնացին, բայց մեծ ու ակներեւ արդիւնք մը յառաջ չբերին։ Յիսուսեանք նոյն եռանդեամբ կ՚աշխատէին նաեւ Ամերիկայի հեթանոսաց դարձին. 1549ին Պրազիլիա քրիստոնէութիւնը քարոզելէն ետեւ, անկէ Բարակուա անցան, ուր ցիրուցան վրանաբնակ հնդիկները ժողվելով երդաշէն ու քաղաքակիրթ հասարակապետութիւն մը կազմեցին (1610) Սպանիայի թագաւորաց իշխանութեան տակ։ Այս հասարակապետութիւնը 1730ին 280,000 բնակիչ ունէր։ — Ափրիկէ ալ քրիստոնէութիւնն աստին անդին տարածուեցաւ. հիմայ ամէնէն աւելի Գաղղիացիք կ՚աշխատին այն կողմերն՝ ի մասնաւորի Ալճերի, քրիստոնէութիւնը տարածելու։

Հեթանոս ազգաց դարձին պարապող գլխաւոր

կրօններուն կեդրոնը Հռոմ էր, ուր կը նստէին նաեւ անոնց ընդհանրական մեծաւորները։ Շատ չանցաւ տեսնուեցաւ հաւատոյ տարածման այս ծանրակշիռ գործառնութեան վերին կառավարութիւնը մէկ գլխոյ տակ միացընելու անհրաժեշտ հարկը։ Անոր համար Գրիգոր ԺԵ. Քահանայապետը (1622) կարդինալաց առանձին ժողով մը դրաւ (Հաւատոյ Տարածման Ժողովը, Congregatio de propaganda fide), որ 15 կարդինալէ, 3 բարձրաստիճան եկեղեցականներէ ու 1 քարտուղարէ կը կազմուի։ Այս ժողովոյս գործքն է, հեթանոսաց ու հերետիկոսաց կամ հերձուածողաց մէջ ուղղափառ հաւատոյ տարածման վրայ հսկել, անոր առաջնորդել եւ զանիկայ յառաջացընել։ Քիչ մ'ետքը (1627) Ուրբանոս Ը. Քահանայապետն այս ժողովոյս հետ միացուց մեծ ու ընդարձակ վարժարան մը (Collegium Urbanum de propaganda fide), ուր ամէն ազգաց տղաք քրիստոնէական ուղղափառ հաւատոյ մէջ կը կրթուին, եւ քահանայ ձեռնադրուելէն ետքն իբրեւ Աւետարանի պատգամաւոր իրենց հայրենիքը կը խաւրուին։ Այս երկու հիմնարկութիւններն՝ ուղղափառ հաւատոյ տարածման ցայսօր մեծապէս օգնական կ'ըլլան։

Բողոքականք իսկզբան առաքելութեան այնչափ բաղձանք չէին ցուցըներ, այլ բաւական կը համարէին հին ուղղափառ հաւատքը կրցածնուն չափ ընկճելը։ Իրենց ան վարդապետական սկիզբը՝ թէ քրիստոնէութեան դառնալ ուզողն, անոր ճշմարտութիւնը Ս. Գիրք կարդալով ինք իրմէ պիտ'որ ճանչնայ, ինչպէս նաեւ իրենց եկեղեցականաց անամուրի կեանքն առաքելութեան մեծ արգելքներ էին։ Բայց եօթեւտասներորդ դարուն՝ ուղղափառաց առաքելութեան ցուցուցած փոյթն ու ժրութիւնը տեսնելով, իրենց մէջ ալ քարոզութեան փափաք մը արծարծեցաւ, եւ այս վախճանիս համար այլեւայլ քաղաքներ ընկերութիւններ հաստատուեցան, բայց նոյն միջոցին ատոնք երեւելի արդիւնք մը յառաջ չբերին։ Իննեւտասներորդ դարուն սկիզբը՝ գլխաւորաբար Անգլիայի ու Ամերիկայի Նորաղանդից մէկ քանի ճիւղերուն մէջ, ի-

*րենց վարդապետութիւնը քարոզելու եւ տարածելու եռանդ մը ցարթեաւ, եւ աչուընին գլխաւորաբար արեւելք դարձուցին: Թէեւ ամէն արեւելեան ազգերն որսալ կ'ուզէին, բայց տեսնելով որ Հայոց ազգը շատուորներէն է, մտադրութիւննին աւելի անոր վրայ ուղղեցին: Ուստի այս գիտաւորութեամբ Հայոց բնակած գլխաւոր քաղաքները՝ Կոստանդնուպոլիս (1831), Զմիւռնիա (1834), Կարին ու Տրապիզոն քարոզիչներ խաւրեցին, հոն դպրատուններ ու տպարաններ բացին, եւ թէ գրաբար ու թէ աշխարհաբար Աստուածաշունչ եւ ուրիշ գրքեր հրատարակելով եւ ժողովրդեան ձրի բաժնելով, իրենց հետեւողներ վաստըկելու ետեւէ եղան: Դժբախտութեամբ՝ գըլխաւորաբար դրամական ուժով, կրցան մէկ քանի հոգի իրենց աղանդին մոլորցընել: Եւ թէպէտ ասոնք Կոստանդնուպոլսոյ պատրիարքէն եւ ընդհանրապէս Էջմիածնական կղերէն շատ հակառակութիւն կրեցին, բայց բողոքական տէրութեանց միջամտութեամբը նորաղանդք Օսմանեան տէրութենէն ազատութիւն ընդունելէն (1847) եւ իբրեւ առանձին կրօնական հասարակութիւն ճանչցուելէն ետեւ, Կոստանդնուպոլիս, Զմիւռնիա, Կարին, Տրապիզոն, Պրուսա, Նիկոմիդիա, Անդապ եւ ուրիշ քաղաքներ բողոքակրօն Հայոց հասարակութիւններ կազմուեցան, որոնց թիւը մինչեւ հիմայ 15 կը համարուի. իսկ անոնց վերաբերեալ բողոքական Հայոց բազմութիւնը բնականապէս անհաստատ է: — Բողոքականք փորձեցին Ռուսաստանի Հայոց մէջ ալ իրենց մոլորութիւնը խօթել, բայց տէրութիւնն արգելեց: Իսկ Պարսկաստանի մէկ քանի քաղաքներն իրենց ջանքը բոլորովին անպտուղ չմնաց:*

## 92. Երեսնամեայ պատերազմը (1618—1648):

*Աւգսպուրկի կրօնական խաղաղութեամբ՝ ուղղափառաց եւ բողոքականաց մէջ եղած հակառակութիւնը չդադրեցաւ, անկէ ետքն ալ երկու կողմանկցութիւնք դեռ իրարու մեծ անվստահութիւն կը ցուցընէին: Բողոքական իշխանք՝ իրենց երկիրներուն*

մէջ ուղղափառները կը հալածէին, անոնց աստուա-
ծային պաշտամունքը կը խափանէին, եւ վերջապէս
նաեւ բռնական միջոցներով Նորաղանդութիւնն ընդ-
հանուր ամէն տեղ խոթելու կը ջանային։ Բողոքա-
կանք ի մասնաւորի սաստիկ հակառակութիւն մ'ու-
նէին Եկեղեցական Վերապահութեան դէմ (տես Հ. 82),
եւ ամենայն կերպով ետեւէ կ'ըլլային զանիկայ վեր-
ցընելու։ Բողոքականներուն եւ ուղղափառաց մէջ ե-
ղած այս փոխս անվստահութիւնը միշտ աւելի սաստ-
կանալով, մէջերնին մեծ ատելութիւն մը յառաջ բե-
րաւ, այնպէս որ փոքր դէպք մը բաւական էր երկու
կուսակցութեանց մէջ մեծ հրդեհ մը յարուցանելու։
Այս դէպքը պատահեցաւ Պոհեմիա՝ որ Հուսեանց
կռիւներէն ետքը շարունակ կրօնական շփոթութիւն-
ներով կը ծփար։ Մաքսիմիլիանոս Բ. կայսեր ատեն Եր-
կատեսակներուն կամ Բաժակեաններուն մեծ մասը
Լութերի աղանդն ընդունած էին։ Ասոնք Ռուտոլփոս
կայսրը ստիպեցին, որ Վեհափառութեան ըսուած հրո-
վարտակաւ իրենց զանազան կրօնի ազատութիւններ
տայ։ Այս հրովարտակին զօրութեամբ Պոհեմիայի
բողոքական վիճակաւորաց միայն, եւ ոչ թէ ուղղա-
փառ վիճակաւորաց բողոքական հպատակներուն, հրա-
ման կը տրուէր իրենց վիճակին ու սահմանին մէջ ե-
կեղեցի ու դպրոց շինելու։ Բայց երբոր Բրակի արքե-
պիսկոպոսին ու Պրաւնաւի աբբային բողոքական հպա-
տակներն առանց այս հրովարտակին միտ դնելու, եւ
իրենց վիճակաւորաց կամքին հակառակ՝ երկու քա-
ղաքներու մէջ եկեղեցի շինելու յանդգնեցան, Մա-
տաթիաս կայսրը հրամայեց՝ որ եկեղեցիներէն մէկը
քանդեն, իսկ մէկալը գոցեն։ Ասոր վրայ Նորաղանդք
սկսան քանքատ ընել, որ ասիկայ վեհափառութեան
հրովարտակին դէմ է, եւ Թուռն կոմսին առաջնոր-
դութեամբն իրենց գլխաւորներէն մէկ քանի հոգի
զինեալ Բրակի դիւանատունը մտան, եւ երկու կայ-
սերական գաւառակալ ու ատենադպիրը պատուհան-
ներէն վար նետեցին (1618)։ Այս դէպքը, որ աշ-
խարհական պատմութեան մէջ Պատուհանընկեցումն
կը կոչուի, երեսնամեայ աղէտալի պատերազմին սկըզ-

բնապատճառն եղաւ։ Ապստամբք անկէ ետքը կառավարութեան սանձը ձեռուընին առնելով՝ իրենց մէջէն երեսուն վերակացու դրին, եւ զօրք ժողվելով անոնց հրամանատարութիւնը Թուռն կոմսին յանձնեցին։ Այս միջոցիս Մատաթիա կայսրը մեռնելով՝ իրեն Փերդինանդոս Բ. յաջորդեց (1619), զորն որ Պոհեմիացիք չուզեցին ընդունիլ, եւ իրեն տեղ Փրիդերիկոս Ե. Պֆալցի կայսրընտիրը թագաւոր ընտրեցին, որ կալուինական եւ Բողոքողաց Միութեան պարագլուխն էր։ Աւելի Բրակ գալով՝ ինք զինքը շքեղութեամբ թագաւոր պսակել տուաւ, եւ ուղղափառ կրօնը հոնկէ բոլորովին վերցուց։ Ուղղափառ իշխանք Պաւիէրայի Մաքսիմիլիան Ա. դքսին առաջնորդութեամբը նիզակակցութիւն մը կազմեցին կայսեր օգնելու համար։ Անոնց օգնութեամբը Փերդինանդոս Բ. Բրակի քով Սպիտակ լեռան վրայ տուած ճակատին մէջ (1620), Փրիդերիկոս Ե.ին յաղթեց։ Փրիդերիկոս Հոլլանտա փախաւ, եւ կայսրն իրեն ու իրեն հետեւողացը դէմ տարագրութեան վճիռ հանեց։ Անկէ զատ Փերդինանդոս Բ. բողոքականաց տրուած կրօնի ազատութիւնները ջնջեց, եւ Վեհափառութեան հրովարտակն իր ձեռքովը պատռեց։ Բողոքականք կայսեր այս խիստ վարմունքին վրայ սաստիկ զայրացած զէնքի վազեցին, բայց կայսերական իշխանութեան դէմ դնելու զօրութիւն չունենալով՝ նիզակակցութեան ու կայսերական զօրաց Դիլլի ու Վալէնշդայն զօրապետներէն յաղթուեցան։ Փերդինանդոս Բ. կայսրն անկէ քաջալերուած Հատուցման ըսուած նշանաւոր հրովարտակը հանեց, որ կը պահանջէր թէ բողոքականք Բասաւեան դաշնադրութենէն ետքը գրաւած կամ յափշտակած եկեղեցիներն ու եկեղեցական ինչքերն ուղղափառաց ետ դարձընեն։ Այս որոշումը, որով բողոքականք ունեցած ստացուածքներնուն երեքին մէկն ուղղափառաց ետ պիտ՚որ դարձընէին, թէեւ արդար ու իրաւացի էր, բայց դժուարաւ կրնայ խոհեմական ալ համարուիլ, մանաւանդ եթէ հետեւութեանք միտ դնելու ըլլանք։ Բողոքականք նեղի մտնելով՝ Շուետի Կուստաւ Ադոլֆ փառասէր ու աշխարհակալ

թագաւորին դիմեցին, զորն որ նոյն միջոցին աշխարհք հազիւ կը ճանչնար, բայց քիչ մ'ետքն Եւրոպայի արհաւիրքն եղաւ: Ռիշըլիէօ կարդինալը՝ Գաղղիայի ամենազօր պաշտօնեան, Կուստաւ Ատոլֆին ստակով կ'օգնէր, որպէս զի իր ձեռքովը Հապսպուրկի տունը տկարացընէ: Երբ որ 1630ին Կուստաւ Ատոլֆ 15,000 ընտիր ու քաջակիրթ զօրքով Բոմերանիայի եզերքն ելաւ, Ֆերդինանդոս Բ. անխոհեմութեամբ զՎալէնշդային զօրապետութենէ վար առաւ, եւ զօրաց կէսն արձակեց: Այս ժամանակէն բախտն իրմէ հեռացաւ: Կուստաւ Ատոլֆ գրեթէ բոլոր բողոքական իշխանները ստիպեց, որ կայսեր դէմ իրեն հետ միաբանին, եւ նախ Լայբցիկի ու ետքը Լէխ գետին քով Դիլլի զօրապետին յաղթեց: Ա՛լ անկէ ետքը Գերմանիայի տէրն ինք եղաւ, ամէնքն իր զօրութեան առջեւը կը դողային: Այս նեղութեան ժամանակ կայսեր միակ յոյսը Վալլէնշդայնի վրայ մնաց, որ յանձն առաւ նորէն պատերազմի ասպարէզն ելլել, եւ 1632ին Լիւցէնի քով Շուէտաց հետ զարնուեցաւ, ուր թէեւ Կուստաւ Ատոլֆ թագաւորը մեռաւ, բայց Շուէտք պատերազմի դաշտը պահեցին:

Կուստաւ Ատոլֆին մահուանէն ետքն իր զօրապետները փոփոխ բախտիւ պատերազմը քանի մը տարի ալ շարունակեցին, նոյն իսկ Գաղղիա պատերազմին մասնակից եղաւ, եւ սկսաւ զօրքով Շուէտաց օգնել: Բայց վերջապէս երկարատեւ պատերազմէն յոգնած ու ձանձրացած, պատերազմող տէրութեանց մէջ խաղաղութեան բանակցութիւններ սկսան, որոնցմէ յառաջ եկաւ Վեստֆալեան խաղաղութիւնը (1648): Այս խաղաղութեան դաշինքով որոշուեցաւ, որ Աւկսպուրկի կրօնական դաշինքը նորոգելոց վրայ ալ ընդարձակուի, եւ բոլոր տէրութեան մէջ ուղղափառ, լութերական ու կալուինական դաւանանքներէն զատ կրօն չընդունուի, եւ այս երեք դաւանանքներն իրաւանց կատարեալ հաւասարութիւն ունենան: Եկեղեցական ստացուածոց նկատմամբ ալ 1624ին տարւոյն վիճակը հիմ առնուեցաւ. իսկ ապագային համար ալ Եկեղեցական Վերապահութեան վճիռն իբրեւ վաւեր ընդունուեցաւ:

Այս խաղաղութեան դաշինքն ուղղափառ եկեղեցւոյ վնասակար որոշմունքներ պարունակելով, Ինոկենտիոս Ժ. Քահանայապետը զանիկայ չընդունեցաւ։ Յաւիտենական օրէնքն աչքին առջեւ ունենալով՝ եկեղեցական ստացուածոց ու իրաւանց-աշխարհականացման չէր կրնար իր հաւանութիւնը տալ, ինչու որ ասով ուղղափառ եկեղեցւոյ մեծ վնաս կը հասնէր։ Անոր համար Քահանայապետը նախ դեսպանաժողովոյն մէջ իր նուիրակին ձեռքով, եւ ետքէն առանձին կոնդակաւ Վեստֆալեան խաղաղութեան դաշանց դէմ բողոքեց։

## 93. *Ուղղափառ եկեղեցին կռուոյ մէջ՝ նոր մոլորութեանց դէմ։*

### ա. Շնորհաց վրայ մոլորութիւններ. Բայոս ու Յանսենիոս։

Տրիդենտեան ժողովն ուղղափառ եկեղեցւոյ շնորհաց վրայ ունեցած վարդապետութիւնը միայն բողոքականաց դէմ սահմանած էր, իսկ ուղղափառաց մէջ նոյն խնդրոյն վրայ եղած այլեւայլ կարծիքներուն վրայ վճիռ չէր տուած։ Անոր համար ուղղափառաց մէջ շնորհաց վրայ եղած վէճերն անկէ ետքն ալ շարունակուեցան, եւ զանազան մոլորութեանց ելլելուն պատճառ եղան։

1. *Միքայէլ Բայոս*՝ որ 1541էն վեր Լովանիայի համալսարանին աստուածաբանութեան ուսուցիչ էր, մարդուն ազատութեան ու շնորհաց մէջ եղած յարաբերութեան վրայ այնպիսի նախադասութիւններ սկսաւ պաշտպանել, որոնք բողոքականաց նոյն նիւթին վրայ ունեցած մոլար կարծեացը շատ նման կը հնչէին։ Բայոս կը վարդապետէր թէ մարդուն կամքն ընտրելու կարողութիւն չունի, այլ ներքին հարկի մը տակ է, եւ կամքն ազատ ըսուելու համար, բաւական է որ արտաքին բռնութեան տակ չըլլայ։ Դարձեալ կ՚ըսէր թէ Ադամայ անկմանէն ետքը՝ մարդուն կամքը բոլորովին ապականած ըլլալով, ըրած ամէն գործքերը մեղք են։ Նոյնպէս զանազանութիւն կը դնէր ար-

դարացուցման ու սրբացուցման մէջ, եւ կ'ըսէր թէ անոնք միայն Աստուծոյ առջեւ մեղաց թողութեամբ կ'արդարանան, որոնք յառաջագոյն աստուածեղէն կանխաժաման շնորհօք սրբուած են։ Բարիզի Սորբոնեան դպրոցը՝ Բայոսի գրքերէն քաղուած մէկ քանի նախադասութիւններ դատապարտեց, որ պատճառաւ սաստիկ գրաւոր վէճ մը բացուեցաւ, որուն մէջ ուրիշ հաւատոյ մասեր ալ խառնուեցան։ Վերջապէս խնդիրը Պիոս Ե. Քահանայապետին որոշմանը ձգուեցաւ, որ 1567 հանած սահմանադրութեամբ մը Բայոսի գըրքերէն 46 նախադասութիւն դատապարտեց, առանց անունը յիշելու։ Բայոս հազիւ քանի մը տարի ետքը Քահանայապետին վճիռն ընդունեցաւ, եւ անկեղծաւոր մօք անոր հպատակեցաւ։ Մոլորութիւնները յետս կոչելէն ետեւ իր պաշտօնը պահեց, եւ 1589ին 77 տարուան հասակին մէջ մեռաւ։ Սակայն եւ այնպէս մէյմը մէջտեղն ինկած խնդիրներուն, ի մասնաւորի աստուածային շնորհաց մարդուն ազատութեան հետ ունեցած յարաբերութեան վրայ վէճն անկէ ետքն ալ շարունակուեցաւ, գլխաւորաբար Յիսուսեանց ու Դոմինիկեանց մէջ։ Մինչեւ որ վերջապէս Պաւղոս Ե. Քահանայապետը (1607) երկու հակառակորդ կուսակցութեանց արգելեց այս խնդրոյս վրայ հրապարակաւ վիճել, եւ հրամայեց որ միայն դպրոցներու մէջ անոր վրայ խօսուի։

2. Կոռնելիոս Յանսենիոս Լովանիայի համալսարանին աստուածաբանութեան ուսուցիչն եւ ետքէն Իբեռնի եպիսկոպոսը, իր Աւգոստինոս անուն մոլորական գրքովը, նոր կրօնական շփոթութիւն մը հանեց։ Այս գիրքը՝ որ Ս. Աւգոստինոսի շնորհաց վրայ ունեցած ճշմարիտ վարդապետութիւնը պիտ'որ բովանդակէր, արդեամբ Բայոսի նախադասութեանց նման կալուինականութեան մերձաւոր մոլորութիւններ կը պարունակէր։ Թէեւ Յանսենիոս իր կտակին ու գրքին ներածութեան մէջ յայտնած էր, որ անոր մէջ բովանդակուած վարդապետութիւնը Հռոմայ Գահին դատաստանին տակը կը ձգէ, բայց մահուանէն ետքը (1638) իր բարեկամները գիրքը մէկ քանի անգամ

տպել տալով՝ ամէն կողմը տարածեցին, եւ Հոլլանտա ու Գաղղիա շատ հետեւողներ գտաւ։ Ուրբանոս Ը. Քահանայապետը 1640ին գիրքը համառօտագրով մը արգելեց, որուն վրայ շատ մեծ հակառակութիւն ելաւ։ Ի մասնաւորի Գաղղիա սաստիկ շփոթութիւններ ելան, զորոնք խաղաղցընելու համար 85 եպիսկոպոս ժողով մը գումարեցին, եւ նոյն գրքին մէջ եղած մոլորութիւնները 5 նախադասութեան ամփոփելով՝ Ինովկենտիոս Ժ. Քահանայապետին խաւրեցին, որ անոնց վրայ վճիռ մը տայ։ Քահանայապետն երկար ու զգուշաւոր քննութենէ ետեւ զանոնք դատապարտեց։ Այս նախադասութիւնները՝ որոնք բառ առ բառ Յանսենիոսի գրքին մէջ չեն գտնուիր, բայց անոր բովանդակածը կը կացուցանեն, հետեւեալներն են. 1. Տասնաբանեայ պատուիրաններէն մէկ քանին՝ արդարք չեն կրնար պահել. թէեւ զանոնք պահելու կամք ունենան, բայց առ այն հարկաւոր եղած շնորհքն իրենց կը պակսի։ 2. Անկեալ բնութեան վիճակի մէջ, ոչ ոք կրնայ ներքին շնորհաց դէմ դնել։ 3. Անկեալ բնութեան վիճակի մէջ՝ արդիւնաւոր գործք մը գործելու համար, չի պահանջուիր ազատութիւն ի հարկէ, այլ բաւական է միայն ազատութիւն արտաքին բռնութենէ։ 4. Կիսապեղագեանց հերետիկոսութիւնը յայնմ կը կայանար, որ կը հաստատէին թէ մարդուն կամքէն կախում ունի կանխաժաման ներքին շնորհաց դէմ դնելը կամ անոր հետեւիլը։ 5. Կիսապեղագեան հերետիկոսութիւն է ըսելը, որ Քրիստոս առանց բացառութեան ամէն մարդիկներու համար մեռած է։

Այս նախադասութեանց դատապարտուելովը Յանսենեանց կռիւը չդադրեցաւ։ Յանսենեանք թէեւ նոյն նախադասութեանց դատապարտելի ու մերժելի ըլլալն ընդունեցան, բայց կ՚ըսէին որ անոնք Յանսենիոսի գրքին մէջ չեն գտնուիր. իսկ լոկ այն պատմական խնդրոյն վրայ՝ թէ գրքին մէջ այն մոլորութիւնները կան թէ չկան, կը պնդէին որ եկեղեցւոյ տուած վճիռը պարզ գիտութեան տուած վճռէն աւելի հեղինակութիւն մը չունի, ինչու որ եկեղեցին ասոր մէջ անսխալ չէ։ Ասկէ նոր ու երկարատեւ շփո-

թուլթիւններ ելան։ Աղեքսանդր Է. Քահանայապետը Ցանսեննեանց այս նորահնար փախուստին պատճառաւ հարկադրեցաւ իր նախորդին վճիռը կոնդակով մը նորէն հաստատել, եւ որոշակի յայտնել որ վերոյիշեալ 5 նախադասութիւններն արդեամբ Աւգոստինոս անուն գրքին մէջ կը գտնուին, եւ անոր համար դատապարտուած են։ Ասկէ զատ Գաղղիայի եպիսկոպոսաց խնդրելովը՝ դաւանութեան ձեւ մ'ալ խաւրեց, պահանջելով որ բոլոր կղերն անոր անկեղծաւոր միօք ստորագրէ։ Այս ժամանակի Գաղղիայի կղերին երկու լուսաւոր ջահերուն՝ Բոսիւէի ու Ֆենելոնի յորդորելովը, գրեթէ ամբողջ կղերն այն դաւանութեան ձեւին ստորագրեց, որով առ ժամանակ մի հանդարտութիւն եղաւ։

Բայց ԺԸ. դարուն սկիզբը՝ Ցանսեննեան շփոթութիւններն աւելի սաստկութեամբ նորոգուեցան Ցանսեննեանց պարագլուխ Պասքասիոս Քենէլ քահանային Նոր Կտակարանին վրայ Բուլլայական Ունիգենիտուս անուամբ հանած մոլորական գրքովը։ Կղեմէս ԺԱ. Քահանայապետն այս գիրքն աստուածաբաններու մասնաժողովոյ մը քննել տալէն ետեւ, անոր մէջէն 101 նախադասութիւն Միածին կոնդակով դատապարտեց։ Գաղղիայի եպիսկոպոսաց մեծագոյն մասը նոյն կոնդակին կատարեալ հպատակեցան, միայն չորս եպիսկոպոս Միածին կոնդակէն առ ընդհանուր ժողով բողոքեցին (1717)։ Բայց քիչ մ'ետքը Ցանսեննեանց աղանդը Գաղղիա կամաց կամաց քայքայեցաւ. մեծ մասը Լուդովիկոս ԺԴ.ին ժամանակ Հոլլանտա գաղթեց, իսկ Գաղղիա մնացածներն ալ մեծ յեղափոխութեան ատեն ջնջուեցան (1789)։ — Աւելի յաջողութիւն գտան Ցանսեններանք Հոլլանտա, ուր տէրութիւնն իրենց պաշտպան կենալով առանձին նուիրապետութիւն մը կազմեցին, որմէ յառաջ եկաւ Ուտրեխտի հերձուածը։ Սոյն հերձուածը ցայսօր դեռ կը տեւէ, թէեւ խեղճ ու ողորմելի վիճակի մէջ։ Ատեն ատեն եղած միաբանութեան փորձերն անոր համար աւանց հետեւութեան կը մնան, որովհետեւ Ուտրեխտցի Ցանսեններանք Միածին կոնդակը չեն ուզեր ընդու-

նիլ։ Քահանայապետին գլխաւորութիւնը կը ճանչնան, եւ ամէն նորընտիր եպիսկոպոս իր հպատակութիւնն ու մեծարանքը Քահանայապետին կը մատուցանէ, բայց Քահանայապետն ըստ մեծի մասին կամ անտես կ'ընէ, եւ կամ նորընտիր եպիսկոպոսը կը նզովէ։

**94.**

*Բ. Նոր հերետիկոսական դրութիւններ եկեղեցական իշխանութեան վրայ, եւ զանոնք ուղղափառ եկեղեցւոյ մէջ մտցնելու ջանքեր։*

Կաթուղիկէ ուղղափառ եկեղեցին միշտ հաստատ կը պահէ Աստուծմէ իրեն տրուած սահմանադրութիւնը, որն որ հիմնեալ է այն եռապատիկ եկեղեցական իշխանութեան վրայ, զորն որ Աստուած հաւատացելոց փրկութեան համար նախ առաքելոց ու աշակերտաց, եւ անկէ ետքն անոնց օրինաւոր յաջորդաց՝ այսինքն եպիսկոպոսաց ու քահանայից տուած է։ Բայց եպիսկոպոսք իրենց յանձնուած հաւատացեալներով՝ ստորակարգեալ ու հպատակ են Ս. Պետրոսի՝ Քրիստոսի Եկեղեցւոյ տուած երեւելի Գլխոյն, եւ անոր օրինաւոր յաջորդաց՝ Հռոմայ Քահանայապետներուն։ Եկեղեցւոյ սահմանադրութեան այս աստուածադիր յօրինուածութիւնը՝ յանձն Քահանայապետին, եպիսկոպոսաց եւ եկեղեցւոյ իշխանութեան ուրիշ ստորնագոյն դասաւորութիւնները, կ'ապահովցընեն կաթուղիկէ եկեղեցւոյ ներքին հզօր միութիւնն ու կարգաւորութիւնը. իսկ Քրիստոսի Տեառն մերոյ Պետրոս առաքելոյն եւ իր օրինաւոր յաջորդաց ըսած այն խօսքը թէ՝ Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն, կ'երաշխաւորեն եկեղեցւոյ արտաքին գոյութիւնն ամէն արտաքին յարձակմանց դէմ։ Եկեղեցւոյ միութեան ու բարեկարգութեան, ինչպէս նաեւ իր մշտատեւ կացութեան այս էական հիմունքը, Լութեր եւ ընդհանրապէս նորոգողութեան հետեւողները մերժեցին։ Լութեր անոր տեղ դրաւ այն

հերետիկոսական սկիզբը՝ թէ եկեղեցւոյ մէջ ամէն քրիստոնեայ հաւասար իշխանութիւն ունի վարդապետելու եւ խորհուրդ մատակարարելու։ Բայց շատ չանցաւ Լութեր տեսաւ իր այս սկզբան անկայուն ըլլալը, մանաւանդ երբ որ բողոքականաց մէջ պէսպէս գժտութիւններ ու հերձուածներ ելան։ Ուստի իր հաստատած եկեղեցւոյն եւ գրած եկեղեցական կարգադրութեանցը հաստատութիւն մը տալու համար, ստիպուեցաւ աշխարհական իշխանութիւնը ձեռք առնուլ, եւ քահանայապետէն ու եպիսկոպոսներէն յափշտակած հոգեւոր իշխանութիւնն անոնց տալ։ Այսպէս Լութերականաց մէջ աշխարհական իշխանք կրօնական խնդրոց դատաւոր եւ եկեղեցական կարգաւորութեանց օրէնսդիր եղած էին, որոնց քմացն այս իշխանութիւնը շատ համաձայն գալով՝ զանիկայ կամաց կամաց այնպէս ընդարձակեցին, մինչեւ շատ անգամ իրենց հպատակները կը ստիպէին որ իրենց ուզած կրօնին դառնան։ Բողոքական իշխանք այս իրաւունքը կը հիմնէին այն ինքնահնար սկզբան վրայ թէ՝ Գաւառն որունն է, կրօնն ալ անոր (cujus regio, illius et religio)։

Քանի որ այս սկզբունքները նորաղանդից մոլորութեանցն իբրեւ մաս կը համարուէին, այն իշխանները՝ որոնք Լութերի ցուցուցած այս ճամբով իրենց իշխանութիւնը մեծցընելու ետեւէ եղան, ամէնքն ալ ուղղափառ եկեղեցիէն բաժնուեցան։ Բայց երբոր ԺԷ. դարուն՝ իրաւագէտք այս սկզբունքներն սկսան պաշտպանել եւ մասնաւոր յօրինուածութեան մը խօթեցին, ան ատեն ուղղափառ իշխաններէն ալ ոմանք առանց նորաղանդութեան դառնալու, ետեւէ եղան նոյն սկզբունքն ի գործնականն ուղղափառ եկեղեցւոյ սահմանին մէջ ալ մուծանելու, եկեղեցական իրողութեանց վրայ մէկ քանի իշխանութիւններ իրենց սեպհականելով։ Ասիկայ առաջին անգամ փորձեց Գաղղիա Լուդովիկոս ԺԴ. թագաւորը, որուն անսանձելի փառասիրութիւնն ու անյագ տիրապետութեան փափաքը զինքը դրդեց Քահանայապետին եւ նոյն իսկ եկեղեցւոյ դէմ թշնամական գործքեր ընե-

լու։ Իննովկենտիոս ԺԱ. Քահանայապետին հետ եկեղեցական հասոյթներուն վրայ եղած խնդիրներուն պատճառաւ գժտեցաւ, որուն հետեւութեամբն ազգային եկեղեցական ժողով մը գումարել տուաւ (1682), որ Գաղղիական եկեղեցւոյ ազատութիւնները դուրս հանեց։

Այս Գաղղիական եկեղեցւոյ անուանեալ ազատութիւնները, որոնց հեղինակն ինչպէս հաւատական կ'երեւայ անուանի Բոսիւէն է, հետեւեալ չորս յօդուածները կը բովանդակեն։ 1. Առաքեալ Ս. Պետրոսի եւ իր յաջորդացը՝ որ Քրիստոսի փոխանորդներն են, եւ նոյն իսկ եկեղեցւոյ՝ միայն հոգեւոր ու հոգւոց փրկութեան վերաբերեալ իրաց վրայ իշխանութիւն տուած է, եւ ոչ թէ ժամանակաւոր ու քաղաքական իրաց վրայ։ Ուստի թագաւորք եւ իշխանք՝ ժամանակաւոր իրողութեանց մէջ ամենեւին եկեղեցական իշխանութեան մը ստորանկեալ չեն, եւ եկեղեցւոյ բանալեաց իշխանութեան զօրութեամբը չեն կրնար ո՛չ ուղղակի եւ ո՛չ անուղղակի իրենց աթոռէն ձգուիլ. նոյնպէս իրենց հպատակները հնազանդութենէ, երդումէ ու հաւատարմութենէ չեն կրնար արձակուիլ։ 2. Թէեւ Առաքելական Գահն ու Ս. Պետրոսի յաջորդները հոգեւոր իշխանութեան լիութիւնն ունին, բայց կ'արժեն նաեւ Կոստանդիայի սիւնհոդոսին՝ (3. ու 4 նիստ) ընդհանուր ժողովոց հեղինակութեան վրայ տուած վճիռները, եւ գաղղիական եկեղեցին արդարացի չի համարիր, որ այս հեղինակութեան վրայ տարակուսուի, կամ միայն հերձուածոյ ժամանակի վրայ սահմանաւորուի։ 3. Ուստի Առաքելական Գահին իշխանութեան կիրառութիւնն այն կանոնաց ձեռքով պիտ'որ ուղղուի, որոնք բոլոր աշխարհքէս յարգութեամբ ընդունուած ըլլալով՝ նուիրական եղած են. նոյնպէս անխախտ պիտ'որ պահուին ամէն կարգադրութիւնները, սովորութիւններն ու սկզբունքները, զորոնք Գաղղիայի տէրութիւնն ու գաղղիական եկեղեցին ընդունած եւ Ս. Գահն եւ ընդհանուր եկեղեցին իր հաւանութեամբը հաստատած են։ 4. Հաւատոյ վերաբերեալ նիւթերու մէջ՝ Քահանայապետը գերագոյն հեղինակութիւնն ունի, եւ իւր վճիռները կ'արժեն բոլոր եկեղեցեաց եւ ամէն մէկ եկեղեցւոյ համար ի մասնաւորի, բայց իր դատաստանն անդառնալի ու աննորոգելի չէ, քանի որ ընդհանուր եկեղեցւոյ հաւանութիւնը վրան չէ եկած։

Գաղղիական եկեղեցւոյ այս ազատութեանց նպատակն էր, Գաղղիայի կղերը Քահանայապետին իշխանութենէն հանել եւ թագաւորին գերի ընել*։ Բայց Քահանայապետք մերժեցին հերետիկոսութենէ յառաջ եկած ու հերձուածի առաջնորդող այս ազա-

* Ժամանակակից ու հանճարեղ Գամպրէի արքեպիսկոպոսը Ֆենելոն կ'ըսէ. Հիմայ՝ Գաղղիայի մէջ աւելի թագաւորը քան թէ Քահանայապետն է եկեղեցւոյ գլուխը, եւ աշխարհականք եպիսկոպոսաց վրայ կ'իշխեն։

տութիւնները, ինչու որ Քրիստոսի եկեղեցւոյ հոգւոյն ու էութեանը հակառակ եւ անոր վնասակար էին։ — Լուդովիկոս ԺԴ.ին քաղաքագիտաց՝ ազատութեան ծածկութին տակ Գաղղիայի եկեղեցւոյն մէջ խոթել ուզած այս սկզբունքները, ԺԸ. դարուն Գերմանիա տարածելու ետեւէ եղաւ Յուստինոս Ֆեպրոնիոս (բուն անունն է Նիկողայոս Հոնդհայմ) Դրիէրի օգնական եպիսկոպոսը, որ զանոնք քիչ մը մեղմացընելով՝ իբրեւ նոր առաջարկութիւն մը մէջտեղը հանեց, բողոքականներն ուղղափառ եկեղեցւոյ հետ միաբանելու համար։ Ֆեպրոնիոս կը հաստատէր թէ բանալեաց իշխանութիւնը միայն Պետրոսի չէ տրուած հապա բովանդակ եկեղեցւոյ, որմէ ամէն եկեղեցւոյ պաշտօնեայք եւ նոյն իսկ քահանայապետն իրենց իշխանութիւնը կ'առնուն։ Դարձեալ կ'ըսէր թէ եկեղեցւոյ սահմանադրութիւնը միապետական չէ, եւ քահանայապետն եպիսկոպոսաց նկամամբ ան է, ինչ որ է խորհրդանոցի մը համար դահերէցը։ Ասկէ կը հետեւէր նաեւ որ քահանայապետին իշխանութիւնը՝ բովանդակ եկեղեցւոյ դատումէն կախում ունի, եւ յայտնութեան որոշ ու պայծառ խօսքերուն եւ պատմութեան ակներեւ վկայութեան դէմ՝ քահանայապետին գերագունութիւնը պարզ պատուոյ եւ ոչ թէ իրաւաբանութեան գլխաւորութեան մը կը վերածուէր։ Այս սկզբանց բնական հետեւութիւնն էր ժողովրդոց եկեղեցւոյ տեսանելի Գլխէն բաժնուիլը, եւ աշխարհական իշխանութեան տիրապետութեան տակ առանձին ազգային եկեղեցիներ կանգնելը։ Անոր համար Կղեմէս ԺԴ. Քահանայապետը Ֆեպրոնիոսի այս մոլորութիւնները դատապարտեց, եւ թէպէտ Ֆեպրոնիոս իսկզբան զանոնք ետ առաւ, բայց կ'երեւայ որ ետքէն դարձեալ անոնց յարած ըլլայ։ — Ֆեպրոնիոսի ի տեսականն պարզած այս սկզբունքները՝ Աւստրիայի Յովսէփ Բ. կայսրը, որ իր ժամանակին դէշ հոգւոյն համեմատ կրթուած էր, եւ անանկ մարդիկներէ պաշարեալ ու խրատեալ էր, որոնք եկեղեցւոյ թշնամի էին, ուզեց ուղղափառ եկեղեցւոյ գործնական կենացը մէջ խոթել։ Բարեկարգու-

թեան պատրուակաւ իր տէրութեան մէջ այնպիսի փո-
փոխութիւններ ըրաւ եւ անանկ օրէնքներ հանեց, ո-
րոնք ուղղափառ եկեղեցւոյ խիստ վնասակար ու վտան-
գաւոր էին։ Պիոս Զ. Քահանայապետը ստիպուեցաւ
անձամբ Վիեննա երթալ, որպէս զի կայսրը բռնած
այս ծուռ ճամբէն ետ կեցընէ, բայց դժբախտութեամբ
առանց բան մ'ընելու մէկ ամսէն Հռոմ դարձաւ։ Քիչ
մը ետքը (1790) Յովսէփ Բ. կայսրը մեռաւ, հանած
օրէնքներուն վնասակար հետեւութեանցը վրայ սրտի
մեծ կսկիծով։

## 95. Ընդհանուր տիրող անհաւատութիւնը:

Վեշտասաներորդ ու եօթեւտասներորդ դարուն
Եւրոպայի արիւնահեղ կրօնական պատերազմաց ա-
տեն, զանազան տարրներէ բաղկացած կողմնակցութիւն
մը երեւան ելաւ, որ նոյն իսկ քրիստոնէական կրօնն
այն ամէն աղետից ու չարեաց պատճառ համարելով,
անոր դէմ յօրինաւոր հակառակութիւն մը սկսաւ։
Այս կողմնակցութեան հետեւողներն իրենց գլխաւոր
հիմ առած էին բողոքականաց ազատ հետազօտու-
թեան սկիզբը, եւ կը պահանջէին ամէն բանի մէջ ա-
զատ խորհելու իրաւունք, որուն համար նաեւ Ազատ-
խորհողք կոչուեցան։ Այս ազատ հետազօտութիւնը
նախ Անգղիա սկսաւ, որ ամէն տեսակ աղանդներով
ճեղքուած ու պառակտած էր, եւ քիչ ժամանա-
կուան մէջ այնչափ յառաջ գնաց, որ մինչեւ ան-
հաւատութեան ու սկեպտականութեան տարաւ։

Այս դրական քրիստոնէութեան դէմ հակառա-
կող յանդուգն հոգին, ԺԸ. դարուն սկիզբն Անգղիայ-
էն՝ Գաղղիա անցաւ, ուր այնչափ աւելի պատրաս-
տական ընդունելութիւն գտաւ, որչափ Լուդովիկոս
ԺԴ.ին ժամանակէն սկսեալ զարհուրելի բարուց ա-
պականութիւն մը ժողովրդեան ամէն կարգերուն մէջ
տիրած էր։ Ի մասնաւորի այս հոգւոյն հետեւեցաւ
Վոլդէր, որ իր ժամանակին (1694 — 1778) երեւելի
հանճարներէն մէկն էր։ Ասիկայ չէ թէ Անգղիացւոց
սեպհական պաղարիւն ծանրախոհութեամբ, հապա

երբեմն արհամարհութեան եւ երբեմն իմաստակու-
թեան զէնքերով՝ գրեթէ կէս դարու չափ աշխատե-
ցաւ Գաղղիայէն քրիստոնէական կրօնք ջնջելու։ Իրեն
հետ միաբանեցան նոյն դարուն անուանեալ փիլիսո-
փաներն ու գեղեցիկ հանճարները, ինչպէս Տիտըրօյ,
Տ'Ալանպէր, Տը Բրատ, Տ'Արժան, Հոլպախ, Ռուսոյ
եւ ուրիշ բազմաթիւ մատենագիրներ, որոնք յայտնի
կամ ծածուկ անաստուածութիւն կը քարոզէին, եւ
թէ եկեղեցական ու թէ աշխարհական իշխանութիւնն
արհամարհելի ու ծաղրելի ընելու կ'աշխատէին։ Այս
անկրօն մատենագրաց գլխաւոր գործքն է մեծ Հան-
րագիտարանը (Encyclopédie), որ 1750էն սկսեալ
Տ'Ալամպէրի ու Տիտըրօյի առաջնորդութեամբն սկը-
սաւ հրատարակուիլ, եւ կրօնի ու բարոյից դէմ ծուռ
սկզբունքներն անհաւատալի շուտութեամբ տարածե-
լու գործիք մ'եղաւ։

Անգղիացւոց ու Գաղղիացւոց անկրօն մատենա-
գիրներուն գրուածքները Գերմանիա ալ շուտ տարա-
ծուեցան, եւ հոն ալ նոյն պտուղները յառաջ բերին։
Հրապարակական բեմբերէն քրիստոնէական կրօնն
այնչափ նախատուեցաւ ու արհամարհուեցաւ, մինչեւ
որ վերջապէս բոլորովին անհետ եղաւ։ Բողոքական-
ներէն ոմանք սկսան տարակուսիլ հաւատոյ դաւա-
նանքի կարեւորութեան վրայ, ոմանք ալ բողոքակա-
նութեան միակ ճանաչման աղբիւրը Ս. Գիրքը՝ խնդրոյ
տակ ձգեցին։ Էմմանուէլ Քանդի (1724 — 1804)
հնարած նոր փիլոսոփայութիւնն ալ այս անկրօն հոգ-
ւոյն կը ծառայէր։ Բնակրօնութիւնը՝ որ այս փիլիսո-
փայութենէն յառաջ եկաւ, զօրաւոր պաշտպան գը-
տաւ զՖրիդերիկոս Բ. Բրուսիայի թագաւորը։ Այս ա-
նուանի վեհապետը՝ Գաղղիայի իմաստասիրաց նմանո-
ղութեամբ քրիստոնէական կրօնն իր հեգնութեանցը
նշաւակ ըրաւ, եւ կրօնական նիւթերու մէջ բաց-
արձակ մամլոյ ազատութիւն շնորհելով, քրիստոնէ-
ութեան դէմ բազմաթիւ գրուածքներ ելլելուն պատ-
ճառ եղաւ, որոնց նպատակն էր բողոքականաց մէջէն
քրիստոնէական կրօնին մնացորդներն ալ ջնջել ու
անհետ ընել։ Այսպէս անհաւատութեան հեղեղը

*բովանդակ Գերմանիայի բողոքակրօն երկիրներն ողո-
ղեց, որմէ դժբախտութեամբ ուղղափառն եկեղեցին
ալ ազատ չմնաց։ Առով անհաւատութիւնը բոլոր
Եւրոպայի ցամաք երկիրը բռնեց. Անգղիա՝ գլխաւորա-
բար աստուածեանց աղանդը, Գաղղիա՝ անաստուա-
ծութիւնը, իսկ Գերմանիա՝ համաստուածութիւնն
ու նիւթականութիւնը։ Այս կրօնական գաղափարաց
եւ փիլիսոփայական դրութեանց խառնակութեան
մէջ, ոմանք կրօնական ճշմարտութիւնը գտնելու յոյ-
սերնին կորսնցուցին. այս յուսահատութեան արտա-
դրութիւնն է այն ընդհանուր տարածուած մոլար
կարծիքը, թէ ամէն կրօն հաւասար է, մարդ ինչ
բանի որ կ՚ուզէ կրնայ հաւատալ, բաւական որ աղէկ
ապրի (Անտարբերականութիւն,* Indifférentisme)։

*Ահա ասոնք եղան աստուածային յայտնութիւնը
մերժելէն՝ յառաջ եկած հետեւանքները, որոնք ցայ-
սօր քրիստոնէական կրօնին ու տէրութեանց կործա-
նում, իսկ մարդկեղէն ընկերութեան անդադար ալ-
մուկ ու շփոթութիւն կը սպառնան։*

### 95. *Գաղղիայի մեծ յեղափոխութիւնը, եւ եկեղեցական իրողութեանց վեր ի վայր շրջումը։*

*“Լորաղանդութենէն ետքը ամէնէն նշանաւոր ու
հետեւութիւն ունեցող դէպքն է, Գաղղիայի մեծ յե-
ղափոխութիւնը։ Ասոր բուն սերմը ձգած էր կալուի-
նականութիւնը, որ Գաղղիայի մէջ երկարատեւ ու
աւերիչ քաղաքական պատերազմաց պատճառ եղած
էր։ Եւ թէպէտ թագաւորական իշխանութիւնը վեր-
ջապէս յաղթանակեց, բայց ասով միանգամայն ազգն
իր ազատութիւնները կորսնցուց։ Գաղղիա անկէ ետ-
քը բացարձակ միապետական տէրութիւն մ՚եղաւ, որ
ամէնէն աւելի յայտնի տեսնուեցաւ Լուդովիկոս
ԺԴ.ին ժամանակ։ Այս վեհապետը թէեւ արտաքուստ
ազգին ազդեցութիւնն ու համբաւը մեծցուց, բայց ի
ներքուստ տէրութիւնը խիստ տկարացուց եւ անհնա-
րին պարտուց տակ ձգեց։ Անկէ զատ նաեւ ժամանա-
կին անկրօն հոգւոյն թեւ թիկունք ըլլալով եւ անոյն*

կենաց անկարգութիւններովը, ժողովրդեան բարոյա-
կան կենաց կապերը թուլցուց։ Գաղղիայի վիճակն
աւելի եւս գէշցաւ իր մահուանէն ետքը յաջորդող
Լուդովիկոս ԺԵ.ին ժամանակ, որ տկար ու անկարգ
կրից տէր մարդ մըն էր։ Այսպէս մէկ կողմանէ նախըն-
թաց համարին մէջ յիշած մատենագիրներուն կրօնի
ու բարուց դէմ տարածած գրուածքներովը, եւ մէկալ
կողմանէ արքունեաց ապականութեանցն եւ անկէ յա-
ռաջ եկած չար օրինակներով, ժողովրդեան մեծ մասն
ամէն նուիրական կարգաւորութեանց վրայ համարու-
մը կորսնցուց, եւ աստուածային ու մարդկային օ-
րէնքներն սկսաւ բանի տեղ չդնել։

Գաղղիա սաստիկ ողորմելի վիճակի մէջ եղած ա-
տեն՝ Լուդովիկոս ԺԵ. իր անկարգութիւններէն պատ-
ճառած հիւանդութենէ մը մեռնելով (1774), տեղն
անցաւ Լուդովիկոս ԺԶ., որ բարեսիրտ ու արդարակո-
րով մարդ մըն էր. բայց արտաքոյ կարգի տկար ու ան-
հաստատ ըլլալով, նոյն միջոցին Գաղղիայի ապականու-
ցուած վտանգին առջեւն առնելու անկարող էր։ Լու-
դովիկոս ԺԶ. կառավարութիւնը ձեռք առած ատեն՝
արդէն տէրութիւնը ծանր պարտուց տակ ինկած էր,
եւ թէպէտ ինք ձեռք զարկաւ նորոգութիւններ ընե-
լու, եւ փոյթ ալ տարաւ ելեւմտից ողորմելի վիճակը
շտկելու, բայց ամէն բրածները կամ բոլորովին անօ-
գուտ եղան կամ գոնէ մեծ օգուտ մը չըրին, եւ ժո-
ղովրդեան դժգոհութիւնն երթալով սաստկացաւ.
ռամիկն ի մասնաւորի կ'ատէր եկեղեցականներն ու
ազնուականներն իրենց հարստութեանը համար։ Այս
դժուարին վիճակի մէջ Լուդովիկոս ԺԶ. Վերսայլ
կարգաժողով մը կանչեց, որ 1614էն վեր գումարուած
չէր, եւ հին սովորութեան հակառակ որոշուեցաւ, որ
քաղաքացւոց պատգամաւորաց թիւը՝ մէկալ երկու
կարգերուն (ազատանուոյն ու եկեղեցականաց) պատգա-
մաւորաց թուոյն հաւասար ըլլայ։ Բայց անոր վրայ
որոշմունք չեղաւ թէ կարգաժողովը թագաւորին հետ
ինչ յարաբերութիւն պիտ'որ ունենայ, ամէնքը մէկ՝
թէ երեք խորհրդանոց պիտ'որ կազմեն, նոյնպէս
քուէարկութիւնն ինչպէս պիտ'որ ըլլայ։ Յամի 1789ին

Մայիս 9ին Թագաւորն անձամբ կարգաժողովը բացաւ; բայց նոյն ատեն ալ ոչ ինք եւ ոչ պաշտօնեայք այս ծանրանկշիռ խնդրոյն վրայ բան մը բրին: Այսպէսով երրորդ կարգը մէկալ երկու կարգերէն պահանջեց, որ իրեն հետ միանան, եւ երբոր անոնք յանձն չառին՝ ան ատեն քաղաքացի պատգամաւորները հրատարակեցին՝ որ իրենք են բուն Ազգային ժողովը կազմողը, եւ անկէ դուրս ամենեւին պատգամաւոր մը չի կրնար իր պաշտօնն ի գործ դնել: Միրապօ կոմսը՝ զորն որ ազնուականք իր անառակ վարուցը համար իրենց մէջէն մերժած էին, ռամկապետականաց գլուխն անցաւ: Քաղաքացւոց կարգէն պատգամաւորները ժողով մը գումարելով՝ երդում ըրին որ իրարմէ չզատուին, մինչեւ որ Գաղղիայի վերանորոգութեան գործքը գլուխ չհանեն սահմանադրութիւն մը շինելով, եւ անկէ ետքն ալ իրենց ժողովները Թագաւորին հրամանին դէմ շարունակեցին: Եկեղեցականաց պատգամաւորներուն մէկ մասը քաղաքացւոց պատգամաւորներուն հետ միացաւ, եւ քիչ մը ետքն երբոր Օռլէանի դքսին առաջնորդութեամբը մէկ քանի ազնուականք ալ անոնց կողմն անցան, ան ատեն Թագաւորը հրամայեց որ առաջին երկու կարգերն երրորդին հետ բոլորովին միանան: — Այսպէս հիմ դրուեցաւ այն քաղաքական մեծ յեղափոխութեան, որ բովանդակ Գաղղիան տակն ու վրայ ըրաւ, եւ Լուդովիկոս ԺԶ.ին սպաննուելովն ու հին սահմանադրութեան բարձմամբը լմնցաւ: Այս դէպքերուն եւ անկէ ետքն պատահած սոսկալի արիւնհեղութեանց պատմութիւնը, արտաքին պատմութեան կը վերաբերի:

Այս խառնակութեան ժամանակ՝ Գաղղիայի եկեղեցական յարաբերութիւններն ալ վեր ի վայր շրջեցան: Յեղաշրջութեան գլուխն անցնողներն անկրօն, անաստուած եւ քրիստոնէական եկեղեցւոյ դէմ մոլեգին կատաղութեամբ վառեալ անձինք ըլլալով, մտադրութիւննին անմիջապէս եկեղեցւոյ պաշտօնէից եւ եկեղեցական ընչից վրայ դարձուցին: Նախ վաղեմի աւատային իրաւունքը Գաղղիայի մէջ վերցուեցաւ, եւ եկեղեցականք իրենց տասանորդը կորսնցուցին,

որով չափերն առանց ապրուստի մնացին։ Բայց հա-
մարդկապետականք առով ալ գոհ չըլլալով՝ 1789ին
ազգային ժողովոյն մէջ որոշեցին որ եկեղեցական ինչ-
քերը տէրութեան ստացուածք ըլլան, եւ տէրութիւնն
եկեղեցականաց թոշակ կապէ եւ կրօնի պահպանու-
թեան համար հարկաւոր եղած ստակը տայ։ Յաջորդ
տարին (1790) ելած հրովարտակաւ մը բոլոր վանքերն
ու վանական կարգերը ջնջուեցան։

Այսպէս՝ թէեւ եկեղեցին Գաղղիա յետին
չքաւորութեան հասաւ, բայց դեռ իր գոյութիւնը
կը պահէր։ Ասիկայ բաւական էր եկեղեցւոյ թշնամի-
ներն իրեն դէմ գրգռելու։ Ուստի 1790ին Յուլիսի
17ին ազգային ժողովը Կղերականաց քաղաքական սահմա-
նադրութիւն մը հրատարակեց, որով Գաղղիայի նուի-
րապետութիւնն եւ իրմով նոյն իսկ եկեղեցին կը ջըն-
ջուէր։ Այս քաղաքական սահմանադրութեամբ Գաղ-
ղիայի 136 եպիսկոպոսական աթոռները 83ի, իսկ 18
արքեպիսկոպոսարանները՝ 10ի վերածուեցան։ Անկէ
զատ որոշուեցաւ որ բոլոր եկեղեցականք ժողովրդեան
ձեռքով ընտրուին եւ քաղաքական երդում ընեն.
Նոյնպէս եպիսկոպոսաց Քահանայապետէն հաստա-
տուիլը դադրի, եւ միայն ընտրուողը կարենայ իր
ընտրութիւնը Քահանայապետին ծանուցանել։ Եպիս-
կոպոսաց ու եկեղեցականաց մեծագոյն մասն այս քա-
ղաքական սահմանադրութիւնը չընդունեցաւ, եւ
յանձն չառաւ անոր վրայ երդում ընել, որով 50,000
հոգւոյ չափ ստիպուեցան իրենց հայրենի երկրէն ել-
լել, օտար երկիր գաղթել, եւ 400էն աւելի քահա-
նայք գլխատուեցան։ Աքսորուած քահանայից տեղ
սահմանադրական եկեղեցականներ դրուեցան, եւ 20
կարգուրաց ժողովրդապետք եպիսկոպոս անուանուե-
լով՝ Գալերան ուխտադրուժ եպիսկոպոսէն ձեռնա-
դրութիւն առին։ Պիոս Զ. Քահանայապետն այս ա-
մէն եղածներուն դէմ բողոքեց, եւ մէկ քանի համա-
ռօտագիրներով քաղաքական սահմանադրութիւնը
մերժեց, նոր ընտրուած եպիսկոպոսաց ընտրութիւնն
անվաւեր հրատարակեց եւ արդէն ձեռնադրուածները
կախեց, եւ վերջապէս հալածուած քահանայից քա-

ջալերական թուղթ մը գրեց։ Ասոր համար Քահա-
նայապետը Գաղղիա ունեցած երկիրները (Աւենիոն
քաղաքն ու Վենեսէնի կոմսութիւնը) կորսընցուց։

Ա՛լ անկէ ետքը Գաղղիայի յեղաշրջութիւնն ան-
դունդէ անդունդ գահավիժեցաւ. քրիստոնէական
կրօնը բոլորովին ջնջուեցաւ, եկեղեցիները գոցուեցան
եւ քրիստոնէութեան ամէն խորհրդանշաններուն յի-
շատակները կարելի եղածին չափ քանդուեցան։ Նոյն
իսկ քրիստոնէական օրացուցին տեղ նորահնար օրա-
ցոյց մը յաջորդեց, որուն մէջ օրերը չէ թէ սուրբերու
անուններուն, հապա բոլորովին արտաքին ու նուաստ
բաներու համեմատ կը կոչուէին։ Եկեղեցական պաշ-
տամանց տեղ՝ Բանաստուածեան հեթանոսական պաշ-
տամունքը խոթուեցաւ, եւ Բանաւորութեան դի-
ցուհին՝ Տիրամօր եկեղեցւոյն մէջ աստուածային պաշ-
տօն ընդունեցաւ (1793)։ Երբոր ապստամբութիւնն
իր վերնակէտը հասաւ, եւ քրիստոնէական կրօնը ջըն-
ջելէն ետքն Աստուծոյ գոյութիւնն ալ ուրացաւ, ան
ատեն յետաշրջութիւն մը սկսաւ։ Ռոպեսբիեր հրա-
մանապետը՝ որ այս արհաւրաց ժամանակին ամէնէն
մարդախողխող բռնաւորն էր, դաշնաժողովոյն ձեռքով
վճռել տուաւ (1794 Յուլիս 8) որ բարձրագոյն Էակ
մը կայ, եւ հոգւոյն անմահութեան վարդապետու-
թիւնը ճշմարիտ է, եւ նոյն բարձրագոյն Էակին պա-
տուոյն համար ծաղրական ազգային հանդէս մ'ալ
կատարել տուաւ։ Սակայն այս յետաշրջութիւնը Ռո-
պեսբիերի կեանքն արժեց։

### 96. Նապոլէոն Ա.ին եկեղեցւոյ նկատմամբ բռնած ըն-թացքը։

Ռոպեսբիերի մահուանէն ետքը՝ գործադիր իշ-
խանութիւնը հինգ հոգիէ կազմուած վերակացուաց
ժողովոյ մը յանձնուեցաւ։ Այս ժողովոյս կառավա-
րութեան ատեն Գաղղիայի հանրապետութիւնն
եկեղեցւոյ դէմ նոր լիրբ ու անօրէն բռնութեան
գործք մ'ալ կատարեց, եկեղեցւոյ երկիրները յափշ-
տակելով եւ ութսունամեայ Պիոս Զ. Քահանայապե-

որը Գաղղիա գերի տանելով։ Հոս աքսորանաց մէջ մեռաւ Պիոս Զ. (1799. Աւգ. 29) 24 տարի ու վեց ամիս ծանր վշտաց մէջ եկեղեցին կառավարելէն ետքը։ Բայց վերակացուաց ժողովոյն կառավարութիւնն երկարատեւ չեղաւ. քիչ մ'ետքը Նաբոլէոն Պոնաբարդէ, որ խռովելիս բռնած քաջագործութիւններովը մեծ անուն հանած էր, վերակացուաց իշխանութիւնը կործանեց եւ Գաղղիոյ վերին հրամանատարութիւնն իր ձեռքն առաւ։ Նաբոլէոն թէեւ եկեղեցական իրաց անտարբեր էր կամ մանաւանդ թէ իր չափազանց աշխարհակալութեան բաղձանքն ու անպայման փառասիրութիւնը կրօնական նկատմունքներով չէր սանձահարուեր, բայց ինք ճանչցած էր, որ առանց կրօնք կառավարել չ'ըլլար։ Ուստի Գաղղիոյ անիշխանութեան վիճակը վերջացընելէն ետքը, միտքը դրաւ որ անկրօնութեան ու անաստուածութեան տեղ ուղղափառ կրօնը Գաղղիա վերստին հաստատէ։ Նաբոլէոնին այս փափաքը պատրաստակամ ընդունելութիւն գտաւ Պիոս Է.ին քով, որ 1800ին Մարտի 14ին Վենետիկ Քահանայապետ ընտրուած էր։ Պիոս Է. Քահանայապետին հետ Նաբոլէոն կրօնական դաշինք մը դրաւ, յեղաշրջութեամբ Գաղղիոյ մէջ բոլորովին քայքայեալ եկեղեցական կարգերը նորէն հաստատելու համար։ Բայց Նաբոլէոն առանց Քահանայապետին գիտութեանը նոյն դաշանց հետ մէկ քանի Գործադրական յօդուածներ (articles organiques) ալ հրատարակել տուաւ, որոնց ձեռքով տէրութեան զանազան իշխանութիւններ կը տրուէին եկեղեցւոյ վրայ, եւ եկեղեցականաց գործունէութեանը պէսպէս ոտնակապեր կը դրուէին։ Թէպէտ ասկէ կը տեսնուի, որ Նաբոլէոն Ա. Քահանայապետին հետ դրած կրօնական դաշինքն այնչափ կրօնասիրութենէ յառաջ չէր եկած, որչափ կրօնի ձեռքով իր իշխանութիւնը հաստատելու եւ տարածելու բաղձանքէն, սակայն ասով գոնէ ապագայ լաւագոյն փոփոխութեան մը առաջին քայլն առնուած էր։

Յամի 1804ին Պիոս Է. Նաբոլէոնին հրաւիրելովը Բարիզ գնաց զինքը կայսր օծելու համար, որ

հանդէսը նոյն տարւոյն Դեկտեմբերի 2ին մեծ շքեղութեամբ կատարեց։ Քահանայապետը կը յուսար, որ ասկէ եկեղեցւոյ բարիք մը կ՚ելլէ, բայց չորս ամիս ետքը Պարիզէն ելաւ, առանց եկեղեցւոյ համար նշանաւոր բան մ՚ընել կարենալու։ Մանաւանդ թէ անկէ ետքը Քահանայապետին ու կայսեր մէջ եղած յարաբերութիւններն երթալով դէշցան. վերջապէս Գաղղիացւոց զօրքը Հռոմ կոխեց, եւ Նաբոլէոն Վիէննայէն հրովարտակ մը հանեց, որով Հռոմի տէրութեան երկիրները Գաղղիայի հետ միացուց (1809 Մայիս 17), եւ Քահանայապետին աշխարհական իշխանութիւնը վերջացուց։ Այս բռնաւորական գործքը՝ Քահանայապետը ստիպեց Նաբոլէոնի դէմ նզովից կոնդակ մը հանելու։ Արդէն յայտնի էր թէ ասոր հետեւութիւնն ինչ պիտ՚որ ըլլայ. կայսեր հրամանաւը Պիոս Է. բռնուելով (1809 Յուլիս 6) նախ Կրընոպլը եւ հոնկից Սաւոնա տարուեցաւ։ Նաբոլէոն այս միջոցին իր իշխանութեան ու փառաւորութեան ծայրը հասած էր, եւ բոլոր Եւրոպա իր զինուց զօրութեան առջեւը կը դողար, ուստի այնչափ աւելի զայրացաւ որ ինչպէս կրնայ անզէն ծերունի մը իրեն դէմ դնելու քաջասրտութիւնն ունենալ։ Բայց Քահանայապետը նոյն իսկ գերութեան մէջ յանձն չառաւ Նաբոլէոնի անուանած եպիսկոպոսները հաստատել։ Կայսրն երբոր տեսաւ որ Քահանայապետն իր կամացը չի զիջանիր, մտածեց Պարիզ գումարուած (1811) ազգային եկեղեցական ժողովով մը (որուն Գաղղիայէն, Իտալիայէն ու Գերմանիայէն 97 եպիսկոպոսք ներկայ գտնուեցան) եպիսկոպոսական աթոռներուն գրաւման խնդիրն որոշել։ Բայց այս հնարքն ալ չյաջողեցաւ. ժողովն ըստ եկեղեցական կարգաց փառաւորութեամբ բացուեցաւ, եւ ժողովական եպիսկոպոսք Տրիդենտեան ժողովոյն դաւանութիւնը տալէն ետքը, Քահանայապետին հնազանդութեան երդում ըրին։ Թէպէտ եպիսկոպոսներէն ոմանք կայսեր կամացը զիջանելու միտեալ էին, բայց մեծագոյն մասը Քահանայապետին հաւատարիմ ու հնազանդ մնալով, կայսեր կամացը չխոնարհեցան։ Նաբոլէոն

բարկացած՝ ժողովը լուծեց, եւ դարձեալ սկսաւ փորձեր ընել գերի ու վշտագնեալ Քահանայապետէն ընդարձակագոյն զիջումներ առնելու: Սակայն ոչ խոստմունք ոչ սպառնալիք կրցան Քահանայապետին հաստատամտութիւնը խախտել, եւ զինքն իր պարտուց ու իրաւանց պահանջածէն հեռացընել: Անոր համար կայսրը նեղացած՝ զՊիոս Է. Սաւոնայէն Ֆոնթենըբլօյ տանել տուաւ (1812 Յունիս 20), ուր երկար ժամանակ բանտարգել մնաց եւ շատ նեղութիւն կրեց, մինչեւ որ փրկութեան ժամանակը հասաւ:

Գաղղիայի աղէտալի դիպուածներն Եւրոպայի ուրիշ տէրութեանց վրայ ալ մեծ ազդեցութիւն ունեցան: Գերմանացւոց՝ 1800ին Գաղղիայի դէմ բացած պատերազմը անյաջող ելք ունեցաւ, եւ Լիւնէվիլի խաղաղութեան դաշինքով (1801), բոլոր եկեղեցական ինչքերն աշխարհականացան. անոնց մէկ մասը Գաղղիան առաւ, իսկ մէկալ մասը Ռենոսի ձախ կողմի գաւառներուն իշխանաց ըրած կորուստը փոխանակելու գործածուեցաւ: Մայնցի, Քէօլնի ու Տրիէրի կայսրընտրական իշխանութիւնները դադրեցան. Ռեկենսպուրկի արքեպիսկոպոսական աթոռ եւ բովանդակ Գերմանիայի Մետրապոլիտական եկեղեցի եղաւ: Այս միջոցին Գերմանիոյ ուղղափառ եկեղեցին ողբալի վիճակի մէջ կը գտնուէր: Բազմաթիւ եպիսկոպոսական աթոռներ դատարկ մնացած, եւ առաքելական Գահին հետ ազատ հաղորդակցութիւնը խափանեալ ըլլալով, եկեղեցական-բարոյական կեանքն սկսաւ իյնալ եւ կրօնական հոգին մարիլ:

Նոյնպէս Սպանիոյ ու Իտալիոյ ուղղափառ եկեղեցին ծանր հալածանաց ու մեծ տագնապի մէջ էր. ինչու որ Նաբոլէոն այն երկիրներն իր իշխանութեանը տակն առնելուն պէս (1808), բոլոր վանքերը ջնջած ու եկեղեցական ինչքերը յափշտակած էր: Իտալիոյ կարդինալներ, եպիսկոպոսներ ու քահանաներ բանտ դրուեցան, պարզապէս անոր համար որ յանձն չառին Եւրոպայի հրամանատարին կամացը խոնարհիլ եւ եկեղեցւոյ իրաւունքներն անոր ձեռքը մատնել:

Այս խեղճ վիճակին մէջ էր կաթողիկէ ուղղա-

փառք եկեղեցին իմաստասէրներու դարուն սկիզբը։ Ուղ-
ղափառ կղերն Եւրոպայի գրեթէ ամէն երկիրներուն
մէջ կապտեալ կաշկանդեալ, Քահանայապետը գերի,
կարդինալներու ժողովը ցրուեալ կամ աքսորքի մէջ,
եւ նոյն իսկ Հռոմ կաթուղիկէ միութեան կեդրոնը
յեղափոխութեան ձեռքին տակ նուաճեալ։ Այնպիսի
ժամանակ մը հասած էր, որ ամենուբին ուղղութեան
յոյս չէր մնացեր եւ Հռոմ նորէն ձեռք բերելու,
եկեղեցւոյ իշխանութիւնն ու կարգաւորութիւնը նո-
րէն հաստատելու մտածելը անհնարութեան նշան մը
չկար։ Սակայն Աստուած ցուցուց զօրհեալ, որ եկե-
ղեցւոյ հիմնադիրն ու Պաշտպանն ինքն է։ Նափոլէոն՝
Ռուսաստան բրած անյաջող արշաւանքէն դառնալէն
ետքը, հարստահարեալ Եւրոպան իրեն դէմ ելաւ,
եւ հզօր վեհապետը տէրութեանց միացեալ զօրու-
թեան դիմացն ընկճեցաւ։ Երեք դաշնակից մեծ տէ-
րութիւնք՝ 1814 Մարտի 31ին Բարիզ մտան, եւ
Նափոլէոն վար առնելով՝ Պուրպոնեան ցեղէն Լու-
դովիկոս ԺԸ. Գաղղիայի թագաւոր դրին։ Պիոս Է.
Քահանայապետը 1814ին Մայիս 24ին մեծ հանդի-
սութեամբ Հռոմ մտաւ, եւ յաջորդ տարին Վիեն-
նայի արքայաժողովին ձեռքով ամբողջ աշխարհական
տէրութիւնն ետ առաւ։ Գաղղիայի եկեղեցական
յարաբերութիւններն կարգի դրուեցան առանձին
միաբանագրով (Concordat) մը՝ զոր Լուդովիկոս ԺԸ.
Պիոս Է. Քահանայապետին հետ ըրաւ։

Կը յուսացուէր, որ Վիեննայի արքայաժողովը
Գերմանիայի ուղղափառ եկեղեցւոյ խեղճ վիճակին ալ
լաւացընելու համար բան մ'ընէ։ Քահանայապետն իր
Գոնսալվի նուիրակին ձեռքով արքայաժողովին մէջ
Գերմանիայի եկեղեցւոյն կրած ծանր հարստահարու-
թեանցը վրայ տրտունջ ըրաւ, եւ եկեղեցական ստա-
ցուածոց ու իրաւանց վերահաստատութիւնը խնդրեց,
սակայն արքայաժողովն այս ամէն բաներուն լռեց, եւ
ուղղափառ եկեղեցին Գերմանիայի իշխանաց մեծամեծ-
նութեանը յանձնեց։ Ասոնք՝ ամէն մէկն առանձին
Քահանայապետին հետ կրօնական դաշինքներ դրին։
Պիոս Է.ին վերջին յիշատակաց արժանի գործքն ե-

ղաւ Բրուսիայի հետ հաստատած միաբանագիրը, որ-մէ ետքն ութսուն տարւան հասակի մէջ վախճանեցաւ (1823), ալեկոծ ու խռովայոյզ ժամանակ մը 23 տա-րի եկեղեցին կառավարելէն ետեւ։ Իրեն յաջորդեց Լեւոն ԺԲ., որ ընդհանրապէս եկեղեցւոյ եւ ի մաս-նաւորի Հռոմայ տէրութեան իր բովանդակ խնամքն ու հաղացողութիւնը նուիրեց, եւ Պիոս Է.ին ուղ-ղափառ եկեղեցին կարգաւորելու համար օտար տէ-րութեանց հետ սկսած բանակցութիւններն յառաջ տարաւ։ Անոր ալ յաջորդեց Պիոս Ը., որ տարի մը եւ ութ ամիս միայն եկեղեցին կառավարեց։

**97.** *Հայոց կրօնական վիճակն իրենց իշխանու-թիւնը կորսնցնելէն եւ զանազան երկիրներ ցրուե-լէն ետքը:*

**(1385 կամ 1440—1870).**

Կիլիկիոյ թագաւորութեան կործանելովը, չէ թէ միայն Հայ ազգին վերջին երեքհարիւր տարւան քաղաքական կենդանութիւնն ու գոյութիւնն երկրէս բոլորովին ջնջուեցաւ, այլ նաեւ այս դժբախտ ար-կածին հետեւութեամբը՝ երբեմն հոծ ու ամփոփ Հայ ազգը՝ ցրուելով եւ աշխարհքիս ամէն կողմը տարա-ծուած ժողովուրդ մ'եղաւ։ Ուստի ասկէ ետքը՝ ինչ-պէս Հայոց քաղաքական, նոյնպէս կրօնական վիճակին վրայ անկարելի է մի եւ նոյն տեսութեամբ խօսիլ, այլ հարկ է ամէն մէկ գաղթականութեանց յատուկ կրօ-նական վիճակն առանձին առանձին յառաջ բերել։— Հայաստանէն օտար հեռաւոր երկիրներ եղած գաղ-թականութիւնները, շատ փոքր մասերը չհամրելով, երկուքի կրնանք ամփոփել. այսինքն դէպ ի Արեւմուտ ու դէպ ի Արեւելք։

## 98. Ա. Արեւմտեան Գաղթականք:

Մետասաներորդ դարուն՝ Հայաստանէն օտար երկիր գաղթողներուն երեւելիներէն մէկն եղան Շիրակի գաւառին Անի քաղքին բնակիչները, որոնք բարբարոս ազգաց ծանր հարստահարութեանցը չկարենալով դիմանալ, իրենց հայրենի երկրէն ելած դէպ ի Արեւմուտք գաղթեցին, եւ նախ Թաթարստան՝ ետքէն Խրըմ, Լեհաստան, Մոլտաւիա, Վալաքիա ու Պուքովինա անցնելով, վերջապէս անոնց մէկ մասն ալ Դրանսիլվանիա ու Մաճառաստան հաստատուեցաւ: Այս արեւմտեան գաղթականները՝ կրօնի կողմանէ երեւելի ժամանակներ ունեցան այլեւայլ երկիրներու մէջ, բայց անտարակոյս է որ ասոնց մէջ խիստ նշանաւորներէն մէկն եղան՝

### ա. Լեհաստանի Հայք:

Լեհաստան երկու գլխաւոր գաղթականութիւն եղած գիտենք Հայաստանէն, առաջինը Բագրատունեաց ժամանակէն ԺԱ. դարուն (իբր 1060ին), իսկ երկրորդն անկէ քանի մը դար ետքը (1500ին մօտերը): Թէեւ մէկ քանի նշաններ աներկբայ կը ցուցընեն, որ աս գաղթականաց՝ մանաւանդ Կիլիկիայէն եկողներուն մէջ, Հռոմայ եկեղեցւոյ հետ միացեալ կամ կաթուղիկէ Հայք ալ կային*, սակայն աս անտարակուսելի է, որ թէ կղերին ու թէ ժողովրդեան մեծագոյն մասը, մինչեւ եւթնեւտասներորդ դար՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ ըստ օրինի միացեալ չէին: Լէոպոլսոյ արքեպիսկոպոսները (1365էն վեր) իբրեւ Էջմիածնի կաթուղիկոսաց փոխանորդ, չէ թէ միայն Լեհաստանի

* Այսպէս օրինակի աղագաւ, կը պատմուի որ Լէոպոլսոյ կամ Լեմպերկի Կրտսեր Եղբարց եկեղեցին՝ նոյն քաղքին ուղղափառ Հայոց եկեղեցական պաշտամունք կատարելու տեղն է եղեր: Ետքէն նոյն վախճանի համար նաեւ Դոմինիկեանց Ս. Մ. Մագդաղենացւոյն եկեղեցին իրենց տրուեր է: Հաւատոյ Տարածման Ս. Ժողովը, 1627 Յունուար 30ին հանած վճռովը, Լեհաստան առաքելութեան պաշտօն կատարող Թէատին Կարմելտականաց հայերէն պատարագելու խնդիրքը չընդունեցաւ: Անկէ զատ՝ Լեհաստանի Հայոց ընդհանուր գործէն յառաջ կը յիշուին նաեւ մէկ քանի Լէոպոլսոյ արքեպիսկոպոսներ, որոնք Հռոմայ եկեղեցւոյ հետ հաղորդութեան մէջ էին:

այլ նաեւ Մոլտաւիոյ ու Վալաքիոյ Հայոց վրայ մետրապոլտական իշխանութիւն մը կը բանեցընէին, ինչպէս կը վկայէ Յովհաննէս Լէոպոլսոյ առաջին արքեպիսկոպոսին մագաղաթեայ կոնդակը։ Լեհաստանի Հայոց՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ քաղաքական միաբանութիւնն եւթեւտասներորդ դարուն մէջերն եղաւ։ Նոյն դարուն սկիզբը՝ Մելքիսեդեկ Էջմիածնի ուղղափառ կաթուղիկոսը Պարսից թագաւորին պէտք եղած հարկը չկարենալով վճարել, Եւրոպա փախաւ։ Յամի 1625ին Լէոպոլիս եկած ատեն, նոյն քաղաքին Մեսրոպ արքեպիսկոպոսը մեռած ըլլալով՝ ինք սկսաւ իւր թեմը կառավարել, եւ ձեռնադրած ամէն եպիսկոպոսներուն կաթուղիկէ ուղղափառ հաւատոյ դաւանութիւն ընել կու տար։ Ասոր համար ժողովուրդը՝ որ մեծաւ մասամբ դեռ հերձուածող էր, իրեն հետ թշնամացաւ, մանաւանդ երբ որ իրենց կամքին դէմ Նիկողայոս Թորոսեան անունով մէկը Լէոպոլսոյ արքեպիսկոպոս ձեռնադրեց (1626)։ Մելքիսեդեկ՝ կամ կաթուղիկոսական աթոռը դառնալու սաստիկ բաղձանքէն կամ իրեն դէմ գրգռուած ժողովրդեան վախէն ստիպուած, Լէոպոլսէն գաղտուկ ելաւ գնաց եւ Կամինիեց հասնելով հոն վախճանեցաւ (1627)։ Նիկողայոս՝ որ ժողովուրդը զինքը չընդունելուն համար մէկտեղ գացած էր, Մելքիսեդեկին յորդորելովը՝ նզովից կոնդակով մը Լէոպոլիս դարձաւ, եւ ժողովրդեան մէկ մասը զինքն ընդունեցաւ։ Բայց իրեն հակառակորդ հերձուածող կուսակցութիւնը, գլխաւորաբար Հայաստանէն եկած նուիրակներէն գրգռուած, սաստիկ կը հակառակէր Նիկողայոսին արքեպիսկոպոս ձեռնադրուելուն եւ Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանելուն։ Թորոսեան՝ ուղղափառ հաւատոյ դաւանութիւն ըրաւ նախ Լէոպոլսոյ լատին արքեպիսկոպոսին եւ քիչ մ'ետքը Քահանայապետին նուիրակին առջեւը, եւ Յիսուսեաններէն ալ պաշտպանութիւն գտնելով, նոյն իսկ Լեհաց Սիկիզմունտոս թագաւորին աչքը մտաւ, որ զինքը Լէոպոլսոյ արքեպիսկոպոս ճանչցաւ (1629)։ Ասոր վրայ տէրութիւնը Նիկողայոսի հակառակորդ կողման, որ եկեղեցիները գոցած

զինքը մերժած էր, հրամայեց որ եկեղեցիները բանան եւ ամէն բան իրեն ձեռքը յանձնեն: Եւ երբոր անոնք յանձն չառին՝ ուզածը բռնի կատարել տուաւ: Ասոր վրայ Նիկողայոսի հակառակորդները, որ ամէն եղածներուն դէմ Մովսէս կաթուղիկոսին բողոքեցին, եւ իրեն վրայ ամբաստանութիւն գրեցին որ չէ թէ միայն Հռոմայ եկեղեցւոյ յարեալ է, այլ նաեւ եկեղեցւոյ գանձարանէն զանազան թանկագին բաներ իրեն կը սեփհականէ: Անկէ զատ նաեւ Թորոսեանին այլեւայլ անգամներ ըրած հաւատոյ դաւանութեան թղթերն Մովսէս կաթուղիկոսին խաւրեցին: Մովսէս՝ որ ուղղափառամիտ էր եւ Թորոսեանին ըրածներուն հաւան, Քահանայապետին ու Լեհաց թագաւորին թուղթ գրեց, եւ Լէոպոլիս պատգամաւոր խաւրեց՝ ժողովուրդն իր եպիսկոպոսին հետ հաշտեցընելու համար: Թորոսեանին հակառակորդներն Մովսէսին մահուանէն ետքն իրեն յաջորդ Փիլիպպոս կաթուղիկոսին ալ եղած բաներուն վրայ տեղեկութիւն տուին, որ Լեհաց թագաւորին աղաչանաց, իսկ ժողովրդեան մխիթարական թուղթ մը գրեց: Այս միջոցիս Թորոսեան Հռոմ երթալով, Ուրբանոս Ը. Քահանայապետէն սիրով ընդունուեցաւ, որ զինքը Լէոպոլսոյ արքեպիսկոպոս անուանեց (1632), եւ եկեղեցւոյ կանոնաց սահմանած ժամանակէն յառաջ ձեռնադրուելուն անօրինումը տուաւ: Նոյն Քահանայապետը նաեւ որպէս զի ժողովուրդը Թորոսեանին հետ հաշտեցընէ, Կոստանդնուպոլիս քարոզութեան պաշտօն կատարող Բիրոմալլի հայագէտ Դոմինիկեան կրօնաւորը Լէոպոլիս խաւրեց: Բայց այս հաշտութեան փորձն ալ օգուտ մը չունեցաւ եւ Բիրոմալլի Հռոմ գնաց, որպէս զի իրաց վիճակին վրայ Քահանայապետին տեղեկութիւն տայ: Ուրբանոս Ը. Քահանայապետն երկրորդ անգամ զինքը Լեհաստան խաւրեց առանձին թղթով մը առ Սիկիսմունդոս թագաւորը, որուն մէջ Քահանայապետը թագաւորին կ՚աղաչէ, որ Թորոսեանին օգնէ. ուրիշ նամակ մ՚ալ Փիլիպպոս կաթուղիկոսին խաւրեց: Ասոր մէջ Քահանայապետը Փիլիպպոս կաթուղիկոսն ընդհանրապէս Հռոմայ եկեղեցւոյ միութեան կը

յորդորէ առանց Լէոպոլսոյ Հայոց վրայ մասնաւոր բան մը յիշելու։ Նոյնպէս որոշ տեղեկութիւններ չունինք թէ Փիլիպպոս կաթողիկոսը՝ Լէոպոլսեցւոց համար ինչ գրած է, միայն այսչափս ստոյգ է, որ կաթողիկոսը նոյն Բիրամալըի նուիրակին ձեռքով Քահանայապետին հաւատոյ դաւանութեան թուղթ մը խաւրեց, ինչպէս ետքէն պիտ՝ որ տեսնենք Էջմիածնի կաթողիկոսաց պատմութեան մէջ։ Իսկ Լեհաստանի Հայոց խնդիրը դեռ մինչեւ 1652 անորոշ վիճակի մէջ էր։ Նոյն տարին Փիլիպպոս կաթողիկոսը Կոստանդնուպոլիս երթալով, Թորոսեանն ալ հոն գնաց եւ իրմէ հաստատութեան կոնդակ առաւ, ինչպէս կ՚երեւայ այն պայմանէն՝ որ անկէ ետքն իր յաջորդներն Էջմիածնի կաթողիկոսներէն ձեռնադրութիւն կամ հաստատութիւն։ Նիկողայոս Լէոպոլիս դարձած ատեն՝ հոն գտաւ Յովհաննէս Արղնցի վարդապետը, զորն որ Փիլիպպոս կաթողիկոսը խաւրած էր, ժողովուրդը Թորոսեանին հետ հաշտեցընելու համար։ Իրօք ալ սոր միջնորդութեամբը ժողովուրդը զՆիկողայոս իրեն եպիսկոպոս ճանչցաւ, որով եւ Հռոմայ եկեղեցւոյ հպատակութեան մէջ մտաւ։ Թորոսեան ժողովուրդն իրեն հնազանդեցընելէն ետեւ, փոյթ տարաւ զանոնք ամէն կերպով բարեկարգելու։ Քահանայապետին նուիրակին խորհրդովը տոնից նկատմամբ առ ժամանակ մի աչք գոցեց, բայց պատարագի բաժակին մէջ քիչ մը ջուր չխառնելը խստիւ արգելեց։ Լեհաստանի Հայոց միաբանութիւնը կատարելապէս գլուխ հանելու եւ իրենց մէջ գիտութիւն տարածելու համար, Աղեքսանդր Է. Քահանայապետէն խնդրեց, որ Հայ տղոց կրթութեան համար Լէոպոլիս վարժարան մը կանգնուի, որ 1662ին կատարուեցաւ։ Այս վարժարանին վարչութիւնը Հռոմէն խաւրուած Թէատինեան կրօնաւորաց յանձնուեցաւ, որոնց մէջէն Լեհաստանի Հայոց դարձին գլխաւոր արդիւնաւորներն եղան Հ. Բիտու Գաղղիացին, եւ Հ. Կղեմէս Կալանոս, որ վերոյիշեալ վարժարանին առաջին կարգավարն եղաւ։ Այս վարժարանին աշկերտներէն մէկը՝ Վարդան Յունանեան, որ Հռոմ Ուրբանեան դպրոցն ալ ուսում

տրուած էր, Ս. Ժողովոյն կողմանէ Թորոսեանին օգնական եպիսկոպոս դրուեցաւ: Ասիկայ Թորոսեանին մահուանէն ետքը (1686), արքեպիսկոպոսական աթոռը յաջորդելով, անոր սկսած միաբանութեան գործքը կատարեալ գլուխ տարաւ: Յամի 1689ին Հոկտեմբեր 10ին գաւառական ժողով մը գումարեց, որուն գահերեց նստաւ Քահանայապետին կանդելմի նուիրակը: Այս ժողովքիս մէջ՝ Վարդան Յունանեան արքեպիսկոպոսը բոլոր ժողովքդովին ինք զինքն Էջմիածնի կաթուղիկոսէն անկախ եւ Հռոմայ եկեղեցւոյ հետ միացեալ հրատարակեց:

Լեհաստանի Հայք Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանելէն ետեւ, Մոլտաւիայի ու Վալաքիայի Հայք Լէոպոլսոյ արքեպիսկոպոսաց իրաւաբանութեան տակէն ելան, եւ Էջմիածնի կաթուղիկոսաց հետ միացեալ մնացին: Ուստի եւ անկէ ետքը՝ Լէոպոլսոյ ուղղափառ արքեպիսկոպոսաց իրաւասութիւնը կը տարածուէր միայն Լեհաստան, Խրիմ ու Աժտէրխանի կողմերը գտնուող կաթուղիկէ Հայոց վրայ: Երբոր 1795ին Լեհաստան երրորդ անգամ բաժնուեցաւ, Լէոպոլսոյ արքեպիսկոպոսները թէ՛ տեղւոյն հեռաւորութեան թէ ուրիշ արգելքներու պատճառաւ Ռուսի տակ մնացող Լեհաստանի Հայոց վրայ իրաւաբանութիւննին չկարենալով բանեցրնել, իրենց իշխանութիւնը միայն Կալիցիայի Հայոց վրայ ամփոփուեցաւ*:

Պիոս Է. Քահանայապետը 1819ին համառօտագրով մը Աւստրիայի կայսեր իրաւունք տուաւ Լեմպէրկի կղերէն առաջարկուած երեք ընտրելացուներէն մէկն արքեպիսկոպոս անուանելու: — Լեհաստանի ուղղափառ Հայք 1780ին մօտերը Յուլիական տոմարը ձգելով Գրիգորեանն սկսան գործածել: Հաւատոյ տարածման Ս. Ժողովոյն 1669ին հանած վճռագրոյն զօրութեամբը, Հայոց եկեղեցւոյ ծէսն ու արարողութիւնները քանի մը փոփոխութիւններով պահած են: Պատարագը, խորհրդոց մատակարարութիւնն ու ժամերգութիւնը հայերէն կ'ըլլան:

* Կալիցիայի ուղղափառ Հայոց թիւը 5000ի մօտ է, որոնք կը բնակին Լէոպոլիս (Լեմպերկ), Պժեժան, Լըչէց, Ստանիսլաւ, Գուդի, Դիսմենից, Հոռոտենկա, Սնիադին եւ այլ քաղաքները:

### Բ. Մոլտաւիոյ ու Վալաքիոյ Հայք։

Մոլտաւիայի ու Վալաքիայի Հայք՝ ըստ մասին բուն Հայաստանէն ըստ մասին Խրիմէն եկած են։ Ասոնք քանի որ Լէոպոլսոյ արքեպիսկոպոսները Հռոմայ եկեղեցւոյ հետ միացեալ չէին, անոնց իրաւասութեան տակն էին։ Բայց եւթնեւտասներորդ դարուն միաբանութենէն ետքը, Լէոպոլսոյ աթոռէն բաժնուեցան, եւ Էջմիածնի կաթողիկոսաց հպատակ մնացին։ Մոլտաւիոյ ու Վալաքիայի Էջմիածնական Հայք՝ ժամանակ ժամանակ շատ մեծ նեղութիւններ կրեցին տեղացի իշխաններէն, որոնք զիրենք իբրեւ հերետիկոս կը չարչարէին ու կը հալածէին, եւ յունութեան կրօնն ընդունելու կը ստիպէին, որ պատճառաւ անոնց մէկ մասը (շուրջ 1668) Տրանսիլվանիա անցաւ։ Ութեւտասներորդ դարուն սկիզբը՝ Վարդան Յովհաննէսեանին օգնական տրուած Աստուածատուր Ներսիսեան Տրայիանուպոլսոյ եպիսկոպոսը, Ս. Ժողովոյն յանձնարարութեամբը Վալաքիայի Գոնդումիր իշխանին գնաց նոյն տեղւոյն չմիացեալ Հայերը Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանելու համար, բայց բան մը չկրցաւ ընել։ Նոյն դարուն երկրորդ կէսին սկիզբը (1757ին) Հռոմ. Ուրբանեան դպրոցը կրթուած Յովհաննէս Յակոբեան Տրանսիլվանիացի քահանան Հաւատոյ Տարածման Ս. Ժողովէն առաքելութեամբ ան կողմերը խաւրուեցաւ, որ չմիացեալ Հայերէն շատ նեղութիւն կրելով 1791ին լի արդեամբք վախճանեցաւ։ Այսպէս մինչեւ հիմայ Դանուբեան իշխանութեանց մէջ գտնուող Էջմիածնական Հայք*, Կոստանդնուպոլսոյ Հայոց պատրիարքին իշխանութեան տակն են, որ ամէն տարի եպիսկոպոս մը կը խաւրէ ան կողմերուն եկեղեցիկոսները ձեռնադրելու եւ անոնց հոգեւոր եւ ուսումնական պիտոյքը հոգ տանելու համար։

* Ասոնց թիւը 16,000 կը համարուի, որոնք գլխաւորապէս կը բնակին Պուքրէշ, Ֆօգշան, Եաշ, Ռոման, Հօթին, Պոդոշան եւ Կալաց։

### Գ. Տրանսիլվանիայի ու Մաճառաստանի Հայք։

Եօթնեւտասներորդ դարուն (1668) Մոլտաւիա ելած խռովութեանց եւ Տաճկաց ու Լեհաց մէջ բացուած պատերազմին պատճառաւ, Մոլտաւիայի Հայերէն շատերը Տրանսիլվանիայի լերանց վրայ ապաւինեցան։ Հոն քանի մը տարի իրենց երկիրը դառնալու յուսով պարապ տեղ սպասելէն ետեւ, նոյն ատեններուն Տրանսիլվանիայի Միքայէլ Ա. Ապաֆի իշխանին դիմեցին եւ իրմէ հոն բնակելու հրաման խնդրեցին, զոր նոյն իշխանն իրենց շնորհեց։ Այսպէս Մոլտաւիայի Հայոց մէկ մասը՝ 1670ին Տրանսիլվանիա անցաւ, եւ հոն Ճուրճով (Սէնդ Միքլոշ), Զիլդ ու Պիստրից քաղաքները բնակեցան։ Քիչ ժամանակուան մէջ՝ Տրանսիլվանիայի իշխաններէն ու Աւստրիայի կայսրներէն զանազան արտօնութիւններ առին, եւ Լէոպոլտոս կայսեր հրամանաւը Կերլա քաղաքը շինեցին, նոյնպէս Եղիսաբեթուպոլիս (Պաշպալով) քաղաքն իրենց բնակութեան համար առին, զորոնք շքեղ եկեղեցիներով զարդարեցին։ Տրանսիլվանիայի Հայք՝ Մոլտաւիայէն ելած՝ ըլլալով, հերձուածող էին. իրենց Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանութիւնն եօթնեւտասներորդ դարուն վերջերն եղաւ։ Իրենց մէջէն Մոլտաւիա ծնած հայազգի մը՝ Աւքսենտիոս Վերզիրեսքի անուն, տասնուչորս տարի (1670—1684) Հռոմ կրօնական ու արտաքին ուսմանց մէջ կրթուելէն եւ քահանայ ձեռնադրուելէն ետքը, առաքելական քարոզչի անուամբ իր հայրենիքը դարձաւ եւ հոնտեղուան Մինաս հերձուածող եպիսկոպոսը Հռոմայ եկեղեցւոյ գոգը դարձուց։ Մինաս՝ Աւքսենտիոսին հետ Լեհաստան երթալով, առաքելական նուիրակ Բալլաւիչինի կարդինալին առջեւն ուղղափառ հաւատոյ դաւանութիւն տուաւ (1686), եւ իր աթոռը Տրանսիլվանիա դառնալով, նոյն տարին վախճանեցաւ։ Մինաս եպիսկոպոսին մահուանէն ետքը, Վարդան Յունանեան Լէոպոլսոյ արքեպիսկոպոսը 1687ին գրած թղթով մը զԱւքսենտիոս Վերզիրեսքին Տրանսիլվանիայի Հայոց եպիսկոպոսի փոխանորդ եւ տեսուչ դրաւ, մինչեւ որ Առաքելա-

կան Գահն եպիսկոպոս մ'անուանէ։ Քիչ մը ետքն Ինովկենտիոս ԺԲ. Քահանայապետը զԱւքսենտիոս եպիսկոպոս անուանեց, որ Լեմպէրկ երթալով՝ Վարդան Յունանեան արքեպիսկոպոսէն ձեռնադրութիւնն ընդունեցաւ (1691)։ Այս դէպքն ինչպէս նաեւ ուրիշ մէկ քանի ապացոյցեր կը վկայեն, որ Դրանսիլվանիայի Հայք՝ Լեմպէրկի հայ արքեպիսկոպոսաց իրաւաբանութեան տակն էին։ Աւքսենտիոս Դրանսիլվանիա գանալով՝ աթոռը Պիսթրից հաստատեց, եւ զարմանալի անձնանուիրութեամբ հռոմեղուան Հայոց դարձին սկսաւ աշխատիլ, եւ զանոնք ամբողջ Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանեց։ Իր հօտին հոգեւոր ու մարմնաւոր օգուտը յառաջ տանելու համար երկու անգամ Վիէննա գնաց, ուր 1715ին վախճանեցաւ, թունաւորուած ըլլալու կասկած թող տալով։ Իր յիշատակը բոլոր Դրանսիլվանիայի Հայոց շատ քաղցր է, եւ անոնց սրտքին մէջ անջինջ տպաւորուած։ Աւքսենտիոսի մահուանէն ետքն եպիսկոպոսական աթոռը դատարկանալով Դրանսիլվանիայի ուղղափառ Հայք՝ հռոմեղուան լատին եպիսկոպոսին իրաւաբանութեան ներքեւ մնացին։ Բայց իրենց ազգային հայածէս քահանաներն ունէին, որոնք Լեմպէրկ կամ Հռոմ Ուրբանեան դըպրոցն իրենց կրթութիւնն ու ձեռնադրութիւնը կ'ընդունէին։ Առաքելական Գահն ալ ժամանակ ժամանակ այցելուներ կը խաւրէր, որոնք ուղղափառ հաւատոյ անարատ պահպանութեան վրայ կը հսկէին։ Ասոնց մէջ շատ անուանի է Ստեփանոս Լեհացի Ռոշքեան, որ նախ Լեմպէրկ Թէատինեան կրօնաւորաց կառավարութեան տակ եղած վարժարանն եւ ետքը Հռոմ Ուրբանեան դպրոցը կրթուած էր։ Ասիկայ 1729ին մօտերը Դրանսիլվանիա եկաւ, եւ հռոմեղաց եկեղեցիներուն բարեկարգութեանը մեծ գործունէութիւն ցուցուց։

Դրանսիլվանիայի ուղղափառ Հայք 1758ին իրենց ուզելովը Յուլիական տոմարը ձգեցին եւ Գրիգորեանն սկսան գործածել։ Եկեղեցական պաշտամանց ու արարողութեանց մէջ ազգային լեզուն ու ծէսը քիչ շատ փոփոխութեամբ պահած են։ Պատարագը մեծաւ

մասամբ Հայոց պատարագին հետ նոյն է. միայն մէկ քանի բան Լատինացւոց (Դոմինիկեանց) պատարագամատուցէն առած են։ Իսկ խորհրդոց մատակարարութեան համար գործածած ծիսարանը, Սանփանոս Լեհացւոյն՝ Կալկցիայի Հայոց համար շինած ծիսարանին հետ նոյն է։ — Անտարակոյս է որ Դրանսիլվանիայի Հայոց թէ ազգայնութիւնն եւ թէ լեզուն պահելու եւ յառաջացընելու միակ միջոցն է, ազգային եպիսկոպոս մ'ունենալը, որուն քանի մը տարիէ վեր շատ եռեւէ ինկած են ի մասնաւորի Կերլայի ու Եղիսաբեթուպոլսոյ հայ հասարակութիւնները, բայց իրենց ջանից ինչ հետեւութիւն ունենալիքը դեռ չի գիտցուիր։ Դրանսիլվանիայի ուղղափառ Հայք հիմայ ունին չորս ժողովրդապետութիւն միայն, որ են Կերլա, Եղիսաբեթուպոլիս (Պաշպալով), Ճուրճով ու Սեբվիզ, որոնց վերաբերող հայածէս ուղղափառ ժողովրդեան թիւը 6—8000ի կը հասնի*։ Մաճառաստանի Նայսաց քաղաքն ալ Հայոց ժողովրդապետութիւն մը կայ, որ 1512ին Պելկրատէն դէպ ի ան կողմերն եկող Հայերէն հաստատուած է։ Այս ժողովրդապետութիւնը մինչեւ 1848 Վեննաական Մխիթարեան Հարց ձեռքն էր, բայց նոյն տարին Մաճառաստանի յեղափոխութեան ժամանակ թէ եկեղեցին ու թէ վանատունն այրելով՝ քանի մը տարի դատարկ մնաց։ Վերջապէս 1856ին Հաւատոյ Տարածման Ս. Ժողովոյն հրամանաւը Վեննական Մխիթարեանք հոն իրենցմէ մէկը ժողովրդապետ դրին։ — Վերոյիշեալ ժողովրդապետութիւններէն զատ, Վենետիկի Մեծարգոյ Մխիթարեան Միաբանութիւնը, Պաշպալով քաղաքը վանատուն մ'ունի։

## Դ. Պուքովինայի Հայք։

Յամի 1776ին Պուգովինա գաւառը՝ Տաճիկներէն Աւստրիացւոց ձեռքն անցնելով, Յովսէփ Բ. կայսեր առաջին հոգն եղաւ Մոլտաւիայէն հոն եկած

* Իսկ Դրանսիլվանիայի ու Մաճառաստանի մէջ ցրուած բովանդակ կաթողիկեայ Հայոց թիւը 16—18000 կը սեպուի։

չմիացեալ Հայերը Դրանսիլվանիայի Հայոց պէս Հռո-մայ եկեղեցւոյ հետ միաբանել. բայց ըրած ամէն ջան-քերն ակներեւ արդիւնք մը չունեցան։ Քանի մը տարի ետքը (1824ին) նոյն վախճանաւ Պուգովինա խու-րուեցաւ Վիէննայէն Քարաչոնեի քահանան, եւ քիչ մը վերջն ան կողմերը գնաց Ցովսէփ Մոշորոյ քահա-նան. բայց երկուքն ալ առանց բան մ'ընելու ետ դարձան։ Նոյնպէս առանց հետեւութեան մնացին Գեր. Ստեփանեան Լեմպէրկի հայ արքեպիսկոպոսին ջանքերը, որ Պուգովինայի ուղղափառ Հայոց եկեղե-ցիներուն այցելութիւն ըրած ատեն, անձամբ չմիացե-լոց դարձին սկսաւ պարապիլ*։

### ե. Խրըմի եւ Ռուսաստանի Հայք։

Բագրատունի թագաւորաց Անի մայրաքաղաքը վերջին անգամ կործանելէն ետքը (1239), բնակչաց մեծ մասը Թաթարստան անցան, եւ հոն Վոլկա գետին քովերն ու Աժտերխանի կողմերը բնակութիւննին հաստատեցին։ Բայց ան տեղուան բարբարոս ազգե-րէն շատ նեղութիւն կրելով՝ Ճենովացւոց դիմեցին, որոնք աս ատենները Խրըմի Քէֆֆէ կամ Թէոդոսիա մայրաքաղաքին, եւ ուրիշ քանի մը ամուր տեղերուն տիրած էին։ Ճենովացւոց իշխանին հետ դաշինք գնե-լէն ետեւ, զինու զօրութեամբ իրենց ճամբայ բացին, եւ եկան Խրըմի Թէոդոսիա մայրաքաղաքն եւ ուրիշ քանի մը քաղաքներ բնակեցան։ Աս գաղթականներն իրենց հայրենիքէն գալու ատեն, հարկաւ իրենց քա-նի մը մոլար գաղափարներն ալ մէկտեղ բերած էին։ Ասոնց մէկ մասը՝ ի մասնաւորի Քէֆֆէ քաղքին բնակիչները՝ 1318ին Հռոմայ եկեղեցւոյ հետ միացան, նոյն քաղքին լատին արքեպիսկոպոսին ուղղափառ հաւատոյ դաւանութիւն տալով։ Այս միաբանու-թիւնը Ցովհաննէս ԻԲ. Քահանայապետն առանձին կոնդակաւ ընդունեցաւ եւ հաստատեց։ Խրըմի Հայք՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ միացեալ ըլլալուն առանձին

* Պուգովինայի Հայոց թիւը 3000 կը սեպուի, որոնց գրեթէ կէսն ուղ-ղափառ է, եւ մեծաւ մասամբ Կալիցիայէն հոն եկած։

ցոյց մը տուին Փլորենտիայի ժողովոյն ատեն։ Երբոր Եւգինէոս Դ. Քահանայապետը Հայոց Կոստանդին կաթուղիկոսին նոյն ժողովը գալու հրաւէր խաւրեց, Կոստանդին՝ Հայաստանի շփոթութեանց պատճառաւ մարդ խաւրել չկարենալով, իբրեւ կաթուղիկոսի փոխանորդ Թէոդոսիա նստող Սարգիս վարդապետին գրեց, որ քանի մը ուրիշ անձինքներով Փլորենտիա երթայ, իր ու բոլոր ազգին կողմանէ Հայոց եկեղեցին Հռոմայ եկեղեցւոյն հետ միաբանելու համար։ Միաբանութիւնը յաջողութեամբ գլուխ ելլելէն ետեւ, Եւգինէոս Քահանայապետը հրեշտակներուն բերնէն լսելով, որ Թէոդոսիայի լատին եպիսկոպոսը՝ Հայոց եպիսկոպոսին թագ դնելու եւ եկեղեցական հանդէսները հրապարակաւ կատարելու հրաման չի տար (ըստ որում իր եպիսկոպոսանիստ քաղաքն է), թուղթ մը գրեց, որով կը պատուիրէր որ Թէոդոսիայի Հայ եպիսկոպոսը թագ դնելու եւ եկեղեցական հանդէսները հրապարակաւ կատարելու իշխանութիւն ունենայ։

Ամէն տարակուսէ ազատ է, որ Խրըմցի Հայոց մէկ մասը Հռոմայ եկեղեցւոյ այս միաբանութեան մէջ յարատեւեց։ Սակայն հնդետասաներորդ դարուն սկիզբները՝ Թաթարք Խրըմի մէկ մասին տիրելով, քիչ մ'ետքը (1475ին) Տաճիկներուն օգնականութեամբը Թէոդոսիա մայրաքաղաքն ալ առին, որով Հայոց մեծ բազմութիւն մը անկէ ելլելու եւ Լեհաստան ու Մոլտաւիա անցնելու ստիպուեցան։ Խրըմ մնացող սակաւաւոր մասը՝ 1780ին Ռուսաց Կատարինէ Բ. կայսրուհւոյն հրաւիրելովը Ռուսաստան գաղթեցին, եւ Տոն գետին քովերը Նոր Նախիջեւան ու Կատարինոսլաւ քաղաքները շինեցին։ Այս վերջին քաղքին բնակիչները, որ ըստ մեծի մասին կաթուղիկեայ Հայք էին, երբոր 1790ին Խրըմ Ռուսաց ձեռքն անցաւ, նորէն իրենց հայրենիքը դարձան եւ Խարասու-Բազար ու Խրըմի քանի մ'ուրիշ քաղաքները բնակեցան։ Ասոնցմէ մնացած է մինչեւ ցայսօր նոյն ցամաքակղղզւոյն վրայ հռոմէական ուղղափառ Հայոց սակաւաթիւ հասարակութիւն մը, որոնց հոգեւոր առաջնորդութիւնը 1822էն վեր Վենետիկի Մխիթարեան Հարց

ձեռքն է, որոնք Խարասու-Բազար վանատուն մ՚ունին գեղեցիկ եկեղեցւով ու դպրոցով։

Ռուսաստանի Հայոց բազմանալուն պատճառ եղան, Ռուսաց՝ Պարսից (1827) ու Օսմանեանց (1829) դէմ բրած պատերազմները։ Ռուսք երկու պատերազմներուն մէջ ալ յաջողութիւն գտնելով, Հայաստանի մէկ քանի գաւառներուն տիրեցին։ Բայց Ռուսաց բուն դիտումն էր Էջմիածին առնուլ, որպէս զի Էջմիածնականաց հոգեւոր գլուխն իրենց իշխանութեան տակ ունենալով, Պարսկաստանի ու Տաճկաստանի Էջմիածնական Հայոց վրայ իրենց ազդեցութիւնը հաստատեն։ Անոր համար Նիկողայոս կայսրը թէ Պարսից ու թէ Օսմանեանց հետ դրած դաշանց մէջ, իբրեւ գլխաւոր պայման դրաւ, որ երկու տէրութեանց ալ քրիստոնեայ հպատակներն ազատութիւն ունենան ուզած ատեննին օտար երկիր գաղթելու, որն որ հետեւեալ տարին (1830) թէ Պարսկաստանէն ու թէ Տաճկաստանէն եկած բազմաթիւ գաղթականներով յուսացածէն աւելի կատարուեցաւ։ Էջմիածնական Հայք՝ իսկզբան Ռուսաստանի վրայ քիչ մը անվստահութիւն ունեցան, վախնալով որ զիրենք ռուսական դաւանանքն ընդունելու կը ստիպէ։ Բայց Ռուսաստան՝ որ իր եկեղեցիէն տարբեր կրօններուն հետ այնչափ խնայելով չի վարուիր, Էջմիածնականաց նկատմամբ իսկզբան մեծ խոհեմութիւն ու թոյլտուութիւն բանեցուց, որպէս զի Ռուսաստանէ դուրս գտնուող Էջմիածնական Հայերը, Էջմիածնի կաթուղիկոսին իշխանութեանը տակ ժողովէ, դիտում մը՝ որուն մինչեւ ցայսօր զանազան կերպերով հասնելու կը ջանայ նոյն տէրութիւնը։ Յամի 1836ին կայսերական հրովարտակաւ Հայոց եկեղեցին, իբրեւ տէրութենէ ճանչցուած եկեղեցի հրատարակուեցաւ. սակայն միշտ Ռուսաց դաւանանքին ամէն արտօնութիւնները չունի, եւ եկեղեցական կառավարութիւնն ու մատակարարութիւնն ալ, տէրութեան զանազան օրէնքներով սահմանաւորուած է։ Երկրորդ հրովարտակաւ մ՚ալ (1842) կաթուղիկոսին կանոնական ընտրութեան ազատութիւն տրուեցաւ, ընտրութեան իրաւունքը միայն Էջմիածին

եղող սինհոդոսին վերապահելով։ Այս սինհոդոսը՝ որուն 1843էն վեր Պարսկաստանի ու Տաճկաստանի Էջմիածնական Հայք ալ երեսփոխան կը խաւրեն, կաթուղիկոսը կ'ընտրէ, զորն որ եաքէն Ռուսի կայսրը կը հաստատէ եթէ կ'ուզէ։ — Շատ հաւանական է՝ որ բոլոր տէրութեան մէջ գտնուած դաւանանքները ռուսական դաւանանքին դարձնելու գաղափարը, ինչպէս մէկալ կրօններուն նոյնպէս Էջմիածնական Հայոց նկատմամբ ալ ժամանակաւ գործադրուի։

Ռուսաստանի Հայոց թիւը 500.000ը կ'անցնի, որոնց հազիւ 25.000 ուղղափառ հռոմէական են։ Ասոնք Խրըմէն զատ, կը գտնուին Լեհաստան, Գազան եւ Ուքրանիա գաւառները։ Լեհաստանի վերջին բաժանումէն եաքը (1795), Պիոս Է. Քահանայապետը 1809ին Աղեքսանդր Ա. Ռուսաց կայսեր հաճութեամբն ուղղափառ Հայոց համար Մոյիլով առանձին եպիսկոպոսական աթոռ մը հաստատեց, եւ առաջին եպիսկոպոս անուանեց Յովսէփ Քրիստոփորոփիչ քահանան։ Բայց իր մահուանէն եաքը՝ աթոռը դատարկ մնալով, Ռուսաստանի ուղղափառ Հայք Բեդերսպուրկ նստող լատին առաքելական նուիրակին իշխանութեան տակը մնան։ Յամի 1847 |Ռուսաստանի ուղղափառաց վիճակը լաւացընելու համար Պիոս Թ. Քահանայապետին եւ Նիկողայոս Ա. կայսեր մէջ դրուած եկեղեցական միաբանագրոյն մէջ, կաթուղիկեայ Հայոց համար ալ Կամինիէց ու Քերսոն երկու եպիսկոպոսական աթոռներ դրուեցան։ Որոշուեցաւ նաեւ որ մինչեւ աս աթոռները Հայոց առանձին եպիսկոպոս դրուի, Կամինիէցի ու Խրըմի եպիսկոպոսներն իրենց կղերանոցներուն մէջ կառավարութեան ծախքովը հայ կղերիկոսներ առնուն, եւ ուղղափառ հայ քահանայի մը ձեռքով կրթել տան։ Բայց ինչպէս բոլոր Ռուսաստանի ուղղափառաց, նոյնպէս կաթուղիկէ Հայոց համար եղած այս որոշմունքներն առանց գործադրութեան մնացին, որով Ռուսի Լեհաստանի ուղղափառ Հայոց վիճակը շատ դժուարացաւ։

Շատ աւելի վտանգաւոր է Գազան եւ Ուքրանիա գաւառները գտնուող ուղղափառ Հայոց վիճակը։ Ա-

ոնք ըստ մեծի մասին Տաճկաստանէն Ռուսաստան անցան (1830), եւ Թիֆլիզ, Լօրի, Ախըլցխա եւ շըրջակայ գեղերը բնակեցան։ Անոնք ան յուսով Ռուսաստան անցան, որ հոն իրենց կրած նեղութեանցը՝ քրիստոնեայ տէրութենէն մխիթարութիւն ու պաշտպանութիւն կը գտնեն, եւ իրենց կրօնական պաշտամունքն աւելի ազատութեամբ կրնան կատարել։ Բայց թէ իրենց յոյսն որչափ հիմ ունի եղեր հիմայ գըտնուած խեղճ վիճակներնէն կրնայ իմացուիլ։ Ստոյգ է տէրութիւնը նոյն միջոցին գաղթականաց հետ եկած քահանաներն ընդունեցաւ, սակայն ետքէն անոնց՝ Տաճկի տէրութեան տակ եղող առաջնորդներուն հետ ամէն հաղորդութիւն արգելեց։ Նոյնպէս օտար քահանայից անկէ ետքը տէրութեան մէջ մտնելը թող չտուաւ։ Հիմայ անոնց հոգեւոր պիտոյքն տեղացի քահանայք կը հոգան, որոնք հոնտեղաց լատին եպիսկոպոսին իրաւաբանութեան տակն են։

## 99. Բ. *Արեւելեան Գաղթականք։*

### ա. Պարսկաստանի Հայք։

### *Էջմիածնի կաթողիկոսաց վիճակը՝ աս ժամանակի շրջանին մէջ (1440—1700)։*

Փլորենտիայի ժողովոյն միաբանութիւնն (տես երես 247) արդիւնական ու տեւական հետեւութիւն մը չունենալով, Հայ կաթողիկոսաց՝ Հռոմայ Քահանայապետներուն հետ ունեցած յարաբերութիւնը հընգետասաներորդ դարուն վերջին կէսէն սկսեալ կտրեցաւ, եւ ընդհանրապէս խօսելով անկէ ետքը Հայոց եկեղեցին՝ Հռոմայ աթոռոյն հպատակութեան եւ կաթողիկէ եկեղեցւոյ միութեան մէջ չէր։ Սակայն անկէ ետքն եկող կաթողիկոսաց յաջորդութեան մէջ՝ գըտնուեցան ուղղափառամիտ կաթողիկոսներ ալ, որոնք կամ այլազգիներէն կրած խիստ հարստահարութիւններէն ստիպուած եւ կամ արեւմուտքէն Հայաստան եկող քարոզիչներէն յորդորուած, Հռոմայ Քահա-

նայապետներուն հետ հպատակութեան եւ սիրոյ յարաբերութեան մէջ մնան, որ միջոցին նաեւ Հռոմայ եկեղեցւոյն հետ միաբանութեան փորձերը նորէն ձեռք առնուեցան: Այսպէս Փլորենտիայի միաբանութենէն կամ սինհոդոսէն հարիւր տարի մը ետքը (1549), Ստեփաննոս Ե. կաթուղիկոսն ուխտագնացութեան պատճառաւ Հռոմ երթալով, հոն Պաւղոս Գ. Քահանայապետին հաւատոյ միութեան վրայ խօսք բացաւ: Թէպէտ ինք շատ բաներու մէջ զիջում ընելու միտեալ էր, բայց այսպիսի մեծակշիռ գործքի մը համար ազգին կամքը հարցընել ուզելով, իր աթոռը դարձած ատեն Լեհաստան վախճանեցաւ (1551): Իր տեղակալն ու յաջորդը Միքայէլ, սկսուած միաբանութեան բանակցութիւնները յառաջ տանելու կամ ինք նորէն սկսելու միօք, Աբգար ու Աղեքսանդր պատգամաւորներն առանձին թղթով Հռոմ Պիոս Դ. Քահանայապետին խաւրեց (1563): Քահանայապետը սիրով ընդունեցաւ Հայոց պատգամաւորներն, եւ իրենցմէ Հայոց եկեղեցւոյն հաւատոյ դաւանութիւնը գրով ուզեց, զորն որ պատգամաւորները կաթուղիկոսին անուամբը տուին: Բայց թէ Քահանայապետը կաթուղիկոսին ինչ պատասխան գրեց, եւ ընդհանրապէս միաբանութեան փորձն ինչ հետեւութիւն ունեցաւ, պատմութիւնը մեզի չ'աւանդեր: Աս միայն ստոյգ է, որ այս միջոցիս եւ անկէ ետքը Հռոմայ Քահանայապետք Հայ ազգին թէ կրօնական եւ թէ քաղաքական խեղճութիւնն ու տառապանքներն իմանալով, իրենց առանձին սէր ու խնամք կը ցուցընէին, եւ զիրենք կաթուղիկէ միութեան բերելու կ'աշխատէին: Պիոս Դ. Քահանայապետը Հռոմ բնակող Հայոց առանձին եկեղեցի մը տուաւ, որպէս զի հոն եկեղեցական պաշտամունքն իրենց ազգային ծիսովը կարող ըլլան կատարել: Գրիգոր ԺԳ. Քահանայապետն ալ ուրիշ ազգաց պէս Հայ տղոց համար Հռոմ առանձին վարժարան մը ուզեց կանգնել (1584), բայց մահը վրան հասնելով՝ միտքը դրածը չկրցաւ կատարել: Սակայն իր բաղձանքն առանց հետեւութեան չմնաց: Իր յաջորդներն որոշեցին որ Ուրբանեան դպրոցը 18 Հայ տղաք առնուին;

որպէս զի հոն ողջամիտ վարդապետութեան; բարի վարուց եւ գիտութեանց մէջ կրթուելով, իրենց ազգակցացն ուղղափառ հաւատոյ քարոզիչ ըլլան։ Հայոց կաթուղիկոսները՝ Քահանայապետաց Հայ ազգին ցուցուցած աս մասնաւոր խնամքն ու սէրը տեսնելով, իրենք ալ փառուեցան ի սէր Առաքելական Գահին, եւ թուղթ կամ պատգամաւոր խաւրելով իրենց հպատակութիւնը Հռոմայ Քահանայապետաց ցուցուցին։ Եւթեւտասներորդ դարուն սկիզբը (1605ին) Դաւիթ Ե. կաթուղիկոսը հաւատոյ դաւանութեան եւ հպատակութեան թուղթ գրեց Պաւղոս Ե. Քահանայապետին։ Տասը տարի ետքը Մելքիսեդեկ կաթուղիկոսը՝ աւելի հանդիսաւոր կերպով ցուցուց իր հպատակութիւնը Հռոմայ աթոռոյն, իր հռչակաւոր քարոզիչը՝ Զաքարիա վարդապետը Պաւղոս Ե. Քահանայապետին խաւրելով։ Քահանայապետը կաթուղիկոսին առանձին թուղթ եւ մէկ քանի սահմանագրութիւններ գրելէն զատ, ոսկի խաչ մը Քրիստոսի խաչափայտին մասնկովը ընծայ խաւրեց, որուն վրայ Մելքիսեդեկ իր ուղղափառ հաւատոյ դաւանութիւնը կրկնեց Գրիգոր ԺԵ. (1622) եւ Ուրբանոս Ը. Քահանայապետներուն ալ (1623), եւ Հռոմայ եկեղեցւոյ յարեալ ու միացեալ ըլլալուն առանձին կերպով ցոյց տուաւ Լեհաստանի Հայոց դարձին ժամանակ։ Նոյն սիրոյ յարաբերութիւնը շարունակեց իր յաջորդը Մովսէս կաթուղիկոսը, որուն համար մոլեռանդն հակառակորդներէն ալ ընդդիմութիւն կրեց։ Մովսէսի յաջորդ՝ Փիլիպպոս կաթուղիկոսին ժամանակ, դարձեալ միաբանութեան վրայ բանակցութիւններ սկսան, եւ Հաւատոյ Տարածման Ս. Ժողովը հարկաւոր պայմաններուն վրայ հարցուելով, 1635ին Յունուարի 30ին հանած վճռովը Ս. Աթոռոյն պայմանները Հայոց առջեւը դրաւ։ Կ'երեւայ որ Հայք Ս. Ժողովոյն պայմաններն ընդունելու դժուարութիւն սկսան ցուցընել, որուն համար Ուրբանոս Ը. Քահանայապետը Հ. Պաւղոս Բիրոմալլի Դոմինիկեան կրօնաւորը, որ արեւելք պտըտած ու երկայն ժամանակ Էջմիածին բնակած էր, Հայաստան խաւրեց ձեռքը Փիլիպպոս կաթուղիկոսին առանձին

թուղթ մը տալով։ Փիլիպպոս օրով ընդունեցաւ Քահանայապետին նուիրակը, եւ անոր ձեռքով Իննովկենտիոս Ժ. Քահանայապետին խաւրեց (1647) կաթողիկէ հաւատոյ դաւանութիւնը քանուհինգ եպիսկոպոսաց եւ ութ վարդապետաց ստորագրութեամբ։

Սակայն այս միաբանութեան ալ տեւական չըլլալը եւ ընդհանուր նկարագիր չունենալը անկէ կ'իմացուի, որ իր անմիջական յաջորդը Յակոբ 1680ին երկու եկեղեցիներուն մէջ սիրոյ յարաբերութիւն մը հաստատելու նպատակաւ, Աղեքսանդր Է. եւ Իննովկենտիոս ԺԱ. Քահանայապետներուն թուղթ գրեց եւ Առաքել՝ Բաբիկ մականուանեալ Երզնկայ եպիսկոպոսը մէկ քանի անգամ Հռոմ խաւրեց։ Վերջապէս ուզեց ինք անձամբ Հռոմ երթալ, բայց իր եւ հակառակաթոռ Եղիազար Կլայեցւոյն մէջ ելած գժտութեան պատճառաւ արգելուելով, Կոստանդնուպոլիս Գասպար Գասպարինի Առաքելական նուիրակին առջեւը, ուղղափառ հաւատոյ դաւանութիւն տալով մեռաւ։

Անկէ աւելի մեծ հետեւութիւն մը չունեցան եւթեւտասներորդ դարուն վերջերը Յիսուսեանց ձեռքով եղած միաբանութեան փորձերը։ Յիսուսեանք 1682ին Լուդովիկոս ԺԴ. Գաղղիայի թագաւորին պաշտպանութեան տակ՝ Երեւան առաքելութիւն մը հաստատած էին։ Նոյն միջոցին կաթողիկոսական աթոռը բռնած էր Նահապետ կաթողիկոսը, որուն քով Յիսուսեանք կամաց կամաց մուտք գտնելով, իրենց խորհրդովն ու յորդորելովը 1695ին Իննովկենտիոս ԺԲ. Քահանայապետին հպատակութեան թուղթ գրեց։ Յիսուսեանք կը յուսային որ կաթողիկոսին օրինակին կը հետեւին եպիսկոպոսներէն շատերը եւ ժողովրդեան մեծ մասը. սակայն ատանկ չեղաւ։ Ինչու որ երբոր Սպահանայ Ստեփաննոս հերձուածող եպիսկոպոսն եղածը լսեց, Նահապետ կաթողիկոսին վրայ Պարսից թագաւորին զրպարտութիւն ընելով, զինքն աթոռէն ձգեց եւ ինք անոր անցաւ։ Բայց իր կաթողիկոսութիւնն երկայն չտեւեց, վասն զի քանի մը ամիս ետքը Յիսուսեանց

միջնորդութեամբը Նահապետ դարձեալ կաթուղիկոսական աթոռն ելաւ։ Այս միջոցիս կաթուղիկոսին գրած հպատակութեան թուղթն Իննովկենտիոս ԺԲ.ին ձեռքը հասած ըլլալով, Քահանայապետն Ուրբանեան դպրոցը կրթուած Խաչատուր վարդապետին ձեռքով՝ Հայոց կաթուղիկոսին մխիթարական նամակ մը ու պարգեւներ խաւրեց, որուն վրայ Նահապետ՝ Քահանայապետին շնորհակալութեան պատասխանագիր մը գրեց։ Անկէ քանի մը տարի ետքը Լեհաց Թագաւորին միջնորդութեամբն ընդհանուր միաբանութիւն մը յառաջ բերելու խորհուրդը, նոյն Թագաւորին վաղահաս մահուամբն առանց գործադրութեան մնաց։ — Ընդհանրապէս այս միջոցիս եւ աւելի ետքն Էջմիածնի կաթուղիկոսաց վիճակը շատ խեղճ էր. Պարսից Թագաւորաց եւ այլազգի իշխանաց հարստահարութեանցը տակ տրտմաքոյ կարգի կը նեղուէին. կաթուղիկոսական աթոռն ալ երկու ոտնատէրութեանց ապստամբութեանց եւ իրարու դէմ կռուող հակառակաթոռ կաթուղիկոսաց պատճառաւ, աստանդական եղած եւ անկածութեան վիճակը հասած էր։ Մանաւանդ Հայաստան՝ Օսմանեանց եւ Պարսից մէջ վերջին անգամ բաժնուելէն ետքը (1746), Էջմիածնի կաթուղիկոսաց իշխանութիւնն Օսմանեանց բաժնին մէջ մնացող Հայոց վրայ շատ նուազած եւ չափաւորուած էր, ինչպէս եւթեւտասներորդ դարուն Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան համար եղած կռիւները կը ցուցրնեն։

Պարսկաստանի Հայոց մէջ շատ նշանաւոր են Միաբանող Եղբարց ձեռքով դարձած Նախիջեւանի գաւառին եւ Նոր Ջուղայի միացեալ Հայերը, զորոնք Շահաբաս Թագաւորը 1605ին իրենց հայրենի երկրէն հանելով՝ Սպահանի քովերը բնակեցուց։ Աս գաղթականութիւնը քիչ ժամանակուան մէջ թուով եւ հարստութեամբ արտաքոյ կարգի աճեցաւ ու պայծառացաւ։ Եւթեւտասներորդ դարուն՝ իրենց ամէնէն պայծառութեան ժամանակ, Եւրոպայի կրօնաւորներէն շատերը Նոր Ջուղա վանատուններ եւ եկեղեցիներ ունէին եւ մեծ ջանքով եւ արդիւնքով անոնց դարձին կ'աշխատէին։ Յամի 1625ին նախ Կարմելեանք հոն

հաստատուեցան, որոնց ետեւէ եւեւ յաջորդեցին Թոկատն Գաբուչինք, Յիսուսեանք եւ Դոմինիկեանք։ Բայց 1722ին Աղուաններուն Պարսկաստան ըրած արշաւանքը, Նատիր Շահ Պարսից թագաւորին Հայոց հասցուցած վնասներն եւ չմիացեալ Հայոց՝ ուղղափառաց դէմ յարուցած հալածանքները, հռոմէական Հայերն ստիպեցին անկէ ելլելու եւ զանազան տեղեր ցրուելու. Նոյն իսկ վերոյիշեալ կրօնններուն քարոզիչները հարկադրեցան անկէ հեռանալ։ Այսպէս աս ծաղկեալ ուղղափառ հասարակութիւնը բոլորովին ինկաւ. հոն մնացող սակաւաթիւ հռոմէական Հայք առանց հովուի եւ առաջնորդի մնալով, ուղղափառ հաւատքը մոռցան։ Եւ թէպէտ կէս դար մ՚ետքը Հընդկաստանէն Յովսէփ անունով քահանայ մ՚եկաւ, որ ուղղափառ անունը դարձեալ մոքերնին բերաւ, բայց ասիկայ առաքելական պաշտօնին հարկաւոր եղած գիտութիւնն եւ որպիսութիւնները չունենալով, ուղղափառ անուան պատիւ ըլլալու տեղ նախատինք եղաւ։ Ասոր մահուանէն ետքը, հաւատոյ Տարածման Ս. ժողովը 1828ին Յովհաննէս Տէրտէրեան բազմարդիւն վարդապետը, իբրեւ Պարսկաստանի ուղղափառ Հայոց առաքելական պատուիրակ Նոր Ջուղա խաւրեց։ Այս մեծապատիւ անձն իր իմաստութեամբն ու խոհեմութեամբը Պարսից թագաւորին սիրելի ըլլալով, ուղղափառաց համար 1834ին պաշտպանութեան թուղթ ընդունելէն զատ, Նոր Ջուղա ճեմարան մը հաստատեց, եւ ուղղափառութեան պայծառութեան ու յառաջացման անխոնջ եւ անվաստակ աշխատեցաւ։ Երբոր 1840ին Գաղղիայի միջնորդութեամբը՝ Պարսկաստանի ուղղափառաց ազատութիւն տրուեցաւ, Լազարիստները թէ քաղդէացի եւ թէ հայ ուղղափառաց հոգեւոր առաջնորդութիւնը վրանին առին։ Վերջապէս Պիոս Թ. Քահանայապետը 1850ին Պարսկաստանի ուղղափառ Հայոց համար Սպահան առանձին եպիսկոպոսական աթոռ մը հաստատեց, Կոստանդնուպոլսոյ Նախագահական աթոռոյն առժամանակեայ իրաւաբանութեանը տակ։ Յամի 1856ին Հաւատոյ Տարածման Ս. Ժողովոյն հրամանաւը Վիէննայի Մխիթարեաններէն

երկու հոգի առաքելութեամբ Պարսկաստան խաւրուեցան։

## 100. բ. Տաճկաստանի Հայք։

### Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռն եւ հոն պատահած դէպքերը (1700—1828)։

Որչափ Էջմիածնի կաթուղիկոսական աթոռը կ'իջնար, այնչափ անդիէն ուրիշ մայրաքաղքի պատրիարքական աթոռ մը թէ ազդեցութեամբ եւ թէ հոն պատահած կրօնական դէպքերու նշանաւորութեամբ երեւելի կ'ըլլար։ Սակայն այս դէպքերը պատմելէն յառաջ, հարկ է նոյն պատրիարքական աթոռոյն ծագման վրայ քանի մը խօսք ըսել։

Հայաստանի սեպհական թագաւորութեանց կանգուն եղած ատեն, արդէն Հայք սկսած էին Յունաստան, Փոքր Ասիայի զանազան կողմերն եւ գլխաւորաբար Կոստանդնուպոլիս գաղթել։ Աս մայրաքաղքիս գաղթականաց թիւը նոր հատուածներով այնչափ աճեցաւ, որ չորեքտասաներորդ դարէն սկսեալ, ինչպէս կը համարուի, առանձին ազգային եպիսկոպոս մ'ալ ունէին*։ Սուլթան Մէհէմէտ Բ. 1453ին Կոստանդնուպոլիս առնելէն ետքը, որպէս զի Հայք Յոյներէն վար չմնան, Պուրսայի Յովակիմ եպիսկոպոսը՝ Կոստանդնուպոլսոյ պատրիարք անուանեց, եւ Փոքր Ասիա ու Յունաստան գտնուող Հայոց հոգեւոր ու աշխարհական գլուխ դրաւ։ Սակայն Կոստանդնուպոլսոյ պատրիարքներն Էջմիածնի կաթուղիկոսներէն անկախ չէին, միայն քաղաքական իրողութեանց մէջ Օսմանեան տէրութեան հպատակ եղող ազգակցաց ժամանակաւոր գլուխ եւ անոնց ամէն գործողութեանցը պատասխանատու էին։ Պատրիարքները կ'ընտրուէին Կոստանդնուպոլսոյ եւ շրջակայ գաւառներուն եկեղեցական ու աշխարհական գլխաւորներէն, իսկ հանդերձաւորութիւնք կ'ընդունէին Տաճկի Սուլթաննե-

* Այս ժողովոյն (1307) արձանագրութեանցը մէջ կը գտնենք Յովսիկ Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսը, որ թերեւս նոյն մայրաքաղաքին ըլլայ։

րէն, որուն գլխացը պատրիարքները տուրք մը կը վճարէին։ Բայց եւ այնպէս քիչ անգամ կրնար պատրիարք մը աթոռը ցմահ պահել։ Ինչու որ պատրիարքական աթոռը պաշտօնատեարց շահախնդրութեան եւ քանի մը փառասէր անձանց գահախնդրութեան խաղալիկ ըլլալով, պատրիարքներէն շատերը քիչ մը ժամանակ աթոռը նստելէն ետքը, կամ կամաւ կը ստիպուէին հրաժարիլ կամ տէրութիւնը զիրենք վար կ'առնուր, երբեմն ալ կ'աքսորէր։ Այս պատճառաւ՝ մանաւանդ եւթեւտասներորդ դարուն վերջին կէսէն սկսեալ, նոյն մայրաքաղաքին պատրիարքական աթոռը միակերպ դահակալութեան կռիւներու եւ խռովութեանց մէջ էր։ Այնպէս որ 50 տարուան միջոցի մէջ (1650—1700) 36 պատրիարք ետեւէ ետեւ իրարու յաջորդեցին, եւ անոնցմէ ոմանք մէկ քանի անգամ վար առնուեցան եւ դարձեալ ընտրուեցան։

Այս աթոռակալութեան կռիւներուն ժամանակ, նոյն մայրաքաղաքը կաթուղիկէ կամ հռոմէական Հայոց սակաւաթիւ հասարակութիւն մը կազմուած էր, որ երթալով թէ թուով եւ թէ ազդեցութեամբ կը զօրանար։ Քանի որ Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռոյն վրայ, երբեմն հերձուածողամիտ երբեմն ուղղափառ աթոռակալներ կը նստէին, եւ ժողովուրդն ալ շատ հերձուածողաց եւ քիչ ուղղափառաց խառնուրդ մըն էր, երկու հասարակութիւններն իրարու հետ դեռ եկեղեցական հաղորդութեան մէջ էին։ Բայց երբոր եւթեւտասներորդ դարուն վերջերը, նոյն պատրիարքական աթոռոյն վրայ Հռոմայ եկեղեցւոյ յայտնի հակառակորդ եւ մոլար վարդապետութեանց ջատագով պատրիարքներ եկան, երկու հասարակութեանց մէջ ալ կրօնական նիւթերու վրայ վէճ բացուելով՝ տարբերութիւններն երեւան ելան, կաթուղիկէական Հայք՝ չմիացելոց հետ ի հոգեւորս հաղորդուելէն սկսան խորշիլ, եւ միայն Մկրտութիւնը, Պսակն ու Թաղումն իրենցմէ կ'ընդունէին։ Եւ որովհետեւ Տաճկի տէրութիւնը չէր ուզեր հռոմէական Հայոց առանձին եկեղեցական նուիրապետու-

թիւն մը տալ, Բենեդիկտոս ԺԴ. Քահանայապետն անոնց հոգեւոր կառավարութիւնն եպիսկոպոսական պատուով զարդարուած հայ Առաջնորդի մը յանձնեց (1758), որ Կոստանդնուպոլսոյ լատին առաքելական տեղապահին իրաւասութեան տակն էր։ Իսկ կաթուղիկէ Հայոց հոգեւոր պիտոյքը կը հոգային Առաքելական Գահէն ժամանակ ժամանակ խաւրուած քարոզիչները, ի մասնաւորի Յիսուսեանք, որ հոն առաքելութիւն ունէին, եւ Կոստանդնուպոլսոյ մէջ ուղղափառ հայ հասարակութիւն մը կազմուելուն եւ աճելուն մեծապէս արդիւնաւոր եղած են։ Յիսուսեանց կը վերաբերէր Ղալաթիայի այն եկեղեցին, որ ցայսօր դեռ իրենց անունը վրան կը կրէ։

Ուղղափառ Հայոց՝ չմիացելոց հաղորդութենէն խորշիլը, եւ իրենց եկեղեցիները չյաճախելը, բաւական պատճառ եղաւ դիմացի թուով եւ իշխանութեամբ շատ աւելի զօրաւոր չմիացելոց կողման նախանձն ու ատելութիւնը կաթուղիկէականաց դէմ գրգռելու։ Ասկէ առիթ առեալ՝ Կոստանդնուպոլսոյ չմիացեալ պատրիարքները քաղաքական իշխանութիւնը ձեռք առնելով, սկսան իրենց ազգակից ուղղափառ եղբարքը նեղել ու հարստահարել։ Զիրենք իբրեւ եւրոպական տէրութեանց հակեալ ամբաստանելով, տէրութեան կասկածն ու ատելութիւնն իրենց դէմ գրգռելու կը ջանային։ Ուստի ատեն եղաւ, որ ուղղափառաց մահուան պատժով արգելուեցաւ լատին քարոզիչներուն ապաստանարան տալը, եւ Էջմիածնականաց եկեղեցիներէն զատ եկեղեցի երթալը։

Թէեւ Կոստանդնուպոլսոյ Էջմիածնական պատրիարքները՝ հռոմէական Հայերը կ'ատէին ու կը հարստահարէին, բայց կ'երեւայ թէ մինչեւ եւթեւտասներորդ դարուն վերջը զիրենք յայտնի հալածելու սկիզբ չէին ըրած։ Եփրեմ խռովասէր պատրիարքն եղաւ, որ առաջին անգամ բոլոր Տաճկի տէրութեան մէջ ուղղափառաց դէմ հալածանք հանեց (1700)։ Այս հալածանաց ժամանակ բազմաթիւ կաթուղիկէ Հայք ծանր բանտարգելութեան, աքսորանաց ու թիակավարութեան դատապարտուեցան։ Քանի մը տարի

եւքը (1707) Յովհաննէս պատրիարքն աւելի սաստիկ հալածանք մը հանեց, որ միջոցին Տէր Կոմիտաս քահանան գլխատուելով վկայական մահուամբ մեռաւ (1707 Նոյեմ. 5ին)։ Աստուած իր ծառային յիշատակն իր բարեխօսութեամբն ըրած անհամար հրաշքներովը մինչեւ հիմայ յարգելի ու պատկառելի ըրած է, չէ թէ միայն իր ազգակիցացն այլ նաեւ այլազգեաց առջեւ։ Անկէ ետքն ամբողջ դար մը հալածանքները տեւեցին, երբեմն սաստիկ երբեմն թեթեւ, Կոստանդնուպոլսոյ պատրիարքներուն մեղմ կամ խիստ բնաւորութեանը համաձայն*։ Սակայն աս հալածանաց ահագին մրրիկները չէ թէ միայն ուղղափառաց եռանդը չմարեցին եւ անոնց թիւը չնուազցուցին, այլ անոր հակառակ բոլոր Օսմանեան տէրութեան մէջ տարածուելու եւ աճելու պատճառ եղան։ Աս ժամանակներս էր որ աստուածային շնորհաց լուսաւորելովը, Միջագետաց Մերտին քաղքին հայ արքեպիսկոպոսն ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դարձաւ, եւ առաքելական եռանդեամբ իր հօտին կաթուղիկէ հաւատքը քարոզելով, ուղղակի Ս. Գահին իրաւաբանութեանը տակ նոյն քաղաքը հռոմէական Հայոց եպիսկոպոսական աթոռ մը հաստատեց, որ Պաղտատու փոխարքային իշխանութեան վերաբերելով, Էջմիածնական Հայոց ամէն դարանակալութիւններէն ազատ մնաց։ Նոյնպէս Ասիայի ուղղափառ Հայոց թիւն անհամեմատ կ'աճէր աս ատեններս Յիսուսեան քարոզիչներու ձեռքով, որոնք 1688էն վեր Կարին առաքելութիւն մ'ունէին, եւ հոն մեծ արդիւնքով ուղղափառութեան տարածման կ'աշխատէին**։ Եւ թէպէտ աս կողմերն ալ չմիցեալ Հայոց նախանձաւորութենէն ազատ չմնացին, սակայն եւ այնպէս իրենց բանեցուցած ամէն մի-

* Այս հալածանքները ժամանագրական կարգաւ հետեւեալներն են. Ա. Եփրեմ 1700ին. Բ. Աւետիք 1702ին եւ 1705ին. Գ. Յովհաննէս Զմիւռնացի 1707ին. Դ. Սահակ Անկցի 1712ին. Ե. Յովհաննէս Գանձակեցի 1715ին. Զ. Յովհաննէս Կոլոտ 1720ին. Է. Յակոբ Նալեան 1744ին. Ը. Զաքարիա 1780ին. Թ. Յովհաննէս Համատանցի 1781ին. Ժ. Պօղոս 1828ին։ — Վերոյիշեալ Աւետիք պատրիարքը 1705ին աթոռէն ձգուեցաւ եւ Տենեդոս կղզին աքսորուեցաւ։ Բայց անկէ փախչելով Գաղղիա գնաց, եւ Մարսիլիա քաղաքը Գափուչին կրօնաւորաց քով՝ կաթուղիկէ եկեղեցւոյ ծոցը զղջմամբ մեռաւ։

** Այս առաքելութիւնն երկու մաս ունէր. առաջինը կ'անուանուէր Ս. Գրիգոր, եւ կը բովանդակէր Դերջան, Հասանկալէ, Կարս, Պայազիտ

ազդեցութիւն ունեցող Էջմիածնական Հայոց՝ ի մասնաւորի Պէզճեան Յարութիւն Աղային գործունէութը, 1828ին սկիզբը կաթուղիկեական Հայոց դէմ խիստ հալածանք մ'ելաւ։

Նախ եւ յառաջ մէկ քանի Հռոմէական գաղթատացի սեղանաւորք բռնուեցան ու աքսորուեցան (1827 Դեկտ. 27)։ Քիչ մ'ետքը (1828 Յունու. 10) Էջմիածնական պատրիարքին սադրելովը, Տաճկի տէրութիւնը հրովարտակ մը հանեց, որուն զօրութեամբ քանի մը հազար գաղտատացի կաթուղիկեայ Հայք, որոնց մէջ կային 25 քահանայ ու եպիսկոպոս մը, իրենց հայրենիքէն աքսորուեցան։ Ասոնք թէ ճամբուն դժուարութիւններէն եւ թէ եղանակին անհարթութիւններէն արտաքոյ կարգի նեղութիւն կրեցին։ Սակայն ասիկայ դեռ սկիզբն էր. նոյն ամսոյն 27ին Էջմիածնական պատրիարքը կաթուղիկեականաց ուրիշ հրովարտակ մը ծանուց, որով իրենց կը հրամայուէր Բերա, Պէյօղլու, Ղալաթիա ու Պօղազիչի արուարձաններէն ելլել, եւ գլխաւորաբար Էջմիածնական Հայոց բնակած թաղերն երթալ։ Քիչ մ'ետքը (Փետր. 6 ու 22) բոլոր Օսմանեան տէրութեան մէջ գտնուող Հռոմէական Հայ քահանայք ու հաւատաւոր կուսանք աքսորուեցան։ Վերջապէս Մարտի 28ին աքսորանաց հրովարտակը բովանդակ Տաճկի տէրութեան մէջ գտնուող Հռոմէական Հայոց վրայ ընդարձակուեցաւ, եւ սպառնալեօք աքսորանաց իրենց հրամցուեցաւ Կոստանդնուպոլսոյ Էջմիածնական պատրիարքին հնազանդիլ եւ ի հոգեւորս անոնց հետ հաղորդակցիլ։ Մեծ տագնապի մէջ էին Հռոմէական Հայք. մէկ կողմէ կար իրենց հաւատքը, ուրացութիւն կամ անհաւատարմութիւն, իսկ միւս կողմէ աքսոր ու թշուառութիւն։ Բայց Հռոմէական Հայք՝ զարմանալի առաքինութեամբ եւ իրենց սովորական մեծ պատուաւորութեամբ ընդունեցին աքսորանքը, եւ ամէն կերպ նեղութիւն կրել, քան թէ կաթուղիկէ հաւատքէն ու միութենէն հրաժարիլ։

Կաթուղիկեայ Հայոց դէպքերն ... աղէտալի տարիներուն Պիոս Ը. Քահանայապետին ...

տրուեցաւ Լուդովիկոս Նաբոլէոն։ Սակայն թէպէտ պարզ գահերէցի անունն ունէր, բայց արդեամբ իր նախորդ սահմանադրական թագաւորներուն ամէն իշխանութիւններն ի գործ կը դնէր, զորոնք 1851ին Դեկտ. 2ին ըրած կառավարութեան գաւոյն (coup d'état) աւելի եւս ընդարձակեց ու հաստատեց։ Թէեւ իր վախճանին հասնելու համար ի գործ դրած միջոցներն ամենեւին կերպով մը չեն կրնար արդարացուիլ, սակայն չ'ուրացուիր նաեւ որ տասն Գաղղիան եւ գուցէ նաեւ բովանդակ Եւրոպան նոր յեղափոխութենէ մը ազատեց, եւ շրջահայեցութեամբն ու խոհականութեամբը կրցաւ Գաղղիան 20 տարի խաղաղ ու հանդարտ բռնել։

Լուդովիկոս Նաբոլէոնի գահերիցութեան ատեն՝ ուղղափառ եկեղեցին Գաղղիայի մէջ շատ բան վաստըկեցաւ. ինչու որ այս միջոցիս եկեղեցական հիմնարկութիւնները շատցան, եւ կրօնաւորական կարգերն ու աշխարհական կղերը չէ թէ միայն անարգել կրնային ժողովրդեան բարոյականութեան ու կրօնասիրութեան բարգաւաճելուն աշխատիլ, այլ նոյն իսկ տէրութիւնն իրենց այս ազնուական ջանից մեծապէս նպաստամատոյց կ'ըլլար։ Ուղղափառ ժողովրդեան մեծ ուրախութիւն պատճառեց, Ս. Ժընեվիեվի հոյակապ եկեղեցւոյն, որ ամենադից տաճար եղած էր, աստուածային պաշտամունք կատարելու համար դարձեալ եկեղեցւոյ փոխուիլը։ Անկէ զատ Լուդովիկոս Նաբոլէոն Գաղղիայի կղերականաց եւ ուղղափառաց սիրտն անով իրեն վաստըկեցաւ, որ Հռոմի հասարակապետութիւնը կործանելու եւ Քահանայապետը նորէն իր գահը հաստատելու համար Իտալիա բանակ մը խաւրեց (1849 Ապրիլ 25)։ Յամի 1850ին ուսման ազատութիւն ալ շնորհուելով՝ Գաղղիայի ուղղափառ եկեղեցւոյն առջեւ շքեղ եւ յուսալի ապագայ մը բացուեցաւ։ Այս գեղեցիկ յոյսերն երկրորդ կայսրութեան ժամանակ մեծաւ մասամբ կատարուեցան, ինչու որ Նաբոլէոն 1852 Դեկտ. 1ին Գաղղիայի ժառանգական կայսր ընտրուելէն ետքն ալ, թէ իր տէրութեան մէջ եւ թէ տէրութենէն դուրս ուղղափառ կրօնին պաշտպան կե-

ցաւ, թէեւ ինչպէս կը կարծուի աւելի քաղաքական դիտմունքներէ եւ շահերէ դրդուած քան թէ կրօնական ոգիէ շարժեալ։ Կայսր ըլլալէն ետքը Գաղղիայի եպիսկոպոսաց յորդոր մը հանեց, որ իրեն հետ միաբան ճշմարիտ կրօնասիրութիւն ու բարոյականութիւն տարածելու ետեւէ ըլլան։ Անկէ ետքը Գաղղիայի կղերը մեծ փութով ու եռանդով կ'աշխատէր դպրոցներու մէջ քրիստոնէական կրթութիւն խոթելու եւ բարեգործական ընկերութիւնները շատցնելու։ Ի մասնաւորի ուղղափառութեան եռանդով վառուած Գաղղիայի արժանաւոր եպիսկոպոսները, որոնց մէջ շատ անուանի է Օրլէանի Տիւբանլու եպիսկոպոսը, հովուական թղթերով, քարոզներով ու գրքերով կը ջանային անկրօնութեան եւ բարուց ապականութեան դէմ կռուելու, եւ ժողովրդեան՝ ուղղափառ կրօնի սէր եւ Առաքելական Գահին մեծարանք ազդելու։ Ասով ժողովրդեան գրեթէ ամէն կարգերուն մէջ կրօնական եռանդ մը արծարծեցաւ, եւ չկար ուղղափառ երկիր մը՝ ուր այնպիսի զուարթամիտ առատաձեռնութեան ոգի տեսնուէր վեհ ու ազնուական վախճաններու համար ինչպէս Գաղղիա։ Ի՛նչ եռանդով որ Գաղղիայի բանակները 1854ին Խրիմ արշաւեցին արեւելք Գաղղիայի ազդեցութիւնը յօգուտ ուղղափառ կրօնին աճեցընելու եւ ռուսական-յունական հերձուածոյն տարածման դէմ հզօր ամբարտակ մը կանգնելու, նոյն կրօնական զգածմամբ քանի մը տարի ետքը՝ Ճենաստան, Քօչինչինա ու Ասորիք գացին, ուղղափառ կրօնի տարածման եւ քրիստոնէից պաշտպանութեան համար։ Զինուորաց հետ կը մրցէին քարոզիչները. Գաղղիայի բանակը զինու զօրութեամբ իրենց առջեւը հեթանոս երկիր մը բանալուն պէս, այս եռանդուն ու արիասիրտ Աւետարանի պաշտօնեաները, իրենց խաղաղական ու աստուածահաճոյ գործքը կը սկսէին եւ հազարաւորներ քրիստոնէական կրօնին կը դարձընէին։ Գաղղիայի ժողովուրդն ինչպէս իր արիւնն ու զօրութիւնը քրիստոնէական կրօնին համար նուիրելու պատրաստ էր, նոյնպէս առատութեամբ կը զոհէր իր ինչքն ու ստակը նոյն ազնուական նպատակին։ Գաղղիա՝ ամէնէն

աւելի առատ դրամական օգնութիւն կ՚ընէր ուղղափառ կրօնի տարածման (ամէն տարի իբր 4 միլիոն ֆրանգ), թող տալով Քահանայապետին օգնութեան եւ ուրիշ բարի նպատակներու համար յաճախ եղած դրամաժողովները: Շատ անգամ լսուած խօսք մըն է, որ Գաղղիացիներն այս ամէն ձեռնարկութեանց դրդողը չափազանց ընդունայնասիրութիւնը եւ սնոտի փառաց փափաքն է, բայց չի կրնար ուրացուիլ՝ որ խորին կրօնական զգածում եւ ուղղափառ կրօնը տարածելու եւ պայծառացընելու եռանդ մը, այս ազնուական ազգին մեծագոյն մասին սրտին մէջ միշտ վառ ու կենդանի է:

Սակայն դժբախտութեամբ մի եւ նոյն ատեն տէրութիւնը թոյլ կու տար, որ գաղտնի ու ամբարիշտ ընկերութեանց ձեռքով, եւ անկրօն ու բարոյից հակառակ գրուածքներով, ժողովրդեան մէկ մասին մէջ անհաւատութեան վնասակար թոյնն եւ բարուց ապականութիւնը մտնէ, որուն դառն ու ողբալի հետեւութիւնները քանի մը տարի ետքը տեսնուեցան: Նոյնպէս դատապարտելի ու պարսաւելի է Գաղղիացւոց կայսեր Հռոմայ Գահին նկատմամբ բռնած ընթացքը: Ստոյգ է Նաբոլէոն իր գահերիցութեան ժամանակ Քահանայապետը պաշտպանեց, եւ զինուք միջամտութիւն ընելով զինքն աթոռը դարձուց, անկէ ետքն ալ շատ անգամ յայտնեց՝ որ Հռոմ զօրք պահելուն նպատակն է Եկեղեցւոյ Գլուխը պաշտպանել, սակայն ետքէն Առաքելական Գահին թշնամեացը հետ միաբանած՝ սկսաւ եռեւէ ըլլալ Քահանայապետին աշխարհական իշխանութիւնը կործանելու: Ուստի թոյլ տուաւ որ Սարդինիայի տէրութիւնն, ազգաց իրաւանց հակառակ եւ Եկեղեցւոյ ստացուածոցը բռնաբարութիւն ընելով՝ 1860ին Հռոմայ տէրութեան ամենէն պտղեցիկ գաւառները յափշտակէ: Քահանայապետը կրկին եւ կրկին անգամ այս սեղանակապուտ անիրաւութեան դէմ ձայնը բարձրացուց, եւ բովանդակ աշխարհքիս ուղղափառ եպիսկոպոսներն իրենց միաբան ու համամիտ ըլլալը ցուցուցին. Ի մասնաւորի Գաղղիայի եպիսկոպոսներն

ամենայն զօրութեամբ պաշտպան կեցան Եկեղեցւոյ Գլխոյն իրաւանցը, եւ կայսեր բռնած ընթացքին դէմ ժողովրդեան մէջ տրտունջները սկսան յաճախել։ Եւ որովհետեւ մէկալ կողմանէ Իտալիայի յեղափոխական կողմնակցութիւնը չէր դադրեր պահանջելէն՝ որ Հռոմ Իտալիայի մայրաքաղաքն ըլլայ, անոր համար Գաղղիայի կայսեր եւ Վիկտոր Էմմանուէլ Սարդինիայի թագաւորին մէջ 1864 Սեպտ. 15ին դաշնադրութիւն մը դրուեցաւ ի պաշտպանութիւն ժառանգութեան Ս. Պետրոսի։ Այս դաշինքով որոշուեցաւ, որ երկու տարի ետքը Գաղղիայի զօրքը Հռոմէն ելլէ, եւ Իտալիայի տէրութիւնը Փլորենտիա իրեն մայրաքաղաք ընտրէ. ասկէ զատ Սարդինիայի թագաւորն ինք զինքը կը պարտաւորէր հոգ տանելու, որ Իտալացիք Քահանայապետին ձեռքը մնացած երկիրներուն վրայ չյարձակին։ Այսպէս 1866ին վերջերը Գաղղիայի զօրքը Հռոմէն ու Եկեղեցւոյ տէրութենէն ելաւ, եւ Ս. Պետրոսի ժառանգութեան պաշտպանութիւնն ամէն ուղղափառ ազգերէ նոր կազմուած քահանայապետական բանակի մը (իբր 10.000) յանձնուեցաւ։ Սրտի մեծ կսկիծով բայց միանգամայն Աստուծոյ վրայ անյողդողդ վստահութեամբ կը տեսնէր Պիոս Թ., որ շատ չ'անցնիր իր վրայ դառն տառապանքներ պիտ'որ գան։ Իրօք ալ 1867ին Կարիպալտեանց կատաղի գունդ մը Իտալիայի տէրութենէն ծածուկ օգնութիւն գտնելով, Քահանայապետին երկիրը յարձակեցաւ, Հռոմ առնելու դիտմամբ։ Բայց Աստուած իրենց այս անօրէն դիտումն այս անգամ ալ ի դերեւ հանեց. ինչու որ բովանդակ քրիստոնէութիւնն Առաքելական Գահին թշնամեաց այս անօրէն ձեռնարկութեան դէմ զայրանալով, եւ Գաղղիայի ժողովուրդը յայտնի ու ստիպաւ խնդրելով, որ տէրութիւնը Քահանայապետին օգնութեան հասնի, Նաբոլէոն ստիպուեցաւ Իտալիա դարձեալ բանակ մը խաւրել։ Այս բանակին օգնութեամբը Քահանայապետին զօրքը Կարիպալտեանները շարաշար զարկին, եւ Եկեղեցւոյ երկիրներէն վանեցին։ Եւ թէպէտ այս փառաւոր յաղթութենէն ետքը, Գաղղիայի տէրութեան պաշտօնեան բովանդակ Գաղ-

ղիայի ծախահարութեամբն եւ ի ցնծութիւն ուղղա-
փառ տիեզերաց յայտնի բան, որ Գաղղիոյ զօրքերն
այնչափ ժամանակ Հռոմ պէտ՚որ կենան, ցորչափ Քահանայա-
պետին ապահովութիւնը կը պահանջէ, եւ Իտալիա երբեք
Հռոմ պէտ՚որ չմտնէ: Գաղղիա երբեք պէտ՚որ չհանդուր-
ժէ իր պատուոյն եւ բովանդակ ուղղափառ աշխարհքին ե-
ղած այսպիսի թշնամութեան մը: Սակայն 1870ին Գաղղիայի
Պրուսիայի դէմ բացած անխոհեմ ու դժբախտ պա-
տերազմին ժամանակ, Նաբոլէոն կայսրը, ինչպէս հաւա-
նական կ՚երեւայ, Իտալիա իր կողմը շահելու համար
զօրքը Հռոմէն քաշեց: Աւգոստոս ամսոյն սկիզբները՝
Գաղղիացւոց վերջին զինուորները Հռոմ թող տուած
օրէն, սկսան Գաղղիայի համար ձախորդութիւնները:
Գաղղիացիք տուած ամէն ճակատներուն մէջ յաղ-
թուեցան, եւ նոյն իսկ Նաբոլէոն Սետանի քով
(Սեպտ. 2) գերի իյնալով, Գաղղիայի թագը կորսն-
ցուց: Սեպտեմբեր 4ին Բարիզ հասարակապետու-
թիւն հրատարակուեցաւ: Թէպէտ անկէ ետքն ալ պա-
տերազմը շարունակուեցաւ, բայց Գաղղիացիք տեղ
մ՚ալ յաջողութիւն չգտնելով, վերջապէս Բարիզ ալ
չորս ամսուան պաշարմանէ ետքն անձնատուր ըլլալու
ստիպուեցաւ: Երկու պատերազմող տէրութեանց մէջ
դրուած խաղաղութեան դաշանց զօրութեամբ՝ Գաղ-
ղիա կորսնցուց Էլզաս գաւառն ու Լոթարինգիայի
մէկ մասը (իբր 1.450.000 բնակիչ) եւ 5000 միլիոն
ֆրանգ պատերազմի ծախք ստիպուեցաւ վճարել: Հա-
զիւ թէ արտաքին թշնամւոյն հետ պատերազմը լմըն-
ցած էր, աղէտալի քաղաքական պատերազմ մը Գաղ-
ղիան կործանման դուռը հասցուց: Բարիզի ազգային
պահապանները (1871 Մարտի 18ին) ապստամբու-
թիւն մը հանելով՝ քաղքին գլխաւոր տեղերուն տի-
րեցին, եւ հոն ընկերվարական հասարակապետու-
թիւն մը հաստատեցին: Այս հասարակավարական կա-
ռավարութեան տեւն՝ առաջին յեղափոխութեան
ժամանակ պատահած անօրէնութիւններն ու անաստո-
ւածութիւնները դարձեալ երեւան ելան: Եկեղեցիներ
պղծուեցան, Բարիզի արքեպիսկոպոսն եւ քանի մը
քահանայք ու կրօնաւորք հրացանի բռնուելով սպան-

նուեցան, եւ հրապարակական պալատներ ու բոլոր Եւրոպայի պարծանք եղող հնութեան ու ճարտարութեան գործուածքներ մոխիր դարձան: Սակայն վերջապէս Վերսայլի օրինաւոր տէրութեան զօրքերը Բարիզ առին (Մայիս 28ին), եւ հասարակավարներուն մէկ մասը անխնայ ջարդեցին, մէկ մասն ալ գերի բռնեցին: Ասով Գաղղիա խաղաղցաւ եւ եկեղեցին դառն ու ծանր տառապանքներէ ազատեցաւ: Բայց այս դէպքերուն մէջ՝ ո՞վ չի նշմարեր Աստուծոյ նախախնամութեան պատժական ձեռքը. յուսանք որ ապագային համար ասիկայ Գաղղիայի օգտակար եւ փըրկաւէտ դաս մ՚ըլլայ: Գաղղիա՝ իր այս անկածութեան ու անիշխանութեան վիճակին մէջ, Վատիկանեան տիեզերական ժողովոյն եւ ի մասնաւորի Հռոմայ Քահանայապետին անսխալ հեղինակութեան տակ գլուխը հպատակեցընելով, դարձեալ հանդիսապէս ցուցուց որ Երէց դուստր Եկեղեցւոյ փառաւոր անուան արժանի է:

2. *Ստորին Նահանգք*: ա. Բելճիք՝ Հոլլանտայէն բաժնուելէն ետքը (1830), նոր կրօնական եկեղեցական եռանդ մը արծարծեցաւ, որուն ակներեւ ցոյց են՝ Մեխէլնի ուղղափառ համալսարանին հիմնարկութիւնը (1832), որ 1835ին Լովանիա փոխադրուեցաւ, բազմաթիւ վանքերու շինութիւնը, դրսի երկիրներու առաքելութեանց համար Բելգիայի ըրած առատ դրամական օգնութիւնը, եւ նոր հաստատուած ուղղափառաց ժողովները: Ասիկայ այնչափ աւելի ուրախական ու զարմանալի է, որչափ եկեղեցւոյ թշնամիներն ամէն տեղէ աւելի Բելգիա կ՚աշխատին, իրենց անկրօն ու բարքն ապականող սկզբունքներն յայտնի եւ համարձակ քարոզելու եւ տարածելու: Չէ թէ միայն Աղօթ Ուխտաշէններու մեծ բազմութիւն մը անդադար ետեւէ է Բելգիայի մէջ կրօնական-եկեղեցական հոգին մարելու, այլ նաեւ ուրիշ գաղտնի ընկերութիւններ անկրօն ու ամպարիշտ գրուածքներով, որոնց մէջ ամէն նուիրական իրերն ոտքի տակ կ՚առնուին, կը ջանան անհաւատութեան սերմը ցանելու եւ քրիստոնէութիւնը բոլորովին ջնջելու: Վերջի տասն-

ները Բելգիա Համապատասխանատուաց (solidairs) ը-
սուած ամպարիշտ ընկերութիւնը կազմուեցաւ, որուն
անդամներն անլուր անօրէնութեամբ իրենք զիրենք
կը պարտաւորեն ոչ իրենց եւ ոչ իրենց ընտանեաց
անկողնոյն քով մահուան ժամանակ քահանայ թող-
տալու։ Քրիստոնէութեան ու եկեղեցւոյ թշնամեաց
այս անօրէն ջանից դէմ՝ Բելգիայի ուղղափառ ժողո-
վուրդը զգաստ ու հոգելից կղերին հետ միաբանած
արիաբար կը կռուի, եւ հիմայ ուղղափառ կրօնասի-
րութիւնն ու բարեպաշտութիւնը հոն մեծ յառաջա-
դիմութիւն կ'ընէ։ Մէկ կողմանէ Լովանիայի ուղղա-
փառ համալսարանը, որ 1865ին 800 աշակերտ ունէր,
գիտնականութեամբ անհաւատութեան դէմ կռուե-
լու ատեն, մէկալ կողմանէ 1863էն սկսեալ ամէն
տարի Մեխէլն գումարուած Ուղղափառաց համաժողով-
ներուն մէջ՝ Բելգիայի, Գաղղիայի, Անգղիայի ու
Գերմանիայի ամէնէն անուանի ճարտարախօսներն
իրենց ազդու ձայնը բոլոր ուղղափառ աշխարհքին կը
լսեցընեն, եւ համարձակ ու մանրամասն կը խօսին
արդի ժամանակիս գլխաւոր խնդիրներուն վրայ, որ են՝
քրիստոնէական սիրոյ, ժողովրդեան կրթութեան,
լրագրոց, ինչպէս նաեւ արուեստից, գիտութեանց եւ
կրօնական-բարոյական կենաց յառաջադիմութեան վրայ։

Ը. Նոյնպէս սահմանակից Հոլլանտայի մէջ՝ ուր
ուղղափառ կրօնը նորաղանդութեան ժամանակէն
գրեթէ բոլորովին ընկճեալ էր, 1830էն վեր կաթո-
ղիկէ եկեղեցին նոր հոգի ու կենդանութիւն առաւ։
Ամէն տեղ նորակառոյց շքեղ եկեղեցիներ կանգ-
նուեցան, եւ Կալուինականաց ու Յանսենեանց սաս-
տիկ ատելութեան դէմ, Հոլլանտայի ուղղափառք
միշտ աւելի սերտիւ Հռոմայ Գահին յարեցան։ Բայց
Հոլլանտայի ուղղափառաց համար ամէնէն նշանաւոր
ու հետեւութիւն ունեցող դէպքն եղաւ 1853ին
Պիոս Թ. Քահանայապետին ձեռքով Ուղղափառ եկե-
ղեցւոյ նուիրապետութեան Հոլլանտայի մէջ վերստին
հաստատուիլը, որով Հոլլանտայի ուղղափառք, որ
մինչեւ նոյն ատեն առաքելական փոխանորդներու
տակ էին, արքեպիսկոպոս մը (Ուդրէխդ) ընդունեցան

չորս օգնական եպիսկոպոսներով (Հարլէմ, Հերցոկէնպուշ, Պրէտա ու Ռուէրմոնտ)։ Այս ժամանակէն սկսեալ Հոլլանտայի մէջ՝ գլխաւորաբար եպիսկոպոսաց անխոնջ ջանքովը ու աշխարհական եւ կարգաւոր կղերին աշխատութեամբը, կրօնաւէր եւ եռանդուն ուղղափառաց թիւը միշտ աճելու վրայ է։ Արդէն 1865ին Հոլլանտայի 3¹/₂ միլիոն բնակչաց մէջէն 1,300,000 ուղղափառ էին, որոնց թիւը հետեւեալ տարիներուն մէջ երթալով շատցաւ։ Կրօնաւորաց կարգերն ու միաբանութիւնները միշտ ընդարձակուելու եւ բազմանալու վրայ են, ամէն տարի քրիստոնէական եղբայրսիրութեան վերաբերեալ հիմնարկութիւններու համար դրամոց մեծ գումարներ կը ծախուին, եւ առատ պարգեւներ Հռոմ Քահանայապետին կը խաւրուին։ Քահանայապետական զօրաց մեծագոյն մասը Հոլլանտայի ազնուական ընտանեաց որդիքը կը կազմէին։ Անկէ կը տեսնուի, որ Հոլլանտայի մէջ ուղղափառ եկեղեցւոյ գեղեցիկ յուսալի ապագայ մը կը սպասէ։

## 107. *Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Սպանիայի ու Բորդուգալի մէջ:*

1. *Սպանիայի* բարոյական ապականութիւնը Նաբոլէոն Ա. տիրապետութեան ժամանակէն է, որ միջոցին Սպանիա անկրօն ու վնասակար գրքերով ողողուեցաւ։ Այս ապականութեան աւելի եւս տարածուելուն ու հաստատուելուն պատճառ եղաւ 1833ին գահակալութեան համար ելած քաղաքային պատերազմը։ Նոյն միջոցին կրօնաւորաց եւ մայրապետաց գրեթէ բոլոր վանքերը ջնջուեցան, եւ տէրութեան այս անիրաւ ընթացքին դէմ դնող քահանաները կամ բանտ դրուեցան կամ աքսորուեցան։ Ազգային ժողովը (Գորդէզ) 1837ին տասանորդը վերցուց եւ հրատարակեց որ եկեղեցւոյ ինչքերը տէրութեան ստացուածք են։ Այս անիրաւ դէպքերէն ետքը ատեն՝ Գրիգոր ԺԶ. Քահանայապետը շրջաբերական թուղթով մը բովանդակ հաւատացեալներն յորդորեց, որ Սպա-

նիայի վերադառնալ եկեղեցւոյն համար աղօթք ընեն։ Աստուած ուղղափառաց աղօթքը լսեց, եւ Սպանիայի հարստահարեալ ժողովուրդն իր հաստատամտութեանը համար վարձատրեց, որ Անգղիայի վնասակար ազդեցութեան եւ գաղտնի ժողովականներուն ջանքը դէմ, իր հարց կրօնին հաստատարիմ մնացած էր. 1844էն ետքը Սպանիա՝ ուղղափառ եկեղեցւոյ վիճակը շրջակուեցաւ։ Առաքելական Գահին հետ բանակցութիւններն սկսան եւ աքսորեալ եպիսկոպոսաց Սպանիա դառնալու հրաման տրուեցաւ։ Մանաւանդ թէ 1851ին Իզապելլա Բ. Թագուհին Հռոմայ Աթոռոյն հետ կրօնական դաշնագրութիւն մ'ըրաւ, որով եկեղեցւոյ իրաւունքներն ճանչցուեցան եւ ապահովցան։ Այս միաբանագրով որոշուեցաւ, որ կղերականաց թոշակը կարգի դրուի, վանական կարգերը դարձեալ հաստատուին, դեռ չծախուած եկեղեցւոյ ինչքերն ետ դարձուին, եկեղեցական ստացուածոց մատակարարութիւնը կղերին ձեռքը մնայ, եւ եկեղեցւոյ՝ ինչք ստանալու իրաւունքը ճանչցուի։ Թէեւ սակայն արծարծեալ յօդուածները՝ 1854ին ելած յեղափոխութեան պատճառաւ շատ նուաղեցան, եւ նոյն իսկ եկեղեցական ստացուածոց վաճառումը դարձեալ ձեռք առնուեցաւ, բայց բարեբախտութեամբ նոյն տարին ելած փոթորիկն երկարատեւ չեղաւ։ Յետոյ 1856ին կառավարութիւնը դարձեալ օրինաւոր Թագուհւոյն ձեռքն անցնելով՝ իր հպատակաց շրջաբերական մը հանեց, ուղղափառ կրօնին դէմ տարածուած վարդապետութեանց հակառակ։ Քահանայապետին հետ միաբանութիւնը նորոգուեցաւ, եւ Ս. Գահին ու Սպանիայի մէջ շատոնց հաստատուած կրօնական դաշնագրութիւնը 1860ին իբրեւ պետութեան օրէնք հրատարակուեցաւ։ Անկէ ետքը Սպանիայի կառավարութիւնն եկեղեցւոյ հակառակ եւ բարուց վնասակար դրուածքները արգիլեց, եւ եպիսկոպոսունք ստորին կղերին հետ միացած կը մրցէին Առաքելական Գահին իրենց հպատակութիւնն ու անձնանուէր սէրը ցուցընելու։ Ի մասնաւորի Իզապելլա Բ. Թագուհին՝ որ ուղղափառ եկեղեցւոյ խիստ յարեալ էր, Քահանայապետին

դառն տառապանաց վրայ ունեցած խորհին ցաւը 1868ին սկիզբներն ազգային ժողովոյն մէջ յայտնեց, եւ իմացուց որ իր դաշնակցին՝ Գաղղիայի վեհապետին, Քահանայապետին երկիրները պաշտպանելու համար զօրաց բանակ մը առաջարկած է։ Ասոր վրայ ժողովրդեան պարգամաւորները գրեթէ միաբան յայտնեցին, որ Թագուհւոյն ինքնատու անկախութեան եւ օրինաւոր իշխանութեան Առաքելական Գահին ըսած խօսքերը, ուրախական եւ ցնծալի արձագանգ մը գտան բովանդակ Սպանիայի ուղղափառ ժողովրդեան սրտին մէջ, եւ թէ տէրութիւնը Գաղղիայի կայսեր վերոյիշեալ առաջարկութիւնն ընելով՝ Սպանիական ազգին նկատմամբ մեծ արդիւնք ունեցած է, եւ ինք զինքն արժանաւոր ցուցուցած է Թագուհւոյ մը, որ Իզապելլա Ա. Ուղղափառին գահին վրայ երջանկապէս կը թագաւորէ, եւ արժանի ժողովրդեան մը՝ որ եօթը դարէ աւելի իր հարց կրօնքին անարատութեան համար պատերազմած է։ Նոյն տարւոյն Յունուարի 20ին Սպանիայի ժողովուրդը Քահանայապետին հպատակութեան ուղղերձ մ'ընծայեց, որուն 5 միլիոնէ աւելի անձինք ստորագրած էին։ Բայց 1868ին Սեպտեմբերի մէջ յանկարծ զինուորական յեղափոխութիւն մ'ելլելով՝ Իզապելլա Բ. Թագուհին ստիպուեցաւ Սպանիան թող տալ եւ Գաղղիա փախչիլ։ Անկէ ետքը հաստատուած կառավարութիւնն եկեղեցւոյ դէմ հալածանքը դարձեալ սկսաւ. վանքերը ջնջուեցան ու եկեղեցիները կողոպտուեցան։ Սպանիա երկու տարի անիշխանութեան մէջ մնալէն ետքը, վերջապէս Սարդինիայի Էմմանուէլ Թագաւորին որդին՝ Ամադէոս իշխանը Սպանիայի թագաւորական գահն ելաւ. բայց անտարակոյս է՝ որ իրաց այս նոր կարգն ալ յարատեւ հաստատութիւն մը չունի։

2. *Բորդուկալի մէջ՝ կաթուղիկէ ուղղափառ եկեղեցին Տոն Պետրոսի ժամանակ գրեթէ նոյն հարստահարութեանց տակ ինկած էր, ինչպէս Սպանիա։* Բայց 1841էն ետքը Բորդուկալի տէրութիւնն Առաքելական Գահին սկսաւ մօտենալ. սակայն եւ այնպէս այս ուղղափառ երկիրը մինչեւ ցայսօր դաղտնի ընկե-

րութիւններու ձեռքով խրամատած եւ անսանձ մամուլի մը բռնաւորական իշխանութեան տակն է։ Տէրութիւնն ալ կրօնի թշնամեաց այս անօրէն ջանիցը դէմ դնելու տեղ, անոնց աւելի նպաստամատոյց կ'ըլլայ, եւ եպիսկոպոսներն ալ իրաց այս ողբալի վիճակին մէջ եկեղեցւոյ իրաւունքները պաշտպանելու համար պահանջուած առաքելական արութիւնը չեն ցուցըներ, որուն վրայ նոյն իսկ Քահանայապետը դառնապէս քանքատեցաւ 1862ին Յուլիսի 3ին Լիսաբոնի պատրիարքին ու Բորդուկալի եպիսկոպոսներուն գրած համառօտագրոյն մէջ։ Քահանայապետն այս թղթին մէջ՝ հայրական ծանրութեամբ կը յորդորէ եպիսկոպոսները, որ ուղղափառ հաւատքն անոր թշնամեաց ամպարիշտ ջանիցն ու որոգայթներուն դէմ աներկիւղ պաշտպանեն, եւ իրենց հովուապետութեան յանձնուած հաւատացելոց ի մասնաւորի երիտասարդաց քրիստոնէական կրթութեան հոգ տանին։ Սակայն եւ այնպէս անկէ ետքն ալ Քահանայապետին՝ Բորդուկալի եկեղեցւոյ նկատմամբ ունեցած յոյսերն ու բաղձանքները լիուլի չկատարուեցան, ինչու որ տէրութիւնն եպիսկոպոսաց ամենեւին պաշտպանութիւն չընելէն զատ, եկեղեցւոյ հակառակորդ ազատական կողմնակցութեան կը շողոքորթէ։ Նոյնպէս Ս. Գահին հետ կրօնական դաշնադրութիւն մը դնելը միշտ կ'ուշացընէ, եւ ընդհանրապէս Քահանայապետին աշխարհական իշխանութեան թշնամեացը հետ հաղորդութեան մէջ է, մանաւանդ քանի որ Տ. Լուիզ երիտասարդ թագաւորը՝ Սարդինիայի թագաւորին Մարիամ Բիա աղջիկն իրեն կնութեան առած է։

## 108. *Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Մեծն Բրիտանիայի մէջ:*

1. *Անգղիա* մեծ սէր ու եռանդ կը տեսնուի ուղղափառ կրօնին։ Ամէն տեղէ աւելի Անգղիա բազմաթիւ բողոքականք թէ բարձրաստիճան կղերէն եւ թէ աւագ աշխարհականներէն, ուղղափառ եկեղեցւոյ

ծոցը կը դիմեն։ Մինչեւ հիմայ աւատ եկեղեցական-
ներէն ու ազնուականներէն դարձողներուն թիւը 1000
անցած է, որոնց մէջէն 250 անգղիական եկեղեցւոյ
անուանի քարոզիչներ էին։ Ինչպէս ամէն ժամանակ
հանճարեղ մարդիկ՝ հիմնական ու հաստուն քննու-
թիւններէ ետեւ, Աստուծոյ շնորհաց օգնականու-
թեամբը վերջապէս ուղղափառ եկեղեցւոյ ճշմարտու-
թեանը համոզուած են, նոյնպէս հիմայ Անգղիա՝ մէկ
քանի տարուան մէջ ճեմարաններու ու համալսարան-
ներու հռչակաւոր անդամներ եւ երեւելի ուսումնա-
կաններ կաթուղիկէ հաւատքին ընդունեցան։ Այնպէս
որ հիմայ Անգղիայի ուղղափառաց թիւը 2 միլիոնը
կ'անցնի, եւ միայն Լոնտոն 200,000էն աւելի կա-
թուղիկեայ հաւատացեալք կը գտնուին։

Կաթուղիկէ կրօնին Անգղիայի մէջ այսպէս ա-
րագ զարգանալուն գլխաւոր պատճառն եղաւ, Ռոմէ-
ական եկեղեցւոյ նուիրապետութեան վերստին հաստա-
տուիլը (1850ին Սեպտ. 24ին); Պիոս Թ. Քահանայա-
պետն Անգղիայի ուղղափառաց աղաչանքը մտիկ ընե-
լով, Ուայզմէն առաքելական տեղապահը, որ իր հան-
ճարեղ ու ժողովրդական գրուածքներովը մեծ անուն
հանած էր, Ուեսդմինսդրի արքեպիսկոպոս անուանեց,
եւ միանգամայն իրեն կարդինալական ծիրանի տուաւ։

Ասկէ զատ՝ իր իրաւասութեան տակ 12 եպիս-
կոպոսական աթոռ հաստատեց։ Քահանայապետին
այս կարգադրութիւնն՝ Անգղիայի բողոքական տէրու-
թեան կողմանէ մեծ ընդդիմութիւն գտաւ, եւ ուղ-
ղափառաց դէմ սաստիկ մըրրիկ մ'ելաւ։ Երկար ատենէ
վեր չլսուած Ոչ պապականութիւն (No popery) աղա-
ղակին սկսաւ ամէն տեղ հնչել։ Քահանայապետն ու
նոր անուանուած կարդինալն ամենաստորին կերպով
խառնաղանճ ժողովրդեանէն նախատուեցան ու թշնա-
մանուեցան, եւ ուղղափառ եպիսկոպոսաց արգելուե-
ցաւ Անգղիայի քաղքի մը տիտղոսը կրել եւ եպիսկո-
պոսական պաշտօն կատարել։ Սակայն եւ այնպէս՝
ուղղափառ նուիրապետութիւնն Անգղիա կրցաւ հաս-
տատուն արմատ ձգել։ Ասոր ամէնէն աւելի օգնեց
Ուայզմէն արքեպիսկոպոսին աներկիւղ վարմունքը։

նորընտիր ծիրանաւորը տեսնելով՝ տէրութեան այս կարգադրութեան դէմ ունեցած ընդդիմութիւնը, Անգղիայի ժողովրդեան յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ անգղիական ազգին արդարակորով միտացն ու համեստ սրտին կը բողոքէր: Ասոր վրայ շատ չանցաւ բողոքականաց անիրաւ հակառակութիւնն սկսաւ իջնալ, եւ Ուայզմէն կարդինալը կրցաւ անարգել 1852ին գաւառական ժողով մը գումարել: Նոյն ծիրանաւորն իր սքանչելի ատենախօսութիւններովն ու գրուածքներովը մեծ անուն հանեց, եւ միանգամայն Անգղիայի ժողովրդեան ուղղափառ կրօնքին ու անոր պաշտամանցը դէմ ունեցած հինաւուրց նախապաշարումները փարատելու պատճառ եղաւ: Իւր մահն (1865 փետր. 15) առհասարակ ամենուն մեծ սուգ եւ տրտմութիւն պատճառեց. ոչ միայն ուղղափառք դառնապէս սգացին այս աննորոգելի կորուստը, այլ նաեւ բովանդակ Անգղիա ճանչցաւ, որ մեծ մարդ մը կորսնցուց: — Իր յաջորդին Մէննինկ արքեպիսկոպոսին ժամանակ, որ նոյնպէս մեծ եռանդեամբ ու առաքելական հոգւով Անգղիայի ուղղափառ եկեղեցւոյն յառաջադիմութեանը կ'աշխատէր, Բուզէյեաններու կուսակցութիւնն անգղիական Բարձր եկեղեցւոյն մէջ մեծ շարժում ու հերձուած պատճառեց, որովհետեւ այս կուսակցութեան հետեւողները սկսան եռեւէ ըլլալ, ուղղափառ եկեղեցւոյ արարողութիւններն ու ծէսերն իրենց եկեղեցական պաշտամանց մէջ խոթելու: Թէեւ Բուզէյեանք համաձայնեալ չըլլան ուղղափառ եկեղեցւոյ ծոցը դառնալու, սակայն եւ այնպէս իրենց ջանքովն ուղղափառ եկեղեցւոյ տարածման մեծապէս նպաստաւոր կ'ըլլան. Ինչու որ ասով շատերուն սիրտը մուտ կը գտնեն այն բաները, որոնք ցայսօր անգղիական եկեղեցւոյ հետեւողներուն գայթակղութեան քար էին, եւ կաթուղիկէ եկեղեցւոյ դառնալը խիստ կը դժուարցընէին: Եւ որովհետեւ մէկալ կողմանէ նաեւ ուղղափառ հաւատացեալք իրենցմէ բաժնուած եղբարց համար աղօթք ընելէն երբեք չեն դադրիր, կրնանք վստահութեամբ յուսալ որ Անգղիայի ժողովուրդը, որ երբեմն Առաքելական Գահին հպատակութեան ու

սիրոյ յարաբերութեան մէջ էր, եւ ուղղափառ հաւատոյ այնչափ եռանդուն քարոզիչներ հեռաւոր աշխարհքներ խաւրած է, եւ բազմաթիւ մարտիրոսներ ու խոստովանողներ ունեցած է, կամաց կամաց ամբողջ ուղղափառ եկեղեցւոյ ծոցը կը դառնայ, եւ քրիստոնէութեան Հօր երեքկարգեան խոյրը զարդարող շքեղ պատուական քարերէն մէկը կ'ըլլայ։

2. Իրլանտայի խեղճ ուղղափառ ժողովուրդն երկար ժամանակ անգղիական տէրութեան ծանր ու հարստահարիչ լուծին տակ ընկճուած դառն գերութեան մէջ կը հեծէր։ Մինչեւ 1829 տէրութեան երկու սենեակներն ալ ուղղափառաց համար գոց էին, նոյնպէս շատ պաշտօններու եւ պատիւներու չէին կրնար հասնիլ։ Նոյն տարին ուղղափառաց ազատութեան օրէնքն ելլելէն ետքը (տես երես 326), իրենց վիճակը քիչ մը լաւացուեցաւ։ Իրլանտա այս ազատութիւնը պարտական է գլխաւորաբար Դանիէլ Օ'Գոնէլի երկարատեւ ու անխոնջ աշխատութեանցը, որ ընդհանրապէս ուղղափառ եկեղեցւոյ իրաւունքներն եւ ի մասնաւորի իր հարստահարեալ հայրենեաց ազատութիւնը մեծ խոհականութեամբ ու ազդուութեամբ գրեթէ 38 տարի պաշտպանեց (1809—1847)։ Իր մահուանէն ետքը՝ Երիտասարդ Իրլանտայի մէկ քանի առաջնորդները դժբախտութեամբ սկսան ետեւէ ըլլալ ժողովուրդն Անգղիայի կառավարութեան դէմ գրգռելու։ Բայց իրենց մտաքը դրածը չկրցան յառաջ տանիլ. շատերը բռնուեցան եւ խստիւ պատժուեցան, եւ մէկ քանի հազւոյ յանցանքը քաւելու համար շատ անմեղ անձինք զոհ եղան։ Անգղիայի տէրութիւնն այս խեղճ ժողովուրդը սկսաւ աւելի եւս հարստահարել, որուն վրայ սաստիկ սով մ'ալ գալով՝ Իրլանտայի ուղղափառաց տառապանքը վերջին աստիճանի հասաւ։ Սակայն եւ այնպէս Իրլանտացիք՝ կրած այս ամէն նեղութեանց մէջ ալ հաստատուն եւ անշարժ մնացին կաթուղիկէ ուղղափառ հաւատքին եւ Առաքելական Գահին ունեցած սիրոյն մէջ։ Բայց որովհետեւ շատերը չէին կրնար իրենց հայրենեաց մէջ կենաց հարկաւոր պիտոյքը հոգալ,

մէջերնին գաղթականութեան փափաքն այնչափ ար-
ծարծեցաւ, որ տասը տարուան մէջ 1½ միլիոն Իրլան-
տացիք իրենց հայրենիքը թող տալով՝ Ամերիկա
գաղթեցին, որպէս զի հոն իրենց ապրուստ մը հոգան։
Թէեւ Օ'Գոնէլի մահուանէն ետքն ալ չպակսեցան
երեւելի մարդիկ, որոնք Անգլիայի խորհրդանոցին
մէջ Իրլանտացւոց իրաւունքներն արիութեամբ պաշտ-
պանեցին, բայց կարելի չեղաւ Իրլանտացւոց կատա-
րեալ ազատութեան ճամբան բոլորովին հարթել։
Յամի 1868 եւ 1870ին գումարուած խորհրդանոց-
ներն՝ տէրութեան կողմանէ Իրլանտայի ուղղափա-
ռաց եղած մէկ քանի անիրաւութեանց դէմ աղդու-
թեամբ ձայներնին բարձրացուցին, եւ պաշտօնէից
գահերէց Պ. Կլետսդընին առաջարկութեամբը մէկ
քանի նորոգութիւններ ըրին։ Յուսանք որ Անգլիայի
ժողովուրդը, որ շատոնց արդէն ուղղափառ եկեղեցւոյ
դէմ ունեցած ատելութիւնն ու նախապաշարումները
թող տուած է, շատ չ'անցնիր Իրլանտայի ուղղափառ
ժողովրդեան իրաւացի պահանջմունքներուն լիապէս
արդարութիւն կ'ընէ։

### 109. *Ռուսաստանի ու Լեհաստանի մէջ ուղղափառ եկեղեցւոյ կրած հալածանքը։*

Ռուսաստան՝ ուղղափառ եկեղեցին շատ տարի-
ներէ վեր խեղճ եղանակաւ կը չարչարուի ու կը վըշ-
տանայ։ Կատարինէ Բ. կայսրուհին (1762—1796),
որ ամէն միջոց ի գործ դրաւ ուղղափառ եկեղեցին իր
տէրութեան մէջ ընկճելու, նենգութեամբ ու բռնու-
թեամբ 8 միլիոն ուղղափառ Հռոմայ կաթուղիկէ ե-
կեղեցիէն բաժնեց։ Իրեն յաջորդ Պաւղոս Ա.
(1796—1801) եւ Աղեքսանդր Ա. (1801—1825)
կայսրներն ուղղափառ եկեղեցին հանդարտ ձգեցին։
Բայց վերջնոյն եղբայրն ու յաջորդը Նիկողայոս Ա.
կայսրը, ուղղափառ եկեղեցւոյ դէմ նոր հալածանք
հանեց։ Ետեւէ ետեւ կայսերական հրովարտակներ
ելան, որոնք մէկը մէկալէն աւելի խիստ վճիռներ ու
հրամաններ կը բովանդակէին ուղղափառ եկեղեցին

ընկճելու։ Նիկողայոս Ա. կայսրն ի մասնաւորի կը ջա-
նար շնորհքներով, նենգութեամբ եւ բռնութեամբ
եպիսկոպոսներն ու քահանաները տէրութեան գխա-
մանցը շահիլ։ Վերջապէս հոն բերաւ որ 1839ին 3 ե-
պիսկոպոս կայսեր յայտարարութիւն մը տուին, որով
կը ծանուցանէին՝ իրենց եւ իրենց թեմականաց
ուղղափառ հռոմէական եկեղեցիէն բաժնուիլը, եւ
կը խնդրէին որ հերձուածող յունական եկեղեցին
ընդունուին։ Կայսրն ամենայն յօժարութեամբ իրենց
բաղձանքը կատարեց։ Գրիգոր ԺԶ. Քահանայապետը
1842 Յուլիս 22ին կարդինալաց առջեւը խօսած ճա-
ռին մէջ՝ Ռուսաստանի բռնած այս պարտաւելի ըն-
թացքը բոլոր քրիստոնեայ աշխարհքին առջեւը
դրաւ, եւ ետքէն երբոր Նիկողայոս կայսրը Հռոմ ե-
կաւ, անձամբ ալ երեսը զարկաւ։ Անկէ ետքը Ս. Գա-
հին եւ Ռուսի տէրութեան մէջ բանակցութիւններ
սկսան Ռուսաստանի ուղղափառաց վիճակը լաւցընե-
լու համար, որոնք Նիկողայոս կայսեր յաջորդ Աղե-
քսանդր Բ. կայսեր առեն աւելի յաջողութեան յուսով
շարունակուեցան։ Սակայն դժբախտութեամբ ցայսօր
բան մը չկրցաւ ի գործ դրուիլ. ասոր ներհակ Ռու-
սաստան չի դադրիր նենգութեամբ ու բռնութեամբ
յունական հերձուածն արեւելք տարածելէն, եւ Ս.
Գահին տուած խոստմանցը դէմ Ռուսաստանի ուղ-
ղափառները հալածելէն։

Այս հարստահարութեանց պատճառաւ Ռուսի
իշխանութեան տակ եղող Լեհաստանի մէջ 1863ին
ապստամբութիւն մ'ելաւ, որ երկար եւ արիւնահեղ
կռիւներէ ետքը հազիւ նուաճուեցաւ։ Բայց ասիկայ
նոր պատրուակ մ'եղաւ Ռուսի տէրութեան Լեհաց
դէմ ունեցած ատելութիւնը սաստկացընելու, եւ այս
տառապեալ ազգին խեղճ վիճակն աւելի եւս վատ-
թարացընելու։ Ապստամբութիւնն ընկճուելէն ետքը
Լեհաստանի ուղղափառաց դէմ խիստ հալածանք
մ'ելաւ, եւ տէրութիւնն այս հարստահարեալ եր-
կրին մէջ արհաւրաց քաղաքականութիւն մը սկսաւ ի
գործ դնել։ Ապստամբութեան մասնակից եղած ըլ-
լալու պատրուակաւ ուղղափառ քահանայք ու կրօ-

նաւորք գաւազանազարկ բանտ դրուեցան. ոմանք սպաննուեցան, ոմանք ալ Սիպերիա աքսորուեցան: Յայտնի է որ Ռուսաստանի գրաւումն է Լեհաց ազգին եւ կրօնով նաեւ ուղղափառ կրօնը Լեհաստանէն ջնջել: Անոր համար ազգէն վանքերը վերցուցած, եկեղեցական ստացուածքներն յարքունիս գրաւած, եւ զանազան տեղեր նոյն իսկ ուղղափառաց եկեղեցիները ռուսի եկեղեցիներու փոխած է: Տէրութիւնն ուղղափառ ժողովրդապետներն իրենց հօտերէն բանի հեռացընելէն ետքը, չլսուած բարբարոսութեամբ ուղղափառ ժողովուրդը կը բռնադատէ որ ռուս քահանայից եկեղեցական պաշտամանց ներկայ գտնուին, իրենց տղաքն անոնց մկրտել տան, անոնց խոստովանանք ընեն եւ Ս. Հաղորդութիւնն անոնց ձեռքէն ընդունին: Իսկ Լեհաստանի գաւառականներուն տուած անգութ հրամանները, նախնի քրիստոնէից դէմ հեթանոս կայսերաց հանած հալածանաց հրովարտակները կը յիշեցընեն: Եւ թէպէտ Պիոս Թ. Քահանայապետը մէկ քանի անգամ իր ձայնը բարձրացուց եւ ուղղափառ եկեղեցւոյ կրած այս ամէն հարստահարութեանց դէմ զանազան գանգատներ ըրաւ, սակայն ատով Ռուսաստանի եւ Լեհաստանի ուղղափառաց նեղութիւնները նուազելու տեղ՝ աւելի սաստկացան, եւ վերջապէս Ռուսի տէրութեան եւ Առաքելական Գահին մէջ եղած բանակցութիւնները բոլորովին կտրեցան:

### 110. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Գերմանիոյ մէջ:

1. Գերմանիա՝ Թէեւ 1815ին Ժողովոյն մէջ եղած փոփոխութիւններէն ետքն ուղղափառաց յառաջուընէ աւելի կրօնական ազատութիւններ տուած էին, բայց միշտ կառավարութիւնն ամէն կերպիւ հնարք կը բանեցընէր տէրութեան մէջ ուղղափառ կրօնք ճնշելու եւ բողոքականութիւնը տարածելու: Այս նպատակին հասնելու համար զանազան խորամանկ միջոցներէն զատ՝ Պրուսիա իր տէրութեան մէջ գիտու-

բաւար խառն ամուսնութեան հաստատել կ'ուզէր, այս-
ինքն կ'աշխատէր որ ուղղափառք եւ բողոքականք
իրարու հետ ամուսնանան ամէն կարելի թոյլտուու-
թիւններով, եւ ոչ թէ իրենց դաւանական ուղղափա-
ռական կրթութիւն տալու պարտաւորութեամբ։
Պիոս Ը. Քահանայապետը՝ 1830ին Մարտի 25ին
հանած համառօտագրովը՝ խառն ամուսնութեանց
նկատմամբ Պրուսիայի կառավարութեան վերջին կարե-
լի զիջումներն ըրաւ, բայց տէրութիւնն այս զի-
ջումները բաւական չսեպելով՝ համառօտագրոյն խար-
դախ մեկնութիւն մը չինել տուաւ, եւ բոլոր տէրու-
թեան ուղղափառ ժողովրդապետաց հրամայեց, որ
ըստ այնմ մեկնութեան իմանան եւ ի գործ դնեն
նոյն համառօտագիրը։ Սակայն Կողոնիայի Կղէմէս Ա-
ւգոստոս արքեպիսկոպոսն առանց միտ դնելու տէրու-
թեան ըրած այս անիրաւ պահանջմունքին, համառօ-
տագրոյն բուն ճշմարիտ մտաց համաձայն սկսաւ վա-
րուիլ։ Այս պատճառաւ արքեպիսկոպոսին ու Պրու-
սիայի կառավարութեան մէջ դժուարութիւն մտաւ,
որուն հետեւութեամբն Կղեմէս Աւգոստոս արքեպիս-
կոպոսը բանտարկելով Մինտէն բերդը տարուեցաւ (1837
Նոյեմ. 20)։ Նոյնպէս բանտ դրուեցաւ նաեւ Մարտի-
նոս Ցունինը Կնեզէնի ու Բոզէնի արքեպիսկոպոսը, որ
Կողոնիայի արքեպիսկոպոսին օրինակին հետեւած էր։
Պրուսիայի այս բռնական ու անխոհեմ ընթացքն ար-
տաքոյ կարգի յուզմունք պատճառեց՝ չէ թէ միայն
Գերմանիայի ու Եւրոպայի՝ այլ նաեւ Ամերիկայի ուղղա-
փառաց մէջ։ Գրիգոր ԺԶ. Քահանայապետն իր որոտա-
ընդոստ ձայնը բարձրացուց, եւ Պրուսիայի տէրու-
թեան ուղղափառ եկեղեցւոյ ըրած անիրաւութեան
դէմ բողոքեց կարդինալաց առջեւը խօսած կրկին ա-
ռանձնախօսութիւններով, որոնց համարձակ լեզուն բո-
վանդակ աշխարհքը զարմացուց եւ Գերմանիայի
ուղղափառաց սրտերը նոր կրօնական եռանդով վա-
ռեց։ Պրուսիայի ութը միլիոն ուղղափառք՝ իրենց հո-
վուապետին ու հովուաց հետ սերտիւ միացած, եկե-
ղեցւոյ անկապտելի իրաւունքները պահանջեցին, որով
կառավարութիւնն օր քան զօր դժուարին վիճակի մէջ

մնաց։ Նոյն միջոցին Գուլիելմոս Գ. Բրուսիայի թա-
գաւորը մեռնելով՝ իրեն յաջորդեց Գուլիելմոս Դ։ Ա-
սիկայ անմիջապէս հաշտութեան ճամբայ բանեց, եւ
բանտարկեալ արքեպիսկոպոսներն ազատ թող տուաւ։
Բոզէնի արքեպիսկոպոսը հրաման ընդունեցաւ իր
թեմին դառնալու, ուր մեծ սիրով ու ցնծութեամբ
ընդունուեցաւ։ Իսկ Կղեմէս Աւգուստոս՝ Կողոնիայի
արքեպիսկոպոսին թէեւ հրաման շնորհուեցաւ իր ա-
թոռը դառնալու, բայց որովհետեւ ինք ազնուական
անձնուրացութեամբ իր խնդրոյն որոշումը Հռոմայ
Գահին ձգած էր, Գրիգոր ԺԶ. Քահանայապետն ի-
րեն օգնական եպիսկոպոս անուանեց Յովհաննէս
Կայսէլ Շփայերի եպիսկոպոսը՝ մահուանէն ետքն ա-
թոռը յաջորդելու իրաւունքով։ Կղեմէս Աւգուստոս
արքեպիսկոպոսն անկէ ետքն առանձնութեան մէջ
քաշուած կեանք անցուց, եւ 1845ին Հոկտ. 19ին
վախճանեցաւ։ Անկէ զատ Բրուսիայի թագաւորն ուղ-
ղափառ եկեղեցւոյ զանազան ազատութիւններ շնոր-
հեց. 1841 Յունուար 1ին ելած արքունական հրամա-
նագրով՝ եպիսկոպոսաց՝ Հռոմայ հետ հաղորդութիւն
ընելու հրաման տրուեցաւ, եւ նոյն տարին կրօնի
պաշտօնատանն մէջ ուղղափառ խորհրդականներէ
կազմուած առանձին ատեան մը դրուեցաւ, ուղղափա-
ռաց վերաբերեալ կրօնական խնդիրներն որոշելու
համար*.

Սակայն այս ուրախալի դէպքերուն քով՝ Գեր-
մանիայի ուղղափառ եկեղեցւոյ մէջ չպակսեցան
ցաւալի եւ տխուր երեւոյթներ ալ։ Գուլիելմոս Ար-
նոլդի Դրիերի եպիսկոպոսը 1844ին իր թեմական ժո-
ղովրդեան աղաչանաց զիջանելով՝ նոյն քաղքին մայր
եկեղեցւոյն մէջ երկար ժամանակէ վեր պահուած
Քրիստոսի Տեառն մերոյ հանդերձը՝ յարգութեան ըն-
ծայելու համար վեց շաբաթ տեւութեան հանեց։
Թէ՛ Գերմանիայի ամէն կողմերէն, թէ Գաղղիայէն եւ
Բելգիքայէն եկած ուխտաւորաց բազմութիւնն ան-
երեւ կը ցուցընէին, որ ներքին կրօնական եռանդ եւ

* Շատ ժամանակ չանցած Բրուսիայի կառավարութիւնն այս ատեանը վեր-
ցուց, որ նոյն տէրութեան այս վերջի ատեններն ուղղափառաց նկատ-
մամբ բռնած թշնամական ընթացքին ակներեւ ցոյցերէն մէկն է։

թեանց նկատմամբ ալ խուժարար եւ ընկերավարակա-նաց նման սկզբունքներ ունենալով, գրեթէ ամէն տէրութիւններէն մերժուեցաւ, եւ հիմայ գրեթէ բոլորովին անհետ եղած է։

Երկրորդ աղէտալի դէպքն եղաւ 1848ի ընդհա-նուր Եւրոպայի յեղափոխութիւնը, որ Գերմանիա ալ մեծամեծ խռովութիւններ յարոյց։ Այս շփոթու-թեանց գլխաւոր շարժառիթներէն մէկն էր՝ թէ ուղ-ղափառ եւ թէ բողոքական երկիրներուն մէջ տէրութեանց եկեղեցւոյ վրայ բանեցուցած բացարձակ իշխանու-թիւնը, եւ անոր հետեւութեամբ տէրութեան եւ եկե-ղեցւոյ մէջ բնական յարաբերութեան խանգարումը։ Եւ թէպէտ մինչպէս ուրիշ տեղեր նոյնպէս Գերմանիա ալ՝ յեղափոխականաց միտքն էր թագաւորաց գահերը կոր-ծանելէն ետքը, կրօնն ու եկեղեցին ալ ջնջել, բայց Աստուած Գերմանիայի ուղղափառ եկեղեցին առանձին կերպով պաշտպանեց, եւ անոր թշնամեաց ամէն հնարք-ները պարապի հանեց։ Այս խռովութեանց ժամանակ (1848 Նոյեմ.) Գերմանիայի եպիսկոպոսները Վիւրց-պուրկ ժողով գումարելով՝ յիշատակագիր մը յօրինե-ցին, որուն մէջ մեծ խոհականութեամբ եւ անդրդուելի հաստատութեամբ իրենց սկզբունքները պարզեցին, որոնց համաձայն ամէնքը միաբան պիտի՛ որ գործէին՝ ի-րաց այս նոր կերպարանափոխութեան մէջ եկեղեցւոյ անօտարանալի իրաւունքները հաստատուն պահելու համար։ Շփոթութիւնները հանդարտելէն ետքը՝ տէ-րութիւններն ալ ճանչցան, որ ան ատեն միայն կարե-լի է հաստատուն եւ կարգաւորեալ վիճակ մ՚ունե-նալ, երբոր ժողովրդեան մէջ քաղաքական-կրօնական զգածումն ընդհանուր կը տիրէ, եւ տէրութիւնն ու եկեղեցին իրենց շրջանին մէջ անկախ գործելով՝ ի-րարու օգնական կ՚ըլլան։ Այսպէս Պրուսիոյ թա-գաւորը 1848ին Դեկտեմբեր 5ին իր ժողովրդեան տուած սահմանադրութեան մէջ՝ ուղղափառ եկեղե-ցւոյ տէրութեան նկատմամբ ունեցած իրաւունքները ճանչցաւ, եւ ուղղափառ եկեղեցւոյ իր գործքերը կարգաւորելու ինքնօրէն ազատութիւն տուաւ։ Նոյն-պէս կրօնական պաշտամանց, ուսման եւ բարեգործա-

բանականի զօրաւոր եկեղեցւոյ հակառակ ազատական կուսակցութիւն մը, որ անդադար ետեւէ կ'ըլլայ եկեղեցական հեղինակութիւնը չափաւորելու, անոր սահմաններ դնելու, եւ կարելի եղած տեղը նաեւ բոլորովին ջնջելու: Այս վիճակաւոր ծիրը՝ որ շատոնց Գաղղիոյ դպրութեան մէջ տիրող էր, վերջին ժամանակներս Պաւիերա եւ նոյն իսկ Պրուսիա ալ յաջողութիւններ ունեցաւ: — Պատընի դքսութեան ազատական կառավարութիւնը քանի տարիէ աւելի է, որ կաթողիկէ եկեղեցւոյ ապահարկութիւնը, ազատութիւնն եւ անոր յարգելի իրաւունքները բռնաբարելէն չդադրեցաւ: Այս պատճառաւ տէրութեան եւ եկեղեցւոյ մէջ ծագած գժտութիւնը, որուն մէջ եկեղեցւոյ իրաւունքներն աներկիւղ արիութեամբ պաշտպանեց Հէրմոն Վիքարի Ֆրայպուրկի արքեպիսկոպոսը, գոնէ այն օգուտն ունեցաւ, որ Պատընի ուղղափառ եկեղեցւոյ ընդարմացած անդամներն իրենց կրօնական անտարբերութենէն արթնցան, եւ հիմայ եռանդնոտ կղերի մը հետ միաբանած՝ կաթողիկէ եկեղեցւոյ աւելի ներքին յարելու կ'աշխատին, թէեւ տէրութիւնը զիրենք անիրաւութեամբ հարստահարելէն չէ դադրիր: — Ասկէ աւելի վտանգաւոր է եւ ուղղափառ կրօնին ծանր վտանգ կը սպառնայ Գերմանիայի մէկ քանի կողմերն ի մասնաւորի Պրուսիոյ Վատիկանեան տիեզերական ժողովոյն դէմ եղած հակառակութիւնը: Գերմանիայի ուղղափառ հաւատացեալ ժողովրդեան մեծագոյն մասը Վատիկանեան ժողովոյն որոշմունքները կաթողիկէ քրիստոնէի վայել հպատակութեամբ ու մեծարանօք ընդունած ատեն, մէկ քանի հոգի՝ որոնց մէջ դժբախտութեամբ քահանայք ալ կան, ընդդիմութիւն մը սկսան ցուցնել նոյն տիեզերական սինոհոդոսին վճիռներուն, ի մասնաւորի Հռոմայ Քահանայապետին անսխալականութեան վարդապետութեան դէմ: Այս անուղի-կաթողիկեայ շարժման գլուխն անցաւ Տէօլինկէր քահանան՝ Միւնիխէնի համալսարանին եկեղեցական պատմութեան ուսուցիչը, որ յառաջագոյն իր բազմաթիւ ուղղափառական գրուածքներովը Գերմանիայի մէջ կաթողիկէ հաւա-

### III. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակն Աւստրիայի մէջ:

Յովսէփ Բ. կայսեր մահուան ատենն (տես երես 366) Աւստրիայի մէջ կաթողիկէ եկեղեցւոյ վիճակն սոսկալի էր: Եւ թէպէտ իր յաջորդ կայսերաց ժամանակ՝ ճանչցեր էին ուղղափառ եկեղեցւոյ եւ պետութեան մէջ եղած բնական սահմանը գտնելու, բայց միշտ եկեղեցական բաներու մէջ աշխարհական անհնազանդութիւնը կանգուն մնաց, եւ պետութեան՝ եկեղեցւոյ վրայ բանեցուցած իշխանութիւնը չվերցաւ: Անոր համար 1814էն ետքն Եւրոպայի ամէն ուղղափառ պետութեանց մէջ առանուած եկեղեցական-կրօնական շարժումն Աւստրիա չենք գտներ: Այս վիճակի մէջ մնաց Աւստրիա կաթողիկէ եկեղեցին, մինչեւ ընդհանուր եւրոպական յեղափոխութեան տարին (1848), որ միջոցին Աւստրիա ալ ընդհանուր փոթորիկին բռնուեցաւ, եւ մեծամեծ ու ահեղ դէպքերու առարկան եղաւ: Նոյն ատեն Ֆերդինանդոս կայսրը հրաժարելով՝ աթոռը ժառանգեց Ֆրանկիսկոս Յովսէփ Ա. բարեպաշտ եւ կրօնասէր երիտասարդ կայսրը, որ իր նախահարցմէ եկեղեցւոյ պաշտպան ըլլալու ժառանգութեամբ ընդունած կոչման հաւատարիմ մնալով, կառավարութիւնը ձեռքն առնելուն պէս՝ հոգ տարաւ պետութեան իշխանութենէն եկեղեցին ազատելու: Ուստի 1850 Ապրիլ 18ին տուած կայսերական հրովարտակաւ Արքունի Հաստատութիւնը* (Placetum regium) բոլորովին վերցուց, եւ եպիսկոպոսաց ու անոնց հպատակեալ ուղղափառաց Հռոմայ Պապին հետ ազատ հաղորդութիւն ընելու հրաման տուաւ: Սակայն ասկէ աւելի յայտնի ցուցուց Ֆրանկիսկոս Յովսէփ Ա. կայսրն իբրեւ հաւատարիմ որդի ուղղափառ եկեղեցւոյ Առաքելական Աթոռոյն ունեցած սէրն ու յարումը, 1855ին Աւգոս–

* Արքունի հաստատութիւն ըսելով կ'իմացուի այն գժպատեհ սովորութիւնը, զոր որ ուղղափառ պետութիւններէն ոմանք իբրեւ իրաւունք մը իրենց սեպհականած էին, որուն համեմատ Հռոմայ Ս. Աթոռէն նոյն պետութեան եպիսկոպոսներուն կամ եկեղեցականաց կրօնի կամ եկեղեցական գործքի նկատմամբ գրով խրկուած որ եւ իցէ կարգադրութիւն չէր կրնար հրատարակուիլ, մինչեւ որ պետութիւնը չտեսնէր, չքննէր եւ իւր հաւանութիւնը չտար:

տոս 18ին Պիոս Թ. Քահանայապետին հետ դրած կրօնական դաշինքով։ Այս միաբանագրով (Concordat) եպիսկոպոսաց իշխանութիւն տրուեցաւ հաւատոյ եւ բարոյից վերաբերեալ նիւթերու մէջ իրենց հոգացողութեան յանձնուած հասարակութեանց ինքնիշխան առաջնորդելու, եւ ի մասնաւորի տղոց կրթութեան եւ ուսման վրայ հսկելու։ Բայց այս կրօնական միաբանագրէն յառաջացած օգուտները դժբախտութեամբ յառաջ չեկան, եւ անոր հաստատութենէն ետքը ժողովրդեան կրօնական-բարոյական վիճակին վրայ փոփոխութիւն մը չնկատուեցաւ։ Անոր պատճառն էր եկեղեցւոյ հակառակորդ ազատական կուսակցութեան վնասակար ազդեցութիւնն եւ ժողովուրդն եկեղեցւոյ դէմ գրգռելու անդադար ջանքերը, որուն վերջին ատեններն ազատական կառավարութիւնն ալ սկսաւ թեւ թիկունք ըլլալ։ Ասով եկեղեցւոյ թշնամիք վերջապէս կրցան յաջողցընել, որ նոյն միաբանագրոյն քաղաքական կէտեաց համար ամէնէն նշանաւոր յօդուածները Կրօնական բաւած օրէնքներով փոխուին (1868)։ Այս օրէնքները՝ որոնցմով Աւստրիա ի մասնաւորի քաղաքական ամուսնութիւնը թոյլ կը տրուէր, եւ ժողովրդեան համար հաստատուած ստորին դպրոցներն եկեղեցականաց հսկողութենէն ու առաջնորդութենէն կը հանուէին, խորհրդանոցին թէ ստորին եւ թէ վերին ատենակալներուն մէջ ընդունեցան, եւ կայսրը՝ ժամանակին պարագաներէն ստիպուած ակամայ նոյն օրէնքներն հաստատեց, թէեւ ինչպէս ինք յայտնեց, իր ներքին կրօնական համոզմանը հակառակ էին։ Սակայն Պիոս Թ. Քահանայապետն իր առաքելական պաշտօնէն՝ համաձայն 1868ին Յունիս 21ին Աւստրիայի եկեղեցական յարաբերութեանց վրայ կարդինալաց առջեւը խօսած ատենախօսութեանը մէջ, կրօնական միաբանագրոյն դէմ եղող այս օրէնքները մերժեց ու դատապարտեց՝ իբրեւ եկեղեցւոյ վարդապետութեանը, իրաւանցն ու սահմանադրութեանը հակառակ։ Նոյնպէս անոնց ամէնուն՝ որոնց գործակցութեամբն նոյն օրէնքները հրատարակուած էին, յիշեցուց այն պատիժներն ու բանադրանքները,

գործոց առաքելական սահմանադրութիւններն ու Սր ժողովոց կանոնները դրած են եկեղեցական իշխանութիւնն ու ազատութիւնը բռնաւորողներուն դէմ։ Վերջապէս գովեց Աւստրիայի արժանաւոր եպիսկոպոսներն Աստուծոյ եւ անոր Ս. Եկեղեցւոյն դատը քաջութեամբ պաշտպանելնուն համար։ Ցուցանէր որ ազատական կուսակցութեան այդ, ինչպէս վստահ ենք, կարճատեւ յաղթութիւնը, Աստուծոյ տեսչութեամբն Աւստրիայի ուղղափառ եկեղեցւոյ օգտին կը դառնայ. արդէն Աւստրիայի ուղղափառաց մէջ ընդհանուր շարժում մը կը տեսնուի, եւ կաթողիկէ գիտակցութիւնն երթալով զարթնելու վրայ է։

## 112. Ուղղափառ եկեղեցւոյ վիճակը Թուրքիոյ մէջ:

### ա. Գրիգոր ԺԶ.ին քահանայապետութեան ժամանակ։

Պիոս Է.ին մահուան ատեն՝ Գաղղիայի Յուլիսի յեղափոխութեան պատճառաւ բովանդակ Եւրոպայի խաղաղութիւնը խիստ վտանգի մէջ էր. ի մասնաւորի Իտալիա արտաքոյ կարգի գրգռութիւն մը կը տիրէր։ Այս դժուարին ժամանակը (1831 Փետր. 2) Քահանայապետ ընտրուեցաւ Գրիգոր ԺԶ., որ հազիւ թէ քահանայապետական աթոռն ելաւ, արդէն շատոնց պատրաստուած յեղափոխութեան կրակը Պոլոնիա բռնկեցաւ, եւ շուտ մը Հռոմի տէրութեան մեծ մասին վրայ տարածուեցաւ։ Թէեւ Աւստրիայի միջամտութեամբը յեղափոխութիւնը շուտ մը զսպուեցաւ, բայց անկէ ետքն ալ Հռոմի տէրութիւնը միշտ անհանգարտ էր։ Որչափ ալ այս ներքին շփոթութիւնները Գրիգոր ԺԶ.ին գործունէութիւնն ու մտադրութիւնն իրենց դրաւած էին, սակայն եւ այնպէս արտաքին տէրութեանց վիճակին ու կրօնական յարաբերութիւնն ալ աչքէ չվրիպեցուց։ Իրեն օգնական ունենալով՝ տէրութեան ատենադպիր Լամբրուսքինի կարդինալը, որ թէ՛ իբրեւ գիտուն եւ թէ՛ իբրեւ քաղաքագէտ անձ մեծ անուն ունէր, ուղղափառ կրօնքին բարօրութեան եւ յառաջացման անխոնջ աշխատեցաւ։ Գրիգոր ԺԶ.

իրենք զիրենք բոլորովին հարազատեցուցին, եւ Հռոմի տէ-
րութեան մէջ ալ ապստամբութիւն ելաւ: Ապստամ-
բութիւնն այնչափ յառաջ գնաց, որ Քահանայապետ-
ութին կեանքը վտանգի մէջ իյնալով՝ Պիոս Թ. Գաղ-
ղիայի ու Պաւարիայի դեսպաններուն օգնութեամբը
պարզ քահանայի զգեստով գիշերանց Հռոմէն փախաւ
(1848 Նոյ. 25) եւ Կայետա քաղաքը գնաց, ուր Նէա-
պոլսոյ Փերդինանդոս Թագաւորէն մեծ պատուով ըն-
դունուեցաւ: Անկէ ետքը Հռոմ Հասարակապետու-
թիւն հաստատուեցաւ, եւ Ժողովրդոց գլխաւորու-
թեամբ առժամանակեայ կառավարութիւն մը դրուե-
ցաւ, որ Հրատարակեց թէ Քահանայապետին աշխար-
հական իշխանութիւնը դադրած է: Ցեղափոխականաց
այս ընթացքին եւ Հռոմի մէջ գործուած անօրէնու-
թիւններուն, զինեալ միջամտութիւն ընելու յորդորե-
ցին ուղղափառ տէրութիւնները, որոնցմէ Քահանայա-
պետն արդէն յառաջագոյն օգնութիւն խնդրած էր:
Գաղղիացւոց Ուտինոյ զօրապետը Հռոմ քաղաքն յար-
ձակմամբ առաւ (1849 Յուլիս 4), առժամանակեայ
կառավարութիւնը կործանեց, եւ անոր տեղ նոր կա-
ռավարութիւն մը դրաւ Քահանայապետին անուամբը:
Բայց Պիոս Թ. հազիւ տարի մը ետքը (1850 Ապրիլ
12) Հռոմ դարձաւ եւ մեծ ցնծութեամբ ժողովրդէն
ընդունուեցաւ:

Անկէ ետքը Քահանայապետը կրցաւ մէկ քանի
տարի խաղաղութեամբ թէ Հռոմի տէրութեան գոր-
ծոց եւ թէ բովանդակ եկեղեցւոյ խնդրութեանց
անդրադառնալ: Իր անխոնջ գործունէութեան եւ
եկեղեցւոյ վրայ ցուցուցած խնամոց հոգւոց արդիւնք-
ներն են իր ժամանակին այլեւայլ ուղղափառ իշխանաց
հետ դրուած կրօնական դաշինքները, նոյնպէս մէկ
քանի բողոքական տէրութեանց մէջ ուղղափառաց
համար հաստատուած առաջին նուիրապետութիւն-
ներն ու եպիսկոպոսական աթոռները: Բայց Պիոս
Թ. ին նշանաւոր գործքերէն մէկն եղաւ ամենայն
Փրկչին մօրը Ս. Կոյս Մարիամ Աստուածածնի Անա-
րատ Յղութիւնն իբրեւ հաւատոյ վարդապետութեան
մին հրատարակելը: Պիոս Թ. արդէն 1849ին կայե-

դայէն ամէն Թեմական եպիսկոպոսաց շրջաբերական թուղթ մը գրած եւ անոնց ամէն մէկուն յանձնած էր, որ իրենց վիճակներուն մէջ հրապարակական ա-ղօթքով Աստուծմէ լոյս խնդրելէն ետքը, առանձին առանձին թղթով Աստուծոյ Մօրն Անարատ Յղու-թեան վրայ ունեցած կարծիքնին յայտնեն։ Եպիսկո-պոսք յօժարամիտ հնազանդեցան Քահանայապետին հրամանին, եւ 580 հովիւք եկեղեցւոյ իրենց կարծիքը գրեցին։ Այսչափ եպիսկոպոսաց բազմութեան մէջէն 4 հոգի միայն նոյն ատեն այս վարդապետութեան ընդդիմանալ մը ցուցուցին. իսկ 36ը թէեւ բացայայտ Անարատ Յղութեան վարդապետութիւնը կ'ընդու-նէին եւ կը խոստովանէին, բայց այն միջոցին հանդի-սական վճիռ մը տալը պատշաճ չէին սեպեր։ Անոր ներհակ 540 եպիսկոպոսք չէ թէ միայն նոյնը կը դաւանէին, այլ նաեւ կ'աղաչէին Ս. Քահանայապե-տին, որ իբրեւ Գլուխ Եկեղեցւոյ իր անդառնալի վճռովը Ս. Կուսին Անարատ Յղութեան վարդապե-տութիւնն իբրեւ հաւատոյ մաս հաստատէ։ Քահա-նայապետը տեսնելով թէ արեւմտեան եւ թէ ա-րեւելեան եկեղեցիներուն այս նիւթիս մէջ ունեցած համաձայնութիւնը, եւ բոլոր եպիսկոպոսաց եւ ընդհանուր ուղղափառ հաւատացելոց այս խնդրին որո-շելու դարերէ վեր ունեցած սաստիկ փափաքը, աշխարհ-քիս ամէն կողմերէն Հռոմ գումարուած կարդինալաց, արքեպիսկոպոսաց եւ եպիսկոպոսաց (200էն աւելի) ներկայութեամբը՝ 1854ին Դեկտ. 8ին Ս. Կուսին Յղութեան տօնին օրը հանդիսապէս հրատարակեց Անճառելին Աստուած հաւատոյ կոնդակը, որուն մէջ հետեւեալ խօսքերով կը սահմանէր Ս. Կուսին Անա-րատ Յղութեան վարդապետութիւնը. Յիսուսի Քրիս-տոսի Տեառն մերոյ, սրբոց առաքելոց Պետրոսի եւ Պօ-ղոսի եւ Մեր իշխանութեամբը կը յայտնենք, կը ծանուցա-նենք եւ կը սահմանենք, թէ այն վարդապետութիւնը, որ ամենասուրբ կոյս Մարիամ իր Յղութեան առաջին վայր-կենին մէջ ամենակարող Աստուծոյ առանձին շնորհօքն ա-րտօնութեամբը, եւ Յիսուսի Քրիստոսի՝ մարդկային ազգի Փրկչին արժանեաց նկատմամբը, սկզբնական մեղաց ամէն

թուոյն ինչպէս նաեւ եկեղեցականաց դէմ լրագրոց մէջ թշնամական յարձակումներ սկսան ըլլալ։ Վերջապէս երբոր Գաւուր կոմսը պաշտօնարանին գլուխն անցաւ, եկեղեցւոյ տուապանքներն իրենց վերջին ծագը հասան. վանքերուն մեծ մասը ջնջուեցաւ եւ ինչքերնին յափշտակուեցաւ։ Վիկտոր Էմմանուէլ թագաւորը՝ միտքը դրած ըլլալով իր նախորդին պէս Իտալական ազգայնութեան ու անկախութեան դրօշակիր ըլլալ, Լոմպարտեան-Վենետական թագաւորութիւնն եւ ետքէն բովանդակ Իտալիան Սարդինիայի հետ միացընելու ետեւէ էր։ Այս գաղափարն Իտալիայի յեղափոխական կողմնակցութիւնը ծափահարութեամբ ընդունեցաւ, եւ նոյն իսկ արտաքին տէրութիւններէն ալ մէկ քանիին սոր ձեռքի տակէն օգնեցին։ Բայց այս նպատակիս հասնիլն անկարելի էր, քանի որ Աւստրիայի զօրութիւնն Իտալիայի մէջ կոտրածչէր։ Ուստի Սարդինիա Գաղղիայի կայսեր հետ միաբանած՝ Աւստրիայի դէմ պատերազմի ելաւ (1859)։ Այս աղէտալի պատերազմին մէջ Աւստրիացիք յաղթուելով՝ Լոմպարտիա գաւառը Սարդինիայի հետ միացաւ, եւ Նաբոլէոն Գ. վեհափառ կայսրն Իտալիայի վրայ մեծ ազդեցութիւն ստացաւ։ Այս յաջողութենէն հոգի առած՝ յեղափոխականք անկէ ետքն աւելի ժրութեամբ սկսան ետեւէ ըլլալ Իտալիա մէկ ամբողջ տէրութեան մը միացընելու։ Սարդինիա 1859ին Եկեղեցւոյ տէրութեան մեծ մասը տաճարակապուտ անօրէնութեամբ յափշտակելէն ետքը, նոյն կերպով հետզհետէ տիրեց Բարմայի, Մոտենայի ու Թոսքանայի դքսութիւններուն եւ Նէապոլսոյ թագաւորութեան։ Բայց յեղափոխականք ասով ալ գոհ չեղան. իրենց բաղձանքն էր քահանայապետական երկիրներուն մէկալ գաւառներն ալ առնուլ եւ Հռոմ Իտալիայի մայրաքաղաք ընել։ Այս նպատակաւ Կարիպալտիին՝ Իտալացւոց դիւցազին առաջնորդութեան տակ ազատակամ գնդեր կազմուեցան, որոնք 1860ին վերջերը քահանայապետական երկիրները յարձակեցան։ Ասոնց կռնակ կեցած էր Սարդինիայի տէրութիւնը, որ իրենց դրամով ու զէնքով կ՚օգնէր։

Թէեւ Քահանայապետին երկիրներն այս անիրաւ յարձակմանց դէմ պաշտպանելու համար Լամորսիէր ու Բոմոտան արի զօրապետներն սակաւաձեռն բայց արիասիրտ զօրաց բանակ մը կազմած էին, սակայն ասոնք 1860ին Սեպտ. 18ին Գասդելֆիտարտոյի քով տրուած ճակատամարտին մէջ Սարդինիացւոց չորեքպատիկ զօրքէն ընկճեցան: Ասոր վրայ Սարդինիա քահանայապետական երկիրներուն մեկալ գաւառներն ալ Իտալիայի հետ միացուց. իսկ Քահանայապետին ձեռքը մնաց միայն Հռոմ քաղաքը շրջակայ տեղերով (ընդ ամէնը 700,000 բնակիչ):

Պիոս Թ. Քահանայապետը 1860ին Սեպտ. 28ին կարդինալաց առջեւն ըրած ատենախօսութեանը մէջ՝ Եկեղեցւոյ վրայ եղած այս սեղանակապուտ յարձակմանց դէմ ձայնը բարձրացուց, եւ միանգամայն այս չարեաց պատճառ ու մասնակից եղողները բանադրեց: Ասոր վրայ նաեւ բոլոր Եւրոպայի եպիսկոպոսները միաբան իրենք զիրենք Քահանայապետին աշխարհական իշխանութեան կանգուն մնալուն կողմը յայտնեցին, եւ բովանդակ ողջամիտ քրիստոնեայք այս մեծեղեռն անօրէնութեան դէմ իրենց արդար զայրոյթը ցուցուցին: Սակայն եւ այնպէս Սարդինիայի տէրութիւնն այս ամէն բան բանի տեղ չդնելով, նոր առած գաւառներուն մէջ անօթալի բռնութիւններ սկսաւ գործել: Կրօնաւորաց կարգերը ջնջուեցան, եկեղեցւոյ ստացուածքները յարքունիս գրաւուեցան, աստուածային պաշտամունքն ու եկեղեցւոյ պաշտօնեաներն ամէնուն առակ նշաւակի եղան, բարձրաստիճան եկեղեցականք իրենց պաշտօնէն մերժուեցան կամ շղթայակապ բանտ նետուեցան, որով շատ մը եպիսկոպոսական աթոռներ դատարկ մնացին: Ինչ ողբալի վիճակ ամբողջ ուղղափառ տէրութեան մը մէջ:

Այս ամէն տառապանաց ու ծանր նեղութեանց մէջ՝ Եկեղեցւոյ ծայրագոյն Գլուխն իր պարտուց հաւատարիմ մնաց, եւ Աստուծոյ վրայ ունեցած վստահութիւնն երբեք չկորսնցուց: Թէեւ եկեղեցւոյ թշնամիք ամէն կերպ խաբէութիւն, նենգութիւն եւ նաեւ բռնութիւն ի գործ դրին զինքը համոզելու,

որ աշխարհական իշխանութենէն հրաժարի կամ եղած լմընցած իրերը ճանչնայ, սակայն Պիոս Թ. իր դատին արդարութեան ու սրբութեան վրայ վստահացած, բոլոր աշխարհքի առջեւ յայտնեց, որ իբրեւ Յիսուսի Քրիստոսի փոխանորդ՝ իր նախորդներէն իրեն յանձնուած երկրին եւ ոչ փոքր մէկ մասը կրնայ ձգել կամ անկէ հրաժարիլ, եւ թէ իր նուիրական ու անանօրինելի պարտքերէն մէկը կը համարի եկեղեցւոյ ստացուածքն ինչպէս որ առած է, նոյնպէս իր յաջորդին յանձնել: Չենք կրնար (Non possumus). ասիկայ էր Պիոս Թ.ին իրեն եղած ամէն անիրաւ առաջարկութեանց տուած կտրուկ բայց իմաստնալից պատասխանը: Դարձեալ՝ նեղութեանց մէջ ստուգիւ Պիոս Թ. մեծ քահանայապետն, յեղափոխութեան անսանձ ու խռովայոյզ գործունէութեան դէմ ամէն ատեն կարգի կանոնի, արդարութեան եւ օրինաց պաշտպան կեցաւ, եւ բազմապատիկ անձկութեանցը մէջ՝ բովանդակ տիեզերքը սփռուած ուղղափառաց հոգն ու Եկեղեցւոյ տեսչութիւնը վայրկեան մը աչքէ չհեռացուց*:

Հռոմ՝ կաթուղիկէ միութեան կեդրոնը, դեռ յեղափոխութեան ձեռքն ինկած չըլլալով, Քահանայապետը կրցաւ ազատութեամբ իր առաքելական պաշտաման վերաբերեալ մէկ քանի ծանրակշիռ եկեղեցական գործողութիւններ կատարել: Նախ 1862ին Պենտեկոստէին՝ Ճաբոնի մարտիրոսաց սրբացուցման հանդէսը կատարեց, որուն ներկայ գտնուեցան 300 եպիսկոպոսք, որ միաբան ու միաշունչ Քահանայապետին քաղաքական անկախութեան եղած բռնութեան դէմ բողոքեցին: Քանի մը տարի ետքը (1864 Դեկտ. 8) Քահանայապետը բոլոր ուղղափառ եպիս-

* Եթէ մտածուի որ բովանդակ ուղղափառ եկեղեցւոյ կառավարութեան համար որչափ ստակ հարկաւոր է, եւ թէ 1860էն վեր Քահանայապետն իր երկիրներէն ունեցած հասոյթները կորսնցուցած է, անըմբռնելի կ'երեւայ որ Քահանայապետն ինչպէս կրցեր է իր պաշտաման ամէն պարտքերը լեցուն կատարել: Սակայն ասոր մէջ յայտնի կը տեսնուի Աստուծոյ՝ իր սուրբ Եկեղեցւոյն վրայ ցուցուցած առանձին պաշտպանութիւնը: Այս պաշտպանութեան արդիւնքն է՝ ամէն ուղղափառ ազգութեանց հաւատացելոց մէջ՝ Քահանայապետին օգնելու համար տեսնուած եռանդը. ամէն երկիրներէն՝ մանաւանդ թէ ամէն քաղաքներէն տասնեւերկու տարիէ վեր անընդհատ ազատակամ սիրոյ տուրքեր (Պետրոսի ստակը ըսուած) եւ դրամական նպաստներ Հռոմ կը խուռնին՝ այս նեղ վիճակին մէջ Քահանայապետին օգնութեան հասնելու համար:

կոպտաց շրջաբերական թուղթ մը հանեց, որուն հետ յարակցեալ հռչակաւոր Ցուցակն (syllabus) մէջ, 80 նախադասութիւններով կրօնի վարդապետութեանց եւ քաղաքական օրինաց դէմ արդի ժամանակս շատ տարածուած ամպարիշտ ու վնասակար մոլորութիւնները կը դատապարտէր: Շատ չանցաւ, քրիստոնէական հաւատոյ ախոյեանն՝ Պետրոս ու Պաւղոս առաքեալներուն մարտիրոսութեան ութեւտասներորդ հարիւրեակին (1867 Յուն. 29) հանդէսը, նոր առիթ մը ընծայեց կաթուղիկէ եկեղեցւոյ եպիսկոպոսներուն երրորդ անգամ Քրիստոսի փոխանորդին քովը ժողվելու: Այս հանդիսին ներկայ գտնուեցան 500էն աւելի եպիսկոպոսք, 15,000 քահանայք եւ 100,000 կաթուղիկէ հաւատացեալք: Նոյն տարին Քահանայապետն իր թշնամեացը դէմ զինուց յաղթութիւն մ'ալ ըրաւ: Յամի 1866ին Դեկտ. 15ին Գաղղիացւոց զօրքը Հռոմէն հեռանալէն ետքը, Իտալիայի յեղափոխականաց սրտին մէջ՝ Հռոմ Իտալիայի մայրաքաղաք ընելու փափաքը դարձեալ արծարծեցաւ: Իտալիայի մէկ ծայրէն մինչեւ մէկալ ծայրը Հռոմ կամ Մահ աղաղակն սկսաւ լսուիլ: Հետեւեալ տարին Հոկտեմբերի սկիզբները՝ Կարիպալտիին ազատական գնդերը, որոնց ձեռքի տակէն կ'օգնէր Իտալիայի տէրութիւնը, Եկեղեցւոյ երկիրը յարձակեցան, եւ անլուր անագորունութիւններ սկսան գործել: Քահանայապետին զօրքը՝ որ գրեթէ մինչեւ Հռոմի պարիսպներն ետ քաշուած էր, Գաղղիացւոց սակաւաձեռն բանակէ մը օգնութիւն գտնելով՝ Նոյեմբերի 3ին Մենդանայի քով Կարիպալտեաններն չարաչար զարկաւ, եւ Կարիպալտի հազիւ փախչելով կրցաւ ազատիլ: Այս յաղթութիւնը՝ բոլանդակ ուղղափառ հաւատացեալներն եւ եկեղեցւոյ հաւատարիմ որդիքն անպատմելի ուրախութեամբ լեցուց: Բայց Պիոս Թ.ին իբրեւ գերագոյն Գլուխ եկեղեցւոյ ըրած ամէնէն նշանաւոր գործքն է, Հռոմ գումարած Վատիկանեան տիեզերական ժողովը: Իննեւտասն դարերու փորձն աներեւ ցուցուցած է, որ ընդհանուր ժողովներն ամէնէն զօրաւոր եւ ազդու միջոցներէն մէկն են, ուղղափառ հաւատոյ

յաղթանակելուն, մոլորութեանց բարձման եւ եկե-
ղեցւոյ անդամոց նորոգութեան: Պիոս Թ. մեծ ցաւով
կը տեսնէր վերջի ատեններս մարդկային ընկերու-
թեան թէ կրօնական, թէ գիտնական եւ թէ տնտե-
սական սահմանին մէջ ընդհանուր տարածուած մոլո-
րութիւններն եւ բարուց ապականութիւնը, եւ շատոնց
արդէն կը մտածէր ընդհանուր ժողովով մը այս ամէն
չարեաց դարման տանելու: Ի մասնաւորի 1867ին Ս. Պե-
տրոսի ու Պաւղոսի մարտիրոսութեան տասն՚ութերորդ
հարիւրեակին առթիւն ուղղափառ եպիսկոպոսաց Հռոմ
գումարուած ատեն, Սրբազան Քահանայապետը տիե-
զերական ժողովոյ մը հարկաւորութեան վրայ խօսք
ըրած, եւ միանգամայն մօտ ատեններս ժողովը գու-
մարելու միտքը յայտնած էր: Յաջորդ տարին (1868
Յունիս 20) կոնդակով մը, որուն սկիզբն է Յաւիտե-
նական Հօր, ըլլալու ընդհանուր ժողովը Հռոմ կանչեց
(1869 Դեկտ. 8) եւ բոլոր ուղղափառ աշխարհքիս ե-
պիսկոպոսները հոն հրաւիրեց: Ասկէ զատ Պիոս Թ.
նոյն տարւոյն Սեպտ. 8ին գրած առաքելական թըղ-
թով մը՝ Հռոմայ Գահին հետ հաղորդութեան մէջ
չեղող արեւելածէս եկեղեցեաց եպիսկոպոսները
հրաւիրեց, որ գան այս սիւնհոդոսին ինչպէս իրենց նախ-
նիքը Լիոնի ու Փլորենտիայի ժողովներն եկած էին, միաբա-
նութիւնն ու խաղաղութիւնը նորոգելու համար: Քահա-
նայապետն ուրիշ թուղթ մ'ալ բողոքականաց եւ
ուղղափառ եկեղեցիէն բաժնուած աղանդաւորաց
գրեց. բայց դժբախտութեամբ Քահանայապետին ի
լրութենէ սրտի եւ հայրական սիրով գրած խօսքերն,
երկու հասարակութիւններէն ալ պարտուպատշաճ
ընդունելութիւն չգտան: Սահմանեալ ժամանակին
(1869 Դեկտ. 8) յուրախութիւն ամէն ճշմարիտ կա-
թուղիկեայ հաւատացելոց՝ Վատիկանեան ընդհանուր
ժողովը Քահանայապետին անձամբ մեծ հանդիսիւ բա-
ցաւ, որուն ներկայ գտնուեցան 700էն աւելի եպիսկո-
պոսք՝ որ աշխարհքիս ամէն կողմերէն եկած էին: Մին-
չեւ ժողովոյն ընդմիջահատիլը՝ չորս հրապարակական
նիստ եղաւ: Երրորդ հրապարակական նիստին մէջ
(1870 Ապրիլ 24) Քահանայապետը հաստատեց

Ուղղափառ հաւատոյ վերաբերեալ սահմանադրութիւնը (Constitutio de fide Catholica), զորն որ 665 Հայրք միաբան հաւանութեամբ ընդունած էին. իսկ չորրորդ հրապարակական նիստին մէջ (1870 Յուլիս 18) Քրիստոսի եկեղեցւոյն վրայ առաջին վերաբերեալ սահմանադրութիւնը (Constitutio prima de Ecclesia Christi), որ Հռոմայ Քահանայապետին բովանդակ ուղղափառ եկեղեցւոյ վրայ ունեցած իրաւաբանական գերագոյն իշխանութեան, եւ հաւատոյ ու բարուց վերաբերեալ խնդիրներու վրայ տուած վճիռներուն մէջ անսխալական ըլլալուն վրայ կը խօսէր, 535 եպիսկոպոսաց ձայնիւն (2 հոգի ոչ) որոշուեցաւ, եւ Քահանայապետէն հաստատուեցաւ: Չորրորդ հրապարակական նիստէն ետքը Գաղղիայի ու Գերմանիայի մէջ բացուած պատերազմին պատճառաւ ժողովն ընդհատեցաւ, եւ ետքէն Հռոմի վրայ եկած դժբախտ արկածները զՔահանայապետը ստիպեցին հրամանագրով մը (1870 Հոկտ. 20) ժողովն անորոշ ժամանակի ձգելու:— Վստահ ենք, որ Վատիկանեան ընդհանուր ժողովը ժամանակին իր փրկաւէտ գործքը դարձեալ ձեռք կ՚առնու, եւ վերջապէս գլուխ կը հանէ ի մեծագոյն օգուտ Եկեղեցւոյ եւ բովանդակ մարդկութեան:

Բայց անտարակոյս էր՝ որ քրիստոնէութեան եւ ուղղափառ եկեղեցւոյ թշնամիները, կաթուղիկէ հաւատոյ զօրութեան եւ միութեան այս մեծահանդէս ցոյցին դէմ անգործունեայ պիտ՚ որ չկենային: Արդէն ժողովը գումարուելէն յառաջ ամէն միջոց ի գործ դրած էին զանիկայ խափանելու. բայց երբոր անիկայ չյաջողեցաւ, ան ատեն ամպարիշտ ու մոլար գրութիւններով եւ սուտ զրպարտութիւններով հաւատացեալ ժողովուրդը Վատիկանեան ժողովոյն դէմ գրգռելու, եւ եկեղեցւոյ ու տէրութեանց մէջ թշնամութիւն ձգելու ետեւէ եղան: Այս յուզման գլխաւորաբար պատրուակ առնուեցաւ Հռոմայ Քահանայապետին անսխալականութեան վարդապետութիւնը, որուն դէմ ի մասնաւորի Գերմանիա մեծ հակառակութիւն ելաւ (տես Հ. 110): Եւ որովհետեւ այս հաւատոյ վարդապետութիւնն ոմանց համար

ցայսօր քար գայթակղութեան եղած է, եւ եկեղե-
ցւոյ թշնամիք ամէն կերպ միջոցներով անոր դէմ կը
մաքառին, եւ հաւատացելոց միտքն ու միամտութիւնը
պղտորել կ'ուզեն, անոր համար հոս կը դնենք տիե-
զերական ժողովոյն այս նիւթիս վրայ տուած վճիռը։
Վատիկանեան ժողովոյն Հռոմայ Քահանայապետին
անսխալականութեան վրայ ըրած որոշումը, զորն որ
Ս. Քահանայապետը 1870 Յուլիս 18ին եղած հրա-
պարակական նիստին մէջ հաստատեց, եւ բովանդակ
ուղղափառ տիեզերաց հրատարակեց, հետեւեալն է.

"Քրիստոնէական հաւատոյ սկիզբէն մինչեւ հիմայ
եկած աւանդութեան հաւատարիմ մնալով՝ ի փառս
Աստուծոյ մեր Փրկչին, ի բարձրացումն ուղղափառ
կրօնքին եւ ի փրկութիւն քրիստոնեայ ժողովրդոց,
հաւանութեամբ Ս. Ժողովոյս կը վարդապետենք եւ
իբրեւ Աստուծմէ յայտնուած հաւատոյ մաս կը սահ-
մանենք՝ Որ Հռոմայ Քահանայապետն՝ երբոր յԱթոռոյ (ex
cathedra) կը խօսի, այսինքն երբոր իբրեւ Հովիւ ու Վար-
դապետ բովանդակ Քրիստոնէից ունեցած պաշտօնն է գործ
դնելով՝ գերագոյն առաքելական իշխանութեան զօրու-
թեամբը, ընդհանուր Եկեղեցին պարտաւորող հաւատոյ
կամ բարոյից վերաբերեալ վարդապետութիւն մը կը սահ-
մանէ, յանձին Ս. Պետրոսի իրեն խոստացուած աստուա-
ծային օգնականութեամբ՝ այն անսխալականութիւնն ունի,
որով աստուածային Փրկիչն իր Եկեղեցին ճոխացուցած է
հաւատոյ կամ բարոյից վերաբերեալ վարդապետութիւն մը
սահմանած ատեն. ուստի եւ Հռոմայ Քահանայապետին այս
վճիռներն իրենք իրենցմէ եւ ոչ թէ ետքէն վրան եկած եկե-
ղեցւոյ հաւանութեամբն անփոփոխելի են։ — Եթէ մէկը՝
զոր Աստուած չընէ, մեր այս վճռոյն հակառակելու յան-
դըգնի, նզովեալ ըլլայ։"

Վատիկանեան ժողովոյն այս հաւատոյ վարդա-
պետութեան վճռէն կրնայ ամէն մարդ իմանալ, թէ
անսխալականութեան հակառակորդները կամ տգիտու-
թեամբ եւ կամ չարութեամբ սոյն վարդապետական
վճռոյն ներքեւ այնպիսի բաներ կ'ուզեն հասկընալ, որ
մէջն ամենեւին չեն բովանդակուիր։ Նախախնամու-
թեան զարմանալի տրամադրութիւններէն մէկն ե-

ղաւ, որ ժողովոյն այս նշանաւոր գործոյն հետ մի եւ նոյն օրը (Յուլիս 18) պատահեցաւ Աստուծոյ Գաղղիայի վրայ բերած պատուհասին՝ այսինքն գերմանական-գաղղիական պատերազմին սկիզբը: Այս աղէտալի պատերազմը՝ զորն որ Քահանայապետը դժբախտութեամբ չկրցաւ խափանել, նոր առիթ մ'եղաւ իրեն նեղութեան ու տառապանաց: Ինչու որ 1870ին Աւգոստոս ամսոյն սկիզբները Գաղղիացւոց զօրքը Հռոմէն հեռանալով, Քահանայապետն իր աշխարհական իշխանութեան վերջին մնացորդն ալ կորսնցուց: Նոյն տարւոյն Սեպտ. 20ին Իտալացւոց զօրքը բռնութեամբ Հռոմ մտաւ, եւ զՔահանայապետն իր պալատին մէջ բանտարգել ըրաւ: Ամենուն ծանօթ են անկէ ետքը Հռոմի մէջ պատահածները. եկեղեցւոյ ինչքերը, մուտքերն ու ստացուածքները յանդուգն ժպրհութեամբ յափշտակուեցան, փառաւոր եկեղեցիներն իրենց զարդերէն մերկացուեցան, կրօնաւորաց վանքերն աշխարհական գործածութիւններու դարձան, Աստուծոյ նուիրուած կուսանք լլկուեցան եւ կրօնաւորք անգթութեամբ հալածուեցան: Այս ամէն չարիքները թէ Հռոմի մէջ եւ թէ ուրիշ տեղեր Իտալիայի տէրութիւնն Եկեղեցւոյ անբռնաբարելի իրաւանց դէմ գործած ատեն, անդիէն բովանդակ ուղղափառ աշխարհքին այնպէս հաւատացընել կ'ուզէր, որ Քահանայապետին վերին հոգեւոր իշխանութիւնն ամէն կապերէ բոլորովին արձակել եւ ամէն տեսակ ազատութիւն շնորհել կ'ուզէ: Այս նպատակաւ խորհրդանոցին մէջ Երաշխաւորութեան օրէնքներ ալ սահմանուեցան. բայց Քահանայապետը բոլոր ուղղափառ եպիսկոպոսաց հանած շրջաբերական թղթով մը այս օրէնքները մերժեց, եւ յայտնեց որ Առաքելական Գահն իւր ազատութիւնն ու անկախութիւնն անիրաւութեամբ յափշտակուած ամբողջ երկիրներն ետ առնելով միայն կրնայ վերստին ստանալ: Այս բանիս կատարման բաղձալը ամէն ուղղափառ քրիստոնէի թէ պարտք եւ թէ փառք է: Ինչու որ Քահանայապետին անկախութիւնը բոլոր քրիստոնէութեան խաղաղութեան, պատուոյն եւ փառաց հարկաւոր է:

Ի սկզբանէ վեր ուղղափառ ազգերուն փոյթն ու ջանքն ան եղած է, որ Եկեղեցւոյ Գլուխն անկախ վի֊ճակի մէջ ըլլայ, եւ ուղղափառք չեն կրնար եւ պէտք չեն թոյլ տալ, որ ժողովուրդ կամ ազգ մը ընդհա֊նուր Եկեղեցւոյ Գլխոյն ազատութիւնը վերցընէ: Թէ Քահանայապետն իր աշխարհական իշխանութիւնն օր մը դարձեալ ձեռք պիտ'որ բերէ, ամենայն վստահու֊թեամբ կը սպասենք գլխաւորաբար Աստուծոյ Նախա֊խնամութենէն, որ եկեղեցւոյ պատմութեան գրեթէ երկու հազար տարուան ընթացքին մէջ իր զօրութեան հիանալի նշանները կաթուղիկէ եկեղեցւոյ վրայ շատ անգամ ցուցուցած է: Ստոյգ է որ դառն ու ցաւալի են այս վերջի ժամանակները պատահած դէպքերը կաթուղիկէ եկեղեցւոյ ամէն հաւատարիմ որդւոցը. վասն զի ինչ աւելի տխուր բան կայ քան Եկեղեցւոյ ոխերիմ թշնամեաց այլեւայլ ուղղափառ տէրու֊թեանց մէջ կանգնած ողբալի յաղթանակները. ինչ աւելի ցաւալի բան, քան այն պարսաւելի բռնու֊թիւնք, որն որ Քրիստոսի Տեղակալին Նուիրական ան֊ձին դէմ ի գործ դրուեցաւ, զինքն իր պալատին մէջ գերի պահելով: Ստուգիւ այս դէպքերուն վրայ կրը֊նայ ոմանց սիրտը յուսահատ ըլլալ եւ կարծմոփիլ: Բայց ով որ Յիսուսի Քրիստոսի՝ Եկեղեցւոյ ըրած ան֊սուտ խոստումներուն կը հաւատայ, այնպիսին ինք զինքը կարծմոփութեան չի մատներ, եւ որուն եկեղե֊ցւոյ առաջին դարերու պատմութիւնը ծանօթ է, այնպիսին գիտէ, որ եկեղեցին շատ աւելի մեծ վտանգ֊ներէ ու դժուարին վիճակներէ ազատած է: Պետրոսի Նաւակը՝ փոթորկի ու ալէկոծութեան վարժած է: Որ֊չափ անգամ ժայռերու մէջ մտնելով եւ պտոյտներէ պաշարուելով անզերծանելի կորստեան մէջ երեւցած է, բայց մրրիկներն անցան, հովերը դադրեցան, եւ ան ատեն խորտակեալ պետութիւններն ու ջախջախեալ թագերն եզերաց վրայ ջրասոյզ Նաւի մը բեկորներուն նման ծփեալ տեսնուեցան, ուր որ Պետրոսի Նաւակն ողջ ու անարատ մնացած էր: Ստոյգ է յեղափոխու֊թիւնը կրցաւ վերջապէս Քահանայապետին աշխար֊հական իշխանութիւնն առ ժամանակ մի կործանել,

բայց առաւ Կեփայեան Վէմը խախտել անկարելի եղաւ։ Այսր ներհակ ամէն ազգաց ուղղափառ ժողովրդեան՝ Առաքելական Գահին եւ Սրբազան Հօր ունեցած սէրն ու մեծարանքը նոր կենդանութիւն եւ հաստատութիւն առաւ։ Պիոս Թ. իբրեւ Վատիկանու կալանաւոր բովանդակ ուղղափառութեան, մանաւանդ թէ նոյն իսկ ընդհանուր քրիստոնէութեան համակրութիւնն իրեն վաստըկած է։ Եղած չէ Քահանայապետ մը՝ որ ուղղափառ հաւատացելոց կողմանէ սիրոյ եւ հպատակութեան այնչափ երեւելի ցոյցեր ընդունի ինչպէս Պիոս Թ.։ Աստուծոյ նախախնամութեան տրամադրելովն առիթ ալ չպակսեցաւ, որուն մէջ հաւատացեալք կարենային իրենց մեծարանքը Քահանայապետին ցուցընել։ Յամի 1869ին Ապրիլի 11ին Պիոս Թ. Քահանայապետը կատարեց իր յիսնամեայ քահանայութեան Յոբելեանը, որ օրը թէ Պիոս Թ.ին եւ թէ բովանդակ ուղղափառ աշխարհքին համար ցնծութեան տօն մըն էր։ Բայց Աստուած Պիոս Թ. Քահանայապետին ուրիշ առանձնաշնորհութիւն մ'ալ պահեց, զորն որ եկեղեցւոյ սկիզբէն մինչեւ հիմայ յաջորդող 258 Քահանայապետաց եւ ոչ մէկուն շնորհած է։ Պիոս Թ. 1871ին Յունիսի 16ին կատարեց իր Քահանայապետ ընտրուելուն 25տարւան Յոբելեանը։ Եղած չէ Քահանայապետ մը, որ երեքկարգեան խոյրն այնչափ երկայն ատեն կրած ըլլայ, ինչպէս Պիոս Թ., բայց նաեւ չէ եղած Քահանայապետ մը, որ իր կառավարութեան ատեն այնպիսի նշանաւոր օրեր տեսած եւ քահանայապետութեան ժամանակն այնպիսի զարմանալի արկածներով լի ըլլայ, ինչպէս Պիոս Թ.։ Եկեղեցւոյ Հիմնադիրը՝ Նեղութեան բաժակը, զորն որ իւր աշակերտաց կանխաւ գուշակեց, շատ դարերէ վեր իր երկրաւոր Տեղապահներէն մէկուն այնպէս լի ու զեղուն չափով չէ մատուցած ինչպէս հիմայ տիրող Քահանայապետին։ Իր Քահանայապետութեան պատմութիւնը՝ նեղութեան, չարչարանաց, աքսորանաց, հալածանաց, դառնութեանց ու թշնամանաց անընդհատ շարք մըն է, եւ արժանի նախագուշակեալ խաչ ի խաչէ (crux de cruce) վերա-

*դիր անուան։ Երանի՜ թէ Եկեղեցւոյ թշնամիները՝ եկեղեցւոյ մեծարելի Գլխոյն նախախնամութեան ըրած այս անօրինակ շնորհաց մէջ՝ ճանչնային Աստուծոյ ձեռռաց մատը եւ խոստովանէին թէ՝ Ուրեմն Աստուած իրեն հետ է։ — Վերջապէս բովանդակ կաթուղիկէ Եկեղեցւոյ հետ կ'ուղղենք մեր եռանդագին պաղատանքն առ Աստուած, եւ կը խնդրենք որ հաճի քրիստոնէութեան Հոգեւոր Ս. Հօր կեանքն երկար պահել, եւ շնորհէ որ Պիոս Թ. մեծ քահանայապետն՝ այնչափ տառապանքներէ ետքը, որոնց արիաբար դիմացաւ, կարող ըլլայ տեսնել Եկեղեցւոյ յաղթանակը եւ ուրախանալ, յառաջ քան երկինք երթալը հոն իր վաստակոց ու առաքինութեանց վարձքն ընդունելու համար։*

# ՎԵՐՋԱԲԱՆ

Ահա այս է Քրիստոսի Եկեղեցւոյն իր սկիզբէն մինչեւ արդի ժամանակուան պատմութիւնը։ Ընկերացանք իր աշխարհէ աշխարհ եւ ազգութենէ ազգութիւն ըրած գրեթէ երկու հազար տարուան դժուարին ընթացքին, եւ միասին առինք կրածներն ու գործածները, պատերազմներն ու յաղթութիւնները։

Տեսանք իր աստուածեղէն Հաստչին այն խօսքին կատարումը թէ՝ Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ որ ինչ պատուիրեցի ձեզ, եւ ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչեւ ի կատարած աշխարհի (Մատթ. Գլ. ԻԸ. 19—20)։

Տեսանք դարձեալ Քրիստոսի ուրիշ մէկ խօսքին ճշմարտութիւնը, զորն որ Ինք՝ Ամենակարողը Պետրոսի ըսաւ. Եւ ես քեզ ասեմ, զի դու ես Վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն։ Եւ տաց քեզ զփականս արքայութեան երկնից, եւ զոր միանգամ կապեսցես յերկրի, եղիցի կապեալ յերկինս, եւ զոր արձակեսցես յերկրի, եղիցի արձակեալ յերկինս (Մատթ Գլ. ԺԶ. 18—19)։

Այս անշարժ Վիմին վրայ յեցած՝ Եկեղեցին տասնուինը դարուց ընթացքին մէջ Աստուծոյ օգնականութեամբն անթիւ ու անհամար մրրիկներու յաղթեց։ Աստուծոյ արքայութիւնը՝ փոքր մանանխոյ հատ մը նման եւ մարդիկներէ անտես աշխարհքիս պատմութեան ասպարէզը մտաւ, զուրկ եւ թափուր այն միջոցներէն, որոնցմով երկրաւոր թագաւորութիւնք մեծութեան եւ փառաց կը հասնին։ Եկեղեցւոյ տարածման ու աճման մէջ՝ տեսնուեցաւ Աստուծոյ շնորհաց գաղտնի զօրութիւնը, որ թէեւ բնական աչօք չի

տեսնուիր, բայց իր զարմանալի ազդեցութիւններովը խորհող ու դիտող մտաց ուշադրութիւնն իրեն կը գրաւէ: Միայն խօսքի ու շնորհաց ազդեցութեամբ՝ Քրիստոսի Եկեղեցին իր գոյութեան առաջին դարերուն մէջ արդէն աշխարհքիս երեք գլխաւոր մասերը տարածուեցաւ, եւ մարդկային ազգին կրօնական համոզման եւ բարոյական վիճակին վրայ ականերեւ փոփոխութիւն մը յառաջ բերաւ:

Բայց շատ չանցաւ այս դեռաբոյս եւ մատաղ տընկին դէմ զարհուրելի փոթորիկներ ելան: Հռոմէական պետութիւնն իր բովանդակ զօրութիւնն ձեռք առաւ հին աստուածոց պաշտպանութեան համար. բայց ի զո՛ւր: Այն բարձրագոյն գերազանց ճշմարտութիւնը՝ թէ մի միայն Աստուած մը կայ, Հայր յերկինս՝ որ անսահման ողորմութեամբ իր Միածին Որդին աշխարհք խաւրեց, եւ անոր ձեռքով մեղապարտ մարդկային ազգը փրկեց, այս ճշմարտութիւնը վերջապէս յաղթանակեց: Արի նահատակաց բազմութիւն մը անյաղթելի արիութեամբ եւ անշիջանելի հաւատոյ եռանդեամբ կամաւ կեանքերնին զոհեցին, այս մեծ ճշմարտութեան համար: Վերջապէս երեքհարիւր տարուան դառն պատերազմէ ու խիստ նեղութիւններէ ետքը, Եկեղեցին յաղթանակեց, եւ Աթէնքի ու Հռոմայ շաստուածներն ինկան կործանեցան:

Ստոյգ է ասով Հռոմէական պետութիւնը քրիստոնէական կրօնին հպատակեցաւ, բայց շատերուն մտքին ու սրտին մէջ հեթանոսական գաղափարաց մնացորդները դեռ կենդանի էին: Ասկէ՝ նոյն իսկ Եկեղեցւոյ մէջ քրիստոնէութեան հիմնական վարդապետութեանց (մարդեղութեան, սկզբնական մեղաց ու շնորհաց) դէմ վտանգաւոր մոլորութեանց շարք մը երեւան ելաւ: Բայց Աստուած՝ որ այս ճշմարտութիւնները մարդկան աւանդած էր, անոնց անարատ պահուելուն ալ հոգ տարաւ: Եկեղեցին՝ Պետրոսի յաջորդաց Հռոմայ Քահանայապետաց առաջնորդութեամբը, այս մոլար դրութիւններէն ամէն մէկը Քրիստոսէ ու առաքեալներէն իրեն աւանդուած վարդապետութեանցը հետ համեմատելէն եւ անոր հետ ան-

միաբան գտնելէն ետքը, իբրեւ մոլորութիւն դատա-
պարտեց եւ անոնց առաջնորդներն ու հետեւողներն ե-
կեղեցւոյ հաղորդութենէն մերժեց։ Անով միայն կա-
րելի եղաւ Աստուծմէ յայտնուած վարդապետութիւնն
անարատ ու անխարդախ պահել, եւ եկեղեցւոյ մէջ
ամենակարեւոր հաւատոյ միութիւնը հաստատուն
բռնել։

Բայց Եկեղեցւոյ պաշտօնն էր ամէն ազգաց՝ փրկ-
կութեան ճամբուն առաջնորդել. անոր համար Աստու-
ծոյ տեսչութիւնը ժողովրդոց ընթացքն դէպ ի այս
նպատակին ուղղեց։ Յանկարծ ազգաց գաղթականու-
թիւններ եղան, որոնց սկզբնապատճառը պատմու-
թիւնը չի ճանչնար, բայց բարեյաջող հետեւութիւն-
ները մեր աչաց առջին ակներեւ կը կենան։ Բոլորովին
բիրտ եւ անծանօթ վայրագ ժողովուրդներ՝ Միջին Ա-
սիայէն հեղեղի պէս Եւրոպա արշաւեցին, եւ անոր
մեծ մասին տիրեցին։ Եկեղեցին՝ այս հեթանոս ազգաց
դէմ եղաւ իր երկնաւոր ճշմարտութիւններովը, որպէս
զի զիրենք մէկ ճշմարիտ Աստուծոյ ծանօթութեան ու
պաշտօնին դարձընէ, իրենց՝ մեղքէ, մոլորութենէ եւ
ապականութենէ ազատութիւն շնորհէ, եւ բարձրա-
գոյն բարոյականութիւն, արուեստ ու գիտութիւն
սորվեցընէ։ Այս արտաքոյ կարգի դժուարին գործը՝
վեցերորդ դարէն ետքը թէ գերմանական եւ թէ
սլաւեան ցեղերէ նոր կազմուած պետութեանց մէջ՝
Եկեղեցին այնպիսի բարեյաջող կերպով կատարեց, որ
մարդկային ազգին շնորհապարտ երախտագիտութեան
ստուգիւ արժանի է։ Եկեղեցին՝ Եւրոպայի քրիստո-
նեայ տէրութեանց ամէնէն հին երկիրները ցուցընե-
լով եւ իր լայնատարած մշակութեան յառաջ բերած
պտուղներուն վրայ յենլով, կրնայ ըսել որ նոյն եր-
կիրներուն թէ մշակուիլը, եւ թէ հիմնական գիտու-
թեանց, բարոյականութեան եւ կարգաւորութեան
արդիւնքը վայելելը, կամ անընդմիջապէս եւ կամ միջ-
նորդաբար իր յառաջ բերած արդիւնքն է։ Բայց այս
ժամանակի միջոցիս ալ Եկեղեցւոյ մէջ մոլորութիւն-
ներ եղան, որ ըստ մասին հին գերմանական հեթանո-
սութեան եւ ըստ մասին նոր կենդանացող յունա-

կան-Հռոմէական հեթանոսութեան պտուղներն էին, եւ Եկեղեցւոյ դժուարին պատերազմներու եւ դառն ցաւոց պատճառ եղան։ Սակայն Եկեղեցին ինչպէս յառաջ նոյնպէս այս ատեն՝ իր անսասանելի Գլխոյն յարելով, դատապարտեց մոլորութիւնն եւ անջատեց իրմէ անոր հետեւող հերձուածողները։ Այսպէս Եկեղեցին պահեց իր միութիւնը, ուր որ իրմէ դուրս եղող ամէն կուսակցութիւնները կամ բոլորովին անհետ եղան կամ դարէ դար երթալով զանազան հերձուածներու բաժնուեցան։ Մի եւ նոյն ժամանակ աստուածային ճշմարտութիւնը բազմաթիւ քարոզչաց ձեռքով աշխարհքիս ամէն մասերը՝ Ասիա, Ամերիկա, Ափրիկէ ու Աւստրալիա տարածուեցաւ, եւ Աւետարանի պատգամաւորաց եւ նորադարձ քրիստոնէից մեծ բազմութիւն մը իբրեւ մարտիրոս մեռաւ։ Ասոնցմէ զատ՝ Եկեղեցին վերջին դարերուն մէջ ունեցաւ բազմաթիւ երեւելի սուրբեր եւ սրբուհիներ այլեւայլ աստիճանէ, զորոնք Եկեղեցին իբրեւ նմանելու օրինակ ամէն հաւատացելոց առջեւը դնելով, կ'ուզէ ցուցընել թէ կաթողիկէ եկեղեցին ի՛նչ է, եւ ի՛նչ կ'ուզէ։ Կաթողիկէ եկեղեցին կ'ուզէ, որ ամէնքը ճշմարտութեան ծանօթութեան հասնին, եւ իրենց կեանքն անոր համեմատ ուղղեն. կ'ուզէ որ ամէն մարդիկ սուրբ ըլլան, եւ այս վախճանին հասնելու համար իր Հիմնադրին՝ Յիսուսի Քրիստոսի իրեն տուած միջնորդներն ամէնուն կը մատակարարէ։

Այսպէս կաթողիկէ եկեղեցին մի, սուրբ, ընդհանրական եւ առաքելական է. ինքն է կրող ու պաշտպան Աստուծմէ յայտնուած ճշմարտութեանց բովանդակութեան եւ իրմէ հաստատուած շնորհաց միջնորդներուն։ Այս գանձերն ինք կը մատուցանէ ամէնուն՝ զիրենք սրբելու եւ յաւիտենական երանութեան հասցընելու համար, մինչեւ որ ամէն ազգերն իր ծոցը դառնան, մինչեւ որ ճշմարտութեան ընդունելութեամբ բովանդակ մարդկային ազգը սիրոյ զօդիւ ի մի հաւատս միանայ եւ ըլլայ մէկ հօտ եւ մէկ հովիւ։ Բայց թէ ե՞րբ պիտ'որ ծագի այս ցանկալի վայրկեանը. ան՝ աստուածային գաղտնի քօղովը ծածկուած է (Տես Գործք

Առաք. Գլ. Ա. 6—7 եւ Թղ. առ Հռոմ. ԺԱ. 25—26)։ Սակայն մէկու մ'ալ կարեւոր չէ ապագան գիտնալ, բայց ամենուն հարկ է ներկան օգտիւ գործածել, որպէս զի չըլլայ թէ սոսկական մարդ մը կամ ամբողջ ժողովուրդ մը փրկութեան ճամբան կորսնցընէ. դարձեալ որպէս զի իւրաքանչիւր ոք թէ իր անձին փըրկութեան հոգ տանի եւ թէ ընկերին փրկութեան ըստ կարի նպաստամատոյց ըլլայ, եւ այսպէս ամէնքն երանութեան հասնին Յիսուսի Քրիստոսի, որ է (ըստ Յայտնութեան Գլ. ԻԱ. 6 ու ԻԲ. 13) Սկիզբն եւ Կատարած, Առաջին եւ Վերջին։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## Ա. Ընդհանուր կամ Տիեզերական ժողովները:

1. Նիկիայի Ա. (325), Ս. Սեղբեստրոս Քահանայապետին եւ Մեծն Կոստանդիանոս կայսեր ժամանակ, ուր դատապարտուեցաւ Արիոսի մոլորութիւնը, որ կ'ուրանար Որդւոյն Աստուծոյ Աստուածութիւնը, եւ Նիկիական Հանգանակը շինուեցաւ:
2. Կոստանդնուպոլսոյ Ա. (381), Ս. Դամասոս Քահանայապետին եւ Մեծն Թէոդոս Ա. կայսեր ատեն: Այս ժողովը՝ որուն 150 արեւելեան (մեծաւ մասամբ յոյն) եպիսկոպոսներ միայն ներկայ գտնուեցան, դատապարտեց Մակեդոնի մոլորութիւնը, որ Հոգւոյն Սրբոյ Աստուածութիւնը կ'ուրանար, եւ Նիկիական հանգանակը հաստատեց ու ընդարձակեց: Ս. Դամասոս Քահանայապետն ետքէն այս սինհոդոսը հաստատելով՝ տիեզերական ժողովոյ հեղինակութիւն ստացաւ:
3. Եփեսոսի (431), Կեղեստինոս Ա. Քահանայապետին եւ Թէոդոս Բ. կայսեր ժամանակ, Նեստորի մոլորութիւնը դատապարտելու համար, որ ի Քրիստոս երկու անձ կը դնէր, եւ Ս. Կոյս Մարեմայ Աստուածամայրութիւնը կ'ուրանար:
4. Քաղկեդոնի (451), Մարկիանոս կայսեր խնդրելովը՝ Մեծն Լեւոն Ա. Քահանայապետին ժամանակ: Այս ժողովը դատապարտեց Եւտիքէսի մոլորութիւնը, որ ի Քրիստոս մէկ բնութիւն կը դնէր:
5. Կոստանդնուպոլսոյ Բ. (553), Վիգիլիոս Քահա-

նայապետին եւ Յուստինիանոս Ա. կայսեր ատեն, որ դատապարտեց Որիգենէսի մոլորութիւններն եւ Երեք Գլուխները կամ Նեստորականութեան հետեւող երեք մոլորեալներուն (Թէոդորոս Մոպսուեստացւոյն, Թէոդորետոսի եւ Իբասայ) գրուածքները։

6. Կոստանդնուպոլսոյ Գ. (681), Ագաթոն քահանայապետին եւ Կոստանդին Բոկոնատոս կայսեր ժամանակ, Միակամեայց դէմ, որոնք կը վարդապետէին թէ Քրիստոս մէկ կամք ունի։

7. Նիկիայի Բ. (787), Ադրիանոս քահանայապետին հաւանութեամբն Իրենէ կայսրուհւոյն ատեն, Պատկերամարտից դէմ, ուր որոշուեցաւ որ Պատկերաց յարգութիւն ընելը ներեալ է։

8. Կոստանդնուպոլսոյ Դ. (869), Ադրիանոս Բ. քահանայապետին եւ Վասիլ կայսեր ժամանակ։ Այս ժողովը՝ զՓոտ պատրիարքութենէ վար առաւ եւ տեղը Ս. Իգնատիոս օրինաւոր պատրիարքը դրաւ, որով արեւմտեան եւ արեւելեան եկեղեցւոյ մէջ ծագած նոր հերձուածը վերցաւ։

9. Լատերանեան Ա. (1123), Կալիքստոս Բ. քահանայապետը Հենրիկոս Ե. կայսեր ատեն Հռոմ գումարեց, Հանդերձաւորութեան երկարատեւ կռուէն ետքը՝ Եկեղեցւոյ եւ աշխարհական իշխանութեան մէջ դրուած Վորմսի խաղաղութեան դաշինքը հաստատելու համար, եւ խաչակրութեանց պատճառաւ։

10. Լատերանեան Բ. (1139), Իննովկենտիոս Բ. քահանայապետին եւ Լոթարիոս Բ. կայսեր ժամանակ, գլխաւորաբար եկեղեցական հրահանգաց նորոգութեան համար։

11. Լատերանեան Գ. (1179), Աղեքսանդր Գ. քահանայապետին եւ Փրիդերիկոս Ա. կայսեր ատեն, եկեղեցւոյ նորոգութեան համար եւ Վալդեանց ու Քաթարեանց մոլորութեանց դէմ։

12. Լատերանեան Դ. (1215), Իննովկենտիոս Գ. քահանայապետը գումարեց Փրիդերիկոս Բ. կայսեր ժամանակ, ուր Ալբիգեանց եւ Վալ-

դեանց մոլորութիւնները դատապարտուեցան, եւ եկեղեցւոյ հրահանգաց եւ բարուց նորոգութեան համար 70 կանոն սահմանուեցաւ, որոնց 21երորդը կը պատուիրէ, որ ամէն քրիստոնեայ տարին գոնէ մէկ անգամ խոստովանանք ըլլայ եւ Ս. Հաղորդութիւնն ընդունի:

13. Լիոնի Ա. (1245), Իննովկենտիոս Դ. Քահանայապետին ժամանակ, որ խաչակրաց օգնելու համար յորդոր մը հանեց, եւ Փրիդերիկոս Բ. Գերմանիայի կայսրը բանադրեց, Եկեղեցւոյ դէմ գործած անիրաւութեանցը համար:

14. Լիոնի Բ. (1274), Գրիգոր Ժ. Քահանայապետին եւ Ռուտոլփոս Ա. կայսեր ատեն, Յունաց եկեղեցին Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանելու, եւ եկեղեցւոյ հրահանգաց նորոգութեան համար:

15. Վիէննայի (1311 եւ 1312), Կղեմէս Ե. Քահանայապետին եւ Հենրիկոս Է. կայսեր ատեն, գլխաւորաբար Տաճարականաց կարգը վերցնելու համար:

16. Փլորենտիայի (1438—1439), Եւգինէոս Դ. եւ Ալբերտոս Բ. կայսեր ժամանակ, ուր Յունաց, Հայոց եւ Ասորւոց եկեղեցիները՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանեցան:

17. Լատերանեան Ե. (1512—1517), Յուլիոս Բ. եւ Լեւոն Ժ. Քահանայապետաց եւ Մաքսիմիլիանոս կայսեր ատեն, Բիզայի չարաժողովոյն դէմ, եւ եկեղեցւոյ բարեկարգութեան համար:

18. Տրիդենտեան (1545—1563), Պաւղոս Գ., Յուլիոս Գ.՝ ու Պիոս Դ. Քահանայապետներուն եւ Կարոլոս Ե. ու Փերդինանդոս Ա. կայսերաց ժամանակ, Նորաղանդից դէմ եւ եկեղեցւոյ հիմնական նորոգութեան համար:

19. Վատիկանեան (1869), Պիոս Թ Քահանայապետը գումարեց, արդի ժամանակս մարդկային ընկերութեան մէջ ընդհանուր ճարակ գտնող մոլար ու վնասակար վարդապետութիւնները դատապարտելու եւ եկեղեցւոյ հրահանգաց ու բարուց նորոգութեան համար. ինչպէս նաեւ Հռո-

մայ եկեղեցիէն բաժնուած եկեղեցիները՝ կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միաբանելու համար։

Այս 19 ընդհանուր ժողովներն ամէնն ալ քահանայապետներէն հաստատուած եւ ընդհանուր ուղղափառ եկեղեցիէն ընդունուած են. բայց կան մէկ քանի ժողովներ ալ, որոնք կամ ամենեւին եւ կամ ըստ մասին միայն Քահանայապետներէն հաստատուած ըլլալուն, շատերը զանոնք ընդհանուր ժողովոց կարգը չեն դասեր։ Ասոնք հետեւեալներն են.

ա. Բիզայի ժողովը (1409), որ գումարուեցաւ եկեղեցւոյ մէջէն մեծ հերձուածը վերցընելու եւ Եկեղեցին նորոգելու համար, բայց այս կրկին նպատակներէն եւ ոչ մէկուն հասաւ։

բ. Կոստանդիայի սիւնհոդոսը (1414—1418), որուն վախճանն էր արեւմտեան եկեղեցւոյ մէջ քառասնամեայ հերձուածը վերցընել, Վիկլեֆի եւ Հուսի մոլորութիւնները դատապարտել, եւ Եկեղեցին ի գլուխն եւ յանդամս նորոգել։ Աս ժողովոյս մէկ քանի վճիռները միայն՝ Մարտինոս Ե. Քահանայապետը հաստատեց։

գ. Բասիղիայի (1431—1438) ժողովը, որ գումարուեցաւ ժամանակին մոլորութեանցը դէմ, ի մասնաւորի Հուսի հերետիկոսութիւնները դատապարտելու, եւ եկեղեցւոյ նորոգութեան համար։

## Բ. Հայոց ազգային եկեղեցական ժողովները:

1. Վաղարշապատու Ա. (325), որն որ կը համարուի թէ եղած ըլլայ Ս. Գրիգոր Լուսաւորչին ու Տրդատ թագաւորին ժամանակ, երբոր Ս. Արիստակէս Նիկիայի տիեզերական ժողովոյն հանգանակովն ու կանոններովը Հայաստան դարձաւ:
2. Աշտիշատու Ա. (365), զոր Ս. Ներսէս Ա. Մեծ գումարեց եկեղեցական բարեկարգութեան համար:
3. Վաղարշապատու Բ. (404), Ս. Սահակայ եւ Ս. Մեսրոպայ ձեռքով, Վռամշապուհ թագաւորին ատեն, հայերէն գրոյն գիւտին պատճառաւ:
4. Վաղարշապատու Գ. (426), Ս. Սահակ գումարեց Արտաշիր թագաւորին ժամանակ՝ Հայոց եկեղեցւոյն բարեկարգութեանը համար:
5. Աշտիշատու Բ. (432), Ս. Սահակայ ատեն՝ երբ Թարգմանիչք Եփեսոսի Ս. Ժողովոյն կանոնները Հայաստան բերին:
6. Աշտիշատու Գ. (435), Ս. Սահակ գումարեց՝ Թէոդորոս Մոպսուեստացւոյն գրքերը դատապարտելու համար:
7. Շահապիվանու Ա. (447), Ս. Յովսէփ կաթուղիկոսին ժամանակ, ուր Հայոց եկեղեցւոյն բարեկարգութեանը համար քսան կանոն դրուեցաւ:
8. Արտաշատու (449), Ս. Յովսէփ կաթուղիկոսը գումարեց տասնուեօթը եպիսկոպոսներով եւ բազմաթիւ եկեղեցականներով, Յազկերտ Բ. Պարսից թագաւորին՝ Հայերը մոգութեան կրօնը դարձընելու գրած հրաւիրանաց թղթին պատասխան գրելու համար:
9. Շահապիվանու Բ. (450), վերոյիշեալ կաթուղի-

կոսին ատեն, ուր Հայոց կղերն ու Նախարարներն որոշեցին քրիստոնէական հաւատոյ մէջ հաստատուն մնալ, եւ զանիկայ Պարսից դէմ զէնուք պաշտպանել։

10. Դրւնոյ Ա. (452), Ս. Յովսէփ կաթուղիկոսին յաջորդ մ'ընտրելու համար, ուր որոշուեցաւ նաեւ որ կաթուղիկոսական աթոռը Դուին փոխադրուի։

11. Վաղարշապատու Ե. (491), Բաբգէն կաթուղիկոսը գումարեց Վրաց ու Աղուանից կաթուղիկոսներով՝ Զենոն կայսեր հրովարտակը (Հենոտիկոնը) քննելու համար, զորն որ Հայք ընդունելով՝ առաջին անգամ Քաղկեդոնի Ս. Ժողովը (գուցէ) լռելեայն մերժեցին։

12. Դրւնոյ Բ. (527), Ներսէս Բ. Աշտարակեցին գումարեց Քաղկեդոնի Ս. Ժողովոյն դէմ։ Աս ժողովոյս մէջ՝ եկեղեցական բարեկարգութեան համար երեսունութը կանոն դրուեցաւ։

13. Դրւնոյ Գ. (551), Մովսէս Բ. կաթուղիկոսին ժամանակ՝ Հայոց տոմարը շտկելու համար, որ ժամանակէն կը սկսին Հայք իրենց թուականը։

14. Կոստանդնուպոլսոյ (580—590ի մէջ), Մաւրիկ կայսեր հրամանաւը, Հայոց եկեղեցին կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միաբանելու համար, որ բաղձացուած հետեւութիւնը չունեցաւ. ինչու որ Մովսէս կաթուղիկոսին պատգամաւորները՝ ժողովոյն վճիռները չընդունելով ետ դարձան։

15. Դրւնոյ Դ. (596), Աբրահամ կաթուղիկոսին ատեն՝ Կիւրիոն Վրաց կաթուղիկոսին դէմ, որ Քաղկեդոնի Ս. Ժողովն իր ժողովրդովն ընդունած էր։ Աս ժողովոյս մէջ՝ Աբրահամ զԿիրք իբրեւ մոլորեալ նզովեց եւ Հայոց՝ Վրաց հետ հաղորդութիւն ընելն արգելեց։

16. Կարնոյ (629ին մօտերը), Եզր կաթուղիկոսին ժամանակ՝ Հերակլ կայսեր խնդրելովը, որուն մէջ Հայք ընդունեցան Քաղկեդոնի Ս. Ժողովն եւ անոր դաւանութիւնը, եւ կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միաբանեցան։

17. Դուինայ Ե. (645), Ներսէս Գ. Շինող կաթուղիկոսը գումարեց, գլխաւորաբար Հայոց եկեղեցւոյն հրահանգաց նորոգութեան համար։
18. Դուինայ Զ. (648ին մօտերը), նոյն կաթուղիկոսին ժամանակ գումարուեցաւ, Կոստանդ Բ. կայսեր հրամանաւը, որուն մէջ Հայք Լեւոնի Տումարն եւ Քաղկեդոնի Ս. Ժողովը մերժեցին*։
19. Պարտաւայ Ա. (709), Եղիա կաթուղիկոսին ատեն, որ Աղուանից Ներսէս Բակուր ուղղափառ կաթուղիկոսին տեղ դրաւ Սիմոն կաթուղիկոսը։
20. Դուինայ Է. (719), Յովհաննէս Իմաստասէր գումարեց Պաւղիկեանց աղանդը հերքելու համար. աս ժողովոյս մէջ եկեղեցւոյ բարեկարգութեան համար երեսուներկու կանոն դրուեցաւ։
21. Դուինայ Ը. (ըստ ոմանց Վաղարշապատու Զ.) (726) նոյն Իմաստասէր կաթուղիկոսին ժամանակ՝ Յուլիանեան կամ Երեւութական ըսուած աղանդաւորներուն դէմ։
22. Պարտաւայ Բ. (768), Սիոն կաթուղիկոսին ատեն, ուր Հայոց եկեղեցւոյն բարեկարգութեանը համար քսանուչորս կանոն հաստատուեցաւ։
23. Շիրակվանու Ա. (854), ուր Զաքարիա Ա. կաթուղիկոս ընտրուեցաւ։
24. Շիրակվանու Բ. (862), Զաքարիա կաթուղիկոսը գումարեց, որուն ներկայ գտնուեցաւ Կոստանդնուպոլսոյ Փոտ պատրիարքին կողմանէ խաւրուած Յովհաննէս (ըստ ազգային պատմագրաց Վահան) Նիկիայի արքեպիսկոպոսը։ Այս ժողովոյս մէջ՝ Հայք կաթուղիկէ եկեղեցւոյ հետ միաբանեցան, եւ Երրորդութեան ու Մարդեղութեան վարդապետութեանց դէմ եղող մոլորութիւնները տասնուհինգ գլուխ նզովքով դատապարտեցին։
25. Շիրակվանու Գ. (892), Գէորգ Ա. կաթուղիկո-

* Ոմանք Ներսէս Գ. Շինող կաթուղիկոսին հեռաւորութեան ատեն՝ Յովհաննէս հակառակաթոռ կաթուղիկոսին ձեռքով Մանազկերտ քաղաքը (651) գումարուած չարաժողով մ'եղած կը դնեն, Քաղկեդոնի Ս. Ժողովոյն հակառակ, որուն մէջ Կարնոյ ժողովոյն բոլոր որոշումները մերժուած ըլլան։

սին ժամանակ՝ զՍմբատ Ա. թագաւոր օծելու համար։

26. Անւոյ Ա. (961), Անանիա կաթուղիկոսին առեն, զԱշոտ Գ. թագաւոր օծելու համար։

27. Անւոյ Բ. (965), որ զՎահան կաթուղիկոս ընտրեց։

28. Անւոյ Գ. (չարաժողովը 970), Վահան կաթուղիկոսին դէմ, որ Քաղկեդոնի Ս. ժողովն ընդունելուն համար կաթուղիկոսութենէ մերժուեցաւ, եւ իրեն հակառակաթոռ դրուեցաւ Ստեփանոս Գ. Սեւանայ վանահայրը։

29. Անւոյ Դ. (972), ուր Ստեփանոս Գ.ին մահուանէն ետքն ընտրուեցաւ Խաչիկ Ա., թէպէտ Վահան օրինաւոր ուղղափառ կաթուղիկոսը դեռ կենդանի էր։

30. Անւոյ Ե. (987), ուր Ս. Գրիգոր Նարեկացին արդարացաւ, որ Քաղկեդոնի Ս. ժողովոյն պաշտպան կենալուն համար հակառակորդներէն կը հալածուէր։

31. Անւոյ Զ. (992), Գագիկ թագաւորին հրամանաւը կաթուղիկոս ընտրելու համար, եւ ընտրուեցաւ Սարգիս Ա։

32. Հաղբայ Ա. (1002), Սարգիս կաթուղիկոսին ու Գագիկ թագաւորին ժամանակ՝ Թոնդրակեցի ըսուած աղանդաւորներուն դէմ։

33. Անւոյ Է. (1036), ուր Պետրոս Գետադարձ իբրեւ օրինաւոր կաթուղիկոս աթոռը հաստատուեցաւ, իսկ Դիոսկորոս հակառակաթոռ կաթուղիկոսը մերժուեցաւ։

34. Անւոյ Ը. (1042), Պետրոս Գետադարձին ձեռքով՝ զԳագիկ Գ. թագաւորեցընելու համար։

35. Հաղբայ Բ. (1061), Պետրոս Գետադարձին ժամանակ՝ Գրիգոր Մագիստրոս անուանի իշխանին ձեռնտուութեամբը Թոնդրակեցի աղանդաւորներուն դէմ։

36. Սեւ Լեռան Ա. (1072), Գրիգոր Վկայասէր գումարեց, Գէորգ Լոռեցին կաթուղիկոսութենէ ձգելու համար։

37. Հոնւոյ (1073), ուր եպիսկոպոսներէն ու վանա-

կաններէն ոմանք Գրիգոր Վկայասէրին հակառակաթոռ ընտրեցին զՍարգիս, որ աթոռը Հոնի հաստատեց:

38. Շուղրայ (1113), ուր կաթուղիկոս ընտրուեցաւ Ս. Ներսէս Շնորհալւոյն եղբայրը՝ Գրիգոր Պահլաւունին:

39. Սեւ Լեռան Բ. (1114), Գրիգոր Պահլաւունին գումարեց, որուն մէջ Դաւիթ Աղթամարայ հակառակաթոռ կաթուղիկոսը մերժուեցաւ, եւ Գրիգոր Պահլաւունին՝ օրինաւոր կաթուղիկոս ճանչցուեցաւ:

40. Հռոմկլայի Ա. (1167), ուր Գրիգոր Պահլաւունին ծերութեան պատճառաւ կաթուղիկոսութենէ հրաժարելով, իրեն յաջորդ ընտրուեցաւ Ս. Ներսէս Շնորհալին:

41. Հռոմկլայի Բ. (1172), Ներսէս Շնորհալւոյն ատեն՝ Յունաց հետ սկսուած միաբանութեան համար:

42. Հռոմկլայի Գ. (ըստ ոմանց Տարսոնի 1178), Գրիգոր Տղայ կաթուղիկոսը գումարեց, որուն մէջ Հայք՝ թէեւ Յունաց հաւատոյ վերաբերեալ պահանջմունքներն ընդունեցան, բայց միաբանութիւնը վերջապէս պարապ ելաւ:

43. Սսոյ Ա. (1193), որուն մէջ Գրիգոր Տղայ կաթուղիկոսին յաջորդ ընտրուեցաւ Գրիգոր Քարավէժ:

44. Տարսոնի Ա. (1198), Գրիգոր Ապիրատ կաթուղիկոսին ատեն, զԼեւոն Բ. թագաւոր օծելու համար:

45. Սսոյ Բ. (1204), Դաւիթ Գ. կաթուղիկոսին ատեն՝ Զաքարէ իշխանին խնդրելովը, քանի մը ծիսից եւ տօներու վերաբերեալ խնդրոց համար, որոնց նկատմամբ ութը կանոն դրուեցաւ:

46. Անւոյ Թ. (1207), վերոյիշեալ Զաքարէ իշխանին հրամանաւը, քանի մը եկեղեցական խնդիրներու համար:

47. Սսոյ Գ. (1243), Կոստանդին Ա. կաթուղիկոսին ժամանակ՝ բազմաթիւ եպիսկոպոսաց, վանա-

հարց ու իշխանաց ներկայութեամբը, ուր եկե-
ղեցւոյ բարեկարգութեան համար քսանուհինգ
կանոն դրուեցաւ, որոնց վերջինն Իննովկենտիոս
Դ. Քահանայապետին խնդրանաց համեմատ՝
հիւանդաց Վերջին Օծման խորհուրդ տալը կը
նորոգէ ու կը պատուիրէ։

48. Սսոյ Դ. (1251), նոյն Կոստանդին կաթուղիկոսը
գումարեց, պատասխան տալու համար Իննով-
կենտիոս Դ. Քահանայապետին, որ կը խնդրէր
Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնը Հոգւոյն Սըր-
բոյ բխման վրայ։ Երկայն քննութիւններէ ետքը
հաստատուեցաւ՝ որ Հայոց եկեղեցին Հոգւոյն
սրբոյ բխումն ի Հօրէ Եւ յՈրդւոյ հաւատացած է
միշտ։ Այս որոշումը Կոստանդին առանձին թըղ-
թով մը Քահանայապետին ծանոյց։

49. Տարսոնի Բ. (1268), որուն մէջ կաթուղիկոս ըն-
տրուեցաւ Յակոբ Կլայեցին։

50. Տարսոնի Գ. (1270), Յակոբ կաթուղիկոսին ա-
տեն, զԼեւոն Գ. թագաւոր օծելու համար։

51. Սսոյ Ե. (1292), Հեթում թագաւորին հրամա-
նաւը՝ Յունաց եւ Հայոց մէջ Ծուազատկին
նկատմամբ եղած խնդիրը քննելու համար։ Աս
ժողովիս մէջ կաթուղիկոս ընտրուեցաւ Գրիգոր
Է. Անաւարզեցին։

52. Սսոյ Զ. (1307) Լեւոն թագաւորին հրամանաւը
բազմաթիւ եպիսկոպոսաց, վարդապետաց ու
աշխարհական մեծամեծաց ներկայութեամբը, որ
պատճառաւ այս ժողովն ազգային ժողովներուն
մէջ ամենէն նշանաւորը կրնայ սեպուիլ։ Աս ժո-
ղովքիս մէջ՝ քննութեան առնուեցաւ Գրիգոր Է.
Անաւարզեցւոյն առ Լեւոն ու առ Հեթում թա-
գաւորահայր գրած թուղթը, եւ բոլոր ժողո-
վականներէն ընդունուեցաւ. Նոյնպէս դաւանուե-
ցաւ ի Քրիստոս երկու բնութիւն, երկու կամք ու
երկու ներգործութիւն։ Պատուիրուեցաւ նաեւ
պատարագի բաժակին մէջ քիչ մը ջուր խառնել,
եւ Ծնունդն ու Յայտնութիւնն ընդհանուր եկե-
ղեցւոյ համեմատ տօնել։ Այս ժողովը Գրիգոր

Է. Անաւարզեցւոյն տեղ, որ ժողովքէն քիչ մը յառաջ մեռած էր, կաթուղիկոս ընտրեց զԿոստանդին Գ. Պրօնագործ։

53. Տարսոնի Գ. (1308), Կոստանդին Գ. կաթուղիկոսին ժամանակ, զՕշին թագաւոր օծելու համար։

54. Ատանայի (1316), Կոստանդին Գ. կաթուղիկոսին առեն՝ Օշին նորապսակ թագաւորին գործակցութեամբը, ուր Սսոյ Զ. ժողովոյն սահմանադրութիւնները դարձեալ հաստատուեցան։

55. Սսոյ Է. (1342), Մխիթար կաթուղիկոսին ու Կոստանդին թագաւորին ժամանակ, Բենեդիկտոս ԺԲ. Քահանայապետին՝ Հայոց դէմ եղած 117 գլուխ ամբաստանութիւնները մերժելու համար։

56. Սսոյ Ը. (1361), Մեսրոպ կաթուղիկոսը գումարեց, ազգին մէջ ծէսերու նկատմամբ եղած վէճերը վերջացընելու համար։

57. Սսոյ Թ. (1437), Կոստանդին Զ. գումարեց Հայոց եկեղեցին՝ Հռոմայ եկեղեցւոյ հետ միաբանելու համար՝ Փլորենտիայի ժողովը պատգամաւոր խաւրելու, որուն Եւգինէոս Դ. Քահանայապետն առանձին թղթով զԿոստանդին հրաւիրած էր։

58. Էջմիածնի (1441), ոչ օրինաւոր ժողովը՝ բազմաթիւ վանականներէ ու վարդապետներէ, ուր որոշուեցաւ որ կաթուղիկոսական աթոռն Էջմիածին փոխադրուի, եւ Հակառակաթոռ կաթուղիկոս ընտրուեցաւ Կիրակոս Վիրապեցին։

## Գ. Ժամանակագրական յաջորդութիւն Հռոմայ Քահանայապետաց:


1 Ս. Պետրոս 42—67.
2 „ Լինոս 67—78.
3 „ Անակղետոս (կամ Կը-ղետոս) 79—91.
4 „ Կղեմէս Ա. 91—100.
5 „ Եւարիստոս 100—109.
6 „ Աղեքսանդր Ա. 109—119.
7 „ Սիքստոս (կամ Քսիս-տոս) Ա. 119—127.
8 „ Տեղեսփորոս 127—139.
9 „ Հիւգինոս 139—142.
10 „ Պիոս Ա. 142—157.
11 „ Անիկետոս 157—168.
12 „ Սովտէր 168—177.
13 „ Եղեւթերոս 177—192.
14 „ Վիկտոր Ա. 193—202.
15 „ Զեփիւրինոս 203—219.
16 „ Կաղիքստոս Ա. 219—223.
17 „ Ուրբանոս Ա. 223—230.
18 „ Պոնտիանոս 230—235.
19 „ Անտերոս 235—236.
20 „ Փաբիանոս 236—250.
21 „ Կոռնեղիոս 251—252.
22 „ Լուկիոս Ա. 252—253.
23 „ Ստեփանոս Ա. 253—257.
24 „ Սիքստոս Բ. 257—258.
25 „ Դիոնիսիոս 258—269.
26 „ Փեղիքս Ա. 269—274.
27 „ Եւտիքիանոս 275—283.
28 „ Գայիոս 283—296.
29 „ Մարկեղինոս 296—304.
30 „ Մարկեղոս 308—310.
31 Ս. Եւսեբիոս 310—311.
32 „ Մեղքիադէս 311—314.
33 „ Սեղբեստրոս Ա. 314—335.
34 „ Մարկոս 336—337.
35 „ Յուլիոս Ա. 337—352.
36 Լիբերիոս 352—366.
37 Ս. Փեղիքս Բ.*) 355—365.
38 „ Դամասոս Ա. 366—384.
39 „ Սիրիկիոս 384—398.
40 „ Անաստաս Ա. 398—402.
41 „ Իննովկենտիոս Ա. 402—417.
42 „ Զոսիմոս 417—418.
43 „ Բոնիփակիոս Ա. 419—422.
44 „ Կեղեստինոս Ա. 422—432.
45 „ Սիքստոս Գ. 432—440.
46 „ Լեւոն Ա. Մեծ 440—461.
47 „ Հիլարիոս 461—468.
48 „ Սիմպղիկիոս 468—483.
49 „ Փեղիքս Գ. (ոմանք Բ.) 483—492.
50 „ Գեղասիոս Ա. 492—496.
51 „ Անաստաս Բ. 496—498.
52 „ Սիմմաքոս 498—514. (Լաւրենտիոս հակա-ռակաթոռ):
53 „ Որմիզդ 514—523.


*) Այս քահանայապետն ոմանք Լիբերիոսի յաջորդ, իսկ ոմանք անոր Տեղապահ կը դնեն:

54 Ս. Յովհաննէս Ա. 523—526.
55 „ Փելիքս Դ. (ոմանք Գ.) 526—530.
56 „ Բոնիփակիոս Բ. 530—532.
57 Յովհաննէս Բ. 533—535.
58 Ս. Ագապետոս Ա. 535—536.
59 „ Սիլուերիոս 536—538.
60 Վիգիլիոս 538—555.
61 Պեղագիոս Ա. 555—560.
62 Յովհաննէս Գ. 560—573.
63 Բենեդիկտոս Ա. 574—578.
64 Պեղագիոս Բ. 578—590.
65 Ս. Գրիգոր Ա. Մեծ. 590—604.
66 Սաբինիանոս 604—606.
67 Բոնիփակիոս Գ. 606—607.
68 Բոնիփակիոս Դ. 608—615.
69 Աստուածետ 615—618.
70 Բոնիփակիոս Ե. 619—625.
71 Ոնորիոս Ա. 625—638.
72 Սեւերինոս 638—640.
73 Յովհաննէս Դ. 640—642.
74 Թէոդորոս Ա. 642—649.
75 Ս. Մարտինոս Ա. 649—654.
76 Եւգինէոս Ա. 654—657.
77 Ս. Վիտալիանոս 657—672.
78 Աստուածատուր 672—676.
79 Դոնոս Ա. 676—678.
80 Ս. Ագաթոն 679—682.
81 „ Լեւոն Բ. 682—683.
82 „ Բենեդիկտոս Բ. 684—685.
83 Յովհաննէս Ե. 685—686.
84 Կոնոն 686—687.
85 Ս. Սարգիս Ա. 687—701.
86 Յովհաննէս Զ. 701—705.
87 Յովհաննէս Է. 705—707.
88 Սիսիննիոս 707—708.
89 Կոստանդինոս 708—715.
90 Ս. Գրիգոր Բ. 715—731.
91 „ Գրիգոր Գ. 731—741.
92 Ս. Զաքարիա 741—752.
93 Ստեփանոս Բ. 752*).
94 Ստեփանոս Գ. (ոմանք Բ.) 752—757.
95 Ս. Պաւղոս Ա. 757—768.
96 Ստեփանոս Դ. (ոմանք Գ.) 768—772.
97 Ադրիանոս Ա. 772—795.
98 Ս. Լեւոն Գ. 795—816.
99 Ստեփանոս Ե. (ոմանք Դ.) 816—818.
100 Ս. Պասքաղիս 818—824.
101 Եւգինէոս Բ. 824—827.
102 Վաղենտինոս 827.
103 Գրիգոր Դ. 827—844.
104 Սարգիս Բ. 844—847.
105 Ս. Լեւոն Դ. 847—855.
106 Բենեդիկտոս Գ. 855—858.
107 Ս. Նիկողայոս Ա. 858—867.
108 Ադրիանոս Բ. 867—872.
109 Յովհաննէս Ը. 872—882.
110 Մարինոս կամ Մարտինոս Բ. 882—884.
111 Ադրիանոս Գ. 884—885.
112 Ստեփանոս Զ. (ոմանք Ե.) 885—891.
113 Փորմոսոս 891—896.
114 Բոնիփակիոս Զ. 896. (15 օր միայն).
115 Ստեփանոս Է. (ոմանք Զ.) 896—897.
116 Ռոմանոս 897—898.
117 Թէոդորոս Բ. 898. (20 օր միայն).
118 Յովհաննէս Թ. 898—900.
119 Բենեդիկտոս Դ. 900—903.
120 Լեւոն Ե. 903.
121 Քրիստափոր 903—904.
122 Սարգիս Գ. 904—911.
123 Անաստաս Գ. 912—913.
124 Լանդոյ 913—914.
125 Յովհաննէս Ժ. 914—928.
126 Լեւոն Զ. 928—929.

*) Ասիկայ ընտրութենէն երեք օր ետքը մեռաւ, անոր համար ոմանք զինքը Քահանայապետաց կարգը չեն դասեր։

127 Ստեփաննոս Ը. (ոմանք Է.) 929—931.
128 Յովհաննէս ԺԱ. 931—936.
129 Լեւոն Է. 936—939.
130 Ստեփաննոս Թ. (ոմանք Ը.) 939—942.
131 Մարտինոս Գ. 942—946.
132 Ագապետոս Բ. 946—956.
133 Յովհաննէս ԺԲ. 956—964. (Լեւոն Ը. 963—965.)
134 Բենեդիկտոս Ե. 964—965.
135 Յովհաննէս ԺԳ. 965—972.
136 Բենեդիկտոս Զ. 972—974.
137 Դոնոս Բ. 974—975.
138 Բենեդիկտոս Է. 975—983.
139 Յովհաննէս ԺԴ. 983—984.
140 Յովհաննէս ԺԵ.*) 985.
141 Յովհաննէս ԺԶ. (ոմանք ԺԵ.) 985—996.
142 Գրիգոր Ե. 996—999. (Յովհաննէս ԺԷ. (ոմանք ԺԶ.) հակառակաթոռ 997—998).
143 Սեղբեստրոս Բ. 999—1003.
144 Յովհաննէս ԺԸ. (ոմանք ԺԷ.) 1003.
145 Յովհաննէս ԺԹ. (ոմանք ԺԸ.) 1003—1009.
146 Սարգիս Դ. 1009—1012.
147 Բենեդիկտոս Ը. 1012—1024.
148 Յովհաննէս Ի. (ոմանք ԺԹ.) 1025—1033.
149 Բենեդիկտոս Թ. 1033—1044.
150 Գրիգոր Զ. 1044—1046.
151 Կղեմէս Բ. 1046—1047.
152 Դամասոս Բ. 1048 (23 օր միայն).

*) Այս քահանայապետը՝ թէպէտ ընտրուեցաւ բայց չօծուեցաւ, եւ հազիւ քանի մը օր կառավարեց Եկեղեցին, անոր համար ոմանք զինքը օրինաւոր քահանայապետ չեն համարիր։

153 Ս. Լեւոն Թ. 1048—1054.
154 Վիկտոր Բ. 1055—1057.
155 Ստեփաննոս Ժ. (ոմանք Թ.) 1057—1058.
156 Բենեդիկտոս Ժ.*) 1058.
157 Նիկողայոս Բ. 1058—1060.
158 Աղեքսանդր Բ. 1061—1073. (Ոնորիոս Բ. հակառակաթոռ (1061—1064)։
159 Ս. Գրիգոր Է. 1073—1085 (Կղեմէս Գ. հակառակաթոռ 1080—1100)։
160 Վիկտոր Գ. 1086—1087.
161 Ուրբանոս Բ. 1088—1099.
162 Պասքաղիս Բ. 1099—1118.
163 Գեղասիոս Բ. 1118—1119.
164 Կաղիքստոս Բ. 1119—1124.
165 Ոնորիոս Բ. 1124—1130.
166 Իննովկենտիոս Բ. 1130—1143. (Անակղետոս Բ. հակառակաթոռ 1130—1138).
167 Կեղեստինոս Բ. 1143—1144.
168 Ղուկիոս Բ. 1144—1145.
169 Եւգինէոս Գ. 1145—1153.
170 Անաստաս Դ. 1153—1154.
171 Ադրիանոս Դ. 1154—1159.
172 Աղեքսանդր Գ. 1159—1181.
173 Ղուկիոս Գ. 1181—1185.
174 Ուրբանոս Գ. 1185—1187.
175 Գրիգոր Ը. 1187.
176 Կղեմէս Գ. 1188—1191.
177 Կեղեստինոս Գ. 1191—1198.
178 Իննովկենտիոս Գ. 1198—1216.
179 Ոնորիոս Գ. 1216—1227.
180 Գրիգոր Թ. 1227—1241.
181 Կեղեստինոս Դ. 1241 (17 օր միայն).
182 Իննովկենտիոս Դ. 1243—1254.

*) Այս քահանայապետն ոմանք օրինաւոր, ոմանք ալ ապօրինաւոր կը համարին։

183 Աղեքսանդր Դ. 1254—1261.
184 Ուրբանոս Դ. 1261—1265.
185 Կղեմէս Դ. 1265—1268.
186 Գրիգոր Ժ. 1271—1276.
187 Իննովկենտիոս Ե. 1276.
188 Ադրիանոս Ե. 1276 (38 օր միայն)։
189 Յովհաննէս ԻԱ. (ոմանք Ի.) 1276—1277.
190 Նիկողայոս Գ. 1277—1281.
191 Մարտինոս Դ. 1281—1285.
192 Ոնորիոս Դ. 1285—1287.
193 Նիկողայոս Դ. 1288—1294.
194 Ս. Կեղեստինոս Ե. 1294.
195 Բոնիփակիոս Ը. 1294—1303.
196 Բենեդիկտոս ԺԱ. 1303—1304.

## ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՔ ԱՒԵՆԻՈՆ

197 Կղեմէս Ե. 1305—1314.
198 Յովհաննէս ԻԲ. (ոմանք ԻԱ.) 1316—1334. (Նիկողայոս Ե. հակառակաթոռ 1328—1330).
199 Բենեդիկտոս ԺԲ. 1334—1342.
200 Կղեմէս Զ. 1342—1352.
201 Իննովկենտիոս Զ. 1352—1361.
202 Ուրբանոս Ե. 1362—1370.
203 Գրիգոր ԺԱ. 1370—1378.

## ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՔ ՀՌՈՄ ԵՒ ԱՒԵՆԻՈՆ

204 Ուրբանոս Զ. Հռոմ 1378—1389. (Կղեմէս Է. Աւենիոն 1378—1394).
205 Բոնիփակիոս Թ. Հռոմ 1389—1404. (Բենեդիկտոս ԺԳ. Աւենիոն 1394էն սկսեալ)։
206 Իննովկենտիոս Է. Հռոմ 1404—1406.
207 Գրիգոր ԺԲ. 1406—1409.
208 Աղեքսանդր Ե. 1409—1410 (Բիզայի ժողովէն ընտրեց)։
209 Յովհաննէս ԻԳ. 1410—1415. Կոստանդիայի ժողովը զինքը վար առաւ (1415 Մայիս 29). Նոյնպէս զԲենեդիկտոս ԺԳ. իսկ Գրիգոր ԺԲ. կամաւ հրաժարեցաւ (1415)։
210 Մարտինոս Ե. 1417—1431.
211 Եւգինէոս Դ. 1431—1447։ (Փեղիքս Ե. հակառակաթոռ 1439—1448)։
212 Նիկողայոս Ե. 1447—1455.
213 Կաղիքստոս Գ. 1455—1458.
214 Պիոս Բ. 1458—1464.
215 Պաւղոս Բ. 1464—1471.
216 Սիքստոս Դ. 1471—1484.
217 Իննովկենտիոս Ը. 1484—1492.
218 Աղեքսանդր Զ. 1492—1503.
219 Պիոս Գ. 1503.
220 Յուլիոս Բ. 1503—1513.
221 Լեւոն Ժ. 1513—1521.
222 Ադրիանոս Զ. 1522—1523.
223 Կղեմէս Է. 1523—1534.
224 Պաւղոս Գ. 1534—1549.
225 Յուլիոս Գ. 1550—1555.
226 Մարկեղոս Բ. 1555 (21 օր միայն)։
227 Պաւղոս Դ. 1555—1559.
228 Պիոս Դ. 1559—1565.
229 Ս. Պիոս Ե. 1566—1572.
230 Գրիգոր ԺԳ. 1572—1585.
231 Սիքստոս Ե. 1585—1590.
232 Ուրբանոս Է. 1590 (13 օր միայն).
233 Գրիգոր ԺԴ. 1590—1591.
234 Իննովկենտիոս Թ. 1591.
235 Կղեմէս Ը. 1591—1605.
236 Լեւոն ԺԱ. 1605.
237 Պաւղոս Ե. 1605—1621.
238 Գրիգոր ԺԵ. 1621—1623.
239 Ուրբանոս Ը. 1623—1644.
240 Իննովկենտիոս Ժ. 1644—1655.
241 Աղեքսանդր Է. 1655—1667.
242 Կղեմէս Թ. 1667—1669.

243 Կղեմէս Ժ· 1670—1676·
244 Իննովկենտիոս ԺԱ· 1676—1689·
245 Աղեքսանդր Ը· 1689—1691·
246 Իննովկենտիոս ԺԲ· 1691—1700·
247 Կղեմէս ԺԱ· 1700—1721·
248 Իննովկենտիոս ԺԳ· 1721—1724·
249 Բենեդիկտոս ԺԳ· 1724—1730·
250 Կղեմէս ԺԲ· 1730—1740·
251 Բենեդիկտոս ԺԴ· 1740—1758·
252 Կղեմէս ԺԳ· 1758—1769·
253 Կղեմէս ԺԴ· 1769—1774·
254 Պիոս Զ· 1775—1799·
255 Պիոս Է· 1800—1823·
256 Լեւոն ԺԲ· 1823—1829·
257 Պիոս Ը· 1829—1830·
258 Գրիգոր ԺԶ· 1831—1846·
259 Պիոս Թ· 1846·

## Դ. Ժամանակագրական յաջորդութիւն հայ կաթուղիկոսաց*)

### ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

1 Ս. Գրիգոր Ա. Լուսաւորիչ 304 կամ 305—330.
2 Ս. Արիստակէս 330—336.
3 Ս. Վրթանէս 336—351.
4 Ս. Յուսիկ 351—356.
5 Փառներսեհ 356—360.
6 Ս. Ներսէս Ա. 360—373.
7 Շահակ 373—378.
8 Զաւէն 378—382.
9 Ասպուրակէս 382—388.
10 Ս. Սահակ Ա. 389—440. (Վռամշապուհ Ե. Պարսից թագաւորէն վար կ՚առնուի (428), բայց չորս տարի ետքը (432) դարձեալ կաթուղիկոսական աթոռը կը հաստատուի, հակառակաթոռ ունենալով Շմուէլ աթոռին (432—437):
11 Սուրմակ 429—430.
12 Բրքիշոյ 430—432.
13 Ս. Մեսրոպ (Տեղապահ) 440—441 (6 ամիս):
14 Ս. Յովսէփ 441—453.

### ԴՈՒԻՆ

15 Մելիտէ կամ Մեղէտ 453—458.
16 Մովսէս Ա. 458—465.
17 Գիւտ 465—475.
18 Յովհան Ա. Մանդակունի 475—487. (Ոմանք Քրիստափոր Ա. (475—480) եւ Յովհան Մանդակունի (480—487):
19 Բաբգէն 487—492.
20 Սամուէլ 492—502.
21 Մուշէ 502—510.
22 Սահակ Բ. 510—515.
23 Քրիստափոր Ա. (ոմանք Բ.) 515—521.
24 Ղեւոնդ 521—523.
25 Ներսէս Բ. Աշտարակեցի 524—533.
26 Յովհաննէս Բ. 533—551.
27 Մովսէս Բ. 551—594. (Վրթանէս Տեղապահ 581—594):
28 Աբրահամ 594—617. (Յովհան Գ. ուղղափառ կաթուղիկոսը, Յունաց բաժնին վրայ 590—606 կամ 616):
29 Կոմիտաս 617—625.
30 Քրիստափոր Բ. (ոմանք Գ.) 625—628.
31 Եզր 628—640.
32 Ներսէս Գ. Շինող 640—

*) Այս ժամանակագրական տախտակը՝ մեծաւ մասամբ նոյն է Չամչեանին հայ կաթուղիկոսաց ցանկին, ի բաց առեալ Ս. Գրիգոր Լուսաւորչէն մինչեւ Արշակունի թագաւորութեան վերջը յաջորդող կաթուղիկոսները, որոնց թուականը հարկ եղաւ Արշակունի թագաւորաց նոր ճշդագոյն ժամանակագրութեան համեմատ ըստ կարի ուղղել: Տարակոյս չկայ որ յիշուած կաթուղիկոսներուն ժամանակագրութիւնն ալ անճիշդ եւ ուղղութեան կարօտ է, սակայն դեռ աղէկ քննուած չըլլալով, կը պահենք այն թուականները՝ զորոնք սովորութիւն է հասարակօրէն դնել: Դարձեալ այս ցուցակը պարզապէս հայ կաթուղիկոսաց ժամանակագրական տախտակ մըն է. իսկ անոնց ուղղափառութեան կամ ոչ ուղղափառութեան վրայ տես ի մասնաւորի երես 198, եւ ընդհանրապէս պատմութեան ընթացքին մէջ:

661· (Ոմանք հակառակաթոռ զՅովհան Մանազկերտցին 649—655)։

33 Անաստաս 661—667·

34 Իսրայէլ 667—677·

35 Սահակ Գ· 677—703·

36 Եղիա 703—718·

37 Յովհաննէս Գ· Իմաստասէր 718—729·

38 Դաւիթ Ա· 729—741·

39 Տրդատ Ա· 741—764·

40 Տրդատ Բ· 764—767·

41 Սիոն 767—775·

42 Եսայի 775—788·

43 Ստեփանոս Ա· 788—790·

44 Յովաբ 790—791·

45 Սողոմոն 791—792·

46 Գէորգ Ա· 792—795·

47 Յովսէփ Բ· 795—806·

48 Դաւիթ Բ· 806—833·

49 Յովհաննէս Ե· 833—854·

50 Զաքարիա Ա· 854—876·

51 Գէորգ Բ· 876—897·

52 Մաշտոց 897 (30 օր միայն)։

## ՀԱՍՏԱՏՈՒՆ ԱԹՈՌ ՉՈՒՆԵՑՈՂ ԿԱԹՈՒՂԻԿՈՍՆԵՐ

53 Յովհաննէս Զ· Պատմաբան 897—924·

54 Ստեփանոս Բ· 925—926·

55 Թէոդորոս Ա· 926—936·

56 Եղիշէ Ա· 936—943·

57 Անանիա 943—965·

58 Վահան 965—972· (Ստեփանոս Գ· հակառակաթոռ 970—972)։

59 Խաչիկ Ա· 972—992·

60 Սարգիս 992—1018·

61 Պետրոս Ա· Գետադարձ 1019—1057· (Դիոսկորոս հակառակաթոռ 1035—1036)։

62 Խաչիկ Բ· 1058—1064·

63 Գրիգոր Բ· Վկայասէր 1065—1106· (Ասոր ժամանակ կաթողիկոսական աթոռն երեքի բաժնուեցաւ։ Փիլարետ պատրիկը՝ Հոռի կաթողիկոս դրաւ զՍարգիս (1073 — 1077)· նոյնպէս Մարաշ առանձին կաթողիկոս եղաւ Պօղոս վանահայրը (1085 — 1085)։

64 Բարսեղ Ա· նախ օգնական Վկայասիրին (1082—1106) ետքէն առանձին (1106—1113)։

## ՀՌՈՄԿԼԱ

65 Գրիգոր Գ· Պահլաւունի 1113—1167· (Ասոր ժամանակ Դաւիթ Աղթամարայ արքեպիսկոպոսը՝ նոյն կղզւոյն վրայ ինքնիշխան կաթողիկոսական աթոռ մը հաստատեց, որ ցայսօր կը տեւէ։

66 Ս· Ներսէս Դ· Շնորհալի 1167—1172·

67 Գրիգոր Դ· Տղայ 1173—1193· (Բարսեղ Անեցի հակառակաթոռ 1180—1204)։

68 Գրիգոր Ե· Քարավէժ· 1193—1194·

69 Գրիգոր Զ· Ապիրատ 1195—1202.

70 Յովհաննէս Է· Մեծաբարոյ 1202—1203։ (Անանիա հակառակաթոռ Սեբաստիա քաղաքը 1203 — 1207)։ Իսկ Յովհաննէս Է· տարի մը ետքը վար առնուելով տեղը դրուեցաւ՝

71 Դաւիթ Գ· 1203—1206· (Յովհաննէս Է· Մեծաբարոյ երկրորդ անգամ (1207 — 1220)։

72 Կոստանդին Ա· 1220—1268·

73 Յակոբ Ա· 1268—1286·

74 Կոստանդին Բ· 1287—1290, որ տարին վար առնուելով տեղը դրուեցաւ՝

75 Ստեփանոս Դ· 1290—1292·

## ՍԻՍ

76 Գրիգոր Է· Անաւարզեցի 1292—1306·

(Կոստանդին Բ. երկրորդ անգամ 1307—1322).
77 Կոստանդին Գ. 1323—1327.
78 Յակոբ Բ. 1327—1341. վար առնուելով՝ տեղը դրուեցաւ՝՝
79 Մխիթար 1341—1355. (Յակոբ Բ. երկրորդ անգամ 1355—1359)։
80 Մեսրոպ 1359—1372։
81 Կոստանդին Դ. 1372—1374.
82 Պաւղոս Ա. 1374—1378.
83 Թէոդորոս Բ. 1378—1396.
84 Կարապետ Ա. 1396—1398.
85 Դաւիթ Դ. 1398—1402.
86 Կարապետ Բ. 1402—1409.
87 Յակոբ Գ. 1409—1411.
88 Գրիգոր Ը. 1411—1418.
89 Պաւղոս Բ. 1418—1430.
90 Կոստանդին Ե. 1430—1439.
91 Յովսէփ Գ. 1439—1440.
92 Գրիգոր Թ. 1440—1441. որ տարին կաթուղիկոսական աթոռն երկու բաժնուեցաւ՝ այսինքն Սիս եւ

ԷՋՄԻԱԾԻՆ

93 Կիրակոս Վիրապեցին 1441—1443.
94 Գրիգոր Ժ. 1443—1461.
95 Զաքարիա Բ. 1461—1462.
96 Արիստակէս Բ. 1462—1466.
97 Սարգիս Բ. 1466—1490.
98 Արիստակէս Գ. 1490-1498.
99 Թադէոս Ա. 1498—1503.
100 Եղիշէ Բ. 1503—1515.
101 Զաքարիա Գ. 1515—1520.
102 Սարգիս Գ. 1520—1536.
103 Գրիգոր ԺԱ. 1536—1541.
104 Ստեփաննոս Ե. 1541—1547.
105 Միքայէլ 1547—1556.
106 Բարսեղ Բ. 1556—1569
107 Գրիգոր ԺԲ. 1569—1573.
108 Ստեփաննոս Զ. 1573—1575.
109 Թադէոս Բ. 1575—1584.
110 Առաքել 1584—1586.
111 Դաւիթ Ե. 1586—1626. Ասոր օգնական էին Մելքիսեդեկ (1593—1624), Սրապիոն (1603—1606) եւ Սահակ Դ. (1624—1629).
112 Մովսէս Գ. 1629—1633.
113 Փիլիպպոս 1633—1655.
114 Յակոբ Դ. 1655—1680.
115 Եղիազար 1680—1691.
116 Նահապետ 1691—1707. (Ստեփանոս Նոր Ջուղայի եպիսկոպոսն հակառակաթոռ ընտրուեցաւ (1695)։
117 Աղեքսանդր Ա. 1707—1715.
118 Աստուածատուր 1715—1726.
119 Կարապետ Գ. 1726—1730.
120 Աբրահամ Բ. 1730—1734.
121 Աբրահամ Գ. 1734—1737.
122 Ղազար 1737—1748. վար առնուելով՝ տեղը դրուեցաւ՝
123 Պետրոս Բ. 1748—1749, (Ղազար երկրորդ անգամ 1749—1751.)
124 Մինաս 1751—1754.
125 Աղեքսանդր Բ. 1754—1755.
126 Սահակ Ե. 1755—1759.
127 Յակոբ Ե. 1759—1763.
128 Սիմէոն 1763—1780.
129 Ղուկաս 1780—1800.
130 Յովսէփ Դ. Արղութեանց 1800—1801.
131 Դաւիթ Զ. 1801—1802.
132 Դանիէլ 1802—1810.
133 Եփրեմ 1810—1831.
134 Յովհաննէս Ը. 1831—1842.
135 Ներսէս Ե. 1843—1857.
136 Մատթէոս 1858—1866.
137 Գէորգ Դ. 1866.